# Ս. ԱԹԱՆԱՍԻ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅՐԱՊԵՏԻ

## ՃԱՌՔ

### ԹՈՒՂԹՔ ԵՒ ԸՆԴԴԻՄԱՍՑՈՒԹԻՒՆՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՑԱՄԻ 1899

# ՁԵԿՈՒՑՈՒՄՆ

*Զանթանալի մեծահանճար հայրապետի զերկս վաստակոցն, զճառս և զմեկնութիւնս յեղեալս ի հայ բարբառ, զայս առաջին նուագ՝ ի մի հատոր ամփոփեալ՝ ընծայեմք ի լոյս[1], որպէս զի՝ որոց գամ մի առեալ զճաշակ ոսկիաբուղխ բանից Ոսկեբերան հայրապետին, մի՛ անմասն գտանիցին և յիմաստնազեղ վարդապետութենէ այնր՝ որոյ մեծութեան ոգւոյն և մտաց չհաւասարեաց թերեւս ոչ ոք ի հարց Եկեղեցւոյ։*

*Ապաքէն ի դէպ էր մեզ պատէն ողագունիւք ածել ի մէջ զմի մի ի ճառից սրբոյ հայրապետիս, եթէ յորո՞ւմ ժամանակի և յումմէ՞ փոխեալ իցեն ի հայ լեզու. այլ ո՞ւր իցէ գտանել ստոյգ յիշատակարանս առ ի հաւաստի լուծումն խնդրոցս։ Այսր ազգաւ՝ ճեպիմք տալ տեղեկութիւնս ինչ զգրչագրաց, յորոց սակաւուք մարթի իմանալ և ստուգել զժամանակ թարգմանութեան ճառից ինչ. և զի ոչ ամենայնն միահամուռ ի նմին ի միում ժամանակի թարգմանեալ են, այլ է՛ զի առ նախնի թարգմանչօք Ե դարու, և է զի՝ ի յետնոց, այդ յոճոյ իսկ շարագրածոցն յայտնի երեւի։*

*Ի կարգի ճառիցս՝[2] են որոց պակասեն բնագիրք ի յոյնն, և են դարձեալ՝ որք թէպէտ և յանուն հայրապետիս հասեալ ի ձեռս մեր, այլ զի բնաւ իսկ օտար և թափուր յիմաստից և ի վարդապետութենէ գտանին սրբոյ հօրս, նմին իրի որպէս ի յոյնն՝ նոյն և ի հայումս՝ ի սակս անհարազատ և երկբայական գրոց թուելի են։*

*Զժամանակէ թարգմանութեան ճառիցս, ի գրչագիր մատենի ուրեք, գտանեմք յիշատակեալ զայս ինչ. «1°. Ի Հոգին սուրբ, ճառք կրկին։ — 2°. Ընդդէմ Արիանոսաց։ — 3°. Ի Սուրբ Երրորդութիւնն և ի մարմնառութիւն Բանին։ — 4°. Առ Եպիկտետոս եպիսկոպոս Կորընթացւոց[3]։ — 5°. Առ Փիլագերոս*

1. *Հարկ համարիմք աստէն յիշատակել, զի յորդոր և օժանդակ եղեւ տպագրութեան գրոցս, Փր. Կ. Կոնիբիր Անգղիացի, այր ազնուական և հմուտ մերոյս դպրութեան։*

2. *Արտաքոյ թողան ի հատորոյս,* «**Պատարագամատոյց Աստուծով, զոր արարեալ է Ս. Հօրն մերոյ Աթանասիոս պատրիարքին Աղեքսանդրու**» *և* «**Երանելք**»։

3. *Ս. Կիւրեղ աղեքս. ի թղթին առ Ակակիոս Մելիտինեայ եպիսկոպոս, վկայէ՝ եթէ հակառակորդք ճշմարտութեան ապականեալ*

եպիսկոպոս։ — 6°. Առ Լիբերիոս եպիսկոպոս Հռովմայ։ — 7°. Յաղագս սրբոյ Երրորդութեան։ — 8°. Ընդդէմ ամենայն հերձուածոյ։ — 9°. Յաղագս Հոգւոյն սրբոյ հայհոյողաց։ — 10°. Ընդդիմաբանութիւն ընդ Արիոսի, յաղագս աստուածութեան Որդւոյն։ — 11°. Դարձեալ առ նոյն՝ Յաղագս սրբոյ Հոգւոյն։ — 13°. Ընդդէմ Զաքէոսի հրէի՝ յաղագս աստուածութեան Որդւոյ։ — 14°. Յաղագս խոնարհագործութեանց մկրտելոց։ — 15°. Յաղագս կուսութեան։ — 16°. Ի չարչարանսն և ի յարութիւն Տեառն։ — 17°. Աղօթք[1]։ — Աւարտ եօթնեւտասն ճառից սրբոյն Աթանասի՝ թարգմանեալ՝ ի յառաջին թարգմանչացն մերոց ի յունէ ի հայ բարբառ»։ Դարձեալ՝ «1°. Յաղագս մարմնաւորութեան Աստուծոյ Բանին։ — 2°. Առ Յովբիանոս թագաւոր՝ Յաղագս հաւատոյ։ — 3°. Ընդդէմ Պաւղոսի Սամոստացւոյ՝ թէ մի է Աստուած։ — 4°. Յաղագս թէ Անձն իմ խռովեալ է։ — 5°. Յաղագս յայտնութեան Տեառն։ Աւարտ հնգեքին ճառիցն սրբոյն Աթանասի, զոր թարգմանեալ է ի յետին ժամանակս՝ Ստեփաննոսի սիւնեաց եպիսկոպոսի. Կատարեցաւ հրամայեալս ի քէն, ո՛վ վեհ, երիցս երանեալ բարունապետ. անուանակից և շնորհընկալ մեծի Ամլորդւոյն»։

Ի ճառից աստի հրատարակելոց ի մատենիս՝ ինչ ինչ գտանին յայլեւայլ մատենադարանս ազգիս, այն է՝ յ'Էջմիածին, ի Վիեննա, յԵրուսաղէմ և առ Անտոնեան հարս ի Միջագիւղ Կ. Պոլսոյ։ Դարձեալ Տէր Ստեփանոս Յարութիւնեան, Տէլյոհաննեանց յամի 1839 ի փետր. 29, գրովն զոր առաքեաց առ Գեր. Արքահայր ուխտիս, ծանուցանէ՝ թէ յերթալն յԱսպահան, գտեալ է ուրեք ցուցակ մի գրչագիր մատենից, զոր կարծէ լինել Ամենափրկիչ վանաց Նոր—Ջուղայու. և զանուանս մատենիցն

ին զգիրս Ս. Աթանասի «... եկեալ, ասէ, առ իս աստուածապաշտ եպիսկոպոսն Պօղոս Եմեսացւոց քաղաքին. և բանից շարժեցելոց՝ յաղագս ուղիղ և անբիծ հաւատոյս. հարցանէր ցիս յոյժ փոյթ յանձին ունելով. եթէ հաւանակի՞ց ես գրեցելոցն առ ի յերիցս երանեան հօրէն մերմէ Աթանասէ, առ Եպիկտիտոն եպիսկոպոսն Կորնթացւոց. իսկ ես ասացի, թէ Է՞ առ քեզ՝ որ ոչ է ապականեալ, քանզի բազում ինչ փոխեցին ի նմանէ ճշմարտութեանն թշնամիք, հաւանական իցեմ ամենեւին ամենայն իրօք. իսկ նա ասէ. Ունիմ ես զթուղթն, կամիմ բայց ի ձերոց օրինակաց ստուգել և տեսանել թէ արդեւք փոխեցա՞ւ ինչ ի գրոյս՝ թէ ոչ։ Որ և առեալ իսկ օրինակ հին և ընդօրինակեալ, գտանէր ապականեալ զնա. և աղաչեալ առնուլ պատճէն մերոց գրոց, և առաքեալ եկեղեցւոյն Անտիոքացւոց..»։ Դարձեալ այլուր. «Լուաք թէ՝ և զոր առ երանելին Եպիկտիտոն թուղթն՝ ամենահռչակին հօր մերում Աթանասի՝ զուղղակի գրեալսն ապականեալ ոմանց ետուն, որպէս զի յայսմանէ վնասել ոմանց. զպիտանի և զկարեւորն հոգ տարեալ եղբարց, յօրինակաց հնոց որ առ մեզ անմոլար ունելով, առաքեցաք զպատճէն քո սրբութեանդ»։

1. Ոմանք ի յիշատակեալ ճառիցդ չեն ի միջի։

կայրգէ ի Ծամակին, յորս նշանակեալ է և Գործք Առաքելոյ[1], և այլ ոչ սակաւ գրչագիրք սակաւագիւտք և ցանկալիք, որպիսիք են՝ Խոսրովայ թարգմանչի՝ Պատմութիւն Ս. Սահակայ: — Կորիւն՝ Պատմ. Ս. Մեսրոպայ: — Շապուհ պատմագիր՝ որ է՝ Որմըզդաքբաղայ ատրատեղատին և այլոց ս. նահատակաց, որ ի թուին ԳՃԲ: — Գրիգոր պատմագիր՝ վասն ազգին Թաթարաց: — Գործք Եպիփանու՝ Բ Գիրք ի Յունաց. Պատմութիւն նախահարց և մարգարէից. Բացատրութիւն 80 հերձուածողաց. Եւայլն:

Տացուք աստէն զհամար կարճ ի կարևոր գրչագիր օրինակացն, զորս կալաք մեզ առաջնորդ տպագրութեանս, և զորոց զտարածայն ընթերցուածսն եդաք ի ստորեւ էջիցն:

ՎԱՐՔ ԵՒ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՄԵԾԻՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ. — Պատմութիւնս այս խմբագրեալ է յեկեղեցական պատմութենէ Փոքր Սոկրատայ, ի քննութիւն հմտից ոչ ինչ անդէպ վարկաք յաւելուլ զխակարգութիւնսն ըստ պատշաճին և ըստ տպագրին յէջմիածին: Բնագիր վարուցս է ԼԳ ձեռագրին մատենադարանին վանացս, գաղափարեալ ի գրչագրաց Պոլսեան ազգային Գրադարանին. Թիւ գրչ. 812, մեծ. 32 × 21 սմ, գլխաւոր գաղափարող մատենիս է Ս. Վրդ. Պարոնեան, ծաղկաքաղ արարեալ յայլեւայլ գրչագրաց: Բ օրինակ է Ա ձեռագրին. Թիւ գրչ. 17, մեծ. 50 × 31, բոլորգիր երկիջեան, յորում գրեալ կան առասելապէս վարք և վկայաբանութիւնք սրբոց, ըստ կարգի ամսաբերաց: Գրիչ գրոցս է՝ Թադէոս ոմն. յիշատակեալ յէջն ՈԼ. «Ի յիշատակի սուրբ հայրապետացս, յիշեցէք աղաւթիւք բարեխաւս ունելով զսուրբսն զամենայն, առաքինութեամբ և բարի վարուք զարդարեալ ըզՄեսրոպ քահանայ, կենակից և հաղորդ աշխատութեանն ընդ մեզ՝ ի կոկել նիւթոյս, ընդ նմին և զամենամեղաւոր գծողս Թադէոս». աստէն յաւէ այլ ոմն նոր գրիչ, «և հայր Կոստանդին և զՎարդան և զՂազար, որ ձեռնտու և աւգնական եղեն ի ծաղիկ գրոցս...»: Թուական գրչութեան մատենիս է ՈՀԳ, զոր յաւելու գրիչն և կամ ոմն ի գործակցաց Մատենիս. «Տէր Աստուած, օգնեա հայր Պետրոսի և Սարգսի Ռուիրակի, զի հրամանաւ նորա գրեցաւ ի դուռն Սուրբ Լուսաւորչին ի ՈՀԳ Թուականիս»: Զտեղի գրչութեանն է անսանել ի բազում տեղիս, որպէս յ'էջ ՌՇ. «Քրիստոս Աստուած... ողորմեա նուաստ ծառայից քոց եղբարց Ղազարու վարդապետի և Գրիգորի և Աստուածատրի, որք են ապաաւորք եկեղեցւոյ Անապատի

1. Ի Թանգարանի մերձաւորութեան Անտոնեան հարց ի Միջագիւղ, յ'Բ խորշ յիշատակի Գործք Ս. Առաքելոյ:

Ը

Սուրբ Լուսաւորչին»։ Յէջն ՋՀԵ. «որորմեա հայր Կոստանդեայ և Թադէոսի գրչի, և որք ի ծաղկելն աւժանդակեցին՝ Վարդան ի Կապոսոյն վանից և Ղազար գրիչ․․ Նաեւ ամենայն հաւով, միաբանոց Սուրբ Լուսաւորչիս գերեզմանիս»․ Իսկ յ'էջն ԾԾԱ, յիշի և Բարսեղ հայրն «մեծահռչակ Անապատի կղզւոյն»։ Բաց յայտնի յիշատակարանաց՝ որք հային ի տեղի և ի ժամանակ անձանց առաջին աշխատողաց ի վերայ ճառընտրիս, գոն և բազմապատիկ գրչութիւնք՝ ի լուսանցս մատենիս, ուր նշանակին անուանք՝ որոց միանգամ տուեալ են ըստ ժամանակս ժամանակս՝ ինչ ինչ ի յիշատակ վանաց Լուսաւորչին, որով և վերագրեալ իբր յընկերութիւն միաբանից տեղւոյն, առ ի մասնակից լինել պատարագաց և աղօթից. և այսպիսիք կոչին միաբանք Լուսաւորչին, զոր օր. է տեսանել յէջն ԾՀՋ. «Գրիգոր միայնակեաց այր խարազնազգեաց՝ որ շրջէր յաշխարհի լեշկ մաշկով, նա առ սէրն՝ զոր ունէր յիշատակեաց (իմա յիշատակ ետ) ի դամբարանս Սուրբ Լուսաւորչիս նշխարս երկուս, զսկուառակն սուրբ Վարդանայ, և զմեծ բազուկն և զմիւս բազուկն Փիլիպպոսի առաքելոյն, և միաբանեցաւ հոգւով. և որ հանդիպի հայր տեսուչ սուրբ Ուխտիս ի տարին կատարել տացէ պատարագս) անմոռաց»։ Յետ ժամանակաց յաւելեալ է դարձեալ ոմն, յ'էջ ԾՀՋ «ի թոյն (թուին) հայոց ՋԴ, միաբանեցաւ սուրբ Լուսաւորչիս Պր. Քրիստոսատուր»․ Իսկ յէջն ՑԾՋ, «Գոհար տիկինն, Աղվորն, Մայր խաթունն, Թագուհին, մայր Մարգրիտն․․․ այս մայրերս ի Խարբերթոյ, միաբան են սուրբ Գրիգորոյ, յիրենք և իրենց ամեն ննջեցեալքն տվին իր. ուպ. (գուցէ իր. պատար).. թվ. ՋԽԴ»։ Զայս գրչագիրս յղեաց ի Տրապիզոնէ ի յիշատակ վանաց Ս. Ղազարու, Տէր Յակոբ Խոտրջրեցի։

'Ի ՊԱՏՄՈՒԹԵՆԷ ՎԱՐՈՒՑ Ս. ԱԹԱՆԱՍԻ, ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ՏԻՄՈԹԷԻ ԱՇԱԿԵՐՏԻ ՆՈՐԻՆ ԵՒ ԱԹՈՌԱԿՑԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ. — Մի եւեթ օրինակ ունէաք ի մատենադարանի վանացս, այն է **Բ Ճառընտիր**. թիւ գրչ. 1014, մեծ. 33×24, երկաթագիր, հարազատ և ընտիր գրութիւն։ Ի սկիզբն և յաւարտ թուղթք անկեալ են, և է գլ լրացեալ է բոլորգրաւ, Գրիչք գլխոցս յիշին Սարգիս, Հայրուկ և Ստեփանոս. գոյ յիշատակարան Հայրուկի, բայց մնայ թերի. ոմն ի յետին ստացողաց նշանակէ ուրեք, «թուին հայոց ՊՀԵ»։ Հին գրչութիւն մատենիս թուի լեալ յԺԲ դարու։

Ձեռամբ սորոյ հայրապետիս՝ սկսեալ յառաջին գլխոյ մինչեւ ցգլուխն ԺԱ (էջ 234), տպագրեցաք ի Լամբրոնեան օրինակէն. **Ճառք Ս. Աթանասի**. թիւ գրչ. 818, մեծ. 24×16½, բո-

լուգծը, գրեալ ի վերայ բամպակեայ թղթոյ, ուրեք ուրեք բըլղ-գըզեալ և անընթեռնլի։ Գրիչ գրոցս է՝ Ս. Ներսէս Լամբրոնեցի. Թուական գրչութեան և տեղի պակասին։ Չթերթին Թ, Ժ և ԺԱ ճառիցն լրացուցաք ի **ԺԹ Հազարեակ**, որ և այլով անուամբ կոչի «Հունձք Տայոց աշխարհին» եւն. Թիւ գրչ. 739, մեծ. 36 × 23. գաղափարող մատենին Հ. Եփրեմ վ. դ. Սեթեան՝ ի ճանապարհորդելն իւրում ի Հայս, ընդ Հ. Եսայեայ վրդ. Մզրաքեան, գտեալ այլևայլ գրչագիր մատեանս առ Կարապետ վարդապետի կարնեցւոյ առաջնորդի, արար ծաղկաքաղ ի նոցանէ վասն մատենադարանի վանացս։ Ի յիշատակարանի ուրեք, ասէ, եթէ զճառսդ Թ, Ժ և ԺԱ գաղափարեալ է ի հին մանր երկաթագիր օրինակէ, որպէս և բուն իսկ յիշատակարան օրինակին ցուցանէ յէջ 543. «փառք ամենասուրբ Երրորդութեան, զարդարողին իմոյ և ընդունողին տկարաց, որ զարդարեցուցանէ զհաւատացեալս անուան իւրոյ առ ի ճանաչել զհաւատոյ լրութիւն։ Ես Դաւիթ քահանայ ցանկացայ լուսաւոր և աստուածազան վարդապետութեան սրբոյն Աթանասի, որ ընդդէմ Արիանոսաց և Հրէից՝ յաղագս տնաւրէնութեան Աստուածն Բանի՝ ծանոյց երկս անձնաւորութիւն և մի աստուածութիւն, զոր ես՝ ըստ իմոյ նուաստութեանս և աղքատ մտացս, ի մի վայր բովանդակեցի.. ի յիշատակ ինձ և իմոց կենդանեաց և ննջեցելոց, և ի ժառանգութիւն որդւոյ իմոյ Ղուկասու, որ զծագրեաց իսկ զսա..». «և է նորոգումն սարա ի ՆԼ Թուականութեան հայոց»։ Յէջն 607, գաղափարող մատենին գրէ, «ծանու աշխատութեան պէտք եղեն ընթեռնուլ և գրել զանընթերցանելի տեղիսն առ փտելոյ ի տամկութենէ և ծակոտելոյ ի հնութեան»։

**ԺԲ. ԱՌ ԱՐԻՈՍ.** — Բնագիր սորա է՝ **ԻՋ Հազարեակ**. Թիւ գրչ. 731, մեծ. 36 × 22 ½, գաղափարեալ ի Հ. Ներսէսէ Սարգսեան, ի բոլորգիր անթուական ճառընտրէ միոյ գտելոյ ի Կարին։

**ԺԳ. ՅԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆՆ.** — Բնագիր ճառիս է՝ **Գ Հազարեակ**. Թիւ գրչ. 512, մեծ. 28 × 20, նոտրգիր գըրեալ ի վերայ թղթոյ։ Գրիչ մատենիս է Մկրտիչ որդի Ղազարու. Ստացողն՝ Տէր Զաքարիա աւագերէց Լովայ կամ Իլվով քաղաքի Լեհաց, որդի Տէր Գասպարի. Տեղի գրչութեան՝ ի Սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի դուռն Ս. Յակոբայ, ի թուին հայոց ՌՁՁ։

**ԺԴ. Ի ՀՈԳԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ.** — Այս ճառ՝ որ է մասն կամ վերջաբան Ե ճառի մատենիս, յետոյ ուրեմն գտաք ի մատենադարանիս մերում։ Բնագիր սորա է **ԺԻ Հազարեակ**, Թիւ

գրչ. 944, մեծ. 31 × 19, նոտրգիր գրեալ ի վերայ թղթոյ։ Գաղափար որ ճառընտիր Տիր. Յովհաննէս Տէրյովհաննիսեանց, ի վերջ կոյս մատենին յաւելու զայս ինչ. «Օրինակեցան այսոքիկ ճառքս ի հաստուածոյ հին և երկաթագիր ճառընտրի միոյ, որ էր հոլիջեան, առանց այլայլութեան և փոփոխութեան բառից և տառից, բաց ի պատուադրութենէ, զոր ի գործ արկաք ամփոփ համառօտութեան, և բաց ի նշանագրէս օ, զոր ի քանի մի տեղիս սխալմամբ գրեցաք. քանզի ի գաղափարին ոչ երեւէր նշան պատուադրութեան երբեք, բայց սակաւ ուրեք՝ և այն ի վերայ բառիս Ած. իսկ նշան օ տառի՝ և ոչ բնաւ. — յամի 1820, Նոյեմ. 8»։

**ԺԵ. Ի ԾՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ.** — Բնագիր սորա է **Գ. Ճառընտիր**, զորմէ տես յ'էջ բ։ Բ. օրինակ է՝ **ԻԹ Ճառընտիր**. Թիւ գրչ. 653, մեծ. 36 × 22, գրեալ ի վերայ թղթոյ։ Բովանդակ մատեանս է ձեռագիր Հ. Ներսիսի Սարգսեան, քաղելով ընդօրինակեալ ի մեծ յերկաթագիր հոլիջեան մագաղաթեայ ճառընտրէ Առաքելոց վանաց Մշոյ, յամի 1847։ Գաղափարողն «անհուն մեծութեամբ և պատկառելի ամենայն տեսողաց» ասէ զմատեանս. Թուական գրչութեանն է ՈԾԴ (= 1205)։ — Գ. օր. է՝ **Հաւաքումն Բանից Նախնեաց Գ.** Թիւ գրչ. 1286, մեծ. 21 ½ × 15 ½. ընդօրինակեալ ի ձեռն Տիր. Յովհ. Տէրյովհաննիսեան. ի վերջ կոյս մատենին ասէ, եթէ օրինակն էր «գեղեցիկ բոլորագիր ըստ գրչութեանն արուեստի կանոնեալ». «Գրի տետրակս ՌԺՀԷ թուոյ, յապրիլ ամսոյ ԺԹ. — եղեւ վախճան օրինակիս՝ ի ՌՄՀԹ մարտ 14, ի դպրատունն Աստրաքանու, նուիրեալ յանուն սրբոյն Նիկողայոսի, ընդհովանեաւ Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ»։ Թուական հին գրչութեան և տեղին պակասի։ — Դ. օրինակ է **ԺԳ Ճառընտիր**. Թիւ գրչ. 463, մեծ. 53 × 38 ½, բոլորգիր հին, երկսիւն, գրեալ առ ժամանակօք առաջնոյ Հեթմոյ արքային Կիլիկեցւոց, թերի ի սկիզբն, ի մէջն և ի վերջ։ Յիշատակարանք գրչին. «Ողորմեա Ստեփաննոսի առաջին առաջնորդի Սուրբ Ուխտիս, և եղբաւր նորին Կոստանդեա, և համայրէն նախնեաց նորին. նաեւ ինձ մեղաւորի և ծնողաց իմոց և Աստուածատուր եղբաւրն իմոյ». — «Քրիստոս Աստուած ... պայծառացո՛ զհոգի Երիանոսի և զՊետրոսի զԴիտապետաց մեծատանին... նաեւ զՍտեփաննոսի զառաջին հիմնարկողի սորին, և զիմ մեղաւոր գրչիս Վասլի..» են։ — «Հոգի սուրբ Աստուած, աղբեր անսպառ, զերկնային պսակ քո պարգեւեա Բարսղի, և հանգո ընդ ընտրեալս քո, որ զաւրհնակս պարգեւեաց, և ինքն զկնի սակաւ աւուրց փոխեցաւ յաստեացս. և էր առաջնորդ աստուածաբնակ Ուխտին Խորնին. ընդ նմին և Աստուածատուր քահանայի՝

որ բնակին սպասաւորէր նիւթոց և ամենայն պիտոյից»։ «Քրիստոս Աստուած, ողորմեա Յովանէս կրաւնաւորի և փակակալի սուրբ Անապատին Խորնին, և ծնաւղաց նորին, որ աւժանդակ եղեւ աւրինակիս.. նաեւ ինձ բիւր պարտականի Բասլի...»։ Նոր գրիչ ոմն յէջ 277 ի ստորեւ իջին յաւելու. «ի ՌՄԻԴ թուին մերոյ՝ եկեալ եղէ մեղաւորս և անպիտան ծառայս ծառայից Աստուծոյ, Անդրէաս կրր վարդապետ, ի մեծ մայրաքաղաքս այս ի Դրօպլայ (որ է Ատանայ), վասն մեծի գործոյ նուիրակութեան սրբոյ և մեծի աթոռոյն Երուսաղեմայ. և ի մտանել իմում ի քաղաքս, տեսի իբրեւ գլխին մի այրի՝ որ և սատուպեալ ոչ ունիցի իւրն օգնական. զի քաղաքս այս և բընակիչք սորին՝ եթէ մերազնին և եթէ այլազգիքն՝ առհասարակ էին իբրեւ զծկունս, որք լցեն ի մէջ շողացեալ սապակի ի ծանրութենէ հարկացն բռնաւոր, և դա..». այսչափ ինչ։ Այլ ոմն նոր գրիչ, յէջ 297 ի ստորեւ առաջին սեան. «Գիրս ես գրեցի, որ եմ Սուրբ յԵրուսաղեմայ, բնակեալ սուրբ լուսաբուխ գերեզմանին Քրիստոսի, բնիկ ծառայ և ի սուրբ արեան թաթախ, Սրբոցն Յակոբեանց միաբան, որ եմ ծննդեամբ յերկրէն Խարբեր(դ)ու ի գիւղն որ կոչի Իշման. բաւ է, գրեցի յիշել ի Տէր աղաչեմ հայր մեղայիւ». յերկրորդ սեան՝ «Ո՜վ կանք, լիցի քոյ կամք, դու լեր հոգոյ և մարմնոյ իմոյ օգնական և պահապան անձին իմոյ։ Ծանիք ո՜վ պատուելի հայրք և եղբայրք, ես մեղաւոր տէր Յարութիւն վարդապետս եկի ի Տրօվալ՝ որ է Ատանայ.. ՌԲԺՁին»։ Միւս այլ նոր գրիչ, յէջ 331 «Թվին Ռ և ճին վախճանին է, և ընդ նմին նորոգեցաւ ճառս կր(կ)ին ձեռամբ Սարգիս բանասիրին, մայրաքաղաքս Ատանային, ի Սուրբ Ստեփաննոս եկեղեցին, որ եմ յերկրէն Կիլիկոյին, գիւղաքաղաքէն Հաճին անին, և հայրապետ այսմ երկրին, Տեառն Յովանէս կաթողիկոսին, արդ որ ազտիք յայսմ տառիս, ասէք Աստուած ողորմին յիս. և դուք լսէք զօրհնեալ ձայնին, յաւուր մեծին դատաստանին. ամէն»։ Հին գրիչն՝ բոլորգրաւ ունի զայս ինչ. «Յամի ՉԻ. յայսմ աւուր՝ որ է չորեքշաբաթի, բարեպաշտ արքայն Հեթում փոխեցաւ առ Քրիստոս կրաւնաւորական վարուք, զոր հանգուսցէ Քրիստոս՝ զհոգի նորա ընդ Մակարիս ձգնաւորի, և ընդ այլ սրբոցն. ամէն». Իսկ յէջ 341 «յարութիւն կենաց պարգեւեա արքային Հեթմոյ, որ զկնի երից աւուրց յիշատակիս փոխեցաւ յաստեացս»։ Յէջ 374 ի ստորեւ լէին, Նոր գրիչ, «Նուաստ ծառայ Յիսուսի և բանի սպասաւոր միաբան սուրբ յԱնապատին Մակարա, և աշակերտ Յարութիւն աստուածաբան վարդապետին, Սարգիս կրօնաւորէս նորոգեալ։ Ի սոյն ամի եկեալ մեր քաղաքն Ատանայ, սկսայ նորոգել սուրբ գիրքս զայս որ էր թիւս արամեան ՌԾԿԴ..»։ Դարձեալ Նոր գրիչ, յէջ 389. «Յամի ներմարդութեան Տեառն

*մերոյ ՌՉԾԶ, և թուականութեան հայոց ՌՄԵ, եկն ի քաղաքն Տրովադայ, Բերիացի Սահրաթլեան տէր Գէորք արքեպիսկոպոս ի սրբոյ աթոռոյ Գրիգորի Նիւսացւոյ, տեսուչ կոչեցեալ. ես ատանացի Գրիգոր վարդապետ հոս էյի»։ Իսկ յէջ* 455, *«կենդինարն է ԷՌԲՃ* (7200) *ոսկի, որ է Ճ լիտր. զԿրետացի մեղսամած Աբրահամ կրօնաւորն հայցեմ յիշել, զի և դուք յիշեալ լինիք յաւուրն աներեկի ամէն..», «թվին ՌՉԾԶ, յուլիսի Ե, օրն շաբաթ»։*

**ԺԶ**. *Ի ՎԵՐԱՑՈՒՄՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ. — Բնագիր սորա է* **ԺԷ Ճառընտիր** *զորմէ տես յ'էջ Բ։ Բ օր. է՝* **Պատմ. Սոկրատայ Ա օր.** *թիւ գրչ.* 791, *մեծ.* 20×15, *նոտրգիր գրեալ ի վերայ թղթոյ։ Յայսմ մատենի գոն այլեւայլ թուղթք և պատմութիւնք ի Միխայելէ ասորւոյ և ի Մաղաքիա աբեղայէ։ Յէջ* 496 *«գրեցաւ պատմութիւնս Սոկրատայ ի Կոստանդնուպաւ(լ)իս, նուաստ Մաղաքիա բանի սպասաւորէս, թվին ՌՀԳ, յունիս ժե, օրն գշբթի. աւարտեցաւ ի վայելումն Թոխաթցի պարոն սէրանց տէր Յակոբին և իւր որդոյն բան Յովանեսին և բան Պաւղոսին...». Իսկ ի վերջ կոյս մատենիս. «Ես Յովանէս Աստապատցի.. թվին հայուց ՌՃի և Դի, ի Կամենից եկի, խնում ձեռուք զայս գրեցի»։*

**ԺԷ**. *ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ, ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԱԾԱՑՆՈՑՆ ՄԱՐՄՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԲԱՆԻ. — Բնագիր սորա է* **Գ. օր. Վեցօրէից Ս. Բարսղի.** *թիւ գրչ.* 352, *մեծ* 27×17½, *մանր երկաթագիր, գրեալ ի վերայ թղթոյ. ժամանակ գրչութեան ի վերջին կէս ԺԲ դարու։ Յիշատակարան՝ «գրեցաւ աստուածային տառս այս՝ ձեռամբ նուաստ գրչի Գրիգորոյ ի մայրաքաղաքս Հաղբատայ, ի յառաջնորդութեան տեառն Բարսղի, զոր սկիզբն արարաք զարարածոյ մեկնութիւնն, զոր ոմն ի վարդապետաց եկեղեցւոյ համառաւտեալ էր. ընդ նմին և զՂեւտականն եդաք յայլեւայլ աւրինակէ... և ի յաւարտումն ամենայնի, զի որ ոք ի վարդապետաց եկեղեցւոյ ընթերցցի վասն իւրոց աշակերտաց ի յուսումն կարգաւ զտանիցէ զամենայն եղեալ»։*

**ԺԸ**. *ԽՕՍՔ Ի Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ ԵՒ ՅՈՂՋՈՅՆ ԵՂԻՍԱԲԵԹԻ. — Բնագիր սորա է* **ԻԹ Ճառընտիր**, *զորմէ տես յէջ Ժ։ Գ օր. է* **Գ. Ճառընտիր**, *տես յէջ Բ. — Իսկ Բ օր. է* **ԺԳ Ճառընտիր**, *տես յէջ Ժ։*

**ԺԸ**[1]. *ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ ԵՒ Ի ՄԻՇՏ ԿՈՅՍՆ ՄԱ-*

1. *Վրիպակաւ կրկնեալ է ԺԸ, փոխանակ ԺԹի.*

ՐԻԱՄ. — Բնագիր սորա է նոյնպէս **ԻԹ ձառընտիր.** տես յէջ Ժ. Բ օր. է **ԺԳ ձառընտիր** տես յէջ Ժ։ Գ օր. է՝ **Գ ձառընտիր.** տես յէջ Բ. իսկ Դ օր. է **ԻԸ ձառընտիր.** Թիւ գրչ. 657, մեծ. 35 ½ × 22 ½, նոտրգիր անվարժ. այս ճառընտիր գաղափարեալ է ի ճառընտրէն գտելոյ ի Բաղէշ յամի 1846։ Ցիշատակարան և այլ տեղեկութիւն զգրչագրէն պակասին։

ԺԹ. ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի Ս. ԽԱՉՆ ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ. — Բնագիր ճառիս է՝ **Ժ օր. Թղթոց Ն. Շնորհալւոյ.** Թիւ գրչ. 1252, մեծ. 21 ½ × 16 ½, շղագիր և մասամբ նոտրգիր անվարժ։ Ցիշատակարան. « աւարտեցաւ աստուածունակ տետրակս ի մեծավայելուչ քաղաքս Ասպահան, ի գիւղաքաղաքս Ջուղայ, ի դուռն Ամենափրկիչ Ս. Վանացն, ի Հայրապետութեան տեառն Նահապետին և առաջնորդի նահանգիս Ստեփաննոս վարդապետին, ի թուականութեան հայոց փոքր ՀԹ նաւսար ԺԵ, ՌՃԽԴ (= 1695), որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն ». Ստացող մատենիս է՝ համթեցի մահտեսի Մարտիրոս։ Բ օր. է՝ **ԻՋ ձառընտիր,** զորմէ տես յէջ Բ։

Ի. ԹՈՒՂԹ ԱՌ ԵՊԻԿՏԵՏՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿՈՐՆԹԱՑԻՈՑ. — Բնագիր թղթոյս է՝ **Ջ օր. Պարապմանց Ս. Կիւրղի.** Թիւ գրչ. 448, մեծ. 24 ½ × 16, Բոլորգիր գրեալ ի վերայ թղթոյ. Գրիչ գրոցս է ս. Ներսէս Լամբրոնեցի, աջակցութեամբ Ցովսեփայ քահանայի՝ իւրոյ պաշտօնակցի։ Ցիշատակարան գրչին (յէջ 466) այսպիսի ինչ։ « Ի թուին ՈԽԴ, աւարտեցաւ հիմն հաւատոյ Գիրս Պարապմանց, զոր իմ Ներսիսի տրուպ և անարժան բանասիրի ի վարժումն իմաստից զոլով ընթերցայ ընդ բազում բանս սրբոց, և զսրբոյն Կիւրղի քննութիւն ուղղափառ հաւատոյ. և ի ընպող ժամանակի եկեալ ի հայրենի աշխարհս, սկիզբն եառ առնել սմին՝ ի ձեռն պաշտօնակցի եղբօր մեր Ցովսեփայ. և ձեռամբ իմով աւարտեցաւ ի գծուծ և ի մրճոտեալ օրինակէ, ընդ որ յոյժ ... (բառ մի անկեալ) գտանես, և զօգտաբան օրէնս եկեղեցւոյ » (մնացուածն աւեր է)։ Դարձեալ յէջս 411, « Զտրուպս և անարժան շնորհաց իմոյ Ներսէս, որ ըղձալի սիրով սկիզբն արարի սրբոյ մատենիս և ձեռաւք իմ աւարտեցի ի թու. ՈԽԴ »։

Ի բանից աստի յայտնապէս երեւի, թէ սկսանող մատենիս է Ցովսէփ քահանայ, և աւարտող՝ նոյն ինքն Լամբրոնեցի. բայց Ցովսէփ ցո՛ր վայր հասուցեալ իցէ զգրչութիւն իւր, և Լամբրոնեցին ուստի՛ սկսեալ, չասեն ինչ ճշտիւ յիշատակարանք. բայց ի համեմատութենէ երկուց ձայրիցն ուսանիմք, զի երկոքին ստեպ ...քա եղբայրակցեալ զառաջին կէս մատենին գրեցին փոփոխակի,

և զյետին կէսն առեալ աւարտեաց Ներսէս։ Այս ինքն, զի Յովսէփ անդուստ ի սկզբանէ մատենին հաւեալ հասուցանէ մինչև ցվերջ 84 իջին անընդհատ, զ85 էջն Լամբրոնացին գրէ։

Դարձեալ, ի վկայութեանց անտի Ներսիսի զանձնէն և ի թուականէն շատ իսկ ցուցանի, թէ Լամբրոնեցւոյ յատուկ մտացն է գրչութիւն մատենիս։ Բայց և զայլոցն վկայութիւնս զՆերսիսէ որ ի լուսանցս մատենիս գտանեալ պահին, ժողովեցից աստանօր։ Նախ՝ Յովսէփ քահանայ պաշտօնակից Ներսիսի ասէ յէջն 168. «Զգերամաքուր և զտիեզերական վարդապետ տէր Ներսէս և զհարազատ եղբայր նորին Հեթում Սեւաստաւս, որդիք Աւշնի Սեւաստաւսի, յիշեսջիք աղաւթիւք ի Տէր, առ ի յերկարել զկեանս իւրեանց»։ Դարձեալ այլ ումն ժամանակակից գեղեցկագիր, յէջ 242 ասէ. «Զաստուածապատիւ տէր Ներսէս և զտիեզերական վարդապետ, հանդերձ հարազատ եղբարբք իւրովք, որոց են անուանքն Հեթում Սէվաստոս, և Ապիրատ, Շահինշահ և Գրիգոր, որդիք Աւշնի Սեւաստասի յիշեսջիք աղաւթիւք ի Տէր»։ Յիշումն տոհմին Ներսեսի աներկբայելի առնէ թէ Ներսէսս՝ Լամբրոնեցին է և ոչ այլ ոք. թէպէտ թերահաւատք կամ պատճառախնդիրք յերկբայս արկանիցեն զինքնաբուն լինել գրչութեան, իբր զի յետին գրիչք ի գաղափարել անդ զմատեանն, և զյիշատակարանս Լամբրոնեցւոյ և այլոց հանեալ իցեն ճշդիւ անայլայլ պահելով և ըզթուականն։ Սակայն կերպարանք ձեւոց տառիցն և գրչադարձք, զօղք և վերջք, զորս գտանեմք յէջս ի Լամբրոնեցւոյ գրեալս, են յար և նման գրութեան նորին, որ անեղծ պահին ի գիրս Համաբարբառոյն Եփրեմի (թիւ Բ), գրեալ ի նորին իսկ Լամբրոնեցւոյ։ Դարձեալ հաստատի ի վկայութենէ Թովմայի վարդապետի ուրումն, որ երկերիւր երեսուն և աւելի ամօք յետոյ քան զԼամբրոնեցի գոլով (ի թուին ՊԿԱ) վաւերականաւ իւրով վկայէ ի վախճան մատենին, թէ Լամբրոնեցւոյ է գրչութիւն մատենին, յասել անդ իւրում. «Մկրտիչ վարդապետն մեծոփեցի զսուրբ գիրս Կիւրղի գրեալ ձեռամբ սուրբ Հօրն Ներսիսի, եբեր ի մեզ հասոյց ի ւլիտականուն վարդապետս Թովմա, որ ես տեսի և ուրախացայ յոգի և երկրպագութեամբ համբուրեցի»։

Գոյ և այլ յիշատակ Բասլի ուրումն ժամանակակցի, որ Լամբրոնեցւոյ ընծայէ զգրչութիւն, յասելն. «ի ՈԻԴ թուականիս շարադրեցաւ բանս աստուածային ի ձեռն Ներսեսի. զԲասիլս յիշեցէք ի Տէր զկնի աշխատողի սորին» (յէջ 842)։

Թուական յիշատակարանացս ցուցանէ թէ ԻԲ ամաց էր Լամբրոնեցի յորժամ զայս գրեաց, և չև՛ եւս եպիսկոպոս, այլ լոկ վարդապետ. զի ինքնին յայլում յիշատակարանի (յէջ 433) ասէ, «Ես սրուպ վարդապետս Ներսէս, աստանօր ողբս ի բերան առեալ լամ աղիողորմ..»։

Կայ ի վախճան մատենին յէջ 842, և յիշատակարան կազմողի․ «Հրամանաւ տեառն Ներսեսի և տիեզերական վարդապետի, կազմեցաւ գիրքս այս ձեռամբ ումեմն տառապեալ Գրիգորիսի արեւելցոյ»։ Բայց կազմ նոր զոր տեսանեմք ոչ է Գրիգորիսի արեւելցոյ, այլ Սահակայ վանեցւոյ։ Եւ Կիւրղի Գանձքն՝ որ զմիջին վայր հատորոյն ունի, գրեալ է ձեռամբ տէր Վարդան քահանայի, հրամանաւ Վարդանայ վարդապետի բաղիշեցւոյ, որ կամ զի պակասէր յաւելեալ ընդ առաջնոյն կազմեցաւ, և կամ զի խանգարեալ էր գրեալն՝ ի Լամբրոնեցւոյն բարձաւ, և ի տեղի այնորիկ նորս այս փոխանակեցաւ։ Ի սկամս 710 էջին՝ յիշի Սմբատ Գունդստապլ, այսպէս․ «Տէր աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա Սմբատա գունդստապլի» (եղծ է)։ Ի Յովսեփայ քահանայէ առ Լամբ․ յէջ 378․ «Զբազմամամնուած բանքս ուշիմ մտօք ընթերցէք, յիշելով զեղբեմն ողձիւք աշխատողս»։ Բ օր․ է՝ **Թուղթք Շնորհ․ Արա-ճառի եւն․** թիւ գրչ․ 31, մեծ․ 19 × 14, նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ, յիշատակարան և տեղեկութիւնք զգրչագրէն պակասին։ Գ օր․ է **Զենոբ Պատմ․** թիւ գրչ․ 44, մեծ․ 19 × 15½ և է ձեռագիր Վարդանայ Յունանեան, ի վերջ ճառիս գրէ այսպէս․ «Ընդօրինակեցաւ թուղթս ի ձեռագրոյ հնազունեղէ մեծի և սրբոյ վարդապետին Ներսիսի Լամբրոնացւոյ՝ որ աստէն գրեալ էր նոյնն զհետագայս «Ես տրուպ վարդապետս Ներսէս աստանօր զողբս ի բերան առեալ լամ աղիողորմ, թէ ընդէ՞ր զայսպիսի առհաւատչեայ հաւատոյ հարցն ունելով, եկեղեցիք քրիստոնէից պատառեալք դեռ եւս անզեղջ են ի նոյն»։

**ԻԱ․ ԱՌ ՅՈՎԲԻԱՆՈՍ ԹԱԳԱՒՈՐ ՎԱՄՆ ՀԱՒԱՏՈՅ․** — Բնագիր սորա է՝ **Ա օր․ Հաւաք․ բանից նախնեաց**, և է գաղափարեալ յայլեւայլ գրչագրաց Պարիսեան գրանոցին, ի ձեռն Հ․ Արսենի Անթիմոսեան (Բագրատունի) 1824–5․ թիւ գրչ․ 680, մեծ․ 24 × 17½։ Բ օրինակ է՝ **Գ օր․ վեցօրէից Ս․ Բարսղի** զորմէ տես յէջ **ժբ**։

**ԻԲ․ ԹՈՒՂԹ ԱՌ ՅՈՒՍՏԻՆԷ ՅԱՓՐԻԿԷ․** — Բնագիր թղթոյս է **ԺԳ ճառընտիր** զորմէ տես յէջ **Ժ**։ Բ․ օր․ է՝ **Գ ճառընտիր** զորմէ տես յէջ **Բ**․ իսկ Գ․ օրինակ է՝ **ԻԲ ճառընտիր**, տես ի վայր։

**ԻԳ․ ՀԱՐՑՄՈՒՆՔ ՎԱՅԵԼՈՒՉՔ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ՀՈԳԵՇԱՀՔ․** — Բնագիր սորա է **ԻԲ ճառընտիր**, բոլորգիր հին, գրեալ ի վերայ մագաղաթի․ թիւ գրչ․ 445, մեծ․ 21 × 15․ Յիշատակարան․ «Կատարեցաւ հրաշապատում և լուսազարդ վարդապետութիւն աստուածազգեաց առնն՝ սրբոյն Աթանասի եպիսկոպոսի

Աղեքսանդրի, և գլուխ և հիմն ամենայն ուղղափառաց, որ եւ համբաւ հաւատոյ նորա ընդ բնաւս ամենայն, հրամանաւ հայր Սամուելի և առաջնորդի Ս. Ուխտիս որ Կարպոսին ասի, ի նոյն վանքս ի դրանն Ակոբայ, ձեռամբ մեղապարտ գրողի, որոյ անունն Գրիգոր՝ մականուն Վզիկ, յիշատակ իւրն և ծնողաց իւրոց, եղբարց, քերց և ամենայն ազգայնոցն։ Աղաչեմ զքեզ Քրիստոս՝ որդի Աստուծոյ, ողորմեա հայր Սամուէլի ստացողի գրոցս, և ծնողաց իւրոց և ամենայն եղբարց, և ինձ Գրիգորի որ բազում չարչարանաւք փակուցի ի սմա գիրս, առ ի պատմել զբանս պատուիրանի քո, փառք ամենայն»։ Իսկ այլուր՝ «Թվին ՉԴ, Քրիստոս՝ Աստուած սուրբ հայրապետին բարեխաւսութեամբ ողորմեա հաւր Սամուէլի և ինձ Գրիգորի»։ Բ օր. է՝ **Վարդան պատմ. Բ օր.** Թիւ գրչ. 1244, մեծ. $17\frac{1}{2} \times 12$, բոլորգիր գրեալ ի վերայ թղթոյ։ Յիշատակարան, «Ի ժամանակի՝ յորում էր թուականս մեր ՉԾԶ, ի պակասել արդարութեանցն և ի բազմանալ անօրէնութեանց մերոց, առաւել բազմացաւ բարկութիւն և սաստկացաւ չարութիւն ազգին Նետողաց ի վերայ մեր՝ սուտանուն ազգիս քրիստոնէից։ Քանզի եւ տղայ հասակաւ այր մի ի Խորասանայ, միականի և անուն նորա Խարբանդաւոր որ թարգմանի իշու ծառայ, որդի Արղունին, որդո Աբաղային, որդո Հուլաւունին։ Սա բառնալ կամեցաւ զքրիստոնէութիւն յաշխարհէս Հայոց և Վրաց, զոր խափանեաց Տէր, և ոչ կատարեցաւ չար խորհուրդ նորա։ Յետոյ այլ բանս (զ)մտաւ ածեաց արբանեկն սատանայի, առաքեաց ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ, դնել նշան խայտառակութեան քրիստոնէից, և հարկ առնուլ ըստ մարդաթւի Ժ արծաթէ մինչեւ Ճ ըստ կարի։ Յայս ի դառն ժամանակիս եղեւ աւարտումն սորա, ձեռամբ բազմամեղի Եզեկիելի, զոր աղաչեմ զընթերցողդ ցաւակցաբար յիշել ի Տէր»։ Գոյ միւս այլ յիշատակարան ստացողի Գրոցս՝ զորոյ զանունն և զթուականն եղծեալ է ուրումն յետնոյ՝ և գրեալ զիւր անունն՝ Մարկոս, և զթուականն իւրոյ ժամանակին ՌԾԺԹ։ Գ օր. է՝ **Ա օր. Թուղթ. Շնորհալւոյ**, Թիւ գրչ. 1260, մեծ. $21 \times 15\frac{1}{2}$, բոլորգիր և մասամբ նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ. յիշատակարանք և այլ տեղեկութիւնք զգրչէն և զժամանակէ գրութեան պակասին։ Դ օր. է՝ **Բ օր. Հարց. Աթանասի**, նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ. Թիւ գրչ. 295, մեծ. $15\frac{1}{2} \times 11$. Յիշատակարան ի վերջ կոյս մատենիս, «Ով եղբարք, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զԵւդոկիացի Սարգիս բանասէրս, որ ձեռամբ իմով գրեցի ի մայրաքաղաքն Ստամպօլ, ի Թաղն Պէկօղլի կոչեցեալ, որ եմ սահեթճի.. աղաչեմ ի Տէր յիշել. եղեւ գրաւ սորին թվին ՌԾԾԹ. Նոյեմ. գ.»։ Ե օր. է՝ **Ա օր. Հարցմ. Աթանասի.** Թիւ գրչ. 1001, մեծ. $17\frac{1}{2} \times 12$, նոտրգիր,

գրեալ ի վերայ թղթոյ, առանց յիշատակի գրչութեան և պակասաւոր։ Զ օր. Է՝ **ԺԵ օր. Թորգ. Շնորհ.** Թիւ գրչ. 1533, մեծ. 20½ × 14½. բոլորգիր և մասամբ նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ. Յիշատակարան. «Ո՛վ եղկելի Միքայէլ, զի՞նչ կամիս տալ պատասխանի վասն չար գործոց քոց, վայ զիս։ — Ամիրճնիան սարկաւագ ետ գրել զհոգեւոր փարթամութիւնս զայս, ի ճալալ վաստակոց իւրոց, ի վայելումն իւր... արդ, որ կարդայք կամ օրինակէք, յերես անկեալ աղաչեմ զձեր սրբութիւնդ, յիշել ի մաքրափայլ աղօթս ձեր զԱմիրճնիան սարկաւագն և զիւր կենակիցն... եւս առաւել զՄիքայէլ փծուն գրիչս և զկենակիցս.. գրեցաւ տառս հոգեշահ ի թվին ՌՃ. դարձեալ յիշեցէք զկազմող տրին զՅակոբ քահանայ»։

**ԻԴ. ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԱԹԱՆԱՍԻ.** — Բնագիր սորա է **Ա Ոսկեփորիկ.** Թիւ գրչ. 57, մեծ. 19 × 14½, նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ. Թուական գրչին և յիշատակարան պակասին։ Վերջին ստացող մատենիս Հ. Ղազարոս վրդ. ի ճակատ մատենին գրէ «Ես Հ. Ղազարոս առաքեցի զայս գիրքս ի վանս՝ ի ժամանակս Լուսահոգի Մխիթարայ վարդապետի Աբբահօր մերոյ. Թվ 1741–4»։ Բ օր. Է՝ **Դ. օր. Ասանեքի.** Թիւ գրչ. 398, մեծ. 15½ × 10, նոտրգիր, գրեալ ի վերայ թղթոյ, չիք թուական և յիշատակ գրչութեան։ Գ օր. Է՝ **Գ. Աղօթագիրք,** Թիւ գրչ. 375, մեծ. 11½ × 8, բոլորգիր ընտիր, գրեալ ի վերայ մագաղաթի։ Յիշատակարան. «Ազատեցար անիմաստ մտկունք, շլացար աչկունք, թարշամեալ շրթունք, անարուեստ մատունք, բեկացեալ մէջկունք, կուացեալ ծնկունք. ուրախ լեր և փառք տուր Աստուծոյ, որ հասոյց զոչինչս ի յաւարտ, թվին ՌԺԴ, օգոստոսի ը»։

**ԻԵ. ՅԱՂԱԳՍ ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ.** — Բնագիր սորա է **ԻԸ Ճառընտիր,** զորմէ տես յէջ ԺԳ.։ Բ օրինակ է **ԻԹ Յայսմաւուրք** Գրիգորի Անաւարզեցւոյ. բոլորգիր ընտիր, գրեալ ի վերայ մագաղաթի. Թիւ գրչ. 710, մեծ. 29½ × 21½, ի սկիզբն և վերջն թերատ։ Յիշատակարան. «.. աւգնեա թագաւորիս մերոյ Աւշնի, և դեռաբոյս մանկանն իւրոյ Լեւոնի, և բազմամեղ գրչիս Գրիգորի դպրի». այլուր. «Տէր Աստուած վայելել տացէ զգիրքս թագաւորին մերոյ Աւշնի, և որդւոյ նորա Լեւոնի». ի ստորեւ այսր՝ ի լուսանցս կայ. «Քրիստոս Աստուած արայ ողորմութիւն ստացողի գրոցս Տէր Կոստանդին կաթողիկոսի..». դարձեալ այլուր, «աղաչեմ յիշել զքրիստոսասէր թագաւորն մեր Աւշին և զդեռաբոյս մանուկն իւր Լեւոն, որպէս զի շնորհեսցէ զսոսա մեզ Տէր ընդ երկայն աւուրս, և զաւագերէցն Թագաւորին Թորոս և զծնաւղս իւր և զեղկելի գրիչս զԳրիգոր

★

դպիր..»: Ի մատենիս յաճախեալ յոյժ են սովորինակ յիշատակարանք, և է զի ի ստորեւսն նշանակեալ զմահ արքայից և արքայազանց Ռուբինեանց, զորովք զանց առնումք աստէն ի գրի արձանացուցանել: Գ օր. է՝ **Ժ Յայսմաւուրք**, բոլորգիր, երկիջեան. թիւ գրչ. 402, մեծ. 36×23, թուական գրչութեան ՌՃԽ, գաղափարեալ յօրինակէն գրելոյ ի ՊՂԳ (1444): Գոն կրկին ընդարձակ յիշատակարանք ի սկիզբն և յաւարտ մատենիս. զոր նոյնպէս յիշատակք և վերջին ստացողաց: «Եղեւ աւարտ սորոյ մատենիս.. ի թուակ. Հայոց ՌՃ և Խ ամին. և ի թագաւորութեանն Պարսից Շահ Սուլէյմանին, և ի հայրապետութեան տանն Աղուանից, տեառնցն Սիմոնի և Երեմիայի սրբազան կաթողիկոսաց, և եպիսկոպոսութեան երկրիս Շամախու և Շիրվանայ.. Տեառն Վլասայ վարդապետաց վարդապետի... (որ) բազում ծախիւք հազիւ բերել ետուր զսա ի յերկրէն Արարատու.. գծագրեցաւ սուրբ Գիրքս ի յերկիր Գանձայ, ի գեօղս Քարահատ, ընդ հովանեաւ Աստուածածին և Նորաշէն սուրբ տաճարիս, ձեռամբ անհմաստ և բազմամեղ սուտանուն Ղազար սարկաւագի...»:

**ԻԶ. ՎԱՍՆ ՍՔԱՆՉԵԼԵԱՑ ԳԱՏԳԵՐԻՆ (ԲԻՒՐԻՏՈՆԻ).** — Բնագիր սորա է՝ **Ա Ճառընտիր** տես յէջ **Ե**: Բ օր. է՝ **Գ. օր. Հարանց վարուց, հին թրգմ.** թիւ գրչ. 536, մեծ 14×9, բոլորգիր անվարժ, գրեալ ի վերայ թղթոյ: Յիշատակարանն ի վերջ մատենիս՝ ունի այսպէս. «... Ես Խաչատուր սուտանուն կրաւնաւոր, ցանկացայ այսմ վարուց հարանց. սիրտս կայր և ի ձեռս շնորհք չկայր, զի չէի տեղակ գրիչ կամ գրելոյ, զի է գիրս գիշատեսակ և գազիր.. զմեղաւորս յաղաւթս քո յիշեա.. և ըզպանդխտակից եղբայրն իմ զՅոհաննէս սարկաւագն՝ յիշեցէք յաղաւթս ձեր, զի վասն նորա գրեցաւ տառս: Գրեցաւ գիրքս պիտանի և աւգտակար ի թվիս հայոց ՊԿԷ, լետր. ժգ, ի դըլեան Ս. Աստուածածնին և սուրբ Ովաննիսին և սուրբ Առաքելոցն որ կոչի Աւաք վանք»: Գ օր. է՝ **ԻԸ Ճառընտիր** տես յէջ **ԺԳ**: Դ օր. է՝ **ԺԶ Հաւաքումն**. բոլորգիր, գրեալ ի վերայ թղթոյ, թիւ գրչ. 345, մեծ. 13×10. գրեալ է մատեանս ի թուին ՈԿԹ (1220) ձեռամբ Վարդանայ ուրումն գրչի. յիշի և Բարսեղ ոմն եպիսկոպոս. այլ չէ յայտ գրիչն իցէ՝ եթէ ստացող: Ե օր. է՝ **Դ Ճառընտիր**, թիւ գրչ. 985, մեծ. 31×22. բոլորգիր երկսիւն գրեալ ի վերայ թղթոյ. կարեւոր յիշատակարանք պակասին, յիշի միայն Գրիչն՝ Կիւրեղ, և Ստացողն՝ Պօղոս երէց: Զ օր. է՝ **ԺԵ Տաղարան**. թիւ գրչ. 1371, մեծ. $14\frac{1}{2}$×11, բոլորգիր, գրեալ ի վերայ թղթոյ: Յիշատակարան. «Գրեցաւ Տաղարանս ի թվականիս հայոց մեծաց ՌՂ, դեկտեմբերի լդ, աւրն եշբթի, ձեռամբ ումեմն անարժանի և պարտական բիւր

քանքարոյ, մեղապարտ և անիմաստ Միքայէլ գծող ձեր ծառայի, յետնորդ ամէն սարկաւագի..» ։ Է օր․ է՝ **ԻԳ Ցայսմաւուրք**․ տես յէջ ԺԷ ։ Ը օր․ է՝ **ԺԸ Ոսկեփորիկ**՝ ճառաքեալ ի ձեռն Մովսէս վարդապետի Երզնկացւոյ, որոյ և թուղթն գոյ ի սկիզբն մատենին․ թիւ զրչ․ 986, մեծ․ 30 × 20, բոլորգիր երկիչեան, գրեալ ի վերայ թղթոյ, թուղթք ինչ անկեալ են ի վերջ մատենիս, այլ յիշատակարանն մնայ անթերի ։ Գրիչն է՝ Մխիթար վարդապետ, իսկ Ստացողն՝ Գր․ Խոլաթ ։

**ԻԷ․ ՏԵՍԻԼ ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ**․ — Բնագիր տեսլեանս է՝ **ԺԸ Հատընտիր**․ թիւ գրչ․ 456, մեծ․ 27 × 17, բոլորգիր երկիչեան, գրեալ ի վերայ թղթոյ ։ Գրիչ մատենիս է Եղիա ոմն, իսկ Ստացողն՝ Վարդան երէց․ թուական գրչութեան և այլ կարեւոր յիշատակարանք պակասին ։ Բ օր․ է՝ **ԼԵ Հատընտիր**, թիւ գրչ․ 569, մեծ․ 27 × 17 $^1/_2$, բոլորգիր երկիչեան, բայց պակասաւոր, գրեալ ի թուին հայոց ՋՁԷ (= 1538) ի Համաւոյ Վանս Բալուայ ։ Գրիչն է՝ Մելքիսեդեկ երէց ։

**ԻԸ․ ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՍՈՒՐԲՆ ՍՏԵՓԱՆՈՍ․ ԽՍ** ։ — Բնագիր մատիս է **Ա Հատընտիր**, զորմէ տես յէջ Ա ։ Բ օր․ է՝ **ԺՋ Հատընտիր**, թիւ գրչ․ 299, մեծ․ 21 $^1/_2$ × 15 ։ «Զայս ճառընտիր ըստ խնդրոյ Հ․ Փիլիպպոսի վարդապետի Թէրճ․ Ասլանեան, օրինակեալ յՍտամպօլ Նիկոմիդեայ Տիրացու Յովհաննէս Տէրկարապետեան, ձեռամբ Շաշեան Մանուէլ Աղային առաքեաց առ մեզ Ընծայաբերու... Բուն հին ձեռագիրն յորմէ այս է օրինակեալ անթուական է․ այլ ըստ ասելոյ վերոգրեալ Տիրացուին, թուի գործ ԺԶ դարու, քառածալ դրիւք, բոլորգիր ի վերայ մուրբ մագաղաթի և ունի թղթահամարս 826» ։ Ստացող գրոցս է Համմլայեցի Պետրոս վարդապետ ։ Գ օր․ է՝ **Ի Հատընտիր**, թիւ գրչ․ 1553, մեծ․ 25 × 16, բոլորգիր, գրեալ ի վերայ բամպակեայ թղթոյ, մաշեալ, բղզզեալ և գունաթափ ։ Յիշատակարան․ «Յամի վեցհարիւրերորդի վաթսներորդի և չորրորդի ամի շրջաբերութեան հայոց տումարի (Քրիստոսի 1215) և ի թագաւորութեան Հայոց Լեւոնի, ի վերջացեալ և ի նուազեալ դառն ժամանակի, յաւուրս աստուածապատիւ և հոգեւոր տեառն Յովհաննիսի հայոց կաթողիկոսի, յաշխարհս Պաղեստին, ի մէջ զերութեան Երուսաղեմի առաքելական աթոռոյս» ․ Ի Յովհաննէս գրչէ, ի խնդրոյ Յովհաննեսի ճգնաւորի, առ ի դնել յիշատակ յԵրուսաղէմ ի Ս․ Աստուածածնի տաճարն զոր շինեալ է Գէորգ քահանայ՝ հօրեղբայր Յովհաննու ճգնաւորի ։ Դ օր․ է՝ **ԺԸ Հատընտիր** զորմէ տես ի վեր․ իսկ Ե օր․ է՝ **Բ Հատընտիր** տես յէջ Բ ։

Ի

**ԻԹ.** ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՄԻՆԱՍԻ ԵՒ ԵՐՄՈԳԻՆԻ, ԵՒԳՐԱՓՈՍԻ. — Բնագիր սորա է **Ա ձեռագրի**, զորմէ տես յէջ **ե**։ Բ օր. է **Բ ձեռագրի**, զորմէ տես յէջ **ը**։

**Լ.** ՎԱՐՔ ԵՐԱՆԵԼՈՅՆ ԱՆՏՈՆԻ ԵԳԻՊՏԱՑԻՈՅ, եւն. — Բնագիր վարուցս նոյն է ընդ տպագրին յամի 1855, ի Վենետիկ։ Ի ստորեւ իջիցն ունիմք նշանակել զտարբերութիւնս ըստ օրինակին Երեւակ ամսագրի (1858, Բ վեցամսեայ 43) ուր այսպիսի է յիշատակարան «Թարգմանեցաւ գիրս այս ի սուրբ քաղաքին յԵրուսաղէմ յամի Ն.որդի Ծ.որդի[1] գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. յամին յորում հանգեաւ քաջընթաց երանելին Մաշտոց»։

**ԼԱ.** ՅԱՌԱՋԱԲԱՆ ԴԱՒԹԻ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ, եւն. — Բնագիր սորա է **ԺԳ խմբագիր**, թիւ գլխ. 6, մեծ. 21 1/2 × 13, նոտրգիր գրեալ ի վերայ թղթոյ։ Ի ճակատ մատենկանս գրեալ է. «Յառաջաբանս Սաղմոսացն Դաւթի արարեալ յԱթանասէ, առաքեցին առ մեզ Վենետկայն հարք, որոյ գաղափարն հնագիր առ նոսա է»։

1. Նը պիտի և ոչ Ծ.

Հ. ԵՍԱՅԻ ՏԱՅԵՑԻ

# ՎԱՐՔ

## ԵՒ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՅՆ ՄԵԾԻՆ ԱԹԱՆԱՍԻ

### ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ

Ի ժամանակս բարեպաշտ Թագաւորին մեծին[1] Կոստանդիանոսի էր սուրբն[2] Աթանասիոս սնեալ և ուսեալ յԱղեքսանդրացւոց քաղաքին, և աշակերտեալ ի գնալս առաքինասէր կրօնից, ըստ միայնական վարուց մեծին և սրբոյն Անտոնի. որ և զնորայն իսկ շարագրեաց զվարսն։

Գլ. Ժէ. Եւ եղեւ յաւուր միում՝ սրբոյ Աղեքսանդրի հայրապետին Աղեքսանդրացւոց յեկեղեցին երթալ, ի վկայարան սրբոյն Պետրոսի հայրապետին նմին քաղաքի՝ յաւուր յիշատակի նորա։ Եւ մինչդեռ անցանէր ընդ չինամէջս փողոցաց քաղաքին, տեսանէր մանկունս բազումս ի միասին ժողովեալս ի մէջ հրապարակաց քաղաքին. և միտ դնէր հոգեւոր խաղու մանկանցն, զի որպէս յեկեղեցւոջ կարգաւորեալք միաբան մանկանցն՝ ըստ քահանայական խորհրդածութեան կացեալ, նստուցանէին զԱթանաս յաթոռ հայրապետութեան, և միաբան վկայելով նմա. իսկ այլքն ընդունելով ի նմանէ զձեռնադրութիւն ուխտի եկեղեցւոյ եպիսկոպոսութեան և քահանայութեան և սարկաւագութեան. և այնպէս կարգեցան և կացին ի պաշտաման։

Զայս տեսեալ եպիսկոպոսապետին Աղեքսանդրոսի, և մտախոհ եղեալ սքանչանայր. կայր և միտ դնէր մինչև[3] ի վախճան խորհրդոյն, հիացեալ հարուստ ժամս ընդ շնորհսն Աստուծոյ։ Եւ զի սուրբ էր Աստուծոյ անդէն յազդմանէ Հոգ-

1. ՃԱ. Չունի։
2. ՃԲ. Չունի։
3. Ցօրինակին եղեալ էր՝ փնչեւ, ուղղեցաւ ըստ ՃԱ.

ւոյն իմացեալ ծանեաւ, թէ յետ ելից նորա յաշխարհէ՝ նա նստելոց էր յաթոռ սրբոյ աւետարանչին Մարկոսի, որպէս և եղեւ իսկ։ Եւ զի երեւեցաւ շնորհք Հոգւոյն սրբոյ ի վերայ Աթանասի, հրամայեաց ածել զամենայն մանկունսն ի տուն հայրապետանոցին, և մեծաւ հոգաբարձութեամբ ուսուցանել զմանկունսն։ Եւ զԱթանաս՝ որպէս փոխանորդ իւր յԱստուծոյ ցուցեալ և ընտրեալ՝ առաւել փութով և պնդութեամբ վարժէր. և ապա սարկաւագ զնա ձեռնադրէր, միշտ երթեւեկս առնելով նորա յանապատն երանելւոյն Անտոնի, և ուսանէր զհանդէս առաքինական վարուց նորա։

Յաւուրսն յայնոսիկ ել հրաման ի մեծէն Կոստանդիանոսէ ժողով լինել[1] ընդհանուր եպիսկոպոսաց ի մայրաքաղաքն Նիկիա[2] Բիւթանացւոց, երեք հարիւր և ութուտասն եպիսկոպոսաց, ընդ որս էր և երանելին Աղեքսանդրոս հանդերձ սուրբ սարկաւագաւն Աթանասիւ[3], որ եղեւ իսկ ախոյան ընդդէմ Արիոսի չարափառութեանն. որ և մեծարեցաւ ի սուրբ և ի տիեզերական ժողովոյն, և փառաւորեցաւ յամենեցունց, թէպէտ և ոչ ունէր զաստիճան եպիսկոպոսութեան, այլ միայն սարկաւագ գոլով։

Սակայն յաղագս գիտութեանն[4] և սուրբ վարուցն այնպէս փայլեաց՝ որպէս զարեգակն ի մէջ մեծի սինհոդոսին, որ և գլուխ եղեւ ժողովոյն և զատուցեր եկեղեցւոյ հալածեաց, և բազում քաջութիւնս եցոյց ընդդէմ Արիոսի հակառակութեան և ամբարշտութեանն։ Եւ յետ դարձի սուրբ ժողովոյն՝ եհաս վախճան երանելւոյն Աղեքսանդրի. և յաջորդէ զաթոռն սուրբն Աթանաս՝ հրամանաւ մեծին սուրբն Կոստանդիանոսի՝ որ կոչեցեալ եղեւ յուղղափառաց յաթոռ. սրբոյն Մարկոսի աւետարանչի ըստ աստուածային ազդեցութեանն։

Գլ. ԻՋ. Իսկ զկնի սուրբ ժողովոյն հրամայեաց թագաւորն զամպարիշտն Արիոս յաքսոր առաքել և զհամախոհս նորին. և եղեւ բարեխօսութիւն ի բարեկամաց նորին առ թագաւորն, Սերի Կեսարու և Թէոգնի և այլոց եպիսկոպոսաց, որպէս զի դարձեալ ի Ճշմարտութիւն։ Ցայսոսիկ առաւել քան զառաջինն շարժի մարտն, պատրեալք զկիրտս թագաւորին՝ որք Արիոսին էին խորհրդակիցք։ Եւ նախ զսրբոյն Աթանասէ առնեն մատնութիւն, որպէս թէ անարժան լինել առ կոչումն

1. ձԱ. ժողովել։
2. Աստ յօր. Նիկոմիդիայ, որպէս և ի տպագրեալ։
3. ձԱ. սարկաւագակերպն Աթանասի։
4. ձԱ. անհաս գիտութիւնն։

եպիսկոպոսութեան. և ոչ ի հաւատարիմ վկայից, ասէ, վկայեալ եղեւ։ Իսկ սուրբն Աստուծոյ վեհագոյն ըստ մաքրութեան երեւեալ. իսկ որք՝ ունէին զչարութիւն առ Աթանաս, ստեղեալ ասէին զՄերքէոս՝ թէ զԱրիոս ոչ ընդունի[1] Աթանաս յԱղեքսանդր, զի ջանային նովաւ հաստատել զչարափառութիւնն։ Վասն որոյ գրէ Մերքէոս[2] առ Աթանաս, ընդունել զԱրիոս և զորս էին ընդ նմա, և սպառնայր թէ ոչ հաւանեսցի։ Բայց երանելին Աթանաս ոչ ողոքանաց լսէր և ոչ ի սպառնալեաց զարհուրէր և հաւանէր։ Եւսեբիոս այնուհետեւ հաւանեցուցանէր զԹագաւորն՝ զԱրիոս տեսանել, զի յետ դարձին չեւ էր տեսեալ. այլ պատճառ տեսանելոյն էր այսպիսի օրինակաւ։

Գլ. ԻԵ Կոստի[3] քոյր Թագաւորին Կոստանդիանոսի կին Լիկիանէ Թագաւորին, հրապուրեալ ի քահանայէ ումեմնէ՝ որ էր Արիոսեան, որ անիրաւ ասէր զրպարտեալ[4] զԱրիոս, և հաւանեցուցանէր զնա, զի յանդիման լիցի Արիոս Թագաւորին։ Իսկ Կոստայ ոչ համարձակէր ասել. եղեւ հիւանդանալ Կոստայի և մեռանել. կոչէ զԹագաւորն՝ և յանձն առնու զտուն և զընտանիս իւր, և զքահանայն զայն՝ վկայեալ զերկիւղածութենէ և զբարեմտութենէ առ տուն Թագաւորութեան։ Եւ յետ նորա վախճանին՝ յընտանիս Թագաւորին կարգեալ լինէր քահանայն, և առեալ համարձակութիւն՝ ասէր անիրաւ զրպարտեալ[5] ի ժողովոյն Արիոս։ Եւ պատասխանի առնէ քահանային Թագաւորն, թէ Արիոս ոչ այլապէս խոստովանի քան զոր սուրբ ժողովն ի Նիկիայ հաստատեաց, ընդունիմ զնա պատուով և առաքեմ յԱղեքսանդր[6] ընդունել զնա սիրով. և զգացուցանէ զբանս զայս քահանայն թղթով Արիոսի։

Եւ կոչեալ լինի Արիոս ի Թագաւորէն ի Կոստանդինուպօլիս, ընդ նմին Եւզոյիոս սարկաւագ՝ նզովեալն յերանելւոյն Աղեքսանդրէ, որ յառաջ էր քան զսուրբն Աթանաս։ Եւ եկեալ յանդիման եղեն Թագաւորին. և նա խնդրէր ի նոցանէ զբան հաւատոյն սուրբ ժողովոյն Նիկիայ. նոքա խորամանկեալ առ կամս Թագաւորին՝ գրով հաստատեալ այսպէս։

Որպէս հրամայեաց, ասէ, քո բարեպաշտութիւնդ, քննել զմերն խոստովանութիւն. Աստուծով զնոյն խոստովանիմք մեք և ամենեքեան որ ընդ մեզ են՝ զՀայր և զՈրդի և զսուրբ

1. ՁԱ. Յաւելու՝ ուխտն։
2. ՁԱ. Մեփքիոս։
3. ՁԱ. Կոստի։
4. ՁԱ. զրպարտել։
5. ՁԱ. զրպարտել։
6. ՁԱ. Յաւելու՝ խլխով։

զՀոգին, որպէս ամենայն կաթողիկէ եկեղեցի՝ և սրբոց գիրք ցուցանեն. և եթէ ոչ այսպէս, դատեսցէ զմեզ Աստուած աստ և ի հանդերձելումն յաւուրն այցելութեան: Այլ աղաչեմք զբարեպաշտ և զմարդասէր կամսդ քո, զի տացես գիր խաղաղութեան և միաւորութեան առ ամենայն եկեղեցիս, զի ի մի բերան փառաւոր լիցի Աստուած. և խաղաղացեալք միաբանութեամբ աղօթս մատուսցուք անմահ թագաւորութեանն Աստուծոյ ամենակալի:

Եւ հաճոյ թուեցան ասացեալքն թագաւորին. զի խաբէութիւնն բարի երեւեալ, այլ կատարածն չար: Արդ առաքէ զԱրիոս յԱղեքսանդր, ոչ վէհագոյն փառօք, այլ ընդունելութեան թղթով առ Աթանաս, ընդունել զդարձեալսն: Իսկ սուրբն Աթանաս, վասն որոյ բանս է, ոչ ընդունի զԱրիոս, զի գիտէր զնորա խորամանկութիւնն, որ և անդուստ իսկ ցուցանէ զսերմն չարութեան, և ի վերայ Աթանասի բամբասանս յարուցանէր Սաբելեան ասելով զնա: Յայտնապէս խառնափնդորեալ լինէր Եգիպտոս, զի որք ի Մելետի կողմանէն էին՝ հաւանեցուցանէին զթագաւորն գրել դարձեալ յԱթանաս, ընդունել զԱրիոս ի միաբանութիւն: Իսկ սուրբն Աթանաս զամենեցուն ընկեցեալն ոչ ընդունէր ի հաղորդութիւն զարհամարհեալսն ի ժողովոյն և նզովեալ զնա: Ազդեալ նմա յԱստուծոյ և գրէ առ թագաւորն, մի՛ հաւանել նորա խորամանկութեանն, այլ սուրբ ժողովոյն, որ նզովեալ որոշեցին: Իսկ թագաւորն ջանայր ի միաւորութիւն եկեղեցւոյ, զի այն էր նորա փոյթ: Եւ գրէ դարձեալ առ Աթանաս ընդունել զնա, և դարձեալ սպառնալիս՝ եթէ ոչ հաւանեսցի,

Գլ. ԻԸ. Իսկ որք ի կողմն Մելետին էին յաջողկոտքն՝ ոչ դադարէին առ թագաւորն վասն Աթանասի չարախօսութեանն, զի կարասցեն զսուրբն Աթանաս մերժել և զԱրիոսի մոլորութիւնն հաստատել. որք յոլով ամբաստանութիւն զԱթանասէ հնչակեցուցանէին սուտ. ըստ խորհրդածութեն Արիոսի՝ և Մելետի առնէր մատնութիւն առ թագաւորն, թէ Աթանաս կտաւի զգեստ հրամայէ զգենուլ եկեղեցականաց, և զայս Մակարիս[1] քահանայ Աղեքսանդրացի ի տեղւոջն հանդիպեալ՝ ստացուցանէր զասացեալսն. այլ և թագաւորն ըմբերանէր զաստցողսն: Դարձեալ այլ սուտ վկայէին, թէ ումեմն եռ բազում ոսկի յեկեղեցւոյն Աստուծոյ: Եւ առաքեաց թագաւորն և կոչեաց զԱթանաս, և քննեալ եգիտ զսուրբն ազատ յամե-

1. ՃԱ. Մակարիոս:

նային։ Եւ անդէն տարեալ զնա գրով և մեծաւ պատուով յԱղեքսանդր, սուտ վասն նորա զմատնութիւնն ասելով, զի տոյգ և Ճշմարիտ այր Աստուծոյ է Աթանաս։

Դարձեալ այլ ինչ խորամանկէն։ Է աշխարհ մերձ յԱղեքսանդր Մակեդոնիս անուն, որ յԱղեքսանդրէ հայրապետէն ունէին¹ զձեռնադրութիւնն։ Եւ էր անդ առ նմա² որ ասէր քահանայութեան սուտ՝ ոչ յումեքէ ինչ ձեռնադրեալ։ Զայս լուեալ սրբոյն Աթանասի՝ առաքեաց զՄակարիոս քննել զմահուարժանաւորն, և տուգեալ զնորա յանցգնութիւնն։ Եւ նա հալածեալ գայ ի Նիկոմիդիա, և տայ զինքն ատելեացն Աստուծոյ՝ որք Սեբէին էին և ունէին պատելութիւն առ Աթանաս, որք ընդունէին զնա որպէս քահանայ, և խոստանան նմա եպիսկոպոսութիւն, եթէ ի վերայ Աթանասի յարուցանէ չար բամբասանս³։ Եւ նա ասէ չար զժնդակութիւնս զՄակարայ. և զԱթանաս կախարդ գոլ⁴ ասէր, եթէ ձեռն մեռելոյ մարդոյ առեալ ունի ոչ գիտեմք ուստի է։ Բայց նոքա որ չարութեան էին խորհրդածուք, ասէին, Արսենի ումեմն էր, որ էր յազանգոյն Մելիտոսի։ Զայս ասեն՝ զԱթանասայ՝ ունել վասն կախարդութեան. և այլք վասն այլ իրաց ըստ չարութեանն։ Եւ այս ծանուցեալ լինի առ թագաւորն. և առաքէ զՍեբէոս և զԹէոգնոս, որ զգործակալութիւն աշխարհին ունէր. զի վասն այնորիկ առաջի նոցա լիցի քննութիւնն։ Իբրև լուաւ զայս Աթանաս, առաքեաց և խուզեաց զԱրսենիոս, և գտեալ՝ առ իւր պահէր ի ծածուկ մինչեւ ի ժամն՝ որ պարտն ասել վասն այնորիկ բանն։ Եւ ժողովեցան ի Տիւրոս, եպիսկոպոսունք վաթսուն, վասն խնդրոյն այնորիկ Աթանասի զրպարտութեան։ Այլ զի մի՛ զՆիկիկոյ ժողովոյն հաւատ դարձուցեն յարիոսութիւն համակամք նորա, Սեբի և Թէոգնոս⁵, որք զթագաւորն դարձուցին ընդունել զԱրիոս. այլ հրաման թագաւորին և գործաւորաց՝ ոչ թողացուցանէր զնա։ Եւ Մակարիոս երկաթի կապանօք ածեալ լինի ընդ Աթանասի ի զինուորացն։

Եւ յետ բազում իրի ժողովոյն, զրպարտողքն յառաջ բերէին զձեռն մեռելոյն զոր Արսենի ասէին։ Իսկ Աթանաս ասէ. Եթէ իցէ՞ ոք ժողովոյս որ ճանաչէ զԱրսենիոս։ Յոլովից պատասխանի տուեալ ասեն. Այո։ Յայնժամ հրամայեաց ի մէջ ածել զԱրսենիոս, և ցուցեալ զնորա զերկոսին ձեռսն, ասէ.

1. ՃԱ. տանէին։
2. ՃԱ. Զանձն՝ առ նմա։
3. Յօր. ամբաստանս։
3. Յօր կողմ. եդաք ըստ ՃԱ.
4. ՃԱ. Թուփոս

Չեբրորդ ոչ ունիմ ցուցանել տեղի ձեռին. զայն տեսեալ ամենայն բազմութիւնն հիացան: Այսպէս ճշմարտեալ երեւեցաւ Աթանաս, և զրպարտողքն յամօթ եղեն:

Ապա և զՄակարիոս արձակեն ի կապանացն, զի այսպէս ուղիղք երեւեցան:

Բայց Սեբէոս որ հաւատարիմ էր Թագաւորին, և որք նորա էին համախորհք, որ առ Աթանաս զատելութիւն ունէին, և ոչ իւիք փութացեալ տեսեալ[1] զայրն Աստուծոյ՝ յորս կարծէին և կամէին[2]: Դարձեալ այլ յարէին յայրն Աստուծոյ Աթանաս մատնութիւն. և զայն ի ժամու կարգի ասացին. զի այն էր կամ նոցա՝ Թերեւս կարասցեն զԱթանաս որոշել և զԱրիոս հաստատել յԱղեքսանդրիայ: Եւ ոչ զատոյց ճշմարտութիւնն գրեն վասն Աթանասի զրպարտութեանն. այլ և զայս եւս չարախօսէին, թէ Աթանաս արգելու զցորեանն որ կարգեալ է գալ ի Կոստանդնուպոլիս: Եւ Թագաւորին պղտորէին միտք յայսպիսի խորամանկութենէ ի վերայ սրբոյ Աթանասի. և առ Արիոս զԹշնամութիւն վասն նախանձու ատէին և ոչ վասն հաւատոյ. և զի հաւատարիմ գիտաց կարծէր Թագաւորն Կոստանդիանոս, ընդունի զասացեալսն ի նոցանէ, անգիտացեալ զնոցա խորամանկութիւնն:

Եւ առաքէ հրովարտակ ժողովին ի Տիւրոս, երթալ յԵրուսաղէմ և առաքէ հրովարտակ ի ժողովն ի Տիւրոս. երթալ յԵրուսաղէմ, և զԱրիոս զղջացեալն և զխոստովանեալն զհաւատս սուրբ ժողովոյն, ընդունել ի հաղորդութիւն միաբանութեան, և դարձեալ երթալ յԱղեքսանդր, և Աթանասի գալ հրամայէր ի Կոստանդինուպոլիս: Այսոյիկ այսպէս եղելոյ՝ գայ ժողովն յԵրուսաղէմ, և զԱրիոս ընդունին և առաքեն յԱղեքսանդր, ընդունել զնա ամենեցուն, և մի՛ ինչ այլ ընդ այլոյ լիցի: Եւ Աթանասի երթեալ ի Կոստանդինուպոլիս, հրամայեցաւ ի Թագաւորէն և ոչ եւս դառնալ յԱղեքսանդր, այլ երթալ ի Գալլիա յաքսորս:

Գլ. ԻԹ. Եւ այս լինէր յերեսներորդի ամի Թագաւորութեանն Կոստանդիանոսի: Իսկ Արիոսի հասեալ[3] յԱղեքսանդրիայ իւրովքն, ոչ սակաւ խռովութիւն ի քաղաքին և յԵգիպտոս լինէր ի մուտ Արիոսի և ի մերժելն[4] Աթանասի. զի Թիւրէր զժողովուրդն յիւր աղանդն, այլ ոչ ըստ ուղղափառութեան սուրբ ժողովոյն Նիկիայ ուսուցանէր: Եւ էր յան-

1. ՃԱ. փութ:
2. ՃԱ. կամէին:
3. ՃԱ. հանեալ:
4. Ցօր. մերժելն:

ժամ յաթոռ եպիսկոպոսութեան Կոստանդնուպոլիս սուրբն Աղեքսանդրոս, այր բարեպաշտօն և երկիւղած յԱստուծոյ։ Եւ նա ծանուցանէր Թագաւորին զԱրիոսի զմոլորութիւնն և զթիւրութիւնն, և զպատուհասն ժողովրդեանն, որ ոչ զուղիղ հաւատոն քարոզէ նոցա։

Զայս լուեալ մեծին Կոստանդիանոսի, առաքէ թղթով կոչել զԱրիոս ի Կոստանդնուպօլիս. եւ որք Սեբէին էին ժողով՝ առաքեն առ Աղեքսանդր եպիսկոպոսապետն Կոստանդնուպոլսի՝ ընդունել զԱրիոս, զի մի՛ նզովեսցի։ Բայց սուրբն Աղեքսանդր ոչ վասն նզովիցն հոգայր, այլ վասն թիւրութեան սուրբ ժողովոյն Նիկիայ։ Եւ ի պահս և յաղօթս լինէր երանելին Աղեքսանդր, ի հանդէս բարեպաշտութեան ճգնէր յեկեղեցւոջն Աստուծոյ, կալով միշտ ըստ օրինի արգելանաւորաց, հսկէր բազում հառաչանօք։ Եւ էր խնդիրն յԱստուծոյ այս. Եթէ ճշմարիտ են կարծիքն Արիոսի՝ գոլ զմիաւորութիւն ուղղափառութեանն հաստատեա[1] ի փառս քո. ապա եթէ իցէ նորա խարամանկութիւն, և կործանումն սուրբ հաւատոյ, լոյծ զչարն չար պատուհասիւ յերկրէ, որպէս և իցէ քեզ հաճոյ, զի մի՛ կորիցուք իսպառ։ Եւ այսօրինակ գայ Արիոս ի Կոստանդնուպօլիս. և սուրբն Աղեքսանդր ի ներքս քան զվարագոյրն անցեալ, առաջի աստուածընկալ սեղանոյն զինքն ընկենոյր, և լայր գանապէս զերիս տիւս և զերիս գիշերս անսուաղ մինչեւ տացէ զխնդրուածն։

Իսկ Արիոսի կացեալ առաջի Թագաւորին, ոչ այլ ինչ քան զհաւատոյն Նիկիայ խոստովանէր, և ստորագրէր զհաւատոյն բան, և երդնոյր ոչ այլ ինչ խորհել կամ ասել կամ խօսել[2]։ Եւ զայս եւս արուեստաւորեալ հնարէր պատճառաւ գողանալ զպարզամիտն. ընդ որ զարմացեալ Թագաւորին, ոչ անիրաւ զնորա հաւատոն առէր, և արտաքոյ ինչ սուրբ ժողովոյն հաւատոյ։ Եւ հաւատաց Թագաւորն Արիոսի, և ասաց Աղեքսանդրի ընդունել զնա։ Եւ գրէ թուղթ և հրաման ընդունել զնա. և զնորա խոստովանութիւնն երդմամբ հանդերձ յայտ առնէր գրով և անգիր, անդ և ի հեռաւորս ընդունել զնա ամենեցուն։

Էր շաբաթ յորում ժամու[3] եւ ի Թագաւորէն Արիոս ընծայիւք և հրամանօք, և որք Սեբէին էին՝ յուղարկաւորք էին։ Իբրեւ մերձ եղեն ի փողոցն՝ ուր լինի վաճառ Կոստանդիանոսի,

1. ՁԱ. հաստատեցես։ 3. ՁԱ. յորժամ։
2. ՁԱ. առնել։

և գայթին ի տեղւոջն ուր է Միրանի սիւնն. անդէն հասանէր բարկութիւն Աստուծոյ ի վերայ Արիոսի. ահ յուժմնէ տեամանէ լինի Արիոսի, և յերկիւղէն՝ որովայն նորա խնդրէր լուծումն. հարցեալ թէ իցէ անքոյթ տեղի զպէտսն վճարելոյ, իբրև ոչ մերձ ինչ ցուցաւ՝ որտնեղութիւն զնա ունէր, և ի նստելն իւրոյն աղիքն ընդ աղբոյն ի վայր վայթեցաւ ի տեղւոջն, և աղի ուղղակին հանդերձ լերդիւն և փայծաղամբն միանգամայն ամենայն փորոտիքն արտաքս հոսէին ընդ նստոյ տեղին. և անդէն ի նմին տեղւոջ սատակէր զզուելի և զնշաւակեալ մահն Արիոս, որ մինչև ցայժմ նստոյ տեղին ցուցանի ի Կոստանդինուպոլիս։ Այսպէս նշաւակեալ մահ նորա, և որք Սեբէոսին էին և այլ համախոհքն ըստ Արիոսի մոլորութեանն՝ զընդդէմ հակառակութիւնն դադարեցուցանէին։ Եւ Թագաւորն իբրև լուաւ զմահն Արիոսի, առաւել ևս հաստատէր ի հաւատս սուրբ ժողովոյն. և կոչէր զԱղեքսանդր զհայրապետն Կոստանդինուպոլսի, գոհանայր նմա զՏեառնէ, որ յայտ արար զխորամանկութիւնն Արիոսի՝ նշաւակ մահուամբն յընդհանուր աշխարհս։ Եւ դադարեցին Արիանոսքն առ Թագաւորին ժամանակաւ ի լռութիւն։ Եւ առաքէ առ սուրբն Աթանաս գալ հանդերձ յԱղեքսանդր, և հովուել զժողովուրդ իւր, զոր գնեաց Քրիստոս արեամբն իւրով։

Եւ ապա Թագաւորն զորդիս իւր կացոյց իշխանս ընդ ամենայն երկիր իւրոյ իշխանութեանն, զորս և Կեսարս անուանեաց, ի սահմանմէնէ ի վեր զերիսեանն։

Գլ. Լ. Եւ մեծին Կոստանդիանոսի լցեալ վախճանն և եօթն ամ՝ հիւանդացաւ. և առեալ գրէր կտակ երից որդւոց իւրոց ժառանգաւորաց թագաւորութեանն, և կնքէր և տայր ի քահանայն՝ զոր վերագոյն ասացաք. որ զօղեալ ունէր զԱրիոսի աղանդն. զի յետ վախճանին տացէ յորդիսն զգատամձիսն։ Եւ ինքն Թագաւորն յետ սակաւ աւուրց հանգեաւ ի փառս Աստուծոյ, կատարեալ առաքինութեամբ և ուղղափառ հաւատով. և ոչ ով առընթեր կայր յորդւոցն. այլ յետ մահուն սոսա ազդեցաւ նոցա։

Գլ. ԼԱ. Եւ յետ Թագաւորին վախճանի, որ Սեբէին էին և Թէոգնին, որպէս դէպ ժամանակի գտեալ, զհամագոյութեան հաւատն՝ յԱրիոսին փոխեալ ի ձեռն Արիանեան քահանային, որ պատուեցաւ վասն կտակացն ի յորդւոյ Թագաւորին Կոստանդեայ, որ Թագաւորեաց եղբարբք իւրովք։ Եւ ամբարիշտ քահանայն հրապուրել սկսաւ, նախ զներքինիս և զընտանիս Թագաւորին, և զգլխաւոր ներքինեացն հաստատէր յԱրիոսու-

թեան, և նովաւ զկէսն թագաւորքն, և ապա զթագաւորն իսկ. և այնպէս ի տան թագաւորութեանն սերմանէր զորոմն չարին, և ապա ի քաղաքին յոյժ, և ապա յաշխարհին. որպէս փոքր կայծակն ի հրոյ բորբոքեալ լինէր. և ամենայն ուրեք պատերազմ հակառակութեան յարուցեալ ի քաղաքս և ի գաւառս, ի տունս և ի կողմ արեւելից: Յայսոսիկ ամբոխի մուտ գտեալ՝ որ ի Սեբէոսին էին, թէ որպէս զԱթանաս կարասցեն որոշել պատճառաւ մեղաց: Եւ զայս նախ բանս արկեալ, եթէ ոչ նախ դատեալ եղեւ առաջի դատաւորին և թագաւորաց, և առանց այսր եղեւ մուտ նորա յԱղեքսանդր, ինքն դարձեալ եկալ զաթոռն որպէս և կամեցաւ. և այսպէս զթագաւորն ցասուցանէին:

Գլ. ԼԴ. Եւ էր թագաւորն յԱնտիոք. հրամայէր ժողով առնել յԱնտիոք, պատճառաւ նաւակատեացն Սուրբ Սոփիայ, զոր հայր նորա հիմնարկեաց. և յետ մահուն առ ի վախճանի նորա կատարեցաւ: Եւ ժողովեցան իննսուն եպիսկոպոսք, ոչ վասն նաւակատեաց եկեղեցւոյն, այլ զի զհամագոյութիւն հաւատոյն յԱրիոսութիւն փոխարկեսցեն, որ նորին աղանդոյն էին խորհրդածուք. և զսուրբ Աթանաս Աղեքսանդրացին որոշեսցեն ի հայրապետութենէն: Զայս զգացեալ Երուսաղեմի եպիսկոպոսն, ոչ գայ ի ժողովն, այլ և ոչ Յուլիոս մեծին Հռոմայ եպիսկոպոսապետն գայ ի ժողովն. որ ոչ է արժան առանց նորա կամացն ժողով լինել՝ ըստ սահմանի առաքելոցն: Բայց նոքա դատապարտեցին զԱթանաս՝ ոչ եկեալ ի ժողովն. մանաւանդ զի անձամբ իսկ դարձեալ եղեւ յաթոռն, առանց ժողովոյ վկայութեան, և ձեռնադրեն զԳրիգորիոս յԱղեքսանդր, այլ ոչ ինչ ի նոցանէ ընկալեալ եղեւ:

Եւ եղեւ ի ժամուն յայնմիկ պատերազմ սաստիկ աշխարհական, ազգ մի Փռանգոս[1] անուն, արշաւանս գնէր ի կողմանս Անտիոքայ: Եւ կոչեցաւ զօրս յԱսորեաց, որք եկեալ ընդ այն զի զԳէորգ ի տեղւոջն հաստատեսցեն, և զԱթանաս կալեալ տարցեն ի ժողովն յԱնտիոք: Զայս ծանուցեալ Աթանասի հրամայէ հսկումն առնել, զի եղիցի ելք իւրոցն յԱստուծոյ: Եւ մինչդեռ կայր ժողովուրդն, և սարկաւագն քարոզէր և միաձայնեալ զՏէր ողորմեայն ասէին, և զինուորքն պահէին զդուրսն, և նա ելեալ ընդ մէջ նոցա գնայր. զի մի՛ ամբոխեալ վնասեսցի ժողովուրդն: Եւ ոչ ոք կարաց գիտել զնորա ելսն. բայց զոր ինքն կամեցաւ տանել ի Հռոմ առ Յուլիոս, ցուցանել նմա զիրսն աղետից որ գործեցանն:

1. Յոր. Փռանգոս:

Գլ. ԼԶ. Այլ Արիանոսքն ոչ դադարէին զբարկութիւնն վասն Աթանասի. զի եթէ նմա յաղթեսցեն, նովաւ ամենայն ուղղափառսն յաղթել վարկանէին։ Որ և զայս սուտ բանս արկեն առ Թագաւորն. եթէ զցորեանն որ յԱղեքսանդր ժողովի, ըստ հրամանի հօր քո, ի տուրս կարօտելոց, Աթանաս զայն վաճառեալ՝ և ժողովեալ արծաթ բազում, և անէ զի՛նչ և կամի։ Յայսոսիկ առաւել ցասուցեալ մահ սպառնայ Աթանասի՝ առն Աստուծոյ։

Զայս ամենայն ստուգեալ մեծն Յուլիոս Հռովմայեցի ի սրբոյն Աթանասէ՝ զԱրիանոսացն զմոլորութիւն և զրպարտութիւն որ վասն Աթանասի, և զնախանձն որ ի հակառակացն. և (զի) նա զճշմարտութիւն քարոզէր պատուոյ ժողովոյն, զհաւատս և զսահմանադրութիւնս կանոնի նոցա. գրէ ապա սուրբն Յուլիոս առ Թագաւորն արեւմտից, և ծանուցանէ նմա զթիւրութիւն հաւատոյն և զրպարտութիւն և զորոշումն սրբոյն Աթանասի, որ էր քարոզ սուրբ հաւատոյն. այլ և ոչ ժողովքն Անտիոքայ են ընդունելի. և որ ի նոյն յարին Արիանոսացն մոլորութիւնք։ Ստուգիւ գրեաց և առաքեաց՝ ի ձեռն հաւատարիմ առն։

Իսկ իբրեւ ստուգեաց Թագաւորն արեւմտից ի թղթոյն Յուլեայ զամենայն. ապա գրէ յարեւելից Թագաւորն՝ առ եղբայր իւր, մի՛ ընդունել զհակառակողն ճշմարիտ քարոզչացն սրբոյն Աթանասի, և նորին նման խորհողացն ուղղափառացն, որ զժողովոյն Նիկիայ խոստովանելին զկանոնեալ սահման, և մի՛ որ յաղագս նոցա է զրպարտութիւն յԱրիանոսացն հերձուածողաց. զոր և ստուգեալ և քննեալ գտցես սուտ. որպէս և էր իսկ. և դարձուսցես զդասս յիւրաքանչիւր կոչեցեալ յաթոռսն ի Տեառնէ։ Զայս ընթերցեալ Թագաւորին արեւելից, տարակուսեալ ի խորհուրդս իւր, և վասն խռովութեան և վերստին չփոթման՝ ոչ ինչ անէր։

Գլ. ԼԷ. Ապա խորհեցան ժողով առնել երկոքին Թագաւորքն որպէս զի տեսցեն վասն խնդրոյն որ ի մէջ նոցա. և էր այս յամի յետ վախճանի Կոստանդիանոսի տասն և մի ամ. և ժողովեցան ի քաղաքն Սարդիկէ[1], յարեւմտից երեք հարիւր, և յարեւելից՝ եօթանասուն և վեց. և զի ոչ գային արեւելեանքն ամենեքեան ի ժողովն, պատճառեալ զպատճառս ինչ. և որք եկինն՝ ասեն. ո՛չ է պարտ Աթանասի գալ ի ժողովս. և հաւանեալ նոցա վասն աղմկին, ոչ եկն ի ժողովն Աթանաս։ Իսկ եկեալ ի Փիլիպպուպոլիս ժողովն արեւելից և յայտնապէս զհա-

1. Յօր. աստ և ի սորբ. եղեալ էր՝ Սարդիկէ։

մադրութիւն ոչ քարոզէին ըստ Նիկիայ. որ և թղթով յայտ առնէին արեւմտեան ժողովոյն որ ի Սարդիկիայ զանձման կարծիս հաւատոյ: իսկ որք էին ի հաւատս ողջամիտք և զաւանման հաւատոյն ունէին, զհաւատս որ քարոզի յեկեղեցւոջ Աստուծոյ ժողովոյն Նիկիայ. զնոյնն հաստատեն գրով և անգիր անդ ի հեռաւորս, և զսուրբն Աթանաս ընդունել: Եւ որք ըստ նոցայն էին՝ որոշեալք յիւրաքանչիւր տեղիս դարձցին. և որ ի նոցանէն որոշեալք եթէ պատճառօք ոմամբք իցեն, քննեալ որոշեսցին ըստ ստուգութեան նոցա: Եւ զայս սասցեալ որք ընդ ճշմարտութեան էին ի յոլովից ընտրութեան, զնոյն հաստատեցին հաւատք և սահման կանոնի: Եւ սփռեցան յիւրաքանչիւր քաղաքս. և ոմանք ոչ նոյնպէս քարոզեն, այլ շփոթեալ ազմկէին ի տեղիս տեղիս: Եւ արեւմտեան թագաւորն գրէ առ եղբայրն իւր, զժողովոյն Սարդիկեայ զհաւատոյն հաստատութիւն, և զարժանաւորսն դարձուցին յիւրեանց տեղիս, և զսուրբն Աթանաս՝ և որք ընդ նմա էին որոշեալք, որք ոչ վարկպարազի թուէցին. զի մի՛ թշնամութիւն լիցի ի մէրում եղբայրութեանս: Իսկ Կոստանդիոս ոչ կամեցաւ զայս յանձն առնուլ. և կոչեալ զժողով արեւելեան եպիսկոպոսացն զաստացեալսն յեղբօրէն ծանուցանէ նոցա: Իսկ նոքա լաւագոյն համարեցան խափանել զմարտ եղբարցն երկոցունց թագաւորացն, քան եթէ զանց առնել զընտրութիւն ժողովոյն արեւմտից: Ապա հաւանի այսմ թագաւորն, և գրէ առ Աթանաս և կոչէ առ ինքն: իսկ նա ի զրպարտողացն կասկած ունելով ոչ գայր: Դարձեալ երկրորդ անգամ գրէ, և զկարծիսն հանդերձ երդմամբ ի բաց հանէր: Զայս թուղթ տեսեալ Յուլիոս՝ փաստահեցուցանէ զնա երթալ, և կարծիս առնուն և նմա գալ յուղիղ հաւատն: Այնուհետեւ գայ Աթանաս ի Կոստանդնուպոլիս առ թագաւորն. և Արիանոսացն էր սուգ մեծ յոյժ: Իսկ թագաւորն ոչ խռովարար զնա ընկալաւ, այլ իմաստապէս իմն, ըստ ընտրութեան ժողովոյն, ասէ, կալջիր զաթոռ քո կամաւ եղբօր իմոյ հաւանութեամբ: Արդ խաղաղութիւն լիցի. և զի են ոմանք յԱղեքսանդրիայ որք խղճեն ընդ քեզ հաղորդիլ, ո՛վ Աթանաս. տացես նոցա զեկեղեցի մի՝ որ զիւրեանց պաշտօնն կատարեսցեն: Զայս ասաց ի խրատուէ Արիանոսացն: Ասէ Աթանաս. Իշխանութիւն ունիս զի՛նչ և կամիս, ո՛վ թագաւոր. և ես ո՛չ եմ որ ընդդէմ տասցից, զոր և ես ի նոցա հաղորդութեանէն արտաքս եղեալ արարից զհրամայեալսդ: Յայնժամ առնու հրաման ի թագաւորէն գալ ի տեղի իւր: Եւ ընդունել զնա ամենայն քաղաքացեացն մեծարանօք և պատուով որպէս

արժանաւոր։ Եւ գրեաց թուղթ (թագաւորն) յաղագս Աթանասի յեպիսկոպոսունս և յուխտաւորս և յամենայն ժողովուրդս, ընդունել զնա. և որ վասն նորա թուղթ հակառակութեան և մատնութեան՝ այրել հրամայեաց։ Յայսոսիկ վառածացեալ Աթանաս՝ երթայ զճանապարհ իւր ընդ Ասորիս և ընդ Պաղեստին. և գայ յԵրուսաղէմ և պատմէ Երուսաղեմի եպիսկոպոսին Մաքսիմիանոսի զառ Սարդիկեայ ժողովոյն, և եթէ զիարդ և զթագաւորացն կամս արարեալ ասէր, ըստ ընտրութեան ժողովոյն Սարդիկեայ։

Իսկ նա ուրախ լինի ընդ դարձն Աթանասի, առնէ ատեան, և ընդունի զնա մեծաւ պատուով, և յուղարկէ զԱթանաս յԵգիպտոս և յԱղեքսանդր թղթով, ընդունել զնա։ Եւ ընդ որ անցանէր սուրբն Աստուծոյ, խրատէր և ուսուցանէր վասն ուղղափառ հաւատոյ և պարկեշտ վարուց և առաքինութեանց։ Նա առնէր ձեռնադրութիւնս և յօրդարէր զեկեղեցիս, որ յԱրիանոսաց էին ապականեալք ըստ ժամանակին այնմիկ։ Յայնմ ժամանակի զօրավար ոմն յառնէ ի վերայ արեւմտից թագաւորին ի յորդորմանէ եղբօր իւրոյ, սպանանէ զնա և ինքն տիրէ աշխարհին, և բազում հեղմունք արեանց լինէին։

Գլ. ԼԸ. Այսոցիկ այսպէս եղելոց յետ չորրորդի ամի ժողովոյն Սարդիկեայ, թուեցաւ ամենեցուն թէ Կոստանդին տիրէ ամենայնի ինքնակալ թագաւոր ի վերայ հայրական իշխանութեանն։ Եւ ի խարդախութենէ չարին, և ի խորամանկութենէ Արիանոսացն, զհակառակն որ վասն հաւատոյն չարժէր զիւր զչարութիւնն, զոր ակամայ հաւանեցաւ վասն սրբոյն Աթանասի։ Եւ այնքան Արիոսքն յօրդորեցին զմատնութիւնն առ թագաւորն զԱթանասէ, վասն որոյ հրաման լինի սպանանել զնա ուր և գտցի. ընդ նմա և զԹէոդուլոս և զՈւղիմոս զեկեղեցւոյ սրբոյ զառաջնորդսն։ Զայս զգացեալ յառաջագոյն փախեան ի սպառնալեաց թագաւորին. և առնու զեկեղեցին Աղեքսանդրու՝ Գէորգ, որ նախ իսկ յԱրիանոսացն ձեռնադրեալ էր Լաւոդիկեայ եպիսկոպոս։ Որ մինչ էր քահանայ, որոշեալ էր վասն պոռնկութեան, որ էր ժպիրհ այր, և խորհէր միշտ հակառակ սրբոյն։

Գլ. ԼԹ. Իսկ ամբարիշտն Գէորգիոս եւս առաւել չարիս յԱղեքսանդրիայ ցուցանէ, համարձակութիւն առեալ ի թագաւորէն, ըստ խրատուն անօրէն հոգեմարտին Մակեդոնի, որ յայնժամ ունէր զաթոռ Կոստանդինուպոլսի։ Եւ եղեւ յաւուր միում զի ժողովք բազումք ժողովեալ էին ի սուրբ եկեղեցւոյն յԱղեքսանդրիայ, և խնդրէին այցելութիւն ի Տեառնէ։ Եւ զօ-

բականքն պատեցին զեկեղեցին, եպիսկոպոսս զօրս գալին՝ կապեցին, և զքահանայսն որ ի ներքս և զուխտաւոր կուսանսն զարս և զկանայս՝ արկին ի բանտս ի խոշտանգանս գանի. սափղեցին ի բոց կալ յուղիղ հաւատոյն և յանձն առնուլ զԱրիոսութիւն. իբրև տեսանէին յաղթողս ի հաւատս՝ բրօք հարեալք լինէին և պէսպէս գանս տանջանօք տագնապէին։ Զի ոմանք մեռան, և ոմանք վիրաւորեցան անդանօր, և ոչ էր ողորմութիւն, այլ անքաղցրութիւն յորդեալ որպէս հեղեղատ ողողել գերփել կործէին զուղիղ հաւատս։ Եւ զեպիսկոպոսս զոր ըմբռնեցին տանել քան զերեսուն, որ դառնապէս վարեցան ի մեռանել, որք յուղեալք ի Ճանապարհի մեռան իսկ։ Եւ եղեւ զի յետ Պենտակոստէին սպասեալ զշաբաթն հաւատացեալ ժողովուրդն, ժողովեալ ի հանգստարան սուրբ աւետարանչին Մարկոսի՝ և այլոց հայրապետացն՝ յաղօթս, խնդրել այցելութիւն ի Տեառնէ՝ նոցա բարեխօսութեամբ. հասեալ զգիշերն ցայգ կիրակէ՝ յաղօթսն Աստուծոյ։ Զայս լուեալ ամենաչարին Գէորգայ, զինէր զզօրավարն մանիքեցի զօրօք, մահու մատնել պժողովեալսն ի հանգստարանն. և հասեալք ի տեղին աստուածատուն՝ ոչ գտին զգնայեալսն, ըստ նախախնամութեանն Աստուծոյ, բայց ի սակաւուց զորս հարեալ։ Այսպէս էր մարտ չարին ի սուրբս։

Գլ. Խ. Ընդ այն ժամանակս Թագաւորն զԳաղունիոս՝ զեղբօրորդին իւր առնէր կայսր, զընտանի անուն եդեալ, և առաքեալ յարեւելից կողմն հոգալ զաշխարհն։ Եւ հասեալ յԵրուսաղէմ. յայնժամ երեւեցաւ նշան սուրբ խաչին յարեւելից, որպէս սիւն լուսոյ խաչաձեւ յերկնից երեւեալ. որ զամենայն աշխարհն հիացուցեալ զարմացուցանէր, թէ զինչ լիցէ նոր և սքանչելի տեսիլն այն։ Եւ Թագաւորն զօրավարս և զօրս առաքէր ընդդէմ Մագնեսի բռնակալին ի մարտ պատերազմի, և ինքն մնայր ի Սերմիս տեսանել զմարտն։

Գլ. ԽԱ. Յայնժամ լուաւ Թագաւորն վասն Փոտինոսի Մարկեղի աշակերտի, որ նոր մոլորութիւն ուսուցանէր. սուտ մարդ զՔրիստոս ասէր, որ էր առաջնորդ եկեղեցւոյն։ Եւ առար ժողով եպիսկոպոսաց, և ժողովեալք նզովեցին զՓոտինոս և զվախճանեալ նորա վարդապետս աղանդոյն զՄարկեղոս, և զՍաբէլ Լիբացի և զՊաւղոս Սամոստացի. և զայս որպէս զբարուոք և զիրաւացի արար՝ ամենեքեան գովեցին, բայց զհաւատոյն ոչ ուղիղ դաւանեցին՝ որպէս յայտ ցուցանեն նոցին բանք ձայնիւ իւն հնչեցեալ Եւլագացի առաջաւոր, և որ Հռոմմայեցւովքն։ Իսկ Մագնեսի հասեալ ի Հռոմ, զանկղիտոսն սպա-

նանէր և այլս բազումս, բայց զօրաց Թագաւորին ոչ էր մտեալ հանդերձ Հռովմայեցւոց բազմութեամբն՝ հալածէին։ Եւ յետ բազում մարտից, և արգելանայ բերդից և ամրոցաց, ոչինչ կարացեալ յաղթահարել ունել զգէմ Մագնեայի, փախստական ելեալ երկից աւուրց ճանապարհ, ուր ընտանիք իւր. և սպան զեղբայր իւր որ կայսր անուանեալ էր, և զմայր իւր. և սպա և զինքն իսկ սպան, զի մի՛ ի նոցանէն չարաչար մեռցի. և միւս այլ եղբայրն՝ ինքեան խեղդեալ մեռանի։ Այս այնուհետև արևմուտք խաղաղութիւն առեալ ընդ ձեռամբ անկան։ Դարձեալ յարևելս յառնէ պատերազմ ի Հրէից ընդդէմ Գաղիոսի՝ զոր կայսր անուանեաց Թագաւորն գնա, զոր առաքեաց զօր բազում և զքաղաքս ապստամբաց քանդել հրամայեաց, զմիաբանեալս ընդդէմ Թագաւորի, և զԳաղղիոս յայնոսիկ սպանին և զՅուլիանոս զեղբայր նորին ի նոյն պատիւ կայսերական Թագաւորն կացուցանէր։

Գլ. ԽԲ. Իսկ Կոստանդիանոս յաշխարհական պատերազմացն անհանգուցեալ՝ եկեղեցւոյ պատերազմ յառնէ. և հրամայէ ժողով լինել եպիսկոպոսաց յարևմուտս և յարևելս, և ինքն երթայ ի Հռոմ։ Յայնժամ վախճանի Հռովմայ եպիսկոպոսն ի տասն և ի հինգ ամին, և փոխանորդ նորա կոչի Լիբերիոս։ Իսկ յԱնտիոք Աչետիոս, որ զԱրիոսին ունէր զկարծիսն, բայց ի նոցանէն որոշէր իմն, զի էր այր հակառակող. և ասէր զինքն փիլիսոփայ, այլ և ոչ էր, զի ոչ ի ստոյգ իմաստասիրէ էր ուսեալ և Թիւրէր զժողովուրդն. և որոց յայնժամ Արիանոսք, այժմ Եւնոմիանոսք կոչին. քանզի յետ ժամանակի զնորայն վարժելով զհակառակարանութիւնս չարագրեաց։ Իսկ Թագաւորին հրամայեալ զժողովն արևմտից ի Մեդ՛իոլան քաղաքի առնել, և արևելիցն առ Նաւս գալ, որք էին իննսուն։ Եւ նախ քան զամենայն զդարձ Աթանասի ասէին և անիրաւ զրպարտութիւնն. իսկ որք զայս ասէին՝ զնոսա արտաքսել հրամայէր ի մեռաղս, զի այս էր նորա փոյթ, զի զամենեսեան Արիոսութեան աղանդն միաւորեսցէ։ Բայց ոչ յայտնապէս զինքն ցուցանէր Արիոսեան, այլ խորամանկեալ, որ այնր աղանդոյն էր մեծարէր, իսկ որ ըստ ուղղափառութեանն՝ անարգէր, և զբազումս արտասահմանէր հրաման Թագաւորին. և այնպէս խառնափնդորեալք ոչ կարէր ածել ի կամս իւրոյ չարութեան՝ որպէս կարծէր. այլ ամենայն ուրեք մարտ և խռովութիւն, և ոչ կարէր զժողովն ի կամս իւր առնել. և ոչ դադարէր յայնցանէ որոց յուսայրն. և զի երկայնագոյն է ըստ ժամանակին պատմել զվիճմունս եպիսկոպոսացն և ժո-

զոմրդոցն, զասելս և զլսելս վասն հաւատոյ ըստ Արիոսի մոլորութեան և ըստ Մակեդոնի հոգեմարտութեանն։ Եւ Արիանոսքն արարած ասէին զՈրդին, այլ ոչ ի բնութենէ Հօր, այլ յետ ժամանակի գոյացեալ. և Հայր մեծ քան զՈրդի, և Հոգին նուազ. ոմն քան զոմն խոնարհագոյն ի Հօրէ և յաստուածութենէն. զի թէպէտ և սուրբ ժողովն Նիկիայ նզովեալ արտաքսեցին զԱրիոս, և դարձեալ զպատիժս պատուհասի ընկալաւ, սակայն սերմն չարին ի ձեռն Թագաւորին որ պատրեցաւ յԱրիոսեան քահանայէն, ոչ դադարէր ի Թիւրելոյ զուղիղ հաւատս. և որք Արիոսեանքն էին՝ համարձակութիւն առին առ ուղղափառսն, որ և զՄաքսիմոս Երուսաղեմի եպիսկոպոսն արտաքսեցին, և զԿիւրեղ ի նորա տեղին կարգեցին եպիսկոպոս. բայց ունիմ ասել զպատճառսն. զբազումս և զայլս ոմանս արտաքսեցին, և զոմանս ի տեղիս նոցա կարգէին եպիսկոպոսս Թագաւորաւն.

Գլ. ԽԳ. Իսկ Մակեդոն հոգեմարտն և աստուածամարտն կոչեցեալն ի սարկաւագութենէ յեպիսկոպոսութիւն Կոստանդնուպոլսի, որ ընտրեցաւ յԱղեքսանդրէ երանելոյ. սա բազում չարիս եցոյց ի Կոստանդնուպոլիս և ի մերձաւոր աշխարհն և ի քաղաքսն. բազումք ի նշանաւոր արանց ըմբռնեալք լինէին և տանջեալք որք ոչ կամէին ընդ նմա հաղորդել. և յետ չարչարանացն՝ բռնութեամբ փայտիւ բացեալ զբերանն զհաղորդութիւն նոցա տայրն. որք չար քան զտանջանսն զայն վարկանէին և զկանայս ի պղծութիւն զինուորաց հրամայէր. և որք ընդդիմանայինն՝ հարուածք նոցա լինէր, և կիսոցն զստինսն հատանէին, և կիսոցն այլ ինչ գառն տանջանս առնէին։ Այս էր նորա փոյթ, զի զամենեսեան զնոսա աստուածամարտութեանն արասցէ հաղորդս. և եւս չարագոյն քան զհեթանոսացն առնէր տանջանս, և զգործիս տանջանաց կազմէր հրով և սրով և փայտիւ, և ոչ դադարէր ի չար բռնութենէն և յաստուածամարտութենէն Մակեդոն. բայց սակայն ոչ եթող զնա Աստուած առանց վրէժխնդրութեան։ Էր հանդստարան Թագաւորին Կոստանդնի, յորում էր տապանն, և էր կարծիք անկման տանն ի վերայ տապանին։ Իսկ Մակեդոն կամեցաւ փոխել զտապանն յայլ տեղի. իսկ որք համագոյութեանն էին խոստովանողք՝ ոչ արժան վարկանէին զայն առնել։ Իսկ նորա արհամարհեալ զնոսա՝ իւրայովքն արար զոր կամեցաւ։ Եւ լինի մարտ մեծ յամբոխին, և բազումք մեռան. որպէս զի գաւիթ եկեղեցւոյն լնոյր արեամբ սպանելոցն։ Զայս անցս լուեալ Թագաւորին, բարկացաւ ի վերայ նորա որպէս ի վերայ մա-

հպարտի, և զի տանց նորա փոխեաց զտապանն, և տանջեաց ընկենուլ զՄակեդոն յաթոռոյն, և մերժել զնա որպէս դատապարտեալ և արժանի մահու։ Եւ նա ի նեղչարութենէն քրտնեալ յախտ մահու անկեալ սաստկեցաւ չարաչար. և տայց ամենայն ոք, եթէ է Աստուած որ դատեաց զնա յերկրի. սակայն զսերմն չարին հոգեմարտութեան եթող ի խորհրդականս իւրոց անաստուածութեանն։

Գլ. ԽԴ. Բայց պարտ է զԹիւ ժողովոցն ասել։ Յետ Նիկիոյ սուրբ ժողովոյն, որ ոչ ամենայնիւ ըստ նոցա սահմանադրեցին զհաւատ և զկանոն, երկուս յԱնտիոքայ նուականս, երկու գիրս հաւատոյ եդին. իսկ երեք ի Գաղիայ՝ ի Կոստայ ժողովն, որ զԱթանաս և զՊաւղոս դարձուցին, յորոց ի Նարկիսոսէն է խորհուրդ. իսկ չորքն Եւդոքսին՝ որ յԻտալիայն առաքեալ եղեն ի Թագաւորէն ժողով, յորոց մինն Արիմինոյն ընթերցեալ. իսկ ութ՝ որ և ի Սելեւկիայ՝ ուր Ակակայն են ընթերցեալ հաւատք. իսկ իններորդ՝ զոր ի Կոստանդինուպոլիս, զոր յաւելուածով ընթերցեալ. որ կայ ի նմա, ոչ էութիւն և ոչ գոյութիւն ի վերայ Որդւոյ և Հոգւոյն սրբոյ՝ ճշմարտապէս խոստովանէին։

Բայց զՄակեդոն նզովեցին որպէս զբազում մահուց պարտաւոր, և զի զարկաւագ ոմն ի պոռնկութեան գտեալ ոչ որոշէր. զորոյ յառաջագոյն զմահն ասացաք։

Եկին ժողով ի Գանգրիայ՝ վասն Եւստաթէոսի որ զամուսնութիւն արգելոյր, և զմիս ուտել պիղծ ասէր, և զբազումս որոշէր ի մանկերաց և յօրինաւոր ամուսնացելոց. և զեկեղեցիս թողեալ՝ ի տունս կատարէր զխորհուրդն, և զծառայս մեկնէր ի տերանց՝ պատճառաւ աստուածպաշտութեան, և կանանց զհերս կտրել, և ի տունս ծերունականս պահել, և ի տունս ամուսնացելոյ ոչ աղօթել. և քահանայ որ կին ունի՝ խորշել ի նմանէ որպէս ի պղծոյ, զժողովն օրինադրէր որք ժողովեալ նզովեցին զԵւստաթէոս, և զՄելիտոս Անտիոքայ եկեղեցւոյն ձեռնադրեն, որ զսովորական վարդապետութիւն բարեպաշտութեան վարուցն ուսուցանէր. իսկ զհաւատոյն բան՝ ոչ յայլ ինչ խոտորեալ ի ժողովոյն հաւատոյ, այլ զՆիկիոյն խոստովանեալ հաւատ։ Իսկ Թագաւորն զայս ծանուցեալ՝ առաքէ արտաքսել զնա յաքսորս. այլ որք ճշմարտութեան էին նորա աշակերտք, ոչ յումեքէ խոտորէին ի նորա լուսաւոր վարդապետութենէն։

Իսկ Թագաւորն Կոստանդիանոս եկեալ յԱնտիոք, ի տեղին փոխանորդէ այլ՝ որ զաղանդն Արիոսին ունէր։ Եւ ինքն հա-

տանէ նմա լուր վասն Յուլիանոսի կեսարու՝ որ ընդ բազում բարբարոսս (պատերազմեալ) յաղթեաց, և ի ձեռն այսր յաղթութեանց՝ յորջորջեցաւ նա յամենեցունց թագաւոր. և ի ջան մտեալ մեծաւ պատուով ի նորայն գնայր պատերազմ. և եղեալ ի մէջ Կիլիկիայ, և եհաս նմա վախճան մահու, կատարեալ զկեանս իւր ոչ ուղղափառութեամբ, որ ունէր ամս քառասուն և եօթն, թագաւորեալ երեսուն ամս և եօթն, երկերիւր և հինգ ուղղիմպիադայն. ոչ բարեպաշտաբար որպէս և նորին հայրն Կոստանդիանոս ինքնակալ թագաւոր։ Այսպէս կատարեցաւ ի նոյեմբերի ամսոյն երեքն։

Գլ. ԽԵ. Իսկ Յուլիանոս եբրեւ լուաւ զմահն՝ գնաց ի Կոստանդնուպօլիս իսկոյն, և մտեալ ի ներքս թագաւորեաց, և ինքնակալ զինքն եդոյց աշխարհի, և մարտեաւ նա ընդդէմ ուղղափառ հաւատոյ։

Գլ. ԽԶ. Յայտնի լինէր խռովութիւն յԱղեքսանդր այսպիսի պատճառաւ։ Էր աւերեալ մեհեան ի տեղւոջ ուրեմն, զոր կամէր Գէորգ Արիոսեան, որ ունէր զտեղի Աթանասի սրբոյ՝ շինել։ Եւ գտին խորս, և ի ներքս գագաթունս[1] արանց և մանկանց, ըստ հեթանոսաց աղանդից։ Զայսոսիկ ցուցեալ հեթանոսաց ծաղր և այպն զնոսա առնէին. և նոցա ոչ բերելով զնախատանսն, յարեան բարկութեամբ ի վերայ քրիստոնէիցն սրաւք և բրաւք և քարամբ, զրապուեալս ի յԱրիանոսացն սպանին, որք ընդ Գէորգին էին. և քարշեալ զԳէորգիոս կապեցին և կենդանոյն այրեցին. որպէս եղեւ ամենեցուն առել վրէժխնդրութիւն յԱստուծոյ, զի չարքն չարաւ կորիցեն. և արդարք մի՛ վնասեսցին, զի ոչ սակաւ չարիս անցոյց Գէորգիոս յԱղեքսանդրիա։

Գլ. ԽԷ. Զայս լուեալ Յուլիանոսի գրէ թուղթ սպառնալեաց և ցածուցանէ զխռովութիւնն։ Եւ միաբանեալ Աղեքսանդրացիքն՝ խնդրէին ի թագաւորէն դարձուցանել զսուրբ այրն Աստուծոյ զԱթանաս՝ յաթոռ իւր. զոր հաւանեալ դարձուցանէ զԱթանաս և զամենայն աքսորեալսն ի տեղի իւրեանց։ Եւ դարձեալ սուրբն Աթանաս ի տեղի իւր. և արտաքսեալ լինէին յեկեղեցեացն Արիանոսքն, և նմա հաւատացան ժողովուրդք և աղօթից տեղիք. իսկ Արիանոսքն զԼիկիոս ձեռնադրեն ի տեղի Գէորգայ գլխաւոր։

Բայց Աթանասիոս աղաղակէր[2] վարդապետութեամբ, խրատէր և ուսուցանէր զվարս պարկեշտութեան, և հաստատէր ի

1. Յօր. գագաթունս։ 2. Այլ օր. խաղաղանէր։

հաւատս որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին սուրբ, և յանհանճար աղանդիցն Արիոսի և հոգեմարտիցն՝ մաքրէր զիւր հօտն ի փառս և ի գովեստ ամենասուրբ Երրորդութեան:

Եւ ամենեքեան որք արտաքս սահմանեալք՝ դարձեալք, զիւրաքանչիւր տեղիս հաստատէին ի հաւատսն, և զհակառակսն ըմբերանէին ի սուրբ գրոց ի Հնոյ և ի Նորոց, և զհոգեմարտս և զՍաբելլայիս, և զՊաւղոսայիս և զՓոտինայիս, և զՄանիքեցիս և զԱպողինարիսս, և որ հերեսիոտացն մոլորութիւնք էին, այլ յայլմէ երեւմանց ի պէսպէս աղանդս ձեռնարկեալ հակառակ ճշմարտութեանն՝ որ յԱստուծոյ, որ ի վերայ ամենեցուն էր հռչակաւոր և ականաւոր[1]: Երանելին Աթանաս, որ զնոյն ասէր առ մերձաւորս զհաւատոյն բան՝ ըստ սուրբ ժողովոյն Նիկիայ, և ըստ սահմանի կանոնադրութեան. և զնոյնս դարձեալ գրէր, ոչ յուսմքէ գրդուեալ և խոտորեալ[2] յընդդիմակացն, և հաստատուն[3] և անշարժ և անդրդուելի մնայր ի վերայ հիման աւանդութեան առաքելոցն և մարգարէիցն:

Գլ. ԽԲ. Ասէր զխոստովանութիւնն այսպէս առաջի ամենեցուն գրով՝ ըստ վերաձայնութեան ժողովոյն, զոր տիեզերական եկեղեցիք ուղղափառաց քարոզեն միշտ:

Անսկիզբն Հայր ամենակալ և մշտնջենագով, արարիչ երկնի և երկրի և որ ի նոսա արարածք: Եւ Որդի ի Հօրէ ծնեալ և ոչ արարեալ, արարչակից Հօր և մշտնջենակից, անժամանակ. և անմարմնապէս[4] ի նորին բնութենէ և ոչ այլուստ ի ներքս մտեալ, և ամենայն ինչ նովաւ եղեւ:

Հոգին սուրբ ի նոցունց էութիւնէ. ի լուսոյ լոյս երեւեալ, որ լուսաւորէ զարարածս լուսով գիտութեան շնորհօք յարդարէ աղբերաբար զպարգեւս, ոչ այլուստ ի ներքս մտեալ, այլ ի Հօրէ ելանէ և յՈրդւոյ երեւի. մի Աստուած[5] յերեքին երեւեալ, և առանձնաւորութեամբն անշարժ մնացեալ. Երրորդութիւն կատարեալ և մի աստուածութիւն փառաւորի:

Եւ յաղագս մարդանալոյ Որդւոյն Աստուծոյ խնդրի բան, որ ի Հօրէ ծնաւ անճառելի և անմարմնապէս, նոյն ինքն մարմնանայ ի Կուսէն, և զանխառնելիսն խառնէ յորովայնին անճառաբար և առանց իմանալոյ, Աստուած զնա գործէ միաւորութեամբ, տնօրէնութեամբ. և մի Որդի խոստովանի, և պատուով երկրպագեալ և փառաւորեալ, որ ընդ ամենայն կիրս

1. Յօր. յայտնաւոր:
2. ՃԱ. խոտոր:
3. ՃԱ. հաստատ:
4. ՃԱ. անսահմանապէս:
5. ՃԱ. աստուածաբնին:

մարդկայինն՝ եանց անարատապէս, կամաւ և ոչ ի հարկէ. զի մեզ ճանապարհ գործեսցէ ի լինել զամենայն արդարութիւն։ Եւ ոչ բաժանեմք զՈրդի ըստ անօրէնութեան. զի Յիսուս Քրիստոս երէկ և այսօր նոյն և յաւիտեանս, ընդ Հօր և ընդ Հոգւոյն սրբոյ օրհնի. յերկնաւորաց և յերկրաւորաց, սրբասացութեամբ, ի մի հաւաքելով տէրութիւն և աստուածութիւն ամենասուրբ Երրորդութեան։ Արդ, որ այսպէս խոստովանեսցին՝ ընդ նոսա և մեք. իսկ որ այլ ազգ իցէ, ինքն տացէ դատ յաւուրն դատաստանի։

Գլ. ԽԹ. Այսքան սակաւուց ասացան ըստ երանելւոյն Աթանասի, և որք ըստ նորայն համագոյութեան էին խորհօղք և երկրպագուք միշտ։ Եղև ամբաստանութիւն զերանելւոյն Աթանասէ ի հեթանոսաց. թէ խափանէ զգոհս կռոցն, և ոչ թողու յուսուցանելոյ զքրիստոնեայս, ոչ անսալ թագաւորի զի անցանելոց է վաղվաղակի։ Եւ բարկացեալ թագաւորն հրամայէ եպարքոսի Աղեքսանդրի՝ ունել զնա ի պատուհաս ի բանտի։ Զայս լուեալ, ասէ ցժառանգաւորս եկեղեցւոյն. Որդեակք, փութով անցանելոց է մոլորութիւնս։ Եւ մտեալ ի նաւ սակաւ ընկերօք, անց ընդ Նեղոս յԵգիպտոս. և հետի մտեալ վինուորաց ունել զԱթանաս, իսկ նոքա ոչ դադարէին ի խուզելոյ զայրն Աստուծոյ. իսկ նորա խոյս տուեալ այլակերպէ զինքն, գայ յԱղեքսանդր և թաքուցանէ զինքն, մինչեւ դադարեաց հալածանքն։

Գլ. ԾԴ. Եւ եկեալ Յուլիանոս յԵգիպտոս, ժողովէ զամենայն զօրս իւր և գիմեալ երթայր ընդդէմ Պարսից ի մարտ, և նա ոչ գտեալ զբան խաղաղութեան, եւ Պարսից արքայն ամենայն ուժով ընդդէմ Յուլիանոսի և զօրաց նորա ի պատերազմ։ Եւ եղեւ պատերազմ սաստիկ և պարտեցաւ զօրն Յուլիանոսի և ի փախուստ դարձան։ Իսկ Յուլիանոս առընթեր կալով, արգելոյր զզօրսն և քաջալերէր յաղթել հնարիցն[1] յուսով. յայնժամ գայ սուր սրեալ և հարկանէ զսիրտն և անդէն սատակեցաւ, եօթն ամ կայսր լեալ, և ամ մի թագաւորեալ մեռաւ։ Իսկ զօրքն Հռովմայեցւոց ի տարակուսանս մտեալ այլ ոչ յամէին, այլ ի նոյն։

Գլ. ԾԵ. Յետ մահու թագաւորին, զՅոբիանոս ասեն թագաւորել, զայր քաջ և զբարեպաշտ, որ էր հազարապետ՝ յորժամ Յուլիանոս զհեթանոսականն[2] աղանդն յայտնէր։

Գլ. ԾԷ. Եւ թագաւորեալ Յոբիանոս, և դարձեալ զօրօքն

1. Այլ օր. հնարիցն։ 2. Յոր. հեթանոսանոյ։

յաշխարհն իւրեանց, առժամայն նորոգէր քրիստոնէութիւնն։ Եւ առաջնորդք եկեղեցւոյ փութային ի տես Թագաւորին։ Իսկ նա ամենեցուն զհաւատն համագոյութեան՝ որ ի սուրբ ժողովոյն Նիկիայ՝ ասէր ընդունել ամենեցուն ի խաղաղութիւն և ոչինչ աւելի քան զայս։ Եւ գրէ թուղթ առ Աթանաս, դարձեալ ունել զիւր աթոռն, և զեկեղեցիսն Եգիպտոսի և Աղեքսանդրի որ նմա յառաջ հաւատացեալ էր։ Յայնժամ համարձակութիւն առեալ ի թղթոյ Թագաւորին, երեւեցուցանէր զինքն ի Թաքստենէն, և ընդունէր զաթոռ իւր և հովուէր զժողովուրդ իւր. զհաւատացեալս յԱստուծոյ կոչէր, և զամենայն եպիսկոպոսս զաքսորեալս ի Կոստանդիանոսէ, և զոչ հաւատատեալս ի Յուլիանոսէ, կոչեցեալ զնոսա հաստատէր։ Եւ զպաշտամունս հեթանոսաց խափանէր, և զմեհեանս նոցա քակէր[1] անպաշտելիս։

Յայնժամ գիր հաւատոյ ըստ սուրբ ժողովոյն Նիկիայ շարադրեցին և մատուցին Թագաւորին, և Մելիտոսի Անտիոքայ եպիսկոպոսին, և այլ բազմաց ուղղափառաց ընդ նոսա։ Եւ այսպէս Թագաւորն զհակառակութիւն հերձուածողացն ցածուցանէր ի միաբանութիւն սուրբ ժողովոյն, ի փառս ամենասուրբ Երրորդութեանն։

Գլ. ԾԸ. Եւ գնացեալ յԱնտիոքայ Թագաւորն ի Տարսոն Կիլիկեցւոյ, անդ զմարմինն Յուլիանոսի թաղէր։ Եւ կարգաւորէ զգործակալս աշխարհին և անդէն գաանայ փութով ի Կոստանդինուպոլիս անցանելով, և գայ ի գեօղ մի, որ անուանի Դատաստան, մերձ ի սահմանս Գաղատացւոց. ուրանօր էր Թեմեստիոս իմաստասէր՝ այլովք նախարարովք. ընդ առաջ ելին Թագաւորին և գովասացութեան բանս առ Թագաւորն ասացին, զոր և գրով յետոյ ի Կոստանդինուպոլիս ցուցեալ, հաճոյ եղեւ բան գովութեանն։ Բայց Թագաւորն զամենայն կարգս Հռոմայեցւոց գեղեցկապէս յարդարել ջանայր, զաշխարհի և զեկեղեցւոյ. և անդէն ի նմին գեօղ հիւանդացեալ, որ և մեռաւ իսկ. կեցեալ ամս երեսուն և երեք[2], Թագաւորեալ ամիսս[3] եօթն, հանգեաւ ի փառս և ի գովութիւն Աստուծոյ։

Գլ. ԾԹ. Եւ անդէն վաղվաղակի ժողովեալ զօրավարք և զօրք՝ զՎաղենտիանոս ընտրեցին ի Թագաւորութիւն որ էր ի Պանոնիոյ[4] ազգէ, ի քաղաքէ Կիբաղու[5] և ի կարգի զինուո-

1. Այլ օր. կործէր։
2. Յոր. ԼԳ. իսկ ՃԱ. ԼԴ.
3. Յոր. ամս։
4. Յոր. Պանոնեցւոյ։
5. Յոր. Կիբաղաւայ։

բութեանն բազումս եցոյց արութիւնս և զկարգականացն[1] զհանճար։ Եւ էր այր մեծամիտ, և զպատահեալ բախտն մեծագոյն երեւեցուցանէր[2]. և թագաւորեալ գայ ի Կոստանդինուպոլիս, և հաղորդ թագաւորութեանն առնու զեղբայրն իւր զՎաղէս յետ երեսուն աւուր իւրոյ կոչմանն. և Վաղենտինիանոս էր ըստ Նիկիեայ հաւատոյն, իսկ Վաղէս ըստ Արիոսի և հոգեմարտին Մակեդոնի, յԵւդոքսեայ Կոստանդինուպոլսի[3] եպիսկոպոսէ մկըրտեալ՝ և վարժեալ չար աղանդն, որ ունէր զփոխանորդութիւն Մակեդոնի հոգեմարտին՝ Եւդոքսիւ։ Եւ այսու պատճառաւ որոշեցան ի միմեանց եղբարք թագաւորք. զի ի Յուլիանոսէ հարկաւորեալք զոհել և կամ թողուլ զինուորութիւնն, իսկ նոքա երկոքին ցուցին զբարւոք նախկին կամաւ թողեալ զզինուորութիւնն քան զոհել դիւաց։ Բայց Յուլիանոսի ապստամբութիւն նոցա խափանէր զմարտն յարանցն, և Յոբինոս[4] մեծարեալ զնոսա պատուով։ Իսկ Վաղենտինիանոս զընտանիս հաւատոյն պատուէր առնել սիրով ի Քրիստոս, և Արիանոսացն ոչ էր հալածիչ. իսկ Վաղէս՝ զԱրիոսեանս և զհոգեմարտս անձեցուցանել չանայր, և ամենայն ուրեք զուղիղսն արգելոյր։

Գլ. Կ. Ըստ այնմ ժամանակին Հռովմայ եկեղեցւոյն առաջնորդ էր Լիբերիոս, իսկ Աղեքսանդրի՝ Աթանաս սուրբ, որ հովուէր զուղղափառ հօտն[5] որ ի Քրիստոսի։

Գլ. ԿԱ. Իսկ թագաւորին Վաղենտինիանոս ի կողմ արեւմտից գնայր՝ ի հօգս աշխարհին։ Իսկ Վաղէս ի Կոստանդնուպոլիս մնալով՝ յարուցանէր պատերազմ եկեղեցեաց սրբոց, ի ձեռն Մակեդոնի աղանդոյն։

Գլ. ԿԲ. Ապա և յԱղեքսանդր հասանէ հրաման ի Վաղէսէ և յԵւդոքսէ առ եպարքսն, պատժել զուղղափառսն, որք ոչ զնոյն խոստովան լինին. իսկ ամբոխն աղմկեալ և խռովեալ առ հասարակ։ Յայնժամ Աթանաս ուղղափառութեան քարոզ՝ երկուցեալ թէ պատճառ լիցի մարտի և մահու ուխտին և ժողովրդեանն Աստուծոյ, աներեւոյթ լինէր ամիս երիս յանկարծակի, ի գերեզմանս հօր իւրոյ թաքչէր։ Եւ բազում տրտմութիւն և աղմուկ լինէր յԱղեքսանդր վասն Աթանասի. զոր զգացոյց եպարքոսն Վաղէսի։ Եւ նորա հաւանեալ վասն քաղաքին և աշխարհին աղմկաց, գրէ թուղթ երդմամբ դառ-

1. ՃԱ. զաղքաշխանաց։
2. ՃԱ. երեւէր։
3. Յօր. Կոստանդնուպօլսի։
4. Յօր. Յովբիանոս։
5. Յօր. հօտապան։

նալ ունել զեկեղեցին Աթանասի, մինչեւ կենդանի իցէ։ Կայսրուեալ երեւեցաւ, և եկեալ զաթոռ իւր մինչեւ ցվախճան, և զուղղափառայն զհաւատս հաստատէր և ոչ յումեքէ դրդուեալ։

Գլ. ԿԶ. Յետ այսորիկ Եւդոքսի վախճանեալ, կոստանդնուպօլսի եպիսկոպոսն. և ի տեղի[1] նորա զԴիմոփիղոս Արիոսքն առնեն, իսկ համափառաց զԵւագրիոս ոմն առնեն։ Իսկ Արիանոսքն յարուցին պատերազմ սաստիկ յաղգմանէ Վաղեսի. զորս Թշնամանէին և հարկանէին զձեռնադրեալսն և զձեռնադրողսն, որք ոչ կարացեալ ժուժկալել առ իրաւունս երթային ի Վաղէս։ Իսկ նա հրամայէ եպարքոսին՝ գաղտ սպանանել զնոսա. և եպարքոսին հանեալ զնոսա, որպէս ի քաղաք տանել, և հրամայեաց այրել զնոսա ի ծովու։ Եւ այնպէս այրեալ՝ ի ծով անկան հանդերձ նաւուն, և այրեցողքն գնացին այլ նաւօք ի տեղիս իւրեանց։ Իսկ Վաղէս յԱնտիոք և յամենայն յարեւելս ոչ դադարէր ի կշտամբելոյ զամենայն ուղղափառ հաւատս՝ զանազան տանջանօք և մահուամբ պէսպէս, որ առաւել քան զկռապաշտսն ունէր զատելութիւն առ ուղղափառսն։

Գլ. ԿԸ. Յայսոսիկ[2] մերձն յաւանս զբազումս սպանանէր զԹէոդորոս և զԹէոգոսա և զԹէողոս[3], զայր քաջ և զբարի, և այլ ևս։ Եւ բազումք յահէ զանուանսն փոխեցին, և ուրացան զառաջին անուանսն իւրեանց։

Գլ. ԿԹ. Այսպէս Վաղէս էր չարասէր և ոչ բարեսէր և ոչ առ եկեղեցին Աստուծոյ։ Բայց աստուածային նախախնամութեամբ[4] որ առ Աթանաս երանելին էր, Վաղէս զչարութիւն իւր արգելոյր, յաղագս ուղղափառութեան նորացն, և սպուժէր յաղագս ապստամբելոյ Աղէքսանդրու եգիպտոսի, զի գիտէր զամենեցուն հաւատս յայրն Աստուծոյ՝ զուղղափառութեան հաստատութիւն երանելեաւն յամենեսեան։ Եւ յայնմանէ կասկածեալ զի մի՛ ապմկեալ աշխարհն վնասեսցի յամբոխեցն. կայր միայն առանց վրդովելոյ զկենդանութիւն առն սրբոյ։ Զի յամենայնի երեւելի էր այրն Աստուծոյ հաւատովք և առաքինութեամբ. ոչ յումեքէ ընդդիմակացան խոնարհեալ և խոտորեալ ի ժամանակաւոր աղանդսն, ի պէսպէս և ի զանազանս. այլ որպէս զվէմ ինչ ի ծովեզերն՝ զալեացն ի վերայ ընթացս՝ որ ըստ նորա ժամանակին հերձուածք՝ անշարժ կայր միայն։ Եւ ի դէպ է ասել զմարգարէին բան, թէ

1. Յօր. զՓիլ. եդաք ըստ ձԱ։
2. Յօր. յայսոսիկ։
3. ձԱ. զԹիւողոս։
4. Յօր. եղեալ էր՝ նախախնամութեան... շնորհաթեան։

ոչ Տեառն Աստուծոյ Թողեալ էր մեզ զաւակ՝ հաւատոյ ուղղափառութեան զերանելին Աթանաս, իբրեւ զՍոդոմ լինէաք և Գոմորոյ նմանէաք։ Զի ամենայն հալածանաց և վշտաց համբերութեամբ և բազում նեղութեամբ տարեալ վասն եկեղեցեացն Աստուծոյ. ձեռնադրէ զՊետրոս յիւր աթոռն, զայր բանաւոր և երկիւղած յԱստուծոյ ամենայն արդար կրօնիւք։ Եւ ինքն փոխի յաշխարհէ ի հանդերձեալն ի հայրապետս սուրբս, քառասուն և վեց ամ կալեալ զեպիսկոպոսութիւնն։ Եւ բազմաց շարժեաց արտօսր և ողբս հառաչանաց և ապաշաւանաց, Աղեքսանդրի և Եգիպտոսի և յամենայն տեղիս ուղղափառաց։ Եւ բազումս եթող ճառս շարագրեալս՝ յաղագս ուղղափառ հաւատոյ և սուրբ վարուց, և մեկնութիւն սաղմոսաց, և այլոց գրոց սրբոց։ Զի յամենայնի մեծախորհուրդ էր այրն Աստուծոյ. և բանիւ կատարեալ և հոգւով լցեալ, կատարեաց զկեանս իւր ի փառս և ի գովութիւն ամենասուրբ[1] Երրորդութեան. որում վայել է փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1. ՃԱ. տարբ։



# Ի ՊԱՏՄՈՒԹԵՆԷ ՎԱՐՈՒՑ

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է ՏԻՄՈԹԷԻ ԱՇԱԿԵՐՏԻ ՆՈՐԻՆ ԵՒ ԱԹՈՌԱԿՑԻ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՈՑ

Ի ժամանակս թագաւորութեան Դիոկղետիանոսի, երանելիք ոմանք Մարկեղոս և Սողոմի, օրինօք Աստուծոյ հաւատացեալ յԱստուած, ծնանին ի կամս Աստուծոյ որդի մի, և նուիրեցին զնա ի պաշտօն Աստուծոյ. որպէս Աննա զՍամուէլ։ Եւ նովին հոգւովն յառաջադիմանայր մանուկն և սնանէր խրատու, և իմաստութեամբ Տեառն, և վարժեալ գրոց սրբոց և հոգե-պատում տառից մարգարէիցն, հանապազորդ զօրէնսն Տեառն խորհողի ի տուէ և ի գիշերի։ Ապա հանդիպի յաւուրց ան-ցանել սրբոյն Աղեքսանդրոսի հայրապետի՝ առ վարդապետա-րանաւն, և տեսեալ զմանկունն, զի ձեռնադրութիւնս և աս-տիճանս տային միմեանց, ումեմն սարկաւագութիւն, և այլում քահանայութիւն, և այլում եպիսկոպոսութիւն, և այլում պետութիւն եպիսկոպոսաց. զտեղի առեալ համարեցաւ եթէ յԱստուծոյ է այդ ումն գործոյն. հրամայէ կոչել առ ինքն և զիւրաքանչիւր աստիճան պաշտամանն տեղեկացեալ, հրամայեաց այնուհետեւ ի նոյն կարգ կացուցանել զնոսա, և զերանելին Աթանաս սարկաւագ կացուցանել եկեղեցւոյն Աղեքսանդրի։

Իսկ ի տիրել սրբոյն Կոստանդիանոսի թագաւորութեանն հրամայէ ժողովել զամենայն հարսն սուրբս ի Նիկիայ. և ժո-ղովեալ՝ ի տարակուսի կային ոգիք երեք հարիւր ութուտա-սանիցն։ Ապա ի սակս իրակերտութեան տարակուսիցս այսո-ցիկ, Հոգին սուրբ ի կերպարանս վարդապետին իւրոյ հրա-մայէ նմա գրել զաստացեալսն, և սկիզբն արարեալ Հաւատամք ի մի Աստուած, Հայր ամենակալ. և ի կարգ արկեալ, պատմէ մինչեւ ցաւարտումն՝ խոստովանել Բանին։ Իսկ արտաքս ելեալ աներեւոյթ լինէր. ապա վարդապետ նորին եկեալ սուրբն Ա-ղեքսանդրոս, և լուեալ զի ընթեռնոյր, աղաչել առ ի լուր

Նորին գործեալ աստ[1]։ Իսկ պատասխանեալ նորա զառ ի նմանէ առաջեալսն. ապա ազդեալ ի Հոգւոյն սրբոյ Աղեքսանդրի, թէ ի տեսչութենէ աստուածային գոգցես, այնուհետեւ առեալ եկն ի համագումար դասս սրբոց հարցն. եւ ի բազում խնդիրս լինելոյ եւ ոչ առնելոյ հաւասարութիւն, քանզի պարտ էր յայտնի լինել ի ստուերամած խաւարին արեգակնական արտա-փայլութեան. զոր եթէ ոչ Տեառն զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրեւ զՍոդոմ լինէաք եւ Գոմորոյ նմանէաք։ Ապա ամենեցուն նախամատոյց արարեալ զԱթանասիոս, ի գլխաւո-րութիւն հաւատոցն կոչէին։ Եւ բացեալ զբերանն զթելա-դրեալսն ի Հոգւոյն սրբոյ պատմեաց առաջի խմբեալ առաքել-ոցն. եւ մերձ կալով Թագաւորին մեծամեծօքն իւրովք. եւ բա-զումք ի հեթանոսաց եկեալ էին ի տեսանել զմրցանակս կամաց արարողին։ Եւ յայնժամ ընկճեալ կաճառ հերետիկոսացն ի հուր Հոգւոյն սաստկեալք, որ հատանէ անցանէ մինչեւ յո-րոշումն շնչոյ եւ օդոյ, ոգւոյ եւ ուղղոյ։ Սակս այսորիկ փոյթ եղեւ ամենեցուն զսուրբն Աթանաս կացուցանել յաթոռ սուրբ աւետարանչին Մարկոսի։ Եւ ի ձեռնադրելն ժողովեցան ա-մենեքեան ի սուրբն Անաստաս, առնելով զյաղթանակն փրկու-թեան, զխորհուրդն փրկութեան մարմնոյ եւ արեանն Տեառն։ Եւ ի կատարողապետութեանն քաւչին, յանկարծակի բացեալ ձեղուն յարկին Աստուծոյ, եւ լոյս սաստիկ ի ստոր հեղեալ հոլովեալ. եւ ի սաստիկ լուսոյն ի պակուցման եղեալ, հայեալ տեսս նշմարեալ որպէս կամսակս, որ աղագաւ այնքան Թնդիւն հնչապետէ, եւ տեսեալ ընդ լուսոյն անմարմնական զօրացն ի քաւարանն պար առեալ. եւ սրովբէական դասքն սաւառնեալ եւ սոսկացեալ կային շուրջ զսեղանովն։ Յայնժամ իմացեալ զվկայութիւնն, զասացեալն, եթէ Բանակք հրեշտակաց շուրջ են զերկիւղածովք իւրովք. եւ Տէր միածին Բանն Աստուծոյ բազմեալ ի վերայ ձեռաց սրբոյն Աթանասի, եւ ցուցեալ զհացն ընդ անապական մարմնոյն, եւ ի կողէն արտաթորեալ արիւնն՝ ի նուիրանոցն հոսէր։ Եւ զայս ոչ միայն նա, այլ եւ ամենե-քեան որ ընտրականքն էին՝ տեսին։ Եւ ապա աղօթս վսեմականս մատուցեալ քաւչապետին՝ հանդերձ արտասուօք, եւ ամենեցուն ընդ նմա, եւ սոսկացեալ պակուցեալ կային, որք էաք մերձա-կայ։ Իսկ հանդիպեցայ եւ ես մինչեւ ցայս ժամ կայացեալ. ապա համբարձաւ Տէր հրեշտակօք յերկինս, եւ ի մկրտութեանն խորհրդարանն՝ սքանչելագործէր Տէրն, զի երեւեալն[2] ի Յոր-

1. Այդպէս յօրինակին։ 2. Յոր. փէխսաւէ։

զանան Հոգին սուրբ՝ աղաւնակերպ թեւօք սլացեալ հանգչէր ի վերայ մարմնապէս աւանդեցելոյն. և ապա անտես լեալ ի մէնջ, թէպէտ և ի ծածուկս հրաշագործելով մերձ էր։ Ցայնժամ գոհացողական աղօթս մատուցանէր զայս։

Տէր Աստուած, գոհանամք և փառաւորեմք զանճառ զօրութիւն քո, որ անյայտեցո՝ սահման սիրոյ քո՝ գոյացոյց զսեռս մարդկան, կամօք Հօր և գործակցութեամբ սուրբ Հոգւոյն. պատուելով ի խորան պուղնաքեայ հող ի պատկեր աննկարագրելի բնութեանդ, ի ձեռն մասնաւորականին. Երանելովք ստաքինութեամբ և կայացականօք յառաջանալ, անկեալ պահել պատուիրանագիր անշուշտ բնութեան քո Տէր։ Իսկ ի կամայականուն շարժողն անիմաստ ի պատրողական խաբէական հնարիցն ոչ բարիոք խրատ եղծագրէր, այլ եղծեալ ապականագիր գտաւ, ամաց չրջագայութեամբ թուլացեալ հաւասարել անասնոց անբանից, յաստուածամէտ սահմանագատութենէն, սահարկեալ տիրականն երկրահողով պարապումն տուեալ արկածիւք[1], գժնդակ տալով խրատ ընկալաւ սաստկագոյն՝ ջրով, հրկիզութեամբ, պարտութեամբ, նշանօք յօդոց, յերկրէ և քաղաքէ, արանց և կանանց, անյուսալի փոփոխմամբ։ Վասն որոյ և տիրական գալստեան պիտոյանամք ի փրկութիւն։ Որ եկն և փրկեաց յիշխանութենէ խաւարի, և կոչեաց ի ձեռն շնորհաց իւրոց զմեզ՝ ի պաշտօն փրկութեան։ Որով հաւատամք զաս լինել մարմին և արիւն փրկչին Աստուծոյ, որ ասաց՝ Այս է մարմին իմ, և այս է արիւն իմ. Որ ուտէ զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան։ Եւ յորժամ կատարեաց զայս, և հաղորդեալ փրկական խորհրդոյն, և ամենեցուն որ ընդ իւր էին, և բերեալ մատուցանէր ժողովրդեանն։ Եւ տեսիլ սքանչելի երեւեալ. առաջինն հրով կիզաւ, և երկրորդն դիւով չարաւ մոլեալ. այնուհետև դարձուցեալ զխորհուրդն, բաշխել ոչ կարացեալ, այլ հաւասարական՝ առ աստուածային սեղանն մերձակայիցն։ Զի յորժամ զայսոսիկ տեսեալ, ապա ահագին և սոսկալի ուսուցանէր զխորհուրդ աստուածային կամացն, ոչ միայն պարտ է արտաքսել զմարմնականս, այլ և զգուշանալ շնչականացն։ Մաքուր լինել հոգւով և մարմնով, և ապա ի մաքուրն մերձենալ. Նախ բնակարան լինել անյայտիւք յայտնեցելոյն։ Արդ՝ խոստովանութեամբ պարտ է մաքրել զմեզ յամենայն աղտեղութենէ հոգւոյ և մարմնոյ։ Արդ՝ սակաւք ի բազմաց բանս Ճառեցաւ. և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս. ամէն։

1. Յօր. եղեալ էր՝ [illegible]։

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ

# ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

# Ա.

## ՅԱՂԱԳՍ ՄԱՐՄՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՈՐԴՒՈՅՆ

### ԵՒ ՍՐԲՈՅ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆ



ՈՐԴ չարարուեստաբարն ախորժեն իմանալ զաստուածային զգիրս, զմարդկայինան բանս՝ աղքատութեան Որդւոյն Աստուծոյ՝ յառաջ ածել կամին, առ ի հաստատել զիւրեանցն հայհոյութիւն. եւ ամենայն ստուգութիւն քրիստոնէութեան ի տրուպան բանս և իբս գտանի։

Արդ, եթէ կարէին լսել երանելւոյն Պաւղոսի գրեցելոցն առ Կորնթացիսն. «Քանզի գիտէք զշնորհսն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի վասն ձեր աղքատացաւ՝ որ մեծատունն էր, զի դուք նորա աղքատութեամբն մեծասջիք»[1], ո՛չ արդեւք երբէք աննման Հօր յանդգնէին ասել զՈրդի. զի թէ էր գիտացեալ, զի՛նչ է զօրութիւն աղքատութեան նորա, և զի՛նչ է զօրութիւն խաչին նորա։ Ուստի և այլուր ասէ նոյն Պաւղոս. «Զի կարասջիք հասանել ընդ ամենայն սուրբս,

1. Բ. Կորնթ. Ը. 9։

զի՞նչ է լայնութիւն և երկայնութիւն և խորութիւն. գիտել զգերազանցեալ սէրն գիտութեանն Քրիստոսի, զի լցջիք յամենայն լրումն Աստուծոյ»[1]։ Վասն այսորիկ գրով յաղքատութիւնն նորա և ի չարչարանսն համարձակի ասել. «Ինձ մի՛ լիցի պարծել, բայց միայն ի խաչն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով ինձ աշխարհ ի խաչ ելեալ է և ես աշխարհի»[2]. «Քանզի ոչ եդի ի մտի գիտել ինչ ի ձեզ, բայց միայն զՅիսուս Քրիստոս և զնոյն ի խաչ ելեալ»[3]. «Եւ թէ էր ծանուցեալ՝ ոչ արդեւք զՏէր փառացն ի խաչ հանէին»[4]։ Եւ այժմ թէ էր գիտացեալ սոցա զաստուածային գիրս՝ ո՛չ արդեւք զստացողն ամենեցունց՝ ստացուած կամ արարած հայհոյել յանդգնէին. քանզի յառաջ բերեն մեզ ասելով. Զի՞րդ կարէ նման կամ ի Հօր էութենէն գոլ Որդի՝ Որ երբեմն գրէ. «Որպէս ունի կեանս Հայր յինքեան, այսպէս և Որդւոյ ետ կեանս ունել յինքեան»[5]։ Գերունակութեան է ասել տուողին քան զառողին։ «Եւ մի՛ ասէր զիս բարի, ոչ ոք է բարի, բայց մի Աստուած»[6]։ Եւ դարձեալ. «Աստուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր թողեր զիս»[7]։ Եւ դարձեալ. «Յաղագս աւուրն յայնմիկ՝ ոչ ոք գիտէ, և ո՛չ Որդի, բայց միայն Հայր»[8]։ Եւ դարձեալ, «Զոր Հայր սրբեաց և առաքեաց յաշխարհ»[9]. և դարձեալ՝ «Զոր Աստուած յարոյց ի մեռելոց»[10]։ Արդ, զի՞րդ կարէ ասեն՝ Նման գոլ յարուցեալն ի մեռելոց՝ յարուցողին զնա։

Զայսոսիկ ի բազմաց սակաւս բերաք յառաջ, որպէս զի զայսոսիկ լուծեալ՝ և այլքն դիւրաւ ի-

1. Եփես. Գ. 18–19։
2. Գաղատ. Զ. 14։
3. Ա. Կորնթ. Բ. 2։
4. Ա. Կորնթ. Բ. 8։
5. Յովհ. Ե. 26։
6. Մրկ. ԺԱ. 18։
7. Մատթ. ԻԷ. 46։
8. Մրկ. ԺԳ. 32։
9. Յովհ. Ժ. 36։
10. Գաղ. Ա. 1։

մասցին։ Արդ, պարտ է մեզ ըստ կարողութեան՝ զզօրութիւն այսոցիկ պատմել։ Յորժամ ասէ երանելին Պաւղոս, «Հայր յարոյց զՈրդի իւր ի մեռելոց», Յովհաննէս ասէ մեզ, թէ ասէր Յիսուս. «Լուծէք զտաճարս զայս, և յերիս աւուրս յարուցից զնա. և ասէր, ասէ, վասն տաճարի մարմնոյն իւրոյ»[1]։ Արդ, յայտ է որոց զգուշանանն, եթէ մարմնոյն յարուցելոյ՝ Որդի ասի յարուցեալ ի մեռելոց։ Քանզի որ ինչ մարմնոյն նորա են՝ ի դէմս նորա ասին. այսպէս և յորժամ ասէ, կեանս ետ Հայր Որդւոյ, զմարմնոյն կեանս տուեալն է իմանալի. քանզի, թէ ինքն է կեանք, զիա՞րդ կեանքն կեանս առնու. և եթէ ինքն խոստանայ ասելով, թէ «Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, և ես ճանաչեմ զնոսա, և զկնի իմ գան. և ես տամ նոցա զկեանսն յաւիտենականս, և մի՛ կորիցեն ի յաւիտեան»[2]։ Եւ եթէ ինքն է իմաստութիւն Աստուծոյ. և եթէ ինքն արար զամենայն հասակ, զիա՞րդ ասէ, «Աճէր Յիսուս իմաստութեամբ և հասակաւ»[3]։ Եւ եթէ Հայր ի ձեռն իւրոյն Բանի և Որդւոյ արար զամենայն, յայտ է թէ և զյառնելն մարմնոյ նորա ի ձեռն նորա արար. արդ, ի ձեռն նորա յարուցանէ զնա, և ի ձեռն նորա կեանս տայ նմա։ Յառնէ ըստ մարմնոյ մարդ, և առնու կեանս որպէս զմարդ, ձեւով գտեալն իբրև մարդ. և ինքն է որ յարուցանէ զիւրն տաճար՝ որպէս զԱստուած, և տայ կեանս իւրոյն մարմնոյ։ Եւ յորժամ դարձեալ ասէ, «Զոր Հայր սրբեաց և առաքեաց յաշխարհ»[4]. ա՛յլուր յաղագս նորա, «Եւ սրբեմ զանձն իմ, զի եղիցին սոքա սրբեալք ճշմարտութեամբ»[5]։ Եւ յորժամ ասէ «Աստուած իմ, Աստուած իմ, ընդէ՞ր

1. Յով. Բ. 19–21։
2. Յովհ. Ժ. 27։
3. Ղուկ. Բ. 51։
4. Յով. Ժ 36։
5. Յովհ. ԺԷ. 19։

*Թողեր զիս», ի դիմաց մերոյ ասէ. «Վասն զի զկերպարանս ծառայի առեալ ի նմանութիւն մարդկան եղեալ. և ձեւով գտեալ իբրեւ զմարդ»[1], «Լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի»[2], և զորս զկնի նորին։ Ըստ որում և Եսայի ասէ, «Նա զհիւանդութիւնս մեր բառնայ և վասն մեր չարչարի»[3], որպէս զի ոչ վասն իւր չարչարի, այլ վասն մեր, և ոչ ինքն թողաւ յԱստուծոյ՝ այլ մեք. և վասն մեր՝ որ թողեալքս եղեաք՝ եկն յաշխարհ։ Եւ յորժամ ասէ՝ «Վասն որոյ Աստուած զնա առաւել բարձրացոյց և շնորհեաց նմա անուն՝ որ ի վեր է քան զամենայն անուն»[4], և որք զկնի սորին, յաղագս տաճարին ասէ, որ է մարմին նորա։ Քանզի ոչ եթէ Բարձրեալն բարձրանայ, այլ մարմինն Բարձրելոյն, և մարմնոյ Բարձրելոյն շնորհեաց զանունն՝ որ ի վեր քան զամենայն անուն. և ոչ Բանն Աստուծոյ՝ ըստ շնորհի էառ զկոչելն Աստուած, այլ մարմինն նորա ընդ նմա աստուածաբանեցաւ։*

*Քանզի ոչ ասաց, թէ Բանն Աստուած եղեւ. այլ «Աստուած էր Բանն»[5]. մինչ էր, ասէ, Աստուած Բանն. և սա նոյնս Աստուած՝ եղեւ մարմին, զի մարմինն նորա եղիցի Աստուած Բան։ Ըստ որում և Թովմայի շաւշափեալ զմարմին նորա՝ գոչեաց, «Տէր իմ և Աստուած իմ»[6], երկաքանչիւրոցն աստուածաբանեալ։*

*Նմանապէս և Յովհաննէս գրեաց. «Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքն, և տեսաք աչաւք մերովք, և ձեռք մեր շաւշափեցին ի վերայ բանին կենաց»[7]։ Արդ, յայտ է թէ ի մարմնի՝ Որդին և Բանն Աստուծոյ շաւշափեցաւ. և երկաքանչիւրոցն՝*

1. Փիլիպ. Բ. 7։
2. Փիլիպ. Բ. 8։
3. Եսայի. ԾԳ. 4։
4. Փիլիպ. Բ. 8։
5. Յովհ. Ա. 1։
6. Յովհ. Ի. 28։
7. Ա. Յովհ. Ա. 1։

բան կենաց աւանդեաց աստուածայինն գիր՝ զչաւ-չափեալն։ Եւ յորժամ ասէ, «Չեւ եւս էր Հոգի սուրբ, զի Յիսուս՝ չեւ եւս էր փառաւորեալ»[1], զմարմինն Նորա ասէ չեւ եւս փառաւորեալ։ Քանզի ոչ Տէրն փառաց փառաւորի, այլ մարմինն Տեառն փառաց։ Նա առնու զփառսն՝ Նովիմբ ելանելով յերկինս։ Ուստի և Հոգի որդեգրութեան չեւ եւս էր ի մարդիկ. վասն զի առեալն մարմին ի սկզբանէ ի մարդկանէ՝ չեւ եւս էր ելեալ յերկինս։

Արդ, որքան ինչ ասէ գիր՝ թէ առ Որդի, վասն մարդկութեան Նորա ասէ, ոչ վասն աստուածութեանն։ Եւ յորժամ ասէ Առաքեալ. թէ «Ի Քրիստոս բնակէ ամենայն լրումն աստուածութեանն մարմնապէս»[2], ի մարմնի Նորա բնակիլ զամենայն լրումն աստուածութեանն է իմանալ։ Եւ յորժամ ասէ՝ «Որ յիւր որդին ոչ խնայեաց՝ այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա»[3], այլուր ասէ. «Որպէս և Քրիստոս սիրեաց զեկեղեցի, և զանձն իւր մատնեաց վասն Նորա»[4]։

Քանզի ոչ զինքն եկն ապրեցուցանել ի մահուանէ Որդի, այլ զմեզ զմահացեալս. և ոչ յաղագս իւր մեռաւ, այլ վասն մեր. որպէս զի վասն այսորիկ զանարգութիւնս մեր և աղքատութիւն յինքն ընկալաւ, զի մեզ զամենայն հարստութիւն իւր շնորհեսցէ. քանզի չարչարանք Նորա՝ մեզ անչարչարութիւն է, և մահ Նորա՝ մեզ անմահութիւն, և արտասուքն Նորա՝ խնդութիւն մեզ, և թաղումն Նորա՝ մեզ յարութիւն, մկրտութիւն Նորա՝ մեզ սրբութիւն։ «Քանզի վասն սոցա, ասէ. սրբեմ զանձն իմ, զի եղիցին սոքա սրբեալք ճշմարտութեամբ»[5]. և վէրք Նորա մեզ բժշկութիւն, «Քանզի վիրօք Նորա մեք բժշկե-

1. Յովհ. Է. 39։
2. Կողոս. Բ. 9։
3. Հռովմ. Ը. 32։
4. Եփես. Ե. 25։
5. Յովհ. ԺԷ. 19։

ցաք»[1]. և խրատ Նորա մեզ խաղաղութիւն, «Քանզի խրատ խաղաղութեան մերոյ ի Նա»[2], այսինքն, սակս խաղաղութեան մերոյ Նա խրատի. և անփառութիւն Նորա՝ մեզ փառք։ Ուստի խնդրէր զփառսն վասն մեր, ասելով. «Փառաւորեա՛ զիս, Հայր, առ ի քէն փառօքդ, զոր ունէի նախ քան զլինել աշխարհիս՝ առ քեզ»[3]։ Զի մեք եմք Նովաւ փառաւորեալք. և ի վայր ճանապարհն Նորա՝ է՛ մեզ ի վեր ճանապարհ, ըստ գրեցելումն. «Եւ ընդ Նմին յարոյց և ընդ Նմին նստոյց յերկնաւորս ի Քրիստոս Յիսուս. զի ցուցցէ ի յաւիտեանսն՝ որ գալոցն՝ զգերազանցեալ հարստութիւն շնորհին իւրոյ, քաղցրութեամբ ի մեզ Քրիստոսիւ Յիսուսիւ»[4]։ Եւ ասելն ի խաչին, «Հայր, ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ»[5], զամենայն մարդիկ յանձն առնէ Հօր, ի ձեռն իւր զինքեամբ կենդանագործեալսն. քանզի անդամք Նորա եմք, և բազում անդամքս մի մարմին է, որ է եկեղեցի։ Ըստ որում երանելին Պաւղոս գրէ Գաղատացւոցն. «Զի ամենեքին դուք մի էք ի Քրիստոս Յիսուս»[6]։ Արդ, զամենեսին յանձն առնէ ինքեամբ։

Այսպէս և յորժամ ասէ, «Տէր ստացաւ զիս սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր»[7], յաղագս եկեղեցւոյ ասէ, Նովաւ ստացելոյն։ Քանզի ոչ արարիչն ամենայնի է ստացուած կամ արարած, այլ արարածն արարչագործաւն Նորոգի. ըստ ասացելոյն ի Պաւղոսէ. «Քանզի Նորա եմք արարած, ստացեալ Քրիստոսիւ Յիսուսիւ ի գործս բարութեան»[8]. և ըստ որում դարձեալ ասէն. «Զի ծանիցի այժմ պետութեանց և իշխանու-

1. Ես. ԾԳ. 5։
2. Ես. ԾԳ. 5։
3. Յովհ. ԺԷ. 5։
4. Եփես. Բ. 6։
5. Ղուկ. ԻԳ. 46։
6. Գաղ. Գ. 28։
7. Առակք Սող. Ը. 22։
8. Եփես. Բ. 10։

թեանց՝ յերկնաւորսն, ի ձեռն եկեղեցւոյ՝ բազմազան իմաստութիւնն Աստուծոյ, ըստ յառաջադրութեան յաւիտենից՝ զոր արար Քրիստոսիւ Յիսուսիւ Տերամբ մերով, որով ունիմք զհամարձակութիւն և զնուաճութիւն յուսով ի ձեռն հաւատոց նորա »[1]. և դարձեալ ասէ. « Որպէս ընտրեաց նովաւ՝ քան զլինել աշխարհի լինել մեզ սուրբս և անարատս առաջի նորա՝ սիրով. յառաջագոյն սահմանեաց զմեզ յորդեգրութիւն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ի նոյն »[2]։ Եւ դարձեալ ասէ յաղագս երկուց ժողովրդոց. « Զի զերկոսեան ստացի ինքեամբ ի մի նոր մարդ, արարեալ խաղ(աղ)ութիւն, և հաշտեցուցեալ զերկոսեան միով մարմնով ընդ Աստուծոյ խաչիւն, սպանեալ զթշնամութիւն նովաւ »[3]։

Եւ յորժամ ասէ, « Մի՛ կոչեր զիս բարի, ո՛չ ոք է բարի բայց մի Աստուած »[4], թուակից արարեալ զինքն ընդ մարմնականս ըստ մարմնոյն՝ զայս ասաց, և ըստ մտաց մատուցելոյն առ նա ետ զպատասխանին։ Քանզի նա՝ մարդ զնա գոլ կարծէր միայն, և ո՛չ Աստուած. և զայս ունի միտս պատասխանին. քանզի եթէ մարդ զիս կարծես գոլ միայն՝ և ոչ Աստուած, մի՛ կոչեր զիս բարի. քանզի ոչ է մարդկայնոյս բնութեան բարին գոլ՝ այլ Աստուծոյ միայ·, և ի վերայ բերէ. « Զպատուիրանս գիտես ». իսկ ասացեալ նորա՝ զո՞րս։ ասէ. « Զմի՛ շնարն, մի՛ սպանաներ[5] », և որք զկնի սորին։ Պատասխանի տայր ասելով. « Զայս ամենայն պահեցի ի մանկութենէ իմմէ, ի՞ւ տակաւին նուազ իցեմ։ Ասէ ցնա. կամի՞ս կատարեալ լինել, ե՛րթ վաճառեա՛ զամենայն և տուր աղքատաց, և ունիցիս գանձս յերկինս, և ա՛ռ զխաչ քո

1. Եփես. Գ. 10–12։
2. Եփես. Ա. 4–5։
3. Եփես. Բ. 15-16։
4. Մրկ. Ժ. 18։
5. Մրկ. Ժ. 19։

և ե՛կ զկնի իմ»[1]. արդ այսուիկ եցոյց՝ թէ և նորա է բարին գոյ։

Քանզի ոչ՝ ոչ բարւոյ ոք հետեւելով՝ կարէ կեանս յաւիտենականս ժառանգել։ Եւ յորժամ ասէ յաղագս յետնոյ աւուրն, եթէ Ոչ ոք գիտէ և ոչ Որդի՝ բայց միայն Հայր, մարդկօրէն ասէ. քանզի թէ զՀայր գիտէ, զյետին օրն զիա՞րդ անգիտանայ. «Քանզի ո՛չ ոք, ասէ, գիտէ զՀայր՝ եթէ ոչ Որդի. և որում կամեսցի Որդին յայտնել»[2]։ Եւ եթէ Հոգին սուրբ գիտէ զամենայն զԱստուծոյն, զիա՞րդ Որդի զօրն՝ զոր արարին՝ անգիտանայ։ Եւ եթէ յաւիտեանքն նովաւ եղեն և ժամանակք, յայտնի է՝ զի և յետինն օր ի յաւիտեանսն և ի ժամանակսն գտանի՝ և անկա՛ր է անգիտանալ։

Արդ՝ որքան նուաստ բանք ասին ի Տեառնէ, աղքատութեան նորա են. զի մեք նորօք հարըստասցուք, ոչ զի նորօք հայհոյեսցուք զՈրդին Աստուծոյ։ Եւ վասն այսորիկ Որդին Աստուծոյ որդի մարդոյ եղեւ. զի որդիք մարդոյ՝ այսինքն Ադամայ՝ որդիք Աստուծոյ եղիցին։ Քանզի ծնեալ ի վերուստ ի Հօրէ անճառաբար անպատմապէս, որպէս ո՛չ է հասանելի մտնջենաւորութեամբ, նոյն ինքն ի ժամանակի լինի ի ներքուստ՝ ի կուսէն Մարիամայ։ Զի ի ներքուստ ծնեալքս յառաջագոյն, ի վերուստ ծնցին երկրորդ անգամ, այսինքն՝ յԱստուծոյ։ Արդ նա մայր միայն ունի յերկրէ, և մեք հայր միայն ունիմք յերկինս։ Եւ վասն այնորիկ զինքն որդի մարդոյ կոչէ, զի և մարդիկ զԱստուած հայր կոչեսցեն. «Հայր մեր որ յերկինս»[3]։ Արդ որպէս մեք ծառայքս, Աստուծոյ որդիք եղեաք, այսպէս Տէրն յերկնից՝ որդի իւրոյ ծառայի եղեւ, այսինքն Ադամայ։ Քանզի ա-

1. Մատթ. ԺԹ. 20։
2. Մատթ. ԺԱ. 28։
3. Մատթ. Զ. 9։

առեալ զմահկանացուն հայր մարդկան՝ ետ մարդկան զիւրն անմահ Հայր. ըստ ասացելումն, «Ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել»[1]: Ուստի և զմահ ըստ մարմնոյ ճաշակեաց Որդին Աստուծոյ վասն մարմնականի մօրն իւրոյ. զի որդիք մարմնոյն՝ կենաց նորա հաղորդեսցին՝ վասն ըստ հոգւոյ Հօրն իւրեանց Աստուծոյ: Արդ նա ըստ բնութեան որդի է Աստուծոյ, իսկ մեք ըստ շնորհի: Եւ դարձեալ, նա ըստ տնօրէնութեան՝ և վասն մեր՝ որդի եղեւ Ադամայ, իսկ մեք՝ ըստ բնութեան եմք որդիք Ադամայ: Ուստի ասէ. «Երթամ առ Հայր իմ և առ հայր ձեր, և Աստուած իմ և Աստուած ձեր»[2]: Քանզի Հայր նորա է Աստուած՝ որպէս յառաջագոյն ասացի՝ ըստ բնութեան, իսկ մեր՝ ըստ շնորհի: Եւ Աստուած նորա եղեւ ըստ տնօրէնութեան, վասն զի մարդ է, իսկ մեր՝ ըստ բնութեան՝ Տէր է և Աստուած: Եւ վասն այսորիկ Բանն և Որդի Հօր՝ միացեալ ընդ մարմնոյ՝ եղեւ մարմին, զի և մարդիկ միացեալ ընդ հոգւոյ՝ լիցին մի հոգի: Արդ է նա Աստուած՝ մարմնազգեստ, իսկ մեք մարդիկ՝ հոգեզգեստք: Քանզի պտուղ առեալ ի յէութենէ մարդկան, այսինքն ի զաւակէ Աբրահամու՝ որ է կերպարան ծառայի, և ի նմանութիւն մարդկան եղեալ, ետ մեզ յէութենէն Աստուծոյ զպտուղ սրբոյ Հոգւոյն, զի եղիցուք ամենեքեան յորդիս Աստուծոյ, ի նմանութիւն Որդւոյն Աստուծոյ: Ինքն ճշմարիտ Որդին Աստուծոյ՝ զամենեսեան զմեզ զգեցեալ է, զի ամենեքին մեք զմին զգեցցուք զԱստուած:

Արդ՝ ամպարշտութիւն է ստացուած կամ արարած ասել զՀոգին Աստուծոյ, զոր ամենայն գիրք հին և նոր՝ ընդ Հօր և Որդւոյ թուակից և փառաբանակից ասէ զնա. վասն զի Նորին աստուա-

1. Յովհ. Ա. 12:

2. Յովհ. Ի. 17:

ծուլթեանն է և էութեան. ըստ որում ինքն ասէ. « Գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոց կենդանեաց. և զայս ասաց ասէ վասն Հոգւոյն, զոր առնլոց էին հաւատացեալքն ի նա »[1]: Որպէս և Յովէլ ի դիմաց Հօր ասէ. « Հեղից ի Հոգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոյ, և մարգարէասցին ուստերք ձեր և դստերք ձեր »[2]. և վասն այսորիկ փչէ ինքն յերեսս առաքելոցն ասելով. « Առէք Հոգի սուրբ »[3]. զի ուսցուք՝ թէ ի լրմանէ աստուածութեանն է տուեալն հոգի աշակերտացն. « Քանզի ի Քրիստոս ասէ, բնակէ, այսինքն ի մարմինն նորա, ամենայն լրումն աստուածութեանն մարմնապէս »[4]. ըստ որում և մկրտիչն Յովհաննէս ասէ. « Մեք ամենեքին ի լրութենէ նորա առաք »[5]: Քանզի մարմնական տեսակաւ, այսինքն՝ որպէս աղաւնի երեւեցաւ Հոգին սուրբ իջեալ և մնացեալ ի վերայ նորա. քանզի ի մեզ՝ պտուղ և առհաւատչեայ աստուածութեան բնակի, իսկ ի Քրիստոս, ամենայն լրումն աստուածութեան: Եւ մի՛ ոք կարծեսցէ, թէ ոչ ունելով զնա՝ էառ. քանզի ինքն առաքէ զնա ի վերուստ՝ որպէս Աստուած, և ինքն ի ներքուստ ընդունի իբրև զմարդ: Արդ առ յինքենէ՝ յինքն էջ, յաստուածութենէն իւրոյ՝ ի մարդկութիւնն իւր: Եւ Եսայի ի դիմաց Հօր[6] աղաղակէ ասելով. « Այսպէս ասէ Տէր Աստուած քո՝ որ արարն զքեզ և ստեղծ զքեզ յորովայնէ. մի՛ երկնչիր ծառայ իմ Յակոբ և սիրեցեալդ իմ Իսրայէլ զոր ընտրեցի, զի ես տաց ջուր ի ծարաւ՝ որոց գնան յանջրդւոջ. եդից զոգի իմ ի բերան նորա, և զօրհնութիւն իմ ի վերայ զաւակի նորա »[7]: իսկ յաւետարանին՝ Յիսուս խօս-

1. Յովհ. Է. 38:
2. Յովէլ. Բ. 28:
3. Յովհ. Ի. 22:
4. Կողոս. Բ. 9:
5. Յովհ. Ա. 16:
6. Նօտրագիրքն յօր. եղծեալ էին՝ եդաւ ըստ յունին:
7. Եսայի. ԽԴ. 2:

տանեայ տալ ջուր որոց գնան ի ծարաւ, ասելով ցՍամարացի կինն՝ յաղագս սրբոյ Հոգւոյն. « Եթէ գիտէիր զպարգեւսն Աստուծոյ, և ով է՝ որ ասէդ ցքեզ տուր ինձ ըմպել, դու արդեւք խնդրէիր ի նմանէ՝ և տայր քեզ զջուրն կենաց »[1]. և յետ փոքու ինչ ասէ ցնա. « Ամենայն՝ որ ըմպէ ի ջրոյ յայսմանէ՝ միւսանգամ ծարաւեսցի. իսկ որ ոք ըմպէ ի ջրոյն՝ զոր ես տաց նմա, ոչ ծարաւեսցի յաւիտեան. այլ ջուրն, զոր ես տաց նմա, եղիցի նմա աղբեւր ջրոյ բղխեցելոյ ի կեանսն յաւիտենականս »[2]: Եւ վասն այսորիկ Դաւիթ սաղմոսելով ասէ, թէ « Առ ի քէն է աղբեւր կենաց, և լուսով քով տեսանեմք զլոյս »[3]. քանզի գիտէ առ Հօր գոլ զՈրդի՝ զաղբեւրն Հոգւոյն սրբոյ: Որպէս ի ձեռն Երեմիայի ասէ. « Երկուս չարիս արար ժողովուրդ իմ. զիս թողին զաղբեւրս ջրոյ կենդանւոյ, և փորեցին իւրեանց գուբս ծակոտս, որք ոչ կարեն ունել ջուր »[4]: Եւ յորժամ փառաբանեն քերոբէքն զԱստուած ասելով երիցս. «Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր Սաբաւովթ »[5], զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին փառաբանեն. և վասն այսորիկ, որպէս յանուն Հօր և Որդւոյ մկրտիմք, այսպէս և յանուն սրբոյ Հոգւոյն, և լինիմք որդիք Աստուծոյ՝ ոչ աստուածոց: Քանզի Հայր և Որդի և սուրբ Հոգին Սաբաւովթ է, զի մի աստուածութիւն է և մի Աստուած. և վասն այսորիկ զոր Հայր առ Եսայի՝ Յովհաննէս ասէ թէ Որդի ասաց. իսկ ի Գործս առաքելոցն՝ Պաւղոս ասէ՝ թէ Հոգին սուրբ ասաց: Քանզի ասէ այսպէս Եսայի. թէ « Տեսի զՏէր Սաբաւովթ նստեալ ի վերայ աթոռոյ բարձրացելոյ և վերացելոյ, և լի էր տունն փառօք նորա, և սրովբէք կային շուրջ զնովաւ, վեց

1. Յովհ. Դ. 10:
2. Յովհ. Դ. 13-14:
3. Սղմ. ԼԵ. 10:
4. Երեմ. Բ. 13.
5. Եսայ. Զ. 3:

թեւք միոյ՝ և վեց թեւք միոյ, երկուքն թեւովք ծածկէին զերեսս իւրեանց, և երկուքն զոտս, և երկուքն թռուցեալ: Աղաղակէին ընկեր առ ընկեր և ասէին. Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր Սաբաւովթ, լի է ամենայն երկիր փառօք Նորա »[1]: Եւ յետ փոքու ինչ ասէ. « Լուայ զբարբառ Տեառն զի ասէր. զո՞վ առաքեցից, և ո՞վ երթիցէ առ ժողովուրդն այն: Եւ ասացի. Ահա եմ ես, առաքեա՛ զիս: Եւ ասէ ցիս. Երթ առ ժողովուրդն այն և ասա՛ ցնոսա, լսելով լուիջիք և մի՛ իմասջիք. տեսանելով տեսջիք և մի՛ տեսջիք, զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանն այնորիկ, և ականջօք իւրեանց ծանուանս լուան, և զաչս իւրեանց կափուցին, զի մի՛ երբէք տեսցեն աչօք և ականջօք լուիցեն և սրտիւք իմասցին, և դարձցին և բժշկեցից զնոսա »[2]: Իսկ աւետարանիչն Յովհաննէս ասէ. « Վասն այսորիկ ոչ կարէին Հրէայքն հաւատալ ի Յիսուս, զի ասաց Եսայի, խաւարեցոյց զաչս Նոցա և կուրացոյց զսիրտս Նոցա, զի մի՛ երբէք տեսցեն աչօք և սրտիւք իմասցին և դարձցին և բժշկեցից զնոսա »[3]: Զայս ասաց Եսայի, յորժամ ետես զփառսն Նորա, այսինքն զՈրդւոյ. որպէս զի Տէր Սաբաւովթ է Յիսուս, զի Տէր զօրութեանց թարգմանի Սաբաւովթ. « Տէր զօրութեանց Նա ինքն է թագաւոր փառաց »[4], ըստ որում Դաւիթն ասաց. և Տէր փառաց է խաչեալն Քրիստոս, ըստ Պաւղոսի, և ըստ որում ասացն Դաւիթ. « Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցէ »[5]. և այլուր ասէ. « Որ հովուես Իսրայելի՝ հայեաց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսէփու. որ նստիս ի քրովբէս՝ յայտնեա՛ »[6]: Իսկ

1. Եսայ. Զ. 1:
2. Եսայ. Զ. 8-10:
3. Յովհ. ԺԲ. 39:
4. Սղմ. ԻԳ. 10:
5. Սղմ. ԻԲ. 1:
6. Սղմ. ՀԹ. 2:

յաւետարանին ասէ Որդի. « Ես եմ հովիւ քաջ »[1]. արդ ինքն է որ նստին ի քրովբէս՝ Որդի, որ հովուէն զիսրայէլ: իսկ Պաւղոս՝ ի Գործս առաքելոցն՝ զսուրբ Հոգին ասէ, ի ձեռն Եսայեայ ասացեալ զայս՝ զոր ասացն Եսայի, թէ Տէր Սաբաւովթ ասաց ցիս. արդ Հայր և Որդի և սուրբ Հոգին Տէր Սաբաւովթ է:

Եւ յորժամ ասէ գիր յաղագս Հօր, եթէ Նա « Ստացաւ զամենայն երեւելիս և զաներեւոյթս »[2]. այլ գիր ուսուցանէ զմեզ՝ եթէ ի ձեռն Որդւոյ ստացաւ: Ո՛չ այլ ինչ ուրոյն Հայր ստացաւ և այլ Որդի, այլ զոր ինչ Հայր գործէ՝ ի ձեռն իւրոյն զօրութեան գործէ, որ է Որդի. « Զի ամենայն նովաւ եղեն »[2]: Այսպէս և յորժամ Որդի ասէ, « Լուծէք զտաճարս զայս, և յերիր աւուր յարուցից. ասէր, ասէ, յաղագս մարմնոյն իւրոյ »[3]. և այլ գիր ասէ, թէ Հայր յարոյց զՈրդի իւր ի մեռելոց. բարւոք ասէ, քանզի յարոյց ի ձեռն իւրոյն Բանի և Որդւոյ: Եւ ո՛չ ասեմք զմարմինն՝ բան գոլ Աստուծոյ, այլ մարմին Որդւոյն: Արդ մարմնոյն յարուցելոյ՝ Որդի իմանի յարուցեալ ի մեռելոց. վասն այսորիկ ըստ մարմնոյ ասեմք, թէ և՛ մեռաւ և՛ թաղեցաւ և յարեաւ ի մեռելոց. իսկ ըստ հոգւոյ՝ ի յերկինս և յերկրի և ամենայն ուրեք: Արդ վասն զի նախ հարուստ էր՝ այսինքն Աստուած, իսկ յետոյ վասն մեր աղքատ եղեւ, այսինքն՝ մարդ, և նմանեաց մեզ ըստ ամենայնի առանց մեղաց, վասն այսորիկ որպէս մարդ առնու կեանս՝ որ զկեանսն ունէր. քանզի ինքն էր կեանք, իսկ առնու վասն մեր: Եւ որպէս մարդ՝ աճէր հասակաւ և իմաստութեամբ՝ մշտնջենաւորն Աստուծոյ զօրութիւն և իմաստութիւն: Եւ որպէս մարդ սրբի՝ միշտ սուրբն և ո՛չ պէտս ունող սըր-

1. Յովհ. Ժ. 11:
2. Կողոս. Ա. 16:
3. Յովհ. Ա. 3:
4. Յովհ. Բ. 19:

բնլոյ, զի «Ցաղագս սոցա, ասէ, սրբեմ զանձն իմ, զի եղիցին սոքա սրբեալք ճշմարտութեամբ»[1]։ Եւ որպէս մարդ բարձրանայ՝ առեալ անուն ի վեր քան զամենայն անուն՝ զոր միշտ ըստ բնութեան ունէր. քանզի Աստուած էր, ասէ, Բանն։

Արդ որքան ասէ գիր՝ թէ էառ Որդի, վասն մարմնոյն նորա ասէ, որ մարմինն է պտուղ եկեղեցւոյ. քանզի պտուղ ասէ Քրիստոս։ Արդ պտղոյն առեալ զանունն՝ որ ի վեր քան զամենայն անուն, յարեաւ ընդ զօրութեան և զանգուածն, և ընդ նմին նստաւ, ըստ ասացելումն. «Ընդ նմին յարոյց և ընդ նմին նստոյց»[2]. և վասն այսորիկ ըստ շնորհի առին մարդիկ զկոչիլն աստուածք, և որդիք Աստուծոյ։ Արդ զիւրն մարմին յարոյց Տէրն ի մեռելոց, և բարձրացոյց ինքեամբ. քանզի յետ այսորիկ յարուցանէ և զանդամս մարմնոյն իւրոյ. և շնորհէ նոցա զամենայն որպէս զԱստուած, որքան ինչ ինքն էառ որպէս զմարդ։ Արդ ինքն իւր շնորհէ կեանս, և ինքն զինքն սրբէ, և ինքն զինքն բարձրացուցանէ։

Եւ յորժամ ասէ, թէ Հայր սրբեաց և առաքեաց յաշխարհ, և յարոյց զնա, և շնորհեաց նմա անուն, և ետ նմա կեանս, յայտ է՝ թէ ի ձեռն նորա առնէ զամենայն Հայր։ Արդ՝ ի ձեռն նորա յարուցանէ զնա, և ի ձեռն նորա սրբէ, և ի ձեռն նորա բարձրացուցանէ, և ի ձեռն նորա կեանս տայ նմա։ Եւ յորժամ յանձն առնէ զհոգին իւր ի ձեռս Հօր, որպէս զմարդ յանձնէ զինքն Աստուծոյ, զի զամենայն մարդիկ արասցէ յանձն Աստուծոյ։ Քանզի ինքն է ձեռն, և ձեռք Հօր։ Եւ յորժամ ասէ, «Նախ քան զամենայն բլուրս ծնաւ զիս»[3], ի դիմաց եկեղեցւոյ՝ որ յառաջագոյն ստացեալ՝ յետ այսորիկ ծնանի ըստ շնորհի

1. Յովհ. ԺԷ. 19։
2. Եփես. Դ. 6։
3. Առակք Ը. 25։

յԱստուծոյ. վասն այսորիկ նախ կայ յԱռակսն «Ստացաւ զիս Տէր», և յետոյ՝ «ծնաւ»։

Եւ յորժամ ասէ գիր յաղագս Հօր, «Ոչ մի Աստուած ստացաւ զմեզ»[1]. նմանապէս և յաղագս Որդւոյ ասէ, թէ նովաւ ստացան ամենայն։ իսկ նոյնք և յաղագս սրբոյ Հոգւոյն ասին. «Հանես, ասէ, զՀոգի ի նոցանէն, և պակասեսցեն և ի հող իւրեանց դառնան։ Առաքես զՈգի քո և ստանաս զնոսա, և նորոգես զերեսս երկրի»[2]։ Եւ յորժամ ասէ Յիսուս յաղագս Հօր ցՊետրոս, «Երանի է քեզ, զի մարմին և արիւն ոչ յայտնեաց քեզ, այլ Հայր իմ որ յերկինս»[3], զայսոսիկ և յաղագս իւր ասէ, «Ոչ ոք գիտէ զՀայր՝ բայց միայն Որդի, և որում կամի Որդին յայտնէ»[4]. նմանապէս և յաղագս Հոգւոյն Պաւղոս ասէ. «Բայց մեզ յայտնեաց Աստուած ի ձեռն Հոգւոյն սրբոյ. զի Հոգին զամենայն քննէ և զխորս Աստուծոյ։ Զի ո՞վ ոք գիտէ ի մարդկանէ զմարդոյ՝ եթէ ոչ հոգին մարդոյն՝ որ ի նմա, այսպէս և ոչ զԱստուծոյսն ոք գիտէ՝ բայց Հոգին Աստուծոյ»[5]։ Արդ՝ որպէս հոգի մարդոյ ի մարդկութենէն իւրմէ և էութենէն ո՛չ որոշի, այսպէս և Հոգին Աստուծոյ յաստուածութենէն ո՛չ է օտար։ Եւ յորժամ ասէ Տէր Եսայիւ, «Որդիս ծնայ և բարձրացուցի»[6], յաւետարանին ասէ, «Ծնեալն ի մարմնոյ մարմին է, և ծնեալն ի հոգւոյն՝ հոգի»[7]. և դարձեալ, «Հոգին ուր կամի շնչէ, զձայն նորա լսես՝ այլ ո՛չ գիտես ուստի՛ գայ և կամ յո՛ երթայ. այսպէս և ամենայն ծնեալն ի Հոգւոյն»[8]. և յիսկզբան աւետարանին Յովհաննէս ասէ. «իսկ որք ընկալան զնա, ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լի-

1. Մաղաք. Բ. 10։
2. Սաղմ. ՃԳ. 29-30։
3. Մատթ. ԺԶ. 16։
4. Մատթ. ԺԱ. 22։
5. Ա. Կորնթ. Բ. 10։
6. Եսայի. Ա. 2։
7. Յովհ. Գ. 6։
8. Յովհ. Գ. 8։

նել, որք հաւատանն ի նա. որք ոչ յարենէ և ոչ ի կամաց մարմնոյ, և ո՛չ ի կամաց առն՝ այլ յԱստուծոյ ծնան »[1]: Արդ որք ի Հոգւոյն սրբոյ ծնան, նոքա յԱստուծոյ ծնան. և որք ի Քրիստոս մկրտեցան՝ ի Հայր և ի սուրբ Հոգին մկրտեցան: Եւ յորժամ դարձեալ ասէ Պետրոս ցԱնանիա. « Ընդէ՞ր ելից սատանայ զսիրտ քո՝ ստել քեզ Հոգւոյն սրբոյ, և խորել ի գնոց գեւղջն. ո՛չ ստեցեր մարդկան՝ այլ Աստուծոյ »[2]. որպէս զի որ ստէ Հոգւոյն սրբոյ, Աստուծոյ ստեաց՝ բնակողին ի մարդիկ ի ձեռն Հոգւոյն իւրոյ: Քանզի ուրանօր է Հոգին Աստուծոյ՝ անդ է և Աստուած. զի « Այսու, ասէ, գիտեմք թէ Աստուած ի մեզ մնայ, զի ի Հոգւոյն իւրոյ ետ մեզ »[3]:

Եւ յորժամ ասէ գիր, թէ Հոգին սուրբ խօսէր ի մարգարէսն, այլուր ասէ երանելին Պաւղոս՝ թէ Հայր խօսէր ի մարգարէսն. « Բազում մասամբք և բազում օրինակօք կանխաւ խօսեցաւ Աստուած ընդ հարս մեր մարգարէիւք. իսկ ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ Որդւովն »[4]. իսկ այլուր ասէ, թէ Որդի խօսի. « Եթէ զփո՞րձ խնդրէք ինև. խօսողին ընդ ձեզ Քրիստոսի »[5]: Իսկ Որդի զՀոգին ասաց խօսել յառաքեալսն. « Յորժամ մատնեսցեն, ասէ, զձեզ յատեանս և ի ժողովուրդս իւրեանց, մի՛ հոգայք՝ թէ զիա՞րդ կամ զի՞նչ խօսիցիք. քանզի ո՛չ դուք էք որ խօսիցիքն, այլ Հոգին Հօրն ձերոյ՝ որ խօսիցի ի ձեզ »[6]: Եւ երբեմն ասէ. թէ մարմինք հաւատացելոցն տաճար են Հոգւոյն սրբոյ. և երբեմն անդամք նոցա՝ անդամք Քրիստոսի են. իսկ երբեմն՝ զնոսա տաճար գոլ ասէ Հօր. « Քանզի

1. Յովհ. Ա. 12–13:
2. Գործք Առ. Ե. 3–4:
3. Ա. Յովհ. Դ. 13:
4. Եբր. Ա. 1:
5. Բ. Կորնթ. ԺԳ. 3:
6. Մատթ. Ժ. 17, 19. և Ղուկ. ԺԲ. 11:

դուք, ասէ, տաճար էք Աստուծոյ կենդանւոյ, ըստ որում ասացն Աստուած, թէ բնակեցայց ի նոսա և գնացից ի նոսա և եղէց նոցա Աստուած, և նոքա եղիցին իմ ժողովուրդ»[1]. և «Թէ որ ապականէ զտաճար Աստուծոյ՝ ապականեսցէ զնա Աստուած»[2]. և դարձեալ՝ «Ոչ գիտէք թէ տաճար էք Աստուծոյ, և Հոգի Աստուծոյ բնակի ի ձեզ»[3]։ Քանզի թէ որ է տաճար Հոգւոյն՝ նա է տաճար Հօր և Որդւոյ. քանզի ուր Հոգին Աստուծոյ բընակէ՝ անդ Աստուած բնակէ։ «Եւ որպէս յարուցանէ զմեռեալս և կենդանագործէ Հայր՝ այսպէս և Որդի զորս կամի կենդանագործէ»[4]։ Նմանապէս և յաղագս Հոգւոյն ասէ, թէ՝ «Հոգին է որ կենդանագործէ, մարմին ինչ ոչ օգտէ»[5]։ Առ Կորնթացիսն գրէ Պաւղոս. «Իսկ Հոգին կենդանագործէ»[6]։ Տեսանես, թէ որ ինչ է գործ Հօր՝ զայս ասէ գիր՝ և Որդւոյ դոլ, և զնոյնն Հոգւոյն սրբոյ. որպէս երանելին Պաւղոս ուսոյց ասելով. «Բաժինք շնորհաց են, բայց Հոգի նոյն է. և բաժինք սպասաւորութեանց են, այլ Տէր նոյն. եթէ բաժինք ներգործութեանց, այլ Աստուած նոյն՝ որ ներգործէ զամենայն յամենայնի»[7]։ Արդ ասացեալ եթէ Հայր է որ ներգործէ զամենայն յամենայնի, յետ փոքու ինչ ասէ, թէ Հոգին սուրբ ներգործէ զամենայն յամենայնի. «Քանզի զայս ամենայն, ասէ, ներգործէ մի և նոյն Հոգի, և բաժանէ իւրաքանչիւր որպէս և կամի»[8]։

Եւ յորժամ՝ ուսուցանէ երանելին Պաւղոս յաղագս Հոգւոյն սրբոյ՝ թէ առհաւատչեայ ժառանգութեան մերոյ Հոգին սուրբ. իսկ Դաւիթ՝ զՏէր դոլ ասէ ժառանգութիւն. քանզի՝ «Տէր է, ասէ,

1. Բ. Կորնթ. Զ. 16։
2. Ա. Կորնթ. Գ. 17։
3. Ա. Կորնթ. Գ. 16։
4. Յովհ. Ե. 21։
5. Յովհ. Զ. 64։
6. Բ. Կորնթ. Գ. 3-6։
7. Ա. Կորնթ. ԺԲ. 4։
8. Ա. Կորնթ. ԺԲ. 11։

բաժին ժառանգութեան իմոյ և բաժակի իմոյ»[1]։ Եւ այլուր ասէ. «Աղաղակեցի առ քեզ Տէր, և ասացի դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց»[2]։ Իսկ Երեմիաս ասէ, եթէ «Որ առեղծն զամենայն՝ նա է ժառանգութիւն Յակոբայ, Տէր է անուն Նորա»[3]։ Արդ մարգարէիցն զՏէր ժառանգութիւն սրբոց գոլ ասացեալ, Պաւղոս զՀոգին սուրբ գոլ ասաց ժառանգութիւն. «Որով և հաւատացեալ, ասէ, կնքեցայք Հոգւովն սրբով աւետեաց, որ է առհաւատչեայ ժառանգութեանս մերոյ[4]». որպէս և Մովսիսի երեսքն կնքեցան Հոգւովն սրբով յորժամ էառ զօրէնսն յԱստուծոյ. և ոչ ոք կարէր հայել ի նա յորդւոցն Իսրայէղի, զի նշանեցաւ ի վերայ նորա լոյս երեսաց Տեառն. որպէս և յաւետարանին գրեալ է. «Յայնժամ փայլեսցեն արդարքն որպէս զարեգակն՝ յարքայութեան Հօր իւրեանց»[5]. քանզի Աստուած լոյս է, նոյնպէս և Որդի լոյս ճշմարիտ, և Հոգին լոյս է, վասն զի նորին էութեան է ճշմարտին լուսոյ, որպէս և Եսայի ասէ. «Եւ եղիցի լոյսն Իսրայէլի՝ որպէս հուր, և սրբեսցէ զնոսա բոցով բորբոքելով»[6]։ Իսկ յաւետարանին՝ Յովհաննէս մկրտիչ ասէ վասն Տեառն, թէ «Նա մկրտեսցէ զձեզ Հոգւովն սրբով և հրով»[7]. իսկ այլուր զՏէրն ասէ սրբիչ. «Ես Տէր սրբեմ զնոսա»[8]։ Եւ յորժամ զԱստուած կոչէ հուր գիրն, «Աստուած մեր, ասէ, հուր ծախիչ է»[9]. Նոյնպէս և յաղագս Հոգւոյն սրբոյ ասէ, թէ «Երեւեցան առաքելոցն բաժանեալ լեզուք որպէս ի հրոյ, և նստաւ իւրաքանչիւր ի վերայ նոցա։ Եւ լցան ամենեքին Հոգւով սրբով,

1. Սղմ. ժե. 5։
2. Սղմ. ճխա. 6։
3. Երեմ. ժ. 16։
4. Եփես. ա. 13։
5. Մատթ. ժգ. 43։
6. Ես. ժ. 17։
7. Մատթ. գ. 11։
8. Ղեւտ. իբ. 16։
9. Բ. Օրէնք. դ. 24։

և սկսան խօսել յայլ լեզուս՝ որպէս և Հոգին տայր բարբառել նոցա »[1]։ Քանզի որք զՀոգին են զգեցեալ՝ զՀայր են զգեցեալ։ « Քանզի պարտ է, ասէ, ապականացուիս այսմիկ զգենուլ զանապականութիւն, և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն »[2]։ Քանզի որք զգեցեալն (են) զՀոգին Աստուծոյ՝ զանապականութիւն են զգեցեալ, և անապականութիւն՝ Աստուած է։

Եւ յորժամ ասէ Դաւիթ, « Բազումք ասէին՝ ո՞վ ցուցցէ մեզ բարութիւնս »[3], յաղագս սորոյ Հոգւոյն ասէ. և այլուր ասաց. « Տէր ոչ պակաս արար զբարութիւնս՝ որոց գնան անբծութեամբ »[4]։ Նոյնպէս և Մատթէոս յաղագս նորա այսպէս ասէ. « Գիտէք տուրս բարիս տալ որդւոց ձերոց, ո՛րչափ եւս առաւել Հայրն ձեր՝ որ յերկինս է՝ տացէ բարութիւնս որոց խնդրեն ի նմանէ »[5]։ Իսկ Ղուկաս զնոյն օրինակ նմանեցուցանելով մեկնէ եթէ զի՞նչ բարութիւնք ասելով. « Եթէ՝ դուք՝ որ չարքդ էք՝ գիտէք տուրս բարիս տալ որդւոց ձերոց, ո՞րչափ եւս առաւել Հայրն ձեր ի յերկնից տացէ Հոգի սուրբ հաւատացելոցն ի նա »[6]։ Քանզի թէ ոչ էր էութեանն միայնոյ բարւոյն՝ Հոգին սուրբ, ոչ արդեւք կոչէր նա բարի. որ երբեմն Տէրն հրաժարէր ի կոչելոյն բարի ըստ որում մարդն եղեւ՝ ասելով. « Մի՛ կոչեր զիս բարի, ո՛չ ոք է բարի բայց մի Աստուած »[7]։ Իսկ զսուրբ Հոգին՝ գիր ո՛չ հրաժարէ ի կոչելոյ բարի ըստ Դաւթի՝ որ ասէն. « Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ »[8]։ Եւ յորժամ ասէ դարձեալ Տէր վասն իւր, « Ես եմ հացն կենդանի յերկնից իջեալ »[9], այլուր զՀոգին սուրբ

1. Գործք Առ. Բ. 3։
2. Ա. Կորնթ. ԺԵ. 53։
3. Սղմ. Դ. 6։
4. Սղմ. ԾԴ. 13։
5. Մատթ. Է. 11։
6. Ղուկ. ԺԱ. 13։
7. Մրկ. Ժ. 18։
8. Սղմ. ՃԽԲ. 10։
9. Յովհ. Զ. 51։

կոչէ հաց երկնաւոր ասելով, «Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր»[1]։ Քանզի ուստի մեզ յաղօթս՝ խնդրել յայժմուս յաւիտենի զհանապազորդն հաց, այսինքն զհանդերձեալսն. զորոյ պըտուղ ունիմք յայժմուս կեանս՝ ի ձեռն մարմնոյն Քրիստոսի հաղորդեալք, ըստ որում ինքն ասաց. «Եւ հացն՝ զոր ես տաց՝ մարմին իմ՝ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհի»[2]։ Քանզի հաց կենդանարար է մարմինն Տեառն, վասն զի ի Հոգւոյ կենդանարարէ առաւ. «Քանզի ծնեալն ի Հոգւոյն հոգի է»[3]։ Եւ յորժամ ասէ Երեմիաս յաղագս Աստուծոյ, թէ նա առաջնորդեաց իսրայէլի յանապատին, «Եւ ոչ ասացէք, ասէ, ո՞ւր է Տէր՝ որ եհան զմեզ յերկրէն Եգիպտացւոց և առաջնորդեաց մեզ յանապատին»[4]։ Եւ Եսայի՝ Հոգւոյն սրբոյ, ասէ, առաջնորդել իսրայէլի յանապատին. «Էած, ասէ, զնոսա ընդ անդունդս՝ որպէս ձի ընդ անապատ, և ոչ աշխատեցան, և որպէս հօտ ընդ դաշտ. էջ Հոգի ի Տեառնէ և առաջնորդեաց նոցա»[5]։ Իսկ առ Կորնթացիսն Պաւղոս ասէ, թէ Քրիստոս էր որ առաջնորդէրն. «Քանզի ըմպէին ի հոգեւոր վիմէն՝ որ երթայր զհետ նոցա, և վէմն էր ինքն Քրիստոս»[6]։

Եւ յորժամ ասէ Պաւղոս ի նմանէ զկոչիլ իւր, «Աստուած, ասէ, որոշեաց զիս յորովայնէ մօր իմոյ, և կոչեաց ի ձեռն շնորհաց իւրոց, յայտնել զՈրդին իւր ինեւ, զի աւետարանեցից զնա ի հեթանոսս»[7], իսկ առ Հռովմայեցիսն ի Քրիստոսէ կոչիլ ասէ, գրելով առ նոսա. «Որովք էք և դուք կոչեցեալք Յիսուսի Քրիստոսի»[8]։ Իսկ Հոգին սուրբ զՊաւղոս և զԲառնաբաս ասաց կո-

1. Մտթ. Զ. 11։
2. Յովհ. Զ. 52։
3. Մտթ. Գ. 6։
4. Եր. Բ. 6։
5. Ես. ԿԳ. 13։
6. Կորնթ. Ժ. 4։
7. Գաղ. Ա. 16։
8. Հռովմ. Ա. 6։

չել յաւետարանել հեթանոսաց զՔրիստոս, որ և է աքանչելի, Յիսուսի ասացեալ ցՊաւղոս ի տաճարին, «Գնա՛, զի ես ի հեթանոսս հեռաւորս առաքեցից զքեզ»[1]: Եւ Պաւղոսի առ Գաղատացիսն գրեալ. «Պաւղոս առաքեալ ոչ ի մարդկանէ և ոչ ի ձեռն մարդոյ, այլ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, և Աստուծոյ Հօր. որ յարոյց զնա ի մեռելոց»[2]. և յետ փոքու ինչ ասէ. «Ծանուցանեմ ձեզ եղբարք, զաւետարանն, զի ո՛չ է ըստ մարդոյ, քանզի և ոչ ես ի մարդոյ առի, և ոչ ուսայ յումեքէ, այլ ի ձեռն յայտնութեանն Յիսուսի Քրիստոսի»[3]: Հոգւոյն սրբոյ երևի առաքեալ զՊաւղոս և զԲառնաբաս քարոզել հեթանոսաց զՔրիստոս: Եւ յորժամ ի դիմաց Հօր խօսին մարգարէքն՝ որպէս սաղմոսիւք, ասէ Աստուած. «Մի անգամ երդուայ ի սրբութիւն իմ, թէ Դաւթի ես ոչ ստեցից»[4]. «Զաւակ նորա յաւիտեան մնասցէ, և աթոռ նորա որպէս արեգակն առաջի իմ»[5]. և դարձեալ, «Ի պտղոյ որովայնի քոյ նստուցից յաթոռ քո»[6]. և որպէս Պետրոս ասաց, թէ «Մարգարէ էր Դաւիթ և գիտէր, թէ երդմամբ երդուաւ նմա Աստուած՝ ի պտղոյ որովայնի նորա նստուցանել զՔրիստոս՝ յաթոռ նորա»[7]:

Իսկ յորժամ ի դիմաց Որդւոյ, որպէս յորժամ ասէ Եսայի. «Այսպէս ասէ Տէր. վասն ձեր հայհոյի անուն իմ ի հեթանոսս. վասն այսորիկ գիտասցէ ժողովուրդ իմ՝ յաւուր յայնմիկ զանուն իմ, թէ ես եմ՝ որ խօսիմս և մերձ եմ»[8]: Իսկ յորժամ ի դիմաց Հոգւոյն սրբոյ, որպէս յորժամ մարգարէն Ագաբոս ասէ. «Այսպէս ասէ Հոգին սուրբ՝ զայրն որոյ է գօտիս այս»[9]: Եւ դարձեալ,

1. Գործք Առ. ԻԲ. 21:
2. Գաղատ. Ա. 1:
3. Գաղատ. Ա. 11:
4. Սղմ. ՁԸ. 36:
5. Սղմ. ՁԸ. 36:
6. Սղմ. ՃԼԱ. 11:
7. Գործք Առ. Բ. 30:
8. Եսայի. ԾԲ. 5:
9. Գործք Առ. ԻԱ. 11:

Պաւղոս առ Տիմոթէոս գրէ. «Իսկ Հոգին սուրբ յայտնապէս ասէ, եթէ ի ժամանակս յետինս ապըստամբեսցեն ոմանք ի հաւատոց»[1]։ Եւ դարձեալ, «Ասէ Հոգին ցՓիլիպպոս. Մատիր և յարեաց ի կառսդ Եթովպացւոյ ներքինոյդ»[2]. և մարգարէն Եզեկիէլ՝ մեղադրելով հնոյ ժողովրդեանն՝ ասէր. «Եւ տրտմեցոյց զիս այսու ամենայնիւ, ասէ Տէր»[3]։ Իսկ Պաւղոս գրէ Նորոյ ժողովրդեանս. «Եւ մի՛ տրտմեցուցանէք զՀոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցայք յօր փրկութեան»[4]. և Դաւիթ յաղագս Հրէիցն ասէր. «Եւ բարկացուցին զԱստուած յանապատին»[5]. և Եսայի յաղագս նոցին. «Իսկ նոքա անհաւանք եղեն, և բարկացուցին զՀոգի նորա սուրբ, դարձաւ նոցա ի թշնամութիւն»[6]. և Ստեփանոս ի Գործս առաքելոցն ասէ. «Խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ականջօք, դուք հանապազ Հոգւոյն սրբոյ հակառակ կայք, որպէս և հարքն ձեր»[7]։

Եւ յորժամ ասէ Պաւղոս յաղագս Հօր, թէ՝ «Աստուած արդարացուցանէ, ո՞վ է որ դատապարտանիցէ»[8], և զնոյն յաղագս Որդւոյ՝ նմանապէս և Հոգւոյն սրբոյ՝ ասէ. «Այլ լուացայք, այլ սրբեցայք, այլ արդարացայք յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և Հոգւով Աստուծոյ մերոյ»[9]. իսկ Տէրն յաղագս իւր ցսատանայ ասէ. «Ո՛չ փորձեսցես զՏէր Աստուած քո»[10]։ իսկ Պետրոս ասէ ցՍափիրա. «Զի՞ է՝ զի միաբանեցէք փորձել զՀոգին Տեառն»[11]։

Եւ Աստուած է որ պարունակէ և լնու զամե-

1. Ա. Տիմ. Գ. 1։
2. Գործք Առ. Ը. 29։
3. Եզեկ. ԺԶ. 43։
4. Եփես. Դ. 30։
5. Սղմ. ՀԷ. 40։
6. Եսայի. ԿԳ. 10։
7. Գործք Առ. Է. 51։
8. Հռովմ. Ը. 33։
9. Ա. Կորնթ. Զ. 11։
10. Մատթ. Դ. 7։
11. Գործ Առ. Ե. 9։

նայն. որպէս և ի ձեռն Եսայեայ ասէ. «Զերկինս և զերկիր ես լնում՝ ասէ Տէր»[1]. Նոյնպէս և յաղագս Որդւոյ ասէ Պաւղոս. «Որ էջն՝ նոյն է և որ ելն ի վերոյ քան զամենայն երկինս, զի լցցէ զամենայն»[2]. իսկ զնոյն և յաղագս Հոգւոյն՝ Դաւիթ ասէ. «Ցո՞ երթայց ես յոգւոյ քումմէ, կամ յերեսաց քոց ես յո՞ փախեայց»[3]: իսկ առել նորա՝ յո՞վ երթայց ի Հոգւոյ քումմէ, եցոյց մեզ զՀոգին սուրբ գոլ զամենայն լնուլ. «Եւ յերեսաց քոց ես յո՞վ փախեայց. թէ ելանեմ յերկինս՝ դու անդ ես, թէ իջանեմ ի դժոխս՝ և անդր մօտ ես»[4]. և ո՞վ էջ ի դժոխս, եթէ ոչ Որդի՝ որ ի մեռելոցն յարեաւ:

Եւ յորժամ ասէ Ստեփանոս ի Գործս առաքելոցն, թէ «Աստուած փառաց երեւեցաւ հօր մերում Աբրահամու»[5], զայս յաղագս Որդւոյ Պաւղոս ասէ. «Զի թէ էր ծանուցեալ՝ ո՛չ արդեւք զՏէր փառացն ի խաչ հանէին»[6]. Նոյնպէս և Դաւիթ ասէ, «Տէր զօրութեանց, սա ինքն է թագաւոր փառաց»[7]: Քանզի մի փառք են Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. «Զփառս իմ, ասէ, այլում ո՛չ տաց»[8]. զի ոչ է երկրորդ Աստուած Որդի, այլ Բան միոյն և միայնոյ Աստուծոյ, աստուածաբանեալ ի Հօր, որպէս և Հայր յՈրդւոյ աստուածաբանի. ըստ որում և Եսայի ասէ, աստուածաբանելով զՈրդի ընդ Հօր. «Երկիր պագցեն քեզ և ի քեզ աղօթեսցեն, զի ի քեզ է Աստուած. և բաց ի քէն այլ ո՛չ ոք է. դու ես Աստուած, և մեք ո՛չ գիտէաք. Աստուած իսրայէղի փրկիչ. ամաչեսցեն և պատկառեսցեն ամենեքեան որ հակառակ կան նմա»[9]. և հակառակ կան նմա՝ որք ո՛չ խոստովանին

1. Երեմ. ԻԳ. 24:
2. Եփես. Դ. 10:
3. Սղմ. ՃԼԸ. 7:
4. Սղմ. ՃԼԸ. 8:
5. Գործք Առ. Է. 2:
6. Ա. Կորնթ. Բ. 8:
7. Սղմ. ԻԳ. 10:
8. Ես. ԽԲ. 8:
9. Ես. ԽԵ. 14:

զնա և զՀոգին նորա՝ նորին Հօր էութեանն, և բաց ի նմանէ այլ ո՛չ գոլ Աստուած. և որք ի չարչարանս նորա և յաղքատութիւն ամաչեն։ Քանզի ոչ ոք կարէ գտանել զԱստուած՝ եթէ ոչ զխաչեցեալն և ի մեռելոց յարուցեալն՝ խոստովանեսցի ընդ սրբոյն Թովմայի, Տէր Աստուած. որ ասացն ցառաքեալսն իւր. « Եթէ գիտէիք զիս, և զՀայրն իմ արդեւք գիտէիք. յայսմ հետէ գիտէք զնա և տեսէք զնա։ Ասէ Փիլիպպոս. Տէր, ցո՛յց մեզ զՀայր քո, և շատ է մեզ։ Ասէ ցնա Յիսուս, այսքան ժամանակս ընդ ձեզ եմ, և ո՞չ ծանեար զիս Փիլիպպէ. որ ետես զիս, ետես զՀայր. զիա՞րդ դու ասես՝ ցոյց մեզ զՀայր. ո՞չ հաւատաս եթէ ես ի Հայր և Հայր յիս է. զբանսն զոր ես խօսիմ՝ յանձնէ ոչ խօսիմ. և Հայր որ յիս մնայ՝ նա գործէ զգործսն։ Հաւատա՞յք ինձ թէ ես ի Հայր և Հայր յիս է. ապա թէ ոչ՝ վասն գործոցն հաւատացէք ինձ »[1]։ Եւ գործ էր Աստուծոյ Հօր՝ զդեւս հանել. ի ձեռն Հոգւոյն սրբոյ ասաց հանել զդեւս. « Իսկ եթէ ես Հոգւով Աստուծոյ հանեմ զդեւս, ասէ »[2]. յաղագս որոյ Ղուկաս ասէ. « Եթէ ես մատամբ Աստուծոյ հանեմ զդեւս »[3]. քանզի յորժամ զՈրդի գիր՝ բազուկ Հօր անուանէ. զսուրբ Հոգին՝ մատն Աստուծոյ կոչէ. և յորժամ զՈրդի բան անուանէ, զսուրբ Հոգին փչումն Աստուծոյ ասէ։

Եւ դարձեալ ասէ առաքեալ. « Յորժամ տացէ ի ձեռս զթագաւորութիւնն Աստուծոյ և Հօր. յորժամ խափանեսցէ զամենայն իշխանութիւնս և զամենայն պետութիւն և զօրութիւն. քանզի պարտ է նմա թագաւորել՝ մինչեւ դիցէ զթշնամիս նորա ընդ ոտիւք նորա. յետին թշնամին խափանի մահ. քանզի զամենայն ինչ հնազանդ արար ի ներքոյ ոտից նորա։ Իսկ յորժամ ասէ, թէ ամենայն ինչ

1. Յովհ. ժԴ. 7–12։
2. Մատթ. ժԲ. 28։
3. Ղուկ. ժԱ. 20։

հնազանդեցաւ Նմա, յայտ է՝ թէ բաց յայնմանէ՝ որ հնազանդեցոյց Նմա զամենայն. զի եղիցի Աստուած ամենայն յամենայնի »[1]։ Ցաղագս հնազանդութեան աշխարհի ասէ, զմարմնով հնազանդելն Նորա. քանզի վասն թագաւորութեան Նորա երկնայնոյ՝ Դանիէղ յայտնեաց՝ ասելովն. « Եւ թագաւորութեան Նորա վախճան ոչ եղիցի »[2]. որպէս և Ղուկաս զբբոյն Գաբրիէղի զասելն առ կոյսն՝ յաղագս Տեառնն, « Եւ թագաւորեսցէ, ասէ, յաւիտեան, և թագաւորութեան Նորա, ասէ, ոչ եղիցի վախճան »[3]։ Իսկ առաքեալ ասէ, վախճան գոլ թագաւորութեան Նորա. « Քանզի պարտ է Նմա թագաւորել, մինչեւ դիցէ զամենայն ի ներքոյ ոտից իւրոց »[4]։ Նոյնպէս և Դաւիթ. « Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց »[5]։ Արդ՝ ասելն Նորա՝ նիստ, սկիզբն նշանակէ, և ասելն Նորա՝ թէ մինչեւ դիցին թշնամիք քո, վախճան ցուցանէ։ « Իսկ յորժամ հնազանդեսցի Նմա ամենայն, յայնժամ՝ և ինքն Որդի հնազանդեսցի հնազանդեցուցչին Նմա զամենայն. զի եղիցի Աստուած՝ ամենայն յամենայնի »[6]։ Զայս կամի ասել. յորժամ ամենեքին հնազանդեսցուք Քրիստոսի, և գտցուք Նորա անդամք, և եղիցուք Նորա յորդիս Աստուծոյ. « Քանզի դուք մի էք, ասէ, ի Քրիստոս Յիսուս »[7]. յայնժամ և ինքն փոխանակ մեր հնազանդեսցի Հօր, որպէս գլուխ՝ յաղագս անդամոց իւրոց։ Քանզի անդամոցն Նորա չեւ եւս հնազանդեցելոց, ինքն գլուխն Նոցա՝ չեւ եւս է հնազանդեալ Հօր, մնալով իւրոց անդամոցն։ Իսկ եթէ էր մի ի հնազանդեցելոցս՝ յիսկզբանէն առ-

1. Ա. Կորնթ. ԺԵ. 24–29։
2. Դան. Գ. 100։
3. Ղուկ. Ա. 33։
4. Ա. Կորնթ. ԺԵ. 25։
5. Սղմ. ՃԹ. 1։
6. Ա. Կորնթ. ԺԵ. 28։
7. Գաղ. Գ. 28։

զնա և զՀոգին Նորա՝ Նորին Հօր էութեանն, և բաց ի նմանէ այլ ո՛չ գոլ Աստուած. և որք ի չարչարանս Նորա և յաղթութիւն ամաչեն։ Քանզի ոչ ոք կարէ գիտել զԱստուած՝ եթէ ոչ զխաչեցեալն և ի մեռելոց յարուցեալն՝ խոստովանեսցի ընդ սրբոյն Թովմայի, Տէր Աստուած. որ ասացն ցառաքեալսն իւր. «Եթէ գիտէիք զիս, և զՀայրն իմ արդեւք գիտէիք. յայսմ հետէ գիտէք զնա և տեսէք զնա։ Ասէ Փիլիպպոս. Տէր, ցո՛յց մեզ զՀայր քո, և շատ է մեզ։ Ասէ ցնա Յիսուս, այսքան ժամանակս ընդ ձեզ եմ, և ո՞չ ծանեար զիս Փիլիպպէ. որ ետես զիս, ետես զՀայր. զի՞արդ դու ասես՝ ցոյց մեզ զՀայր. ո՞չ հաւատաս եթէ ես ի Հայր և Հայր յիս է. զբանսն զոր ես խօսիմ՝ յանձնէ ոչ խօսիմ. և Հայր որ յիս միայ՝ Նա գործէ զգործն։ Հաւատա՞յք ինձ թէ ես ի Հայր և Հայր յիս է. ապա թէ ոչ՝ վասն գործոցն հաւատացէք ինձ»[1]։ Եւ գործ էր Աստուծոյ Հօր՝ զդեւս հանել. ի ձեռն Հոգւոյն սրբոյ ասաց հանել զդեւս. «Իսկ եթէ ես Հոգւով Աստուծոյ հանեմ զդեւս, ասէ»[2]. յաղագս որոյ Ղուկաս ասէ. «Եթէ ես մատամբ Աստուծոյ հանեմ զդեւս»[3]. քանզի յորժամ զՈրդի՝ գիր՝ բազուկ Հօր անուանէ. զսուրբ Հոգին՝ մատն Աստուծոյ կոչէ. և յորժամ զՈրդի բան անուանէ, զսուրբ Հոգին փչումն Աստուծոյ ասէ։

Եւ դարձեալ ասէ առաքեալ. «Յորժամ տացէ ի ձեռս զթագաւորութիւնն Աստուծոյ և Հօր. յորժամ խափանեսցէ զամենայն իշխանութիւնս և զամենայն պետութիւն և զօրութիւն. քանզի պարտ է Նմա թագաւորել՝ մինչեւ դիցէ զթշնամիս Նորա ընդ ոտիւք Նորա. յետին թշնամին խափանի մահ. քանզի զամենայն ինչ հնազանդ արար ի ներքոյ ոտից Նորա։ Իսկ յորժամ ասէ, թէ ամենայն ինչ

1. Յովհ. ԺԴ. 7–12։
2. Մատթ. ԺԲ. 28։
3. Ղուկ. ԺԱ. 20։

հնազանդեցաւ նմա, յայտ է՝ թէ բաց յայնմանէ՝ որ հնազանդեցոյց նմա զամենայն. զի եղիցի Աստուած ամենայն յամենայնի »[1]: Ցաղագս հնազանդութեան աշխարհի ասէ, զմարմնով հնազանդելն նորա. քանզի վասն թագաւորութեան նորա երկնայնոյ՝ Դանիէլ յայտնեաց՝ ասելով. « Եւ թագաւորութեան նորա վախճան ոչ եղիցի »[2]. որպէս և Ղուկաս զբրբոյն Գաբրիէլի զասելն առ կոյսն՝ յաղագս Տեառնն, « Եւ թագաւորեսցէ, ասէ, յաւիտեան, և թագաւորութեան նորա, ասէ, ոչ եղիցի վախճան »[3]: իսկ առաքեալ ասէ, վախճան գոլ թագաւորութեան նորա. « Քանզի պարտ է նմա թագաւորել, մինչև դիցէ զամենայն ի ներքոյ ոտից իւրոց »[4]: Նոյնպէս և Դաւիթ. « Ասաց Տէր ցՏէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց »[5]: Արդ՝ ասելն նորա՝ նիստ, սկիզբն նշանակէ, և ասելն նորա՝ թէ մինչև դիցին թշնամիք քո, վախճան ցուցանէ: « Իսկ յորժամ հնազանդեսցի նմա ամենայն, յայնժամ և ինքն Որդի հնազանդեսցի հնազանդեցուցչին նմա զամենայն. զի եղիցի Աստուած՝ ամենայն յամենայնի »[6]: Զայս կամի ասել. յորժամ ամենեքին հնազանդեսցուք Քրիստոսի, և գտցուք նորա անդամք, և եղիցուք նորա յորդիս Աստուծոյ. « Քանզի դուք մի էք, ասէ, ի Քրիստոս Յիսուս »[7]. յայնժամ և ինքն փոխանակ մեր հնազանդեսցի Հօր, որպէս գլուխ՝ յաղագս անդամոց իւրոց: Քանզի անդամոցն նորա չեւ ևս հնազանդեցելոց, ինքն գլուխն նոցա՝ չեւ ևս է հնազանդեալ Հօր, մնալով իւրոց անդամոցն: Իսկ եթէ էր մի ի հնազանդեցելոցս՝ յիսկզբանէն ար-

1. Ա. Կորնթ. ժե. 24-29:
2. Դան. Գ. 100:
3. Ղուկ. Ա. 33:
4. Ա. Կորնթ. ժե. 25:
5. Սղմ. ՃԺ. 1:
6. Ա. Կորնթ. ժե. 28:
7. Գաղ. Գ. 28:

դեռ էր հնազանդեալ Հօր, և ոչ ի վախճանին առնէր զայս։ Քանզի մեք եմք նման հնազանդեալ Հօր, և մեք եմք նման թագաւորեալք՝ մինչեւ դիցին թշնամիք մեր ի ներքոյ ոտից մերոց։ Քանզի վասն թշնամեաց մերոց՝ Տէրն երկնից ի նմանութիւն մեր եղեւ. և առ զմարդկային աթոռն Դաւթի՝ զըստ մարմնոյ հօրն իւրոյ, վերստին շինել և կանգնել զնա. զի յորժամ կանգնեսցի, ամենեքին նման թագաւորեսցուք, տուեալ ի ձեռս Հօր զմարդկային թագաւորութիւնն կանգնեալ. «Զի եղիցի Աստուած ամենայն յամենայնի»[1]. թագաւորելով ի ձեռն նորա՝ որպէս ի ձեռն փրկչի Աստուծոյ, յետ թագաւորելոյն նորա ի ձեռն նորա՝ որպէս ի ձեռն մարդոյ փրկչի։

Եւ յորժամ՝ ասէ Պետրոս, «Ճշմարտիւ գիտասցէ ամենայն իսրայէղ, թէ և Տէր զնա և օծեալ՝ Աստուած արար, զայս Յիսուս՝ զոր դուք խաչեցէք»[2]. ո՛չ յաղագս աստուածութեան նորա ասէ, թէ և Տէր և օծեալ արար, այլ վասն մարդկութեան նորա. որ է՝ ամենայն եկեղեցի՝ նման տիրեալ և թագաւորեալ յետ նորա խաչելութեան։. և օծեալ ի թագաւորութիւն երկնից, զի թագաւորակից եղիցի նմա, որ վասն նորա զինքն ունայնացոյց՝ և համբարձն զնա ի ձեռն ծառայականին կերպի։ Քանզի Բանն և Որդի Աստուծոյ՝ միշտ էր Տէր և Աստուած, և ո՛չ յետ խաչելութեանն արարաւ Տէր և օծեալ. այղ որպէս յառաջագոյն ասացի, զմարդկութիւն նորա արար աստուածութիւն նորա Տէր և օծեալ։

Եւ յորժամ՝ ասէ, «Հայր, եթէ հնար է՝ անցցէ բաժակս այս, սակայն ոչ իմ՝ կամքս եղիցին, այլ քոյդ. հոգիս յօժար է, բայց մարմինս տկար»[3], երկուս կամս աստանօր ցուցանէ. է ինչ որ մարդ-

1. Ա. Կորնթ. ԺԵ. 28։
2. Գործք Առ. Բ. 36։
3. Մատթ. ԻԶ. 42. և Մրկ. ԺԴ. 36։

կային՝ որ է մարմնոյ, և է ինչ որ աստուածային։ Քանզի մարդկայինն վասն տկարութեան մարմնոյն հրաժարէ ի չարչարանաց. իսկ աստուածայինն նորա՝ յօժար է։ Որպէս և Պետրոս լուեալ վասն չարչարանացն երկեաւ և ասէ. «Քաւ քեզ, Տէր»[1]. իսկ սաստեալ նմա Տեառնն ասէ. «Երթ յետս իմ, սատանայ, գայթակղութիւն ինձ ես. զի ոչ խորհիս զԱստուծոյսն, այլ զմարդկան»[2]։ Հրաժարէ ի չարչարանացն որպէս մարդ. իսկ Աստուած գոլով և ըստ էութեան Աստուծոյ անչարչարելի՝ յօժարութեամբ ընկալաւ զչարչարանսն և զմահ. քանզի ոչ էր հնար ըմբռնիլ նմա ի մահուանէ. զի Աստուած էր ի նմանութիւն մարդկան եղեալ, միացեալ կամաւորութեամբ, և յարուցեալ՝ ըստ իշխանութեանն իւրոյ՝ որպէս զԱստուած. որպէս և Դաւիթ ասաց. «Յարիցէ Աստուած, և ցրուեսցին թշնամիք նորա»[3]։ Եւ դարձեալ. «Արի՛, Տէր Աստուած իմ, հրամանաւ որով պատուիրեցեր, և ժողովք ժողովրդոց շուրջ եղիցին զքեւ. վասն այսորիկ ի բարձունս դարձիր. Տէր դատի զժողովուրդս»[4]։ Ասէ և Առաքեալ. «Չարչարեցաւ ի տկարութենէ, և կենդանի է զօրութեամբն Աստուծոյ»[5], իսկ զօրութիւն Աստուծոյ է Որդի։ Չարչարեալ ի տկարութենէ, այսինքն՝ ի մարմնոյ չարամանութենէ, և հրաժարեալ ի չարչարանացն՝ որպէս մարդ, իսկ կենդանի՝ ի ձեռն իւրոյն զօրութեան։

Եւ յորժամ ասէ Տէր ի Յովհաննու աւետարանին. «Այս են կեանք յաւիտենականք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած՝ և զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս»[6]. այլուր նոյն Յովհաննէս զՈրդի ասէ ճշմարիտ Աստուած, քանզի

1. Մատթ. ԺԶ. 22։
2. Մատթ. ԺԶ. 23։
3. Սղմ. ԿԷ. 2։
4. Սղմ. Է. 8–9։
5. Բ. Կորնթ. ԺԳ. 4։
6. Յովհ. ԺԷ. 3։

«Գիտեմք, ասէ, զի Որդին Աստուծոյ եկն և ետ մեզ միտս, զի ծանիցուք զճշմարտութիւնն. և եմք ի ճշմարտի Որդւոյ Նորա Յիսուսի Քրիստոսի, զի Նա է ճշմարիտ Աստուած և կեանք յաւիտենականք»[1]։ Որպէս զի ճշմարիտ Աստուած է Նա՝ և նախ քան զլինելն մարդ, և յետ լինելոյն միջնորդ Աստուծոյ և մարդկան, ո՛չ միայն մարդկան, այլ և Աստուծոյ· ըստ որում՝ և Երեմիաս ասէ. «Սա Աստուած մեր, ո՛չ համարեսցի այլ ոք առ սա. եգիտ զամենայն ճանապարհ հանճարոյ, և ետ զայն Յակոբայ ծառայի իւրոյ, և Իսրայէղի սիրելւոյ իւրոյ։ Եւ յետ այսորիկ յերկրի երեւեցաւ, և ընդ մարդկան շրջեցաւ»[2]։ Եւ երբ շրջեցաւ ընդ մարդկան, եթէ ո՛չ յորժամ ծնաւն ընդ Նոսա ի կնոջէ և տղայակից եղեւ և աճակից, և կատարելակից։ Եւ այլուր ասէ Երեմիա. «Խո՛ր է սիրտ Նորա քան զամենեցուն, և մարդ է՝ և ո՞վ ծանիցէ զնա»[3]։ Նմանապէս և Եսայի ասէ. «Մանուկ ծնաւ մեզ, որդի և տուաւ մեզ, որոյ իշխանութիւն իւր ի վերայ ուսոց իւրոց. և կոչի անուն Նորա Հրեշտակ մեծի խորհրդոյ, Աստուած հզօր, իշխան խաղաղութեան, հայր հանդերձելոյ յաւիտենին»[4]. և այլուր ասէ. «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն Նորա Էմմանուէլ, որ թարգմանի ընդ մեզ Աստուած»[5]։ Արդ Աստուած է որ ծնաւ ի կուսէն և եմուտ ընդ օրինօք. և դարձեալ այլուր ասէ. և «Տեսաք զնա՝ և ո՛չ գոյր Նորա գեղեցկութիւն»[6]։ Քանզի էր զնա յառաջագոյն տեսեալ յաստուածայնում և ի փառաւոր կերպի, նստեալ ի վերայ աթոռոյ բարձրացելոյ և վերացելոյ, յորժամ և քրովբէքն փառաւորէին զնա ասելով. «Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր Սաբաւովթ»[7].

1. Ա. Յովհ. Ե. 20։
2. Բարուք. Գ. 36։
3. Երեմ. ԺԷ. 9։
4. Եսա. Թ. 6։
5. Եսա. Է. 14։
6. Եսա. ԾԳ. 2։
7. Եսա. Զ. 3։

և յետ այսորիկ տեսանէր զնա կերպարան ծառայի առեալ, և ի նմանութիւն մարդկան եղեալ. վասն այսորիկ ասէ. «Եւ տեսաք զնա, և ո՛չ գոյր տեսիլ և ո՛չ գեղեցկութիւն. այլ տեսիլ նորա անարգ՝ նուազեալ քան զամենայն որդւոց մարդկան։ Եւ այր ի հարուածս գոլով՝ գիտէ համբերել ցաւոցն. զի դարձուցեալ զերեսս իւր՝ անարգեցաւ և ոչ ինչ համարեցաւ։ Նա զհիւանդութիւնս մեր բառնայ և վասն մեր չարչարի. և մեք համարեցաք զնա ի ցաւս և ի հարուածս և ի չարչարանս։ Իսկ նա վիրաւորեցաւ վասն անօրէնութեանց մերոց, և խոշտացաւ վասն մեղաց մերոց»[1]։ Եւ այլուր ասէ յաղագս նորա. «Ահաւասիկ Աստուած մեր, հատուցանէ դատաստանս եւ հատուսցէ. ինքնին եկեսցէ և փրկեսցէ զմեզ։ Յայնժամ աչք կուրաց բացցին և ականջք խլից լուիցեն. յայնժամ վազեսցէ կաղն որպէս զեղջերու, և պարզ լիցին լեզուք ծանրախօսաց»[2]։ Եւ դարձեալ այլուր ասէ. «Ոչ հրեշտակ և ո՛չ պատգամաւոր, այլ ինքն Տէր եկեալ փրկեաց զմեզ»[3]։ Իսկ Դաւիթ ասէ. «Մայր Սիովն ասէ մարդ, և մարդ ծնաւ ի նմա, և ինքն հիմնեցոյց զնա Բարձրեալն»[4]։ Քանզի այս մարդս ծնեալս ի սմա՝ սա է Բարձրեալն. ըստ որում ի Սաղմոսին ասէ. «Ծանիցեն զի անուն քո Տէր է, և դու միայն ես բարձրեալ ի վերայ ամենայն երկրի»[5]։

Եւ յորժամ ասէ փրկիչն, «Որ առաքեացն զիս մեծ է քան զիս»[6], վասն զի մարդ եղեւ, և մեծ քան զինքն ասէ զՀայր։ Իսկ բան գոլով Հօր՝ հաւասար նորա է. քանզի «Ես, ասէ, և Հայր իմ մի եմք»[7]. և «Որ տեսես զիս՝ տեսես զՀայր իմ»[8]. և

1. Ես. ԾԳ. 2–5։
2. Ես. ԼԵ. 4–5։
3. Ես. ԿԳ. 9։
4. Սղմ. ՁԶ. 5։
5. Սղմ. ՁԲ. 19։
6. Յովհ. ԺԴ. 28։
7–8. Յովհ. Ժ. 30, և ԺԴ. 9։

ոչ ի յափշտակութենէ ունի զգոլն հաւասար Հօր, այլ ըստ բնութեան հաւասար է և համագոյ, վասն զի ի հայրական էութենէն է ծնեալ։

Զայսոսիկ ի մասնէ գրեցի. զի ըստ որում ասէն առաքեալ՝ «Ոչ եւս եղիցուք տղայք ալէկոծեալք և տատանեալք յամենայն հողմոց վարդապետութեան՝ խաբէութեան մարդկան, խորամանկութեամբ առ պատրանս մոլորութեան»[1]։

# Բ

## ՃԱՌ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՑ ԹԷ ՄԻ Է ՔՐԻՍՏՈՍ

### ԸՆԴԴԷՄ ՊԱՒՂՈՍԻ ՍԱՄՈՍՏԱՑՒՈՑ

Պարտ էր՝ որք միանգամ՝ ի հեթանոսականէն ի բաց հեռացան ի մոլորութենէ, և ծանեան զմին և միայն ճշմարիտ ամենեցունցն Աստուած, ոչ եւս երկրպագել արարածոյ, և ոչ աստուածացուցանել և պաշտել զարարած. «Եւ ոչ զարարիչն, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն»[2]։ Նոյնպէս և որք ի հրէականէն ի բաց գնացին անհաւատութենէն, և ըստգտին զնոսա՝ որպէս անզգամս և ապերախտս, և հաւատացին ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, և ի միտ առին զնա Աստուած վկայեալ ամենայն ուստեք, և ծանուցեալ յիշխանութենէն և ի նշանացն, և յաստուածայնոցն գրոց և ի տիրականէն գալստենէ, ոչ եւս անկանել՝ ի հասարակաց և ի սոսկ մարդ, վասն արտաքուստ կուսէ երեւմանն. ոչ եւս ըստ երեւեցելոյն ձեւի՝ և զաներեւոյթն նորա բնութիւն սահ-

1. Եփես. Դ. 14։ 2. Հռովմ. Ա. 25։

մանել, և ո՛չ վասն մարմնոյն և մարմնականացն կրից՝ մարդ զնա բոլոր կարծել, և որպէս զմի ի մէնջ չարչարելի։ Քանզի այսոքիկ էին Հրէիցն, և վասն այսորիկ զհաւատն նոցա ի բաց եբարձ և աստուածամարտս կոչեաց։ Ցայսոսիկ և այժմ նախանձին ոմանք, հեթանոսական և հրէական ախտացեալ չարութիւն, և ոչ ընկալեալ և ոչ հաւատացեալ մարմնանալ Աստուծոյ. այդ մտածութեամբք մարդկայնովք և իմաստութեամբ հեթանոսականաւ գիտել և հասու լինել յաւէտ կամեցեալք՝ զմեծամեծսն և անհասանելիս։ Զիա՞րդ ծնանի անմարմինն. զիա՞րդ յառաջ գայ. և ո՞ւր, որ ամենայն ուրեքն է, և զամենայն պարունակէ և զամենայն լնու։ Եւ ի զիա՞րդն ասելոյ և ո՞րպէս, յանհաւատութիւն տարեալ եղեն, և փոխանակ ծննդեանն՝ ստեղծին արարեալ. և փոխանակ յառաջ ճանապարհի՝ ստացուած և անցեալ[1] ասացին։

Այսպէս դարձեալ և առ մարմնաւորութեամբն. զիա՞րդ մարմնանայ. զիա՞րդ չարադրի առ դոյզն մարմին՝ անտանելին։ Զիա՞րդ և միաւորի անստացականն ընդ ստացականին, և ընդ պարագրելւոյն՝ անպարագրելին։ Զիա՞րդ և մասամբ մեծն այն՝ և առանց մասին՝ և անբաժանելի։ Քանզի կամ մեծն ի փոքր ամփոփեցաւ տեղի, և կամ փոքրն մեծ եղեւ, և կամ զմասն ինչ յաստուածութենէն և ոչ զամենայն ընկալաւ, որ է ամպարշտութիւն։ Եւ տարեալ եղեն՝ ի զիարդն ասելոյ՝ և որո՛վ յեղանակաւ, և զի՛նչ հետեւմամբ, յանհաւատութիւն և սոքա. և բնակարան՝ փոխանակ մարմնանալոյ՝ կազմեցին։ Եւ փոխանակ չարադրութեան և միաւորութեանն՝ ներգործութիւն մարդկային, և փոխանակ միոյ անձնաւորութեանն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, երկուս անձնաւորութիւնս և դէմս. և փոխանակ սրբոյ Եր-

1. Յօր. էջեալ, եդաւ ըստ յունին։

րորդութեանն՝ չորրորդութիւն անվայելչապէս, և անօրինաբար խորհեցան։ Անվայելչապէս, զի յԱստուած հպեցուցանեն մարդ, և ծառայ թուակից առնեն Տեառն, և ստացական դէմ՝ ընդ անստացականացն դիմաց չարադասեն. իսկ անօրինաբար, զի զմի անձնաւորութիւնն երկուս առնեն, մուծանելով ի սուրբ Երրորդութիւնն չորրորդ անձնաւորութիւն, օտար ամենայն ամենեւին և այլացեղ, և քան զամենայն զբանական ստացուածս՝ զյետինն և նուաստ և փոքր։ իսկ թէ ստուգապէս դարձեալ զմտաւ ածիցես և իբրս զգուշանալ կամիցիս, գտցես զնոսա ի սրբոյ Երրորդութենէն արտաքս ընկեցեալ զՏէր մեր Յիսուս Քրիստոս, որպէս զծառայ՝ որպէս զմարդ աներկրպագելի. զերկրպագելին երկրպագու յաւէտ ընդ ամենեցունց և ընդ հնազանդութեամբ. որպէս Մարկեղոս և Պաւղոս Սամոստացի խոտորնակս պատմեն զաստուածայինն և առաքելական գիր՝ յիւրեանցն քարշեալ մտածութիւնս։ «Քանզի յորժամ հնազանդեսցի նմա, ասէ, ամենայն, յայնժամ՝ և ինքն Որդի՝ այսինքն ամբարձեալն մարդ՝ հնազանդեսցի հնազանդեցուցչին նմա զամենայն. զի եղիցի, ասէ, Աստուած»[1]. որպէս և նախ քան զմարմնանալն «յամենայնի»։ Անմարմինն էր, և մարմին ոչ ունելով, և համբարձեալ մարդ ընդդէմ ամենեցունց և ամենայնի թուակից եղեալ, յառաջ մատուցեալ և հնազանդեալ պաշտել։

Տեսէք, թէ յորքան անկան անզգամութիւն՝ կարծեալքն իմաստունք. յորքան մոլորութիւն և անհաւատութիւն տարեալ եղեն. և զմտաւ ածել զոր ինչ ոչն է, և ստեղծուլ և առասպելաբանել։ Քանզի ոչ միայն ի հաւատս ոչ կամեցան մերձենալ, այլ և պատրանս գտին, և չարահնարութիւնս հնարեցան, և ստեղծին. յիմար և անխրատս խնդիրս ի

1. Ա. Կորնթ. ժե. 28։

մոլորութիւն բազմաց՝ և ապստամբութիւն արտաքոյ օրինաց գտեալ, և ի հանդերձելոցն անյոյս եղեալ։ Քանզի, թէ ակն ունէին հանդերձելոյն, եթէ զալստեան Աստուծոյ և զատաստանի էին հաւատացեալ, եթէ ի տանջանացն էին երկուցեալ՝ ի հաւատս մատչէին, աւետարանացն հաւանէին, և առաքելոցն հաւատային յաւէտ՝ քան թէ բանից մարդկայնոց։ Քանզի զՔրիստոս քարոզեցին անդէն ելեալ առաքեալքն համաձայնաբար, և հետեւապէս՝ զՈրդին Աստուծոյ, զնոյն ի Բեթղահէմ ծնեալ ի զաւակէ Դաւթի ըստ մարմնոյ՝ զնորմանեալն մարդկան, և զխաչեցեալն վասն մարդկան ի Պոնտացւոյ Պիղատոսէ։ Զնա ասացին Աստուած, զնոյն մարդ. զնոյն Որդի Աստուծոյ, զնոյն որդի մարդոյ. զնոյն յերկնից, զնոյն յերկրէ. զնոյն անչարչարելի, զնոյն չարչարելի. ոչ զայլ որ և այլ, ոչ երկուս դէմս, ոչ անձնաւորութիւնս, ոչ երկրպագութիւնս երկուս։

Զի՞նչ պէտք են խնդրել և բանակռիւ լինել. հաւատալն է օգտակար և պաշտել և երկրպագել լռութեամբ։ Գիտեմ զնա Աստուած ճշմարտապէս յերկնից՝ անչարչարելի. գիտեմ զնա՝ որդի Դաւթի ըստ մարմնոյ՝ մարդ ի յերկրէ՝ չարչարելի։ Ո՛չ խնդրեմ թէ զի՞արդ անչարչարելի և զի՞արդ չարչարելի նոյն ինքն, զի՞արդ Աստուած և զի՞արդ մարդ։ Մի՛ դուցէ զզի՞արդն խուզելով և զյեղանակն խնդրելով՝ անկայց ի բարութեանցն որ առաջի կայ մեզ։ Քանզի հաւատալ պարտ է նախ և փառաւորել. իսկ երկրորդ՝ ի վերուստ հայցել զհաստումն այսոցիկ, և մի՛ ի ներքուստ առնուլ զայս ի մարմնոյ և յարենէ, այլ ի յայտնութենէն աստուածայնոյ. քանզի «Երանի՛ քեզ, ասէ, Սիմովն որդի Յովնանու, զի մարմին և արիւն ոչ յայտնեաց քեզ, այլ Հայրն իմ որ յերկինս. և դու ես վէմ և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց ոչ յաղթահարես-

ցեն զնա»[1]։ Հաւատարիմ է բանս և անշարժ խոստումն, և եկեղեցի անպարտելի, թէպէտ դրունք դժոխոց, թէպէտ նոյն ինքն դժոխք շարժեսցին, թէպէտ աշխարհակալ խաւարին։ Քաջալերեսցի՛ ասելովն, «Քաջալերեցարուք, ես յաղթեցի աշխարհի»[2]. և չարչարանօք նմանապէս յաղթէ· վասն զի և Տէրն նորա՝ չարչարանօք յաւէտ յաղթէր, և խաչեալ՝ ապրեցուցանէր, և մեռեալ՝ կենդանագործէր. տեսանես և լսես զնոյն Աստուած, համայնդամայն և մարդ։ Քանզի թէ Աստուած միայն էր, զիա՞րդ չարչարէր, զիա՞րդ խաչիւր և մեռանէր· օտար են այսոքիկ Աստուծոյ· և թէ մարդ միայն էր, զիա՞րդ չարչարանօքն յաղթէր, ապրեցուցանէր, կենդանագործէր· այսոքիկ ի վեր քան զմարդ են։ Իսկ նոյն ինքն չարչարի և ապրեցուցանէ, և չարչարանօքն յաղթէ. նոյն ինքն Աստուած, նոյն ինքն մարդ. երկաքանչիւրն՝ որպէս մի, երկաքանչիւրն՝ որպէս միայն։

Այդ թերեւս ասիցէ ոք յիմաստնոցն ի քաջից, առեալ ի մէջ ստոյգ խնդրել։ Մասն ուրեմն էր Բանին՝ մարմինն լցուցողական Որդւոյ անձնաւորութեան. զի իցէ մի որդի Աստուծոյ յերկաքանչիւրեցն շարկացեալ, և անկատար ըստ ինքեան, և մարմնոյն առ ի կատարումն կարօտ։ Ապա թէ ոչ՝ զիա՞րդ մի, կամ զիա՞րդ մի անձնաւորութիւն և դէմ։ Եւ ապա դարձեալ. եթէ մի անձնաւորութիւն է նոյն Բանին և մարմնոյն, և որդի նոյն Աստուծոյ, եղիցի ուրեմն և մարմինն Աստուծոյ համագոյ, որ է անտեղի. քանզի Բանն կատարեալ և համագոյ Հօր, և իւր ըստ ինքեան ունելով միշտ, և ոչ ումեք կարօտ գոլով։

Որք զայսոսիկն բամբասեն՝ յայտնի կացուցանեն զկամս իւրեանց, թէ երկուս անձնաւորութիւնս ասեն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և զմեզ

1. Մատթ. ԺԶ. 17։ 2. Յովհ. ԺԶ. 33։

վրպարտեն. և փորձեն համանգամայն ամենայն ուստեք, ի մի յանտեղեաց շրջեցուցանել զմերս. կամ՝ լցուցողական ասել անձնաւորութեան Բանին զմարմինն, կամ՝ համագոյ Աստուծոյ, կամ՝ օտար ամենայն ամենեւին անձնաւորութեանն Որդւոյ, զոր նոքայն ասեն. այլ անձնաւորութիւն մուծեալ մարմնոյն, այսինքն առեցելոյն՝ որպէս նոքայն ասեն մարդոյն, և այլ առողին Աստուծոյ. այլ դէմ՝ Որդւոյն Աստուծոյ, և այլ դէմ՝ որդւոյն մարդոյ՝ որ ի զաւակէն Դաւթի ըստ մարմնոյ. որպէս զի մի՛ որդւոյն Աստուծոյ գոլ որդի մարդոյ, այլագոյ գոլ Դաւթի, և մի՛ դարձեալ ըստ մարմնոյ ծնիցելոյն գոլ որդի Աստուծոյ, այլազգոյ գոլով Աստուծոյ: Բայց մեք՝ մի և զնոյն գոլ ասեմք, եղբարք, մարգարէիցն և առաքելոցն հետեւեալք և աւետարանացն հաւատացեալք, քան թէ իմաստութեան հեթանոսականաց զգուշացեալք, և մտածութեամբք մարդկայնովք ամբոխեալք: Եւ ի փըրկութենէն մերմէ անջատեալք, մի Աստուած խոստովանիմք զհանդերձ երկաքանչիւր, մի անձնաւորութիւն և մի դէմ. ոչ զի լցուցողական անձնաւորութեան Բանին մարմինն լինիցի, քանզի ամպարշտութիւն է այս. վասն զի կատարեալ է աստուածութիւն, և անընդունակ նուաստութեան. պարզ և միատեսակ և առանց շարադրութեան. ի մասունս ո՛չ անջատի, այսինքն՝ ըստ որում Աստուած Բանն է և միատեսակ, ի տարբերութիւն անդամոց և իրաց ո՛չ անկանի՝ ի մարմին և յանմարմին: Քանզի բանն տակաւին կատարեալ և բոլորովին անմարմին: Զի ո՛չ Աստուած եղեւ մարմնացեալ, և ոչ որդի Աստուծոյ՝ մարդկային ձեւ առեալ, և ո՛չ Տէր փառաց՝ զծառային զգեցեալ կերպարանս, այլ մարդ՝ և որդի մարդոյ՝ Որդին Աստուծոյ, և ծառայ ըստ կերպի, զի բնութեամբ Տէր: Այլ՝ ոչ մարմինն լցուցողական եղեւ աստուածայնոյն անձնաւորութեան, այլ ճշմարտապէս

կատարեալն և զանկատարն կատարեաց, անկարօտն ի կարօտն հպեցաւ և միաւորեցաւ ընդ մարմնոյ։ Քանզի ո՛չ ոք ի բարւոք խորհողաց կամ բնաւին ի զգաստից ասիցէ արդեւք, թէ որպէս Բանն կատարեալ գոլով և անձնաւորութեամբ՝ ոչ էր կարօտ մարմնոյ, զի եղիցի Աստուած կատարեալ, այսպէս և ո՛չ մարմինն՝ Բանին ունէր պէտս, զի կատարեալ անձնաւորութեամբ եղիցի մարդ, այլ երկնայնոյն փրկչի էաք կարօտ, երկնայնոյն ազատեցուցչի, ի բաց բարձման եկամուտ մեղացն, նորոգողին զմեզ ի չարչարանացն, և զորս յայսցանէ չարիս՝ ի բաց բարձողին։

Արդ անդէն ի ծննդենէն՝ նորոգութիւնն ցուցանիւր, և երկնաւորութիւնն ծնիցելոյն ի ձեռն ծննդեանն երեւէր. քանզի ոչ ըստ ծննդեան հնոյ մարդոյ՝ յառնէ և ի կնոջէ ունէր զծնունդն, զի անհնարին է առանց առն ծնանել կնոջ. զի զէութիւնս ծնիցելոցն ի հարսն եդ Աստուած, որպէս և զՂեւի ասէ գիր՝ յերանս հօր իւրոյ Աբրահամու։ Իսկ փրկիչն Ադամայ և որոց ի նմանէ, ո՛չ յԱդամայ էառ զգոլն, այլ յԱդամայ զձեւն՝ առեալ զմարմինն. և ասեմ՝ մարմին հանդերձ հոգւով մարդկայնով, և եղեալ մարդ ըստ երեւելւոյն, եմոյծ յաշխարհ զնորոգութիւնն՝ ըստ աներեւութին։ Յորոյ վերայ ոչ սահման մահու, ո՛չ բռնութիւն բանսարկուին (զօրէ), այլ կցորդութիւն առ մահկանացուս և բռնաւորեալս, բայց առաւելութիւն բազում՝ ըստ անմահութեանն, ըստ ազատութեանն և անբռնութեանն։

Սքանչանայր և Կոյսն՝ յորժամ աւետարանեցաւ նմա ծնունդ փրկչին՝ որ ի նմանէ. «Զիա՞րդ եղիցի ինձ այս, քանզի զայր ոչ գիտեմ»[1]. և աւետարանեցաւ աստուածային էութիւն ծնիցելոյն ի կերպի մարմնոյ. և էր երկնային՝ պարգեւն, և

1. Ղուկ. Ա. 34։

երկրային՝ բողբոջն. խաղաղարարն երկրի, և առ երկնայինսն նմանութիւն՝ ըստ հրեշտակացն խնդութեան՝ որք ասէին. «փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն»[1]:

Արդ, խնդալով ի վերայ Քրիստոսի ծննդեանն, ոչ մարդկային խնդութիւն խնդամք՝ որպէս ի վերայ ծնելոյ մանկան խնդան մարդիկ, և զծնունդն կատարեն տօն, այլ ի վերայ երևման[2] Օծելոյ խնդամք, և լուսոյ ճառագայթի աստուածայնոյ, ոչ կցորդի գերութեանս մերոյ, այլ փրկողի ըստ առաքելոյն բանի: Իսկ թէ զի՞նչ էր առ այսուքիւք՝ Օծումն. ըստ որում ծնեալն աստուածայնագոյն էր քան զմարդիկ, և մնեալ աստուածայնապէս քան զմեզ Քրիստոս: Արդ, ձեւն՝ որ ըստ մարմնոյ՝ Ջրով մկրտի, և ընդ ծառայից, և Յովաննէս՝ որ մկրտէն, և դետ Յորդանան՝ որ լուանայն զմարմինն աստուածային. և Հոգւոյն գալուստն՝ որ ի յերկնից ի վերայ մաքուր մարմնոյն Քրիստոսի, յորմէ և ի մեզ անցանէ ըստ նմանութեան մաքրութիւնն. զի և մեք հետևեսցուք նմա՝ լնլով զամենայն արդարութիւն, և մաքրեալք նովիմբ Տերամբն. որում փառք յաւիտեանս. ամէն:

1. Ղուկ. Բ. 14:  2. Իմա՝ Յայտնութեան:

Գ.

## ՅՈՐ՝ ԹԷ ԱՅԺՄ ԱՆՁՆ ԻՄ ԽՌՈՎԵԱԼ Է

Ի նմանութենէ ցեառնն՝ որ առ մեզ՝ մեծ է օգուտն, զի և մեք նմանեսցուք առ նա։ Քանզի թէ ոչ ինքն էր նմանեալ առ մարդիկ, ոչ կարէին մարդիկ նմանել առ նա։ Այլ առ Աստուած մարդեղեալ՝ նմանին մարդիկ։ Պարտ էր ի նմանութիւնս մեր իջեցելոյն, ըստ այսմ մանաւանդ նմանիլ, ըստ որում փոխադրութեան էաք կարօտ ըստ ախտից, զի զայսոսիկ յանախտութիւն փոխեալ կացուսցէ. և մի՛ ոք անհաւատ լիցի յաղագս ախտիցն լսելով, համարեալ փոփոխել էութեանն. այլ առեղեալ ի նմա ախտք ի մարմնականէ և յանձնականէ չարժութենէ ածցէ զմտաւ, և առեղեալ և պարտեալ. քանզի վասն այնորիկ առեղեւ, զի յաղթեսցի. և վասն այսորիկ յաղթեցաւ, զի ամենայն մարդկային բնութիւն ըստ ազգակցութեան բարեգործեսցի։ Քանզի անտի սկսեալք փոխակերպիմք ամենեքեան, յախտացելոց՝ անախտք, և ի մեռելոց՝ կենդանիք կազմեալք։ Արդ, մի՛ ոք ամբոխեսցի յանհաւատութիւն. եթէ ասէ, Աստուած գոլով Տէրն համանգամայն և մարդ. «Այժմ անձն իմ խռովեալ է»[1]։ Քանզի այս լինէր, աստուածութեանն թողացուցեալ, և մարմնոյն ամբոխեալ, կարօղ գոլով աստուածութեամբն

1. Յովհ. ԺԲ. 27։

ի բաց մերժել զխռովութիւնն. այլ ո՛չ կամեցեալ նորա, զի մի՛ զնմանութիւնն՝ որ առ մեզ՝ լուծցէ։ Այսպիսի ինչ է իմանալ և յորոց ի մեզս իրաց. որպէս մինչ խառնեալ մեղր առ ջուր, ոչ մեղրն փոխադրի՝ այլ ջուրն առաւելու։ Արդ՝ յորժամ եղիցի չարժումն մարմնոյ ի Տէրն, այսպիսի ինչ առցուք նմանութիւն, որպէս ջրոյ ի մեղր խառնեալ ըստ առաւելութեան։ Իսկ յորժամ դարձեալ աստուածայինն երեւի, և ներգործէ զզօրութիւնսն և ցուցանէ զիշխանութիւնն, այսպիսի նմանութիւն առցուք, որպէս մեղրն յաղթահարելով զջուրն։ Քանզի կարողութիւն էր այս աստուածութեանն, երբեմն մարմնոյն թոյլ տալ յառաւելուլ և երբեմն նմա յաղթկու լինել, ի բաց բառնալ զախտ և զմարմնոյ տկարութիւն։ Եւ նըշանակ՝ զքառասուն օր բոլոր մեկուսացաւ ի կերակրոյ մարմնականէ, և ոչ քաղցնոյր մարմինն. քանզի յետ այնորիկ՝ որպէս գրեալ է՝ քաղցեաւ. տատանօր մարմնոյ առաւելումն, «Եւ ապա քաղցեաւ»[1], յետ այսքան ժամանակի։ Առաւելեան մարմնոյքն վասն այսորիկ՝ զի և փորձանք մերձեսցին և փորձիչն յամօթ լիցի. և ի սկզբանէն մարդ՝ ի ձեռն կերակրոյ անկեալն, ի ձեռն ժուժկալութեան կերակրոյ դարձեալ յարիցէ։ Բերէ և զխռովութիւնն մարմնոյ՝ առ մահուամբ մերձեցեալ։

Եւ զի՞արդ էր հանդերձեալ հնազանդ լինել՝ զմերս հնազանդութիւն լնլով փոխանակ մեր, եթէ ոչ և առ ընդդիմացումն ունէր, և ընդդիմացմանն էր յաղթկու եղեալ։ Քանզի ի մեզ՝ վասն զի ի մարմնոյ ընդդիմացումն լինի, ըստ որում ստուգանել հրամանի՝ պարտեալք ի մարմնոյ, այսու յեզանակաւ մեզք պատահին։ Ապա ուրեմն և ի Տեառնն ընդդիմացման՝ որ ի մարմնոյ՝ պարտ էր լինել, բայց յաղթել հնազանդութեանն. քանզի

1. Մատ. Դ. Բ։

թէ և Աստուած՝ այդ մարմնով, և ըստ մարմնոյն հնազանդութիւնն լնու, և կամաց մարմնոյն՝ կամօք աստուածութեանն յաղթէր. որպէս ասէ ինքն, թէ «Իջի յերկնից՝ ո՛չ զի արարից զկամս իմ, այլ զկամս առաքչին իմոյ Հօր»[1]. իւր կամս ասելով զմարմնոյն, վասն զի և մարմինն նորա՝ իւր եղև։

Քանզի և ոչ է իսկ կամք աստուածային Որդւոյ ի կամաց Հօր բաժանեալ. պարտ էր շարժել մարմնոյն կամաց, բայց հնազանդել կամաց աստուածայնոց. և այսպէս մարդկան անհնազանդութիւնքն լուծանին ի ձեռն հրաշափառ հնազանդութեանս այսորիկ, զոր Քրիստոս հնազանդեցաւն վասն մեր։ Տե՛ս, շարժութեան մարմնականին եղելոյ՝ զի՞նչ ասէ. «Եւ զի՞նչ ասացից, ապրեցո զիս ի ժամէս յայսմանէ. այլ վասն այսորիկ եկի ի ժամս յայս։ Հայր փառաւորեա՛ զանուն քո»[2]։ «Զզի՞նչ ասացից, ապրեցո զիս ի ժամէս յայսմանէ», բարբառեցաւ ըստ շարժութեան մարմնոյ։ իսկ «Զվասն այնորիկ եկին ի ժամս յայս», առաւելութեամբ յաղթկու եղեալ աստուածութեամբն բարբառի, գրեթէ և ոչ երբեւիլ իսկ մարմնականի կամաց իսկ՝ ի թուլացուցանել աստուածայնոյն։ Քանզի «Զի՞նչ ասացից», որպէս համման ինչ է բանի, որպէս զի երբեւիլ մեզ՝ թէ մարմին էր ճըշմարիտ զնովաւ՝ բայց հնազանդեալ մարմինն և ոչ կարող զբաղեցուցանել՝ որպէս երիւար զհեծեալն, և ո՛չ ոլքան լքուցանել զձեռնն զկառավարիչ։ Որ և պատիւ համարի զչարչարանսն՝ և ո՛չ անափառութիւն և ո՛չ ամօթ. այլ փառս իւր և Հօր, և փութայ յաւէտ՝ քան թէ հրաժարէ ի չարչարանացն։ «Հայր, փառաւորեա՛ զանուն քո», զի ոչ է, ասէ, և ո՛չ մի հրաժարումն յիս, այլ խոնարհեցի հրաժարեալն, և յաղթկու եղիցի ո՛չ հրաժարեալն. քանզի մարմնական բնութիւն հրաժարէ

1. Յովհ. Զ. 38։ 2. Յովհ. ԺԲ. 27։

ի չարչարանաց, և էր այս ի Քրիստոս. վասն զի
և եղեւ մարմին Բանն ճշմարտապէս. իսկ աս-
տուածական կամօք՝ հաճեցաւ ընդ աշխարհի փըր-
կութիւն, զոր մահն նորա գործեաց. և ապա լը-
ցեալ երեւի՝ «Զի արարից զկամս առաքչին ի-
մոյ»[1]։ Ասէ Քրիստոս. «փառաւորեա՛ զանուն քո։
Եւ պատասխանի յերկնից. և փառաւորեցի, և
դարձեալ փառաւորեցից»[1], զի գիտասցուք թէ մե-
կուսութիւն և ոչ մի է, և ոչ որոշումն Հօր և Որդ-
ւոյ։ Ցաւէտ, զի չահեսցուք զմիաւորիլն մեզ առ
Աստուած Քրիստոսիւ եղեալ։ Քանզի ոչ ոք է ի
մարդկանէ որ ո՛չ որոշեաց զինքն յաստուածայնոցն
կամաց ըստ մասին ինչ կամ՛ իրի կամ՛ ժամանա-
կի, բայց միայն Քրիստոսի անբաժանութիւն կա-
մացն պահեցաւ։ Որոյ զհետ երթեալ չահեսցուք
զհպելն առ Աստուած, և զմիաւորութիւնն զփըր-
կական՝ ըստ նմանութեան նորա, ըստ նմանու-
թեան աստուածայնոյն միաւորութեան, որպէս
ինքն ասաց. «Ես և Հայր իմ մի եմք, այսպէս և
սոքա ի մեզ եղիցին»[2]։

1. Յովհ. ԺԲ. 28։ 2. Յովհ. ԺԴ. 9։

## Դ․

# ՅԱՂԱԳՍ ՓՐԿԱԿԱՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

### ԸՆԴԴԷՄ ՄԱՐԿԻՈՆԻ

*Որք զՏէրն մեր Յիսուս Քրիստոս՝ ոչ յԱստուծոյ և ի մարդոյ մի խոստովանին, որպէս գրեալ է յաւետարանին «ՅԱդամայ և յԱստուծոյ»[1], ասացեն, զի՞րդ՝ որ ի կերպարանս Աստուծոյն է Աստուած և առեալ զծառայի կերպարանս՝ կարծեցին, կամ «զԲանն մարմին եղեւն և բնակեաց ի մեզ»[2] իմացան։ Քանզի որ ասացն թէ «Բանն մարմին եղեւ», ասաց՝ թէ ինքն «Զանձն իւր եդ վասն մեր»[3]։ Արդեւք որպէս Բանին փոփոխու՞մն կրեալ ի մարմնոյ փոխադրութիւն և յոգւոյ նմանութիւն. կամ՝ որպէս ցնորի՞ւք ինչ ցուցումն արարեալ մարդկայնոյ կերպի, որպէս և այլք ի հերձուածողացն մոլորեալք ասեն։ Այդ ոչ թոյլ տայ Պաւղոս, հաւաստեաւ ասելով՝ թէ ո՞վ գոլով զի՞նչ էառ։ Քանզի որպէս կերպարան Աստուծոյ լրումն Բանին աստուածութեանն իմանի, այսպէս և կերպարան ծառայի՝ իմանալւոյ հաստման մարդոյ բնութիւն՝ հանդերձ գործարանականի կազմութեամբ խոստովանեալ լինի։ Որպէս զի «էրն»՝ Բանն իմասցի. իսկ «եղեւն»՝ մարմին խոստովանեսցի հանդերձ ոգւով, որ ասի կերպարան ծառայի՝ իմանալի իմն հաստումն իմացեալ։ Վասն*

1․ Ղուկ․ Գ․ 38։
2․ Յովհ․ Ա․ 14։
3․ Յովհ․ Ժ․ 18։

այսորիկ և մեռեալ մարդ՝ անկերպարան ասի, և լուծանի բանն Հոգւոյն անլոյծ ունելով զընութիւնն[1] որոշեալ ի մարմնոյն։ Ուստի և Պաւղոս զիմանալւոյ բնութեանն վկայութիւն առնէ, իսկ Յովաննէս գործարանականին մարմնոյ ցուցման. որպէս զի երկաքանչիւրքն զամենայն զանօրէնութեանն խորհուրդ պատմեն։ Քանզի յայտ է, թէ որ յառաջագոյնն էր Աստուածն Բան, նախ քան զմարմնով գալուստն՝ ո՛չ էր մարդ, այլ Աստուած էր առ Աստուած, աներևոյթ, անչարչարելի գոլով։

Արդ ոչ Քրիստոսդ անուն առանց մարմնոյ մատուցեալ լինի, վասնզի հետևւի անուանդ չարչարանք և մահ։ Պաւղոսի[2] գրեալ՝ «Եթէ չարչարելի է Քրիստոսն, եթէ առաջին ի յարութենէ մեռելոց»[3]. իսկ այլուր[4] ասացեալ՝ «Զատիկ մեր զենաւ Քրիստոս»[5], և եթէ՝ «Մարդ Յիսուս Քրիստոս որ ետ զանձն իւր վասն մեր»[6], ոչ զի ոչ Աստուած, այլ զի և մարդ Քրիստոս. վասն որոյ «Յիշել զՅիսուս Քրիստոս յարուցեալ ի մեռելոց ի զաւակէ Դաւթի»[7] գրէ. վասն այսորիկ և գիր երկաքանչիւրից անուանց առնէ զյորջորջումն ցուցմամբ էութեանն. աներևութաբար Աստուծոյ իմացելոյ և գոյի ճըշմարտապէս, իսկ երևութապէս՝ մարդոյ շօշափելւոյ և գոյի ճշմարտապէս. ոչ անջատման դիմաց կամ իմացմանց, այլ՝ բնաւորականի ծննդեանն և անլոյծ միաւորութեանն. զի ի նմա չարչարանացն խոստովանեցելոյ ճշմարտի, նոյն ինքն (չարչարեալ) և անչարչարելի...։

Արդ, զի՞արդ եղեւ օծեալ Բանն, Աստուած գոլով նախ քան զլինելն մարդ. քանզի թէ աստուածութեանն իւր է օծեալն անուն առանց մարմնոյ,

1. Յոր. եդեալ էր՝ զերդարանն։
2. Յոր. Մոծխոյ. ուղղեցաւ ի յուշէն։
3. Գործք Առ. ԻԶ. 23։
4. Յոր. եդեալ էր՝ Պաւղոսի։
5. Ա. Կորնթ. Ե. 7։
6. Ա. Տիմ. Բ. 6։
7. Բ. Տիմ. Բ. 8։

մատուցանելի ուրեմն է և Հօր և Հոգւոյն սրբոյ. եղիցին և չարչարանքն հասարակաց, որպէս ոմանք մոլորեալք ասեն. կամ և զնոյն ինքն անչարչարելի և անմարմին Բանն Աստուծոյ, և նախ քան զմարմնանալն և զմարդանալ, ասէք ընդունակ գոլ չարչարանաց և մահու. և զիա՞րդ Հօր համագոյն Որդի և անանջատելի՝ ըստ աստուածայնոյն բնութեան չարչարելի արդեւք ասիցի, անփոփոխելի գոլով և անայլայլելի. եթէ ո՛չ առեալ յարգանդէ կուսին զամենայն զտեսակս մարդոյ կազմութեան յինքեան՝ եղեւ մարդ, զի և անփոփոխելի իցէ ի չարչարելն՝ Աստուած գոլով: Քանզի վասն այսորիկ օծումն եղեւ, ո՛չ որպէս Աստուծոյ օծման կարօտ գոլով, և ո՛չ դարձեալ օծմանն առանց Աստուծոյ եղելոյ. այլ Աստուծոյ զօծումն մատուցեալ, և յընդունականին զօծումն ի մարմնի ընկալեալ: Արդ, քաջայայտ է, եթէ ոչ առանց մարմնոյ մարդկայնոյ Բանն օծեալ եղեւ, զինքն բաժանեալ ի մարմնոյ ցուցումն՝ և յոգւոյ նմանութիւն. այլ մնացեալ որ ինչ էրն, էառ զծառայի կերպարան, ո՛չ նուազեալ յէութենէ ցուցմամբ երեւեցելոյն ի ձեռն չարչարանացն և յարութեան, և ամենայն տնօրէնութեանն, որպէս գրեալ է և է յայտնի:

Արդ, ասացէք, զիա՞րդ Աստուած ի Նազարեթ ծնեալ համարեցայք, վասն զի և ամենայն հերձուածողք զայս ասել սովորեցան: Որպէս Պաւղոս Սամոսատացի Աստուած ի կուսէ խոստովանի, Աստուած ի Նազարեթէ երեւեալ, և անստուեր զգոյութեանն սկիզբն ունել, և սկիզբն թագաւորութեան առեալ, Բանն ներգործօղ յերկնից, և իմաստութիւն ի նմա խոստովանի. նախասահմանութեամբ յառաջ քան զյաւիտեանս գոլով, իսկ էութեամբ ի Նազարեթէ ցուցեալ. զի իցէ մինն, ասէ [1], ի վե-

1. Յօր. բնութեամբ. ուղղեցաք ըստ յունին:

րայ ամենեցունց Աստուած Հայր։ Այսպիսի է նորա ամպարշտութիւնն։

Իսկ Մարկիոնն և Մանի, Աստուած իջեալ ի կոյս և յառաջ եկեալ, անընդունակ ունելով զբը-նութիւնն առ կցորդութիւն մարդկութեանս ի ներքոյ անկելոյս ներգործութեան չարութեան, և ընդ իշխանութեամբ իշխանին չարութեան։ Քանզի եթէ զայս ասէ յառաջ բերէ, և ընդ իշխանութեամբ չարութեանն եղիցի, և ոչ եղիցի առանց մեղաց Քրիստոս։ Այդ իւր մարմին եցոյց յինքենէ ըստ նմանութեանս՝ որպէս կամեցաւ, յերկնից երեւեալ և յերկինս տարեալ, և աստուածութիւն բոլորն գոլով։

Իսկ Վաղենտիանոս դարձեալ, Երրորդութեանն հասարակաց ասէ զչարչարանսն, մասն աստուածութեանն զմարմինն դանդաչեալ։

Իսկ Արիոս՝ մարմին միայն առ ի ծածկոյթ աստուածութեանն խոստովանի, և փոխանակ ներքնոյս՝ որ ի մեզ մարդոյ, այսինքն հոգւոյս, զբանն ի մարմին ասէ եղեալ։ Զչարչարանացն իմացումն, և ի դժոխոց զյարութիւնն աստուածութեանն հպեցուցանել յանդգնեալ։ Իսկ Սաբեղիոս, զամոստացւոյն Պաւղոսի, և որոց ըստ նմայն՝ եցոյց զկամսն. քանզի երկուցեալ յԱրիոսի անջատմանէն ի բաց բարձականն[1] անկաւ մոլորութիւն։

Իսկ դուք՝ յո՞վ էք յարեալք, և կամ ո՞ւմ կամիցիք օգնական լինել ասացելովքդ. բազմացեղք էք, քանզի ամենեցունց յառաջասացելոցդ հերձուածողաց հաղորդ եղէք. անհաւատ եղեալք միաւորութեանն, և ընդ իմաբանեալք ըմանն, ի բաց բարձումն տարեալ եղէք, զանջատման մտածութիւն պատճառելով։ Քանզի որպէս անջատողքն մոլեգնեցան և չփոթօղքն մոլորեցան, այսպէս և ի բաց բարձօղքն կորեան. ճշմարիտ եղեալ տնօրէ-

1. Իմա՛ անորսալական, Յն. ἀναιρετική.

նութիւնն, և ճշմարտութիւն երեւեալ և չնորհին վկայեալ։

Արդ, ընդէ՞ր պատճառելով հնարիմացք լինիք, կամ՝ կեղծաւորելով Թաքուցանէք և ո՛չ յայտնապէս ասէք, եԹէ ո՛չ զծառայի կերպարան առեալ եղեւ մարդ, այղ լԹէ երեւեցաւ որպէս մարդ։ Քանզի զայս հարցումն ունի բանդ ձեր պատճառելով ասողացն նոյն ինքն և նոյն ինքն։ Վասն այսորիկ ընդդէմ՝ ասել ճշմարիտ տնօրէնութեանն ձեռնարկէք՝ զրպարտելով և ասելով։

Մարդ ասեն զՔրիստոս աստուածացեալ[1], և ո՞ւր է «ի սկզբանէն էր Բանն»[2]։ Եւ եԹէ՝ առեալ զկերպարանս ծառայի եղեւ մարդ, կամ՝ մարդ ասէ ընդ Աստուծոյ գոլով, կամ՝ մարդ ասէ ընդ Աստուծոյ չարամանեալ, կամ՝ մարդ յաղագս աշխարհի մեռեալ և մասն աշխարհի գոլով, կամ՝ մարդ ի մեղաց որոշեալ, կամ՝ մարդ հրեշտակաց տիրեալ, կամ՝ մարդ յարարածոյս երկրպագեալ, կամ՝ մարդ Տէր գոլով՝ ասացեալ առաքելոյ, «Պաւղոս ծառայ Յիսուսի Քրիստոսի»[3]. կամ՝ մարդ խաչեցեալ և Տէր փառաց գոլով, կամ՝ մարդ լուեալ՝ «Նիստ ընդ աջմէ իմմէ»[4], կամ՝ մարդ եկեալ դատաստանս դատել։

«Այս են ձեր հրապոյրք պղտորք»[5], զոր արբուցանէք մարդկան և որբենայք։ Հարցէք այժմ՝ զՀրեայս, զի զայսոսիկ ի նոցանէ լուեալ բանս ընդդէմ՝ Քրիստոսի ասացեալս, և ի նա հաւատացելոցն, ամաչեսջիք։ Ուսարուք և յայլոցն հերձուածողաց և խոտողաց։ Առաջի կացցէ այժմ՝ հերձուածողացն բանք, և ձերոյդ խմացուածոյ խորհուրդ, և մերոյս հաւատոյ բան, և աւետարանին սահման, և առաքելոցն քարոզութիւն,

1. Յօր. ասացեալ։
2. Յովհ. Ա. 1։
3. Հռովմ. Ա. 1։
4. Սղմ. ԾԹ. 1։
5. Ամբակ. Բ. 15։

և մարգարէից վկայութիւն, և ճշգրտեցելոյն ուղղորէնութեան հայեցումն:

Ասացէք այժմ. զիա՞րդ ասէք Աստուած ի Նազարեթէ ծնեալ, աստուածութեանն սկիզբն լինելոյ պատմելով ըստ Պօղոսի սամոստացւոյ. կամ զմարմնով ծնունդն ուրացեալք, ըստ Մարկիոնի և այլոցն հերձուածողաց. ոչ այսպէս աւետարանականապէս հանդիպեալք սահմանի, այլ յիւրեանցայոցն խօսել կամեցեալք: Քանզի վասն այսորիկ ասէք Աստուած եղեալ ի կուսէ, և ոչ զԱստուած մարդ ըստ աւետարանականին սահմանի. զի մի՛ գուցէ ծնունդ մարմնոյ խոստովանեալք՝ բնաւորական զնա ասիցէք ճշմարտեալ զբանն, այլ Աստուած ծնեալ, իւր մարմին ցուցեալ որպէս կարծեօք: Քանզի ո՛չ սկիզբն լինելոյն Աստուած ի Նազարեթէ ցուցանի, այլ գոլով նախ քան զյաւիտեանս Աստուած, ի Նազարեթէ մարդ երեւեցաւ ծնեալ, ի Մարիամայ կուսէ, և ի Հոգւոյն սրբոյ, ի Բեթղահէմ հրէաստանի, ի զաւակէ Դաւթի և Աբրահամու և Ադամայ. որպէս գրեալ է. զամենայն էառ ի կուսէն, որպէս իսկզբնուստն Աստուած ի հաստումն մարդոյն ստեղծ և արար՝ առանց մեղաց, ո՛չ աստուածութեանն փոխադրութիւն ցուցեալ, այլ մարդկութեանս Նորոգումն գործեալ, ըստ իւրոցն կամաց: Որպէս զի գոլ հեթանոսաց «ժառանգակիցս և մարմնակիցս Քրիստոսի»[1]. որպէս առաքեալ գրեալ է. զի և մարդ իցէ Աստուած ճշմարտապէս, և Աստուած՝ մարդ ճշմարտապէս: Ո՛չ մարդ ոք առ Աստուած գոլով, որպէս դուքդ զրպարտեալ ասէք, հեղնելով ըզքրիստոնէից խորհուրդս, այլ զի Աստուծոյ միածնի հաճեցեալ զլրումն աստուածութեանն իւրոյ՝ զըսկզբնատիպին մարդոյ զստեղծուած և արարած նոր՝ յարգանդէ յարուցանել ինքեամբ բնաւորա-

1. Եփես. գ. 6:

կանաւ ծննդեամբ, և անլոյծ միաւորութեամբ, զի զյաղագս մարդկան փրկութիւնն[1] արասցէ, չարչարանօք և մահուամբ և յարութեամբ զփըր-կութիւն մարդկան գործեալ:

Այլ ասիցէք. եթէ զամենայն էառ, և ամենայն իրօք ուրեք և զմարդկայինս խորհուրդս ունէր, և անկար է ի խորհուրդս մարդկայինս մեղաց ոչ գոլ, արդ, զիա՞րդ եղիցի առանց մեղաց Քրիս-տոս: Ասացէք այժմ. եթէ մեղանչականաց խոր-հըրդոց է արարչագործ Քրիստոս, մատուցանելի է Աստուծոյ զիւրն արարչագործութիւն. քանզի եկն զի մատչիցի իւրն արարած:

Այլ անիրաւ եղիցի դարձեալ դատաստանն՝ դատապարտելով զմեղուցեալն: Քանզի եթէ մե-ղանչականս խորհուրդս հաստատեաց Աստուած, զիա՞րդ դատապարտէ զմեղուցեալն. և զիա՞րդ վարկանին առ ի յԱստուծոյ այսպիսի դատաստան լինել: Իսկ եթէ և Ադամ՝ ընդ այսպիսեօք խոր-հըրդովքս էր անկեալ նախ քան զստուգանելն Աստուծոյ պատուիրանին, և զիա՞րդ ոչ գիտէր ըզ-բարի և զչար, բանաւոր գոլով բնութեամբ. և ազատ խորհրդովք զփորձ չարութեան ոչ գիտե-լով, բայց միայն զբարի գիտելով, և իբր զի մի-օրինակ ումն գոլով. իսկ ի ստուգանել պատուի-րանին Աստուծոյ՝ ի Նեղքոյ անկաւ այսպիսեացս խորհրդոց. ոչ Աստուծոյ արարչագործեալ զգե-րիչսն խորհուրդս, այլ բանսարկուին ի պատրա-նաց սերմանեալ՝ ի բանականին բնութեան: Մար-դոյն ի յանցանս եզեալ և յապստամբութեան յԱստուծոյ, որպէս զի բանսարկուն և օրէնս մեղաց հաստատեալ ի բնութեան մարդոյս, և մահու թա-գաւորեալ ի ձեւն գործոյն մեղաց:

Արդ՝ վասն այսորիկ եկն Որդին Աստուծոյ, զի լուծցէ զգործս բանսարկուին: Այլ ասիցէք. ե-

1. Յօր. իշխանութիւն, իսկ ի լուսանցս՝ փրկութիւն:

լոյծ՝ ոչ մեղանչեալ։ Այլ ոչ է այս լուծումն մեղաց. քանզի ոչ ի նմա իսկզբնուստն գործեաց բանսարկուն զմեղս, զի եկեալ նորա յաշխարհ, և ոչ մեղանչեալ՝ լուծցին մեղք, այլ ի բանականի և յիմանալի բնութեան մարդոյ իսկզբնուստն գործեաց բանսարկուն զմեղսն. վասն այսորիկ անկար եղեւ բնութեան բանականի գոլով՝ և կամաւորութեամբ մեղուցելոյ, և ընդ դատապարտութեամբ մահու եղելոյ՝ զինքն վերակոչել յազատութիւն. որպէս ասէ առաքեալ. «Քանզի որ անկարն էր օրինացն՝ որով տկարանայրն»[1]։ Վասն այսորիկ եկն Որդին Աստուծոյ զայն ի յիւրում բնութեան հաստատել, ի նոր սկզբանէ և ի ծննդենէ սքանչելւոյ. ոչ զիսկզբնուստն հաստումն բաժանեալ, այլ զսերմանեալն արհամարհութիւն արհամարհեալ։ Որպէս վկայէ մարգարէն ասելով. «Նախ քան զգիտել մանկանն զբարի կամ զչար, անհաւանեալ չարութեանն՝ ընտրեսցէ զբարին»[2]։ Իսկ եթէ ոչ ի մեղուցելումն բնութեան երեւեցաւ անմեղութիւն, զիա՞րդ դատապարտեցան մեղք ի մարմնին՝ ոչ մարմնոյն զգործականն[3] ունելով, և ոչ աստուածութեանն զմեղս գիտելով։ Զիա՞րդ և առաքեալ ասէ. «Ուր առաւել եղեն մեղք՝ առաւել եւս յաւելաւ շնորհքն»[4], ոչ տեղի գրելով՝ այլ բնութիւն ի ներքոյ եդեալ։ «Քանզի, որպէս ասէ, ի ձեռն միոյն մարդոյ մեղք յաշխարհ մտին, և ի ձեռն մեղացն մահ. այսպէս և ի ձեռն միոյն մարդոյ Յիսուսի Քրիստոսի»[5], «Շնորհք թագաւորեսցեն ի ձեռն արդարութեան ի կեանսն յաւիտենից»[6]։ Զի ի ձեռն որոյ բնութեան մուտ մեղացն եղեւ, ի ձեռն այսորիկ և ցուցումն արդարութեանն եղիցի. և այսպէս լուծցին գործք

1. Հռովմ. Ը. 3։
2. Ես. Է. 16։
3. Յոր. գործարանականն։
4. Հռովմ. Ե. 20։
5. Հռովմ. Ե. 15։
6. Հռովմ. Ե. 20։

բանաւորկութին, ազատել մարդոյս բնութեան ի մեղաց, և փառաւորեսցի Աստուած։

Այղ դարձեալ ասիցէք. եթէ մարդ է Քրիստոս՝ մասն եղիցի աշխարհի, և մասն աշխարհի զաշխարհ ապրեցուցանել ոչ կարէ։ Ո՛վ մոլածութիւնք պատրանաց և ապարասանութիւնք հայհոյութեան. քանզի ասասցեն, թէ որո՞յ գրոյ է այս սահման, քան թէ բանաւորկութին հնարիմացութին, որ և մարգարէին ասացեալ, «Եղբայր ոչ փրկէ, այղ փրկէ մարդ»[1], և մարդ ծնաւ ի նմա. և ինքն «Հիմնեցոյց զնա Բարձրեալն»[2]։ Արդ, զի՞րդ Քրիստոս ոչ ապրեցուցանէ զաշխարհ՝ եղեալ մարդ. որ և քաջայայտ է, թէ որով բնութեամբ գործեցան մեղքն, նովիմբ եղև յաւելուած շնորհին։ Զի Աստուած եղեալ մարդ՝ մնալով Աստուած, զի և մարդ եղեալ՝ Աստուած հաւատասցի, որպէս մարդ գոլով Քրիստոս՝ Աստուած է, զի Աստուած գոլով՝ եղև մարդ. և ապրեցուցանէ զհաւատացեալսն մարդոյ կերպիւ։ Քանզի թէ խոստովանեսցիս բերանով Տէր զՅիսուս, և հաւատասցես ի սրտի քում՝ թէ Աստուած յարոյց զնա ի մեռելոց, կեցցես։ Եւ մեռելութին աստուածութիւնն ոչ ընդունի, և ոչ յարութեան կարօտ է, այղ ի մեռելոց յարուցանէ։ Ուստի պիտոյ եղև ունել ինչ Աստուծոյ՝ զոր մատուցանէ վասն մեր, թէ մահու և թէ կենաց. որպէս զի այսու յայտ ապրեցուցանէ Քրիստոս զի մարդ եղև։

Այղ դարձեալ ասիցէք, թէ զի՞րդ կարէ ի սովորութեան մեղաց եղեալ բնութիւն և զընդունելութիւն մեղաց ընկալեալ՝ առանց մեղաց գոլ, որ է անմարթ. արդ՝ եղիցի Քրիստոս որպէս զմի ի մարդկանէ։ Զայսոսիկ և Մարկիոն խորհեցաւ. զայս բարոյս և Մանի ենոյծ. զմարդոյ մարմին և զնոյն իսկ լինելութիւնն ընդ իշխանութեամբ

1. Սղմ. ԽԸ. Ը։

2. Սղմ. ՁԶ. Ե։

իշխանին չարութեան դառնալ, և իշխեցող զնա մակադրեալ. վասն զի որում ոք հնազանդեսցի, նորին և ընդ ծառայութեամբ անկեալ։ Զայս և դուք նորոգել կամեցայք. ըստ այլ յեղանակի զիմանալին մարդոյ բնութիւն՝ որ իմանի հոգին, առաւել և անփախչելի զնա ի մեղաց սահմանեալ։ Մանաւանդ զի և զհոգի մարմնական գրեցէք, ուստի՛ ունելք զայս՝ ո՛չ գիտեմ։ Քանզի և ոչ ի գրոց սրբոց է գտանել զայս, և ո՛չ ի հաստարակաց մարդկան խորհուրդս, Տեառնն ասելով. «Մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմինն՝ և զոգին ոչ կարեն սպանանել»[1]. և զիա՞րդ մարմնական հոգի ըստ ձեզ՝ մեռանի ընդ մարմնին, և ընդ նմին ապականի. զիա՞րդ և Պետրոս զըմբռնեալն ի դժոխս անձինս, հոգիս անուանեալ, ասէր. «Երթեալ որոց ի պահեստի հոգւոցն՝ աւետարանեաց զյարութիւնն»[2]։ Այդ դուք զամենայն արտաքոյ բնութեան ասէք և անուանէք. զի մի՛ երբէք ըստ բնութեան պատմելով՝ զանօրէնութիւն Բանին ճշմարտիցէք. զի և մարդ եղեւ ճշմարտապէս Քրիստոս։ Քանզի ասացէք, թէ ձայն Աստուծոյ է որ ասէն. «Եթէ խորհուրդք մարդկան ի խնամս չարի են ի մանկութենէ իւրեանց»[3]. ո՛չ առեալ ի միտ՝ եթէ ի մանկութենէ ասելով՝ զոր ի սերմանէն յայտնեաց. վասն այսորիկ՝ երդուաւ Տէր Դաւթի ճշմարտութեամբ, ի պտղոյ որովայնէ նորա յարուցանել զՔրիստոս ըստ մարմնոյ. ո՛չ մարդ ի փոխադրութենէ աստուածութեան երեւեալ, ապա թէ ոչ՝ զի՞նչ պիտոյ էր երդնուլ Դաւթի Տեառնն. այդ առեալ զծառային կերպարան, յանձն առնլով ծնանիլ ի կնոջէ, և աճել հասակաւ ըստ մեզ. որպէս ասէ առաքեալ. «Արդ, վասն զի մանկունք հաղորդ եղեն արեան

1. Մատթ. Ժ. 28։

2. Ա. Պետր. Գ. 19։

3. Ծնն. Ը. 21.

և մարմնոյ, և ինքն մերձաւորապէս կցորդ եղեւ նոցունց»[1]. զի ո՛չ ի սերմանէ՝ այլ ի Հոգւոյ. իսկ նոցունց՝ զի ո՛չ այլոց. այլ ի զաւակէ Դաւթի և Աբրահամու և Ադամայ, որպէս և գրեալ է։

Արդ, զիա՞րդ զանց արարեալ զգրովք սրբովք, և զճշմարտութեանն երեւմամբ՝ ասէք, թէ ոչ յինքենէ մարդ երեւեցաւ, այլ առեալ մարդկային էութիւն՝ եղեւ մարդ. առ այր ուրեմն հպեցաւ. եղիցի և խաչեալն Տէրն փառաց մարդ։

Արդ, եթէ լուիցէք Պետրոսի՝ որ ասէն, «Զսա և օծեալ և Տէր Աստուած արար՝ զՅիսուս՝ զոր դուքն խաչեցէք»[2]. յո՞յր վերայ զարարն առնուցուք. ի վերայ Բանի՞ն աստուածութեանն. և զի՞ ևս զԱրիանոսսն պարսաւիցէք, զհաւատարն նոցա խորհելով։ Իսկ եթէ ի վերայ որ ի Բանին ծառային կերպի, ընդէ՞ր ընդ անձանց ձերոց մարտնչիք։ Այլ ոչ այսպէս հաւատացէք դուք. քանզի դարձեալ ասէք, թէ մեղուցեալն բնութիւն յԱստուած եղեւ՝ մեղս ո՛չ արարեալ, հարկիւ է այժմ ըմբռնեալ. իսկ հարկիւ ըմբռնեալն բռնադատանօք է։

Ասացէք այժմ. եթէ ո՛չ մեղանչելն ըստ հարկի լինի, մեղանչելն ըստ բնութեա՞ն եղիցի։ Տայք այժմ զբնութեանն արարչագործ՝ մեղա՞ց գոլ ներգործող։ Իսկ թէ հայհոյութիւն է այսպիսիս, և ոչ հարկիւ մեղանչելն պատահեաց՝ քաջայայտ է, եթէ ո՛չ մեղանչելն ըստ բնութեան եղեւ։ Վասն այսորիկ Բանին աստուածութեանն երեւեալ ծառային կերպարան, ո՛չ ընդ հարկիւ անկեալ կայ, այլ բնութեամբ և զօրութեամբ զանմեղութիւնն ցուցանէ, ի բաց լուծեալ զհարկի սահման և զմեղաց օրէնս։ Եւ զբռնութեանն բռնաւոր գերեալ, որպէս ասէ մարգարէն. «Ել ի բարձունս գերեաց

1. Եբր. Բ. 14։ 2. Գործք Առ. Բ. 36։

զգերութիւն»[1]: Քանզի զծառային կերպարան ընդդէմ թշնամւոյն առաջի արկեալ Բանին, զյաղթութիւնն գործեաց ի ձեռն երբեմն պարտեցելոյն: Վասն այսորիկ և զամենայն փորձութիւն կատարեաց Յիսուս, զի զամենայն էառ զփորձութեան փորձ ունօղսն. որով զյաղագս մեր յաղթութիւնն գործեաց, ասելով, «Քաջալերեցարուք, ես յաղթեցի աշխարհի»[2]. զի ոչ առ աստուածութիւնն գումարեաց զպատերազմն բանսարկուն, քանզի և ոչ յանդգնէր իսկ. զի վասն այսորիկ ասէ, «Թէ դու ես որդի Աստուծոյ»[3]. այդ առ մարդ, զոր յառաջագոյն մոլորեցուցանելն զօրեաց, և ի նմանէ յամենայն մարդիկ տարածեաց զչարութեանն իրոյ ներգործութիւն: իսկ Ադամայ հոգւոյն ի դատապարտութեան մահու ըմբռնեցելոյ, և աղաղակեալ առ Տէրն իւր հանապազ. և որք բարեհաճոյքն եղեն Աստուծոյ, և արդարացան բնաւորականիւ օրինօք, ընդ Ադամայ ըմբռնեալք և սըգակիցք եղեալք և ընդ նմա աղաղակեալք. ողորմեալ Աստուծոյ մարդոյն զոր արար, հաճեցաւ ի ձեռն խորհրդոյ Յայտնութեան՝ նորոգ փրկութիւն գործել ազգի մարդկան, և ի բաց բարձումն արարեալ վասն նախանձու պատրողին թըշնամւոյն, բարձրութիւն որպէս ոչ է ածել զմտաւ ցուցանել մարդոյ, առ Բարձրեալն կցորդութեամբ:

Վասն այսորիկ եկն Բանն՝ Աստուած գոլով և առաջնոյ մարդոյն արարչագործ, լինել մարդ, առ ի կենդանագործութիւն մարդոյն, և ի բաց բարձումն անիրաւ թշնամւոյն. և ծնաւ ի կնոջէ յառաջին ստեղծուածոյն, զմարդկային կերպարան ինքեամբ յարուցեալ, ցուցմամբ մարմնոյ, առանց մարմնականաց կամաց և խորհրդոց մարդկայնոց,

1. Սղմ. կէ. 19:
2. Յովհ. ԺԶ. 33:
3. Մատթ. Դ. 3:

պատկերիւ նորոգութեան. քանզի կամեցողութիւնն՝ աստուածութեանն միայնոյ. վասն զի և բնութիւնն բոլոր Բանին ցուցմամբ կերպի մարդկայնոյ մարմնոյ երեւեցելոյ երկրորդին Ադամայ, ո՛չ անջատմամբ դիմաց՝ այլ գոյութեամբ աստուածութեան և մարդկութեան։ Քանզի վասն այսորիկ մատչէր բանսարկուն առ Յիսուս՝ որպէս առ մարդ. բայց ո՛չ գտանելով ի նմա ի հնոյն սերմանեցելոյ ծանօթութիւն, և ո՛չ առընթեր բուռն հարկանելւոյն ձեռնարկումն, պարտեցաւ ամաչեցեալ։ Եւ յաղթեալ և տկարացեալ ասէր. «Ո՞վ է սա՝ որ դիմեալ գայ յԵդոմայ»[1], այսինքն յերկրէ, զմարդկան անցանելով զօրութեամբ։ Վասն որոյ և Քրիստոս ասէր. «Գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ»[2], որ և մարմին և հոգի և զամենայն, երկրորդն Ադամ։

Քանզի թէ վասն գոյութեան մարդոյ էր ոչինչն, զի՞րդ զմարմինն գտանէր զերեւեալն, ասողին ոչինչ. այլ ո՛չ եգիտ ի նմա յորոց ինքն գործեաց յառաջին ի մարդումն. և այսպէս լուծան մեղք Քրիստոսիւ։ Վասն այսորիկ և գիր վկայէ. «Որ մեղս ո՛չ արար և ո՛չ գտաւ նենգութիւն ի բերան նորա»[3]։

Արդ, զի՞րդ ասէք, թէ անկար է առանց գերելոյ լինել մարդոյն՝ որ միանգամ գերեցաւ. զի զանկարն՝ Աստուծոյ մատուցանէք, իսկ զկարողութիւնն՝ բանսարկուին, անքակտելի ասելով զմեղսն նորա ի բնութեան մարդկան, որպէս և այլ հերձուածօղքն. և վասն այսորիկ գալ աստուածութեամբն՝ որ գերեցաւն ի նմանութիւն մարմնոյ և հոգւոյ, զի ինքն առանց գերելոյ մնացէ. և այսպէս երեւեցի մաքուր արդարութիւն։ Քանզի Երբ ոչ էր մաքուր աստուածութեանն ար-

1. Ես. ԿԳ. 1։
2. Յովհ. ԺԴ. 30։
3. Ա. Պետր. Բ. 22։

դարութիւն. և զի՞նչ երախտաւորութիւն ի մարդիկ՝ եթէ ո՛չ նոյնութեամբ էութեամբն և բնութեան, և նորոգութեամբ երևեալ Ցեառնն, որպէս ասէ առաքեալ. «Զոր նորոգեաց մեզ ճանապարհ առժամայն և կենդանի»[1]. ասելով. «Ես եմ ճանապարհ և կեանք և ճշմարտութիւն»[2]: Այդ ասիցէք, թէ նմանութեամբ ապրել հաւատացելոցն՝ և ոչ նորոգութեամբ և սկզբամբ, զի վասն այսորիկ և անդրանիկ ի բազում եղբարս եղեւ, և սկիզբն ննջեցելոց՝ Քրիստոս, «Որ է գլուխ մարմնոյ եկեղեցւոյ»[3]: Քանզի և ոչ հաւատ ի վերայ յայտնութեան[4] բերեալ՝ հաւատ ասասցի. այդ է հաւատ՝ որ անկարելւոյն կարողութեամբ հաւատայ, և զանկարն զօրացուցանէ, և զչարչարելին՝ անչարչարութեամբ, և զապականեացուն՝ անապականութեամբ, և զմահկանացուն՝ անմահութեամբ: «Խորհուրդս այս մեծ է, ասէ առաքեալ, բայց ես ասեմ, ի Քրիստոս և յեկեղեցի»[5]. քանզի ոչ եկն աստուածութիւնն զինքն արդարացուցանել, զի և ոչ մեղաւ իսկ. «Այդ աղքատացաւ վասն մեր մեծատունն գոլով, զի մեք նորա աղքատութեամբն մեծասցուք»[6]: Եւ զի՞արդ աղքատացաւ Աստուած. զի զաղքատացեալս բընութիւն յինքն էառ, իւրովն արդարութեամբ զսա առաջի արկանելով, վասն մարդկան չարչարեալ, և ի վեր քան զմարդիկ գոլով, և ի մարդկանէ երևեալ, և Աստուծոյ եղեալ բոլորն:

Քանզի թէ ոչ անդրանիկ էր եղեալ ի բազում եղբարս՝ զի՞արդ արդեւք երեւէր անդրանիկ ի մեռելոց: Արդ՝ զի՞արդ ասի Աստուած ի ձեռն մարմնոյ չարչարեալն և յարուցեալ: Աւա՜ղ հայհոյութեանս, արիանոսաց է այսպիսիս յանդգնութիւն: Քանզի նոքա արկանեն առաջի զայսպիսի

1. Եբր. Ժ. 20:
2. Յովհ. ԺԴ. 6:
3. Կողոս. Ա. 18:
4. Յոր. անյայտաբանեան:
5. Եփես. Ե. 32:
6. Բ. Կոր. Գ. 9:

հայհոյութիւն աներկիւղաբար պատճառանօք անուանել Աստուած զորդին Աստուծոյ ուսեալք. որ և գրոյն ուսուցեալ, եթէ ի ձեռն Աստուծոյ ի մարմնի իւրում եղեն չարչարանքն, և ոչ Աստուած ի ձեռն մարմնոյ չարչարեցաւ։

Արդ, որք զհամագոյութեանն խոստովանութիւն յառաջագոյն խոստացեալք, զիա՞րդ ի չարչարանս իջուցանէք զանանջատելին անուն, զանբաժանելին բնութիւն, զանպատմելի աստուածութիւնն, զանփոփոխելի և զանայլայլելի համագոյութիւնն ի չարչարանս իջուցանելով, և ի յարութենէ խոստովանեալք։ Քանզի թէ յինքենէ արար մարմին Բանն՝ չարչարանօք տարեալ եղև, ոչ ինչ չարչարական կամ յարութեան ընդունական յինքն առեալ, ինքն եղիցի չարչարեալ և յարուցեալ ի մեռելոց։ Եւ եղիցին չարչարանքն Երրորդութեանն հասարակաց, ըստ Վաղենտնի, անանջատելի գոլով Բանին ի Հօրէ՝ ըստ աստուածայնոյն բնութեան։ Իսկ եթէ զայս այսպէս խոստովանել ախորժէք, զի՞նչ է ի ձեռն մարգարէիցն խոստումն, կամ՝ աւետարանչացն ազգաբանութիւնն, կամ՝ առաքելոցն վկայութիւնն, կամ՝ մօրն Մարիամայ տեսիլն, կամ՝ հասակին աճումն, կամ ըստ ամենայնի ախտակցութեանն ցուցումն, կամ անուանն յառաջ ածումն, կամ՝ եթէ Որդին Աստուծոյ՝ որդի մարդոյ եղև, կամ՝ եթէ «Մարդ Յիսուս Քրիստոս՝ որ ետ զանձն իւր վասն մեր»[1]. կամ, «Թէ պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարանս կրել և սպանանիլ և յերիր աւուր ի մեռելոց յառնել»[2]։ Իսկ եթէ ո՛չ հաւատայք, եթէ չարչարելի է Քրիստոս՝ վասն զի և մարդ է, և անչարչարելի՝ վասն զի և Աստուած, այդ վտանգեալք՝ ասիցէք եթէ խոստովանիք Աստուած և մարդ զՔրիստոս, ո՛չ ևս մի՝ այդ երկուս ասէք,

1. Ա. Տիմ. Բ. Ե.  2. Ղուկ. Թ. 22.

հարկ է ձեզ զանօրէնութիւն չարչարանացն և մահու և յարութեանն առաչօք ասել, ըստ Մարկիոնի և այլոց հերձուածողաց, կամ զաստուածութիւն Բանին չարչարելի անուանել, ըստ Արիոսի և որք ըստ Նմայն։

Քանզի թէ ընթեռնլով զաստուածային գիրս ի միտ առնուլք, թէ զիա՞րդ յօրէնսն և ի մարգարէս, յաւետարանսն և յառաքեալս, ամենայն ուրեք՝ նախ մարդ անուանեն զՏէրն և յայնժամ ածեն զչարչարանսն, զի մի՛ գուցէ և աստուածութեանն հայհոյութեան բան յառաջ եկեսցէ։ Վասն որոյ՝ ո՛չ ծնունդ Բանին աստուածութեանն ասացին, այլ Հայր խոստովանին և զՈրդին քարոզեն։ Իսկ ի Մարիամայ որդի Դաւթի և Յովսեփայ ազգաբանեն զՏէրն՝ ըստ մարմնոյ, առեցելոյն զծառային կերպարան։ Զի մարդկայինն Նորա՝ ի մարդկանէ հաւատասցի, և յԱստուծոյ ի Հօրէ՝ Աստուած խոստովանեսցի, բերելով յաղագս մարդկան չարչարանս չարչարականաւ կերպիւ՝ որ ի մարդկանէ, ի չարչարելոյ մարմնի՝ զանչարչարութիւն ցուցեալ, և ի մահկանացուի՝ զանմահութիւն, և ի թաղեցելում՝ զանապականութիւն, և ի փորձեցելում՝ զյաղթութիւն, և ի հնում՝ զնորութիւն. զի հին մարդն մեր՝ խաչակից եղեւ, այս իսկ է չնորհն։ Եւ ո՛չ ուրեք յաստուածութիւնն չարչարանք մատչին առանց չարչարելոյն մարմնոյ. և ո՛չ խռովութիւն և տրտմութիւն ցուցանի, առանց հոգւոյ տրտմեցելոյ և խռովեցելոյ. և ոչ տագնապի և աղօթէ՝ առանց իմացման տագնապի և աղօթելոյ։ Այլ թէ և ո՛չ պարտութեամբ բնութեանն պատահէին ասացեալքս, այլ ցուցմամբ գոյութեանն լինէին եղեալքն։

Արդ, զիա՞րդ գրեցէք, թէ Աստուած ի ձեռն մարմնոյ չարչարեցաւ և յարեաւ. քանզի թէ Աստուածն Բան չարչարի, չարչարելի ասէք և զՀայր, և զՄխիթարիչն՝ չարչարելի, միոյ գոլով անուան և միոյ աստուածայնոյն բնութեան։

Եւ յառաջելոցս յայտնի է տեսանել զձերդ մտածութիւնս՝ որպէս ո՛չ երկիւղածից Աստուծոյ, և ո՛չ հաւանելոց աստուածային գրոց։ Մովսէսի գրեալ յաղագս Աստուծոյ, թէ «Աստուած մեր հուր ծախիչ»[1], իսկ վասն մարմնով գալստեան նորա, «Մարգարէ յեղբարց ձերոց յարուսցէ ձեզ»[2] ասէ զՏէրն. և զկենդանութիւնն զփայտէ կախեալ, որպէս զի իցէ մարմնոյն Տեառն ի կեանս մեր եղելոյ։ Եւ Եսայի ազդարարէ յաղագս Աստուծոյ, ասելով. «Աստուած մեծ և յաւիտենական՝ որ հաստատեաց զծագս երկրի ոչ քաղցիցէ և ոչ վաստակեսցի»[3], և զոր զկնին։ Իսկ վասն չարչարանացն, «Մարդ ի հարուածս, և գիտելով բերել ըզցաւսն»[4]. և զի՞նչ է գիտելով բերել զցաւսն». զի ի չարչարելոյն՝ չարչարական մարմին ցուցանիւր։ Քանզի վասն այսորիկ ասէ. «Եւ գրեա՛ գրչաւ առն, ի տոմսի նորում»[5], և ոչ ի մարմնի անկերպի։ Եւ առաքեալ ասէ. «Մարդ Յիսուս Քրիստոս, որ ետ զինքն վասն մեր»[6]. վասն որոյ՝ որում ի զաւակէն Դաւթի՝ մատուցանէ զյարութիւնն ըստ մարմնոյ՝ ասելովն. իսկ յաղագս աստուածութեան նորա, «Քանզի կենդանի է Բանն և ներգործօղ և հաստու առաւել քան զամենայն սուր երկսայրի»[7]։ Եւ Տէրն զչարչարանսն ի վերայ որդւոյ մարդոյ կացուցանէ, ցուցանելով զըստ մարմնոյն. իսկ յաղագս աստուածութեանն իւրոյ. «Ես և Հայր իմ մի եմք». «Եւ ոչ ոք գիտէ զՈրդի թէ ո՛վ է, բայց միայն Հայր»[8]. և ոչ ուրեք արիւն Աստուծոյ դաւանեցին գիրք, կամ՝ Աստուած ի ձեռն մարմնոյ չարչարեալ և յարուցեալ. արիանոսացն է այսպիսիս յանդգնութիւն, վասն զի ոչ

1. Բ. Օրէնք Դ. 24։
2. Բ. Օրէնք ԺԸ. 15։
3. Ես. Խ. 28։
4. Ես. ԾԳ. 3։
5. Ես. Ը. 1։
6. Ա. Տիմ. Բ. 5։
7. Եբր. Դ. 12։ (28։
8. Յովհ. Ժ. 30. և Մատթ. ԺԱ.

Աստուած ճշմարիտ զՈրդին Աստուծոյ խոստովանին։ իսկ գիրք սուրբք՝ ի մարմնի Աստուծոյ, և մարմնոյ Աստուծոյ մարդ եղելոյ արիւն և չարչարանս և յարութիւն քարոզեն, մարմնոյ Աստուծոյ յարութիւն ի մեռելոց եղեալ։

Իսկ դուք դարձեալ ասէք, որպէս իմաստնագոյն քան զառաքեալսն և խորհրդականագոյնք քան զմարգարէսն, և իշխեցողագոյնք քան զաւետարանիչսն, և կամ տիրագոյնք քան զՏէրն ասացելովքդ գովութեամբ, ուրացեալք զճշմարտութիւնն, ընդդէմ աստուածութեանն բարբառեալք. տնօրէնութեանն հաւատեաւ և ի վերայ խաչին ցուցելոյ, արեանն հեղումն՝ զմարմինն ճըշմարտէ, ձայնին եղելոյ և Հոգւոյն նշանակեցելոյ։ Ո՛չ որոշումն աստուածութեանն յայտնեալ, այլ մեռելութիւն մարմնոյ նշանակեալ. աստուածութեանն՝ ոչ ի թաղման մարմնոյն մեկուսեալ, և կամ ի հոգւոյն ի դժոխս որոշեալ։ Զի այս է ասացեալն ի ձեռն մարգարէիցն. «Զի ո՛չ թողցես զանձն իմ ի դժոխս, և ո՛չ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն»[1]. վասն որոյ և Տէրն ասէր, «Ո՛չ ոք առնու զնա յինէն, այլ ես եդից զնա»[2], այսինքն՝ յորոց ցուցանիմս[3].... զմարմին միայն խոստովանեալ՝ ո՛չ զմեղաց դատապարտութիւնն ցուցանել կարէք, և ո՛չ զմահու լուծումն, և ոչ զյարութեանն կատարելութիւն, և ոչ զԲանին անփոփոխութիւն. վասն զի արտաքս ելէք ի գրոց սրբոց, խօսելով զոր ինչ արհանուքն ճարտարաբանեն։ Ցայտնի գոլով ի գիրս սուրբս՝ որ յաղագս Հոգւոյն բան և տնօրէնութեանն լրումն, ցուցմամբ ամենայն լրութեան և կատարելութեան։

Այլք ի հերձուածողաց, զերեւեալն խոստովանելով՝ անհաւատ լինին նորա աստուածութեանն.

1. Սղմ. ԺԵ. 10։
2. Յովհ. Ժ. 18։
3. Աստ թուղթ մի պակասի յօրինակին։

իսկ ոմանք խոստովանելով Աստուած, ուրանան զմարմնով ծնունդն նորա։ Իսկ ոմանք մարմին խոստովանելով, ուրանան զհոգւոյն նորա ցուցումն. և եղեն ըստ մոլորութեան արհանոսացն, որք չարամանեն թերեւս և չարաչար առաջարկութիւնս. զի այսոքիւք տարակուսեալս գտցեն զողջամիտսն, ինքեանք անկցին ի հաւատոց։ Նոյնպէս և սոքա ուսան ասել. Ո՞վ էր որ ծնաւն ի Մարիամայ, Աստուա՞ծ թէ մարդ։ Զի եթէ ասիցէ մարդ՝ անհաւատ լիցի աստուածութիւն նորա, համաձայն լինելով հերձուածողացն՝ որք ոչն հաւատացին այսորիկ. իսկ թէ ասիցէ Աստուած՝ ուրացեալ լիցի մարդկութեան նորա ծնունդ, և տարեալ լիցի ընդ հերձուածողացն՝ որք ոչն հաւատացին այսորիկ։

Եւ ապա դարձեալ. Ո՞վ էր որ չարչարեցաւն, ո՞վ էր՝ որ խաչեցաւն, Աստուա՞ծ թէ մարդ։ Զի թէ ասիցէ Աստուած, հայհոյութեան յառաջ բերցէ բանս, ըստ ամպարիշտ հերձուածողացն. իսկ եթէ ասիցէ մարդ, հրէական կարծեօք դարձեալ բարբառեսցի։ Վասն այսորիկ գիրք սուրբք՝ Աստուած անպատմաբար ի Հօրէ քարոզեն ըղթանն. և զնոյն ի յետին ժամանակս մարդ ծնեալ ի կուսէ, զի մի՛ Աստուած գոլ անհաւատ լիցի, և մի՛ մարմնոյ ծնունդն ուրասցի։ Քանզի ուրանոր մարմնոյ անուն՝ անդ ամենայն կազմութեանն յօդաւորութիւն՝ առանց մեղաց, և ի վերայ անուան մարդոյ զչարչարանսն գիտեն, և ոչ զանց առնեն զկրեցելովքն յամենայն գիրս սուրբս։ Իսկ յաղագս աստուածութեան Բանին զանփոփոխութիւն և անճառութիւն խոստովանին։ Վասն այսորիկ աստուածաբանի Բան՝ բայց ազգաբանի մարդ, զի առ երկաքանչիւրն իցէ նոյն ինքն բընաւորապէս և ճշմարտութեամբ։ Աստուած՝ առ ի յիւրութենէ[1] աստուածութեանն և արարչագոր-

1. Ցոյնն ունի՝ τῇ ἀϊδιότητι, զոր թուի ընթերցեալ վրիպակաւ՝ τῇ θειότητι.

ծութեամբ արարածոցս. իսկ մարդ՝ առ ի ծնընդենէն՝ որ ի կնոջէ և աճմամբ հասակին: Եւ Աստուած՝ առ ի կենդանականացս երախտաւորութեանց, և կարող սքանչելագործութեամբք. իսկ մարդ՝ առ ի նմանապէս ախտակցութեանց և ըստ մեզ տկարութեամբք: Եւ Աստուած՝ առ ի ցուցմանէ անմահութեանն, և անապականութեան և անփոփոխութեան. իսկ մարդ՝ առ ի բեւեռելոյ ի խաչին՝ և արեանն հոսմամբ և թաղմամբ մարմնոյ և իջմամբ ի դժոխս և յարութեամբ ի մեռելոց: Այսպէս Քրիստոս ի մեռելոց յառնէ, և Աստուած գոլով՝ յարուցանէ զմեռեալս:

Արդ, մնոտիք են՝ որ աստուածութեան նորա չարչարանս մատուցանեն, կամ՝ մարդկութեան նորա անհաւատ լինին, կամ՝ զմին երկուս առնեն, և կամ՝ մարմնոյն նորա չափաւորութիւն առնել ձեռնարկեն. և ո՞րչափ կամ՝ զի՞արդ արտաքոյ գրոց ասել յանդգնին: Քանզի այսպիսիք մտածութեամբք լպրծեան հերձուածողացն մտածութիւնք: Մարկիոնի՝ ի ձեռն գերազանցեալ գովութեան խոտորեալ. իսկ Մանեայ ի ձեռն մտածութեան մեղաց թիւրեալ. իսկ Վաղենտինի ի ձեռն պատճառաց գիտութեան[1] մոլորեալ: իսկ Սամոստացւոյն Պաւղոսի, և անուանեցելոյն Փոտինոսի՝ որք ըստ նոցայն՝ անհաւատութեամբ անկեալք յաստուածութենէն. և Արիոսի՝ ի ձեռն իւրոյն մոլութեան[2] հայհոյեալ: Եւ դուք նմանապէս ճանապարհօք վարեալ, խօսիք զոր ինչ ո՛չ է գրեալ՝ մոլորեցուցանելով զանհաստատսն:

Բաւական է հաւատալ գրեցելոցն և եղելոց. որպէս ասէ Պաւղոս. «Ըստ նմանութեան ամենայնիւ՝ առանց մեղաց»[3]: Եւ Պետրոս. «Քրիս-

1. Ցոր. եդեալ էր՝ միտորութեան ուղղեցաք ըստ յունին:
2. Ի լուսանցս՝ մոլորութեան:
3. Եբր. Դ. 15:

տոսի չարչարեալ վասն մեր մարմնով, և դուք ի նոյն միտս վառեցարուք»[1] և մի՛ յայլ ինչ յար-ձակեալ արհամարհէք զճշմարտութիւնն։

# Ե

# ԹՈՒՂԹ

## ԱՌ ՍՐԱՊԻՈՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

### ՑԱՂԱԳՍ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ

. . . . . . . . . . .[1]

Ճշմարտապէս ցանկալի, տրտմեալ և դու ինքն, որպէս յելելոց ոմանց յարիանոսաց, սակս հայ-հոյութեանց՝ որ հակառակ Որդւոյն Աստուծոյ խորհել, նմանապէս և զընդդէմ Հոգւոյն, և ասել զնա ո՛չ ստացուած միայն, այլ և ի սպասաւորա-կան զնա դոլ ոգւոց, և միայն աստիճանաւ լինել վեհագոյն հրեշտակաց։ Եւ այս է՝ որպէս թէ առ Արիանոսս կերպարանօք մարտ, իսկ ստուգապէս առ բարեպաշտութեանն հաւատ բանակռուու-թիւն։ Զի որպէս նոքա ուրանալով զՈրդի՝ ու-րանան և զՀայր, այսպէս և սոքա հայհոյելով զՀո-գին սուրբ՝ ամպարշտեն և յՈրդին։ Եւ երկաքան-չիւր կողմանքն՝ մասնաւորեալ բաժանեցին առ ճշմարտութիւնն զընդդիմասացութիւնն. զի ո-մանք հակառակ Բանին՝ և այլք ընդդէմ Հոգւոյն՝ զնոյն առ ի սուրբ Երրորդութիւնն ունիցին զամ-պարշտութիւն։ Զայսոսիկ ապա տեսանելով և ի բազում ժամս զմտաւ ածելով ի վհատութեան մեծի եղէ, զի դարձեալ եդիտ խաղալ բանսար-

1. Ա. Պետր. դ. 1։ 2. Յոր. Թերատ։

կուն ի կեղծաւորեալն մոլորութեամբ իւրով։ Եւ ընտրելի էր ահա յայսպիսի ժամանակի լռել. այլ սակս հրաւիրողական յորդորման սիրոյ քոյ, և վասն նոցա այլափառութեան և սատանայական յանդգնութեան, ի ձեռն սակաւուց գրեցի ըղթուղթդ, հազիւ և զայդ կարացեալ։ Ո՛չ որպէս ունի զընութեանն պատմելով, այլ կղրոց առաջի դնելով։ Զի միայն և քո զպատճառն աստուստ առեալ՝ ըստ մերձաւոր քոյին իմաստութեանդ զպականն յաւելեալ կատարելապէս, հակառակ ամպարիշտ հերձուածոցդ եղիցի յանդիմանութիւն։

Արդ, յարիանոսաց ոչ է օտար այս մտածութիւն. քանզի միանգամ՝ ուրացեալք զԲանն Աստուծոյ, յիրաւի ապա և զնոյն հակառակ նորին Հոգւոյն սրբոյ ամպարշտեն։ Վասն որոյ են և ոչ ինչ պէտք առ նոսա աւելի ճառել. քանզի բաւական են առ նոսա ասացեալքն հակառակ՝ որ յառաջ քան զայս։ Իսկ արդ, առ որս յաղագս Հոգւոյն են պատրեալք՝ որպէս օրինակաւ իմն պարտ է առ նոսա սուղ ինչ բարբառել հարցականապէս. վասն զի ընդ այնոցիկ թերեւս զարմանայցէք ընդ անմտութիւնն։ Քանզի զՈրդին Աստուծոյ ո՛չ կամեցեալք լսել ստացական, և բարւոք սակս նորա խորհելով, զի՞արդ զՀոգին Որդւոյ ստացուած ասելով, և միայն լսելով ոք անսայցէ։ Զի թէ որ առ Հայր Բանին միաանականութեան ո՛չ կամիցին գոլ յեղելոցս զնոյն ինքն զՈրդին, այլ որպէս և էն ստուգապէս արարչագործ զնա եղելոցս խոստովանին. իսկ յո՞ր սակս զսուրբ Հոգին՝ որ զնոյն միաանականութիւնն ունի առ Որդին, զոր օրինակ Որդին առ Հայր, ստացական յանդգնիցին ասել[1] . . . . .

Ահա է դարձեալ բաժանել և լուծանել զԵրրորդու-

1. Ցոր. Թուղթ անկեալ. իսկ նոտրագիրն՝ յաւելեալ ի յունէն, առ ողջ ածել զմիտս բանին.

թիւնն։ Իսկ արդ չարաչարս խորհելով յաղագս Հոգւոյն սրբոյ, և ոչ վասն Որդւոյ բարւոքապէս խորհին. զի թէ խորհէին ուղղակի սակս Բանին, խորհէին ողջախոհաբար և յաղագս Հոգւոյն որ ի Հօրէ ելանէ, և Որդւոյ՝ իւր գոլով՝ ի Նմանէ բաշխի աշակերտացն և բոլորից՝ որոց հաւատան ի Նա։ Եւ այսպէս ապա մոլորեալք և ոչ յաղագս Հօր ողջախոհապէս զհաւատն ունին. քանզի որք Հոգւոյն սրբոյ հակառակ կան, որպէս ասաց վը-կայն մեծ Ստեփանոս, Նոքա և զՈրդի ուրանան, և որոց՝ զՈրդի ուրացեալ, և ոչ զՀայր ընդունին։

Իսկ ուստի՞ այսուհետև ձեզ. ո՞վ այդպիսիքդ են այսքանեաց յանդգնութեան պատճառք, իբր զի ոչ երկնչել ի պատգամաց Փրկչին, ասելով. «Եթէ ոք հայհոյեսցէ զՀոգին սուրբ, ոչ ունի զթողութիւն, ոչ յայսմ յաւիտենի և ոչ ի հանդերձելումն»[1]։ Քանզի արհանոսաց զմարմնով գալուստ Փրկչին և զ'ի ձեռն Նորին ճառեալսն ո՛չ իմացան, այլ համայն պատճառս ի Նոյանէն առեալ՝ յիւրեանցն հերձուած յանդիմանեցան, այսպէս աստուածամարտք, եւ որպէս ստուգապէս յերկրէս ունայնաբանեալք։ Իսկ դուք, ի՞ւ պատրեցայք ի Նոցանէ. զի՞նչ լուեալ, և կամ զինչպիսի՞ օրինակ ձերոյդ մոլորութեան։ Այդ զգլոց ընթերցայք ասեն, ասելով Աստուծոյ ի ձեռն մարգարէին Ամովսայ. «Վասն որոյ ես եմ՝ որ հաստատեմ զորոտումն, և ստանամ զոգի. և պատմէ ի մէջ մարդկան զօծեալ իւր, առնէ առաւօտ և մէգ, և ելանէ ի վերայ բարձանց երկրի. Տէր Աստուած ամենակալ անուն Նորա»[1]։ Եւ աստուստ հաւանեցայք արհանոսաց ասելոյ, ստացուած գոլ զՀոգին սուրբ։ Արդ, զառ ի յԱմովսայն ընթերցայք և այս ահա, որպէս ունի ճշմարտութիւնն թարգմանի, զի մի՛ ստացուած ասիցի Բանն։ Իսկ որ ի մարգարէն

1. Մրկ. Գ. 29։

2. Ամովս. Դ. 13։

ո՛չ թարգմանի, այլ պարզաբար և սոսկ լսելով հոգի՝ կարծեցէք ստացուա՞ծ գոլ զՀոգին սուրբ: Արդ՝ յԱռաքելն յայտնապէս իմաստութիւնն է ասելոյն, «Ստացաւ զիս». և համայն բարւոք արարեալ թարգմանեցէք զբանն, զի մի՛ զարարչագործն իմաստութիւն ընդ ստացուածս վարկանիցիք: Իսկ որ ի մարգարէն բան՝ ոչ ունի զծանօթութիւն յաղագս Հոգւոյն սրբոյ, այլ սոսկ ասի վասն հոգւոյ. իսկ զի՞րդ նա և մանաւանդ յոլովից իսկ եղելոց զանազանութեանց ի գրոց յաղագս ոգւոց, և կարելի գոլով բանին ունել ըղմիտսն ուղիղ, դուք որպէս յաղթահարեալք և որպէս ի խածմանէ արիոսականն օձէ վնասեալ, ըզՀոգին սուրբ յԱմովսայ կարծէք ասել, զի միայն զխորհելն ստացուած մի՛ մոռանայցէք:

Իսկ արդ ասացէք, եթէ ո՞ւր յաստուածեղէն գիրս գտանի Հոգին սուրբ ասացեալ սոսկ ոգի առանց յաւելադրութեան, ասելով՝ կամ Աստուծոյ, կամ Հօր, կամ թէ՝ իմ, կամ Նորա, կամ Քրիստոսի և Որդւոյ, կամ յինէն, որ է՝ յԱստուծոյ, կամ ընդ յաւելադրութեանն. զի մի՛ սոսկ ասիցի հոգի, այլ զՀոգին, կամ զնոյն ինքն սուրբ Հոգին, կամ Մխիթարիչ, կամ ճշմարտութեան՝ որ է Որդւոյ, ասելոյն՝ թէ «Ես եմ ճըշմարտութիւն»[1]. զի լուեալ սոսկ ոգի՝ զմտաւ ածիցէք գոլ զՀոգին սուրբ: Ի բաց հերքեսցին այժմ ի Բանէն, ոյց ոմանց առեալ դարձեալ անուանին. և ո՞րոյ կանխաւ ունեալ յաղագս Հոգւոյն սրբոյ, յետոյ որպէս առ վերացմամբ և յիշատակաւ և միայն ասացեալ Հոգւոյ, ոչ ճանաչեն յոր սակս լսեն[2], և մանաւանդ զի և սա ընդ յաւելադրին ասի. և բնաւ իսկ առանց յաւելադրութեան անուանն կամ կանխասացելումն, ոչ ահա է նշանակելով զՀոգին սուրբ, թէ որպիսի է զօր

1. Յովհ. ԺԴ. 6:

2. Յօր. ըուէն, իսկ լս. ըէն:

թիւնն։ Իսկ արդ չարաչարս խորհելով յաղագս Հոգւոյն սրբոյ, և ոչ վասն Որդւոյ բարւոքապէս խորհին. զի թէ խորհէին ուղղակի սակս Բանին, խորհէին ողջախոհաբար և յաղագս Հոգւոյն որ ի Հօրէ ելանէ, և Որդւոյ՝ իւր գոլով՝ ի Նմանէ բաշխի աշակերտացն և բոլորից՝ որոց հաւատան ի Նա։ Եւ այսպէս ապա մոլորեալք և ոչ յաղագս Հօր ողջախոհապէս զհաւատն ունին. քանզի որք Հոգւոյն սրբոյ հակառակ կան, որպէս ասաց վը-կայն մեծ Ստեփանոս, նոքա և զՈրդի ուրանան, և որոց՝ զՈրդի ուրացեալ, և ոչ զՀայր ընդունին։

Իսկ ուստի՞ այսուհետեւ ձեզ. ո՞վ այդպիսիքդ են այսքանւոյ յանդգնութեան պատճառք, իբր զի ոչ երկնչել ի պատգամաց Փրկչին, ասելով. «Եթէ ոք հայհոյեսցէ զՀոգին սուրբ, ոչ ունի զթողութիւն, ոչ յայսմ յաւիտենի և ոչ ի հանդերձելումն»[1]։ Քանզի արիանոսաց զմարմնով գալուստ Փրկչին և զ՚ի ձեռն Նորին ճառեալսն ո՛չ իմացան, այդ հա-մայն պատճառս ի նոցանէն առեալ՝ յիւրեանցն հերձուած յանդիմանեցան, այսպէս աստուածա-մարտք, եւ որպէս ստուգապէս յերկրէս ունայնա-բանեալք։ Իսկ դուք, ի՞ւ պատրեցայք ի նոցանէ. զի՞նչ լուեալ, և կամ զինչպիսի՞ օրինակ ձերոյդ մոլորութեան։ Այդ զգրոց ընթերցաք ասեն, ա-սելով Աստուծոյ ի ձեռն մարգարէին Ամովսայ. «Վասն որոյ ես եմ՝ որ հաստատեմ զորոտումն, և ստանամ զոգի. և պատմէ ի մէջ մարդկան զօ-ծեալ իւր, առնէ առաւօտ և մէգ, և ելանէ ի վե-րայ բարձանց երկրի. Տէր Աստուած ամենակալ անուն Նորա»[1]։ Եւ աստուստ հաւանեցաք արիա-նոսաց ասելոյ, ստացուած գոլ զՀոգին սուրբ։ Արդ, զառ ի յԱմովսայն ընթերցաք և այս ահա, որպէս ունի ճշմարտութիւնն թարգմանի, զի մի՛ ստացուած ասիցի Բանն։ Իսկ որ ի մարգարէն

1. Մրկ. Գ. 29։ 2. Ամովս. Դ. 13։

ո՛չ թարգմանի, այլ պարզաբար և սոսկ լսելով հոգի՝ կարծեցէք ստացուա՛ծ գոլ զՀոգին սուրբ։ Արդ՝ յԱռակսն յայտնապէս իմաստութիւնն է ասելովն, «Ստացաւ զիս»․ և համայն բարւոք արարեալ թարգմանեցէք զբանն, զի մի՛ զարարչագործն իմաստութիւն ընդ ստացուածս վարկանիցիք։ Իսկ որ ի մարգարէն բան՝ ոչ ունի զծանօթութիւն յաղագս Հոգւոյն սրբոյ, այլ սոսկ ասի վասն հոգւոյ. իսկ զիա՞րդ նա և մանաւանդ յոլովից իսկ եղելոց զանազանութեանց ի գրոց յաղագս ոգւոց, և կարելի գոլով բանին ունել ըզմիտսն ուղիղ, դուք որպէս յաղթասիրեալք և որպէս ի խածմանէ արհուսականն օձէ վնասեալ, ըզՀոգին սուրբ յԱմովսայ կարծէք ասել, զի միայն զխորհելն ստացուած մի՛ մոռանայցէք։

Իսկ արդ ասացէք, եթէ ո՞ւր յաստուածեղէն գիրս գտանի Հոգին սուրբ ասացեալ սոսկ ոգի առանց յաւելադրութեան, ասելով՝ կամ Աստուծոյ, կամ Հօր, կամ թէ՝ իմ, կամ Նորա, կամ Քրիստոսի և Որդւոյ, կամ յինէն, որ է՝ յԱստուծոյ, կամ ընդ յաւելադրութեանն. զի մի՛ սոսկ ասիցի հոգի, այլ զՀոգին, կամ զնոյն ինքն սուրբ Հոգին, կամ Մխիթարիչ, կամ ճշմարտութեան՝ որ է Որդւոյ, ասելովն՝ թէ «Ես եմ ճըշմարտութիւն»[1]. զի լուեալ սոսկ ոգի՝ զմտաւ ածիցէք գոլ զՀոգին սուրբ։ Ի բաց հերքեսցին այժմ ի Բանէն, ոյց ոմանց առեալ դարձեալ անուանին. և ո՛րոյ կանխաւ ուսեալ յաղագս Հոգւոյն սրբոյ, յետոյ որպէս առ վերացմամբ և յիշատակաւ և միայն ասացեալ Հոգւոյ, ոչ ճանաչեն յոր սակս լսեն[2], և մանաւանդ զի և սա ընդ յաւելադրին ասի․ և բնաւ իսկ առանց յաւելադրութեան անուանն կամ կանխասացելումն, ոչ ահա է նշանակելով զՀոգին սուրբ, թէ որպիսի է զոր

1. Յովհ. ԺԴ. 6։ 2. Յօր. լուէն, իսկ լս. լսէն։

գրէ Պաւղոս Գաղատացւոցն, ասելով, «Զայս միայն կամիմ ուսանել ի ձէնջ. ի գործո՞ց օրինաց զՀոգին ընկալարուք, եթէ ի լրոյ հաւատոց»[1]: իսկ զիա՞րդ էին ընկալեալք՝ եթէ ոչ զսուրբ Հոգին՝ զպարգեւեալն հաւատացելոց՝ վերստին ծնելոց ի ձեռն լուացման և նորոգութեան։ Եւ Թեսաղոնիկեցւոցն գրելով, թէ՝ «ԶՀոգին մի՛ շիջուցանէք»[2], գիտողաց և նոցա զոր ընկալանն ասաց, զի մի՛ շիջուսցեն ի ծուլութենէ զփայլեալ ի նոսա շնորհս Հոգւոյն։ Յաւետարանսն յաղագս Փրկչին մարդկապէս սակս մարմնոյն՝ զոր ընկալաւն՝ թէ ասասցեն աւետարանիչքն, «Յիսուս լի Հոգւով սրբով դարձաւ ի Յորդանանէ»[3], կամ թէ՝ «Յիսուս ածաւ ի Հոգւոյն յանապատ»[4]. զնոյն ունի զմիտս, վասն զի յառաջագոյն ասացաւ ի Ղուկայ, եթէ «Եղեւ ի մկրտել ամենայն ժողովրդեանն, և ընդ Յիսուսի մկրտելն և կալ յաղօթս, բանալ երկնից և իջանել Հոգւոյն սրբոյ մարմնաւոր տեսլեամբ աղաւնակերպ ի վերայ նորա»[5]. և յայտ է թէ զասացեալ Հոգին՝ զսուրբ Հոգին էր նշանակեալ։ Արդ՝ այսպէս առ որս է Հոգին սուրբ, թէպէտ և հոգի միայն ասի առանց յաւելադրութեանն ի վերայ նորա, ոչինչ է յերկուանալի եթէ զՍուրբ Հոգին նշանակէ, ունելով մանաւանդ և յաւելադրութիւնն։

Բայց դուք ասացէք յառաջարկելոցդ ձերոց. թէ ո՞ւր յաստուածեղէն գիրս գտէք ասացեալ զսուրբ Հոգին՝ սոսկ հոգի, առանց յառաջասացեալ ի վերայ նորա յաւելադրութեան. և բաց՝ անուանէ յաւելադրութեանն՝ զորմէ յիշեցաքն։ Այլ ոչ ասացէք[6], զի ոչ իսկ գտանէք գրեալ։ Եւ արդ ի Ծնունդսն ահա գրեալ. «Եւ Հոգի Աստուծոյ

1. Գաղ. Գ. 2։
2. Ա. Թես. Ե. 19։
3. Ղուկ. Դ. 1։
4. Մաթ. Դ. 1։
5. Ղուկ. Գ. 21։
6. Յօր. ասացաք, ի լս. ասացէք։

շրջէր ի վերայ ջուրց »[1]: Եւ յետ սուղ ինչ ասէ. «Ոչ մնասցէ Հոգի իմ՝ ի մարդկանս յաւիտեան, վասն լինելոյ նոցա մարմին «[2]: Եւ ի Թիւն ասէ Մովսէս առ Յեսու Նաւեան. «Մի՛ նախանձեցուցաներ դու զիս. և ո՞ տացէ զամենայն ժողովուրդս Տեառն մարգարէս, յորժամ տացէ Տէր զՀոգին իւր ի նոսա »[3]: Եւ ի Դատաւորսն՝ յաղագս Գոթոնիէլի ասէ. «Եւ եղեւ Հոգի Տեառն ի վերայ նորա և դատեաց զիսրայէլ »[4]. և դարձեալ, « Եղեւ ի վերայ Յեփթայեայ Հոգի Տեառն »[5]. իսկ վասն Սամփսոնի, «Աճեաց, ասէ, մանուկն, և օրհնեաց զնա Տէր. սկսեալ Հոգի Տեառն շրջել. և խաղայր ի վերայ նորա Հոգի Աստուծոյ »[6]: Եւ դարձեալ սաղմոսելով Դաւիթ. «Զհոգի սուրբ քո, մի՛ հաներ յինէն »[7]. և ի հարիւրերորդ քառասներորդ երկրորդ սաղմոսին. «Հոգի քո սուրբ առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ, վասն անուան քոյ Տէր »[8]: Եւ յիսայիաս գրեալ է, «Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս »[9]. ուր, և յառաջ քան զայս վայր, «Որդիք ապըստամբք, այսպէս ասէ Տէր, խորհեցայք խորհուրդ և ոչ ինեւ, և դաշինս կռեցէք և ոչ հոգւով իմով, դնել մեղս ի վերայ մեղաց »[10]. և դարձեալ ասէ. «Լուարուք զայս. ոչ ի սկզբանէ ի ծածուկ ինչ խօսեցայ, քանզի յորժամ լինէրն, ես անդ էի. և արդ Տէր, Տէր առաքեաց զիս և Հոգի նորա »[11]: Եւ յետ սուղ ինչ ասէ այսպէս. «Եւ այս նոցա՝ որ յինէն ուխտ, ասէ Տէր. Հոգի իմ որ է ի քեզ »[12]. և դարձեալ ըստ կարգին ի վերայ բերեալ ասէ. «Ո՛չ բարեխօս և ո՛չ հրեշտակ, այլ

1. Ծնն. Ա. 2:
2. Ծնն. Զ. 3:
3. Թիւք ԺԱ. 29:
4. Դատ. Գ. 10:
5. Դատ. ԺԱ. 29:
6. Դատ. ԺԳ. 24-25:
7. Սղմ. Ծ. 13:
8. Սղմ. ՃԽԲ. 10:
9. Եա. ԿԱ. 1:
10. Եա. Լ. 1:
11. Եա. ԽԸ. 16:
12. Եա. ԾԹ. 21:

ինքնին Տէր փրկեաց զնոսա. վասն սիրելոյ զնոսա և խնայելոյ ի նոսա, նա ինքն փրկեաց զնա և ընկալաւ զնոսա, և բարձրացոյց զնոսա զամենայն աւուրս յաւիտենից։ Եւ նոքա ոչ անսացին՝ այլ բարկացուցին զՀոգի Նորա սուրբ. և դարձաւ նոցա ի թշնամութիւն»[1]։ Եւ Եզեկիէլ այսպէս ասէ. «Եւ առ զիս Հոգին և տարաւ զիս յերկիրն Քաղդէացւոց ի մէջ գերութեանն՝ տեսլեամբ Հոգւոյն Աստուծոյ»[2]։ Իսկ Դանիէլ. «Եւ զարթոյց Աստուած զՀոգին սուրբ ի վերայ մանկան միոյ տըղայոյ՝ որում՝ անուն էր Դանիէլ, և գոչեաց ձայնիւ մեծաւ և ասէ. Անպարտ եմ ես յարենէդ յայդմանէ»[3]։ Եւ Միքիաս. «Տունդ Յակովբայ բարկացոյց զՀոգին»[4]։ Եւ ի ձեռն Յովելայ այսպէս ասէ Աստուած. «Եւ եղիցի յետ այսորիկ հեղից Հոգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոյ»[5]։ Իսկ ի ձեռն Զաքարիայ դարձեալ՝ ձայն Աստուծոյ է որ ասէ. «Բայց զբանս իմ և զօրէնս իմ ընկալարուք, զոր ես պատուիրեմ՝ Հոգւով իմով ծառայից իմոց մարգարէից»[6]. յորժամ՝ և մեղադրելով մարգարէն ժողովրդեանն՝ յետ սուղ ինչ ասէ. «Եւ զսիրտս իւրեանց կարգեցին յանհաւանութիւն, առ ի յոչ լսել օրինաց իմոց մարգարէից, զորս առաքեաց Տէր ամենակալ Հոգւով իւրով ի ձեռն ծառայից իւրոց»[7]։ Եւ արդ, զայսոսիկ ի հնոյն հաւաքեալ ասացաք դուզնաքեայ ինչ։

Բայց հարցէք դուք՝ որ յաւետարանն և զորս գրեցին առաքեալքն, և լուիջիք թէ որպէս և անդ յոլովից եղելոց զանազան հոգւոց։ Իսկ արդ, Տէր յորժամ՝ որպէս յառաջագոյն ասացի՝ մարդկապէս մկրտիւր ի ձեռն զոր զգեցաւ մարմնոյն, ասի ի-

1. Ես. ԿԳ. 9-10։
2. Եզեկ. ԺԱ. 24։
3. Դան. ԺԳ. 45-46։
4. Միք. Բ. 7։
5. Յովէլ. Բ. 28։
6. Զաք. Ա. 6։
7. Զաք. Է. 12։

ջանել ի վերայ նորա Հոգւոյն սրբոյ. և զայս տուեալ աշակերտացն՝ ասէր. «Առէք Հոգի սուրբ»[1]. և ուսոյց նոցա. «Բայց մխիթարիչ Հոգին սուրբ՝ զոր առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամենայն»[2]։ Եւ յետ փոքու ինչ յաղագս նորին ասաց. «Յորժամ եկեսցէ Մխիթարիչն, զոր ես առաքեմ ձեզ ի Հօրէ, զՀոգին ճշմարտութեան՝ որ ի Հօրէ ելանէ, նա վկայեսցէ վասն իմ»[3]։ Եւ դարձեալ. «Ո՛չ եթէ դուք իցէք՝ որ խօսիցիք, այլ Հոգի Հօրն ձերոյ խօսիցի ի ձեզ»[4]։ Եւ յետ սուղ ինչ. «Իսկ եթէ Հոգւով Աստուծոյ հանեմ՝ զդեւս, ուրեմն հասեալ է ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ»[5]։ Եւ զբովանդակ աստուածաբանութիւնն և զմեր զկարելութիւնն՝ որով յարեաց զմեզ յինքն՝ և ինքեամբ առ Հայր, սովաւ կատարելով պատուիրէր աշակերտացն, ասելով. «Գնացէք այսուհետեւ՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»[6]։ Եւ խոստացեալ պարգեւել զնա նոցա, «Պատուիրէ յԵրուսաղեմէ մի՛ մեկնել»[7]. և յետ սուղ ինչ. «Ի կատարել աւուրցն պենտակոստէից՝ էին միաբան ամենեքին ի միասին, և եղեւ յանկարծակի հնչիւն յերկնից՝ եկեալ իբրեւ սաստիկ հողմոյ, և ելից զամենայն տունն յորում նստէին. և երեւեցան նոցա բաժանեալ լեզուք իբրեւ ի հրոյ, և նստաւ իւրաքանչիւր ի վերայ նոցա։ Եւ լցան ամենեքին Հոգւով սրբով, և սկսան խօսել յայլ լեզուս, որպէս և Հոգին տայր բարբառել նոցա»[8]։ Աստուստ ապա ի ձեռն առաքելոցն ձեռնադրութեան տուեալ լինէր վերստին ծնելոցն (ի) Հոգին սուրբ։ Ագաբոս ումն մարգարէացաւ նովաւ

1. Յովհ. Ի. 22։
2. Յովհ. ԺԴ. 26։
3. Յովհ. ԺԵ. 26։
4. Մատթ. Ժ. 20։
5. Ղուկ. ԺԱ. 20։
6. Մատթ. ԻԸ. 19։
7. Գործք Առ. Ա. 4։
8. Գործք Առ. Բ. 1–4։

ասելով. «Այսպէս ասէ Հոգին սուրբ»[1]. իսկ Պաւղոս. «Յորում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս, հովուել զեկեղեցի Տեառն, զոր գնեաց պատուական արեամբն իւրով»[2]. և Ներքինւոյն մկրտելով՝ «Յափշտակեաց զՓիլիպպոս Հոգին սուրբ»[3]։ Եւ Պետրոս՝ «Ընկալայք զկատարումն հաւատոց զոգւոցն փրկութիւն. վասն որոյ փրկութեան խնդրէին և քննէին մարգարէքն, որ յաղագս որ ի ձեզ լինելոց էին շնորհքն՝ մարգարէացին. և քննէին, յորում և յորպիսի ժամանակի գուշակէր ի նոսա Հոգին Քրիստոսի. որ նախ զչարչարանացն Քրիստոսի վկայէր, և յետ այնորիկ՝ զփառացն»[4]։

Եւ Յովհաննէս գրեաց ասելով. «Յայսմիկ ճանաչեմք, եթէ ի Նմա եմք և Նա ի մեզ, զի ի Հոգւոյն իւրմէ ետ մեզ»[5]։ Եւ Պաւղոս գրէ առ Հռովմայեցիսն, ասելով. «Բայց դուք ոչ էք մարմնաւոր՝ այլ հոգւով, եթէ իցէ Հոգին Աստուծոյ բնակեալ ի ձեզ. իսկ եթէ ոք զՀոգի Քրիստոսի չունի, սա չէ Նորա։ Ապա թէ Քրիստոս ի ձեզ է, ապա մարմին մեռեալ է վասն մեղաց. և հոգին կենդանի՝ վասն արդարութեան։ Իսկ եթէ Հոգի այնորիկ՝ որ յարոյցն զՔրիստոս Յիսուս՝ բնակեալ է ի ձեզ, ապա և որ յարոյցն զՔրիստոս Յիսուս՝ կենդանացուսցէ զմահկանացու մարմինս ձեր, բնակեալ Հոգւով իւրով ի ձեզ»[6]։ Եւ առ Կորնթացիսն. «Հոգին զամենայն քննէ՝ և զխորս Աստուծոյ. զի ո՞վ ոք գիտէ զմարդոյն, բայց հոգի մարդոյն՝ որ ի նմա. այսպէս և ոչ զԱստուծոյսն գիտէ՝ եթէ ո՛չ Հոգին Աստուծոյ։ Բայց մեք ոչ եթէ զհոգի աշխարհիս առաք, այլ զՀոգին որ յԱստուծոյ, զի ծանիցուք զայն՝ որ յԱստուծոյն շնորհեցաւ մեզ»[7]։ Եւ յետ

1. Գործք Առ. ԻԱ. 11։
2. Գործք Առ. Ի. 28։
3. Գործք Առ. Ը. 39։
4. Ա. Պետր. Ա. 9-11։
5. Ա. Յովհ. Դ. 13։
6. Հռովմ. Ը. 9-11։
7. Ա. Կորնթ. Բ. 11-12։

սուղ ինչ, «Ո՞չ գիտէք թէ տաճար էք Աստուծոյ, և Հոգի Աստուծոյ բնակեալ է ի ձեզ»[1]։ Եւ դարձեալ. «Այլ լուացարուք, այլ սրբեցարուք, այլ արդարացարուք յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և ի Հոգին Աստուծոյ մերոյ»[2]։ Եւ դարձեալ. «Զայս ամենայն ներգործէ մի և նոյն Հոգի, և բաժանէ իւրաքանչիւր որպէս և կամի»[3]. և դարձեալ. «Այլ Տէր Հոգին է, ուր Հոգի Տեառն է՝ անդ ազատութիւն է»[4]։ Տեսանե՞ք, որպէս և Գաղատացւոցն գրէ, ասելով. «Զի օրհնութիւնն Աբրահամու եղիցի ի Քրիստոս Յիսուս. զի զաւետիս Հոգւոյն ընկալցուք ի ձեռն հաւատոց»[5]. և դարձեալ. «Զի էք դուք որդիք, առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյ իւրոյ ի սիրտս մեր, որ աղաղակէ Աբբա՛, հայր. իբրև զի ո՛չ ծառայ՝ այլ որդի, եթէ որդի՝ և ժառանգ Աստուծով»[6]։ Իսկ առ Եփեսացիսն այսպէս գրէ. «Մի՛ տրտմեցուցանէք զՀոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցարուք յաւուրն փրկութեան»[7]. և դարձեալ. «Փութացարուք պահել զմիաբանութիւն Հոգւոյն, կապով խաղաղութեան»[8]։ Եւ առ Փիլիպեցիսն համարձակի գրելով. «Բայց այս զի՞նչ իցէ. որով օրինակաւ և իցէ՝ եթէ պատճառանօք և եթէ ճշմարտութեամբ՝ Քրիստոս պատմի. և ընդ այս խնդամ, այլ և ուրախ եւս եղէց. քանզի գիտեմ, եթէ այս պահի ինձ ի փրկութիւն ի ձերոց խնդրուածոց և ի պարգևաց Հոգւոյն Յիսուսի Քրիստոսի, ըստ ակնկալութեան յուսոյն իմոյ. զի մի՛ իւիք յամօթ եղէց»[9]. և դարձեալ. «Թլփատութիւն մեք իսկ եմք՝ որ Հոգ-

1. Ա. Կորնթ. Գ. 16։
2. Ա. Կորնթ. Զ. 11։
3. Ա. Կորնթ. ԺԲ. 11։
4. Բ. Կորնթ. Գ. 17։
5. Գաղ. Գ. 14։
6. Գաղ. Դ. 6։
7. Եփես. Դ. 30։
8. Եփես. Դ. 3։
9. Փիլիպ. Ա. 18։

ւոյն Աստուծոյ խօսիւք և պարծիմք ի Քրիստոս Յիսուս »[1]։

Եւ Թեսաղոնիկեցւոցն վկայութիւն դնէ, ասելով. «Որ ուրանայ՝ ոչ զմարդ ուրանայ, այլ զԱստուած՝ որ ետ զՀոգին իւր ի ձեզ »[2]։ Եւ յԵբրայեցւոցն թղթի ասէ. «Զայս յուցեալ Հոգւոյն սրբոյ մինչչեւ յայտնեալ էր ճանապարհին սրբութեանց, քանզի դեռ առաջին խորանն ունէր ըզհաստատութիւն »[3]. և դարձեալ, «Ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն՝ որ զՈրդին Աստուծոյ առ ոտն եհար, և զարիւն Նորոյ ուխտին խառնակ համարեցաւ, որով սրբեցաւն և զՀոգին շնորհաց թշնամանեաց »[4]։ Եւ դարձեալ. «Զի թէ արիւն ցլուցն և նոխազացն և մոխիր երինջուցն ցանեալ՝ զպղծեալսն սրբէր առ ի մարմնոյն սրբութենէ. ո՞րչափ եւս առաւել արիւնն Յիսուսի՝ որ ի ձեռն Հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անարատ պատարագ Աստուծոյ, սըրբեսցէ զխիղճ մտաց ձերոց ի մեռելոտի գործոց անտի »[5]։ Իսկ առ Թեսաղոնիկեցիսն. «Յայնժամ յայտնեսցի անօրէնն. զոր Տէր Յիսուս սատակեսցէ Հոգւով բերանոյ իւրոյ, և խափանեսցէ յայտնութեամբ գալստեան իւրոյ »[6]։

Ահա ո՛րքան Հոգին սուրբ յամենայն աստուածեղէն գիրս ճանաչի։ Իսկ զի՞նչ այսուհետեւ և այսպիսի ինչ տեսէք ի մարգարէին... զասացեալն այժմ հոգի, զի գոնէ և զպատճառն ուսանիցիք. այլ համայն իշխեցէք օրինակս անձանց իմանալ, և ասել զատուցականն ոգի՝ զնոյն գոլ զսուրբ Հոգին։ Եւ մանաւանդ կարացող հանդիպեալք ուսանել և ի բանաւէր արանց յաղագս զանազանութեան ոգւոց։ Քանզի ասի և մարդոյ ոգի, որ-

1. Փիլիպ. Գ. 3։
2. Ա. Թեսաղ. Դ. 8։
3. Եբր. Թ. 8։
4. Եբր. Ժ. 29։
5. Եբր. Թ. 13։
6. Թեսաղ Բ. 8։

պէս ասէ Դաւիթ, սաղմոսելով. «Գիշերի հոգայի և տառապէր յիս հոգի իմ»[1]: Եւ Բարուք աղօթելով՝ ասէ, «Անձինք նեղեալք և հոգիք ձանձրացեալք աղաղակեն առ քեզ»[2]: Եւ դարձեալ, ի Դանիէլ գրեալ է. «Օրհնեցէք հոգիք և շունչք արդարոց՝ զՏէր»[3]: Եւ Առաքեալ, «Նոյն ինքն Հոգին վկայէ հոգւոյս մերում, եթէ եմք որդիք Աստուծոյ, եթէ որդիք՝ ապա և ժառանգք»[4]: Եւ դարձեալ. «Ո՛չ ոք գիտէ զմարդոյ, եթէ ոչ հոգի մարդոյն՝ որ ի նմա»[5]: Իսկ առ Թեսաղոնիկեցիսն, աղօթելով ասէ. «Բովանդակ ձեր ոգի և շունչ և մարմին անարատ ի գալուստն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցի»[6]:

Ասին դարձեալ և հողմոց ոգիք՝ այսպէս արդ, ի Ծնունդս գրեալ է, «Եւ ած Աստուած հոգի ի վերայ երկրի, և ցածեաւ ջուրն»[7]: Իսկ առ Յովնանու. «Եւ Տէր յարոյց ոգի ի ծովուն, և եղեւ մրրիկ մեծ ի ծովուն. և նաւն ի վտանգի կայր ի խորտակել»[8]. և դարձեալ, ի հարիւր և վեցերորդ սաղմոսին գրեալ է. «Ասաց՝ և եկաց ոգի և մըրրիկ, և բարձրացան ալիք նորա»[9]: Եւ ի հարիւրերորդ քառասներորդ ութերորդ սաղմոսին. «Օրհնեցէք զՏէր յերկրէ վիշապք և ամենայն անդունդք, հուր, կարկուտ, ձիւն, սառն, ոգի պտուտկեալ, որ առնէք զբան նորա»[10]: Եւ յԵզեկիէլ յողբսն Տիւրոյ ասէ. «Ի սիրտ ծովու ի ջուրս բազումս իջուցին զքեզ նաւավարք քո, ոգի հարաւոյ խորտակեաց զքեզ»[11]:

Հանդիպեալք ապա և զուք աստուածեղէն գրոց՝

1. Սաղմ. ՀԶ. 7:
2. Բարուք. Գ. 1:
3. Դան. Գ. 86:
4. Հռովմ. Ը. 16:
5. Ա. Կորնթ. Բ. 11:
6. Ա. Թեսաղ. Գ. 13:
7. Ծնն. Ը. 1:
8. Յովնան. Ա. 4:
9. Սաղմ. ՃԶ. 25:
10. Սաղմ. ՃԽԸ. 8:
11. Եզեկ. ԻԷ. 26:

գտանիցէք զաստացեալ հոգին. և ի նոսին՝ զաստուածեղէն գրոց միտս բանից։ Գրելով Պաւղոսի այսպէս. «Որ և բաւական արար զմեզ՝ պաշտօնեայս նորոց կտակարանաց, ոչ գրով՝ այլ հոգւով. զի գիրն սպանանէ, և հոգին կեցուցանէ»[1]. Արդ՝ բանն՝ գրով լինի նկարագրեալ, իսկ միտքն որ ի նմա՝ հոգի ասի. սոյնպէս և «Օրէնքն հոգեւոր են»[2]. որպէս և ասէ. մի՛ ծառայել հնութեամբ գրոյն այլ նորոգութեամբ հոգւոյն։ Եւ նոյն ինքն գոհանալով ասէ. «Ապա և ես ծառայ եմ մտօք օրինացն Աստուծոյ, և մարմնով՝ օրինացն մեղաց. ապա ուրեմն ոչինչ դատապարտութիւն է այնոցիկ որ ի Քրիստոս Յիսուս, զի օրէնք հոգւոյն կենաց ազատեցին զիս յօրինացն մահու»[3]։ Եւ փիլիպպոս զներքինին՝ ի գրոյն ի հոգին կամելով փոփոխել ասաց. «Գիտիցե՞ս արդեւք զոր ընթեռնուցուս»[4]։ Այսպիսի՛ ունելով վկայի և Քաղէբ ի Թիւսն. առնելով Աստուծոյ, «Եւ ծառայ իմ Քաղէբ, վասն զի եղեւ հոգի այլ ի նմա, և զհետ իմ եկն. մուծից զնա յերկիրն՝ յոր եմուտ անդր»[5]. վասն զի ա՛յլ միտք են՝ որ առ ի նմայն են այսպէս խօսեալ, հաճոյ եղեւ Աստուծոյ։ Այսպիսի ունել հրամայեաց Աստուած ժողովրդեանն և ի ձեռն Եզեկիէլի, ասելով. «Արարէք ձեզ ոգի նոր և սիրտ նոր»[6]։ Այսոցիկ այսպէս եղելոց, լաւագոյնք ահա էիք, եթէ յաղագս ստացելոյ հոգւոյ լուեալք, սակս մի յառաջասացելոյն խորհէիք։ Զոր օրինակ էր, որպէս և յԵսայիան գրեալ. «Միաբանեաց Արամ ընդ Եփրեմայ. և զարհուրեցաւ անձն նորա, և անձն որ խօսէրն առ նա, զոր օրինակ փայտ ի մայրւոջ շարժիցի»[7]. սոյնպէս էր

1. Բ. Կորնթ. Գ. 6։
2. Հռովմ. Է. 14։
3. Հռովմ. Է. 25. և Ը. 1-2։
4. Գործք Առ. Ը. 30։
5. Թիւք. ԺԴ. 24։
6. Եզեկ. ԺԸ. 31։
7. Ես. Է. 2։

և զոր «Յարոյց Տէր ոգի ի վերայ ծովուն»[1] ասէ Յովնանու. քանզի հետեւին որոտման և հողմոց՝ շնչմունք, որպէս առ անձրեւոմն՝ որ ըստ Աքաաբու, որպէս և գրեալ է, «Եւ եղեւ մինչեւ ցայս վայր, և երկինք խաւարապատ եղեն ամպովք և հողմով»[2]։

Եւ զի յաղագս Քրիստոսի, ասեն, յիշեաց զբանն, յիրաւի ապա զասացեալ հոգին ոչ այլ ինչ՝ բայց զսուրբ Հոգին պարտ է իմանալ։ Եւ արդ Քրիստոսի անուանել՝ զՀոգին սուրբ, տեսէք իսկ զբաժանումն նորա բնութեամբ և օտարացուցանելով յՈրդւոյ, ո՞չ իմանայք՝ զի զՔրիստոս ո՛չ ասէք ստացուած, իսկ զՀոգին սուրբ գոլ ստացուած. վասն զի անտեղի է զանձնմանն բնութեամբ՝ ընդ նմա անուանել և ընդ նմին փառաւորել. վասն զի ո՞ր հաղորդութիւն կամ նմանութիւն է ստացուածոցս առ ստացօղս։ Ապա թէ ո՛չ ժամ է ձեզ՝ և ընդ Որդւոյ թուակցել և ի նոյն յարել զ'ի ձեռն նորա եղեալ ստացուածքս։

Եւ արդ՝ բաւական է այսուհետեւ յաղագս հոգւոց հողմոց իմանալ զբանն՝ որպէս ասացաւ։ Բայց վասն զի պատճառք որ ի բանին վասն Քրիստոսի յիշատակն, և հարկ է տեսանել ստուգապէս զասացեալսն, գուցէ յաղագս ասացելոյ ստացելոյ հոգւոյն ընտանեգոյնս գտանիցեմք զմիտս։ Իսկ զի՞նչ այսուհետեւ իցէ պատմել ի մարդիկ՝ զօծեալն իւր, եթէ ոչ՝ լինել զնա մարդ և հաւասար գոլ զսա այնմ, թէ «Ահա կոյսն յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ»[3]. և զայլ որչափ և յաղագս գալստեան նորա գրեալ է։ Իսկ արդ՝ մարմնաւոր գալստեան նորա պատմեցելոյ՝ զի՞նչ պէտք էին վասն բանին՝ հոգւի ստա-

1. Յովնան. Ա. 4։
2. Գ. Թագ. ԺԸ. 45։
3. Ես. Է. 14։

ցեալ իմանալ, եթէ ոչ զայն Հոգի՝ որ վերստին ստացող և նորոգողն է մարդկան. վասն զի զայս և ի ձեռն Եզեկիէլի խոստացաւ Աստուած արարածոց և ասէ. «Տաց ձեզ սիրտ նոր, և ոգի նոր տաց ձեզ»[1]: իսկ արդ՝ յո՞ր ժամ այս լցաւ եթէ ոչ յորժամ եկեալ Տէր նորոգեսցէ զամենայն՝ շնորհօք. քանզի ահա և ի բանիս այսմ՝ զանազանութիւն հոգւոց ցուցանի, և ապա հոգի մերս է որ նորոգի. իսկ սուրբ Հոգին ոչ սոսկ և պարզաբար հոգի, այլ իւր ինքեան զնա գոլ ասէ Աստուած, որով և զմերս՝ նորոգէ որպէս ասաց Սաղմոսերգուն ի հարիւրերորդ երրորդ սաղմոսին. «Հանես զոգի նոցա, և պակասեսցին և ի հող դարձցին. առաքես զոգի քո և ստացին, և նորոգես զերեսս երկրի»[2]: իսկ ապա թէ Հոգւով Աստուծոյ նորոգիմք՝ ո՞չ ուրեմն է սուրբ Հոգին ստացական հոգի, այլ մերս: Եւ կամ զի զամենայն եղեալ ի ձեռն Բանին խորհիք, բարւոք ոչ գոլ ստացական զՈրդին, զիա՞րդ ոչ է ամպարշտութիւն ասելդ ձեր ստացական զՀոգին, որով զամենայն Հայր ի ձեռն Բանին կատարէ և նորոգէ. կամ թէ յաղագս գրելոյն պարզ հոգի ստանալ, ստեղծին անձանց գոլ զայս Հոգին սուրբ, հաւանել այնուհետեւ պարտին՝ թէ ո՛չ սուրբ Հոգին է ստացական՝ այլ մերս, որ նովաւ վերստին եղեւ ստացեալ. յաղագս որոյ և Դաւիթ սաղմոսելով աղօթէր. «Սիրտ սուրբ հաստատեա՛ յիս, և զհոգի ուղիղ նորոգեա՛ ի փորի իմում»[3]: իսկ զոր ասէքն ստանալ, նախ և առաջին ստեղծ, որպէս և Զաքարիան ասէ, «Որ ձգէ զերկինս և հիմնացուցանէ զերկիր, և ստեղծու զոգի մարդոյ ի նմա»[4]: վասն զի զոր կանխաւն ստեղծ զսա անկեալ՝ վերստին ստացաւ, լինելով ինքն ի ստացուածի, յորժամ և Բանն մար-

1. Եզեկ. ԼԶ. 26:
2. Սղմ. ՃԳ. 29:
3. Սղմ. Ծ. 12:
4. Զաք. ԺԲ. 1:

մին եղեւ, զի որպէս և առաքեալ ասաց, «Զեր-կուս արարածսն ածեալ ինքեամբ ի մի նոր մարդ՝ որ ըստ Աստուծոյն ստացեալ արդարութեամբ և սրբութեամբ ճշմարտութեանն»[1], ոչ այլոյ արարչագործեցելոյ. քանզի որ իսկզբանէ ըստ պատկերի եղեալն մարդ ասաց, այդ որ Քրիստոսիւն վերստին ստացեալ և նորոգեալն միտք՝ խորհեցաւ վերստին առնուլ. զոր օրինակ և ի ձեռն Եզեկիէլի դարձեալ ցուցանէ ասելով առ նա. «Արարէք ձեզ սիրտ նոր և ոգի նոր, և ընդէ՞ր մեռանիք տուն Իսրայէլի. զի ոչ կամիմ զմահ մեռելոյն, ասէ Ադոնայի Տէր»[2]։

Իսկ ստացելոյ հոգւոյն այսպիսի ունելով միտս, վայելչապէս իմացի և հաստատել որոշումն, հաւատարիմ բանն և անսասանելի հոգւոյն օրէնք։ Քանզի ի սորա սպասաւորութիւն կազմելով զՅակովբոս և զՅովհաննէս՝ Բոաներգես որ է որդիք որոտման, վասն զի ստուգապէս ահա Յովհաննէս յերկնից որոտացեալ ասելով. «Իսկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն»։ Վասն զի նախ և առաջին զստուեր ունէին օրէնքն զհանդերձելոց իրացն, իսկ յորժամ Քրիստոս աւետաւորեցաւ ի մարդիկ, և եկեալ եհաս ինքն որ խօսէրն, թէ ահաւասիկ մերձ եմ. «Յայնժամ, որպէս ասաց Պաւղոս, սորա ձայնն զերկիր շարժեաց. խոստացեալ յառաջագոյն՝ միւսանգամ շարժել ոչ միայն զերկիր, այլ և զերկինս, և միւսանգամն ասել, զեկուցանէ զշարժելոցն լինել փոփոխումն, զի հաստատուն մնասցէ որ անշարժն է։ Վասն որոյ թագաւորութիւն անշարժ ընկալեալ, ունիմք զշնորհս, որով պաշտեմք ըստ հաճութեան կամացն Աստուծոյ»[3]։ Իսկ զորմէ ասէն՝ թագաւորութիւն այսպէս ան-

1. Եփես. Բ. 15, և Դ. 24։
2. Եզեկ. ԺԸ. 31։
3. Եբր. ԺԲ. 26–29։

ցեալ իմանալ, եթէ ոչ զայն Հոգի՝ որ վերստին ստացող և Նորոգողն է մարդկան. վասն զի զայս և ի ձեռն Եզեկիէլի խոստացաւ Աստուած արարածոց և ասէ. «Տաց ձեզ սիրտ նոր, և ոգի նոր տաց ձեզ»[1]: իսկ արդ՝ յո՞ր ժամ այս լցաւ եթէ ոչ յորժամ եկեալ Տէր Նորոգեաց զամենայն՝ շնորհօք. քանզի ահա և ի բանիս այսմ՝ զանազանութիւն Հոգւոց ցուցանի, և ապա Հոգի մեր է որ Նորոգի. իսկ սուրբ Հոգին ոչ սոսկ և պարզաբար Հոգի, այլ իւր ինքեան զնա գոլ ասէ Աստուած, որով և զմերս՝ Նորոգէ որպէս ասաց Սաղմոսերգուն ի հարիւրերորդ երրորդ սաղմոսին. «Հանես զոգի նոցա, և պակասեսցին և ի հող դարձցին. առաքես զոգի քո և ստացին, և Նորոգես զերեսս երկրի»[2]: իսկ ապա թէ Հոգւով Աստուծոյ Նորոգիմք՝ ո՞չ ուրեմն է սուրբ Հոգին ստացական Հոգի, այլ մերս: Եւ կամ զի զամենայն եղեալ ի ձեռն Բանին խորհիք, բարւոք ոչ գոլ ստացական զՈրդին, զիա՞րդ ոչ է ամպարշտութիւն ասելդ ձեր ստացական զՀոգին, որով զամենայն Հայր ի ձեռն Բանին կատարէ և Նորոգէ. կամ թէ յաղագս գրելոյն պարզ Հոգի ստանալ, ստեղծին անձանց գոլ զայս Հոգին սուրբ, հաւանել այնուհետեւ պարտին՝ թէ ո՛չ սուրբ Հոգին է ստացական՝ այլ մերս, որ Նովաւ վերստին եղեւ ստացեալ. յաղագս որոյ և Դաւիթ սաղմոսելով աղօթէր. «Սիրտ սուրբ հաստատեա՛ յիս, և զհոգի ուղիղ Նորոգեա՛ ի փորի իմում»[3]: իսկ զոր ասէքն ստանալ, նախ և առաջին ստեղծ, որպէս և Զաքարիան ասէ, «Որ ձգէ զերկինս և հիմնացուցանէ զերկիր, և ստեղծու զոգի մարդոյ ի նմա»[4]: վասն զի զոր կանխաւն ստեղծ զսա անկեալ՝ վերստին ստացաւ, լինելով ինքն ի ստացուածի, յորժամ և Բանն մար-

1. Եզեկ. ԼԶ. 26:
2. Սղմ. ՃԴ. 29:
3. Սղմ. Ծ. 12:
4. Զաք. ԺԲ. 1:

մին եղեւ, զի որպէս և առաքեալ ասաց, «Զեր֊կուս արարածս ածեալ ինքեամբ ի մի նոր մարդ՝ որ ըստ Աստուծոյն ստացեալ արդարութեամբ և սրբութեամբ ճշմարտութեանն»[1], ոչ այլոյ արարչագործեցելոյ. քանզի որ իսկզբանէ ըստ պատկերի եղեալն մարդ ասաց, այդ որ Քրիստոսիւն վերստին ստացեալ և Նորոգեալն միտք՝ խորհեցաւ վերստին առնուլ. զոր օրինակ և ի ձեռն Եզեկիէլի դարձեալ ցուցանէ ասելով առ Նա. «Արարէք ձեզ սիրտ Նոր և ոգի Նոր, և ընդէ՞ր մեռանիք տունդ Իսրայէլի. զի ո՛չ կամիմ զմահ մեռելոյն, ասէ Ադոնայի Տէր»[2]։

Իսկ ստացելոյ հոգւոյն այսպիսի ունելով միտս, վայելչապէս իմացի և հաստատել որոտումն, հաւատարիմ բանն և անսասանելի հոգւոյն օրէնք։ Քանզի ի սորա սպասաւորութիւն կազմելով զՅակովբոս և զՅովհաննէս՝ Բոանէրգես որ է որդիք որոտման, վասն զի ստուգապէս ահա Յովհաննէս յերկնից որոտացեալ ասելով. «Իսկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն»։ Վասն զի նախ և առաջին զստուեր ունէին օրէնքն զհանդերձելոց իրացն, իսկ յորժամ Քրիստոս աւետաւորեցաւ ի մարդիկ, և եկեալ եհաս ինքն որ խօսէրն, թէ ահաւասիկ մերձ եմ. «Յայնժամ, որպէս ասաց Պաւղոս, սորա ձայնն զերկիր շարժեաց. խոստացեալ յառաջագոյն՝ միւսանգամ շարժել ոչ միայն զերկիր, այլ և զերկինս, և միւսանգամն ասել, զեկուցանէ զշարժելոցն լինել փոփոխումն, զի հաստատուն մնասցէ որ անշարժն է։ Վասն որոյ թագաւորութիւն անշարժ ընկալեալ, ունիմք զշնորհս, որով պաշտեմք ըստ հաճութեան կամացն Աստուծոյ»[3]։ Իսկ զորմէ ասէն՝ թագաւորութիւն այսպէս ան֊

1. Եփես. Բ. 15, և Դ. 24։
2. Եզեկ. ԺԸ. 31։
3. Եբր. ԺԲ. 26–29։

շարժ զսա հաստատեալ, սաղմոսէ Դաւիթ ասելով. «Տէր թագաւորեաց՝ զվայելչութիւն զգեցաւ՝ զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ. քանզի և հաստատեաց իսկ զտիեզերս՝ որ ոչ շարժեսցի»[1]. Ապա ուրեմն մարգարէին բան զգալուստ փրկչին նշանակէ, որով մեք նորոգեցաք, և օրէնք հոգւոյն անշարժ մնացին։ իսկ այք էականին են Ցեղյեղինչք[2], զուգեալք ընդ Արիանոսս և մանաւորեալք ընդ նոսին զաւ ի յաստուածութիւնն ամպարշտութիւն. որպէս զի նորա զՈրդի, և սոքա զՀոգին ստացական ասացին։

Իշխեցին դարձեալ որպէս ինքեանք ասեն յեղյեղմունս անձանց իմանալ, և այլազգ պատմել զԱռաքելոյն բան. զոր նա բարւոքապէս գրեալ Տիմոթեայ՝ ասելովն. «Վկայութիւն դնեմ առաջի Աստուծոյ և Յիսուսի Քրիստոսի և ընտրելոց հրեշտակացն, զի զայդ պահեսցես առանց մտահաճութեան և ամենայն ակնառութեան»[3]: իսկ նոքա ասեն. վասն զի Աստուած և զՔրիստոս անուանեաց՝ և ապա զհրեշտակս, հարկ է ընդ հրեշտակս թուակցել զՀոգին և նոցին զօլ համապատիւ, և զնոյն և հրեշտակ ել՝ մեծագոյն քան զհրեշտակս։

Եւ արդ, նախ և առաջին վաղենալի ամպարըշտութեանն է այս գիւտ. և ոչ մտացան սոքա զնորայն բարբառելով՝ Քանզի նա ասաց, եթէ առաքելով զՄխիթարիչն՝ ընդ նմին առաքեցան և հասակակիցք իւր հրեշտակք։ իսկ զՀոգին սուրբ ի վերայ բերելով՝ ընդ հրեշտակս ոչ զգային ըզհրեշտակս յԵրրորդութիւնն կարգել։ Զի եթէ յետ Հօր և Որդւոյ, ըստ նոցա՝ են հրեշտակք, ոչ եւս ապա «Սպասաւորական հոգիք յարբանե-

1. Սղմ. ՂԲ. 1:

2. Ազգ ինչ հոգեմարտ աղանդաւորաց, որք ապա ի հերձսիովտապետէ իւրեանց Մակեդոնեանք յորջորջեցան:

3. Ա. Տիմ. Ե. 21.

*կութիւն առաքեալք»[1]. և ո՛չ ուրեալք, այլ նա թերևս ինքեանք այլոց ուրքօղք եղեալք։*

*Իսկ յո՞ր սակս ապա այնքան ամպարհաւաճութիւն. ո՞ւր զգրոց դարձեալ գտին ասացեալ հրեշտակ զՀոգին։ Եւ արդ, զայս ինչ ընդ կանխադոյն ճառեալսն հարկ է ասել։ Մխիթարիչ կոչեցաւ, և Հոգի որդեգրութեան, և Հոգի սրբութեան, և Հոգի Աստուծոյ, և Հոգի Քրիստոսի։ Այլ ո՛չ ուրեք հրեշտակ, ոչ հրեշտակապետ, և ո՛չ հոգի սպասաւորութեան, զոր օրինակ են հրեշտակք, այլ մանաւանդ ընդ Որդւոյ և Նա սպասաւորի, ի Գաբրիէղէ ասելովն ցՄարիամ. «Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ և զօրութիւն Բարձրելոյն հովանասցի ի վերայ քո»[2]։ Իսկ ապա դրոց ո՛չ ասելով հրեշտակ զՀոգին, ո՞ր արդեւք եղիցի նոցա պատասխանիք յաղագս այսքանւոյ յանդգնութեան։ Ո՞ւր և նոյն ինքն՝ որ զայսոսիկ չար մտածութիւնս ի սոսա սերմանեաց վաղենտինոս, զմի մխիթարիչ, իսկ զայլսն՝ հրեշտակս անուանելով. թէպէտ և հաւասարաժամանակ և հասակակից հրեշտակաց՝ կարգեաց և նա զՀոգին, անզգամն։ Այլ ահա ասեն ի մարգարէն Զաքարիայ գրեալ է. «Այսպէս ասէ հրեշտակն՝ որ խօսէր յիս»[3], և յայտ է թէ հրեշտակ գոլ զՀոգին նշանակէ՝ որ նովաւն խօսէր։ Եւ արդ, զայս ոչ ասէին եթէ զգուշացեալք էին ընթերցմանն. վասն զի ինքն Զաքարիաս յորժամ՝ զտեսութիւնն՝ որ յաղագս աշտանակին ետես՝ ասէ. «Պատասխանի ետ հրեշտակն՝ որ խօսէր ընդ իս և ասէ, ո՞չ գիտես զի՞նչ են այդ։ Եւ ասեմ՝ ո՛չ Տէր. և պատասխանի ետ և ասէ ցիս. Այս բան Տեառն առ Զօրաբաբէլ, ասելով. ո՛չ զօրութեամբ մեծաւ և ո՛չ ուժգնութեամբ, այլ Հոգւով իմով ասէ Տէր ամենակալ»[4].*

1. Եբր. Ա. 14։
2. Ղուկ. Ա. 35։
3. Զաք. Դ. 1։
4. Զաք. Դ. 5-6։

և քաջայայտ է՝ թէ որ խօսէրն ընդ մարգարէին՝ ոչ էր ինքն սուրբ Հոգին, այլ նա ահա հրեշտակ էր, իսկ Հոգին՝ ամենակալին Աստուծոյ էր, և սպասաւորէր ի հրեշտակէն. իսկ անբաժանելի յաստուածութենէն էր, և ի Նորին Բանէ։

Բայց թէ զառաջելոյն պատճառին զբան, վասն ասելոյն յետ Քրիստոսի զընտրեալ հրեշտակսն, ասասցեն, թէ ո՞վ ի Նոցանէն յամենեցունց է որ յԵրրորդութեանն կարգեալ. վասն զի, ո՞չ ահա ամենեքին են թուով. կամ՝ ո՞վ ոք ի Նոցանէ՝ որ էջն ի Յորդանան՝ նմանութեամբ աղաւնւոյ։ Քանզի հազարք հազարաց են՝ և բեւրք բիւրուց պաշտօնեայք. և կամ է՞ր վասն բանալով երկնից՝ ոչ ասաց՝ թէ էջ յընտրելոց հրեշտակացն, այլ զսուրբ Հոգին. կամ՝ յո՞ր սակս ինքն Տէր յաղագս վախճանին խօսելով ընդ աշակերտսն զգուշաբար, ահա ասէր, «Առաքեսցէ Որդի մարդոյ զհրեշտակս իւր»[1]. և յառաջ քան զայս ասիւր. «Եւ հրեշտակք պաշտէին զնա»[2]։ Եւ դարձեալ նոյն ինքն ասէ, «Ելցեն հրեշտակք»[3]. և աշակերտացն տալով՝ ասէր. «Առէք Հոգի սուրբ»[4]։ Եւ դարձեալ առաքելով զնոսին ասէր. «Գնացէք այսուհետեւ՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»[5]։ Քանզի ոչ հրեշտակ կարգեաց ընդ աստուածութեանն, և ոչ ստացուածով զուգեաց զմեզ ընդ ինքեան և ընդ Հօր, այլ Հոգւովն սրբով. զոր իւր խոստանալով, ոչ ասաց հրեշտակ առաքել, այլ «զՀոգին ճշմարտութեան՝ որ ի Հօրէ ելանէ»[6], և ի Նմին իսկ յՈրդւոյ առնու և բաշխէ։

Եւ Մովսէս ահա գիտելով զհրեշտակս ստացուածս, իսկ զսուրբ Հոգին միաանական Որդւոյ

1. Մատթ. ԺԳ. 41։
2. Մատթ. Դ. 11։
3. Մատթ. ԺԳ. 49։
4. Յովհ. Ի. 23։
5. Մատթ. ԻԸ. 19։
6. Յովհ. ԺԵ. 26։

և Հօր. ասելով առ Նա Նորին Աստուծոյ, «Գնա՛, ե՛լ աստի՝ դու և ժողովուրդ քո՝ զորս հաներ յերկրէն Եգիպտացւոց, յերկիր՝ զոր երդուայ Աբրահամու և Սահակայ և Յակովբայ. ասելով՝ զաւակի ձերում՝ տաց զնա. և առաքեցից առաջի երեսաց քոց զհրեշտակ իմ, և հանցէ զՔանանացին»[1]։ իսկ Նա հրաժարէր ասելով. «Եթէ ոչ դու երթիցես ընդ մեզ, մի՛ հաներ զմեզ աստի»[2]։ վասն զի ոչ կամէր զստացուածոյն՝ առաջնորդել ժողովրդեանն. իբր զի մի՛ ուսցին պաշտել զարարածս քան զարարիչն ամենեցուն Աստուած. վասն որոյ ի հրեշտակէն հրաժարեալ՝ աղաչէր Նմին Աստուծոյ՝ առաջնորդել Նոցա։ իսկ Աստուծոյ խոստացեալ և ասացեալ առ Նա. «Եւ զայս եւս բան քո՝ զոր ասացեր, արարից. քանզի գտեր շնորհս առաջի իմ, և ծանեայ զքեզ քան զամենեսին»[3]։ Գրեալ է յԵսայիաս. «Որ եհան յերկրէ զհովիւն հօտից. ո՞ւր է որ եդ ի Նոսա զՀոգին սուրբ. որ եհան աջով իւրով զՄովսէս»[4]. և յետ սուղ ինչ ասէ. «Էջ Հոգի ի Տեառնէ, և առաջնորդեաց Նոցա. այնպէս ածեր զժողովուրդ քո առնել քեզ անուն փառաց»[5]։ Իսկ արդ՝ ո՞վ ոք ո՛չ տեսանէ աստուստ զճշմարիտն. քանզի Աստուծոյ իւր խոստացեալ առաջնորդել, ահա ոչ այնուհետեւ խոստանայ առաքել հրեշտակ՝ այլ զՀոգին իւր՝ որ է ի վեր քան զհրեշտակս. և Նա է որ առաջնորդէ ժողովրդեանն։ Ուստի ցուցանէ՝ թէ ո՛չ ի ստացուածոյս՝ և ո՛չ հրեշտակ է Հոգին, այլ ի վեր քան զհրեշտակս և զստացուածս է միացեալ ընդ աստուածութեանն Հօր. վասն զի ինքն իսկ Աստուած ի ձեռն Բանին Հոգւովն սրբով առաջնորդէր ժողովրդեանն։ Ուստի ի ձեռն ահա ա-

1. Ելք. ԼԳ. 1-2։
2. Ելք. ԼԳ. 15։
3. Ելք. ԼԳ. 17։
4. Ես. ԿԳ. 11։
5. Ես. ԿԳ. 14։

միայն գրոց, ասէ. «Ես եմ՝ որ հանի զձեզ յերկրէն Եգիպտացւոց. և վկայք դուք էք, եթէ գո՞յր ընդ ձեզ այլ Աստուած բաց յինէն»[1]: Եւ սուրբք ապա գոչեն առ Աստուած. «Առաջնորդեցեր որպէս խաշին՝ ժողովրդեան քոյ»[2]: Եւ «Առաջնորդեաց Տէր յուսով, և ոչ երկեան»[3]. սմին և զօրհնութիւն ի վերայ բերեալ սաղմոսելով ասեն. «Ո՛ եհան զժողովուրդ իւր յանապատն, զի յաւիտեան է ողորմ նորա»[4]: իսկ մեծն Մովսէս՝ յարաժամ պատմելով ասէ. «Տէր Աստուած է որ երթայ առաջի երեսաց քոց»[5]: իսկ ապա ուրեմն Աստուծոյ Հոգին ոչ եւս է հրեշտակ, և ոչ ստացուած, այլ նորին ինքեան աստուածութեանն՝ ստուտի Հոգւոյն լինելով ի ժողովրդեանն, Աստուած ի ձեռն Որդւոյ հանդերձ Հոգւովն՝ է ի նոսա:

Այլ եղիցի այդ ասեն և նոքա այդպէս: իսկ յո՞ր սակս առաքեալ յետ Քրիստոսի ո՛չ յիշեաց զՀոգին, այլ զընտրեալ հրեշտակսն: Եւ զնոյն եթէ ոք զնոսա հարցանիցէ. հի՞մ ո՛չ հրեշտակապետս, ո՛չ սերովբէս, ո՛չ քերովբէս, ո՛չ տէրութիւնս, ո՛չ աթոռս, ո՛չ այլ ինչ, այլ զընտրեալ հրեշտակսն անուանեաց Պաւղոս: Ապա ուրեմն, զի ո՛չ անուանեաց այսպէս, հրեշտակքն հրեշտակապե՞տք են՝ եթէ միայն հրեշտակք. և ո՛չ սերովբէք, և ո՛չ քերովբէք, և ո՛չ հրեշտակապետք, ո՛չ տէրութիւնք, ո՛չ աթոռք, ո՛չ այլ ինչ. այլ հարկաւորութիւնն այս է, ի վերայ առաքելոյ բերել զպատճառն և ասել. և վասն է՞ր ո՛չ այսպէս, այլ այնպէս գրեաց: Եւ այնպէս անհար աստուածաշունչ գրոց եղեալք՝ մոլորեցան յաղագս ճշմարտութեանն: Քանզի ահաւասիկ յԵսայիաս գրեալ է. «Մատերուք առ իս՝ և լուարուք զայս. ո՛չ ի սկզբ-

1. Ղեւտ. ԺԱ. 45, և Բ. Օրէնք. ԼԲ. 39:
2. Սղմ. ՀԶ. 21:
3. Սղմ. ՀԷ. 53:
4. Սղմ. ՃԼԵ. 16:
5. Բ. Օրէնք. Ա. 30:

րանէ ի ծածուկ ինչ խօսեցայ. զի յորժամ լինէրն ես անդ էի. և արդ, Տէր առաքեաց զիս և Հոգի Նորա »[1]: Իսկ յԱնգէոս. « Եւ արդ զօրացիր դու Զօրաբաբէլ. և զօրասցի Յեսու Յովսեդեկեայ քահանայ մեծ, և զօրասցի ամենայն ժողովուրդ երկրիդ, ասէ Տէր. և արարէք, զի ես ընդ ձեզ եմ' ասէ, Տէր Ամենակալ, և հոգի իմ' որ եկաց ի մէջ ձերում »[2]: Արդ, յերկաքանչիւրոց մարգարէից' յաղագս միայնոյ Տեառն և Հոգւոյ եղեւ յիշատակ: Զի՞նչ այսուհետեւ յաղագս այսորիկ ասասցեն. զի թէ վասն զՔրիստոս և զընտրեալ հրեշտակն յիշատակեալ Պաւղոսի' իսկ յաղագս Հոգւոյն լռեալ, և վասն այսորիկ ընդ հըրեշտակս զՀոգին կարգեն. ժամ է նոցա և մարգարէականացն այնոցիկ յանդգնագոյնս նոցա զմըտաւ ածել և սակս լռեցելոյն: Զի եթէ զՏէր ասասցեն զՈրդի գոլ, զի՞նչ թերեւս ասիցեն վասն Հօր. ապա եթէ զՀայր ասիցեն, զի՞նչ արդեւք ասիցեն յաղագս Որդւոյ: Վասն զի հետեւեալ ըստ նոցա հայհոյութեանն, և զմտաւ ածել մի' ումեք լիցի. քանզի հա՛րկ է նոցա ասել' կամ ոչ է, և կամ ընդ արարածս զլռեալն թուակցել:

Զի՞նչ դարձեալ ասիցեն, թէ լուիցեն և Տեառն ասելոյն. « Դիտաւոր մի էր յաշխարհի միոջ, յԱստուծոյ ոչ երկնչէր և ի մարդկանէ ոչ ամաչէր »[3]. Իսկ ապա ուրեմն զի յետ Աստուծոյ անուանեաց և զմարդն, Որդի՞ ուրեմն է այն մարդ' յորմէ ոչ ամաչեաց անիրաւ դատաւորն. և կամ զի յետ Աստուծոյ անուանեաց զմարդ' երրո՞րդ է Որդի յետ մարդոյն. և չորրո՞րդ Հոգին սուրբ: Զի՞նչ թերեւս և Առաքելոյ ի նմին թղթի. լուիցեն դարձեալ ասելով. « Պատուիրեմ քեզ առաջի Աստուծոյ' որ կենդանի առնէ զամենայն, և Յիսուսի

1. Ես. ԽԸ. 16:
2. Անգ. Բ. 5:
3. Ղուկ. ԺԸ. 2:

Քրիստոսի՝ որ վկայեաց առ Պոնտացւով Պիղատոսիւ զբարւոք դաւանութիւնն. պահել քեզ զպատուիրանն անբիծ անարատ »[1]: Ապա ուրեմն վասն զի լռեաց այժմ վասն Հրեշտակաց եւ հոգւոց, վիճի՞ն արդեւք յաղագս հոգւոյն թէ իցէ, և վասն Հրեշտակաց՝ թէ գուցեն: Այո, վիճին. քանզի մինչեւ ցայս վայր ամպարշտել սակս հոգւոյն խորհեցան. կամ թէ լուիցեն գրոց՝ ասելով յԵլսն. «Երկեաւ ժողովուրդն ի Տեառնէ. և հաւատացին յԱստուած և ի Մովսէս ծառայ Նորա »[2]: Իսկ ապա ուրեմն ընդ Աստուծոյ թուակից արասցեն և զՄովսէս, և զՈրդի ոչ առասցեն ընդ Աստուծոյ, այլ միայն զՄովսէս: Զի՞նչ ահա եթէ լուիցեն և հայրապետին Յակովբայ՝ օրհնելով զՅովսէփ և ասելով. «Աստուած՝ որ կերակրեաց զիս ի մանկութենէ իմմէ մինչեւ ցայսօր, Հրեշտակն որ փրկեաց զիս յամենայն չարէ, օրհնեսցէ զմանկունս զայս»[3]. իսկ ապա յետ Աստուծոյ զհրեշտակն անուանեաց, առաջի՞ն ուրեմն հրեշտակն քան զՈրդի կամ ընդ հրեշտակս թուակցեալ լինի Որդի: Այո, դարձեալ այսպէս իմասցին՝ ապականեալ ունելով զմիտսն: Այլ ոչ առաքելական հաւատն այսպիսի, և ոչ բնաւ ամենեւին քրիստոնեայ ոք այսմ՝ անսայցէ: Քանզի սուրբ Երրորդութիւնն և երանելի միասնականութիւնն անբաժին և միաւորեալ յինքեան. վասն զի ասելով Հայր՝ ընդ նմա է և Նորին Բանն՝ և որ յՈրդւոջ Հոգին: Իսկ եթէ և Որդի անուանեսցի, յՈրդւոջ է Հայր. և Հոգին ոչ է օրիշ ի Բանէն: Վասն զի մի է որ (ի) Հօրէ շնորհն ի ձեռն Որդւոյ՝ հանդերձ Հոգւովն սրբով կատարեալ. մի աստուածութիւն և մի Աստուած որ ի վերայ ամենեցուն և ընդ ամենեսին և յամենեսին ի մեզ: Քանզի այսպէս և Պաւղոս ասելովն, «Վկայեմ առաջի Աս-

1. Ա. Տիմ. Զ. 13:
2. Ելք. ԺԴ. 31:
3. Ծնն. ԽԸ. 15:

տուծոյ և Յիսուսի Քրիստոսի»[1]. Ծանեաւ ևթէ ո՛չ բաժանի յՈրդւոյ Հոգին, այլ ի Քրիստոս էր և Նա, զոր օրինակ և Որդի ի Հայր։ Իսկ զըն-տրեալ Հրեշտակն ի վերայ էած յաւէտ. քանզի վկայութիւն էր աշակերտին ասացեալքն, գիտե-լով՝ ևթէ ասացեալքն յԱստուծոյ ի ձեռն Քրիս-տոսի, Հոգւոյն լինին խօսեալք, բայց Հրեշտակք սպասաւորեն զառ ի մէնջ՝ ի վերայ դիտելով իւ-րաքանչիւր գործոց, պահեսցէ զպատուէր վար-դապետին. որպէս ի վերայ հայեցօղ ունելով զա-սացեալ վկայն. կամ թերևս զայն իսկ՝ ոլք հա-նապազ տեսանեն զերեսս Հօրն երկնաւորի։ Որոց վկայէ այժմ կոչելով զՀրեշտակս, սակս որոյ յե-կեղեցիս են տղայք. զի գիտելով աշակերտին զխը-նամատարս ժողովրդեանն՝ մի՛ ծուլացի խրատու Առաքելոյն։

Իսկ արդ աստուածային բանից միտք այսպիսի ինձ երևին, յանդիմանելով զանբան հակառակ Հոգւոյն զհայհոյութիւն. այլ նոքա միայն զբա-նակռուութիւնն ունելով առ ճշմարտութիւն՝ որ-պէս ի դրոց, ոչ և ահա ի գրոց, քանզի ո՛չ գը-տանեն, այլ յաւելուածոյ սրտից իւրեանց զգայ-ռեալք։ Դարձեալ ասեն, զի թէ ոչ ստացուած է, և ոչ մի ի հրեշտակաց, այլ ի Հօրէ ելանէ, ու-րեմն որդի է և Նա. և երկուք են եղբարք՝ ինքն և Բանն. և ևթէ եղբայր է, որպէս միածին Բանն. կամ զի՞արդ ո՛չ հաւասարք, այլ ոմն զկնի Հօր, իսկ միւսն յետ Որդւոյ անուանի. կամ զի՞արդ թէ ի Հօրէ է՝ և ոչ ասի և Նա ծնունդ կամ թէ որդի, այլ սոսկ Հոգի սուրբ։ Ապա ևթէ Որդւոյ է Հոգին, ուրեմն հա՞ւ է Հայր՝ Հոգւոյն։ Զայսպի-սիս ահա դանդաչեն անպատիւքն և անագորոյնք, յուզելով և քննելով զխորս Աստուծոյ, զոր ոչ ոք գիտէ՝ բայց Հոգին Աստուծոյ՝ հայհոյեալն ի նո-

1. Բ. Տիմ. Դ. 1։

ցանէ։ Եւ պարտ էր սոցա և պատասխանի լսել ոչ առնել, ըստ առաքելականն պատուիրանի, այլ յետ[1] յառաջասացեալ խրատուն՝ ի հերձուածողաց հրաժարել ի նոցանէն. կամ ըստ արժանի՝ որոց հարցանել զնոսա և պահանջել ի նոցանէն պատասխանիս, զոր օրինակ և նոքա ի մէնջ պահանջեն։

Ասասցեն այսուհետև, զի թէ Հայր ի հօրէ, և այդ ընդ նմա ծնանի, և են եղբարք ի միոջ, զի՞նչ սորա անուն, կամ ո՞վ որ և սորա Հայր և հաւ նոցա նախածին. այդ ո՛չ ասասցեն գոլ։ Իսկ զիա՞րդ սոցա Հայր՝ ասասցեն, ինքն ո՛չ ծնեալ ի հօրէ. կամ ո՛րպէս կարէ ունել որդի, ինքն ոչ յառաջագոյն ծնեալ որդի։ Գիտեմ՝ զի ամպարշտութիւն է հարցումնս. այդ զայսպիսիս խաղալով նոցա՝ խաղալ արժան է՝ զի գոնէ յայսպէս անտեղի և անպարիշտ հարցուածոց, զգալ իւրեանց անզգամութեանն կարասցեն։ Վասն զի ոչ է այս, որ քաւ և մի՛ լիցի, և ոչ այսպէս յաղագս աստուածութեանն հարցանել վայելուչ է, զի ոչ է իբրև զմարդ Աստուած, թէ մարդկապէս յաղագս նորա ոք հարցանել իշխէ։

Լաւ սոցա մանաւանդ յաղագս այսոցիկ՝ որպէս կանխաւն ասացի՝ և ոչինչ առարկել պարտ է։ Այլ զի մի՛ մերով լռութեամբն՝ պատճառանս անմտութեան նոցա տանել, լուիցեն։ Որպէս ո՛չ է առնել առ Հարր՝ հայր, այսպէս ո՛չ է պարտ առնել առ Որդւով՝ եղբայր։ Զի յառաջ քան զՀայր՝ որպէս և գրեալ է՝ ո՛չ Աստուած ոչ եղև. Որդի այլ՝ ո՛չ է, քանզի միածին է։ Վասն որոյ և միայն և մի Հայր, միայնոյ Որդւոյ է հայր. և առ միով աստուածութեամբն՝ Հայր և Որդի, եկաց միշտ, և է։ Բայց մարդկան իւրաքանչիւր ոք թէպէտ և հայր սաւ, այլ այլոյ եղև որդի, և թէպէտ և որդի

1. Յօր. հէփ։

ասի, այդ միւսոյ Հայր է· ուստի ի մարդիկ՝ ո՛չ է ողջ ապրեցուցանել ստուգապէս զՀօր և զորդւոյ անուն։ Աբրաամ՝ որդի գոլով Նաքովրայ, հայր եղեւ Սահակայ, և Սահակ որդի գոլով Աբրահամու՝ հայր եղեւ Յակոբայ. և զայս օրինակ կարգի բնութիւնս մարդկան ունի, քանզի անդամք են միմեանց, և իւրաքանչիւր ոք ծնեալ՝ ունի զՀօր անդամ, իբրեւ զի ինքն եղիցի այլոյ հայր։ Իսկ առ աստուածութեամբն ոչ է այսպէս· վասն զի ո՛չ իբրեւ զմարդ Աստուած, և ո՛չ բաժանեալ ունի զբընութիւնն· վասն որոյ և ո՛չ ծնանի Որդի բաժանմամբ, որպէս զի ինքն եղիցի այլոյ հայր, ապ՛ եթէ ո՛չ, և ոչ ինքն է ի Հօրէ, և ո՛չ Որդի բաժին է Հօր, յաղագս որոյ և ո՛չ ծնանի՝ որպէս ինքն ծնեաւ, այլ բոլորովիմբ է բոլորին պատկեր և ճառագայթ։ Վասն զի առ աստուածութեամբն Հայր ստուգապէս (է) հայր, և Որդի ստուգապէս որդի. և յայսոսիկ եկաց (Հայր)՝ միշտ հայր, և Որդի՝ միշտ որդի։ Որպէս ո՛չ երբեք է Հայր որդի, այսպէս ո՛չ եղիցի և Որդի հայր· և որպէս ո՛չ դադարէ երբեք Հայր՝ միայն գոլ հայր, այսպէս ո՛չ դադարէ Որդի՝ միայն գոլ որդի· քանզի մոլորութիւն ապա է միայն և զմտաւ ածել զայս, և ասել առ Որդւով եղբայր, կամ առ Հարբ և զՀոգւոյն անուն· վասն զի ոչ իսկ անուանեցաւ ի գիրս որդի Հոգին, զի մի՛ եղբայր կարծիցի, և ո՛չ որդի Որդւոյ, զի մի՛ հաւ Հայրն· այլ Որդի՝ Հօր՝ որդի, և Հոգին՝ Հօր ասի հոգի. և այսպէս մի Յերրորդութիւնն է աստուածութիւն և հաւատ։

Իսկ ապա ըստ այսմ՝ մոլորութեան զնա է ասել ստացուած. քանզի թէ ստացուած՝ ոչ կարգիւր յԵրրորդութեանն, վասն զի ամենեւիմբ մի է Աստուած։ Եւ բաւական՛ է գիտելն՝ թէ ո՛չ ստացուած է Հոգին, և ոչ ընդ արարածս թուեալ. զի ո՛չ եթէ յօտարուստ խառնեալ լինի յԵրրորդութիւնն, այլ անբաժին է և ի նմին ինքեան։

Բաւական է այս հաւատացելոց. մինչեւ յայտնիլ նշան գիտութիւն ի մարդիկ. մինչեւ յայտնիլ քերովբէքն ծածկեն ՚թեւովքն. իսկ որ առաւելն քան զայս խնդրէ և կամիցի քննել, անունկընդիր լինի աստղին թէ, «Մի՛ լինիր առաւել իմաստուն, զի մի՛ թիւրեսցիս»[1]: Քանզի հաւատովն աւանդեալ, զայն՝ ոչ իմաստութեամբ մարդկան՝ այլ զօրութեամբ Հոգւոյն վայել է իմանալ: վասն զի ո՞ր բան արժանապէս կարասցէ թարգմանել զ՚ի վերն քան զերակմանացս գոյացութիւն. կամ ո՞յր ուրուք լսելիք ամենեւին ի միտ առնուլ կարեն՝ զոր ոչն է պարտ մարդկութեանս ոչ լսել և ոչ խօսել: Արդ, յաղագս որոց լուան Պաւղոս՝ այսպէս ասաց. իսկ վասն Նորին Աստուծոյ. «Ո՛րպէս առանց զննելոյ են ճանապարհք Նորա: Քանզի ո՞վ ծանեաւ զմիտս Տեառն, և կամ ո՞վ եղեւ Նմա խորհրդակից»[2]: Ուստի և Աբրահամ ոչ յուզեաց և ոչ քննեաց զայն՝ որ խօսեցաւ առ Նա, «Այլ հաւատաց՝ և համարեցաւ Նմա յարդարութիւն»[3]. սոյնպէս և Մովսէս հաւատարիմ կոչեցաւ ծառայ: իսկ որք զԱրիոսին խորհին, վասն զի ի չարարուեստ նոցա անձն՝ ոչ մտցէ իմաստութիւն, և ոչ իմանալ կարեն և ոչ հաւատալ՝ յաղագս անբաժանելի և սուրբ Երրորդութեանն, մի՛ վասն այնորիկ սակս ճշմարտութեանն այլանդակս պատմեսցեն. և մի՛ դարձեալ զոր ինքեանք ոչն կարեն իմանալ, ասասցեն զայն և ոչ լինել կարելիք: Գիտել՝ երս ախտանալ անտեղիս. քանզի ոչ կարացեալք իմանալ՝ թէ որպէս անբաժանելի իցէ սուրբ Երրորդութիւնն, և առնեն ահա Արիանոսք զՈրդի ընդ արարածս: իսկ Ցեղյեղիչք՝ զՀոգին նոյնպէս ընդ արարածս թուեն. և պարտ էր ապա սոցա ամենեւիմբ ոչ իմացելոց՝

1. Ժող. Է. 17:
2. Հռովմ. ԺԱ. 33-34:
3. Հռովմ. Դ. 3:

լուել, և ոչ կարգել ոչ Նոցա զՈրդի՝ և ո՛չ սոցա զՀոգին ընդ ստացուածս. կամ զգրեալսն ճանաչել և ընդ Հօր զուգել զՈրդի, և զՀոգի ո՛չ բաժանել յՈրդւոյ, որպէս զի անբաժին և ճշմարտապէս միասնական սուրբ Երրորդութիւնն միասցէ։

Արդ, զայս ասել Նոցա պարտ է, ոչ իշխել և ոչ ընդդէմ վիճել հարցանելով, թէ ո՞րպէս այդ ըլնիցի. թէպէտ և հարցեալն տարակուսեսցի ասել; մի՛ խմասցին նոքեանց չարագործութիւնս. վասն զի է ամենայն եղականաց և մանաւանդ մեզ մարդկան անկարելի՝ ասել սակս անպատմելեացն։ Եւս դարձեալ յանդգնութիւն է, ոչ կարացեալք ասել յայտնեցին իմանալ Նորաձեւութիւնս տառից արտաքոյ քան զգրոց, այլապէս. զի և մոլեկան է այսպիսի ձեռնարկութիւն, և հարցօղին և բնաւ իսկ զմտաւ ածողի պատասխանիս առնել. վասն զի և ոչ ինչ, և ոչ յաղագս եղելոցս զայսպիսի ոք հարցանելով կարծեսցէ միտս ուղիղս ունել։

Իսկ արդ, եթէ իշխեսցեն պատասխանիս առնել՝ ույք զամենայն առ ի յասել յանդգունք, զիա՞րդ երկինք հաստատեցան կամ յորմէ հիւթոյ, և կամ զի՞նչ Նորին խառնումն, ո՛րպէս իսկ և արեգակն կամ իւրաքանչիւր ոք յաստեղաց։ Բայց զի սքանչելի է և ի գիտակայեցս զնոցա յանդիմանել զանզգամութիւն, ուր և ոչ աստ իսկ ի խոնարհս. զիա՞րդ և փայտից բնութիւն, կամ ջրոց հաստմունք, կամ ո՛րպէս կենդանեաց ստեղծմունք և հաստմունք ճանաչին։ Այդ ոչ ասասցեն, ուր զի Նաեւ Սողոմոնի առաւել քան զամենեսեան իմաստութիւն ընկալեալ և տեսեալ՝ անկարելի եղեալ ի մարդկան յաղագս այսոցիկ տանել՝ ասաց. «Նա՝ և զամենայն յաւիտեանս ետ ի սիրտս Նոցա որպէս զի մի՛ գտցէ մարդ զարարածն՝ զոր արար Աստուած ի սկզբանէ մինչեւ ի կատարած»[1]։ Արդ,

1. Ժողով. գ. 11։

իբր զի ո՛չ կարէ ասել և ոչ լինել՝[1] զայնոսիկ խոստովանեցին, այլ այո՛ խոստովանին ապականեալ ունելով զմիտսն։ Ուստի յաւէտ ապա ոք ոցա ասասցէ. ո՞վ անմիտք և յամենայնի յանդըգունք, հի՞մ ոչ զյաղագս սրբոյ Երրորդութեանն դադարէք ի քննելոյ, և միայն հաւատայք. ունելով յայսոսիկ վարդապետ զԱռաքեալն որ ասէ, թէ «Հաւատալ պարտ է նախ Աստուծոյ եթէ է, և որք խնդրեն զնա լինի պարգևատու»[2]. զի ոչ եթէ որպէս էն ասաց, այլ միայն՝ զի է։ Ապա թէ և ո՛չ այսպէս զօղեսցեն, ասասցեն թէ ո՛րպէս է Հայր, զի այնպէս իմասցին եթէ զի՞րդ է և սորին Բանն։ Այլ անտեղի լինել ասասցեն յաղագս Հօր այնպէս հարցանել, անտեղի գոլ լուիցեն և յաղագս Նորին Բանի այնպէս հարցանել։ Քանզի ունելի և առաւել մոլորութեան է այսպիսի ձեռնարկութիւն, մի՛ և սոքա այսպէս հարցցեն. այլ միայն զոր ի գիրս՝ ուսցին. վասն զի բաւական և շատ են որ ի նոսա յաղագս այսոցիկ կան տարացոյցք։ Աղբեւր ահա և լոյս ասէ Հայր, զի «Զիս թողին, ասէ, զաղբեւր ջուրց կենաց»[3], և դարձեալ ի Բարուք ասէ. «Զի՞նչ է Իսրայէլ, զի յերկրի թշնամեաց ես. թողեր զաղբեւր իմաստութեան»[4], և ըստ Յովաննու աւետարանին. «Աստուած մեր լոյս է. և խաւար ի նմա չիք»[5] *։

1. Յոբ. ըէ։
2. Եբր. ժԱ. 6։
3. Երեմ. բ. 13։
4. Բար. գ. 10։
5. Ա. Յովհ. ա. 5.

* Աստանօր յօր. թուղթ անկեալ է։

## Զ

## ԹՈՒՂԹ

# ԱՌ ԼԻԲԵՐԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՀՌՈՎՄԱՅ

### ԶՈՐ ՊԱՀԱՆՋԵԱԼ Ի ՆՄԱՆԷ ԳՐԵԱՑ ԱՅՍՊԷՍ

Մի Աստուած, անման, աներեւոյթ, անչօշափելի. քանզի Հոգի է Աստուած, նոյն ինքն անբաժանելի. ո՛չ ունելով տեղի՝ ուր ո՛չ է. և Նորին դարձեալ Բանն անման իմաստութիւն։ Սա կոչի Որդի, անդրանիկ, գործակից, անսկիզբն, անչօշափելի, ոչ սկիզբն աւուրց ունելով, և ո՛չ կատարած կենաց յուսացեալ։ «Ի ձեռն սորա եղեւ ամենայն, և առանց սորա եղեւ և ոչինչ»[1]։ Սա՝ որ ստեղծ զմարդն, սա է որ զտապանագործութիւնն եցոյց՝ թէ որպէս լինի. սա է որ ետ զաւետիսն Աբրահամու. սա է որ էջ ի փրկել զժողովուրդն, որ Մովսիսի զօրէնսն ետ. սա է Աստուած Աբրահամու, Աստուած Սահակայ, Աստուած Յակոբայ, որ ի մարգարէսն խօսեցաւ, որ եդ զհին և զնոր կտակարանս. որ ի վերջին ժամանակս մարմին մահկանացու էառ ի կուսէն, ո՛չ ինքն մահկանացու՝ պարտաւոր մահու. ո՛չ ինքն պարտաւոր, մարմինն կախեցաւ՝ ո՛չ ինքն. մարմինն թաղե-

1. Յովհ. ԺԴ. 30։

ցաւ՝ ո՛չ ինքն. Նա զօրութիւն Աստուծոյ է, այս է՝ Աստուած։ Զանլուծանելի դժոխս ելոյծ, զզօրութիւն Թշնամւոյն խափանեաց. ել՝ ուստի էջն. յարուցեալ զայն՝ որ Թաղեցաւն՝ յարեաց առ Հայր. ազատեաց զըմբռնեալսն ի մահուանէ։ Սովաւ զՀայր ծանեաք. վասն զի մի և մի Նորին աստուածութեանն և զօրութեանն է անձնաւորութեամբ, բնական փառաց իմանալւոյն Աստուծոյ, և զնոյն ինքն զՈրդին ընդ Հօր։ Սա է՝ որ առնըլով զմարմինն՝ Յիսուս կոչեցաւ, որպէս զի և մարդ՝ այս է՝ էառ մարմին. «Եւ ի Նմա ամենայն լրումն աստուածութեանն մարմնապէս»[1]։ Զսա ունիմք անմեկնելի ի Հօրէ. և ո՛չ զՀայր առնեմք իջեալ. սա մի Աստուած ամենակալ առ ի մէնջ. և վասն այնորիկ հաւատս մեր է՝ ի մի Աստուած Հայր ամենակալ, և յՈրդի Նորա Տէր մեր Յիսուս Քրիստոս, և ի սուրբ Հոգին։ Եւ զսա՝ միոյ միաւորութեանն, միոյ աստուածութեան, միոյ զօրութեան, միոյ անձնաւորութեան, միոյ բնութեան, միոյ փառաւորութեան, միոյ տէրութեան, միոյ Թագաւորութեան, միոյ պատկերի միանմական Երրորդութեանն, «Որով ամենայն եղեւ»[2]։ Այսպէս և զմարմնոյ յարութիւն, այս է՝ զմերոցս մարմնոց, հաւատամք՝ ըստ սուրբ գրոց, ապականացու և մահկանացու գոլով սորա, փոփոխեալ յանապականութիւն և յանմահութիւն՝ յԱստուծոյ։ Որում փառք այժմ և յանսպառ յաւիտեանս. ամէն։

1. Կողոս. Բ. 9։ 2. Յովհ. Ա. 3։

Է

## ՅԱՂԱԳՍ ՍՐԲՈՅ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ

Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ, բոլորից արարիչ, երեւելեաց և աներեւութից։ Որ ունի զգոլն առ յինքենէ։ Եւ ի միածին Բանն և իմաստութիւն, Որդի ի Հօրէ, անսկիզբն և մշտնջենաւոր ծնեալ. Բան, ո՛չ յառաջբերական և ոչ խոհական, ոչ կարօտ գոլով կատարելութեան, և ո՛չ հատուածս յանախտ բնութենէն, և ո՛չ առաջ-արկութիւն. այլ Որդի ինքնակատար, կենդանի և ազդօղ, ճշմարիտ պատկեր Հօր. Հօր հաւա-սարապատիւ և հաւասարափառ։ Քանզի «Այս են, ասէ, կամք Հօր, զի պատուեսցեն զՈրդի, որպէս պատուեն զՀայր»[1]։ Աստուած ճշմարիտ, յԱստու-ծոյ ճշմարտէ, որպէս ասէ ի կաթողիկէան Յովհան-նէս, թէ «Եմք ի ճշմարտի Որդւոյ Նորա Յիսուսի Քրիստոսի. սա է Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենականք»[2]։ Ամենակալ յամենակալէ. վասն զի ամենայնից՝ որոց իշխէ և ունի Հայր՝ իշխէ և ունի Որդի. բովանդակ ի բովանդակէ, նման Հօր. որպէս ասացն Տէր, եթէ՝ «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ»[3]։ Ծնաւ անճառապէս և անհատաբար. «Քանզի զազգատոհմն Նորա ո՞ պատմեսցէ»[4], փո-խանակ ասելոյ՝ թէ ո՛չ ոք. ի վախճան յաւիտե-

1. Յովհ. Ե. 23։
2. Ա. Յովհ. Ե. 20։
3. Յովհ. ԺԴ. Թ։
4. Ես. ԾԳ. 8։

*նից իջեալ ի ծոցոյ Հօր, յանարատ ի կուսէն Մարիամայ զմերն ընկալեալ մարդ Յիսուս Քրիստոս. որ եւ զանձն վասն մեր ի չարչարանս մատնեաց իւրովք կամօք, որպէս ասէ Տէր. «Ոչ ոք բառնայ զանձն իմ յինէն. իշխանութիւն ունիմ դնել զնա, և իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա»[1]։*

*Որով մարդով խաչեալ և մեռեալ յաղագս մեր, յարեաւ ի մեռելոց, վերացաւ յերկինս. սկիզբն ճանապարհի ստացեալ զմեզ. յերկրի գոլով՝ եցոյց մեզ զլոյս ի խաւարէ. փրկութիւն ի մոլորութենէ, կեանս ի մեռելոց. զմուտ ի դրախտն՝ յորմէ արտաքսեցաւ Ադամ. յոր դարձեալ եմուտ ի ձեռն աւազակին. որպէս ասաց Տէր. «Այսօր ընդ իս իցես ի դրախտին»[2], յոր և Պաւղոսն եմուտ։ վերնաճանապարհորդութիւն յերկինս, ուր կարապետն մեր եմուտ տէրունեանն[3] մարմին, որով հանդերձեալ է դատել զկենդանիս և զմեռեալս։*

*Հաւատամք նոյնգունակ և ի սուրբ Հոգին, որ զամենայն քննէ և զխորս Աստուծոյ։ Նզովելով զայնոսիկ՝ որք արտաքոյ այսմ աւանդութեանց ինչ խորհիցին։ վասն զի և ոչ որդեհայրութիւն խոստովանիմք, որպէս Սաբեղիանոսք. որք ասեն զՆ միասնական, այլ ոչ համաբնական. և այսու բարձեալք զգոլն Որդի։ Ո՛չ զչարչարականն զմարմին՝ զոր զգեցաւն յաղագս ամենայն աշխարհի փրկութեան՝ Հօր. և ո՛չ յերիս անձնաւորութիւնս յատուկ բաժանեալս, որպէս մարմնաբանութիւնս յաղագս մարդկան.... կարծել՝ զի մի՛ բազմաստուածութիւն՝ ըստ հեթանոսաց իմանայցեմք. այլ զոր օրինակ՝ յաղբերէ գետ ծնեալ, և ո՛չ բաժանեցաւ. և մնաւանդ զի երկու ձեւք և երկու անուանք հանդիպեալք. զի ո՛չ Հայր՝ Որդի*

1. Յովհ. ժԴ. 18։ 3. Յոր. էր՝ փէշտամալեան։
2. Ղուկ. ԻԳ. 43։

է, և ո՛չ Որդի Հայր․ այլ Որդի՝ Հօր Որդի է։ վասն զի որպէս ո՛չ է աղբիւր՝ գետ, և ո՛չ գետն աղբիւր, և երկոքին մի և նոյն ջուր են, որ յաղբերէ գետն հոսեալ․ այսպէս և ի Հօրէ աստուածութիւնն՝ անհուս և անբաժին հանդիպի։ Քանզի ասաց Տէր, «Ի Հօրէ ելի և եկի»[1]․ առ Հօր է՝ միշտ գոլով ի ծոց Հօր, և ո՛չ երբեք թափեցաւ ծոցն Հօր յաստուածութենէ Որդւոյ․ քանզի ասէ, թէ «Ես էի առ Նովաւ պատշաճեալ»[2]։ Ո՛չ խոստովանիմք ստացուած կամ արարած, կամ յոչ գոյութենէ զամենեցուն ստացօղն Աստուած՝ զԱստուծոյ Որդին։ Որ յէութենէն է՝ ի միայնոյ զմիայնն․ որ ընդ նմա ծնեալ.......[3] նմա փառք և զօրութեամբ։ Քանզի «Որ ետես զիս, ետես ըզՀայր»[4] ասէ։ Ուստի ամենայն ինչ յայտ է՝ թէ ի ձեռն Որդւոյ եղեն ստացեալք․ բայց ոչ է ստացուած, որպէս և Պաւղոս ասէ, սակս Տեառն, թէ «Նովաւ եղեւ ստացեալ ամենայն, և Նա է յառաջ քան զամենայն»[5]։ Ոչ ասաց, թէ յառաջ քան զամենայն եղեւ ստացեալ՝ այլ եթէ գոյ յառաջ քան զամենայն։ իսկ արդ, ստանիլն ի վերայ բոլորից կայ։ Բայց թէ գոյ յառաջ քան զամենայն՝ միայնում Որդւոյ պատշաճի։

Ծնունդ ապա ըստ բնութեան, և ի կատարելոյ՝ կատարեալ գոյ։ Ծնեալ յառաջ քան զամենայն բլուրս, այս է՝ յառաջ քան զամենայն բանական և իմանալի բնութիւնս․ որպէս և այլուր ասէ զնմանէ Պաւղոս․ «Անդրանիկ ամենայն արարածոց»[6]։ Ո՛չ ասաց զնա Նախաստացիկ[7] ամենայն արարածոց,

1․ Յովհ․ ԺԶ․ 28։
2․ Առակ․ Ը․ 30։
3․ Ի լս․ եդեալ էր, «տես թէ յայլ օրինակս ինչ ցեղ է»․ բայց մեզ օրինակ պակասէր։
4․ Յովհ․ ԺԴ․ 9։
5․ Կողոս․ Ա․ 16։
6․ Կողոս․ Ա․ 15։
7․ Յոր․ Նախասացին էր․ բայց զի նոյն գրիչ ի լս․ եդեալ էր մի բառ՝ զայն ընտրեցաք։

այլ անդրանիկ, յայտ առնելով ո՛չ գոլ զնա ստացուած, այլ ծնունդ Հօր։ Քանզի օտար է առել յաղագս աստուածութեան Նորա՝ ստացական, զի ամենայն ինչ ստացեալ ի Հօրէ ի ձեռն Որդւոյ։

Իսկ Որդի միայն ի Հօրէ մշտնջենաւորապէս ծնեալ։ Ուստի և անդրանիկ է ամենայն արարածոց Աստուածն Բան, անփոփոխելի յանփոփոխելւոյ. իսկ զոր յաղագս մերն զգեցաւ մարմին, գոյ ստացուած։ Վասն որոյ և ասէ Երեմիա, ըստ Եւթանասուն Թարգմանչացն աւանդութեան. «Տէր ստացաւ ի տնկումն փրկութեան Նորոյ, որով փրկութեամբն վարեցին մարդիկ»[1]։ Իսկ ըստ Ակիղասայ՝ յաղագս Նորին բանի կայ այսպէս. «Տէր ստացաւ Նոր յիգի»։ Իսկ արդ՝ ստանալն ի տնկումն փրկութեան՝ Նոր և ոչ Հին՝ Քրիստոս է, որ ըստ փրկչին իմացեալն մարդ, եւ թարգմանի Քրիստոս՝ մերձ փրկութիւն և մերձ փըրկիչ. և գոյ ի փրկչէ փրկութիւն, զոր օրինակ ի լուսոյ լուսաւորութիւն։ Իսկ արդ փրկութիւն ստացեալ Նոր՝ որպէս ասացն Երեմիաս՝ և զոր ասէն Ակիղաս՝ Նոր յիգի, այս է ի Մարիամու։ Վասն զի ո՛չ եղեւ ստացեալ Նոր յիգի, բայց այն որ ի Մարիամայ կուսէն ծնեալ առանց զուգական ամուսնութեան, տէրունեան մարմինն՝ սակս որոյ է յԱռակսն գրեալն. «Տէր ստացաւ զիս սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր»[2]. ոչ ասաց, թէ նախ քան զգործսն ստացաւ զիս, զի մի՛ ոք յաստուածութիւն Բանին առցէ զասացեալն։

Արդ՝ երկաքանչիւր ոք որ յաղագս ստացուածոցս[3] բանք՝ մարմնապէս ի սկիզբն գրեալ է։ Քանզի սկիզբն ճանապարհաց ստացաւ տէրունեանն մարդ. և յայտնեաց առ ի փրկութիւն

1. Երեմ. ԼԱ. 22։
2. Առակ. Ը. 22.
3. Ցօր. ի վերայ երկրորդ ցոյին եդեալ էր յ։

մեզ, որով ունիմք զմուտս առ Հայր։ Վասն զի նա է ճանապարհն՝ որ ածէ ի վեր առ Հայր. և ճանապարհն մարմնական տեսակ է՝ որ է տէրունեանն մարդ։

Արդ՝ զամենայն ստացաւ Աստուծոյ Բանն. ո՛չ գոլով ստացուած՝ այդ ծնունդ։ Վասն զի և ոչ ստացաւ ինչ ի ստացուածոցս հաւասար՝ կամ նման ինքեան։ Քանզի Հօր պատշաճի ծնանել, և արուեստաւորի ստանալ։ Իսկ արարած, ապա և ստացուած է, զոր վասն մերն զգեցաւ մարմին Տէր։ «Քանզի եղեւ մեզ, որպէս ասաց Պաւղոս, իմաստութիւն յԱստուծոյ, արդարութիւն և սրբութիւն և փրկութիւն»[1]։ Որ և յառաջ քան զմեզ և զբոլոր ստացուածս՝ իմաստութիւն Հօր՝ էր Բանն և է. և Հոգին սուրբ է միշտ ի ձեռն առաքչին Հօր և բերողի Որդւոյ, որով ելից զամենայն։ Իսկ արդ Հայր՝ յինքենէ ունելով զգոլն՝ ծնաւ զՈրդին, որպէս ասացաք, այդ ո՛չ ստացաւ. որպէս զգետ յաղբերէ, որպէս շառաւիղ յարմատոյ, և որպէս ճառագայթ ի լուսոյ. զոր գիտէ բնութիւնն միշտնջենաւոր և անբաժանելի։ Որով Հօր փառք և զօրութիւն և մեծութիւն, հանդերձ ամենասուրբն Հոգւով, յառաջ քան զամենայն յաւիտեանս, և այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1. Ա. Կորնթ. Ա. 30։

# Ը

## ԹՈՒՂԹ

## ԱՌ ՓԻՂԱԴԵՂՓՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

*Հանդիպեցաք՝ որոց առ ի քումմէ ստուածապաշտութենէդ՝ գրելոցս. ուստի և զքո զառ ի Քրիստոս զբարեպաշտութիւնդ՝ ստուգապէս ընկալաք. և զԱստուած՝ նախ և առաջին փառաւորեցաք, որ ետ քեզ զայդպիսի շնորհս։ Որպէս զի և զխորհուրդս ունել ուղիղ, և ո՛չ լինել անգէտ ըստ զօրութեան հնարագիտութեանց սատանայի։ Իսկ ընդ հերձուածողայն զարմացաք չարագործ մտածութիւնս, տեսանելով՝ թէ ո՛րպէս յայդչափ խորխորատս ամպարշտութեանց անկան. մինչ զի զգայականս անգամ ո՛չ ողջ ունել, այլ ամենայն ուստեք ապականեալ զմիտսն պահել։ Եւ արդ, այս ձեռնարկութիւն՝ գոյ նախ և առաջին սատանայական ազդման, իսկ զնմանութիւն ունի զանօրէնն Հրէից։ Քանզի զոր օրինակ և նոքա ամենայն ուստեք յանդիմանեալք՝ պատճառս հակառակ ինքեանց իմանային, զի միայն զՏէրն ուրասցին, և զմարգարէայեալսն հակառակ ի վերայ ինքեանց կորզեցին. ըստ նմին օրինակի և սոցա, գիտելով ամենայն ուստեք զանձինս իւրեանց յանդիմանեալ, ամենայն ուստեք և ամենեցուն զազրալի եղեալս հերձուածոցն իւրեանց, յուզակք*

չարեաց լինելն. զի մի՛ երբեք դադարեալք, որ առ ճշմարտութիւնն է պատերազմ, ստուգապէս քրիստոսամարտք մնասցեն: վասն զի ուստի՞ Նոցա վերածաղկեաց և այս չար. զիա՞րդ բնաւ իշխեցին զնոր զայս և զչարաչար հայհոյութիւնս համբաւել հակառակ Փրկչին: Այդ որպէս է Նմանեալ չարութեանն ամպարիշտ և անհանդէս յաղագս հաւատոյն: վասն զի Նախկի յառաջագոյն ուրացեալք զաստուածութիւն միածնի Որդւոյն Աստուծոյ, կեղծաւորին դէթ զմարմնաւոր գալուստն Նորա գիտել. իսկ այժմ առ փոքր փոքր ստորիջեալք արտաքսեցին և յայսոցիկ իւրեանց մտաց, և ամենայն ուստեք անհաւատք եղեն, որպէս զի և ո՛չ զԱստուած Նոցա ճանաչել, և ոչ զի մարդ եղեւ հաւատալ. զի թէ հաւատային՝ ո՛չ ապա այնպէս հաւատային, զոր օրինակ գրեաց քո աստուածպաշտութիւնդ զհակառակս Նոցա:

Իսկ դու, ո՛վ սիրելի և ճշմարտապէս ցանկալի, զվայելուչն եկեղեցական աւանդութեան՝ և որ ի Քրիստոսն բարեպաշտութեան՝ արարեր, յանդիմանեալ, սաստեալ և խրատեալ զայդպիսիսդ:

Այդ քանզի և լցեալք բարկութեամբ ի հօրէն իւրեանց սատանայէ, ո՛չ ծանեան և ո՛չ ի միտ առին զգրեալսն, այդ տակաւին ի խաւարի շրջին, ուսցին առ ի քումմէ աստուածերկիւղածութենէդ, իբր զի այնպիսի Նոցա չարագործ մտածութիւն՝ Վաղենտիանոսի՝ և Մարկիոնի և Մանիքեցւոցն գոն. զորոց ոմք փոխանակ ճշմարտութեանն կարծիս վարկան, և բաժանելով զանբաժանելին՝ ուրացան եթէ «Բանն մարմին եղեւ և բնակեաց ի մեզ»[2]: Է՞ր վասն ապա զնոյնս խորհելով՝ ո՛չ և անուանց Նոցա լինին ժառանգորդք: Քանզի ի դէպ է զորոց չարափառութիւնն ունին, զնոյն ունել և զանուանսն. որպէս զի այնուհետեւ՝

1. Յօբ. [illegible]   2. Յովհ. Ա. 14:

Վաղենտիանոսք և Մարկիոնացիք և Մանիքեցիք կոչեսցին։ Զի թերեւս այնպէս սակս անուանցն ժահահոտութեանց պատկառեսցեն իմանալ կարասցեն, թէ յորպիսի՞ խորխորատս ամպարշտութեան անկան։ Եւ պարտ էր Նոցա և պատասխանի իսկ ո՛չ առնել, ըստ առաքելականն խրատու՝ որ ասէ. «Ցառնէ հերձուածողէ՝ յետ միանգամ և երկիցս խրատելոյ՝ հրաժարեսջիր. գիտասջիր, զի թիւրեալ է այնպիսին, և մեղանչէ անձամբ զանձն դատապարտեալ»[1]։ Եւ մանաւանդ զի և մարգարէն յաղագս այդպիսեացդ ասէ. «Անզգամն անզգամս խօսի և անզգամս իմանայ»[2]։ Եւ քանզի ըստ առաջին[3] ուրեանց իբրեւ զառիւծս շուրջ գան եւ խնդրեն առ ի կլանել զոք ողջախոհաց. վասն որոյ հարկ եղեւ գրել քումդ երկիւղածութեան պատասխանիս, փոխանակ գրոյն. որպէս զի զարձեալ ի ձեռն քոյինդ իմաստութեան ուսեալ եղբարց, առաւելագոյնս ըստգտցեն զընդունայնաբանութիւնս Նոցա։

Ո՛չ ստացուածոյ երկրպագեմք, որ քաւ և մի՛ լիցի. քանզի հեթանոսական և արիոսեան է այնպիսի մոլորութիւն. այլ զՏէրն արարածոց մարմնացեալ Աստուծոյ Բանին երկրպագեմք։ Զի թէպէտ և մարմինս այս՝ ըստ ինքեան միայն ինչ է ստացուած, այլ Աստուծոյ մարմին եղեւ։ Եւ ոչ զայսպիսի մարմին յատուկ որոշեալ առ ի Բանէն երկրպագեմք։ Եւ ո՛չ դարձեալ Բանին երկրպագեալք՝ հեռացուցանեմք զնա ի մարմնոյն. այլ գիտակ գոլով՝ որպէս կանխաւն ասացի, թէ Բանն մարմին եղեւ, զսա և ի մարմնի ելով՝ Աստուած ճանաչեմք։ Վասն զի ո՞վ ոք իսկ այնպէս անզգամ, իբր զի ասել ցՏէր, ի բա՛ց լեր ի մարմնոյդ, զի քեզ երկրպագեցից։ կամ ո՞վ այնպէս ամպարիշտ,

1. Տիտ. Գ. 10։
2. Ես. ԼԲ. 6։
3. Իմն. ըստ առաջնորդին իւրեանց. որպէս ունի յոյնն։

որպէս զի ընդ անզգամ Հրէայսն՝ սակս մարմնոյն տեսացեալ զնա, «Հի՞մ դու մարդ գոլով՝ առնես զքեզ ինքն Աստուած»[1]։ Այլ ո՛չ այսպէս և բորոտն. քանզի երկրպագեաց Տեառն ի մարմնին ելով, և ծանեաւ՝ թէ Աստուած է, ասելով. «Տէր, եթէ կամիս՝ կարող ես զիս սրբել»[2]։ Եւ ո՛չ սակս մարմնոյն՝ կարծեաց գոլ ստացուած և զԱստուծոյ Բանն. և ո՛չ դարձեալ յաղագս գոլոյ Բանին բոլորակերտող ամենայն արարածոց՝ անարգեաց զմարմինն՝ զոր զգեցեալ ունէր. այլ որպէս ի ստացականի տաճարի՝ ստացողին բոլորից երկրպագեաց, և մաքրեցաւ։ Այսպէս և տեռատես կնոջն հաւատացեալ՝ և միայն մերձեցեալ ի հանդերձս նորա՝ բժշկեցաւ։ Եւ դարձեալ ծովն փրփրելով՝ իբրեւ լուաւ մարմնացելոյ Բանին, դադարեաց ի ծփանացն։ Նոյնգունակ և որ ի ծննդենէն կոյր, թքով մարմնոյն բժշկեցաւ ի Բանէն. և որ եւս վսեմական և հրաշափառն է, թերեւս այս և զամպարիշտսն գայթագղեցոյց, և ի նմին իսկ ի խաչին կալով Տեառնն՝ քանզի նորա էր մարմինն, և ի նմին էր Բանն. ուստի և արեգակն խաւարեցաւ, երկիր դողաց, վէմք պատառեցան, վարագոյր տաճարին ցելաւ, և բազում մարմինք յառաջնոց ննջեցելոցն յարեան։

Այս եղեւ, և ո՛չ ոք որպէս արիանոսքն համարեցան՝ եթէ պարտ է մարմնացելոյ Բանին հաւանել. այլ և մարդ զնա տեսանելով՝ ծանեան զնա բոլորակերտող ինքեանց, և մարդկայնոյն ձայնի լսելով, ոչ սակս մարդկութեանն ասացին՝ թէ Բանն ստացուած է, այլ մանաւանդ և դողային, և ոչինչ նուազ ծանեան թէ ի տաճարէ սրբոյ իւրմէ բարբառէր։ Իսկ ապա զիա՞րդ ամպարիշտքն ոչ երկնչին. կամ՝ եթէ՝ «Զի ո՛չ ընտրեցին զԱստուած ունել ի գիտութեան, մատնեաց զնոսա

1. Յովհ. Ժ. 33։ 2. Մատթ. Ը. 2։

Աստուած ի միտս անարգութեան, գործել զանարժանս»[1]. քանզի ո՛չ ստացուածոյ ստացեալքս երկրպագեն, եւ ո՛չ դարձեալ յաղագս մարմնոյն հրաժարեն և զՏէրն ի մարմնի երկրպագել. այլ զինքեանց արարիչն տեսին ի մարմնին, և յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեցաւ, երկնաւորաց և երկրաւորաց, և սանդարամետականաց, և ամենայն լեզու խոստովան լինի, թէ Տէր է Յիսուս Քրիստոս ի փառս Աստուծոյ Հօր. ամէն։

Վասն զի ոչ եթէ անարգութիւն էր Բանին՝ մարմինն, քա՛ւ լիցի, այլ մանաւանդ ինքն մարմինն փառաւորեցաւ ի Բանէն։ Եւ ո՛չ քանզի զկերպարանս ծառայի էառ՝ որ դոյ կերպարան Աստուծոյ Որդի՝ պակասեաց ինչ յաստուածութենէն, այլ մանաւանդ ինքն իսկ եղեւ ազատիչ ամենայն մարմնոյ և ամենայն արարածոց։ Եւ եթէ Աստուած առաքեաց զՈրդին իւր եղեալ ի կնոջէ, ոչ ապա ամօթ մեզ ի վերայ ածեն իրքն՝ այլ մանաւանդ առաւել փառս և մեծ շնորհս։ Վասն զի եղեւ մարդ՝ զի զմեզ յինքեան աստուածացուսցէ. և եղեւ ի կնոջէ և ծնեաւ ի կուսէ, զի զմեր զմոլորեալ զծնունդն՝ առ ինքն վերստին դարձուսցէ, և եղիցուք այնուհետեւ ազգ սուրբ՝ հաղորդեալք աստուածայնոյն բնութեան. որպէս ասաց Պետրոս. «Եւ թէ որ անհնարին էր օրինացն՝ որով տկարանայրն մարմնով, Աստուած զՈրդին իւր առաքեաց ի նմանութիւն մարմնոյ մեղաց և վասն մեղաց, և դատապարտեաց զմեղս ի մարմնի անդ»[2]։

Իսկ արդ այսուհետեւ ընկալեալն առ ի Բանէն մարմինն՝ յազատութիւն ամենայն մարդկան և յարութիւն մեռելոց, և ի փրկութիւն մեղաց բոլորից. զիա՞րդ ապա ոմք զսա անարգեն, և կամ ոմք վասն սորա չարախօսեն զՈրդւոյ Աստուծոյ՝

1. Հռովմ. Ա. 28։    2. Հռովմ. Ը. 3։

որպէս զեղականէ և զստացականէ, ո՛չ երեւեսյլին ապերախաք և ամենայնից ատելութեանց արժանիք։ Քանզի ո՛չ միայն գոչեն Աստուծոյ՝ ասելով. Մի՛ առաքեր զՈրդիդ քո միածին մարմնով, որպէս զի մի՛ փրկեսցես զմեզ ի մահուանէ և ի մեղաց։ Ո՛չ կամիմք զնա ի մարմնի լինել, զի մի՛ զյաղագս մեր ընկալցի զմահ։ Ո՛չ կամիմք զԲանն մարմին լինել, զի մի՛ նովաւ և միջնորդ մեզ եղիցի վերնաճանապարհորդութեանն, և զառ ի յերկինս բնակութեան օթեւանացն. քակեսցին դրունք երկնից, զի մի՛ ի ձեռն վարագուրի մարմնոյն իւրոյ՝ զերկնից ճանապարհն մեզ նորոգեսցէ քո Բանդ։

Արդ՝ այս նոցա են բանք, համապաղ յանդըգնութեամբք յառաջ բերեալ, ինքեանց չարահնարն խորհրդովք։ Քանզի որք ո՛չ կամին ի մարմնի գոլով երկրպագել Բանին, ապերախտք լինին յաղագս մարմնանալոյ նորա։ Եւ ոյք բաժանեն ըզԲանն ի մարմնոյն, և ո՛չ մի փրկութիւն առ ի մեղացն լինել և ո՛չ լուծումն մահու կարծեն։ Ո՞ւր իսկ բնաւ ամպարիշտքն յատուկ առանձին գտանեն զմարմինն՝ զոր էառ Փրկիչն, իբր զի և ասել իշխեսցեն. ո՛չ երկրպագեմք մեք Տեառնն՝ համդերձ մարմնովն, այլ զատեալ որոշեմք զմարմինն և միայն զնա պաշտեմք։ Իսկ արդ՝ երանելին Ստեփանոս և յերկինս ետես զՅիսուս կացեալ ընդ աջմէ Հօր. և հրեշտակացն երեւեալ՝ ասացին ցաշակերտսն. «Այնպէս եկեսցէ՝ զոր օրինակ տեսէք զնա երթեալ յերկինս»[1]։ Եւ ինքն Տէրն գոչելով ասաց առ Հայր. «կամիմ, զի ուր եմ, և նոքա յամենայն ժամ ընդ իս իցեն»[2]։ Եւ եթէ բնաւ անբաժանելի է մարմինն ի Բանէն, զիա՞րդ ո՛չ լինիցի հարկ սոցա՝ կամ ի բաց դնել զմոլորութիւնն, և երկըրպագել այնուհետեւ Հօր՝ յանուն Յիսուսի Քրիս-

1. Գործք Առ. Ա. 11։ 2. Յովհ. ԺԷ. 24։

տոսի Ցեառն մերոյ, և կամ ո՛չ երկրպագելով և ո՛չ պաշտելով ի մարմնի եղելոյ Բանին, ամենայն ուստեք արտաքս ընկենուլ, և ո՛չ եւս քրիստոնեայս, այլ կամ ընդ հերձուածողս, և կամ ընդ այժմու Հրէայսդ համարել։

Արդ սոցա այսպէս՝ և որպէս յառաջագոյն աստացաք՝ այսպիսի՛ է յանդգնութիւն։ Իսկ մեր հաւատս է ուղիղ, ի վարդապետութենէ Առաքելոցն յառաջ խաղացեալ, և աւանդութեամբք հարցն հաստատեալ ի Նոր և ի հին կտակարանաց։ Վասն որոյ մարգարէիցն ասելով. «Առաքեա զԲան քո և զճշմարտութիւն»[1]. «Եւ ահա կոյս յղասցի և ծնցի Որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ՝ որ թարգմանի՝ ընդ մեզ Աստուած»[2]։ Եւ զի՞նչ իցէ այս՝ եթէ ոչ Աստուած ի մարմնի լինել նշանակէ։ Եւ առաքելական աւանդութիւնքն ուսուցանեն. երանելւոյն Պետրոսի ասելով· «Քրիստոսի չարչարելն վասն մեր մարմնով»[3]. Իսկ Պաւղոսի գրելով. «Ակն ունել երանելի յուսոյն և յայտնութեան՝ փառաց մեծին Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ետ զինքն վասն մեր, զի փրկեսցէ զմեզ յամենայն ամպարշտութենէ, և սրբեսցէ իւր ժողովուրդ սեպհական՝ նախանձաւոր գործոց բարեաց»[4]։ Իսկ արդ՝ ո՛րպէս ետ զանձն վասն մեր՝ եթէ ոչ էր մարմին զգեցեալ. քանզի զայս մատուցեալ՝ զինքն վասն մեր ետ, զի նովաւ զմահ ընկալեալ խափանեսցէ զայն՝ որ զիշխանութիւն ունէր զմահու, այս է՝ զսատանայ։

Վասն որոյ գոհանամ յամենայն ժամ, և ո՛չ ուրանամ զեղեալ նովաւ շնորհսն ի մեզ։ Զի մարմնաւոր գալուստ փրկչին փրկութիւն ի մահուանէ, և ազատութիւն ամենայնս եղեւ արարածոց։ Ուստի

1. Սղմ. ԽԲ. 3։
2. Ես. Է. 14. — Մատթ. Ա. 23։
3. Ա. Պետր. Դ. 1։
4. Տիտ. Բ. 13։

սիրելի և ցանկալի, որ ոք սիրիցէ զՏէր, ի յիշատակ եկեսցէ այսոցիկ. իսկ որոց ըստ նմանութեան Յուդայի՝ Թողեալ զՏէր՝ զի ընդ Կայիափայ լիցին զհետ, զի դարձեալ խրատեալք այսոքիւք զղջասցին, եթէ արդեւք պատկառեսցեն, և ծանիցեն, եթէ Տեառն ի մարմնի երկրպագելով՝ ոչ զարարածս պաշտեմք՝ այլ զարարիչն զգենլով զըստացական մարմին, որպէս յառաջագոյնն ասացաք։

Կամեցաք զքո երկիւղածութիւնդ հարցանել զայս ի Նոցանէն։ Յորժամ որդիքն Իսրայելի հրամայեալ լինէին ելանել յԵրուսաղէմ, և երկիրպագանել ի տաճարին Տեառն՝ ուր գոյր տապանակն, և ի վերայ նորա Քրովբէքն փառաց հովանի ունելով ի վերայ քաւութեանն, բարւո՞ք առնէին՝ թէ զընդդէմն։ Իսկ արդ՝ եթէ չարաչար առնէին, զիա՞րդ որք օրինօքս այսոքիւք ծուլացեալք՝ ընդ պատժովք պատուհասից ոչ լինիցին. զիա՞րդ ոչ ունէին և կորնչել իսկ։ Քանզի գրեալ է. «Եթէ ոք անարգեսցէ և ոչ ելցէ՝ սատակեսցի ի ժողովրդենէ իւրմէ»։ Իսկ ապա եթէ բարւոք առնէին, և այնոքիւք հաճոյք Աստուծոյ լինէին, որպէս և ոչ են արժանի կորստեան. յիրաւի պիղծք և ամենայն հերձուածոց վերջինք Արիանոսք. զի զհին ժողովուրդն ընկալեալ յաղագս որ առ տաճարն պատուոյ, ոչ կամին զՏէր ի մարմնին՝ որպէս ի տաճարի եղեալ՝ երկրպագել։ Եւ մանաւանդ զի հինն տաճար յոսկւոյ և ի քարանց կազմեալ որպէս զստուեր, իսկ ի գալ ճշմարտութեանն՝ դադարեաց այնուհետեւ օրինակն, և ոչ մնաց՝ ըստ տէրունեանն ձայնի՝ քար ի քարի վերայ որ ոչ լուծաւ։

Եւ ոչ զտաճարն տեսանելով առ ի քարանց կարծեցին և որ ի տաճարէն խօսէր Տէրն՝ գոլ ստացուած։ Եւ ոչ անարգելով զտաճարն հեռի ուրեք գնացեալք երկրպագէին, այլ ի նոյն և ի

նա իսկ գալով ըստ օրինացն պաշտօնատար լինէին Աստուծոյ՝ որ խօսէր։ իսկ արդ այսոցիկ այսպէս եղելոց, զիա՞րդ ոչ է մարմինն Տեառն ամենասուրբ ճշմարտապէս։ Քանզի ի հրեշտակապետէն Գաբրիելէ աւետարանեցաւ, ի Հոգւոյն սրբոյ ստեղծաւ ի կուսին, և Բանին եղեւ զգեստ և տաճար և գործի անբաժանելի։

Քանզի զձեռն մարմնաւոր ձգեալ Բանին՝ յարոյց զջերմացեալն, և զձայն արձակեալ՝ յարոյց զՂազարոս ի մեռելոց։ Եւ դարձեալ տարածմամբ ձեռացն ի վերայ խաչին, զիշխանն իշխանութեան օդոյս՝ որ այժմ ընդմտեալ է յորդիսն ապստամբութեան՝ արտաքս ընկէց, և զճանապարհն մեզ զառ ի յերկինս մաքուր արար։

Իսկ արդ՝ որ անարգէ զտաճարն, անարգէ և որ ի տաճարին՝ զՏէրն. և որ բաժանէ զԲանն ի մարմնոյն, ուրանայ և զշնորհսն տուեալ մեզ նովաւ։ Եւ ամպարիշտ և մոլի Արիանոսքն, մի՛ վասն զի մարմինն ստացական է՝ կարծեսցեն և զԲանն ստացական գոլ. և մի՛ դարձեալ՝ յաղագս ո՛չ ելոյ Բանին ստացուած՝ արհամարհեսցեն զմարմին նորա։ Վասն զի և զարմանալ իսկ գոյ ընդ չարագործ նոցա խորամանկութիւնս։ Զի շուրջ գան ընդ ամենայն և յուզեն և պատճառս գտանեն, զի միայն զստացօղն ընդ ստացուածս թուեսցեն։

Այդ լուիցեն, զի թէ ստացուած էր Բանն, ո՛չ ընդունէր ստացական մարմին՝ զի կենդանագործեսցէ. քանզի ո՞ր էր ստացելոյս ի ստացուածէ օգնութիւն, կարօտ եղեալ և նա ինքն փրկութեան. այդ վասն զի ստացօղ գոլով Բանն, ինքն է արարչագործ ստացուածոցս, վասն այսորիկ ի վախճան յաւիտենից զստացականն զգեցաւ ինքն, զի դարձեալ որպէս ստացօղ՝ նորոգեալ՝ վերստին ստանալ մարթասցէ։ Իսկ ստացուած յստացուածէ ոչ երբեք փրկեցաւ, որպէս և ո՛չ յստացուածոյ

ստացեալ են ստայուածքս, և եթէ ոչ Բանն էր ստացող։ Ուստի մի՛ ապա սուտ արասցեն զաստուածեղէն գիրս, և մի՛ դարձեալ գայթագղեցուսցեն զոք առ ի պարզամտաց եղբարց. այլ եթէ կամին դարձեալ ըստգտացեն զինքեանս, և մի՛ պաշտեսցեն զարարածս տակաւին քան զարարիչն բոլորից՝ Աստուած։ իսկ ապա եթէ յամպարշտութեան իւրեանց կամեսցին յարամնալ, ինքեանք միայն յագեսցին այնոքիւք և կրճտեսցեն զատամունս, ըստ հօրն իւրեանց սատանայի։ Քանզի հաւատ կաթողիկէ եկեղեցւոյ ստայօղ գիտէ զԱստուծոյ զԲանն և արարչագործ բոլորից. և գիտեմք՝ զի «իսկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած»[1]. իսկ լինելով Նորա մարդ յաղագս մերոյ փրկութեան՝ երկրպագեմք, ո՛չ որպէս հաւասար ի հաւասարի եղեալ ի մարմնին, այլ որպէս Տէր առնլով զծառայի զկերպարան, և արարիչ և ստացող ի ստացուածի լինելով. զի ինքեամբ զամենայն աշխարհ ազատեալ մատուսցէ առ Աստուած Հայր, արարեալ խաղաղութիւն ամենայն ուրեք ի յերկինս և ի վերայ երկրի։ Քանզի այսպէս և զհայրենի աստուածութիւն Նորա ճանաչեմք. և մարմնաւոր Նորին գալստեանն երկիր պագանեմք. իսկ որք Արիոսի մոլորութեան հետեւեալք՝ կոծեսցին զինքեանս։

Ողջոյն տուր բոլորից որք սիրեն զՏէր մեր Յիսուս Քրիստոս։

1. Յովհ. Ա. 1։



# Թ

## ԸՆԴԴԻՄԱՍԱՑՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

### ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ ՈՒՂՂԱՓԱՌԻ

### ԵՒ

## ԱՐԻՈՍԻ ՀԵՐՁՈՒԱԾՈՂԻ

### ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԱԾՈՒԹԵԱՆ ՈՐԴԻՈՅ[1]

---

### ՈՒՂՂԱՓԱՌՆ ԱՍԷ

ԱՍՏՈՒԾՈՅ խնամակալութեամբն ելեալ գընայի՝ հանդերձ բաղձալի եղբարբքն իմովք՝ առ իմ աճա[2] փափաքելիս և Աստուծոյ ծառայսն՝ հանդարտապէս ճանապարհորդելով, սակս տկարութեան մարմնոյ, հանդերձ նախաճառեալ քրիստոսեանն ծառայիւք: Եհարց ոմն յայնժամ յարանցն եկելոց ընդ մեզ, յաղագս տէրունեանն ձայնին՝ որ ասէ. «Հայր իմ որ առաքեացն զիս՝ մեծ է քան զիս»[3]: Եւ իմ պատասխանի տուեալ առ այն հարցողին, ասեմ. Առ այժմ լռեալ թողցուք զյաղագս այսորիկ, եղբայր սիրելի, զխնդիրն. և եթէ Աստուծոյ կամակցութեամբն դարձցուք ի տուն, արասցուք ստուգապէս քննութիւն գլխոյդ այդորիկ: Եւ իմ զայս ասելով՝ յանկարծակի ի սրտի[4] իմում եղեւ

1. Ճ. ԺԹ. յաւելու՝ վկաբանութեանց:
2. Ճ. ԺԹ. չունի:
3. Յովհ. ԺԴ. 28:
4. Ճ. ԺԹ. ի մէջ:

խորհուրդ, ասելով յիս ինքեան. ո՛չ վայրապար այրն քրիստոսազգեաց Պաւղոս խրատելով զաշակերտն իւր Տիմոթէոս՝ ասէր. «Կրթեա՛ զանձն քո ի բարեպաշտութիւն»[1]. քանզի ճշմարտապէս զանձ է աստուածեղէն, և ամենայն բարեօք լցեալ որ առ Աստուած բարեպաշտութիւն. և ասէի յիս ինքեան, թէ մեծավայելուչ և փառաւորեալ[2] է բարեպաշտութիւն, և զօրաւոր առ ի փրկել զմերձաւորս վայելչութեան իւրոյ։ Եմուտ յիս յայնժամ և Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի առակն՝ սակս նոյն ինքն բարեպաշտութեան, իբր զի երանելի և մեծ է և լցեալ ամենայն պայծառական փարթամութեամբք, իսկ ի մարդիկ՝ նուազապէս գտեալ. բայց եթէ սակաւք ոմանք ի բազմաց՝ հանդիպեցին ճշմարտասէր բարուք, անապական վարուք գեղոյ նորա[3], համայն և ողքա ո՛չ իւրեանց զօրութեամբ առին ընկալան զանեզրական նորա զպատկեր, այլ առ Աստուած սիրոյ ցանկութեամբ ընկալան ի նմանէ պարգեւս. որպէս զի մշտնջենաւոր խնդամտութեամբ գիրկս արկցէ՝ որ հայիցին ի գեղեցիկ նորա պատիւ։

Զոր օրինակ ասաց Տէրն, յաւետարանի՝[4] «Նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ առն՝ ուրախ եղեւ»[5]. և ի վերայ բերէ ասելով. «Վաճառէ զամենայն ինչս իւր և գնէ զագարակն զայն»։ Եւ որպէս ոք եղեալ ի սրտի իմում՝ խօսէր յիս, ասելով. Յառաջագոյն գիտեա[6] ո՛վ մարդ, զի թէպէտ և բազում են քո մեղք, համայն[7] բուռն հա՛ր հզօրապէս՝ որ[8] առ Աստուածն զբարեպաշտութենէ. վասն զի ի

1. Ա. Տիմ. Դ. 7։
2. Ձ. ԺԹ. ջատաւոր։
3. Ձ. ԺԹ. ունի այսպէս՝ հանդիպեցին ճշմարտապէս անապական գեղոյ նորա։
4. Ձ. ԺԹ. յաւելու՝ Էին։
5. Մատթ. ԺԳ. 44։
6. Ձ. ԺԹ. գիտա։
7. Ձ. ԺԹ. ամենայն։
8. Ձ. ԺԹ. չունի։

ձեռն այսորիկ մեղաց թողութիւն յԱստուծոյ բաշխեալ լինի, և մահու յաղթութիւն, և յարքայութեանն երկնից մուծումն խնդրողաց զնա։ Առ այսոքիւք յիշեցի և զայն՝ որ ասէ. «Գիտէ Աստուած զբարեպաշտս փրկել ի փորձութենէ, և զանիրաւս պահել ի տանջանս աւուրն դատաստանի, տանջեալ յաւիտենական հրով»[1]։ Քանզի՝ որ անօրէնն է՝ նա և ամպարիշտ հանդիպի, վասն զի յամպարշտութենէ անօրէնութիւն ծնանի։ Մայր բոլոր չարեաց՝ ամպարշտութիւն է, և դայեակ ամենայն վատթարագունից՝ անօրէնութիւնն հանդիպի։ Երանեալ ապա որ բարեպաշտութեանն է զաւակ, զի նա Քրիստոսի է զաւակ[2]։

Եւ ապա իբրեւ հասաք ի տեղին, ուր դիմեալն երթայաք, հանդիպեալք սիրելեացն՝ ուրախացեալք լինէաք առ հասարակ ի միասին։ Մեք՝ զի արժանի եղեաք սուրբս տեսանել, և նոքա՝ զի զեղբարս ընկալան։ Խօսելով մեր ընդ միմեանս ի բազում ժամս՝ հանդերձ բարեկարգութեամբ և զգուշութեամբ՝ որ ինչ պատշաճ էր բարեպաշտութեան կրօնից, յանկարծակի յարմատոյ քրիստոսամարտն Արիոսի[3], գազան մարդակերպ երեւեալ՝ վազեաց ի մէջ մեր, և փոքր ինչ ունկնդիր եղեալ բարեպաշտութեանն բանի, ո՛չ կարացեալ համբերել, ասաց այսպէս. կա՛մ ուսուցէ՛ք ինձ զաւանդութիւն հաւատոյդ ձերոյ, կամ ուսուցից ես ձեզ զիմն խոստովանութիւն։ Եւ իմ պատասխանի տուեալասեմ ցնա. Մի՛ զամենեսեան յառաջ կոչեր ի խնդիրդ, քանզի մեծամեծք են որք ի տան Աստուծոյ. բայց եթէ կամիս ի մերձաւոր ժամուս ընդ իմում նուաստութեանս միայնոյ զհարցաքննութիւնդ առնել, ես քեզ զայդ հատուցից խնդամտութեամբ։

1. Բ. Պետր. Բ. 9։ Յուդէ։
2. Ճ. ԺԹ. Քրիստոսի խաչեալ
3. Ճ. ԺԹ. Արիոս։

Եւ արդ, յառաջ բեր ի խնդիրս նախ և առաջին զհարցումնդ, միայն զի ճշմարտասիրութեամբ եղիցի, և մի՛ վիճողապէս առ ի յառաջարկեալն ի միմեանց աստուածաշունչ բանս բանակռուեսցուք։

ԱՐԻԱՆՈՍՆ ասաց. ինձ թուի՝ նախ և առաջին սահմանել յերկաքանչիւրոց խնդիրս իմ և քո. զի իւրաքանչիւր ոք ի մէնջ[1] առաջի դնիցէ՝[2] զոր ինչ խորհի յաղագս Աստուծոյ և Քրիստոսի և Հոգւոյն սրբոյ համառօտիւ. որպէս զի ըստ դիտաւորութեան առաքեսցուք զձայնս, և մի՛ ընդունայնս արասցուք զճառս բանիցս։ Իբր զի յայտնի լիցի ուղիղն[3] և նմին հակառակն. քանզի յաղագս հաւատոյ կամիմ պահանջել ի քէն, և մանաւանդ զի լուայ ո՛չ ուղիղ[4] խօսելով ձեր սակս առ ի յԱստուածն հաւատոյ և բարեպաշտութեան։

ԱԹԱՆԱՍ ասաց. Աստուածավայելչապէս ամենայն ինչ քեզ պատրաստ գտցի. և ես զոր ինչ խորհիմ՝ ճառեցից համառօտիւ։ Հաւատամ ի մի Աստուած Հայր ամենակալ՝ միշտ ելով Աստուած Հայր։ Ի Բանն Աստուած միածին Որդի Աստուծոյ. զի գոյակից է Հօր իւրում. և զի յէութենէ Աստուծոյ Հօր է Որդի[5], և զի հաւասար է Որդի Հօր իւրոյ[6]։ Եւ զի համապատիւ Որդի Աստուծոյ Հօր իւրում՝ հանդիպի։ Եւ զի ըստ ամենայնի զզօրութիւնն Աստուծոյ և զաստուածութիւնն ունի Որդին Աստուծոյ. և զի ճշմարտապէս է Որդի Աստուծոյ, և զի ընդ Հօր իւրում ամենայն ուրեք մերձ է աստուածութեամբն. և զի զամենայն բովանդակէ ինքեան գոյութեամբ. և զի ո՛չ յումեքէ բովանդակի Որդին Աստուծոյ որպէս զԱստուած Հայր իւր։ Եւ ի Հոգին սուրբ. զի հայ-

1. Ճ. ԺԹ. չունի՝ ի մէնջ։
2. Ճ. ԺԹ. դիցէ։
3. Ճ. ԺԹ. յինքեան ուղղութեանն։
4. Ճ. ԺԹ. ուղղակի.
5. Ճ. ԺԹ. Հօր իւրում։
6. Ճ. ԺԹ. չունի՝ և զի հաւասար է Որդի Հօր իւրոյ։

րական էութեանն է, և մշտնջենաւորակից հան-դիպի Հօր և Որդւոյ ամենասուրբ Հոգին, և ո՛չ է բաժանեալ աստուածութեամբն իւրով ի Հօրէ և յՈրդւոյ Հոգին սուրբ[1] յորոյ զԲանն ասեմ՝ ի մարմնի լինել։

ԱՐԻԱՆՈՍ. Հաւատամ և ես ի մի Աստուած մըշ-տընջենաւոր. և յՈրդի Նորա՝ զոր յառաջ քան զյաւիտեանս ստացաւ Աստուած և Որդի արար. և զամենայն ինչ զոր ունի Որդի, ո՛չ ունելով՝ էառ յԱստուծոյ. և զի ոչ է հաւասար Որդին և ո՛չ համապատիւ Հօր, այլ նուազեալ ի փառացն Աստուծոյ և ի զօրութենէ Նորա[2] որպէս զարա-րած։ Եւ ի Հոգին սուրբ՝ որ յՈրդւոյ գոյացեալ է։ Ահա և ես զայս խոստովանիմ։

ԱԹԱՆԱՍ. Այսուհետև ամենայն զգուշութեամբ սկիզբն արա խնդրոյս, քանզի տեսանեմ զքեզ ի մեծամեծ չարիս ըմբռնեալ. թէպէտ և մանաւանդ զքեւ զանց արարեալ՝ ընդ մեղադրութեամբ զմեզ արարեր, որպէս ո՛չ[3] խորհողաց մեր յաղագս Հօր և Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյն։

ԱՐԻԱՆՈՍ. Զի՞րդ ասես զԱստուած միշտ Հայր, որ միայն Աստուած ելով, ստացաւ զՈր-դին կամօք, որպէս և գրեալ է։

ԱԹԱՆԱՍ. Ո՞ւր գրեալ է թէ միայն[4] է Հայր։

ԱՐԻԱՆՈՍ. Ի Պաւղոսէ առաքելոյ. քանզի ա-սէ. «Մեզ մի է Աստուած Հայր՝ յորմէ ամենայն»[5]։

ԱԹԱՆԱՍ. Եւ որ ի[6] կարգին է ընթերցիր զա-ռաքելական ձայնն, որ ասէ. «Եւ ի մի Տէր Յի-սուս Քրիստոս, որով ամենայն»[7]։

ԱՐԻԱՆՈՍ. Տեսանե՞ս, զի սպասաւոր է Որդի

1. Ճ. ԺԹ. ամենասուրբ Հոգին՝ որով աւարտէ և զխմաստ բանիս։
2. Ճ. ԺԹ. նորին։
3. Ճ. ԺԹ. յաւելու՝ աղաւաղէա։
4. Յոր. ի լս. յաւելու Աս-տուած, զոր չունի Ճ. ԺԹ։
5. Ա. Կորնթ. Ը. 6։
6. Ճ. ԺԹ. ըստ։
7. Ա. Կորնթ. Ը. 6։

*և ոչ ինքնագործ, որպէս ինքն սակս ինքեան ա-սաց. « Եթէ ոչ տեսանէ[1] զՀայրն՝ զի առնէ. քանզի զոր՝ Հայր առնէ՝ զնոյն և Որդի գործէ »[2]. միտ դիր թէ որպէս սպասաւոր և ոչ արարչագործ[3] է Որդի:*

ԱԹԱՆԱՍ. *Տե՛ս, մի՛ մարտնչիր առ ճշմարտու-թիւնն. քանզի բան՝ զոր կարծես ունել Պաւղոսի յաղագս Աստուծոյ Հօր, զնոյն և սակս Որդւոյ գտանես ասացեալ ի նմին Առաքելոյ, ասելով. « Եւ նա ետ զոմանս առաքեալս, զոմանս մարգարէս, զոմանս աւետարանիչս, զոմանս հովիւս և վարդա-պետս՝ ի հաստատութիւն սրբոց, ի գործ պաշտա-ման, ի շինած մարմնոյն Քրիստոսի, մինչև հաս-ցուք ամենեքեան ի մի միաբանութիւն հաւատոց գիտութեան Որդւոյն Աստուծոյ, յայր կատարեալ ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի: Զի մի՛ յայսմհետէ իցեմք տղայք խռովեալք և տատա-նեալք յամենայն հողմոց վարդապետութեան, խա-բէութեամբ մարդկան, և խորամանկութեամբ ի խաբէութիւն մոլորութեան. այլ ճշմարտեալք սի-րով՝ աճեցուսցուք ի նա զամենայն, որ է գլուխ Քրիստոս, ուստի ամենայն մարմին յօդեալ և պատ-շաճեալ ամենայն խաղալեօք[4] տարաբերութեան՝ ըստ ազդեցութեան չափով ըստ իւրաքանչիւր մասին »[5], և որ ի կարգին: Տեսանե՞ս, զի ձայնդ՝ որ ի քէն ասացեալ՝ հասարակաց է ճատագով Հօր և Որդւոյ. իսկ դու միակողմանի սակս Հօր միայն ասացեր:*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Բարւոք յիշատակեցեր զբոլոր ըն-թերցուածն Առաքելոյ վասն այսորիկ. այլ ես հաւատարիմ[6] պատիւ վարկանիմ՝ հանդիպել առա-քելականն բանի՝ զնախասացեալն յինէն յառաջա-*

1. Ձ. ձԹ. տեսանիցէ:
2. Յովհ. Ե. 19:
3. Ձ. ձԹ. արարչակից:
4. Ձ. ձԹ. խաղալկաց:
5. Եփես. Դ. 11-16
6. Ձ. ձԹ. վրիպակաւ եդեալ է՝ հաստատարմագին:

դոյն զտէրունական ձայնն՝[1] որ ասէ, ոչ կարել յանձնէ և ոչինչ, եթէ ո՛չ տեսանէ զՀայրն արարող։

ԱԹԱՆԱՍ. Զի՞նչ արար Աստուած ի սկզբանէ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Երկին և երկիր, ծով և զամենայն՝ որ ի նոսա, որպէս և գրեալ է։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա պակասէ այսուհետև ցուցանել ի քէն, եթէ զո՞ր երկինս և երկիր և զծով և որ ի նոսա՝ արար Աստուած յառաջագոյն. և այսպէս Որդւոյ տեսեալ, արար նման Հօր իւրոյ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Անվայելուչ վարկանիմ հանդիպել զասելն առաջին աշխարհ յԱստուծոյ արարչագործիլ. և միւս յՈրդւոյ ո՛չ եղեալ կարելի ցուցանել՝ յայտնի բոլորից գոլով իրացդ, եթէ մի հանդիպի երևելի աշխարհս[2]։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա թէ այդպէս է, յինքենէ արարչագործէ Որդի զբոլորս։

ԱՐԻԱՆՈՍՆ. Աղաչեմ՝ ասա՛, ո՞րպէս յինքենէ. քանզի ո՛չ է՝ որպէս ասես՝ այդ։

ԱԹԱՆԱՍ. Իմաստուն զխորհուրդս իւր ո՞ւր գըտանէ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ցիմաստութեան իւրում։

ԱԹԱՆԱՍ. Իսկ Քրիստոս՝ Աստուծոյ իմաստութիւն և զօրութիւն, ըստ երանելւոյ Առաքելոյն հանդիպի՞. այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Խոստովանեալ է՝ գոլ Քրիստոս Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն։

ԱԹԱՆԱՍ. Եւ իմաստութիւնն մի՛թէ այլուստ ուստեք իմաստնանայ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Քա՛ւ, և մի՛ լիցի։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա յինքենէ՞ ուրեմն զամենայն գործէ[3], որպէս զիմաստուն։

ԱՐԻԱՆՈՍՆ. Այդպէս է[4], ապա Հայր ոչի՞նչ ուրեմն արարչագործեաց։

1. Ձ. ձԹ. չունի՝ յայնն։
2. Ձ. ձԹ. երևելիս աշխարհ։
3. Ձ. ձԹ. արարչագործէ։
4. Ձ. ձԹ. դնէ՝ Թէ այդպէս է։

ԱԹԱՆԱՍ. *Լո՛ւր, և մի՛ յանդգնաբար բարբառիր՝ զոր ո՛չ է արժան ո՛չ ասել, և ո՛չ լսել, որպէս կարող գոլ ումեք՝ չրջել զայսպիսիս։ Բայց համայն[1] ի մերձակայիս տուր պատասխանի առ որ հարցանեմս. զօրաւոր զիա՞րդ ինքնագործէ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Զօրութեամբ իւրով զամենայն առնէ։*

ԱԹԱՆԱՍ. *Եւ Քրիստոս անխզելի[2] ապա զօրութիւն Աստուծոյ է։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Խոստովանեալ է։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա Քրիստոս Աստուծոյ զօրութիւն ելով, զոր օրինակ արարչագործէ զօրութիւնն, այսինքն է Քրիստոս. վայս առնէ և Հայր։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ո՞րպէս զոր գործէ Քրիստոս՝ զայն արարչագործէ և Աստուած։*

ԱԹԱՆԱՍ. *Զօրութիւն ի զօրաւորէ մեկուսի՞ է, այո՞ թէ ո՛չ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Մի՛ լիցի, քանզի ո՞վ ոք երբեք ետես ի մարտի զլմբիշն անձամբ զօրացուցեալ զիւրն առանձնակ[3] զզօրութիւն։ Զի թէ այս[4] էր, երկաքանչիւրոցն թերեւս ընծայեալ լինէին դրուատիքն և պսակք։*

ԱԹԱՆԱՍ. *Ուղիղ ասացեր, իսկ ապա յաղագս մարդոյ, վոր ետուրդ ոչինչ գործել՝ որոշելով զօրութեանն, և ո՛չ դարձեալ մարմնոյն այլազգաբար ազդել ինչ. ուստի ապա և Քրիստոս Աստուծոյ զօրութիւն ելով Հօր, անորոշութեամբ զամենայն զոր ինչ գործէ Հայր՝ զնոյն գործէ և Որդի։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Եղիցի այդպէս, անորոշաբար արարչագործել զամենայն Որդւոյ ընդ Աստուծոյ. համայն մի՛ թէ կարէ՞ր[5] և հաւասար գոլ Աստուծոյ՝*

1. Ձ. ձթ. գնէ՝ առնլայն։
2. Ձ. ձթ. անհզելի։
3. Ձ. ձթ. զիւր առանձնականն։
4. Ձ. ձթ. այսպէս։
5. Ձ. ձթ. կարէ։

*որպէս և դու իսկ լուար փրկչին ասելով, «Հայր իմ որ առաքեացն զիս մեծ է քան զիս*[1]»։

ԱԹԱՆԱՍ. *Հարցից զքեզ*[2]*, և դու տո՛ւր ինձ պատասխանի. փրկիչն իմ մի՞թէ հակառակ իւր բարբառեցաւ*։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Քա՛ւ լիցի. քանզի ամենայն ուրեք համաձայն ինքեան հանդիպի բարբառեալ Որդին Աստուծոյ*։

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ո՞րպէս ապա Տէր ասէ այլուր. «Ես և Հայր իմ մի եմք»*։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Դու Սաբեղ ես*։

ԱԹԱՆԱՍ. *Հի՞մ եմ ես Սաբեղ*։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Վասն զի ասացեր, թէ Որդի և Հայր մի են*[3]։

ԱԹԱՆԱՍ. *Մի՛ ստեր հակառակ զինէն։ Քանզի ո՛չ ասացի, թէ Հայր և Որդի մի են*[4]*, այլ եթէ՝ Տէր ասաց՝ «Ես և Հայր իմ մի եմք»*։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Այդ հերձուած Սաբեղի է*։

ԱԹԱՆԱՍ. *Ապա*[5] *Տէր ուրեմն ասելով «Ես և Հայր իմ մի եմք», Սաբե՞ղ էր. ո՞չ ամենայն քրիստոնեայք*[6] *զՔրիստոս գիտեմք Որդի Աստուծոյ, իսկ դու Սաբեղ զնա և վարդապետ հերձուածո՞յ ասես*[7]։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Մի՛ լիցի զայդ խորհել. քանզի փրկիչն սակս համաձայնութեան ասաց, «Ես և Հայր իմ եմք»*։

ԱԹԱՆԱՍ. *Սակս է՞ր ասաց այսպէս Տէր. զի՞նչ կամելով յանդիման կացուցանել. զհամաձայնութի՞ւնն ըստ քեզ, եթէ զպատուածութիւնն ըստ ուղիղ բանին։ Զի եթէ զհամաձայնութեանն ըստ քեզ, ուրեմն վկայութիւնս ապա կազմեաց հակա-*

1. Յովհ. Ժ. 30։
2. Ձ. ձԹ. ցքեզ։
3. Ձ. ձԹ. Որդի և Հայր մի է։
4. Ձ. ձԹ. է։
5. Ձ. ձԹ. գնէ՝ Իսկ ապա։
6. Ձ. ձԹ. քրիստոնեայք։
7. Ձ. ձԹ. դասես. գուցէ ընթեռնլի այսպէս՝ հերձուածո՞յ ասես։

ռակ Հօր, զի մի՛ ուրացումն նմա լինիցի ի Հօրէ. և եթէ այս այսպէս է, որպէս զանհնարանդելոյ և զոչ միացելոյ[1] ի դաշինս հօր, և եթէ այս[2] է, այնուհետեւ Որդի լինի ամբաստանեալ ըստ քեզ. վասն որոյ ի մի՛տ առ ապա, եթէ ո՛ւր զքեզ ածեն խորհուրդք քո[3]:

ԱՐԻԱՆՈՍՆ. Այդ զի՞նչ կամիս՝ զի ասասցո՞ւք թէ Հայր և Որդի մի են[4]:

ԱԹԱՆԱՍ. Տէր մեր Յիսուս՝ ոչ ասաց, Ես և Հայր իմ մի եմ, այլ եթէ «Մի եմք», զերկաւորութիւնն կատարելապէս յանդիման կացուցեալ, ասելովն թէ՝ «Մի եմք», գոյութեանն[5] նշանակեաց զտեսակ, զոր քո ոչ իմացեալ՝ յանպատշաճն անկար:

ԱՐԻԱՆՈՍՆ. Տէր ո՞չ ասաց, «Հայր իմ որ առաքեացն զիս, մեծ է քան զիս»:

ԱԹԱՆԱՍ. Փրկիչն ո՞չ ասաց, «Ես և Հայր իմ մի եմք». և դարձեալ, «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ»: Ասաց Տէր, և ո՛չ միայն, այլ և Առաքեալն Պաւղոս՝ զհաւասարութիւն Որդւոյ զոր ունէր[6] առ Հայր իւր՝ յայտապատում զեկոյց ասելովն. «Որ ի կերպարանին Աստուծոյ էր, ո՛չ ինչ յափշտակութիւն համարեցաւ[7] զգոլն հաւասար Աստուծոյ»[8]: Տեսանե՞ս ապա՝ զի հաւասար է Որդի Հօր և ոչինչ նուազ:

ԱՐԻԱՆՈՍՆ. Անմիաբանութիւն յոյժ ինձ թուի[9] ի մերձակայ ժամուս գրոց:

ԱԹԱՆԱՍ. Մի՛ լիցի ընդդիմասացութիւն մարդոյ՝ աստուածաշունչ գրոց[10], որպէս թէ ո՛չ միաբանութեամբ[11] զամենայն ճառեալ: Վասն զի որ-

1. Յօր. նմանեցելոյ՝ ուղղեցաք ըստ Ճ. ձԹ.:
2. Ճ. ձԹ. այսպէս:
3. Ճ. ձԹ. խորհէութք քո:
4. Ճ. ձԹ. է:
5. Ճ. ձԹ. նոյ գոյութեանն:
6. Ճ. ձԹ. ունի:
7. Ճ. ձԹ. կարկաւ:
8. Փիլիպ. Բ. 7:
9. Ճ. ձԹ. Էրէւի:
10. Ճ. ձԹ. Մի՛ լիցի մարդոյ ընդդիմասաց լինել աստուածաշունչ գրոց:
11. Ճ. ձԹ. միաբանութեամբ:

պէս զարդարակչիռս[1], այնպէս միաձայն միմեանց բարբառին բոլոր աստուածեղէն[2] գիրք։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ջիա՞րդ են համաձայն. փրկիչն ասաց. «Հայր որ առաքեացն զիս՝ մեծ է քան զիս», և դարձեալ նոյն ինքն է որ ասէ. «Ես և Հայր իմ՝ մի եմք»։ Եւ այլազգ. «Որ ետես զիս՝ ետես զՀայր իմ». որով նշանակէ զանփոփոխ նորա միջանկենաւորութիւն՝ զոր ունի առ Հայր իւր, որպէս և Պաւղոս ասաց՝ հաւասար գոլ Որդի Հօր։

ԱԹԱՆԱՍ. Ո՜վ այր դու, լո՛ւր և ի միտ առ, զի ո՛չ բաժանի գլուխն այն յայլոցն գլխոց, որ ասէ թէ՝ «Հայր իմ մեծ է քան զիս»։

ԱՐԻԱՆՈՍՆ. Եթէ զայս ցուցանես, որ է անկարելի, թերեւս և զիս աբաացես քոյումդ հետեւել խոստովանութեան։

ԱԹԱՆԱՍ. Աստուծոյ Որդին Աստուա՞ծ է, այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Աստուած, ստացական յԱստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Ո՛րպէս կամիս պատասխանի տուր ինձ սակս որոց հարցանեմս։ Աստուծոյ Որդին զամենայն արա՞ր, այո՞ թէ ո՛չ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Կանխաւ հաւատացաւ թէ զամենայն արար՝ որպէս զօրութիւն և իմաստութիւն Աստուծոյ գոլով։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա և զամենայն ուրեմն բովանդակէ զառ ի նմանէ եղեալս՝ զերեւելիս և զաներեւոյթ արարածս Որդին Աստուծոյ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Այդպէս է։

ԱԹԱՆԱՍ. Ամենայն ուրեք ո՞չ է մերձ էութեամբ մեծութեան իւրոյ. զի թէ ասես ոչ եւ մերձ ամենայն ուրեք[3], ապա մեծագոյն զեղականս քան զարարչագործն ասես։

ԱՐԻԱՆՈՍՆ. Մերձ է ամենայն ուրեք։

1. Ձ. ձԹ. [illegible]։ 3. Ձ. ձԹ. [illegible]։
2. Ձ. ձԹ. [illegible]։

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա թէ[1] հանդիպի ամենայն ուրեք Աստուածն Բան, զիա՞րդ ասէ[2], «Հայր՝ որ առաքեացն զիս՝ մեծ է քան զիս». հասո՛ ինձ զբանդ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Տարակուսիմ սակս այսորիկ. վասն որոյ աղաչեմ, տո՛ւր, որո՞վ բանիւ ասաց փրկիչն մեծ քան զինքն զՀայր։*

ԱԹԱՆԱՍ. *Եթէ ո՛չ կանխեալ ասասցես զոր հարցանեմս, ո՛չ ասեմ[3] քեզ զոր կամիսդ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ասա՛ որ ինչ հաճոյ է։*

ԱԹԱՆԱՍ. *Հրեշտակ՞ք[4] են անմարմինք՝ թէ մարդիկ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Մարդիկ ի մարմնի գոն, բայց հրեշտակք ոգիք եղեալ՝ անմարմինք են։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՞յք են որ վաստակին, մարդի՞կ թէ հրեշտակք։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Հրեշտակք անմարմին գոն, և որոց սպասաւորեն՝ աշխատութեանց զփորձ ո՛չ առնուն. իսկ մարդոյ յատուկ է վաստակել, և սակս ծանրութեան մարմնոյն՝ աշխատել։*

ԱԹԱՆԱՍ. *Եւ Տէր զիա՞րդ վաստակեցաւ. քանզի գրեալ է, թէ «Յիսուս վաստակեալ ի ճանապարհին՝ նստէր»[5]։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Պատեալ պաշարեցեր զիս՝ որպէս կամեցար ի տարացուցէդ հրեշտակաց և մարդկան։ Ուստի ո՛չ Աստուածն Բան վաստակեցաւ, այլ զի բացայայտեալ լիցի եթէ մարմինն՝ զոր ո՛չ ունէր յառաջագոյն Բանն և Աստուած՝ զայն էառ, և յաղագս այսորիկ թոյլ ետ մարմնոյն չարչարիլ զինքեանն, զի երեւեսցի՝ թէ մարմին է։*

ԱԹԱՆԱՍ. *Յիշեա՛, զի յառաջագոյն խոստովանեալ եղեւ թէ ամենայն ուրեք մերձ է Բանն և[6] Աստուած։*

1. Ճ. ԺԹ. յաւելու՝ Ձեր։
2. Ճ. ԺԹ. ասէ։
3. Ճ. ԺԹ. տացից։
4. ՃՃ. ԺԹ. ամենուրեք գրէ՝
5. Յովհ. Դ. 6։ [Հերգեան։
6. Ճ. ԺԹ. չունի և։

ԱՐԻԱՆՈՍ. *Անսխալ։*

ԱԹԱՆԱՍ. *Արդ, եթէ ամենայն ուրեք մերձ է, ո՞յր սակս ասաց, «Հայր որ առաքեացն զիս՝ մեծ է քան զիս»։*

ԱՐԻԱՆՈՍ. *Աղաչեմ, մի՛ դանդաղիր առ ի մերկացուցանել զպատրուակ գրոյն իսկ և իսկ, քանզի յոյժ տարակուսիմ։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՞վ որ վաստակէրն, մարդն՝ թէ Աստուածն Բան։*

ԱՐԻԱՆՈՍ. *Մարդն։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա քո է այսուհետև իմանալ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Հասի ի վերայ մտացդ քոց բանիւս այսու, եթէ Աստուծոյ Բանին ամենայն ուրեք ելով, յայտ է թէ սակս մարմնոյն ասաց, «Հայր՝ որ առաքեացն զիս՝ մեծ է քան զիս», և զճանապարհորդելն և զվաստակելն, և զտեղւոյ ի տեղի փոփոխելն[1]. ճշմարտապէս ուղիղ է այս։*

ԱԹԱՆԱՍ. *Աստուստ ի միտ առ ինձ զբանն՝ զոր ասացեր, եթէ Աստուածն Բան ստացեալ եղեւ։ Ուստի՞ առեալ զսկիզբն՝ իշխես այսպէս աներկիւղաբար բարբառել[2], հակառակ միածնին Աստուածութեան Որդւոյ Նորա։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ես ահա ի գրոց զայս ասեմ. իսկ դու ուստի՞ միածին զՈրդի ասես։*

ԱԹԱՆԱՍ. *Աստուածաշունչ գրոց ուսայ[3], թէ միածին է Որդին Աստուծոյ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՞ր գրեան են՝ միածին զՈրդին առելով։*

ԱԹԱՆԱՍ. *Եկեալ յաջնահոչակն Պաւղոս վկայել ճշմարտութեանն՝ ասաց. «Քանզի աներեւոյթք նորա ի սկզբանէ արարածովքս իմացեալ տեսանին. այս է՝ միածինութիւն և զօրութիւն և աստուածութիւն Նորա. զի մի՛ գտանիցեն ամենեւին տալ*

1. Ձ. ձԹ. փոխելն։
2. Ձ. ձԹ. բարբառելս։
3. Ձ. ձԹ. ի գրոց ասաց։

պատասխանի, քանզի ծանեան զաստուած, և ո՛չ իբրեւ զԱստուած փառաւորեցին կամ գոհացան »[1]։

ԱՐԻԱՆՈՍ. Ցաղագս Հօր ասէ զայս գիր։

ԱԹԱՆԱՍ. Ո՞վ մարդկացաւ, Հա՞յր թէ Որդի։

ԱՐԻԱՆՈՍ. Որդի։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ երանելի առաքեալն Պաւղոս զայնոսիկ մեղադրէ՝ որք ի ձեռն մարմնոյն երեւման՝ զԱստուածն Որդի Աստուծոյ ո՛չ ծանեան, զմշտնջենաւոր աստուածութիւն նորա, որոյ զայս ամենայն զարդարեալ. վասն զի ի մեծագունիցն գեղեցկութեանց՝ որ ի ստացականս արարածս, պարտ էր ըստ կարգի զարարչագործն ծանուցելոց գոհանալ. զի յայտ է թէ բոլորքս ի ձեռն Բանին եղեալ հաստատեցան, և առանց նորա եղեւ և ոչինչ։ Պա՛րտ էր ապա և քեզ առ ի բարեվայելուչ տարերցս ի միասին հաստելոց[2]՝ զմտաւ ածել և զարարչագործ սոցին մի ըստ միոջէ, և զքեզ ինքն հանել, եթէ մշտնջենաւորի Աստուծոյ է գործ աշխարհս. իսկ եղական բնութեան անկարելի գոլ այսքան[3]։

ԱՐԻԱՆՈՍ. Եղիցի մշտնջենաւոր Որդի, այլ և մշտնջենաւորութեամբն ստացեալ ունի զմշտնջենաւորութիւնն։

ԱԹԱՆԱՍ. Զի եթէ մշտնջենաւոր Որդի[4]՝ ո՛չ ստացուած. իսկ եթէ ստացուած՝ ո՛չ մշտնջենաւոր։

ԱՐԻԱՆՈՍ. Մի՛ թէ ես յանձնէ՞ ինչ ասեմ զայդ՝ Որդի ասաց նախ քան զամենայն՝ ստացեալ զինքն յԱստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Այդ խորհուրդ քե՞զ միայն[5] յայտնեցաւ՝ որ յաղագս Որդւոյ, թէ և այլոց։

ԱՐԻԱՆՈՍ. Գրեալ է, ո՛չ ամենեցուն են հաւատք. համայն ոչ ինձ միայնոյ՝ այլ և այլոց բազմաց ծանուցաւ հաւատս այս։

1. Հռովմ. Ա. 20։

2. Ձ. ձթ. անեղծելի գոլ տանել այսքան։

3. Ձ. ձթ. հաստատելոյս։

4. Ձ. ձթ, չունի՝ Որդի։

5. Ձ. ձթ. միայնոյ։

ԱԹԱՆԱՍ. *Ուստի՞ զեկուցաւ ձեզ, յԱստուծո՞յ թէ ի մարդկանէ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *ցԱստուծոյ։*

ԱԹԱՆԱՍ. *Դո՛ւ ինքնալուր եղեր[1], թէ այլ ոք պատմեաց քեզ յաղագս այդորիկ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ոչ մի ոք ինձ պատմեաց, այլ բազումք ի սրբոց հոգւով Աստուծոյ խօսեցան ստացական զոլ զՈրդի։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՞յք իցեն սուրբքն այնոքիկ, ո՞չ կարիցեմք և մեք գիտել։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Գիտակ իսկ ես և դու ինքն, թէ և մարգարէքն և առաքեալք պատմեցին բազում ուստեք ստացական զՈրդի զոլ։*

ԱԹԱՆԱՍ. *Լուայ քեզ ասելով յառաջ քան զսուղ ինչ ժամս, եթէ Որդի ասաց. արդ փոխեցար ի մարգարէսն և յառաքեալսն. համայն ասա՛, ո՞ր մարգարէ պատմեաց զայսպիսի ինչ յաղագս Որդւոյ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Եւ այժմ ասեմ զՈրդին ասել ի ձեռն սրբոց մարգարէիցն և առաքելոց, որպէս և Սողոմոնիւ ասէ. «Տէր ստացաւ զիս սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր»։ Տեսանե՞ս, զի յառաջ քան զամենայն ստացաւ զնա Աստուած, սակս որ նովաւ հանդերձեալ լինել գործոց։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա ստացուածոցս եղականութի՞ւնն եղեւ պատճառք լինելութեան՝ Որդւոյ ըստ քեզ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Այդպէս է։*

ԱԹԱՆԱՍ ասէ. *Ապա պատուականագոյն[2] Աստուծոյ արարեալքս առ ի նմանէն քան զնա։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Զի՞արդ մարթի։*

ԱԹԱՆԱՍ. *Վասն զի թէ նա յաղագս այսորիկ եղեւ և ոչ սոքա ի ձեռն նորա եղեն, ըստ քեզ, անսխալապէս սոքա պատուականագոյնք քան զնա։ Այդ քաւ և մի՛ լիցի մեզ[3] այդպէս խորհել։ Զի*

1. Ձ. ձԹ. եղբ.
2. Ձ. ձԹ. յաւելու՝ ասելն։
3. Ձ. ձԹ. չունի՝ Գզ.

վասն Որդւոյ ամենայն ինչ, որպէս և գրեալ է. «Քանզի վայել իսկ էր, ասէ Առաքեալ, վասն որոյ ամենայն, և որով ամենայն, բազում որդիս ի փառս ածել, և զառաջնորդ փրկութեան նոցա չարչարանօք կատարել»[1]։

ԱՐԻԱՆՈՍՆ. Թողութիւն արա ինձ, սակս ասելոյն թէ յաղագս գործոյստացեաւ Որդի. բայց համայն ստացեալ՝ յառաջ քան զամենայն։

ԱԹԱՆԱՍ. Զի՞նչ ստացեաւ նախ քան զբոլոր արարեալսս։

ԱՐԻԱՆՈՍՆ. Որդի, վասն այսորիկ և անդրանիկ արտադեալ[2] է։

ԱԹԱՆԱՍ. Որ սատանայի երկրպագէ՝ բարւոք եթէ չարաչար գործէ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ամպարշտութիւն և անաստուածութիւն է, և ոչ զհասարակաց զգայարանս ողջ բերէ այնպիսին, զոր ոչ մարդ՝ այլ անմարդ արժան է կոչել։

ԱԹԱՆԱՍ. Աստուած ընդ Յովբայ խօսելով այսպէս ասէ յաղագս սատանայի. «Նա՛ է սկիզբն ստեղծուածոց Տեառն, արարեալ խաղալիկս հրեշտակաց իւրոց»[3]. ուստի և դու ապա առաջնոյ ստեղծուածոյն երկրպագելով՝ սատանայի երկրպագես, որպէս բանդ արտայայտեաց. ապա եթէ իմաստնանայք՝ զկամսն առաջի արկանելով, և ասէք նախ քան զՈրդի արարեալ զսատանայ, երիցագոյն քան զսուրբ Հոգին քարոզէք. զի այդպէս սահմանեցեր՝ զՈրդի Աստուծոյ ստացեալ, իսկ զՀոգին՝ յՈրդւոյ արարեալ ստուգեցեր[4]։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ճշմարտութիւնն զիս պարագրէ և ո՛չ դու. բայց համայն զի պաշարեցեր զիս այսուքիւք, և ես զքեզ պարփակեցից յոքնազան վկայութեամբք ասացողաց ստացուած ել զՈրդի։

1. Եբր. Բ. 10։
2. Յովբ. ԻԴ. 19։
3. Յունարէն ἀναγέγραπται.
4. Ճ. ԺԹ. [illegible]։

ԱԹԱՆԱՍ. Ցառաջ բեր ի գանձից դ գանձեցե֊լոց[1] ի հօրէն քումմէ:

ԱՐԻԱՆՈՍ. իմ հայր է՝ որում երկրպագեմ՝ Աստուած: Համայն դու պատասխանի տուր ինձ սակս ասելոյն, «Տէր ստացաւ զիս», ինքեան Տեառնն խոստովանեալ զինքն՝ ստանիլ յիւրային հօրէն:

ԱԹԱՆԱՍ. Բանդ[2] այլ զօրութիւն հոգեւորական և աստուածեղէն գանձեալ[3] ի ներքս չտեսմարանեալ ունի:

ԱՐԻԱՆՈՍ. Ոչ սակս բանիդ ենթակացուցանեմ զձայնն Սաղոմոնի միայն, քանզի ոչ եմ անմիտ, այլ իմանամ թէ հոգեւորական խորհուրդ տեսանի ի քաջահանճարն իմաստնոց· ուստի և ես ոչ ան֊տեղեակ գոլով գիտութեան, այսպէս ասեմ, վասն զի Տէրն ստացաւ զիս ըստ բանին· իսկ զառ ի նմա զօրութիւնն զոր ունի՝ մեծագոյն տեսանեմ[4]. զոր քո ոչ իմացեալ անգիտութեամբ պաշարեալ մոլորիս:

ԱԹԱՆԱՍ. Ջարի առն յատուկ է մախալ ընդ վեհագոյնս: Դու զոր ինչ խորհիս՝ ճառեա և ինձ աննմախանձ, որպէս թուի քեզ բարւոք երեւել[5]:

ԱՐԻԱՆՈՍ. «ԶՏէրն ստացաւ զիս» առ ի ծնաւ զիս առնում:

ԱԹԱՆԱՍ. Զի եթէ ծնեաւ Որդի՝ յայտ է թէ ոչ ստացեաւ, և եթէ[6] ստացեաւ՝ ոչ ծնեաւ:

ԱՐԻԱՆՈՍ. Դու զզօրութիւնս զայս ոչ իմանաս:

ԱԹԱՆԱՍ. Մի՛ դանդաղիր բարբառել ինձ մին֊չեւ իմացայց, աղաչեմ:

ԱՐԻԱՆՈՍ. Զի մի՛ ախտ յաղագս Աստուծոյ իմացեալ լիցի՝ ասաց, «Ստացաւ զիս Տէր»· ուստի

1. Ձ. ձԹ. գանձուցդ գանձելոց:
2. Ձ. ձԹ. Բանդ այդ:
3. Ձ. ձԹ. գանձ: [Ձ. ձԹ.
4. Յոր. փէտանէն ուղղեցաք ըստ
5. Ձ. ձԹ. երեւեալ:
6. Ձ. ձԹ. ապա թէ:

յաղագս Աստուծոյ ապա ստանալն և ծնանելն՝ նոյն է։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ, եթէ սակս Աստուծոյ ստանալ և ծնանել մի և նոյն է, բոլոր ապա ստացուածք ծնունդ Աստուծոյ գոն. և եթէ այս այսպէս է, և Տէրն ուրեմն եղբայր բոլորից հանդիպի ըստ քեզ, որք ի նմանէն են գոյացեալք. և ո՞ւր ապա միածինն Աստուծոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Միածնութիւնն սակս գերազանցութեան և յոքնահռչակութեան և մեծագունից ինչ իրաց։

ԱԹԱՆԱՍ. Ո՞չ թուի քեզ մեծ գոլ երկին։

ԱՐԻԱՆՈՍ. Եւ մանաւանդ։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա Որդի ուրեմն[1] ըստ քեզ, և երկիր և ծով՝ դստերք ըստ քեզ։

ԱՐԻԱՆՈՍ. Քաւ, մի՛ լիցի արարած Որդի[2]։

ԱԹԱՆԱՍ. Վարկանի՞ս[3] եթէ ամենայն որ ընդ նովիմբ անկեալ է՝ ծննդեանն սահմանաւ՝ միածին գոլ. այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍ. Այդպէս է։

ԱԹԱՆԱՍ. Եւ եթէ արարաւ՝ որպէս զայլ արարածս՝ Որդի, զիա՞րդ է Որդի Աստուծոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Աղաչեմ զքեզ, դու ո՞րպէս իմանաս «զՏէրն ստացաւ զիս»։

ԱԹԱՆԱՍ. Հաւատա՛ ինձ, զի ո՛չ տայի քեզ պատասխանի, այդ վասն լռեցեալ ասացից։ Սողոմոն արդար եղեալ և իմաստութեամբ լցեալ, արժանացաւ ի ձեռն առակաց կանխաւ գուշակել[4] զըստայումն տաճարին. այս է՝ զմարմնոյն Տեառն մերոյ Յիսուսի[5]. որպէս և ինքն Տէր ասաց ցհրեայսն. «Լուծէք զտաճարս զայս, և յերիս աւուրս յարուցից զսա. և զայս ասէր, ասէ, վասն

1. Ձ. ձթ. յաւելու՝ է։
2. Ձ. ձթ. քաւ լիցի. մի՛ լիցի արարած Որդի։
3. Ձ. ձթ. վարկանիմ եւ։
4. Ձ. ձթ. խնկարկապաշտել։
5. Ձ. ձթ. յաւելու՝ Քրիստոսի։

տաճարի մարմնոյ իւրոյ »[1], որպէս ասացն Յովհաննէս․ ուստի և Սողոմոն դարձեալ՝ եւս համարձակագոյնս վասն նորա[2] զայս առեալ ասաց այսպէս․ « Իմաստութիւն շինեաց իւր տուն և կանգնեաց ի նմա սիւնս եւթն․ եղեն զզենլիս իւր և խառնեաց ի խառնելիս զգինի իւր, և պատրաստեաց զսեղան իւր․ և առաքեաց բարձր քարոզութեամբ կոչել ի խառնելիս իւր, և ասէ․ Որ ոք իցէ անզգամ՝ եկեսցէ առ իս․ և ցպակասամիտսն ասէ, եկա՛յք կերայք ի հացէ իմմէ, և արբէք զգինիս իմ՝ զոր խառնեցի ձեզ․ Թողէք զանզգամութիւն, զի ապրեսջիք »[3]։ Արդ, անխրզելի իմաստութիւն է Աստուածն Բան, և յաղագս անքննելի ինքեան և Հօր իւրոյ մարդասիրութեանն, մեծատուն ելով աղքատացաւ, զի մեք նորա աղքատութեամբն մեծասցուք․ և ի կերպարանի[4] Աստուծոյ ելով՝ զկերպարանս ծառայի առ, եւ հաւասար Հօր իւրոյ գոլով որպէս ծառայ ընդ ծառայս շրջեցաւ, եղեալ մարդ կատարեալ, և բիւրապատիկ չարչարեալ և մեռեալ՝ յարեաւ։ Ուստի ապա սա՝ Բանս և Աստուած՝ իմաստութիւն և զօրութիւն ելով հայրական, և անմարմնական գոլով որպէս զԱստուած Հայր իւր, վասն մերոյ փրկութեան շինեաց զմարմինն յարգանդին Մարիամու աստուածածնի, առանց կցորդութեան առն․ և եղեւ՝ որպէս ասացի՝ մարդ, առնելով զինքըն տարացոյց բոլոր առաքինութեան[5]․ զի որք կամիցին հետեւել, որպէս կրթարան ունիցին աստուածեղէն տպաւորութիւն առ ի նմանութիւն, հաղորդք աստուածականն լինելով բնութեան, որպէս ասաց անօթն ընտրութեան, թէ « Նմանողք ինձ եղերուք՝ որպէս և ես Քրիստոսի »[6]։ Եւ յետ

1․ Յովհ․ Բ․ 19-20։
2․ Ձ․ ձԹ․ նոցա։
3․ Սող․ Առակք, Թ․ 1-6։
4․ Ճ․ ձԹ․ կերպարանս։
5․ Ճ․ ձԹ․ առաքինութեանցն։
6․ Ա․ Կորնթ․ ԺԱ․ 1։

չարչարանաց նորա և յարութեանն, առաքեաց իմաստութիւնն և զօրութիւնն Բանն և Աստուած, զԱռաքեալսն առ ամենայն անզգամս և անհանճարս հեթանոսաց՝ ոյք ոչ գիտէին զԱստուած, առաջի դնելով սեղան, այս է՝ զամենատուրքն և զաստուածեղէն, և ի վերայ՝ հաց երկնային և անապական, որ է տուիչ կենաց ամենեցուն՝ որ ճաշակեն ի նմանէ՝ զամենատուրբ մարմին իւր, և գինի՝ զուրախարարն սրտից, որ բերէ զզղջումն ամենայն անձանց ճաշակողաց ի նմանէն, որպէս ի խառնել զարիւն[1] իւր կոչելով զհրաւիրեալ ընտրեալս իւր Առաքելովք իւրովք[2] ի ձեռն աստուածային շնորհի. ուստի որոց զամենայն անզգամութիւնս թողեալ, արքայութեանն երկնից քաղաքացիս ցուցանէ զայնոսիկ որ լսօղք ձայնի նորա լինիցին։

ԱՐԻԱՆՈՍ. վասն զի ի մարմինն հաւաքեցեր «զՏէր ստացաւ զիս», բարւոք է, և ես հաւատալի վկայութիւն քեզ բերեմ, զոր ոչ կարասցես մեկնել. քանզի յայտնի է թէ սակս գոյացման Բանին ասէ, թէ որպէս արարաւ ի Հօրէ։

ԱԹԱՆԱՍ. Եթէ տացես յաստուածաշունչ գրոց զվկայութիւնդ՝ յաղագս որոյ ստուգեսդ, ոչ եղէց ստուգանող. միայն զգուշացի՛ր, գուցէ այժմ դուք գրեցէք ի ձերոց կամաց, և[3] ոչ հաւանիմ առ ի ձէնջ ասացելոց։

ԱՐԻԱՆՈՍ. Մի՛ ամբաստաներ զմէնջ որպէս զոչ երկիւղածից Աստուծոյ, քանզի Առաքելոյ է ձայնն՝ զոր խոստացայ առաջի արկանել։

ԱԹԱՆԱՍ. Ասա՛ ի նմանէն։

ԱՐԻԱՆՈՍ. Երեւելին յառաքեալս Պետրոս՝ վըկայելով սակս առաջիկայս բանի, այսպէս ասաց առ Իսրայէլ. «Ստուգութեամբ գիտասցէ ամենայն տունդ Իսրայէլի, եթէ Տէր և զնա Քրիստոս՝ Աս-

1. Ձ. ձԹ. ունի այսպէս՝ ի խառնելն խառնելոյ զորէնն։ 2. Ձ. ձԹ. չունի իւրովք։ 3. Ձ. ձԹ. յաւելու՝ եւ։

*տուած արար »*[1]*. մի՛թէ մե՞ք պարագրեցաք զձայնս զայս ։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՛չ եթէ դուք պարագրեցէք զայդ՝ այլ թերագրեցէք ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Տեսեալ զքեզ պարփակեալ՝ ի թշնամանս դարձար, մնաւանդ թէ կարող ես՝ առ այս տուր պատասխանի, կամ բռնազբօսեա զճշմարտութիւնն ։*

ԱԹԱՆԱՍ՝ *ասէ. Ընթերցի՛ր ինձ զբոլոր գլուխդ ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *« Ճշմարտիւ գիտասցէ ամենայն տունդ Իսրայելի, եթէ Տէր և Քրիստոս Աստուած արար զնա »*[1]*։*

ԱԹԱՆԱՍ. *Մի՛ ծայրաքաղ առներ զճառս գրոց*[2]*, զի և մարմին՝ թէ որպէս ի սկզբանն ստեղծաւ, և նոյնպէս կայ միայ՝ ազնուակերպ հանդիպի. իսկ աղա թէ պակաս յանդամոցն գտցի, այս է՝ ի ձեռանէ կամ յոտանէ և կամ ի մատանէ, անկերպարան և անհարթադիտակ ցուցանի. սոյն պէս և ըստ*[3] *կարգի գրոցդ ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *«Զայն Յիսուս զոր դուքն խաչեցէք»։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՞վ է խաչեալն. Բա՞նն և Աստուած՝ թէ մարմի՞նն, զոր Բանն Աստուած ընկալաւ՝ առեալ ի Մարիամայ կուսէ ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Դու ո՞չ խոստովանիս զԲանն խաչեցեալ ։*

ԱԹԱՆԱՍ. *Ես զԲանն Աստուած խոստովանիմ մարդ եղեալ և խաչեալ մարդկային մարմնով ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Զի՞նչ է մարմնով, ո՞չ Բանն չարչարեցաւ ։*

ԱԹԱՆԱՍ *ասէ. Դու զիա՛րդ և կամիս՝ խոստովանես յառաջագոյն ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Թէպէտ և դու ո՛չ ասես, համայն ես ասացից. Բանն ընդ նմին բեւեռեցաւ, ընդ նմին չարչարեցաւ ընդ մարմնոյն ։*

1. Գործք Առ. Բ. 36 ։ 
2. Ճ. ԺԹ. Եբրայ։
3. Ճ. ԺԹ. տպգ. և գրչ։

ԱԹԱՆԱՍ. Ի ձեռն օրինակի պարտ է յանդիման կացուցանել զցոյցս խոստացելոցդ, եթէ չարչարե֊ցաւ Բանն և Աստուած։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ասա որ զի՛նչ և կամիս։

ԱԹԱՆԱՍ. Ի խաչի բեւեռեալ տեսե՞ր զոք երբեք։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ինքնատես եղէ, տեսի աՀա և զա֊ւազակս խաչեալս։

ԱԹԱՆԱՍ. Մարմնոյ[1] բեւեռելով անձնն ընդ նմին բեւեռի՞, այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Այո՛։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա ուրեմն՝ մինչ մարմինն ըմ֊բռնեալ կայէ ի բեւեռացն ի վերայ փայտին, և անձն[2] ըմբռնի, ո՛չ կարացեալ մեկնիլ ի մարմնոյն։

ԱՐԻԱՆՈՍՆ. Մեկնի, քանզի ոգի է անձն։

ԱԹԱՆԱՍ. Եթէ մեկնի, յա՛յտ է թէ ոչ ըմբռնի ի վերայ խաչին, այս է՝ ի վերայ փայտին[3] կամ ի բեւեռացն։ Եւ այս այսպէս է, քանզի մարմնոյն ըմբռնելով՝ անձնն ազատութիւն ունի[4], և անըմ֊բռնելի եղեալ՝ թողու զմարմինն և գնայ ի տեղի իւր։

ԱՐԻԱՆՈՍՆ. Այդ այդպէս է։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ եթէ մարդոյ մաՀապարտի ետուր զոչն չարչարիլ՝ ի մերձաւորս ժամու զմար֊մնականն դատապարտութիւն, զի՞արդ զԲանն և զԱստուած ասացեր ընդ մարմնոյն ըմբռնիլ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Տայի ոչն չարչարելն Աստուածն Բանի ընդ մարմնոյն։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա ուրեմն առաքեալն Պետ֊րոս ամբարցոյց զբանն, ո՛չ կամեցեալ զնա ծածկել յանդիմանութենէ. վասն զի կարծեցելոյ[5] որդւոցն իսրայէղի մարդ ել ըստ մեզ զՔրիստոս, նշանակեալ եցոյց ի ձեռն վկայութեանն, եթէ նա է ընտ֊

1. Ձ. ՃԹ. մարմնով։
2. Ձ. ՃԹ. Բանն։
3. Ձ. ՃԹ. յաւելու՝ և։
4. Ձ. ՃԹ. անձն ազատութիւնն առնու։
5. Ձ. ՃԹ. կործեցելոյ։

*ըեալն յԱստուծոյ, և ասէ. զի Թէպէտ և դուք որպէս մարդ զարդարն կախեցէք, համայն մի՛ լինիք տգէտք, քանզի զսա Աստուած Քրիստոս և Տէր արար։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ահա ապա՝ Քրիստոս և Տէր յԱստուծոյ եղեւ։*

ԱԹԱՆԱՍ. *Աստուածն Բան՝ որ յԱստուծոյն Որդի նախ քան զչարչարանսն, Տէ՞ր է, այո՞ թէ ո՞չ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Այո՛, Տէր էր։*

ԱԹԱՆԱՍ. *Պետրոս ասաց՝ զոր Հրեայքն խաչեցին զոլ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՞վ է զոր խաչեցինն զՔրիստոս և զՏէր եղեալն, կամեցայ գիտել. եթէ զի՞նչ է զոր ասեսդ։*

ԱԹԱՆԱՍ. *Աստուած*[1] *և Տէր հանդիպի ամենայնի, մինչ զոլ*[2] *Տէր. վասն զի զառ ի մեզացն Թագաւորեալ զմարդոյ էառ զմարմին. որպէս և գրեալ է, «Բանն մարմին եղեւ». և մարմին ասեմք զկատարեալն մարդ, որպիսիք և մեք հանդիպիմք, ըստ գոլոյ մեզ սոսկ մարդիկ։ Միայն քանզի նա առանց մեղաց եղեւ մարդ, և զսա՝ Քրիստոս և Տէր Աստուած արար, զառ ի սերմանէ Դաւթի զմարդըն, հնազանդեցուցանելով նմա զամենայն իշխանութիւնս և զպետութիւնս և զտէրութիւնս, զերկինս, զհրեշտակս, և զհրեշտակապետս. և բոլորից ահա հնազանդելով նմա, եղեւ Տէր և Քրիստոս.* Քրիստոս ապա վասն սրբոյ Հոգւոյն, *որ ըստ նմանութեան իւղոյ եղեալ ի վերայ նորա յերկնուստն հեղմանն. իսկ Տէր՝ սակս ի վերայ բոլորիցս առնլոյն զտէրն անուն։*

ԱՐԻԱՆՈՍ. Ցառկաբար *ապա Որդի և Տէր է Բանն և Աստուած, և յառաջապէս մարդն։*

ԱԹԱՆԱՍ. *Քաւ և մի՛ լիցի։*

ԱՐԻԱՆՈՍ. *Իսկ ապա ո՞րպէս քաւ և մի՛ լիցի,*

1. Ձ. ԺԹ. յաւելու՝ Բան։ 2. Ձ. ԺԹ. էովլ։

քանզի ասացեր Տէր զԱստուածն Բան, և զատաճարն նորա Տէր, այս է զմարդն. և ես կարծեմ երկուս տեարս գոլ։

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ են երկու տեարք, քաւ և մի՛ լիցի, վասն զի մի է Աստուծոյ Որդին, եղեալ մարդ վասն մեր։ Քանզի և երկրաւոր թագաւոր՝ ասա՛ ինձ՝ առանձնա՞կ մարդն թագաւորէ, և առանձնա՞կ ծիրանիքն, այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍ. Զիա՞րդ է մարթ կամ մարդոյ ուրոյն թագաւորել, կամ ծիրանեացն որիշ իշխել. համայն ծանեա՛յ զի՞նչ կամիս յանդիման կացուցանել ի տարացուցէս։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա թէ անհնարին է երկուս թագաւորս՝ զմինն կոչել թագաւոր, ասեմ իսկ՝ զմարդն և զծիրանիսն. ո՞րպէս ապա մարթ է զատ և որիշ զԲանին և զԱստուծոյ զտէրութիւն ասել. և որոշմամբ դարձեալ ըստ օրինի[1] ծիրանեաց զգեստու եղելոյն՝ զորբոյ և պատուականի մարմնոյն զիշխանութիւն զեկուցանել, որ զգեստ թագաւորին՝ ա՛յս է՝ Բանին Աստուծոյ լինի. և ո՛չ միայն՝ այլ և առաքեալն Պաւղոս զմիաւորութիւն տէրութեանն զոր ունի տէրունականն մարդհանդերձ աստուածեղէնն Բանիւ, ծայրագոյն նշանակեաց, ասելով զնա, «Որոց հարքն, և յորոց Քրիստոս ըստ մարմնոյն, որ ի վերայ բոլորից Աստուած օրհնեալ յաւիտեանս. ամէն»[2]։ Տեսանե՞ս զի և Աստուած ի վերայ բոլորից գիտէ զառ ի զաւակէն Դաւթի՝ առաքեալ։

ԱՐԻԱՆՈՍ. Ո՞չ երկնչիս ի վերայ ամենեցուն զմարդն ասել։

ԱԹԱՆԱՍ. Պաւղոս ո՛չ երկեաւ, և ո՛չ ես երկընչիմ, զի տեսանեմ ի մանէ զտնտեսութիւնն Աստուծոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Զո՞ր տնտեսութիւն։

1. Ճ. ԺԹ. առերեալ։ 3. Հռովմ. Թ. 5։

ԱԹԱՆԱՍ. *Զյաղագս ի վերայ բոլորեցս՝ Աստուծոյ մարդկանալոյն։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ցաղագս մարդկանալոյ Բանին և ես խոստովանիմ. բայց սակս Աստուած գոլոյ ի վերայ ամենեցունց զխաչեալն՝ երկնչիմ ճառել։*

ԱԹԱՆԱՍ. *Լո՛ւր, և առաւել զարմացիր, զի և Աստուած ի վերայ բոլորից խոստովանիմ, և ո՛չ կարելի ա՛յդ Աստուած համարել առեղեալն մարդ և խաչեալ վասն մեր, մինչ Աստուած գոլով։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ո՞ւր գրեալ է։*

ԱԹԱՆԱՍ. *Առ ի յԵրեմիայէ մարգարէէ. քանզի ասէ այսպէս. «Սա Աստուած մեր, ո՛չ համարեսցի առ սա այլ. եգիտ զամենայն ճանապարհս իմաստութեան՝ և ետ զնա Յակովբու ծառայի իւրոյ Իսրայելի սիրեցելոյն ի նմանէ. յետ այսորիկ յերկրի երեւեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ»[1]։ Ուստի[2] երեւեալն նա և էր և է Աստուած, առ որ ոչ համարեսցի ա՛յլ Աստուած, այո՞ թէ ոչ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Զոր օրինակ մարգարէն ասէ, նա է Աստուած, վասն զի անպատեհ է յաղագս Հօր ասել թէ երեւեցաւ կամ թէ մարդ եղեալ քաղաքավարեցաւ ընդ մարդկան. յայտնի ելով իրացդ, եթէ Բանն Աստուած մարդկացաւ։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա մի Որդին՝ որ նախ քան զամենայն յաւիտեանս գոյակից հանդիպեալ Հօր իւրոյ՝ Աստուած ելով աներեւելի, մարդ եղեւ երեւելի։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Զի մի Որդի Աստուծոյ երեւեցաւ, խոստովանեալ է, բայց ո՛չ հանդիպելի գոյակից Հօր անկրաւապէս։*

ԱԹԱՆԱՍ. *Իմաստութիւնն և զօրութիւնն գոյակի՞ց է ամենիմաստին Աստուծոյ. այո՞ թէ ոչ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Այդպէս է։*

ԱԹԱՆԱՍ. *Մի ապա գոլով աներեւոյթ Որդին*

1. Բարուք Գ. 36-38։ 2. Ճ. ԺԹ. յաւելու՝ եւ։

Աստուծոյ՝ որ երեւեցաւն, որ և անմարմին և մարմնացեալ, որ անմահն և զմահու փորձ առեալ մարմնով, որ անշօշափելին և շօշափելի:

ԱՐԻԱՆՈՍ. վկայեմ և ես ասացելոցդ առ ի քէն:

ԱԹԱՆԱՍ. Այսպէս ապա Տէր և Աստուած սակս միաւորելոյ մարմնոյս ի Բանն, և ո՛չ բաժանմամբ տէրութիւն ասին. վասն զի՝ Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս Բանն և Աստուած մի հանդիպի:

ԱՐԻԱՆՈՍ. Թուի ինձ ուղիղ երեւել՝ որ յաղագս մարմնաւորութեան Բանին սահման. համայն ոչ ճշմարտութեամբ Աստուած է Որդին, զոր օրինակ և Հայրն:

ԱԹԱՆԱՍ. Ուստի՞ զայդ առեալ մատուցեր մեզ:

ԱՐԻԱՆՈՍ. Ո՞չ երբեք ընթերցար զաւետարանն՝ յորժամ ասէ Տէր առ Հայր իւր. «Այս են յաւիտենական կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած և զոր առաքեցերն զՅիսուս Քրիստոս»[1]. տեսանես, զի միայն ճշմարիտ Աստուած զՀայր ասէ, որպէս զի Նորա ո՛չ գոլով ճշմարիտ Աստուած:

ԱԹԱՆԱՍ. Այս չարադրութիւն[2] կանխաճառեալն բանից և ի վերայ եկելոցն՝ որոշումն ո՛չ առնելով. քանզի անխզելի ահա ի բարեխորհողացն խոստովանեալ է չարադրութիւն, որ և առ տէրունականն[3] ձայնիւ. համայն լո՛ւր հանդերձ երկայնմտութեամբ՝ զոր ասեմ: Թէ ոք պատուիրէ ընկերին իւրում յաղագս Կոստանդիանոսի ասելով, ստուգութեամբ ծանիր զմիայն թագաւոր և ինքնակալ, և աշխարհական երկրի և ծովու զմեծն Կոստանդիանոս, և զԿոստանդիոս զորդի Նորա, խոստովանեա՞ց զորդին ընդ հօրն, այո՞ թէ ոչ:

1. Ա. Յովհ. ԺԷ. 3.
2. Ճ. ԺԹ. յաւելու՝ է:
3. Ճ. ԺԹ. փէրսոնէական:

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ոչ փոքր վտանգ բերէ առել՝ թէ ոչ թագաւորէ կոստանդիոս ընդ կոստանդիանոսի հօր իւրոյ, ոչ թուակցելով զնա ընդ նմա։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ յաղագս կոստանդիանոսի և կոստանդեայ վտանգ մեծ տեսանես. իսկ յաղագս Քրիստոսի և Հօր իւրոյ ո՞չ երկնչիս զայդպիսիդ բարբառել։ Պարտ էր քեզ գոնէ[1] այդպիսի բարեպաշտութիւն առ Տէրն ցուցանել. զոր օրինակ ի կոստանդիանոս առացեալ, ոչ որոշելով յորդւոյ իւրմէ կոստանդեայ զգոլն զնա թագաւոր. և զամենայն որչափ ի հայրն նորա կանխաւ ասացաւ՝ ո՛չ այլուստեք զհաւասարութիւն պատուոյ նորա ցեկուցանէ եթէ ոչ նովաւ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Թիւրեցար ի խորհրդածութենէդ. ի գրոց ինձ հատո՛ զցոյցսն, եթէ ճշմարտապէս Աստուած է Որդի, զոր օրինակ և ես քեզ զաւետարանականն առաջի արկի զձայնն։*

ԱԹԱՆԱՍ. *Լո՛ւր և յաղագս այդորիկ գրաւոր զհաստուցումն, և մի՛ մոլորիր։ Յովաննէս առաքեալ այսպէս ասէ. «Գիտեմք եթէ Որդին Աստուծոյ եկն և ետ մեզ միտս՝ զի ծանիցուք զճշմարիտն Աստուած, և եմք ի ճշմարտի Որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի. Սա է Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենականք»[2]։ Տեսանե՞ս, զի մի և նոյն ձայն բերեալ լինի յաղագս Որդւոյ և Հօր. աստուածաբանելով հաւասար Հօր զՈրդի։ Քանզի որպէս յաղագս Հօր ասէ. «Այս են յաւիտենական կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած». նոյնգունակ և աստ սակս Որդւոյ ասէ. «Սա է ճշմարիտ Աստուած և կեանք յաւիտենականք». իսկ աստ՝ «Եւ զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս», կապ համդիպի, փոխանակ ասելոյ՝ զքեզ միայն ճշմարիտդ Աստուած և զՅիսուս Քրիստոս. զի ծանիցեն և զՈրդիդ քո ճշմարիտ Աստուած»[3],*

1. Ճ. ծԹ. գոնէ։
2. Յովհ. ե. 20։
3. Յովհ. ժէ. 3։

որպէս և զքեզ Հայրդ. որպէս և յայլում տեղւոջ ասաց Տէր. «Ես եմ ճշմարտութիւն»[1], և ճշմարտութիւն՝ ստութիւն ո՛չ երբեք եղեւ։

ԱՐԻԱՆՈՍ. Խոստովանիմ և ես թէ ճշմարիտ Աստուած է Որդին Աստուծոյ. համայն, մինթէ կարես ասել համանգամայն Աստուած, համանգամայն Որդի։

ԱԹԱՆԱՍ. Զի՞նչ ասես, համանգամայն Աստուած, համանգամայն Որդի. զի Որդի՝ համանգամայն Որդի Աստուծոյ է, վասն զի Աստուածն Բան՝ Աստուած հանդիպի, Որդի Հօր[2] ելով։

ԱՐԻԱՆՈՍ. Ոչ այդպէս ասեմ. այլ զի ո՛չ կարես[3] համանգամայն Աստուած ասել՝ համանգամայն Որդի ընդ Հօր։

ԱԹԱՆԱՍ. Հի՞մ ո՛չ կարեմ[4] զայդ ասել։

ԱՐԻԱՆՈՍ. Զի Աստուած Հայր անծին, իսկ Որդի ծնեալ հանդիպի։

ԱԹԱՆԱՍ. Զանծինն ձայն ի վերայ Աստուծո՞յ կարգէք թէ և ի վերայ այլոց ումանց[5]։

ԱՐԻԱՆՈՍ. Այլ ումեք մի՛ լիցի ասել անծին. քանզի որ անծինն է, նախ անսկիզբն հանդիպի։

ԱԹԱՆԱՍ. Զայն՝ որ ասէ էութիւն[6], գոյութի՞ւն է՝ թէ գոյութեան նշանակիչ։

ԱՐԻԱՆՈՍ. Գոյութիւն[7]։

ԱԹԱՆԱՍ. Սուտ ասես. ո՛չ է գոյութիւն, այլ գոյութեան նշանակիչ։

ԱՐԻԱՆՈՍ. Զի՞նչ կամի նշանակել։

ԱԹԱՆԱՍ. Զի ո՛չ եղեւ՝ և ոչ դարձեալ ծնեալ գոյութիւնն Աստուծոյ. ուստի բարեպաշտաճապէս ասեմք անծին զէութիւնն Աստուծոյ. կամ ասա՛ ինձ, Ադամ ծնեա՞լ. այո՞ թէ ո՛չ։

1. Յովհ. ԺԴ. 6։
2. Ճ. ԺԹ. ի Հօր։
3. Ճ. ԺԹ. կարեմ։
4. Ճ. ԺԹ. կարես։
5. Ճ. ԺԹ. անձանց։
6. Ճ. ԺԹ. ունի այսպէս. Զայն որ ասէս անծննելութե՞ան է գոյութիւն. և այլն։
7. Ճ. ԺԹ. յաւելու՝ է։

ԱՐԻԱՆՈՍ. *Ոչ փոքր վտանգ բերէ ասել՝ թէ ո՛չ թագաւորէ Կոստանդիոս ընդ Կոստանդիանոսի հօր իւրոյ, ոչ թուակցելով զնա ընդ Նմա։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ յաղագս Կոստանդիանոսի և Կոստանդեայ վտանգ մեծ տեսանես. իսկ յաղագս Քրիստոսի և Հօր իւրոյ ո՞չ երկնչիս զայդպիսիդ բարբառել։ Պարտ էր քեզ գոնէ[1] այդպիսի բարեպաշտութիւն առ Տէրն ցուցանել. զոր օրինակ ի Կոստանդիանոս առացեալ, ո՛չ որոշելով յորդւոյ իւրմէ Կոստանդեայ զգոլն զնա թագաւոր. և զամենայն որչափ ի Հայրն Նորա կանխաւ առացաւ՝ ո՛չ այլուստեք զհաւասարութիւն պատուոյ Նորա զեկուցանէ եթէ ո՛չ Նովաւ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Թիւրեցար ի խորհրդածութենէդ. ի գրոց ինձ հաստ ցոյցն, եթէ ճշմարտապէս Աստուած է Որդի, զոր օրինակ և ես քեզ զաւետարանականն առաջի արկի զձայնն։*

ԱԹԱՆԱՍ. *Լո՛ւր և յաղագս այդորիկ գրաւոր զհաստուցումն, և մի՛ մոլորիր։ Յովհաննէս առաքեալ այսպէս ասէ. «Գիտեմք եթէ Որդին Աստուծոյ եկն և ետ մեզ միտս՝ զի ծանիցուք զճշմարիտն Աստուած, և եմք ի ճշմարիտ Որդւոջ Նորա Յիսուսի Քրիստոսի. Սա է Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենականք»[2]։ Տեսանե՞ս, զի մի և նոյն ձայն բերեալ լինի յաղագս Որդւոյ և Հօր. աստուածաբանելով հաւասար Հօր զՈրդի։ Քանզի որպէս յաղագս Հօր ասէ. «Այս են յաւիտենական կեանք, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած». նոյնգունակ և աստ սակս Որդւոյ ասէ. «Սա է ճշմարիտ Աստուած և կեանք յաւիտենականք». իսկ ապա՝ «Եւ զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս», կապ հանդիպի, փոխանակ ասելոյ՝ զքեզ միայն ճշմարիտդ Աստուած և զՅիսուս Քրիստոս. զի ծանիցեն և զՈրդիդ քո ճշմարիտ Աստուած»[3],*

1. Ճ. ծԹ. գոնէ։
2. Յովհ. ե. 20։
3. Յովհ. ժէ. 3։

որպէս և գքեզ Հայրդ․ որպէս և յայլում տեղւոջ ասաց Տէր․ «Ես եմ ճշմարտութիւն»[1], և ճշմարտութիւն՝ ստութիւն ո՛չ երբեք եղեւ։

ԱՐԻԱՆՈՍ. Խոստովանիմ և ես թէ ճշմարիտ Աստուած է Որդին Աստուծոյ․ համայն, մինթէ կարեմ ասել համանգամայն Աստուած, համանգամայն Որդի։

ԱԹԱՆԱՍ․ Զի՞նչ ասես, համանգամայն Աստուած, համանգամայն Որդի․ զի Որդի՝ համանգամայն Որդի Աստուծոյ է, վասն զի Աստուածն Բան՝ Աստուած հանդիպի, Որդի Հօր[2] ելով։

ԱՐԻԱՆՈՍ․ Ոչ այդպէս ասեմ․ այլ զի ո՛չ կարես[3] համանգամայն Աստուած ասել՝ համանգամայն Որդի ընդ Հօր։

ԱԹԱՆԱՍ․ Հի՞մ ո՛չ կարեմ[4] զայդ ասել։

ԱՐԻԱՆՈՍ. Զի Աստուած Հայր անծին, իսկ Որդի ծնեալ հանդիպի։

ԱԹԱՆԱՍ․ Զանծինն ձայն ի վերայ Աստուծո՞յ կարգէք թէ և ի վերայ այլոց ոմանց[5]։

ԱՐԻԱՆՈՍ. Այլ ումեք մի՛ լիցի ասել անծին․ քանզի որ անծին է, նաեւ անսկիզբն հանդիպի։

ԱԹԱՆԱՍ․ Զայն՝ որ ասէ էութիւն[6], գոյութի՞ւն է՝ թէ գոյութեան նշանակիչ։

ԱՐԻԱՆՈՍ. Գոյութիւն[7]։

ԱԹԱՆԱՍ․ Սուտ ասես. ո՛չ է գոյութիւն, այլ գոյութեան նշանակիչ։

ԱՐԻԱՆՈՍ. Զի՞նչ կամի նշանակել։

ԱԹԱՆԱՍ․ Զի ո՛չ եղեւ՝ և ոչ դարձեալ ծնեալ գոյութիւնն Աստուծոյ․ ուստի բարեպաշտաճապէս ասեմք անծին զէութիւնն Աստուծոյ. կամ ասա ինձ, Ադամ ծնեա՞լ․ այո՞ թէ ո՛չ։

1․ Յովհ․ ԺԴ․ 6։
2․ Ճ․ ձԹ․ ի Հօր։
3․ Ճ․ ձԹ․ կարէմ։
4․ Ճ․ ձԹ․ կարէս։
5․ Ճ․ ձԹ․ անձանց։
6․ Ճ․ ձԹ․ ունի այսպէս․ Զայն որ ասէս անծննդութե՞ան է գոյութիւն․ և այլն։
7․ Ճ․ ձԹ․ յաւելու՝ է։

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՛չ ծնեաւ՝ այլ ստեղծեաւ։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՛չ վասն ստեղծման, այլ սակս ծննդեան հարցանեմ*[1]*։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՛չ ծնեաւ։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա անսկիզբն եղիցի ըստ քեզ։ Այլ նաեւ Եւա՝ ոչ ծնեաւ, այլ հրաշագործեցաւ. զի՞նչ ասես և յաղագս ո՛չ երբեք ծնելոյն, ծննդակա՞ն թէ անծին։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ուղղապէս ունի զանծինն ձայն. եղիցի ապա Հայր անծին, և Որդի ծնեալ։*

ԱԹԱՆԱՍ. *Զի՞նչ կամիս աստուստ հաւաքել։*

ԱՐԻԱՆՈՍ. *Որդի ծնեա՞լ. այո՞ թէ ոչ։*

ԱԹԱՆԱՍ. *Ծնեաւ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Տեսանե՞ս, զի նախ քան զծնանելն ոչ էր. իսկ ապա թէ էր՝ անծին եղիցի ըստ քեզ. և եթէ այսպէս է, ոչ է ծնեալ Որդի։*

ԱԹԱՆԱՍ. *Աստուած համանգամայն Հա՞յր է. այո՞ թէ ո՛չ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Զօրութեամբ միշտ Հայր է, իսկ ազդմամբ ոչ է միշտ Հայր։*

ԱԹԱՆԱՍ. *Զօրութեամբ էր աշխարհս յԱստուծոյ ան՛զրաւապէս. այո՞ թէ ո՛չ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Այդպէս է։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա որպէս խորհրդով զաշխարհս արուեստակեաց, այսպէս և զՈրդին ստացեալ ըստ քեզ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՛չ որպէս զաշխարհս. քանզի յիշեմ զկանխահաստուցեալսն. այլ նախ քան զյաւիտեանս կամօք ասեմ ունել Աստուծոյ զՈրդին. և սուղ ինչ տամ բացատ լինելութեանն Որդւոյ, զի եղիցի ծննդական։*

ԱԹԱՆԱՍ. *Զհայրն անուն գոլ Աստուծոյ, բարւո՞ք է, թէ թշնամանք նմա հանդիպին։*

ԱՐԻԱՆՈՍ. *Քա՛ւ և մի՛ լիցի թշնամանս մեր-*

1. Ձ. ԺԹ. հարցի։

ձեցուցանել յԱստուած, այլ և յոյժ ի ճահ գոլն զԱստուած Հայր։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա ուրեմն ի վատթարագունիցն ի վեհագոյնսն յառաջահատեաց Աստուած, ըստ քեզ. զի եթէ ոչ գոլով Հայր՝ եղեւ իսկ և իսկ Հայր, ուրեմն փոփոխեալ ի նուաստագունիցն առ ի մեծագոյնս և պատուականագոյնս։ Իսկ եթէ ասես նախ քան զՀայր զնա էլ, պատուականագոյն զնա գոլ ասես. ապա ուրեմն ի պատուականագունից ի վեհագոյնս եհաս։ Եւ եթէ այս այսպէս է. զիա՞րդ ասեմք կամ անփոփոխելի զաստուածութիւնն և ինքնակատար և ո՛չ յառաջահատեալ ի լաւագոյնս. և դարձեալ որոշեալ ի վատթարագունից ի յաջողակագոյնս. վասն զի յատկապէս՝ ապականացուացս է փոփոխելն. երբեմն ի գերագունից առ նուաստագոյնս, իսկ երբեմն ի պարտեցելոցն՝ առ պատուականագոյնս։

ԱՐԻԱՆՈՍ. Ական միայն թօթափմամբ ո՞չ կամիս տալ զոչ էրն Որդի նախ քան զծնանիլն։

ԱԹԱՆԱՍ. Զոչ էրն ո՛չ տամ։

ԱՐԻԱՆՈՍ. Հի՞մ։

ԱԹԱՆԱՍ. Զի գրեալ է, «Ոչ գոյ ի քեզ Աստուած առժամագիւտ»[1]. եթէ սուղ ինչ տամ զոչ էրն, եղիցի առժամագիւտ Աստուած յինէն խոստովանել։ Զոր քաւ և մի՛ լիցի այսպէս աւանդել առն քրիստոնէի, և ընդդէմ աստուածեղէն գրոց բարբառել։

ԱՐԻԱՆՈՍ. Ո՞ր ընդդիմութիւն հանդիպի, եթէ ասեմք ական թօթափմամբ նախ քան զծնանիլն ո՛չ էլ՝ զի մի՛ անծին իմասցուք։

ԱԹԱՆԱՍ. Ցոյժ ինձ ընդդիմութիւն ցուցանի՝ առ ի բարեպաշտութիւնն սուրբ գրոց, ամենայն ուրեք վկայելով, թէ միշտ էր Որդի՝ և ոչ երբեք էր ժամանակ՝ յորժամ ոչ էր. կամ թէ ո՞չ թուի

1. Սղմ. Ձ. 10։

քեզ ընդդէմ ասել աստուածաշունչ գրոց, թէ խոստովանիմք զոչ էրն։

ԱՐԻԱՆՈՍ. Տո՛ւր ինձ զվկայութիւնն։

ԱԹԱՆԱՍ. Լո՛ւր Յովհաննու ասելոյն. «Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն. Նա էր ի սկզբանէ առ Աստուած»[1]։ Ո՞վ ապա այդպէս բարբառեցաւ ի սրբոց մարգարէից կամ յառաքելոցն՝ զոր օրինակ[2] և դու, ասա ինձ։ կամ թէ կարողութի՞ւն իցէ միայն լոկ ի միտ արկանել՝ եթէ Բանն Աստուած՝ էր երբեմն ժամանակ *զի ոչ էր. և եթէ այս այսպէս կարծիցի[3], է՞ր ուրեմն ժամանակ* զի անբան էր Աստուած Հայր։

ԱՐԻԱՆՈՍ. Ցառաջբերական ուրեմն և լուծական բան ըստ հասարակաց ասես զՈրդին Բան։

ԱԹԱՆԱՍ. Քաւ և մի՛ լիցի. զի զԲանն ես էապէս ասեմ անձնացեալ, և ո՛չ լուծական Բան, և ո՛չ դարձեալ յառաջ խաղացեալ յԱստուծոյ, և վերստին անդրէն ի Հայր լուծեալ, ըստ Սաբեղի, այլ ծնեալ անճառապէս և գոլ ընդ Հօր ասեմ զՈրդի։ Քանզի որպէս ոչ է զանձն առանց Բանի իմանալ, այսպէս և ո՛չ Աստուծոյ Հօր՝ առանց Որդւոյ հաւատալ. զի որպէս Հայր անսկիզբն է[4], և Բանն և[5] Որդի Աստուծոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Զիա՞րդ է անսկիզբն Որդի, որ խոստովանի զօրն վախճանի ո՛չ գիտել։

ԱԹԱՆԱՍ. Ասա, ո՛վ մարդ, զոր հանդերձեալս եմ հարցանել ցքեզ։ Ճարտարապետի եղէգն առեալ չափ դնէ և ծրագրէ այնու նկրքնատունս և

1. Յովհ. Ա. 1։
2. Յօր. եղծեալ էին նոտրագիր բանքդ. եգաք ըստ Ճ. ԺԹ։
* Յաստղանիշէդ ցմիւսն՝ չիք ի Ճ. ԺԹ։
3. Յօր. եղծեալ գոլով նոտրագիր բառքդ եգաք ըստ յունին։
4. Ճ. ԺԹ. յաւելու՝ Աստուած։
5. Ճ. ԺԹ. փոխանակ Եւ-ի դը-նէ՝ Աստուած։

վերնատունս, կրկնայարկս և երեքյարկս, և եթէ հասանէ յառաջինն յարկ, գիտէ թէ սակս երկրորդին պարտ է պարապել. և յորժամ զերկրորդ ձեղունն եւս կատարէ, իմանայ եթէ մերձ է առ ի յանգումն շինուածոյն. և¹ յորժամ ի կատարումն երրորդի եւս ձեղուանն լինի, նախ քան զերկուս և զերիս կարգս՝ սուգապէս հասու է՝ թէ մերձեցաւ առ ի յանգումն շինուածոյն. և այս այսպէ՞ս է. այո՛ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Համաձայնիմ այդմ այդպէս ել²։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա Որդի Աստուծոյ, որ ըղբոլորս յօչէութենէ ի գոյութիւն էած, որ և պատշաճեցոյցն զայսոսիկ զտարերս, որոյ հոգաբարձեալ տնօրինէ զաշխարհս զայս մինչեւ ցայժմ, որպէս և ինքն ասաց. «Հայր իմ մինչեւ ցայժմ գործէ գործ, և ես գործեմ»³. ո՞չ գիտիցէ յորժամ յանգ ելեալ կատարեսցի զոր ինքն արարչագործեաց։ Եւ եւս տակաւին փորձեա՛ ասեմ. երթեալ հա՛րց սակս կատարման ամսոյ զայր տըգէտ՝ որ ո՛չ լիցէ հասու թէ երեսուն աւուրց ամիսն հանդիպի. և տացէ քեզ պատասխանի յաղագս հարցմանն. իսկ եթէ այնմ առաջի արկցես⁴ զհարցումնն՝ որ զգիտութիւնն ունի, իսկ և իսկ ասասցէ քեզ. եթէ իցէ ամիսն զտասն և ըզհինգն ունելով. եթէ ի մէջ է, եթէ ի քսան և հինգն կամ յեւթն՝ ասիցէ⁵, թէ մերձ է ի կատարումն ամիսս։ Նոյն սահման և յաղագս լուսնի, նոյնգունակ և սակս տարւոյ եթէ հարցցես զայր հմուտ, եթէ երբ կատարի. ըստ մերձաւոր իմաստութեան իւրոյ փորձեալ ասասցէ, յորժամ մետասաներորդին կատարեալ՝ սկսանիցի երկոտասաներորդն զկատարումն ունել տարւոյ։

1. Ձ. ժԹ. ունի՝ իսկ։
2. Ճ. ժԹ. ունի՝ ասել։
3. Յովհ. Ե. 17.
4. Ձ. ժԹ. արկանիցես։
5. Ձ. ժԹ. ասասցէ։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ցառաջասացեալդ այդպէս է։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ եթէ ճարտարապետն հաստ է, թէ երբ կատարի շինածն, և այր հմուտ թուղթ, թէ երբ կատարի ամիսն. իսկ ի կրթութենէ պարապայ ընթացիցն լուսնի, թէ երբ լնու կամ մաշեալ նուազի, կամ որով ժամանակաւ յանդ ելանէ տարին, գիտակ և հմուտ է. զիարդ ոչ ասասցուք ապա և մեք՝ եթէ Տէր Յիսուս, որ արար զաշխարհս, որ և հանդերձեալ է զսոյն կատարել, գիտակ է աւուրն. զի եթէ ոչ էր գիտակ՝ զիարդ յորժամ հարցեալ եղեւ յաղագս այսոցիկ վախճանի յաւիտեանցս, պատասխանեալ ասաց այսպէս. «Տեսէք մի՛ ոք իցէ որ զձեզ մոլորեցուսցէ. քանզի բազումք եկեսցեն յանուն իմ, ասելով՝ թէ ես եմ Քրիստոս, և զբազումս մոլորեցուսցեն։ Քանզի հանդերձեալ էք լսել պատերազմունս և համբաւս պատերազմաց. տեսէք մի՛ խռովիք, քանզի պարտ է լինել՝ այղ չեւ է կատարած։ Յարիցէ ազգ յազգի վերայ և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ, և եղիցին ի տեղիս տեղիս սովք և շարժմունք և սրածութիւնք. և այն ամենայն սկիզբն է երկանց։ Յայնժամ մատնեսցեն զձեզ ի նեղութիւնս, և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ։ Եւ յայնժամ գայթակղեսցին բազումք, և ըզմիմեանս մատնեսցեն և ատեսցեն զմիմեանս. և բազում սուտ մարգարէք յարիցեն, և զբազումս մոլորեցուցանիցեն։ Եւ յաղագս բազմանալոյ անօրէնութեանն՝ ցամաքեսցի սէր բազմաց. իսկ որ համբերէ իսպառ, նա կեցցէ։ Եւ քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս՝ առ[1] ի վկայութիւն ամենայն հեթանոսաց. և յայնժամ եկեսցէ կատարած»[2]. և յետ սուղ ինչ ասէ. «Եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ոչ ե-*

1. Ճ. ԺԹ. Ն։ 2. Մատթ. ԻԴ. Ժ–ԺԴ.

ղեւ ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցայժմ, և ո՛չ այլ լիցի[1]։ Եթէ ո՛չ կարճէին աւուրքն այնոքիկ, ո՛չ ապրէր ամենայն մարմին։ Ցայնժամ եթէ ոք ա֊ սասցէ ձեզ՝[2] եթէ ահա աստ է Քրիստոս կամ անդ, մի՛ հաւատայք* »[3]։ Եւ յետ փոքր մի. « Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարեւելից և երեւի մինչեւ ի մուտս արեւու, այնպէս եղիցի և գալուստն Որդ֊ ւոյ մարդոյ։ Զի ուր գէշն՝ անդ ժողովեսցին և արծուիք։ Եւ վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից, և զօրու֊ թիւնք երկնից շարժեսցին։ Եւ յայնժամ երեւեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս »[4]. և յետ սակաւ ինչ. « Ամէն ասեմ ձեզ, ո՛չ անցցէ ազգս այս, մին֊ չեւ այս ամենայն եղիցի. երկինք և երկիր անց֊ ցեն և բանք իմ մի՛ անցցեն։ Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ, ո՛չ հրեշտակք երկ֊ նից և ո՛չ Որդի, բայց միայն Հայր »[5]։ Ուստի գի֊ տելի է ամենայն բարեխորհողաց ի կանխաւ նը֊ շանակեցելոց[6] փրկչին, և յաղագս աւուրն և ժա֊ մու, եթէ գիտա՛կ է ստուգապէս՝ յորժամ հանդեր֊ ձեալ է գալ և զետեղել զամենայն՝ որպէս և յա֊ ռաջագոյն սահմանեցաւ յանբաժին նորա և Հօր նորին խորհրդոց։ Առեալ ապա զաւետարանն ըն֊ թերցիր[7] զընթերցուածն ի Մատթէոսեանն գըլ֊ խոյ յաղագս այսորիկ խնդրոյ, զի եղիցի սակս աւուրն յայտնի թէ ո՛չ է անգէտ Տէրն։ Վասն զի թէ ո՛չ գիտէր, զիա՞րդ կարէր զոչն երբեք եղելոց և ո՛չ անցելոց զնշանսն և զփորձութիւնս որք ա֊ ռաջնի ընթանան նախ քան զօրն՝ յառաջել և ա֊

1. Ձ. ձԹ. եղիցի։
2. Յոր. պէտ. ուղղեցաւ՝ ըստ Ձ. ձԹ.։
* Ձ. ձԹ. մի հաւատայցէք։
3. Մատթ. ԻԴ. 21–24։
4. Մատթ. ԻԴ. 27–30։
5. Մատթ. ԻԴ. 34–37։
6. Ձ. ձԹ. կանխանշանակելոց։
7. Ձ. ձԹ. յաւելու՝ զաւետա֊ րանական։

սել. վասն զի մինչեւ ի նոյն ինքն վախճանն և ի գալուստն իւր՝ կանխաւ զեկոյց զնշանսն և զճշգրրտութիւնս նոցին, որպէս զի կարեմի գոլ և փութացելոյ և աշխատասիրայ, դիւրաւ ճանաչել ըզժամանակն, ի կանխագուշակեցելոյն[1] ի Տեառնէ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Յստուգապէս գիտակ է աւուրն, այլ հի՞մ ինքն ասէ. «Եւ ոչ Որդի գիտէ զօրն զայն»։

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ ասաց Տէր՝ թէ և ոչ ես գիտեմ զօրն զայն. զի զայս ապա արժան էր ասել Տեառնն, եթէ զյաղագս ի՛ւքեանն կամեցեալ էր յանդիմանկայուցանել զանգիտութիւն իւրայ, այլ ոչ ասաց։ Բայց զի Մատթէոսեանն բերէ ի մէջ աւետարանէ[2] ասելով, «Եւ ո՛չ Որդի գիտէ զօրն զայն». իսկ այլ աւետարանիչքն լռեցին զյաղագս այսօրիկ ըզպատմութիւնն. միայն յատկապէս Մարկոս ասէ, թէ և ոչ Որդի գիտակ է աւուրն. և զՄարկոսի պատմութիւնն ի քեզ ինքեան ծանիր, եթէ ո՛չ անգէտ լինի Տէրն աւուրն. քանզի ասաց այսպէս Տէրն մեր Յիսուս Քրիստոս. «Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք երկնից և ո՛չ Որդի, բայց միայն Հայր»[3]. վասն զի անբաժանելի զինքն գիտելով ըստ էական բընութեանն, և միաւորեալ ըստ աստուածականն գոյութեանն Հօր իւրում Աստուծոյ՝ զիւր ինքեան զյառաջգիտութիւն ի կանխագիտութեանն Հօր նշանակեաց, որպէս ասաց Տէր. «Եթէ ես և Հայր իմ մի եմք»[4]. և դարձեալ. «Զոր ունի Հայր՝ իմ է ամենայն»[5]. ո՛չ սակս ստացական իրաց՝ զայսոսիկ ասաց Փրկիչն՝ ամենայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է, այլ որքան հայրենի աստուածութեան բարեվայելուչ հանդիպի՝ զայն իւր ասէ

1. Ճ. ԺԹ. ի կանխագուշակելոյն։ 4. Յովհ. Ժ. 30։
2. Ճ. ԺԹ. չունի աւետարանէ։ 5. Յովհ. ԺԶ. 15։
3. Մրկ. ԺԳ. 32։

ցէր, որ գոյն զանմահութիւնն[1], զանապականութիւնն, զանշօշափութիւնն, զանփոփոխութիւնն, զանհասութիւնն, զզօրաւորութիւնն[2], զկանխագիտութիւն. և որչափ և է Հօր, այս Որդւոյ իւր հանդիպի. իսկ զանգիտութիւնն ասէ՝ որպէս կանխաւն ասացի, զՀրեշտակաց և զՈրդւոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Մի՞ այլ Որդի է։

ԱԹԱՆԱՍ. Որդի Աստուծոյ ճշմարիտ մի գոյ, Բանն և Աստուած։ Է և այլ Որդի Աստուծոյ որդեգրեալ ի ձեռն տաճարի իւրոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որպէս ասաց աստուածայինն Առաքեալ, թէ «Ո՛չ առաք զհոգին ծառայութեան միւսանգամ յերկիւղ, այլ առաք զհոգին որդեգրութեան, որով աղաղակեմք Աբբա, Հայր»[3]։ Եւ ո՛չ միայն, այլ և Փրկիչն յայտնապէս ասէ ցԱռաքեալսն. «Որդեակք իմ, փոքր ինչ ժամանակս ընդ ձեզ եմ. և երթամ առ առաքիչն իմ»[4]։ Եւ ցՀրէայսն ասէր առակօք այսպէս. «Այր ումն ունէր երկուս որդիս. և մատուցեալ առ երէցն ասէ, երթ գործեա՛ յայգւոջն իմ։ Եւ պատասխանեալ ասէ. երթամ Տէր, և ոչ չոգաւ։ Եւ մատուցեալ առ միւսն՝ ասէ, երթ գործեա՛ յայգւոջն իմ. և նա պատասխանեալ ասաց, ո՛չ կամիմ. բայց յետոյ զղջացաւ[5] և չոգաւ»[6]։ Եւ հարցանէր Տէր, թէ «Ո՞վ յերկուցն արար զկամս հօրն։ Եւ պատասխանեալ Հրէիցն ասեն. կրտսերն»։ Իսկ ապա խոստովանեալ բոլորիցս Հայր զԱստուած գոլ, և այգի ըղշաւիղս արդարութեան՝ յորս հրամայեաց երիցու որդւոյն գնալ և գործել։ Իսկ նորա ի հեռուստ զողջոյն միայն տուեալ, զհրամանն արհամարհեաց. և այս Հրէից ժողովուրդն՝ որ ի ձեռն անհաւա-

1. Նոտրագիր բանքդ եղծեալ էին յօր. եդաք ըստ Ձ. ԺԹ։
2. Ձ. ԺԹ. զօրաւորին։
3. Հռոմ. Ը. 15։
4. Յովհ. ԺԳ. 33։
5. Ձ. ԺԹ. զղջացեալ։
6. Մատթ. ԻԱ. 28-31։

տութեանն արտաքս անկեալ եղեն և մերժեցան յորդէգրութենէն։ իսկ կրտսերն որդի հօրն գոյ, որ ի հեթանոսաց ժողովուրդ· որոյ իսկզբան կոչմանն ստունգանող գտեալ անհաւատութեամբ կռապաշտութեամբ պաշարեալ, իսկ յետոյ զղջացեալ և հաւատացեալ՝ հնազանդ հայրականն ցուցաւ հրամանաց, և յունկնդրութենէն սիրելի և ժառանգորդ որպէս զորդի հօր երևեցաւ, ամենայն պատուոյ և շնորհաց արժանի եղեալ ի հօրէն իւրմէ· քաւ յօրէն և ի ժամէն յայնմանէ. ասեմ իսկ՝ ի վախճանէն։ Բայց միայն զնշանն առեալ՝ թէ մերձ է կատարածն. իբր զի մի՛ անպատրաստք հանդիպեալ՝ յանկարծակի ի վերայ հասցէ յանդիմանն օր։

**ԱՐԻԱՆՈՍ.** Խոստովանիմ՝ ուղիղ ասել վասն աւուրն. բայց էութեամբ միանալ Հօր զՈրդի ո՛չ ասեմ ուղիղ ունել։

**ԱԹԱՆԱՍ.** վասն զի ո՛չ սակաւ է քեզ փոյթ հայհոյել զբարւոք և զգեղեցկապէսն խոստովանեալ ի բարեպաշտաց[1]. հատո՛ ինձ զբանն, թէ զի՞նչ իցէ գոյութիւնն։

**ԱՐԻԱՆՈՍ.** Ամենայն[2] որ ինչ անձնաւորեալ է՝ նոյն և գոյութիւն հանդիպի։

**ԱԹԱՆԱՍ.** Ուղիղ ասացեր։ Այլ վասն զի մեք ի մերձաւորս ժամու յաղագս Աստուծոյ ունիմք զբանս, ասա՛ ինձ· Աստուծոյ գոյութիւնն զի՞նչ է. զի մի՛ համարեալ լիցուք առաջի տգիտաց, եթէ սակս ընչից ասեմք։

**ԱՐԻԱՆՈՍ.** Աստուծոյ գոյութիւն, որ ինչ է և զի՞նչ է Աստուած, այն գոյութիւն ասի։

**ԱԹԱՆԱՍ.** Բարւոք ասացեր· այսուհետև լո՛ւր։

**ԱՐԻԱՆՈՍ.** Ասա՛, զի՞նչ և կամիս։

**ԱԹԱՆԱՍ.** Գիտելի է, թէ և ձևանալով և զիջանելով ըստ մերում տկարութեան՝ Աստուած, ի

1. Ձ. ձթ. բարեպաշտիցն։ 2. Ձ. ձթ. յաւելու՝ ինչ։

ձեռն աստուածաշունչ գրոց՝ բազում անգամ մարդկապէս[1] առ մեզ խօսի. որպէս զի կարող գոլ իմանալ մարդկայինս բնութեան զմտալուրն ճառեալս: Որով մեք սովորն եմք հասու լինել երկնաւորն[2] և աստուածեղէնն խորհրդոյ:

ԱՐԻԱՆՈՍՆ. *Այդպէս է:*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ՝ Աստուած ապա ասէ առ Որդին իւր ի ձեռն մարգարէին «Յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ», նշանակելով զառ ի հայրականն գոյութենէն Որդւոյն զծնունդն:*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Արգանդ ապա ունի Աստուած:*

ԱԹԱՆԱՍ. *Կանխեալ ասացի քեզ եթէ վասն մերոյ տկարութեան բազում անգամ զաստուածութիւնն մարդկային ձևով սուրբ գիրք պատմեն. ոչ զի Աստուած այնպիսի հանդիպի, այլ զի մեք ի մարդկեղէնն տարացուցաց՝ զաստուածէղենն բարեպաշտութեամբ իմասցուք: Ոչ սակս այլ ինչ իրաց անուանէ արգանդ. այլ զի յանդիման կացուսցէ զՈրդի առ ի հայրականն ծնանիլ գոյութենէ: Ապա թէ այս չէ, ասա՛ դու, զի՞րդ պարտ է իմանալ բանին:*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Գիրք ասեն յերեսաց Հօր. «Բղխեաց սիրտ իմ զբան բարի». իսկ ապա բան բղխման ուրեմն ասես[3] զՈրդին:*

ԱԹԱՆԱՍ. *Գիրք բարւոք ասացին հանդերձ այլովքն և զայդ, իսկ քո առեալ չարաչար զբանն շրջեցեր:*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Ցուցեա՛ մեզ դու զճշմարտութիւն բանիդ. քանզի ես շրջեցի զդա ըստ քեզ:*

ԱԹԱՆԱՍ. *Աստուած հոգի՞ է անախտ. այո՞ թէ ոչ:*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Այո՛, այդպէս է:*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ՝ յորժամ ասէ գիր, յարգանդէ ծնանել զՈրդի, զառ ի հայրականն էու-*

1. Յոր. մարդկապէսաբար:
2. Ձ. ԺԹ. էրկնաւորին:
3. Ձ. ԺԹ. ասէմ:

թենէ ծնունդ զՈրդւոյ նշանակէ. և զի մի՛ մարդկայինս ազգ՝ տկար գոլով մարդկապէս և զՈրդւոյն ծնունդ վարկանիցի, ասայ. «Բղխեաց սիրտ իմ զբան բարի». իսկ եթէ միւսանգամ ոք ձեռնարկել իշխեսցէ յառաջբերական բան զՈրդին[1] ասելով, յիշեսցէ զառ ի յարգանդէն, և դադարեսցէ ի չարաչարն մտածութենէ[2]: Քանզի պարփակեցին զամենայն մարդկային միտս գիրք. առ ի յոչ ունել մտածութիւն զմոլեկանն հերձուածոց, հակառակ մշտնջենաւորի և անհասական աստուածեղէնն ծննդեան Որդւոյն Աստուծոյ. զի թէ յարգանդէ հանդիպի, որպէս ապա ի սրտէ յառաջ եկն: կամ թէ դարձեալ ի սրտէ, զիա՞րդ յարգանդէ հանդիպի:

ԱՐԻԱՆՈՍՆ. Իսկ զի՞նչ ապա պարտիմք ասել և իմանալ:

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ այլ ինչ իմանալ՝ բայց ի գոյութենէ Աստուծոյ և Հօր զՈրդին ծնեալ, արտափայլեալ ի ձեռն այսպիսեաց օրինակաց:

ԱՐԻԱՆՈՍՆ ասայ. Զի թէ համագոյական, որպէս ո՛չ ճառեաց մերձ գոլ[3] աշակերտայն:

ԱԹԱՆԱՍ ասէ. Ո՞ւր է որ ո՛չ լինի խոստովանեալ համագոյական Հօր իւրոյ Որդի:

ԱՐԻԱՆՈՍՆ. Ո՛չ կարես ցուցանել, քանզի մի յանհնարից գոյ:

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ յանհնարից գտանել ձեռնարկեմք, այլ ի յայտներեւակ իրաց զճշմարտն զեկուցանել կամիմք: Յիշեա՞ս[4] զի ասացեր, թէ գոյ Աստուած էութիւն հանդիպեալ, այս է Որդի. այո՞ թէ ոչ:

ԱՐԻԱՆՈՍՆ. Ո՛չ երբեք:

ԱԹԱՆԱՍ. Ո՞րպէս ապա Տէր ասէ, «Ես և Հայր իմ մի եմք». եթէ ոչ ինքն է Որդի հայրականն

1. Յօր. էր՝ զորդանդն. եդաք ըստ Ճ. ԺԹ:
2. Ճ. ԺԹ. մտածութեանց:
3. Ճ. ԺԹ. գոլով:
4. Ճ. ԺԹ. յիշեմ:

էութեամբ, զիա՞րդ է ասացեալն « Ես և Հայր իմ մի եմք »։ Սոքա արդեւք ասաց՝ եթէ զճշմարիտն Տէր. որ քաւ և մի՛ լիցի. վասն զի ճշմարիտ՝ սուտ երբեք ոչ լինի. այլ և որ տեսեալ ասել զիս, տեսս զՀայր իմ. ոչ այլ ինչ յանդիման կացուցանէ, բայց զսուրբ աստուածութիւնն. զի թէ ա՞յլ քան զՀայր էութեամբ հանդիպի Որդի. ո՞րպէս կարելի է տեսանել Հօր՝ յՈրդւոյ. զի թէ կարելի է անդրւոյ[1] որ մարդկակերպ[2] կազմեալ ի փայտից, իցէ՞ ճանաչիլ յայլում անդրւոյ՝ որ ի քարանց եղեալ, կարելի է ապա և Հօր ճանաչել յինքեանն էութեան յՈրդւոյ։ Իսկ ապա եթէ անկարելի է զքար ի փայտէ ճանաչել կամ զփայտ ի քարի, ըստ գոյութեանցն բանի, նուազեալ լինի ապա ճանաչել և զամենաթագաւորն Աստուած՝ ի համագոյականին իւրում Որդւոյ. քանզի համատեսակք եղո՛ւ են համագոյականք, տեսեալ և յանդիման կացուցանեն զգիտութիւն և զոչ երևեցելոյն[3]։

ԱՐԻԱՆՈՍ. Զիա՞րդ ապա Տէր ասէ, « Ես եմ այգի ճշմարիտ, և Հայր իմ մշակ է »[4]. մի՛թէ կարելի՞ է այգւոյ և մշակի համագոյակ ել։

ԱԹԱՆԱՍԻՈՍ. Մի՛ ծայրաքաղ առներ զտէրունեանն ձայն, այլ որպէս և կայն ընթերցիր։ « Ես եմ, ասէ Տէր, այգի ճշմարիտ. և դուք ո՛ւռ. իսկ Հայր իմ մշակ է »։ Արդ, ասա՛ ինձ. զի եթէ Որդի ոչ է համագոյական Հօր, ըստ օրինակի այգւոյն և մշակին, ուրեմն մարդկա՞ն ասես զնա համագոյական։

ԱՐԻԱՆՈՍ. Քա՛ւ և մի՛ լիցի։

ԱԹԱՆԱՍ. Հեզաբար ապա լո՛ւր. և ըստ նմին հատո՛ ինձ զպատասխանին. այգին և ուռն համագոյակա՞ն հանդիպին. այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍ. Հաւանիմ աստ այդպէս գոլ. և աղաչեմ համառօտիւ և զայսորիկ զլխոյ յանգել

1. Ձ. ԺԹ. անդրէայ։
2. Ձ. ԺԹ. մարդակերպ։
3. Ձ. ԺԹ. երևեւելոյն։
4. Յովհ. ԺԵ. 1։

զմեկնութիւն փաղփաղակի. որպէս զի և զիս արասցես այսպիսի որպէս և դուդ հանդիպիս:

ԱԹԱՆԱՍ. Եթէ ոչ նախ և առաջին՝ սակս որոյ հարցանեմս հատուսցես ինձ բան, ոչ առցես զխնդիրդ:

ԱՐԻԱՆՈՍՆ. Որ ինչ հաճոյ է քեզ ասա. և զի՞նչ մարթի ըստ կարողութեան իմում՝ տաց պատասխանի:

ԱԹԱՆԱՍ. Աջ և բազուկ, հի՞մ յաղագս Աստուծոյ է գրեալ:

ԱՐԻԱՆՈՍՆ. Զայդպիսի առաջարկութիւնս ըստ իւրացն հետևման իմանամք. զի թէ ըստ այնմ որ ասէ, «Ձեռք քո արարին զիս և ստեղծին զիս»[1], ճանաչեմք աստուստ զարարչութիւնն Աստուծոյ. իսկ յորժամ ասէ, «Բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ»[2], բացայայտ է, թէ սակս Որդւոյ ասէ. առ այսոքիւք և «Աջ Տեառն արար զօրութիւն». խոստովանեալ է նմանապէս թէ սակս Որդւոյն նշանակէ. որով ամենայն եղեւ:

ԱԹԱՆԱՍ ասաց. Բազուկ՝ որոյ են բազուկ՝ համագոյակա՞ն հանդիպի. այո՞ թէ ոչ:

ԱՐԻԱՆՈՍՆ. Այդպէս է, և դու զի՞նչ, բաղդասութեամբ անդամոց չարադրես զաստուածութիւնն: Ո՛չ երբեք լուար կղեմայ հետևողին Պետրոսի առաքելոյ՝ որ ի բացն մերժէ զայդպիսի մտածութիւնս:

ԱԹԱՆԱՍ. Յիշեա զասացեալսն ո՛վ այր դու, և մի՛ մոլորիր. քանզի ես պարզ անշարադիր և անփայրափակ զաստուածութիւնն խոստովանիմ. ուսեալ ի սուրբ և յաստուածային գրոց. և յերանելի նախահարցն՝ որք մի ըստ միոջէ ընկալան զեպիսկոպոսութիւն եկեղեցւոյ Աստուծոյ. զի ո՛չ սակս այլ իրիք պատճառաց սուրբ գիրք աջ և բազուկ զՈրդին կոչեցին. բայց զի բարեպաշտապէս իմաս-

1. Սղմ. ՃԺԸ. 73: 2. Եսա. ԾԳ. 1:

ցուք միանական զՈրդի Հօր եւ, սակս անտանելի
գոլոյ յաղագս մարդոյ իմանալ ումեք՝ օտար բնու-
թիւն զբազումն կամ զանձն եւ զմասն՝ յորոց իւ-
րաքանչիւր ոք ի Նոցանէ յօգուտ հաստեցաւ[1]։

ԱՐԻԱՆՈՍ. Համաձայնիմ եւ ես միաանական գոլ
զՈրդին Հօր։ Այսուհետեւ հատո՛ ինձ բան եւ սակս
այգւոյն։

ԱԹԱՆԱՍ ասաց. Երկուց ազգաց զտեսակս սո-
վորեցին պատմել աստուածաշունչ գիրք, զմին
քաղցր եւ քաղցրապտուղ, ուրախարար եւ բերկրե-
ցուցիչ սրտից մարդկան. զՏէր մեր Յիսուս Քրիս-
տոս։ Եւ երկրորդ, զբանսարկուն, դառն լծոյնս
մզելով ըստ գրեցելումն, «Այգի Նոցա ի Սոդոմայ,
եւ որթ Նոցա ի Գոմորայ։ Խաղող Նոցա՝ խաղող
դառնութեան, եւ ողկոյզ Նոցա՝ ի դառնութիւն դեղ-
ւոյ. եւ սրտմտութիւն իժից անհնարին»[2]. Եւ
ժողովուրդն այգի յորջորջեցաւ. եւ արդարք բա-
զումք ուրեք այգի կոչեցան. Համայն պարզաբար,
եւ սոսկապէս։ Նա է որ ասացն. եթէ ես եմ այգի
ճշմարիտ։ Իբր զի մի՛ առ ի համանուանակոչութե-
նէն եւ փրկիչն ընդ կանխաճառեալն այգիս վարկ-
ցի. ոչ ընդ բանսարկուին ասեմ, այլ ընդ որս փոխ-
ածեալն յեգիպտոսէ տնկեաց. զի արասցէ պտուղ
խաղողոյ՝ եւ արար փուշ. ասաց յաւելադրաւ՝ եթէ
ես եմ այգի ճշմարիտ, որոյ պտուղն կեանք եւ
խնդութիւն, եւ խաղաղութիւն եւ սէր. եւ արդա-
րութիւն եւ հաւատք սիրով յաջողեալք. գիտութիւն
եւ բարեպաշտութիւն եւ սրբութիւն, եւ պարկեշ-
տութիւն եւ մարդասիրութիւն եւ հեզութիւն. եւ
ժուժկալութիւն, եւ որ այսոցիկ նման։

Եւ վասն զի շառաւիղք Նորին բարիազգի եւ
ճշմարիտ այգւոյն հանդիպին, սակս զնմանապէսն
յառաջ ընծայելոյ զպտուղ՝ զոր օրինակէ ապա
այգւոյ, ուռ՝ զԱռաքեալսն ասէ. միանգամայն իսկ

1. Ճ. ԺԹ. համփոփեցաւ։ 1. Բ. Օրէնք ԼԲ. 32-33։

և պատրաստելով զնոսա առ ի յարամնալ ի հաւատն և մի՛ բաղավազելս ի ճշմարտութենէ որպէս և զԹուդասն անպտուղս մնալ· ոյք ոմանք առոսկեցան ի սիրոյն Տեառն և ի հաւատոյ, ըստ օրինակի չառաւիղաց բացակտրեալք անկան յատուածայնոյն. վասն որոյ զգաստս ապա և քաջայօժարս զաշակերտսն յորդորէ լինել ի ձեռն ասելոյն « Ես Հայր իմ մշակ է »: փոխանակ ասելոյ, ո՛վ այդպիսիքդ, զեկուցանել կամիմ ձեզ՝ եթէ զոր ոք Հայր իմ՝ մշակէ՛, այնպիսին զիմն հատուցանէ պտուղ. ոչ թողլով օտարոտի պտղոյ ի ճշմարտն այգւոյ արտածաղկիլ չառաւիղս: Քանզի զգնալով ասէ՝ յայգւոյ, այս է, ի հոգւոյն չտեմարանս, զամենայն զփուտ[1] և զմոլախոտեալ՝ չուրջանակի բացաբառնայ[2] առ ի յոչ հեղձուցանել, զոր օրինակ և մշակն բաղձայ պտղաբերութեանն: Այդ վասն զի և որ սակս զգալի այգւոյն է բան, կարող է մեզ շահ և օգուտ լինել ի խնդիրս, սկսանելի է աստուստ առաջի արկանել զպատմութիւնն սակս նորին:

Վասն զի մնացեալ ապա այգին ի ձմեռն բարեփայելուչ ազնուականն չառաւեղօք, եկաց մնաց ժուժկալութեամբ ի սկզբունս ձմերանոյն. իսկ ձմեռն խստաբախ առաջարկութեամբ սառամանեացն ի վերայ հասեալ՝ թառամեցուցանել սկըսանի զոմանս ի տերևոց նորա. և նոցա յաղագս փտութեան տկարացեալք անկանին, ստորաբեւրեալք ի վերնագունիցն բարձրութեանց. համայն կայ և մնայ տակաւին այգին հաստրեստագոյնն չառաւեղօք ընդդիմակաց եղեալ առաջիկայ ևս ձմերանին: Ապա տակաւին ևւս ի խստաշունչ և յերկարաձիգ սառամանեացն և պարզոյ՝ վնասին ոմանք յուռոցն. սակայն և այնպէս այգին կենե-

1. Յոր. պակասէր զբառդ     2. Ճ. ԺԹ. ի բաց բառնայ:
Յուսփ. եդաք ըստ Ճ. ԺԹ:

ղուան զօրութեամբ՝ հանդերձ միացելովք ևս նորին առողջագոյնն շառաւիղք յեղրել ձմերայնոյն. և ապա եկեալ հասեալ ի գարնանայինն ժամանակ՝ որ է Նոր ամ, փախուցեալ ի ձմերայինն խոնջութենէ՝ համարի հանգստեան հանդիպել. և անդիսկ և իսկ յանկարծակի մշակն ի վերայ կացեալ, և սուր ի վերայ նոցա շարժելով նախկի, ապա ճշգրտելով նկատէ զբոլոր շառաւիղսն, և այնպէս սկսանի զճիւսեալս ի ձմերային սառամանեացն կտրել. նոյնգունակ և որ առողջն են՝ որպէս յերից կամ չորից ականց ի բաց բառնայ. իսկ մերկացեալ այգին և վիրաւորեալ սրովն՝ եկաց որպէս հիացեալ յերկիւղս հայելով, միանգամայն և արտասուելով մինչեւ յերիս աւուրս, և մխիթարութեան հանդիպեալ ապա յԱստուծոյ խնամակալութենէն, և դադարեալ յարտասուելոյն. յանկարծակի յոքնաթիւ շառաւեղաց բազմութիւն վերաբողկացեալ նոյնգունակ երեւի՝ զոր օրինակ էր և յառաջագոյն. մանաւանդ թէ ևս փառաւորագոյն և վայելչատեսակ: Արդ՝ ի կանխասացելոցս ապա եղիցի քեզ յայտներեւակ և որ սակս ճշմարիտն այգւոյ:

Իսկ արդ, Տէր մեր զօրինակ[1] բարեշառաւեղ և վայելուչն[2] այգւոյ ունելով՝ յաղագս բազմութեան աշակերտացն, և որ չուրջանակի ի գաւառացն եկելոց առ նա բազմուշբեանն սակս օգտի, որպէս զի գոլ ամբոխ յոյժ բազմութեան հաւատացելոց ի նա. և ապա փափագմամբ որ առ նա՝ զանորոշելին ունել զօրինակ ուռոցն[3] գոլով ընդ նմա. իսկ ոմանց վասն հոգեւոր ինչ օգտի ոչ կամեցեալք առանց նորա հանդիպել՝ էին ընդ նմա, այլոց դարձեալ կամե-

1. Նոտրագիր բանքդ եղծեալ էին յօր. եգաք ըստ Ճ. Ժթ. յորում և բառդ զօրինակ՝ յանզգուշութենէ գրչին գրեալ էր՝ զոր օրինակ. ուղղեցաք ըստ յունին:

2. Յօր. պակասէր և վայելուչն. եդաք ըստ Ճ. Ժթ. ի յոյնն է՝ հոյանաւոր:

3. Ճ. Ժթ. ուռոյցն:

ցեալ բժշկութեանց[1] հանդիպել. իսկ այլոց նմանապէս լուեալ եթէ Քրիստոս եկն, և ժողովեալք ի միասին ընդ այլսն՝ կամելով տեսանել զնորահրաշն տեսիլ, զԱստուած մարդկային մարմնով ընդ մարդկան շրջեալ. և միանգամայն էր ամենայն խնդութեամբ լցեալ՝ լինելով գալստեանն Տեառն. ուստի և ո՛չ գնալ ուրեք վարկպարազի[2] կարէր, որպէս և զքաջաբերն այգի՝ սակս բիւրուց գնացելոցն ընդ նմա բազմութեան, զորս և տեսանէր ինքն փափաքմամբ որ առ նա զբոլորիցն հաւաքումն։ իսկ իբրև սկսան ձմերայինն սառամանեաց շնչմունք՝ ի ծայրագոյնն փչել լերանց, առ ի փորձ հանդիսի հետևողացն նմա բազմութեանն, յանկարծակի ըստ օրինակի տերևոյ թարշամեալ անկանէին ո՛չ սակաւք, զոր ունէին ի կենարար այգւոյն։ Քանզի ոմանք սակս երկիւղի քահանայապետիցն, զի մի՛ ի ժողովըրդենէն ելցեն[3], ուրանային զկեանս իւրեանց, որպէս և այժմ իսկ տեսանեմք եղեալ զնոյն իրս. վասն զի սիրեցին որպէս և յայնժամ, նոյնպէս և այժմ կեղծաւորութեանն մարդիկ զփառս հալածողացն զեկեղեցի, քան զփառսն Աստուծոյ ընտրեալ։ իսկ այլոց ոչ զգացեալ աստուածայնոյն և հոգևոր բանից Տեառն, յետս դարձեալք՝ մեղադրութիւն ամբաստանելով զբարերարէն, և մախանս յարուցանելով ասէին. «Ո՞վ կարէ լսել նըմա». զոր օրինակ և ի մերումս առնեն ժամանակս՝ որք ո՛չ կամին հետևել ճշմարտութեանն, վասն կրելոյ զնեղութիւն փորձութեանցն հանդիսիւք ի ձեռն հաւատոց. ո՞վ է, ասեն, բաւական՝ որ կարող է պահել զաւանդութիւն պատուիրանացն Տեառն և հաւատոյ։

Նա եւ զԹուղթայի եւս տակաւին զանհաւատու-

1. Ձ. ձԹ. ոժշկութեանց (՞)։ 3. Ձ. ձԹ. ելանիցէն։
2. Ձ. ձԹ. վարկապարազի։

թիւնն՝ սաստկութիւն ձմերայնոյն յանդիմանեաց. որպէս և այժմ սիրով աշխարհի ըմբռնեալք. ոյք երբեմն աշակերտք և բարեկամք և համաճանապարհք Յիսուսի, իսկ այժմ հակառակ Յիսուսին հետեւողաց՝ զանպատեհան գործեն. ոյք և զկորբանն են հաւատացեալք, ո՛չ որպէս անգէտ եղեալ ապականեալն փտութեան որ ի նոսա, այլ զի կազմեսցէ զնոսա տէրունականօքն վարեալս՝ պատրաստագոյն լինել յաղագս Տեառն, մանաւանդ քաջանալ, քան զհակառակ թագաւորին իւրեանց զինուորել պատճառանօք աշխարհական սիրոյ: Եւ այսպիսիքս ընդ Յուդայի վարկեալ լինին [1], ըստ օրինակի տկար և անպտուղն ուռոյ [2], ոյք կտրեալք առ ի մշակէն՝ կերակուր յաւիտենականն լինին հրոյն: Համայն ձմերայինն ուղխից յերկարաձգեալ առ ճշմարիտն այգւոյ՝ որ է Տէր Յիսուս. երբեմն ապա կամեցեալ քարկոծել զնա դպրացն և փարիսեցւոց, և երկուցեալք զի մի՛ սատակեսցին յամբոխէն՝ ոյք սիրէին զՏէրն՝ դադարէին: Իսկ երբեմն կամեցեալ ունել զնա, և Յիսուսի ո՛չ տուեալ թոյլ նոցա՝ առ ի յըմբռնել զինքն՝ մինչեւ որ կանխասահմանեալ ի նմին իսկ ի Տեառնէն, յառաջ քան զյաւիտեանս ժամն և օրն եկեալ հասցէ, յորում պարտն էր նմա կրել զչարչարանսն: Դարձեալ յայլում ժամանակի, կամեցողաց ամանց քարկոծել [3] զնա, իսկ նորա խաղաղութեամբ ընդ մէջ նոցա անցեալ գնայր. և բեւրք բիւրուց ուշԱէիԱ եկեալ ի վերայ նորա փորձութիւնք, որում ընդդիմաբախ եղեալք լուծանէին և յոչինչ համարեալ լինէին:

Եկն ապա եհաս սկիզբն նորոյ ամին, յորում ժամանակի պարտն էր զՁատիկն զենուլ, ըստ տէրունականն հրամանադրութեան, լուծանել զամե-

1. Ձ. ձԹ. ունի՝ ընդ Յուդայի որդւոց լինին: 2. Ձ. ձԹ. ուռից: 3. Ձ. ձԹ. փորձէր առնել:

նայն կնճիռն անիրաւութեան, հատանելով ի վերայ նոցա աստուածայնոցն հրամանաց, և ողորմածութեամբ քաւելով զանձինս, ընտանենալ Աստուծոյ, ոչ թշնամանիլ ընդ ընկերին. և ոչ դարձեալ խնդրել զչար հակառակ ումեք մարդոյ՝ սակս հասարակաց ազգիս, այլ մաքուրս լինելով խաղաղական վարուք հրամայեաց մատուցանել զպաշտօնն։

Որպէս ի ժամանակի ապա տօնի և խաղաղութեան, եկն Տէր յԵրուսաղէմ հանդերձ աշակերտօքն, ոչ որպէս անդիտակ[1] հանդերձելոց նմա պատահմանց, այլ և յոյժ իսկ ճանաչէր. վասն որոյ և աշակերտացն յառաջագոյն ասաց զլինելոցսն, եթէ, «Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և Որդի մարդոյ մատնի ի ձեռս ծերոցն և քահանայապետից և դպրաց, և մատնեսցեն զնա հեթանոսաց, և դատապարտեսցեն զնա ի մահ»[2]. որպէս զի և անօրէնութիւն անիրաւ հաւաքելոցն երեւեսցի։

Եմուտ խաղաղութիւնն յԵրուսաղէմ. իսկ խաղաղութեանն օտարոտիք՝ տեսին և խռովեցան. քանզի թշնամի է պատերազմողաց և սպանողաց խաղաղութիւն. ուրախանալ[3] մանաւանդ սովորեցին ընդ չարս քան ընդ բարիս, գործովք և պտղաբերութեամբ խաղաղութեանն։ իսկ նոցա դիտեալք և յանկարծակի ապա սրովք ի վերայ կացեալք տեղւոյն՝ ուր էր հանդերձ աշակերտօքն Յիսուս, և նկատեալ զնա բոլորից ի սկզբանն, արկանէին ի վերայ նորա զպիղծ ձեռս իւրեանց. տակաւին եւս աշակերտացն նորա մերձ առ նմա կալով. և նա խաղաղականապէս ասէ ցսպանողսն. «Եթէ զիս խնդրէք՝ թողէք զդոսա յիրթալ»։ Եւ աշակերտացն տեսեալ զկատարածն, ոչ ելով մերձ առ նոսա զօրութեան սրբոյ Հոգւոյն, թողեալ բոլորիցն զվարդապետն և զՏէր, փախստեայ եղեն։ իսկ ընտա-

1. Ձ. ՃԹ. յաւելու՝ կան- դիտելոյ։ 2. Մատթ. Ի. 18։
3. Ձ. ՃԹ. ուրախան։

նեաց սատանայի, կալեալ զՑիսուս՝ ածեն ի Գա֊ գաթանն տեղի՝ առ ի խաչել զնա անդ. և զամե֊ նայն կատարեալ ի նա զկանխագրեալսն, վերա֊ ռեալ զնա՝ բևեռեցին ի խաչին, որպէս ի վերայ քարակի[1] այգւոյ։ Իսկ նորա մնացեալ միայն ի վերայ խաչին, որպէս զայգի երկմատնի կամ ե֊ րեքմատնի, բացատարածեալ աստի և անտի ըղ֊ ձեռսն. իսկ ուղղորդ ի վեր զգլուխն հանդերձ լանջօքն միանգամայն և ոտիւք, և բացաբարձեալ[2] ամենայն ոստոյն. և մնացելոց ուռոցն՝ վիրաւո֊ րեցելոց բևեռօքն և գեղարդամբ՝ արտասուէր սուրբ քրքմատեսիկն արեամբ։ Իսկ յանկարծակի ապա յարեաւ երեքօրեայ, ոչ տեսանելով զապա֊ կանութիւն, զոր օրինակ էր և յառաջագոյն, մա֊ նաւանդ թէ ևս փառաւորագոյն և հրաշատեսակ երևեալ, հաւատով հաստատելով զսիրտս աշա֊ կերտացն առ ի գոլ զնա կեանս. յորնաթիւ ար֊ տածաղկեցուցեալ բազմութիւն աշակերտաց զկնի յարութեանն՝ քան թէ յառաջ, ոչ ևս ի Հրեաս֊ տանի միայն, քանզի «Ձգեաց զորթ իւր մինչև ի ծով, ծածկեաց զլերինս հովանի նորա, և բա֊ րունակք նորա զմայրս Աստուծոյ»[3]։ Այս է իրա֊ գործութիւն ճշմարիտն այգւոյ՝ ըստ զօրութեան բարեպաշտութեամբ իմացեալ։

ԱՐԻԱՆՈՍՆ ասաց. Ցոյժ ուղիղ ունելով ասես[4] զայդոսիկ։ Բայց տակաւին ևս առաջի կայ ինձ խնդիր, որ յաղագս սրբոյ Հոգւոյն։ Քանզի վասն Որդւոյն խոստովանիմ ընդ քեզ հաւասար զնա գոլ Հօր ըստ ամենայնի. քա՛ւ յամենակալ զնա ելոյ։

*ԱԹԱՆԱՍ ասէ. Ոչինչ խոստովանեցեր որ ինչ բարեպաշտութեանն է պատշաճ։

1. Յուն. Χάραξ-ακος. Մոյն կամ Նեցուկ որթոյ։
2. Ձ. ձԹ. բացապարձեալ։
3. Սղմ. Հթ. 11-12
* Ասոր մինչև ցվախճան յե֊ տագայ ձևաւին (յէջ 190), որ֊ պագրեցաք ի Ձ. ձԹ. զի յօրի֊ նակին Թուղթք անկեալ էին։
4. Յօր. եգեալ էր ասեւ ասեւ. ուղղեցաք ըստ Ձ. ձԹ.։

ԱՐԻԱՆՈՍՆ. *Է՞ր վասն։*

ԱԹԱՆԱՍ *ասէ. Հաւասար հանդիպի Հօր իւրում Որդի անսխալապէս, եւ բոլորից է Տէր, որոց տիրէ Հայր։*

ԱՐԻԱՆՈՍՆ *ասէ. Ես վասն ամենակալութեանն ասացի, այլ ոչ յաղագս ոչ տիրելոյ Որդւոյ ամե-նայնի՝ որոց տիրէ Հայր իւր։*

ԱԹԱՆԱՍ. *Զի՞նչ է ամենակալ։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Առ ի զամենայն ունել։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ ապա Որդի ըստ քեզ ո՞չ ունի զամենայն։*

ԱՐԻԱՆՈՍՆ. *Բարւոք ասացեր հանդերձ պիղծքն եւ զայդ. քանզի զամենայն ունի, եւ ամենակալ է Որդի, որպէս և զՀայր իւր. վասն զի որպէս մի է Աստուածութիւնն Հօր և Որդւոյ, մի եւ ամենակալութիւնն հանդիպի։*

---

# Ժ

## ՆՈՑՈՒՆՑ ԽՆԴԻՐ ԴԱՐՁԵԱԼ

### ՎԱՍՆ ՅԱՂԱԳՍ ՍՐԲՈՅ ՀՈԳՒՈՅՆ [1]

ԱՐԻԱՆՈՍՆ *ասէ. Իսկ արդ մանաւանդ վասն զի սահմանեցեր դու ի սկզբանն համագոյական դոլ զնա Հօր և Որդւոյ, ես ընդդէմ ասեմ ունե-լով զցոյցսն ի գրոց սրբոց, զի ստացական հան-դիպի. և համառօտեալ ասացից զյաղագս այսորիկ յանդիմանացոյցն վկայութիւն։ Քանզի Յովաննէս*

1. *Այս խորագիր եդեալ է ի Թարգմանչէն և կամ ի նախկին գաղափարողէ, զի ի յոյնն ան-ընդմէջ շարայարութիւն է վերոգրելոյն։*

*ասէ զամենայն ինչ ի ձեռն Որդւոյ լինել. և ընդնոսին ի միասին արարեալ ասեմ այսու բանիւ և զՀոգին։ Եւ դարձեալ զնոյն առաքեալ առ ի փրկչէն յերկնուստ ի վերայ երկրի յօգնականութիւն աշակերտացն. ուստի՝ որ տեղւոյ ի տեղի փոփոխի, յայտ է թէ ստացական է, և ոչ անստացական գոլ զնա բնութեամբ, և փոփոխելի հանդիպեալ ասեմ։ Քանզի երանելւոյն այնորիկ բնութեան՝ Հօր ասեմ և Որդւոյ միայնոյ, որ պարփակէ զբոլորս, ամենայն ուրեք մերձ գոլով ըստ էութեանն, որպէս և յառաջագոյն առ ի քէն հաստուցաւ առ ի կանխասացեալսն, և ես հաւանեալ համեցայ՝ ոչ քեզ, այլ ճշմարտութեանն. նաեւ Աստուծոյ իսկ ասացեալ ի ձեռն մարգարէին, «Ես եմ որ հաստատեմ զորոտումն, և ստանամ զոգի»[1]. և ես վարկանիմ թէ ոչ կարես ցուցանել՝ անստացական գոյութիւն հանդիպել զՀոգին։*

ԱԹԱՆԱՍԻՈՍ *ասէ. Գրեալ է. «Եղերուք սուրբք, զի ես սուրբ եմ Տէր՝ որ սրբեմ զձեզ»[2]. և դարձեալ, փրկիչն առ Հայր իւր վասն սրբելոյ զաշակերտսն ասացեալ. «Հա՛յր՝ սուրբ արա զնոսա ճշմարտութեամբ քով»[3]։ Եւ յաղագս իւր ասէ. «Ես եմ ճշմարտութիւն»։ Ըստ այսմ ապա՝ Հօր և Որդւոյ էութիւնն սուրբ է և սրբարար, որ սրբէ զամենայն զբանականս, արժանացեալ յինքնիշխանութենէ բարուց և փութոյ. զսուրբն և զերանելին ընդունել ի հաղորդութիւն սրբութեան զգոյութիւն։ Իսկ ապա թէ ոչ է Հօր և Որդւոյ գոյութիւնն սուրբ Հոգին, է՞ր վասն ընդ ինքեանս թուակցեաց Որդին Աստուծոյ ի խորհրդածութեան։ Քանզի ասաց Տէր ցաշակերտսն. «Երթեալ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկըր-*

1. Ամովս Դ. 13։
2. Ղեւտ. ԺԱ. 44. Եզեկ. Ի. 12։
3. Յովհ. ԺԷ. 17։

տելով զնոսա յանուն Հօր, և Որդւոյ, և Հոգւոյն սրբոյ»[1]։

Իսկ եթէ ամենայն ազգ հաւատացեալ և սըրբեալ է՝ երից երանելի համանուանակոչութեամբն, յայտ է ապա, եթէ Հոգին Հօր և Որդւոյ աստուածութեանն հանդիպի, յաղագս սուրբ ելոյ զնա ըստ գոյութեան, եւ սուրբս առնելոյ զամենեսեան՝ զմատուցեալսն առ ի հաղորդութիւն նմա· որպէս ասէ առաքեալ առ որս ասէ. «Այլ լուացարուք, այլ սրբեցարուք յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և ի Հոգին սուրբ Աստուծոյ մերոյ»[2]։ Իսկ եթէ ոչ է Աստուծոյ Հօր և Որդւոյ անձնաւորութեանն, դարձեալ ասեմ, զիա՞րդ թուակցեցաւ ընդ Հօր և Որդւոյ. ուրեմն որպէս ոչ կարացեալ բաւական լինել Հօր և Որդւոյ աստուածութեանն առ սրբարարութիւն հաւատացելոց, էառ զմխիթարիչ Հոգին ճշմարտութեան՝ առ ի լրումն սրբարարութեան կոչն ի գոյութենէ նորա եղեալ. և եթէ այս այսպէս ապա կարծեսցի, ո՞րպէս անկարօտ զաստուածութիւնն՝ ինքնակատար ասեմք, ոչինչ պէտս յայլմէ ումեքէ ունել. քանզի եղիցի ապա պարտելի՝ որ կարօտեալն է բարեգործիլ առ ի զօրաւորագունէ։

ԱՐԻԱՆՈՍՆ ասէ. Զի եթէ մշտնջենաւորի աստուածութեան էր միաբանական Հոգին, ամենայն իրզք թերեւս ամենայն ուրեք մերձ էր. և ոչ առաքելութեամբ տեղւոյ յայլ տեղի երթայր։

ԱԹԱՆԱՍ ասէ· Սուրբ հրշտակք զՀոգին սուրբ ունի՞ն· այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ամենայն իրզք։

ԱԹԱՆԱՍ. Ցարաժամ ընդ նոսա ելո՞վ հանդիպին, թէ առ ժամանակ ինչ լինել զսուրբ Հոգին ընդ սուրբ զօրութիւնսն։ Արդեւք երբեմն ասիցե՞ս սուրբ զհրեշտակսն, իսկ երբեմն ոչ սուրբս.

1. Մատթ. ԻԸ. 19։ 2. Ա. Կորնթ. Զ. 11։

գալստեամբ Թերեւս սրբոյ Հոգւոյն՝ սուրբք հան-դիպին, իսկ հեռաւորութեամբ նորա յայտ է ոչ գոլ զնոսա սուրբս, ըստ ասացելոյն յԱստուծոյ. «Ոչ մնասցէ հոգի իմ ի մարդիկ ազգիս այսորիկ յաւիտեան, վասն լինելոյ նոցա մարմին»[1]։ Եւ Պաւղոս առաքեալ ասէ. «Եթէ ոք զՀոգին Քրիստոսի չունի, սա չէ՛ նորա»[2]։ Իսկ արդ եթէ պատճառք չարեաց գործոց լինի՝ ոչն լինել զՀոգին ընդ մեղուցեալս, ապա եթէ առ ի յոչ բնակելոյ ումեք զսուրբ Հոգին՝ ցուցանի ո՛չ լինել Քրիստոսի, ուրեմն սուրբ հրշտակք մեղաց պաշտօնեայք են. զի եթէ ոչ յարաժամ ունին յինքեանս զՀոգին սուրբ, զիա՞րդ անպակաս տեսանեն զփառսն Աստուծոյ, եթէ ո՛չ են սուրբքն յամենայն ժամ հաղորդք Հոգւոյն սրբոյ։

ԱՐԻԱՆՈՍ. Յարաժամ ունի՞ն սուրբ զօրութիւնք զՀոգին։

ԱԹԱՆԱՍ. Եւ սուրբ հարքն՝ որ ի սկզբանէ հաճոյ եղեալ Աստուծոյ, ընդ ինքեանս գոլ ունէի՞ն ըզսուրբ Հոգին, կամ այժմ ունի՞ն. այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍ. Եւ ունէին և՛ ունին ամենայն սուրբք զսուրբ Հոգին անորոշապէս։

ԱԹԱՆԱՍ. Ընդ սուրբ Առաքեալսն է՞ր սուրբ Հոգին ի մարմնի գոլով, այո՞ թէ ոչ։

ԱՐԻԱՆՈՍ. Անպատեհ է ասել զսուրբ Հոգին՝ ոչ գոլ ընդ Առաքեալսն։

ԱԹԱՆԱՍ. Զոյգ ի միասի՞ն շրջէին, քարոզելով զարքայութիւնն երկնից, թէ սփռեցան յերկոտասան կողմն աշխարհի։

ԱՐԻԱՆՈՍ. Բաժանեցան ի միմեանց մարմնով՝ առ ի յաշակերտել զամենայն ազգս ի քրիստո-նեանն հաւատ։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ՝ եթէ ընդ հրեշտակս է Հոգին սուրբ, և ընդ անձինս հարցն՝ որ հաճոյ ե-

1. Ծնն. Զ. 3։ 2. Հռովմ. Ը. 9։

զեն Աստուծոյ, մերձ հանդիպի Հոգին սուրբ. և առաքելոցն երկայն բաժանմամբ ի միմեանց, առ ի քարոզել զարքայութիւնն երկնից՝ մերձ էր նոցա Հոգին սուրբ. ուրեմն ապա զամենայնն լնու, ամենայն ուրեք ելով ըստ էութեանն՝ որպէս Աստուած Հայր, և միածին նորին Որդի,

ԱՐԻԱՆՈՍ. Տացի ըստ գոյութեանն ամենայն ուրեք մերձ գոլ զսուրբ Հոգին. իսկ հի՞մ ապա մարգարէն յերեսաց Աստուծոյ ասէ. «Ես Տէր Աստուած ձեր որ հաստատեմ զորոտումն, և ստանամ զոգի»[1], միթէ ո՞չ է ստացական զօրութիւն:

ԱԹԱՆԱՍ. Միշտ Հոգին սուրբ ստանի՞, եթէ միանգամ եղեւ ստացեալ ըստ քեզ:

ԱՐԻԱՆՈՍ. Մի՛ արտաքոյ ուղղակին մտաց առաջի արկաներ զհարցումնդ, քանզի նախ քան զբոլոր յաւիտեանս ասեմ ստացեալ զՀոգին:

ԱԹԱՆԱՍ. Մարգարէն ասաց՝ ստանամ, այլ ոչ արարեալ ըստ քեզ, որպէս յարաժամ ստանալով Աստուծոյ մարգարէին զեկուցանէ ձայն. ապա ուրեմն ոչ վասն սրբոյ Հոգւոյն ասէ՝ ստանայ, այլ վասն շնչոց հողմոյ, առ ի նորոգումն բոլոր ստացուածոց. եղիցի քեզ յայտնագոյն որ սակս այսորիկ գիտութիւն, եթէ առեալ ընթերցցես և որ ի կարգին: Զի թէ որպէս հաստուցերդ՝ յառաջ քան զամենայն յաւիտեանս ստացեալ զՀոգին, թերեւս ասէր. ես եմ Աստուած՝ որ հաստատեմ զորոտումն, և ստացեալ զոգի. իսկ այժմ ո՛չ այդպէս ասէ:

ԱՐԻԱՆՈՍ. Ի մասնէ ինչ զայդ ազնիւ ասես, իսկ ասելն թէ՝ «Ամենայն ինչ նովաւ եղեւ», և զամենայն ինչ բովանդակէ, որպէս զի և Հոգւոյն ընդ ամենեսեան կարգեալ, թէպէտ և մեծ զօրութիւն ցուցաւ առ ի սպասաւորութիւն:

ԱԹԱՆԱՍ. Որ բոլորից Աստուած Հայր Տեառն

1. Ամով. Դ. 13:

*մերոյ Յիսուսի Քրիստոսի ստացական, ապա ի բընութենէ հասանի ըստ քեզ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Մի՛ լիցի զայդ ասել երբեք, զոր լսեմք ի Փրկչէն ասացեալ. «Ոչ ոք ճանաչէ զՈրդի՝ եթէ ոչ Հայր, և ոչ զՀայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ Որդի»*[1]։

ԱԹԱՆԱՍ. *Որպէս էն մարդ, արտաքո՞յ՝ եթէ ի ներքս ճանաչի յիւրմէ հոգւոյն. այո՞ թէ ոչ։*

ԱՐԻԱՆՈՍ. *Առաքելոյ է ձայնն որ ասէ, այլ ումեք ո՛չ գիտել զայլոյ մարդոյ, բայց յիւրմէն ճանաչիլ միայն հոգւոյ։ Եւ զի՞արդ մարթ է ասել, ոչ այսպէս հանդիպել։*

ԱԹԱՆԱՍ. *ԶԱստուծոյ ապա ո՞վ ճանաչէ ստացական գոյութիւն, եթէ անստացական բնութիւն. զի թէ ստացական ասասցես, ապա ուրեմն յառաջ քան զստացականսս պակասէ տպա միանական խոստովանել զսուրբ՝ Հոգին Հօր և Որդւոյ։ Քանզի ամենայն ինչ զԱստուծոյ և զխորսն գիտէ Հոգին, ըստ երանելւոյն Պաւղոսի՝ որ ասէ. «Ոչ ոք ի մարդկանէ գիտէ զմարդոյ, եթէ ոչ հոգի մարդոյն՝ որ ի նմա. այնպէս և ոչ զԱստուծոյս ոք գիտէ, եթէ ոչ Հոգին Աստուծոյ. քանզի Հոգին զամենայն ինչ քննէ, և զխորս Աստուծոյ»*[2]։

ԱՐԻԱՆՈՍ. *ԶԱստուծոյ՝ որչափ կամք են Նորա, զայն գիտէ Հոգին. այս է՝ զխորհուրդս, զոր զեկուցանէ Նմա Աստուած։*

ԱԹԱՆԱՍ *ասէ. Իսկ ապա ո՞չինչ աւելի տաս Հոգւոյն քան ազգի մարդկան. վասն զի ասէ, ո՛չ առնէ Աստուած իրս ինչ՝ եթէ ո՛չ յայտնեսցէ ծառայից իւրոց մարգարէից։*

ԱՐԻԱՆՈՍ. *Ո՞չ թուի քեզ Աստուծոյ զբոլոր խորհուրդս Նորա գոլ։*

ԱԹԱՆԱՍ. *Ասին և ամենայն ազդմունք, և արարածք Նորա, երեւելիք և աներեւոյթք. ասին և*

1. Մատ. ժա. 27։ 2. Ա. Կորնթ. Բ. 10-11։

խորհուրդք Նորա, և յոլովք են՝ որ անուանին Աստուծոյ։ Ասա՛ ապա, զի մերձակայիս հոգւոյ մարդոյ՝ մարդն զիւր ինչ յայտնէ. եթէ հոգի մարդոյն՝ որ ի Նմա՝ ամենայնի գիտակ է յինքենէ զգործեցեալսն ի Նմանէ, ի Նմին իսկ ի հոգւոյն՝ յայտ է լինելով ընդ մարդոյն, առ ի զամենայն գործել։

ԱՐԻԱՆՈՍՆ. Ցինքենէ հասու է հոգի մարդոյն՝ որ ի Նմա։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ՝ հոգւոյ մարդոյն ետուր յինքենէ գիտել զամենայն. իսկ հոգւոյն Աստուծոյ և ոչ ա՛յնպէս թողացուցեր ունել զգիտութիւնն. առ այսոսիկ՝ ասա՛ ինձ. խորս Աստուծոյ զի՞նչ իմանաս։

ԱՐԻԱՆՈՍՆ. Նախ և առաջին ճշմարտասիրապէս խոստովանեա՛ ինձ, եթէ զամենայն ինչ յինքենէ ճանաչէ զԱստուծոյս Հոգին. և դարձեալ պարտ է ասել խորս Աստուծոյ զանեզրականն և զանհասականն, և զոր օրինակ էն, և զի արդէն Աստուած զայս գոլ ասեմ։

ԱԹԱՆԱՍ. Իսկ արդ եթէ խորս Աստուծոյ զանեզրականն և զանհասականն, և որպէս էն և զինչ էն՝ զայն ասես, զԱստուած ապա ի ստացական բնութենէ հասանելի ասես. և եթէ այս այսպէս է, ոչ եւս է անհասանելի Աստուած, ըստ քեզ։ Քանզի յոր ինչ և է իրաց հասանիլ ի ստացական բնութենէ Աստուած, ոչ կարէ ասիլ անստացական։

ԱՐԻԱՆՈՍՆ. Տուր ինձ վկայութիւն ի սուրբ գրոց, որպէս յաղագս Որդւոյ, եթէ միասնական հանդիպի Հոգին Աստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Գրեալ է յօրէնս Աստուծոյ. «Ո՛չ առցես զանուն Տեառն Աստուծոյ քո ի վերայ սնոտեաց. քանզի ո՛չ սրբեսցէ Տէր զայնոսիկ՝ որք առնուն զանուն Նորա ի վերայ սնոտեաց»[1]։ Եւ

1. Ելք. Ի. 7։

յաղագս Հոգւոյն գտանեմք ասացեալ առ ի փըրկչէն. քանզի ասաց առ բեեղզեբուղայ որդիսն որք թշնամանել զնա կամէին. «Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յինքն՝ խոպանանայ, և ամենայն քաղաք կամ տուն բաժանեալ յինքն՝ ոչ կացցէ. և եթէ սատանայ զսատանայ հանէ, ի վերայ ինքեան յարձակեալ է և բաժանեցաւ. զիա՞րդ կացցէ թագաւորութիւն նորա. կամ զիա՞րդ կարէ ոք զկարասի հզօրի յափշտակել, թէ ոչ նախ մտեալ ի տուն՝ կապեսցէ զհզօրն, և յայնժամ զտուն նորա աւար հարկանիցէ. իսկ ապա եթէ Հոգւով Աստուծոյ հանեմ ես զդևս»[1]: Եւ յետ սուղ ինչ ասէ. «Վասն այնորիկ ասեմ ձեզ. ամենայն մեղք և հայհոյութիւնք թողցի մարդկան, իսկ Հոգւոյն հայհոյութիւն մի՛ թողցի: Եւ որ ասասցէ բան զՈրդւոյ մարդոյ՝ թողցի նմա, բայց որ զՀոգին սուրբ հայհոյէ՝ մի՛ թողցի նմա, մի՛ յայսմ յաւիտենի, և մի՛ ի հանդերձելումն»[2]: Տեսանե՞ս, զի և աստ հաւասարապատիւ Աստուծոյ ճանաչեմք զՀոգին. քանզի որպէս՝ որ յԱստուած Հայր հայհոյէ, ո՛չ եղիցի ազատ առ ի գոլ զ՛նա յաւիտենական տանջանացն պարտաւոր, այսպէս՝ և որ ի Հոգին սուրբ հայհոյէ՝ լինի ընդ պարտաւորութեամբ յաւիտենականն մեղաց, ո՛չ թողացուցանելով յանցաւորին՝ ո՛չ յայսմ յաւիտենի, և ոչ ի հանդերձելումն: Քանզի եթէ էր ծառայ, ոչ ևս ապա որ մեղանչէր ի նա՝ յաւիտենական տանջանօքն պատուհասիւր, զոր օրինակ և որ յանստացական Աստուծոյն մեծութիւն. վասն զի որպէս աստ Որդին Աստուծոյ ասաց Հոգի Աստուծոյ, յաղագս նորին այնորիկ առեալ ուրումն ի Քրիստոսի աշակերտաց, մատն Աստուծոյ ասէ: Զմտաւ ա՛ծ ապա զոր յաղագս Որդւոյ զկանխաճանապարհորդեալն քննութիւն, և գտցես զմըշ-

1. Մատթ. ԺԲ. 25-30: 2. Մատթ. ԺԲ. 31-32:

տընջենաւոր Հոգւոյն, զի տեսեալ և մոգուցն յե-գիպտոս, գոչէին ասելով. «Այս մատն Աստուծոյ է». ոչ զայլ ինչ, բայց զմիաւանական սրբոյ Հոգւոյն զզօրութիւնն խոստովանէին, կոր ունի առ Հայր սակս մատն Աստուծոյ ձայնի, որում ընդդէմ նկատել ումեք անկարելի։ Եւ զի մի՛ ուրուք ի-մաստնանալ կամելով, ո՛չ ուղիղ ասել առ ի մո-գուցն զայսպիսիս, առաքեալքն մանաւանդ թէ որդին..... Տէրն, որպէս ուղիղ ասացեալս ի Նո-ցանէ ստուգեաց զասացեալսն առ ի Նոցանէ, յա-ղագս և ինքեանն ասելոյ. «Իսկ եթէ ես մատամբն Աստուծոյ հանեմ զդեւս»[1]։

ԱՐԻԱՆՈՍՆ ասէ. Աստուած ո՞ւր գրեալ է զՀո-գին։

ԱԹԱՆԱՍ ասէ. Ի Պետրոսէ առաքելոյ, քանզի ասաց ցԱնանիայ, «Ընդէ՞ր ելից սատանայ զսիրտ քո՝ ստել քեզ Հոգւոյն սրբոյ, ո՛չ ստեցեր մարդ-կան, այլ Աստուծոյ»[2]։......*

1. Ղուկ. ԺԱ. 20։
2. Գործք Առ. Ե. 3-5։
* Մինչև ցայս վայր տպա-գրեցաք ի Ճ. ԺԹ. ի յոյն տը-պագրին գոն այլ եւս ինն տուն և չորք տողք. որք պակասին ի հայումն։

## ԺԱ

### ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

### ԵՒ ԶԱՔԵԻ ԱՌՆ ՀՐԵԻ

# ՀԱՐՑՈՒՄՆ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ

### ԵՒ ՏՈՒՐԵՒԱՌՔ ՎԻՃՄԱՆՑ

. . . . . . . [1]

ԶԱՔԷ ասէ. Մոլորեալ էք քրիստոնեայք, Նախ և առաջին, զի կարծէք և այդ Աստուած գոլ քան զմինն միայն Աստուած. գրոց ամենայն ուժգ՛ ասացեալ, ոչ ել Աստուած. «Լուր Իսրայէղ Տէր Աստուած քո Տէր մի». և դարձեալ, «Ես եմ Աստուած առաջին, և ես յետ այսորիկ. և բայց յինէն այլ Աստուած ոչ է»։ Եւ դարձեալ, «Լուր ժողովուրդ իմ, և խօսեցայց ընդ քեզ Իսրայէղ, ես վկայեցից. ոչ գոյ ի քեզ առժամանգիւտ Աստուած, և ո՛չ երկիրպագցես Աստուծոյ օտարի. քանզի ես եմ Տէր Աստուած քո՝ որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց», և որ այդ այսպիսի վկայութիւնք։ Երկրորդ անգամ. զի և Աստուած ասէք զՔրիստոս, և չարչարելի. և ի կնոջէ, ո՛չ ամաչէք։

ԱԹԱՆԱՍ ասէ. Կամիս զի Նախ և առաջին ցուցից քեզ՝ եթէ Աստուած և զՔրիստոս գրեալ

1. Սկիզբն ճառիս՝ հանդերձ խորագրաւդ պակասէր յօրինակէն, տպագրեցաք ի Ճ. ԺԹ. յորում յետ խորագրին՝ եդեալ կային կիտանիշք, որք թուին նշանակել զպակասութիւն սկըզբան ճառիս և կամ խորագրին. այլ չունիմք ինչ ասել հաւաստեաւ ո՛ր յերկուց այսոց իցէ և ո՛րչափ ինչ։

են ի գիրս, և ոչ են երկու Աստուածք։ Եւ այսպէս, զի և չարչարելի է Քրիստոս, և ի կնոջէ, և ոչ է ամօթ խոստովանողաց զնա։

ԶԱՔԷ ասէ. Ցոյց, եթէ Աստուած և Քրիստոս, և ոչ են երկու Աստուածք։

ԱԹԱՆԱՍ. Նախկի, զի Աստուած է Քրիստոս, ուսի՛ր. և յայնժամ ծանիցես եթէ ոչ են երկու Աստուածք։

ԶԱՔԷ. Ասա՛։

ԱԹԱՆԱՍ. Կամիմ քեզ նախ յառաջինն գրոց առաջնորդել. և այսպէս ապա և յայղան ածել։

ԶԱՔԷ ասէ. Ոչ ունիս ցուցանել։

ԱԹԱՆԱՍ. Եթէ ասէ Մովսէս զԱստուծոյ ասացեալ. «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում, և ըստ նմանութեան»․ ո՞ւմ ասես՝ նորին ինքեան ասացեալ Աստուծոյ։

ԶԱՔԷ. Մի՛թէ է՞ր յայնժամ Քրիստոս, որ առ Աւգոստոսիւն ծնեալ կայսերբ։

ԱԹԱՆԱՍ. Էր միշտ Աստուած Բանն գոլով, և Քրիստոս կոչեցաւ միաւորեալ ի մարմինն։

ԶԱՔԷ. Ուստի՞ յայտ է եթէ էր։

ԱԹԱՆԱՍ. Նախկի ծանիցուք թէ ո՞ւմ ասաց. և այսպէս ապա գիտասցուք՝ թէ նա՞ էր մարմնացեալն՝ կամ ոչ։

ԶԱՔԷ. Ես ասեմ թէ ոչ է Քրիստոս՝ որում ասաց։

ԱԹԱՆԱՍ. Բնաւ ասացէ՞ ումեք Աստուած. «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան»։

ԶԱՔԷ. Ինքեան ասաց։

ԱԹԱՆԱՍ. Այդ ո՛չ ասէ, արարից մարդ, այլ՝ «արասցուք»։

ԶԱՔԷ ասէ. Հրեշտակաց ասաց։

ԱԹԱՆԱՍ. Եւ զհրեշտակս գործակի՞ցս ասես Աստուծոյ։

ԶԱՔԷ. Եւ զի՞նչ անտեղի է։

ԱԹԱՆԱՍ. Ոչ եւս ապա զամենայն իմաստութեամբ արարչագործեաց։

ՋԱՔԷ. Այո, զամենայն իմաստութեամբ արարչագործեաց։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա յայտ է թէ Նմա ասաց, «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան»։

ՋԱՔԷ ասէ. Մինթէ իմաստութիւնն Աստուծոյ Քրիստո՞ս է։

ԱԹԱՆԱՍ ասէ. Մի՛ փութար, այլ հանդերձ հեզութեամբ և երկիւղիւ խնդրեսցուք, ունելով բարի գիտակցութիւն։

ՋԱՔԷ. Ո՞րպէս ապա ունիս ցուցանել՝ թէ իմաստութիւնն Քրիստոս է։

ԱԹԱՆԱՍ. Աուդնե՞ս բնաւ՝ եթէ զամենայն ինչ իմաստութեամբ արար Աստուած։

ՋԱՔԷ. Այդպէս է գրեալ։

ԱԹԱՆԱՍ. Ապա թէ իմաստութեամբն Նորա՝ և Բանն Նորին ասի, ո՛րպէս ասէ մարգարէն, եթէ՝ « Բանիւ Տեառն երկինք հաստատեցան »։

ՋԱՔԷ ասէ. Այո՛, այլ ոչ զՔրիստոսէ ասաց։

ԱԹԱՆԱՍ. Խոստովանի՞ս ապաքէն՝ թէ իմաստութիւն Բանն է, որում ասացն, թէ «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում, և ըստ նմանութեան մերում»։

ՋԱՔԷ. Այո՛։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա մերումն ասելով՝ և զլսողին անձնաւորութիւնն արտայայտեաց. վասն զի ոչ ըստ պատկերի և ըստ նմանութեան իմում, այլ մերում։

ՋԱՔԷ ասէ. Կամիս ասել թէ այլ Աստուած էր իմաստութիւնն Աստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Աստուած այլ ըստ անձնաւորութեանն, այլ ոչ ըստ բնութեան։

ՋԱՔԷ. Իսկ ապա աստուածուհի է Քրիստոս։

ԱԹԱՆԱՍ. Աստուած ասա՛, և մի՛ հրէաբար

կարծեր յաղագս անմարմնոցն՝ զարուական և զիգականն անուանակոչութիւնս։ Նմանապէս ասել, որպէս և սակս մարմնոց, զի և անձն քո իգականն անուամբ կոչի անձն, և ոչ է արուական կամ իգական։

ԶԱՔԷ ասէ. Եւ ցոյց եթէ Աստուած ասի և իմաստութիւն Աստուծոյ առանձնակ դիմաւ։

ԱԹԱՆԱՍ. Նախկի ուսիր, զի ցուցեալ եղեւ, թէ է ինչ զօրութիւն ըստ գրոց, որում ասացն Աստուած. «Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան». և զի զզօրութիւնն զայն՝ իմաստութիւն Աստուծոյ ասէ գոլ մարգարէն. «Այսպէս զամենայն ինչ իմաստութեամբ արարեր». և զնոյն ինքն իմաստութիւնն Բանն կոչեաց, ասելով. «Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա»։ Եւ զի ոչ բան ի ձեռն ձայնական գործեաց վերաուաքեալ, և ո՛չ ոգի դարձեալ ի ձեռն շնչականն գործեաց յառաջ խաղացեալ, յայտ յանմարմինն եղոյ է զԱստուած։

ԶԱՔԷ ասէ. Եղիցի զօրութիւն ինչ իմաստութիւնն՝ որում ասաց Աստուած, «Արասցուք մարդ՝ ըստ պատկերի և ըստ նմանութեան մերում». մի՛թէ և Աստուա՞ծ է զօրութիւնն։

ԱԹԱՆԱՍ ասէ. Նմին այսմ զօրութեան ասաց Աստուած. «Ահա Ադամ եղեւ իբրեւ զմի ի մէնջ»։

ԶԱՔԷ. Մի՛թէ ասա՞ց, ահա Ադամ եղեւ իբրեւ զմի ի մէնջ՝ Աստուած։

ԱԹԱՆԱՍ. Խոստովանեալ լիցի, եթէ է ինչ զօրութիւն՝ ընդ որում սովորակի խօսի Աստուած, և նա է որ ի ձեռն Սողոմոնի ասէ. «Ցորժամ պատրաստէրն զերկինս՝ ընդ նմա էի. եթէ՝ ես էի առնովաւ պատշաճեալ, և ես էի որով ուրախանայրն»։

ԶԱՔԷ ասէ. Մի՛թէ ասա՞ց, և ես էի Աստուած։

ԱԹԱՆԱՍ. Ցառաջատեսցէ բանն հոգեւորական հասակաւ և իմաստութեամբ։

ՋԱՔԷ. Ցո՛յց թէ (է) և այդ Աստուած։

ԱԹԱՆԱՍ. Եթէ ոչ նախ ուսցի ոք զգիրն, զխղութայն ընթեռնուլ ոչ կարէ. ուստի հարկ է նախկի գրաւորիլ, և ապա այնպէս իմանալ զասացեալսն և գնշանակեալս ի ձեռն գրոյն։

ՋԱՔԷ. Ահա ծանեայ թէ է ինչ զօրութիւն, որով ուրախանայ Աստուած. մի՛ թէ զի և Աստուած՝ զեկուցե՞ր։

ԱԹԱՆԱՍ. Եթէ ասէ գիր, «Երեւեցաւ Տէր Աստուած Աբրահամու, և ասէ, ո՛չ թագուցից յԱբրահամէ ծառայէ իմմէ, զոր ես առնելոց եմ. Աբրահամ լինելով եղիցի յազգ մեծ և ի բազում, և օրհնեսցին նովաւ ամենայն ազգք երկրի». քանզի գիտէի թէ պատուիրելով պատուիրէ որդւոց իւրոց և տան իւրոյ յետ իւր՝ պահել զճանապարհս Տեառն Աստուծոյ. առնել զողորմութիւն և զիրաւունս. որպէս զի ածցէ Տէր Աստուած ի վերայ Աբրահամու զոր խօսեցաւ առ նմա։ Եւ ասէ Տէր Աստուած, (աղաղակ) Սոդոմացւոց և Գոմորացւոց յաճախեաց առաջի իմ, և մեղք նոցա մեծացան յոյժ. և արդ իջեալ տեսից թէ ըստ աղաղակի նոցա որ եկ առաջի իմ՝ վճարեսցի՞. ապա թէ ոչ՝ զի գիտացից։ Եւ դարձեալ անտի արանցն եկին ի Սոդոմ. և Աբրահամ կայր առաջի Տեառն։ Եւ մատուցեալ Աբրահամ ասէ. Մի՛ կորուսաներ զարդարն ընդ ամպարշտին, և լինիցի արդարն՝ որպէս և զամպարիշտն։ Թէ լիցին յիսուն արդար ի քաղաքին, կորուսանիցե՞ս զնոսա, և ո՞չ ներեսցես ամենայն տեղեացն՝ վասն յիսուն արդարոցն թէ իցեն ի նմա. մի՛ արասցես զբանդ զայդ, կորուսանել զարդարն ընդ ամպարշտի, և եղիցի արդարն որպէս և զամպարիշտն։ Քաւ լիցի քեզ, որ դատիդ զամենայն երկիր, մի՛ արասցես զայդ դատաստանդ։ Եւ ասաց Տէր. Եթէ գոյ ի Սոդոմ յիսուն արդար ի քաղաքին, ներեցից ամենայն տեղեացն վասն նոցա»։ Եւ այնպէս

բացաբարձեալ հինգ, և դարձեալ հինգն, եկն մինչեւ ցտասներորդն թիւ։ Զի՞ ապա ասես այսուիկ ընդ Աբրահամու խօսեալ, զնոյն ինքն Աստուած, եթէ զզօրութիւն նորա։

ՋԱՔԷ ասէ. Զնոյն ինքն զԱստուած։

ԱԹԱՆԱՍ ասէ. Ցորժամ ասէ ապա գիր. «Եւ Տէր տեղաց ի Սոդոմ և ի Գոմոր ծծումբ և հուր ի Տեառնէ յերկնից. և կործանեաց զքաղաքս նոցա, և զամենայն՝ որ շուրջ զնոքօք». յորմէ՞ ապա Տեառնէ տեղաց Տէր Աստուած ի Սոդոմ և ի Գոմոր՝ ծծումբ և հուր։

ՋԱՔԷ. Ո՛չ ասէ, թէ Տէր Աստուած տեղաց, այլ Տէր տեղաց։

ԱԹԱՆԱՍ. Մանաւանդ ի յոլով գիրս զՏէրն Աստուած գրեալ է։ Համայն տեսցուք թէ ոչ կայ Աստուած. ո՞չ է յայտ եթէ Տէրն Աստուած է՝ որ տեղաց, որ և ասացն ցՂովտ. «Ահաւադիկ արարի մեծարանս երեսաց քոց և ի բանիդ յայդ՝ ոչ կործանել զքաղաքն վասն որոյ խօսեցար»։

ՋԱՔԷ. Ո՛չ, այլ Տէր տեղաց ի Սոդոմ և ի Գոմոր ի Տեառնէ հուր և ծծումբ. այս է, հրշտակ տեղաց ի Տեառնէ Աստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Եւ արդ՝ զհրշտակն Տեառն Տէր կոչես, իսկ զզօրութիւնն նորա ո՞չ ասես Տէր։

ՋԱՔԷ. Ասացի թէ զհրշտակն Տէր ասաց՝ տեղացեալ ի Տեառնէ Աստուծոյ. միթէ զզօրութի՞ւն նորա ասաց Տէր։

ԱԹԱՆԱՍ. Ասացաք ի սկզբան բանիս, եթէ զամենայն ինչ իմաստութիւնն արար՝ գրեալ է. յայտ է՝ զի եթէ զայլն ամենայն, ապա և զայս. քանզի մի յայլոցն ամենեցունց է, և նոյն ինքն տեղալն հուր և ծծումբ ի Սոդոմ և ի Գոմոր։

ՋԱՔԷ ասէ. Տէր ապա Աստուած ի Տեառնէ յիմաստութենէն տեղաց։

ԱԹԱՆԱՍ. Այլ իմաստութիւնս այս Տէր և Աստուած գոլով, տեղաց ի Տեառնէ Աստուծոյ հուր և ծծումբ։

ՀՐԵԱՑՆ ասէ. Այլ ոչ ասաց ի Տեառնէ Աստուծոյ, այլ ի Տեառնէ. իսկ ապա իմաստութիւնն Տէր Աստուած ասի, իսկ Աստուած՝ Տէր միայն։

ԱԹԱՆԱՍ. վասն զի բոլորից խոստովանեալ է թէ պատճառ և ծնօղ իմաստութեանն՝ Տէր է և Աստուած, յաղագս այսորիկ ի վերայ Նորա զՏէրն միայն ճառեաց, և յաղագս իմաստութեանն և զԱստուածն յաւել, քանզի գիտէր զանհաւանսն ինքեան։

ՋԱՔԷ. Եւ երկու ապա Աստուածք։

ԱԹԱՆԱՍ. Երկու Աստուածք ոչ են, վասն զի մի է բնութիւնն, և նոյն կամք, և մի համաձայնութիւն. և զոր օրինակ թագաւոր ասի և թագաւորի պատկեր, և ոչ ասին երկու թագաւորք, այլ մի. այսպէս և Աստուած և Աստուծոյ պատկեր, և իմաստութիւն, և ո՛չ երկու Աստուածք։ Եւ դարձեալ, առ մարդով՝ նմանական է պատկեր, իսկ առ աստուծով՝ բնութեամբ։

ՋԱՔԷ. Զի Աստուած է Աստուած. և Աստուած և պատկերն՝ երկու Աստուածք։

ԱԹԱՆԱՍ. Երկու Աստուածք են՝ յորժամ ա՛յղ ինչ կամի սկզբնատիպն, և ա՛յղ պատկերն։ իսկ յորժամ նոյն կամք, և նոյն խորհուրդք, և նոյն գիտութիւն, և նոյն բնութիւն, մի Աստուած է սակս անփոփոխն գոյականութեան։ վասն որոյ և ինքն Մովսէս զհամաբնութիւն բարուց և զկամացն և զգոյացութեանց ցուցանելով՝ զառն և զկնոջ, մի մարմին ճառեաց. «Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ, և եղիցին երկոքեան ի մարմին մի»։ Եւ յԵրգն ասէ. «Զերիվարն և զհեծեալն ընկէց ի ծով», յաղագս ինքնութեան բնութեանն. իսկ զերիվարն և զհեծեալն, և միանաւանդ մարմինք ելով՝ եզականապէս ասաց. իսկ զանմարմինն Աստուած և զնորին Բանն՝ Աստուած ելով՝ ո՛չ յոքնականապէս կոչեաց։

ԶԱՔԷ. *Ցացուք եթէ Աստուած է և իմաստութիւնն. մի՛թէ և Քրիստո՞ս, և ի կնոջէ՞։*

ԱԹԱՆԱՍ. *Նոյն իմաստութիւնս այս, միայն և ճըշմարտապէս յԱստուծոյ գոլով Աստուած, վասն կորըստեան մարդկան, հաճեցաւ ի վերայ երկրի երեւիլ, զի ինքեամբ փրկեսցէ կամաւորութեամբ Հօր՝ զազգս մարդկան, և սրբեալ ապա զկոյսն Մարիամ՝՝ առ ի նմանէ զմարմին. զի մարմնապէս ընդ մարդկան շրջեալ, նմանոմն փրկեսցէ զազգս մարդկան։*

ԶԱՔԷ *ասէ. Հայհոյես, ո՛վ այր դու, ասելով զիմաստութիւնն Աստուծոյ յորովայնի մարդկային գոլ։*

ԱԹԱՆԱՍ. *Մի՛ վրդովիր, և ի գրոց զքեզ հաճեցից. զի ո՛չ միայն յորովայնին Մարիամու ստեղծ ինքեան տաճար աստուածութիւնն, այլ և յամենայն իսկ կնոջ որովայնի իմաստութիւնն Աստուծոյ է, որ ստեղծու և սրբէ զմարդիկ։ Վասն որոյ և առ Երեմիաս ասաց. «Նախ քան զստեղծուլ իմ զքեզ յորովայնի՝ գիտեմ զքեզ, և յառաջ քան զելանել քո յարգանդէ՝ սրբեցի զքեզ»։*

ԶԱՔԷ. *Այո՛, ստեղծու և արարչագործէ. մի՞ և ի ներքս յորովայնի՞ն գայ։*

ԱԹԱՆԱՍ. *Նախ և առաջին, զորովայն կնոջն ո՞չ ապաքէն ինքն ասի ստեղծեալ, նա՛ և զընաւ իսկ զանդամս մարմնոյն։*

ԶԱՔԷ. *Այո՛։*

ԱԹԱՆԱՍ. *Իսկ արդ, եթէ կաւ առնուլ յերկրէ արժանի արար, և ի սկզբանէ զայս ինքեանն ձեռօք ստեղծուլ որովայն, և զբովանդակ անդամն՝ որ ինչ և է մարմնոյն, հի՞մ գարշիս լսելով՝ եթէ ինքեան տաճար ստեղծ յորովայնի, որ արժանաւորեաց և ի բնէ զայս ինքեամբ գործել. և եթէ ստեղծու՝ ի ներքս եկեալ ստեղծու, զի ամենայն ուրեք գոլով աստուածութիւնն, զներքինն և զարտաքինն նմանապէս ունի։ Եւ դարձեալ արեգակնս*

այս օրերեւակ և ի մարմինս մեռելոցն լինելով, և ի վերայ հայիցն(°) և ժախահոտութեանցն փայլելով, ոչ վնասի և ո՛չ պղծի, այլ նա մանաւանդ և շահ եւս մեռելութեանցն լինի, և զժախահոտեալն ցամաքեցուցանէ՝ ծախելով զժախահոտութիւնն։ Եւ դու կարծես պղծիլ զաստուածութիւնն, և ո՛չ. մանաւանդ հաւատաս՝ եթէ սրբէ զորովայնն, բանայ զդրունս արգանդին զբոլոր, որպէս զիմաստուն ճարտարապետ, տնօրինէ, կենդանացուցանէ, կատարելագործէ։

ՋԱՔԷ ասէ. Եւ իմաստութիւնն Աստուծոյ ի վերայ երկրի՞ երեւեցաւ։

ԱԹԱՆԱՍ. Եւ զի՞նչ պքանչելի, լո՛ւր Երեմիայի ասելով. «Սա Աստուած մեր՝ ոչ համարեսցի առ սա այլ, եգիտ զամենայն ճանապարհս իմաստութեան, և ետ զնա Յակոբու ծառայի իւրոյ, և Իսրայէղի սիրեցելոյն ի նմանէ։ Յետ այսորիկ ի վերայ երկրի երեւեցաւ, և ընդ մարդկան շրջեցաւ»։

ՋԱՔԷ. Ո՛չ է գրեալ յԵրեմիան։

ԱԹԱՆԱՍ. Ընթերցի՛ր զԹուղթն Բարուքայ, զի գիտասցես և հաւատասցես, թէ գրեալ է։

ՋԱՔԷ. Գիտեմ թէ ի նմին Թղթի գրեալ է, այլ ո՛չ յԵրեմիան։

ԱԹԱՆԱՍ. ԶԵրեմիաս հանդերձ Ողբովքն և Բարուքաւ և Թղթովն ի մի գիրս գրեալ է, և սոքա չորեքեան գիրքս՝ Երեմիաս կոչին։

ՋԱՔԷ ասէ. Ո՛չ եւս տակաւին ցուցեր՝ եթէ Քրիստոս է իմաստութիւնն։

ԱԹԱՆԱՍ ասէ. Կամիմ քեզ առաջնորդել առ ի յընթերցումն, թէ Աստուած պատմեցաւ շրջեալ ընդ մարդկան. և ապա այսպէս առաջնորդելով քեզ ի գրոց, գալ և ի հանճար և յիմաստութիւն։

ՋԱՔԷ ասէ. Ի վերայ երկրի երեւեցաւ Աստուած, և ընդ մարդկան շրջեցաւ. զի ի տաճարէ սրբոյ իւրմէ երեւիւր մարգարէիցն և հայրապետաց։

ԱԹԱՆԱՍ ասէ. Յետ այսորիկ ասի երեւել ի վերայ երկրի, և ընդ մարդկան շրջել. ուստի յայտ է թէ՝ յետ օրինացն ասէ. երկի՛ր ապա այպանելովդ, զի մի՛ գտցիս յաւուրն դատաստանի ասելով, սա էր՝ զոր երբեմն ունէաք յայպն կատականաց[1]։

ԶԱԿՔԷՈՍ. Յո՛յց ի գրոց և հաւանիմ։

ԱԹԱՆԱՍ. Նախկի խոստովանեաւ թէ ծնաւ Աստուած ի վերայ երկրի, և սա է Էմմանուէլն՝ յաղագս որոյ ասաց Եսայի մարգարէ. «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ է թարգմանեալ՝ ընդ մեզ Աստուած». զի այսպէս յառաջատելով հաւանեցուցից զքեզ, եթէ ինքեան կամաւորութեամբ մեռաւ յաղագս ամենեցուն մեր։

ԶԱԿՔԷՈՍ[2]. Մի՛թէ ամենայն արդար ո՞չ է աստուած։

ԱԹԱՆԱՍ. Այդ ո՛չ ոք Էմմանուէլ, ո՛չ ոք ի կուսէ։

ՀՐԷԱՅՆ ասէ. Եւ կարե՞ս հաճել զիս՝ թէ կոյս գոլով ծնաւ Մարիամ։

ՈՒՂՂԱՓԱՌՆ ասէ. Մարգարէն ասէ. «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ է թարգմանեալ՝ ընդ մեզ Աստուած»։

ՀՐԷԱՅՆ ասէ. Ահաւադիկ աղջիկ ասի, և ոչ կոյս։

ՈՒՂՂԱՓԱՌՆ ասէ. Եւ ո՞ր նշան է աղջկան կուսի յառնէ յղացմամբ ծնանիլ, Աստուծոյ ասելով. «Խնդրեա՛ քեզ նշան ինքեան ի խորութենէ կամ ի բարձրութենէ»[3]. և մարգարէին ասելով, «Ո՛չ խնդրեցից և ո՛չ փորձեցից զՏէր». և վասն այսորիկ ի վերայ ածելով ասացեալ. «Միթէ

1. Յայս վայր տպագրեցաք ըստ ձԹ. Ճառընտրի, Թէրի գոլով բնագիր օրինակին։

2. Ճ. ձԹ. ունի՝ Հրէայն ասէ։

3. Ճ. ձԹ. ունի՝ ի խորութենէ կամ ի բարձրութենէ։

փո՞քր ինչ իցէ ձեզ աշխատութիւն հաստուցանել մարդկան, և զի՞արդ հաստուցանէք աշխատութիւն Տեառն։ վասն այդորիկ ինքնին Տէր տացէ նշան. ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ»։ իսկ արդ՝ մեծ նշանն՝ զոր ինքն Տէր փոխանակ ամենեցուն տայր, ա՞յն լինէր՝ եթէ աղջիկ[1] յառնէ յղացմամբ ծնանէր[2] որդի, որպէս զմի ոք ի մարդկանէ, ըստ հասարակաց սովորութեան։

ՀՐԷԱՅՆ ասէ. Նշան էր այս՝ թէ նախ քան զգիտել մանկանն կոչել զհայր կամ զմայր, առնուլն զզօրութիւն Դամասկոսի և զաւար Սամարեայ։

ԱԹԱՆԱՍ. Եւ ո՞ր մանուկ նախ քան զգիտել կոչել զհայր կամ զմայր, անարգեաց զչար՝ ընտրելով զբարին, և առ զզօրութիւնն Դամասկոսի և զաւար Սամարեայ, եթէ ոչ Քրիստոս միայն։ Քանզի բազմեալ նորա ի մսուրն, եկին մոգքն առաքեալք ի Հերովդէէ խնդրել և գուշակել զնա[3], և զայն ո՛չ արարին՝ զոր պահանջէր Հերովդէս։ Քանզի երկրպագեալ նմա՝ ետուն ոսկի, կնդրուկ, և զմուռս, զի կատարեսցի ասացեալն, նախ քան զգիտել մանկանն կոչել զհայր կամ զմայր, առցէ զզօրութիւնն Դամասկոսի և զաւար Սամարեայ։

ԶԱԿՔԷՈՍ. Դամասկացի՞ք էին մոգքն։

ԱԹԱՆԱՍ. Առ ի գրոց՝ որք զայսպիսին խորհին, Եգիպտացւոց՝ Եգիպտացիս կոչեն, և նոյնգունակ Քանանացւոց՝ Քանանայիս կոչեն. և որք զնոյն նմին նման Ամովրհացւոց՝ Ամովրհացիս. ուստի և մարգարէն գոչէ հակառակ ազգին ձերում ասելով. «Հայր ձեր Ամովրհացի, և մայր ձեր Քետացի»․ այսպէս և զմոգսն նմանաբար խորհօղս՝ Դամասկացիս և Սամարացիս կոչեաց։

1. Ձ. ձԹ. աղջիկն։
2. Ձ. ձԹ. ծնանիւր։
3. Ցոր. եգեալ էր՝ նմա, ուղղեցաւ ըստ Ձ. ձԹ.

ԶԱԿՔԷՈՍ. Հի՞մ. զի թէ ընաւ հանդերձեալ էր գալ Քրիստոսն, զոր ասես, ո՞չ բացայայտեաւ ասէին մարգարէքն, թէ այս ոք ինչ[1] է, այդ բանքաղութեամբ ինձ վկայութիւնս արտաբերես երբեմն զայսր մարգարէի և երբեմն զայլոյ, իսկ երբեմն զմիւսոյ. մի՛թէ ո՞չ կարէր մի ոք առ ի նոցանէ բացափայլաբար ասել, թէ հանդերձեալ է իմաստութիւնն Աստուծոյ մարմնանալ՝ և կրել զայս ինչ չարչարանս, կամ առնել զայս ինչ։

Առ այս՝ ասէ ԱԹԱՆԱՍԻՈՍ. Այնքանեաց ասացողաց ո՛չ հաւանեցայք, և զի՞որդ միոյ ուրուք ասելով[2] հաւանիք։

ՀՐԷԱՅՆ ասէ. Եւ ամենեքեանն իսկ հի՞մ ոչ այնպէս ասացին, իբր զի ոչ ումեք գայթագղել[3]։

ԱԹԱՆԱՍ. Եւ ո՞րպէս տակաւին խորհուրդ քարոզեալն լինէր՝ եթէ բացափայլապէս էր քարոզեալ։ Եւ այլազգ դարձեալ. գիտէր[4] եթէ ազգ չար էք, և ժողովուրդ լի անօրէնութեամբ, վասն այնորիկ առակօք զայսոսիկ ասաց. զի մի՛ լըւեալք՝ եթէ հանդերձեալ են հեթանոսք ժառանգութիւն Աստուծոյ ունել՝ հրկէզ առնիցէք զգըրեանն, քան թէ ընթեռնուլ հեթանոսաց և ապրել։ Զի թէ յաղագս դոյն իրաց խաչի զնա մատնեցէք, զի ասէր՝ «Բարձցի ի ձէնջ այգին և տացի հեթանոսաց արարողաց զպտուղ», զի՞որդ ո՛չ ապա և զգրեանն այրէիք. որք և զՏէրն խաչեցէք, և զնորին քարոզիչս քարկոծս արարէք. ուստի ամենայն իրօք եթէ բացայայտեաւ էր քարոզեալ՝ զնոյն առնէիք. զի թէ յետ այնչափ յայտնապէս յԵգիպտոս նշանացն և ի կարմիր ծովուն հրաշից, և կամ որ յետ այնր՝ այնքան մեծամեծն զքանիչելեաց՝ ի կռապաշտութիւն յեղափոխեցայք

1. Ճ. ձԹ. ունի՝ թէ այս ոչ ինչ է։
2. Ճ. ձԹ. ասելոյ։
3. Յօր. Իէբր. գայթագղել առեւ. երգաք ըստ Ճ. ձԹ։
4. Ճ. ձԹ. յաւելու՝ Առաքեալ։

*ասելով ցԱհարոն, «Արա՛ մեզ աստուածս»․ որպէս ապա ոչ է յայտ, եթէ այնպիսիք հանդիպեալք բարուք՝ վնոյն ամենայն իրք առնէիք։*

ԶԱԿՔԷՈՍ. *Ո՞չ ամաչես Տեառն կամ Աստուծոյ կամ զօրութեան կամ իմաստութեան խաչ ասելով։*

ԱԹԱՆԱՍ *ասէ. Զոր մարգարէքն ո՛չ ամաչեցին ասել՝ և ո՛չ ես ամաչեմ։*

ԶԱԿՔԷՈՍ. *Եւ կարե՞ս ցուցանել եթէ մարգարէքն զնա խաչիլ ասացին։*

ԱԹԱՆԱՍ. *Նախկի Մովսէս է ասելով. «Եւ տեսանիցէք զկեանս ձեր կախեալ առաջի աչաց ձերոց, և ո՛չ հաւատայցէք՝ կենաց ձերոց։ Առաւօտուն ասիցես՝ ե՞րբ լինիցի[2] երեկոյ, և ընդ երեկս ասասցես՝ ե՞րբ լինիցի առաւօտ»․ «Քանզի ի վեց ժամու խաւար եղեւ ի վերայ ամենայն երկրի մինչեւ ցինն ժամ», և յիններորդ ժամու դարձեալ լոյս երեւեցաւ՝ որպէս զի ասել տեսողացն, զիա՞րդ եղեւ երեկոյ՝ որ է խաւար, և դարձեալ զիա՞րդ եղեւ առաւօտ՝ որ է լոյս։*

ՀՐԷԱՅՆ. *Ի հնոյ ուխտէ և յօրինաց հաւանեցո՛ զիս՝ թէ պարտ է նմա խաչիլ։*

ԱԹԱՆԱՍ. *Տեսչքն ասել՝ «Զկեանս ձեր կախեալ առաջի աչաց ձերոց, և ոչ հաւատայցէք կենաց ձերոց», հնոյ օրինացն է, «Եւ առաւօտուն[3] ասասցես՝ զիա՞րդ եղեւ[4] երեկոյ, կամ ե՞րբ լինիցի առաւօտ», նոյնգունակ հնոյ ուխտին է։*

ԶԱԿՔԷ. *Այդ այս ո՛չ է խաչ և ո՛չ մահ։*

ԱԹԱՆԱՍ. *Եթէ ասէ Եսայի, «Տէ՞ր ո՞ հաւատաց լրոյ մերում, կամ բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ։ Պատմեցաք առաջի նորա որպէս զմանուկ, որպէս զարմատ ի ծարաւուտ երկրի․ ոչ գոյր նորա տեսիլ, և ո՛չ գեղեցկութիւն[5]․ տեսաք մեք*

1. Ձ. ձԹ. հաստատեցէք։
2. Ձ. ձԹ. եղիցի։
3. Ձ. ձԹ. առաւօտքն։
4. Ձ. ձԹ. եղեւ։
5. Ձ. ձԹ. փառք։

զնա և ոչ գոյր նորա տեսիլ և ոչ փառք[1]. այլ տեսիլ նորա անարգ՝ նուազեալ քան զամենայն որդւոց մարդկան»։ Եթէ ասէ դարձեալ Դաւիթ. «Ծակեցին զձեռս իմ և զոտս[2], և բաժանեցին զհանդերձս իմ յինքեանս», զի՞րդ ո՛չ իմանաս զխաչն ։

ՀՐԵԱՅՆ. Եւ ո՛չ այնպէս զմահ յիշեցեր ։

ՈՒՂՂԱՓԱՌՆ. «Այր մի ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց· զի դարձուցեալ զերեսս իւր՝ անարգեցաւ և ոչ ինչ համարեցաւ ։ Նա զմեղս մեր բառնայ, և վասն անօրէնութեանց մերոց չարչարի, և մեք համարեցաք զնա ի ցաւս և ի վէրս, և ի չարչարանս (իբրեւ յԱստուծոյ)։ Բայց նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց. խրատ խաղաղութեան մերոյ ի նմա, և նորա վիրօքն բժշկեցաք ։ Ամենեքեան որպէս զոչխարս մոլորեցաք. այր ի ճանապարհի իւրում մոլորեցաւ, և Տէր մատնեաց զնա առ մեղս մեր. և նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր ։ Որպէս զոչխար ի զենումն ածաւ, և որպէս զորոջ առաջի կտրչի անձայն, այնպէս ո՛չ բանայ զբերան իւր ։ Առ խոնարհութեան նորա դատաստան նորա բարձաւ, և զազգատոհմն նորա ո՞վ պատմեսցէ. զի բառնան յերկրէ կեանք նորա, վասն մեղաց ժողովրդեան իմոյ ածաւ ի մահ ։ Եւ տաց զչարս փոխանակ թաղման նորա, և զմեծամեծս փոխանակ մահու նորա. զի մեղս ո՛չ արար, և ո՛չ գտաւ նենգութիւն ի բերան նորա. և Տէր կամի սրբել զնա ի վիրաց իւրոց ։ Եթէ տայցէք[3] զվասն մեղացն, անձինք ձեր տեսցեն զաւակ երկայնակեաց. և կամի Տէր բառնալ ի ցաւոց անձին նորա, ցուցանել նմա լոյս և ստեղծուլ իմաստութեամբ, արդարացուցանել զարդարն՝ որ մատնեալ ծառայեաց բազմաց, և զմեղս նոցա ինքն վերացոյց ։ Վասն

1. Ձ. ԺԹ. գեղեցկութիւն ։ ի [illegible]
2. Ձ. ԺԹ. յաւելու՝ իմ, և 3. Ձ. ԺԹ. [illegible] ։ [illegible]

այնուհետեւ նա ժառանգեսցէ զբազումս, և զաւար հզօրաց բաշխեսցէ. փոխանակ զի ի մահ մատնե֊ ցաւ անձն նորա, և ընդ անօրէնս համարեցաւ. և նա զմեղս բազմաց վերացոյց, և վասն մեղաց նոցա մատնեցաւ »։

ՀՐԵԱՅՆ. Զամենայն զոր ասացեր՝ յաղագս մար֊ դոյ ասէ մարգարէն։

ԱԹԱՆԱՍ. Յաղագս բազկի Տեառն մարդ եղե֊ լոյ լսելով, զզօրութիւնն Աստուծոյ իմա՛. քանզի ո՛չ ելթէ յանդգամոց աստուածութիւնն չարադրեալ է։

ՀՐԵԱՅՆ. Լուար նմին ասելով, « Այր ի հա֊ րուածս, և գիտէ համբերել ցաւոց »։

ԱԹԱՆԱՍ. Երեւիս ինձ ո՛չ զգուշանալ ասացե֊ լոցս. լուար այժմ նմա ասելով. « Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում, և բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ. պատմեցաք առաջի նորա որպէս զմանուկ »։

ՀՐԵԱՅՆ ասաց. Բազուկն Տեառն՝ զոր ասես զօրութիւն, փոխեցաւ և եղեւ մանո՞ւկ։

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ փոխեցաւ, որ քաւ և մի՛ լիցի. այլ առեալ մարմին, և որպէս ի տաճարի ի մարմ֊ նին ելով[1] զօրութիւնն, եղեւ մարդ ըստ մարմնոյ. և միացեալ մարդ՝ էր և Աստուած ըստ հոգւոյ. և որպէս զմարդ՝ ի ծնունդն ածիւր, իսկ որպէս զԱստուած՝ բառնայր զմեղս աշխարհի ։ Քանզի՝ «Վասն այսորիկ նա ժառանգեսցէ[2] զբազումս, և զհզօրացեալ դիւացն բաժանեսցէ զաւար»․ առեալ զնոցա զօրս ի բազում ժամանակաց էր աւարեալ զմարդիկ. «փոխանակ զի ի մահ մատնեցաւ անձն նորա, և ընդ անօրէնս համարեցաւ»․ վասն զի ի մէջ երկուց աւազակաց կախեալ՝ որպէս զանօրէն[3] համարիցաւ․ ասելով օրինացն՝ թէ « Անիծեալ ա֊ մենայն՝ որ կախեալ կայցէ զփայտէ »։

ԶԱԿՔԷՈՍ ասէ· Ահա ապա անիծեալ է։

1. Ճ. Ժթ. ընելով։
2. Ճ. Ժթ. ժառանգեաց։
3. Ճ. Ժթ. զանօրէնս։

ԱԹԱՆԱՍ. «Վասն այնորիկ տացին չարք փո-խանակ մահու նորա, և մեծամեծք՝ փոխանակ մա-հուան[1] նորա, զի ընդ անօրէնս համարեցաւ»։

ՁԱԿՔԷՈՍ ասէ. Աստ աւասիկ մարգարէն ասէ, «Զազգատոհմն նորա ո՞ պատմեսցէ»։ իսկ ես զՅի-սուսին ահաւասիկ արտաբերեմ զազգն, քանզի Յովսեփայ է որդի, և եղբարք նորա Յակովբոս և Յովսէս և Սիմոն և Յուդաս, և մայր նորա Մա-րիամ։

ԱԹԱՆԱՍ. Վասն այնորիկ ասաց մարգարէն, «Զազգատոհմն նորա ո՞ պատմեսցէ», քանզի թէ ոչ ոք իցէ իմաստուն՝ ոչ կարէ ճանաչել եթէ ի Հոգւոյն սրբոյ և ի Մարիամայ կուսէ ծնանի։

ՀՐԵԱՅՆ ասէ. Հոգին սուրբ ապա փոխանակ առն խառնակեցաւ ի Մարիամ։

ԱԹԱՆԱՍԻՈՍ[2] ասէ. Տեսանե՞ս զի իմաստութիւն[3] արժան է խնդրել, որպէս զի կարող լինել իմանալ՝ եթէ Հոգին սուրբ մարմնական ինչ խառնակու-թիւն ոչ ունի։

ՁԱԿՔԷ. Դո՞ւ ասացեր ի Հոգւոյն սրբոյ և ի Մարիամայ ծնեալ։

ԱԹԱՆԱՍ. Այո ոչ ըստ խառնակման, այլ ըստ արարչականութեան. քանզի զոր օրինակ առա-ջինն մարդ՝ յԱստուծոյ և ի յերկրէ, ոչ ըստ խառ-նակման, այլ ըստ արարչութեան, նոյնգունակ լո՛ւր և իմա՛ զՔրիստոս ի Հոգւոյն սրբոյ և ի Մարիա-մայ կուսէ։

ՁԱԿՔԷ. Հի՞մ իսկ բնաւ և Քրիստոս զնա ա-սէք, զոչն թագաւորեալ և ո՛չ օծեալ յումեքէ ի մարգարէիցն։

ԱԹԱՆԱՍ. Վարդապետեցար[4] ի գրոց սրբոց՝ եթէ և զօրութիւն և՛ իմաստութիւն և՛ բան և՛

1. Ճ. ձԹ. եաղման։
2. Ճ. ձԹ. գնէ՝ Ուղղափառան-ակ։
3. Ճ. ձԹ. իմաստաբանեալ։
4. Ճ. ձԹ. ունի՝ վարդապետ-եցայ այլ....։

*բազում և՛ մանուկ և՛ մարդ և ասի և է։ Ուստի դարձեալ, եթէ և՛ իշխան և՛ թագաւոր և՛ Քրիստոս և քահանայ*[1] *և՛ մարգարէ, սոյն ինքն սա է։ վասն զի ամենայն ամենեցունց եղեւ, զի զբոլորս կեցուսցէ միայով Աստուած*[2] *և ո՛չ փոփոխելով ի բնութենէն։*

ՁԱԿԹԷ. *Ո՞րպէս կարես ցուցանել ինձ։*

ԱԹԱՆԱՍ. *Առաջին, զի իշխան և առաջնորդ է, «լո՛ւր Մովսիսի գրելով զՅակոբայ*[3] *յօրհնութիւնսն, և ասելով. «Ո՛չ պակասեսցէ իշխան ի Յուդայէ և*[4] *պետ յերանաց Նորա, մինչեւ եկեսցէ՝ որում կայն և պահին. և Նա է ակնկալութիւն հեթանոսաց»։ Եւ տես զի՞նչ էր մարգարէութիւնն. քանզի ինքն Յակովբ ի մեռանելն՝ կոչեաց զորդիս իւր ասելով. «Ժողովեցարուք, զի պատմեցից ձեզ, որդիք Յակոբայ. լուարուք Իսրայէզի հօր ձերում»․ և ժողովեցելոց օրհնեաց զՅուդայ նախասացեալն օրհնութեամբ, և զՅովսէփ զթագաւորեալն՝ ծառայ արար Յուդայի, ասելով ցնա. «Երկիր պագցեն քեզ որդիք հօր քոյ, զի ոչ պակասեսցէ իշխան ի Յուդայ, և մի՛ պետ յերանաց Նորա, մինչեւ եկեսցէ որում կայն և պահին. և Նա է ակնկալութիւն հեթանոսաց»։*

ՁԱԿԹԷ. *վասն Դաւթի ասէ, զի հանդերձեալ էր յետ ժամանակի ի Յուդայէ ծնանիլ։*

ԱԹԱՆԱՍ. *Ո՛չ ամենեւիմբ*[5], *քանզի ի Դաւթայ աճեցին իշխանքն. բայց մարգարէութիւնն ասէ մինչեւ ցայնժամ լինել իշխանաց Հրէից ազգին, յորժամ եկեսցէ՝ որում միայն, և Նա է յոյս հեթանոսաց. Դաւիթ ձեր եղեւ ակնկալութիւն Հրէից, այլ ո՛չ մեզ հեթանոսաց։*

ՁԱԿԹԷՈՍ. *Մինթէ և զհեթանոսս ասես կոչել ի կեանս, զորս ոչ կոչեաց Աստուած։*

1. Ձ. ՃԹ. Յաւելու՝ Աստուածոյ։
2. Ձ. ՃԹ. յԱստուածոյ։
3. Ձ. ՃԹ. Յակովբայ։
4. Յօր. ի լս. դնէ՝ մի։
5. Ձ. ՃԹ. ամենեւին։

ԱԹԱՆԱՍ. *Լուար*[1] *յերկրորդն սաղմոսի, մարգարէապէս ասելով Դաւթի, «Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ: Խնդրեա՛ յինէն և տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն քո, և իշխանութիւն քո զամենայն ծագս երկրի»*[2]:

ԶԱԿՔԷՈՍ. *Զայս յաղագս ինքեան ասաց Դաւիթ. «Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու, ես այսօր ծնայ զքեզ», մի՛թէ վասն Քրիստոսի՞:*

ԱԹԱՆԱՍ. *Եւ յո՞րժամ զհեթանոսս ժառանգեաց Դաւիթ:*

*ԶԱԿՔԷ. *Զագգս ասէ երկոտասանս ցեղս իսրայէղի:*

ԱԹԱՆԱՍ. *Եւ զամենայն ծագս ե՞րբ կալաւ Դաւիթ*:*

ԶԱԿՔԷՈՍ ասէ. *Միթէ Քրիստոս կալա՞ւ զամենայն ծագս երկրի:*

ԱԹԱՆԱՍ. *Ուստի՛ր, զի յամենայն Եգիպտոս և ի Պաղեստին, և ի Փիւնիկ, և յԱսորիս, և ի Կիւլիկիա, և ի Կապադովկիա, և ի Պոնտոս, և ի Հայս, և ի Սկիւթիա, և միանգամայն ընդ բոլոր տիեզերս՝ զՔրիստոս փիրնագրեմք թագաւոր:*

ԶԱԿՔԷ. *Եւ յԵգիպտո՞ս թագաւոր ասես ըզՔրիստոս, որ բացաքարոզեալն է*[3] *յԱստուծոյ: Եւ զիա՞րդ կարէ Քրիստոս ապա յԱստուծոյ ել. կամ ո՛րպէս Որդի Աստուծոյ ասես դու, որ մեղադիր լինի հարցն մերոց ի ձեռն մարգարէին, որք ընդ ճանապարհն Եգիպտացւոց գնային, ասելով. «Զի՞ կայ քո և ճանապարհին Եգիպտացւոց, ըմպել ըզջուրն Գեհոնայ»:*

ԱԹԱՆԱՍԻՈՍ. *Նմանիլ զմեզ եգիպտականն գոր-*

1. Ճ. ԺԹ. ունի՝ Ո՞չ լուար * Յաստեղանշեալ ցմիւսն չոր-
յերկրորդն սաղմոսի, այսպէս ասելով նի Ճ. ԺԹ.:
մարգարէին Դաւթի...: 3. Ճ. ԺԹ. էր:
2. Ճ. ԺԹ. ամենայն ծագս երկրի:

ծոց[1] ո՛չ կամի, բայց զփրկութիւն նոցա և զառ ի բարեպաշտութիւնն գալ կամի, զի և զբոլոր ազգաց. վասն որոյ, լո՛ւր մարգարէին Զաքարիայ ասելով. «Եւ եղիցի՝ որք միանգամ մնայցեն յամենայն ազգացն եկելոց ի վերայ Երուսաղէմի, ելանիցեն ամ յամէ երկրպագել Թագաւորին Տեառն[2] Աստուծոյ ամենակալի, և առնել զտօնն տաղաւարահարաց: Եւ եղիցի՝ որ միանգամ ո՛չ ելանիցեն յամենայն ազգաց երկրի յԵրուսաղէմ՝ երկիր պագանել Թագաւորին Տեառն Աստուծոյ ամենակալի, և սոքա ի նոսա յաւելցին: Եւ եթէ ազգն Եգիպտացւոց ո՛չ գայցէ, և ի վերայ նորա եղիցին հարուածքն, զոր հարցէ Տէր, զամենայն ազգս որք ոչ ելանիցեն տօնել զտօնն տաղաւարահարաց»:

ԶԱԿՔԷՈՍ. Այո՛, զԵգիպտացւոցն կամի ահա զփրկութիւն և զելանելն յԵրուսաղէմ, այլ ո՛չ յԵգիպտոս երթալ:

ԱԹԱՆԱՍԻՈՍ. Ցուցանել ահա ոչ ունիս, թէ ի զգալին Երուսաղէմի կամի զամենեսին պատահել միմեանց՝ ամ ըստ ամէ. վասն զի ո՛րպէս է կարողութիւն այսմ՝ լինել, իբր զի և զայնոսիկ՝ որք առ ովկիանոսիւն բնակեալք են՝ գալ ամ ըստ ամէ յԵրուսաղէմ. և զի այս տացի քեզ կարելի գոլ, ոչ այլ իմէք իրաց պարապել՝ բայց միայն այսմ: Լո՛ւր և Եսայեայ մարգարէութեանն, ի նմին իսկ յԵգիպտոս երկրպագել Աստուծոյ, ուստի բացայայտակ մարգարէանայ՝ ասելով. «Եւ ծանիցի Տէր Եգիպտացւոց, և երկիցեն Եգիպտացիք ի Տեառնէ յաւուր յայնմիկ. և մատուսցեն պատարագս, և ուխտեսցեն[3] ուխտս և հատուսցեն»:

ՀՐԵԱՅՆ[4] ասէ. Ո՛չ ասաց յԵգիպտոս՝ այլ «Ե-

1. Ձ. ԺԹ. գործոյ:
2. Ձ. ԺԹ. չունի՝ Տեառն:
3. Ձ. ԺԹ. յաւելու՝ Տեառն:
4. Ձ. ԺԹ. դնէ՝ Զաքէ:

*գիպտացիքն երկիցեն ի Տեառնէ, և մատուսցեն[1] Տեառն ուխտս, և հատուսցեն», ո՛չ յԵգիպտոս, այլ յԵրուսաղէմ։*

ԱԹԱՆԱՍ. *Եւ ո՛չ զայդ ունիս ցուցանել՝ թէ յԵրուսաղէմ ասէ. բայց զի մի՛ զքեզ բանակռիւ կացուցից, լո՛ւր նմին իսկ մարգարէին յայտնաբար զեկուցանելով. «Յաւուր յայնմիկ եղիցին հինգ քաղաք յԵգիպտոս՝ որ խօսիցին զՔանանացւոց լեզուն, և երդնուցուն յանուն Տեառն. քաղաք Սեդեկ կոչեսցի մի քաղաքն։ Յաւուր յայնմիկ եղիցի սեղան նորա Տեառն, և եղիցի նշան յաւիտեանս Տեառն[2] յերկրին Եգիպտացւոց։ Զի աղաղակեսցեն առ Տէր վասն նեղչաց իւրեանց, և առաքեսցէ նոցա Տէր այր՝ որ փրկեսցէ զնոսա։ Եւ յայտնի եղիցի Տէր Եգիպտացւոց, և երկիցեն Եգիպտացիք ի Տեառնէ, և ծանիցեն Եգիպտացիքն զսուրբն Աստուած յաւուր յայնմ[3]. և արասցեն պատարագս, և ուխտեսցեն Տեառն ուխտս, և հատուսցեն։ Եւ հարցէ Տէր զԵգիպտացիս մեծաւ հարուածովք, և շարժեսցէ զձեռագործս նոցա, և բժշկեսցէ զնոսա բժշկութեամբ, և դարձցին առ Տէր, և լուիցէ նոցա և բժշկեսցէ»։*

ՋԱԿՔԷՈՍ. *Առ այդոսիկ ընդդէմ ասել ինչ ո՛չ ունիմ։*

ԱԹԱՆԱՍ. *Եղիցի քեզ և ի մեծագոյնսն զնոյն ձայն թողուլ. որպէս զի և դու կոչեսցիս նորն անուամբ՝ որ է տուեալ ի վերայ երկրի։*

ՋԱԿՔԷ. *Եւ գո՞յ այլ մեծ անուն քան զոր մեքս ունիմք՝ Իսրայէղացիք կոչեցեալք։*

ԱԹԱՆԱՍԻՈՍ *ասաց. Լուր Աստուծոյ ի ձեռն մարգարէին Եսայայ դարձեալ ասացեալ. «Որոց ծառայեսնն ինձ՝ կոչեսցի նոցա անուն նոր, որ օրհնեսցի ի վերայ երկրի»։*

1. Ճ. ԺԹ. յաւելու՝ պատարագս և ուխտեսցէն։
2. Ճ. ԺԹ. Տէր։
3. Ճ. ԺԹ. յայնմիկ։

ԶԱԿԻԵՈՍ. *Եւ ո՞ր է Նորին անուն։*

ԱԹԱՆԱՍ. *Եթէ արժանասցիս կոչիլ քրիստոնեայ՝ ծանիցես զնորին անուն։*

ԶԱԿԻԵՈՍ. *Խոստացար ցուցանել՝ թէ և Քրիստոս է և թագաւոր և քահանայ։*

ԱԹԱՆԱՍ. *Օծանի Քրիստոս ո՛չ երկրաւոր իւղով, այլ Հոգւով Աստուծոյ, ըստ մարգարէութեանն Դաւթի, որ ասէ. «Վասն այսորիկ օծ զքեզ Աստուած՝ Աստուած քո, իւղով ուրախութեան առաւել քան զընկերս քո». բայց ոչ ըստ ընկերաց քոց կայ. վասն զի ընկերք Նորա երկրաւոր իւղով օծանին, իսկ Նա Հոգւով սրբով, որպէս և գրեալ է. «Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս»։*

ԶԱԿԻԵ *ասաց. Իսայիաս էր որ զայն ասէր. մի՞ Աստուա՞ծ Քրիստոս*[1]*։*

ԱԹԱՆԱՍ. *Այղ զոր ասէրն Եսայիաս՝ յերեսաց Քրիստոսի ասէր. լո՛ւր ապա Նորին իսկ բոլոր մարգարէութեանն, զի ծանիցես թէ ո՛չ այլում*[2] *ումեք մարգարէութիւնն պատշաճի, բայց Քրիստոսի միայն. քանզի ասէ այսպէս*[3]*. «Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս. *աւետարանել աղքատաց առաքեաց զիս*, բժշկել զբեկեալս սրտիւք, քարոզել գերեաց զթողութիւն, և կուրաց տեսանել, կոչել ամ Տեառն ընդունելի և օր հատուցման Աստուծոյ մերոյ. մխիթարել զամենայն սգաւորս, տալ սգաւորաց Սիոնի փառս. փոխանակ մոխրոյն՝ օծումն ուրախութեան, և սգաւորացն պատմուճան ուրախութեան՝*[4] *փոխանակ ոգւոցն*[5] *ձանձրութեան։ կոչեսցին ազգ արդարու-*

1. Ճ. ձԹ. միթէ Աստուած Քրիստոս։
2. Ճ. ձԹ. այլ ումեք։
3. Ճ. ձԹ. չունի՝ այսպէս։
4. Ճ. ձԹ. գնէ՝ փառաց։
5. Ճ. ձԹ. ոգւոյն։

* Յաստղանշէդ ցմիւսն չունի Ճ. ձԹ.։

թեան՝ տունկ Տեառն ի փառս, և շինեսցեն և նորոգեսցեն զքաղաքս աւերեալս, անապատացեալս յազգաց[1]։ Եւ եկեսցեն այլազգիք հովուել զոչխարս քո, և օտարածինք մաճակալք և այգեգործք։ Բայց դուք՝ քահանայք Տեառն կոչեսջիք. պաշտօնեայք Աստուծոյ մերոյ անուանեսջիք, զզօրութիւնս ազգաց կերիջիք, և մեծութեամբ նոցա սքանչելի լինիջիք[2]։ Այսպէս զերկիրն երկրորդ ժառանգեսցեն, և ուրախութիւն յաւիտենից ի վերայ գլխոց նոցա։ Քանզի ես եմ Տէր՝ որ սիրեմ զարդարութիւն, և ատեմ՝ զյափշտակութիւն յանիրաւութենէ »։

ԶԱԿՔԷՈՍ[3]. Այդ ամենայն վասն ժողովրդեան մերոյ ասի։

ԱԹԱՆԱՍ. Ուրախութիւն յաւիտենական ի վերայ գլխոց ձերոց ոչ եղեւ և ոչ լինի։

ԶԱԿՔԷ. Ո՛չ ով բանավիճութեամբ թշնամանէ։

ԱԹԱՆԱՍ. Ո՛չ թշնամանեմ, որ քաւ և մի՛ լիցի. այլա թէ ունիս ցուցանել՝ թէ եղեւ ձեզ ուրախութիւն յաւիտենական, որոց և զքաղաքն կորուսեալ և զտաճար, և զօրինաւորութիւն, և զգաւառ, և զտապանակ, և զսրբութիւնս, և զքերովբէս, և զքաւարանն, և որչափ դու իսկ ուսար, ասա՛։

ԶԱԿՔԷՈՍ. Այդ հանդերձեալ է այս ամենայն լինել, բայց չեւ է ժամանակ։

ԱԹԱՆԱՍ. Սակայն և դու ինքն խոստովանի՞ս օծանիլ Հոգւով սրբով. և զի ոչ և ի միոյ վերայ նախ եղելոցն թագաւորացն և մարգարէիցն կատարեցաւ մարգարէութիւնն Եսայեայ։

ԶԱԿՔԷՈՍ. Եսայիաս ապա ո՞չ ունէր Հոգի[4]։

ԱԹԱՆԱՍ. Ունէր զՀոգին սուրբ Աստուծոյ, ոչ միայն Եսայիաս, այլ և ամենայն մարգարէք Աս-

1. Ձ. ՃԹ. ազգս։
2. Ձ. ՃԹ. լինիջիք։
3. Ձ. ՃԹ. Հրեայն ասէ։
4. Ձ. ՃԹ. ունի այսպէս. Եսայիաս ապա ունէ՞ր զՀոգին։

տուծոյ. բայց զայժմուս ասացեալս առ ի նմանէ ոչ սակս ինքեան ասաց Եսայիաս, այլ վասն այլոյ ուրումն։

ԶԱԿԹԷՈՍ. Եւ ես ասեմ՝ թէ յաղագս այլոյ ուրումն ասաց, այլ ոչ վասն Քրիստոսին քո։

ԱԹԱՆԱՍ. Քրիստոսի ապաքէն օծանիլ ասի՞ ի Հոգւոյն սրբոյ։

ԶԱԿԹԷ. Այո՛։

ԱԹԱՆԱՍ. Ե՛րթ ապա յԵրուսաղէմ, և ուսիր հարցեալ ի նմա, թէ ո՞ւր էջ Հոգին սուրբ. և յո՞յր վերայ, և[1] երբ. զի լուիցես՝ թէ ի Յորդանէս՝ որ ի Մարիամայն ծնեալ առ Աւգոստիւ[2] կայսերբ։

ԶԱԿԹԷՈՍ. Եւ ունի՞ս հաւատալ աւետարանացն քոց։

ԱԹԱՆԱՍ. Վասն այնորիկ և տեղին քեզ ասէ և ժամանակն, զի երթեալ ի տեղին՝ առցես զիրացն հանգամանս, և ծանիցես լցեալ զմարգարէութիւնն ի վերայ ամենայն հաւատացելոց ի՛ նա. զուրախութիւն յաւիտենական տեսանելով ի վերայ գլխոց նոցա, որք և ասիցեն. «Նշանեցաւ ի մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց»։

ԶԱԿԹԷՈՍ. Ո՛չ վասն ձեր քրիստոնէից ասէ այդ, այլ յաղագս մեր իսրայէղացւոց։

ԱԹԱՆԱՍ. Լո՛ւր և որ ի կարգին մարգարէութեանն[3], զի գիտասցես թէ վասն մեր ասէ։

ԶԱԿԹԷ. Ասա՛։

ԱԹԱՆԱՍ. Այսպէս. «Եւ եդից նոցա ուխտ յաւիտենական. և ծանիցի ի մէջ հեթանոսաց զաւակ նոցա»։

ԶԱԿԹԷՈՍ. Զաւակ Հրէից ծանիցի ի մէջ հեթանոսաց։

ԱԹԱՆԱՍ. Ճշմարիտ ասես. քանզի սուրբ Առա-

1. Ճ. ձԹ. ունի՛ կամ։
2. Ճ. ձԹ. Աւգոստոսի։
3. Յոր. մարգարէութեան. եդաք ըստ Ճ. ձԹ։

քեալքն զաւակք Աբրահամու գոլով, ծանուցան մեզ հեթանոսաց. և թոռունք նոցա ի մէջ ժողովրդոց՝ մարտիրոսք սուրբք։ վասն զի «Ամենայն որ տեսանէ զնոսա՝ ճանաչէ զնոսա, եթէ սոքա են զաւակ օրհնեալ ի Տեառնէ. և ուրախութեամբ յաւիտենականաւ[1] ուրախասցին ի Տէր»։

ԶԱԿԹԷՈՍ. Ուրախացեալք մեք եմք ի Տէր։

ԱԹԱՆԱՍ. Եւ դարձեալ ասեմ. ուրախութիւն յաւիտենական ձեր ո՞ր է, երկրի ձերոյ անապատացելոյ, և քաղաքաց ձերոց հրկէզ եղելոց. վասն որոյ պարտ է մանաւանդ միշտ սգալ· այո՞ թէ ոչ, ասա՛[2]։

ԶԱԿԹԷՈՍ. Այդ[3] ասացի թէ հանդերձեալ է լինել, այդ և չինել քաղաքին։

ԱԹԱՆԱՍ. Տեսցուք ապա և զըստ կարգին՝ թէ ոչ եղեն, քանզի ասէ այսպէս. «Ցնծասցէ անձն իմ ի Տէր, քանզի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան, և պատմուճանաւ[4] ուրախութեան զարդարեաց զիս». և եթէ գիտէիր, զի որք ի Քրիստոս մկրտեցաք, զՔրիստոս զգեցաք, և պատմուճան ուրախութեան ընկալաք զՀոգւոյն սրբոյ շնորհս. և որպէս մայր զփեսայ ունիմք զնշան խաչին. և որպէս հարսն զարդարեցուք գործոցն զարդուք, և որպէս երկիր որ աճեցուցանէ զծաղիկս իւր, եկեղեցի զլուսաւորեալսն յինքեան ծաղկեցուցանէ ամ ըստ ամէ. և որպէս զբուրաստան բուսուցեալ բողբոջեցուցանէ զսերմանիս իւր, այս է՝ զնորակոչս ի հաւատն։ Այսպէս ծագեսցէ Տէր զարդարութիւնն՝ որ է օր փրկութեան և ցնծութեան, զյարութիւնն առաջի ամենայն հեթանոսաց։

ԶԱԿԹԷ. Քեզ ապա լինքեան՝ որպէս կամիս՝ իմանաս, և զասացեալ ամսագլուխն քարոզես։

1. Ձ. ձԹ. յաւիտենականն։
2. Ձ. ձԹ. չունի՝ ասա։
3. Ձ. ձԹ. չունի՝ այդ։
4. Ձ. ձԹ. պատմուճանն։

ԱԹԱՆԱՍ. Վասն զի տակաւին եւս անհաւան լինիս, լո՛ւր եւ որ ըստ կարգին, և զարհուրեալ ասա՛մ զճշմարիտն: «Վասն Սիոնի ո՛չ լռեցից, և վասն Երուսաղէմի ո՛չ անսացից, մինչեւ ելցէ որպէս ըղլոյս արդարութիւն իմ, և փրկութիւն իմ իբրեւ զջահ[1] բորբոքեալ: Եւ տեսցեն հեթանոսք զարդարութիւն քո, և ամենայն ժողովուրդք[2] զփառս քո. և կոչեսցի քեզ անուն նոր, զոր Տէր անուանեսցէ զնա: Եւ եղիցես պսակ վայելչութեան ի ձեռին Տեառն, և խոյր թագաւորական[3] ի ձեռին Աստուծոյ քոյ»:

ՁԱԿԹԷ. Ցաղագս ո՞յր ասես ասել զայդ:

ԱԹԱՆԱՍ. Վասն Երուսաղէմի. քանզի ոչ եւս Հրէից է քաղաքն, այլ քրիստոնէից քաղաք, նորո՛վ անուամբ կոչեցելոց. զի թէ երթիցես անդր՝ իմասցիս Քրիստոսի քաղաք զնա եղեալ, և բնակարան մենացելոց կուսանաց՝ արանց և կանանց. և զՔրիստոսի յարութիւնն սուրբ, և զամենայն թագաւորս՝ բերելով զփառս իւրեանց, և զհեթանոսս ամենայն ժողովրդովք զարդարութիւն նորա, որով և աւետարանելով զարդարեցաւ:

ՁԱԿԹԷՈՍ. Ո՛չ եւս ապա հրկէզ կամ անարդ է:

ԱԹԱՆԱՍ. Կործանեցաւ և անպատուեցաւ՝ Հրէից. բայց չէն և փառաւորեալ է՝ քրիստոնէից:

ՁԱԿԹԷ ասաց. Մարգարէութիւնն[4] ասէ. «Եւ եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց, և այլազգիք մաճակալք և այգեգործք: Բայց դուք՝ քահանայք Տեառն կոչեսջիք, և պաշտօնեայք Աստուծոյ[5] անուանեսջիք, զզօրութիւն ազգաց կերիջիք, և մեծութեամբ նոցա սքանչելի լիջիք»: Տեսանես զի մեզ Հրէից զխոստումն աւետեաց խոստանայ:

1. Ծ. ԺԹ. պչախ:
2. Ծ. ԺԹ. գնէ՝ թագաւորք:
3. Ծ. ԺԹ. գնէ՝ թագաւորութեան:
4. Ծ. ԺԹ. Մարգարէն:
5. Ծ. ԻԹ. յաւելու՝ ձերոյ:

ԱԹԱՆԱՍ. Զայսոսիկ ճշմարտապէս ասեա. քանզի այսպէս և աւետիքն Աստուծոյ կատարին, զոր խոստացաւ՝ երդուեալ Աբրահամու յանձն իւր, ասելով. «Օրհնելով օրհնեցից զքեզ, և բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո որպէս զաստեղս երկնից, և որպէս զաւազ առ ափն ծովու». «Երդուաւ և Դաւթի ճշմարտութեամբ և ոչ ստեաց նմա». այլ և զաւակ նորա նստի մինչև ցյաւիտեանս յաթոռ նորա։ Քանզի կանխայայտեալ է՝ թէ առ ի Յուդայէ ծագեաց Տէր մեր Յիսուս Քրիստոս, և նովաւ աւետիքն ամենայն կատարին. և ահա այլազգիքն են՝ որ հովուեն զբանաւոր ոչխարս նորա. և օտարածինք մանկալք՝ մշակելով զեկեղեցի նորա։ Իսկ ինքն հանդերձ աշակերտօքն զքահանայութիւնն ունի, ուտելով զզօրութիւն հեթանոսաց. քանզի, «Ես, ասէ յաւետարանին, կերակուր ունիմ ուտել, զոր դուք ոչ գիտէք». և մեծութեամբ հեթանոսաց պքանչելի լինի։ Զի տես զճարտասանս՝ և զիմաստասէրս և զարարօղս՝ զփարթամութիւն բանիցն մատուցանելով, և հրաժարեալք ի կռապաշտութենէ գան առաջի բանին շնորհաց. և ձեր տեսեալ զմեռեալս յարուցանելով՝ ոչ հաւատայցէք, այլ մեռայք. իսկ հեթանոսք՝ հանդերձ մեռելովքն յարեան։

ԶԱԿԿԵՈՍ. Եւ զի՞նչ մեծ է մեռեալս յարուցանել. մոգքն ո՞չ յարուցին մեռեալս՝ և այնպիսի արարին նշանս, իբրև զի և Մովսիսի ընդդիմանալ։

ԱԹԱՆԱՍ. Եւ քանզի նշանս արարին մոգքն և հակառակ կացին Մովսիսի, ո՞չ ինչ մեծ արար Մովսէս։

ԶԱԿԿԵՈՍ. Մովսէս թէպէտ և արար մեծամեծ նշանս, ո՛չ ի նշանացն հաւատացեալ լինի Աստուած, այլ ի ճշմարտութենէն։

1. Յոբ. Էր՝ ըՀ Հորփասանս. եղաւ ըստ Ճ. ԺԹ։

ԱԹԱՆԱՍ. Եւ զի՞նչ մեծագոյն քան զՔրիստոսին ճշմարտութիւն. վասն զի ո՞ր մոգ նախ քան զծնանելն կարաց նշանս առնել և արուեստս։

ՁԱԿԹԷՈՍ[1]. Եւ Քրիստոս զո՞ր նշանս արար նախ քան զծնանելն։

ԱԹԱՆԱՍ ասաց. Զմարգարէսն արար սակս ինքեան ասել, «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի», և այղ այսպիսի բեւրս. այգ և ի նմին իսկ յարգանդին գոլով՝ զՅովաննէս արար խաղտալ և ցընծալ յորովայնէ մօր իւրոյ։

ՁԱԿԹԷՈՍ. Զհաւատամ ունտարանացն։

ԱԹԱՆԱՍ. Իսկ ապա և ո՛չ զի Մարիամու որդի էր հաւատաս։

ՁԱԿԹԷՈՍ. Ի նմին իսկ յԵրուսաղէմ ծնաւ, և գիտեմ թէ Մարիամու[2] որդի էր։

ԱԹԱՆԱՍ. Եւ ի նմին ապա յԵրուսաղէմ՝ Եղիսաբէթ զՅովաննէս յղացաւ, յորժամ Քրիստոս արար նմա ցնծալ և խաղտալ. և իսկ և իսկ ծընեալ, զմոգսն յարեւելից ձգեաց յերկրպագութիւն նմա. քանզի ոչ ոք ի մոգուց ծնեալ՝ արար յերկինս երեւել աստեղ, և զայլ եւս մոգս[3] եկեալ երկրպագել նմա։

ՁԱԿԹԷ. Եւ ուստի՞ս ապա հաճել զիս՝ եթէ մոգք ի ծնանելն նորա՝ եկեալ երկրպագեցին նմա։

ԱԹԱՆԱՍ. Ի նոյն[4] յիրացն հաւանեա՛[5], և հա՛րց՝ եթէ է՞ր վասն Հերովդէս կոտորեաց զ՚ի Բեթղահէմ զմանկտին. և ուսեալ զպատճառն՝ ծանի՛ր՝ թէ յաղագս Քրիստոսի՝ մոգուցն գալով և ասելով. «Ո՞ւր է որ ծնաւ արքայն Հրէից. զի տեսաք զաստղ նորա յարեւելս, և եկաք երկիր պագանել նմա». ուստի և գերեզմանք մանկտւոյն յայտ յանդիման են մինչեւ ցայսօր։

1. Ձ. ձթ. Հրեայն ասէ։
2. Ձ. ձթ. Մարեմայ։
3. Ձ. ձթ. ունի՛ էս զայս մոգս։
4. Ձ. ձթ. յաւելու՝ ինքն։
5. Յօր. հատանէր. ուղղեցաւ ըստ Ձ. ձթ.

ԶԱԿՔԷՈՍ. *Ո՛չ հաւատամ թէ այդպէս եղեւ. կամ վիճո՞րդ ո՞չ կարաց Քրիստոսն քո՝ մանկունսն օգնել՝ զի մի՛ մեռցին։*

ԱԹԱՆԱՍ. *Զի թէ այպանես, ընդդէմ դիր ըղ-մանկտին այնոցիկ՝ որոց առ ի փարաւոնէն սպա-նելոյ. « Ցորում ժամանակի ծնաւ և Մովսէս ». և անդ[1]՝ մի՛թէ ո՞չ կարէր Աստուած փրկել զման-կըտին Եբրայեցւոց. ապա թէ անդ կարող ելով՝ ո՛չ փրկեաց, և աստ Քրիստոս կարող ելով[2], ո՛չ փրկեաց։ վասն զի նոյն ինքն էր որ և յայնժամ և այժմ երկայնամտեաց։*

ԶԱԿՔԷՈՍ. *Այդ առ Մովսիսիւ վրէժխնդիր ե-ղեւ Աստուած մահու մանկտւոյն՝ զոր էածն ի վե-րայ Եգիպտացւոցն։*

ԱԹԱՆԱՍ. *Զի թէ ոչ էին[3] անզգայք Հրեայքն, առաւել ես քան զԵգիպտացիսն կրեցին չարչա-րանս ի սաստկակոծ սատակմանն Երուսաղէմի։ Եւ Եգիպտացիք դարձեալ զմի կամ զերկու ամս չար-չարեցան, իսկ Հրեայք՝ ի Քրիստոսէ մինչեւ ցայժմ յար և հանապազ տանջին. տանջեսցին դարձեալ և յապառնին հանդերձեալս[4], եթէ ո՛չ ապաշխարես-ցեն[5]։*

ԶԱԿՔԷՈՍ. *Թէպէտ և հաւատացից Քրիստոսի, որպէս քահանայի նմա հաւատամ, մի՛թէ որպէս Աստուծո՞յ. զի դու իսկ ասացեր, թէ հանդերձ աշակերտօքն զքահանայութիւնն ունի։*

ԱԹԱՆԱՍ *ասէ. Այդ ասացի՝ թէ նա է և քա-հանայ և Տէր և Աստուած և հովիւ։*

ԶԱԿՔԷ. *Զի թէ Աստուած է, հովիւ խոստովա-նեալ է. վասն զի ժողովրդեանն է հովիւ, որպէս և մարգարէն ասէ. « Որ հովուեսդ զԻսրայէղ՝*

1. Յօր. եղեալ էր՝ ու. ուղղեցաւ ըստ Ճ. ձԹ.։

2. Ճ. ձԹ. գոլով։

3. Ճ. ձԹ. ունի՝ էին... կրէ-ցին չարչարանս։

4. Ճ. ձԹ. ունի՝ հանդերձեալ յաւիտեանն։

5. Ճ. ձԹ. ապաշխարեցեն։

նայեա՛, որ առաջնորդես՝ որպէս խաշին Յովսե֊փու »։

ԱԹԱՆԱՍԻՈՍ. Նոյն ինքն մարգարէն՝ և Տէր զնա ասաց և Աստուած և քահանայ։

ՁԱԿԹԷՈՍ. վերծանեա՛ ինձ, ո՞ւր գրեալ է։

ԱԹԱՆԱՍ. Ի հարիւրորդ իններորդ սաղմոսին ասէ այսպէս. « Ասաց Տէր՝ Տեառն իմում, նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պա֊տուանդան ոտից քոց. գաւազան զօրութեան ա֊ռաքեսցէ քեզ Տէր ի Սիոնէ, և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց։ Ընդ քեզ[1] ինձ սկիզբն ա֊ւուրցն զօրութեան ի պայծառութիւն սրբոց քոց. յարգանդէ յառաջ քան զարուսեակ[2] ծնայ զքեզ։ Երդուաւ Տէր, և ոչ եւս զղջասցի՝ թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդե֊կի »։ Իսկ Սողոմոն ոչ քահանայ եղեւ, և ոչ բնաւ իսկ հաճոյ Աստուծոյ ի բոլոր սրտէ ի կեանս իւր. այլ նա եւ չա՛ր եւս արարեալ առաջի Տեառն՝ մե֊ռաւ. զի՞արդ ապա քահանայ յաւիտեան մնայ։

ՁԱԿԹԷՈՍ. Իսկ ապա Քրիստոսի՞ ասաց Դաւիթ՝ « Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց »։

ԱԹԱՆԱՍ. Դաւիթ ասաց, թէ « Ասաց Տէր », այս է՝ Աստուած, « Տեառն իմում » Քրիստոսի, « Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց »։

ՁԱԿԹԷՈՍ. Եւ Քրիստոս ընդ աջմէ Աստուծո՞յ նստի։

ԱԹԱՆԱՍ. Զայդ ասէ մարգարէն։

ՁԱԿԹԷ. Իսկ ապա մեծագո՞յն[3] է Քրիստոս քան զօրհնեալն։

ԱԹԱՆԱՍ. Քա՛ւ, և մի՛ լիցի զայդ ասել։

ՁԱԿԹԷ. Եւ զի՞արդ ապա ընդ աջմէ Նորա նստի։

1. Ձ. ձթ. յաւելու՝ է։
2. Ձ. ձթ. զօրաւորէ։
3. Ձ. ձթ. յաւելու՝ ազէմն։

ԱԹԱՆԱՍ. *Որպէս զՈրդի միածին Հօր իւրոյ։*

ԶԱԿՔԷՈՍ. *Եւ զի՞նչ տակաւին քահանայ է՝ եթէ ընդ աջմէ Նստի։*

ԱԹԱՆԱՍԻՈՍ. *Զի ո՛չ միայն քահանայ է, այլ և Աստուած. վասն զի յաղագս այնորիկ Աստուած գոլով ըստ բնութեան, և էառ մարմին ի Մարիամայ. զի եղեալ մարդ, և զյաղագս մերն պատարագ յանձն առնլով[1], եղիցի քահանայ յաւիտեան ըստ կարգին Մեղքիսեդեկի, որ ոչ ըստ կարգա[2] մարմնական պատուիրանի եղեւ քահանայ, այլ զի[3] Հոգւովն սրբով օծեալ՝ եղեւ[4] քահանայ յաւիտեան։*

ԶԱԿՔԷՈՍ. *Եւ ո՞րպէս կարէ որ առ Պոնտացւով Պիղատոսիւ մեռեալ, գոլ յաւիտենական քահանայ։*

ԱԹԱՆԱՍ. *Ոյք մեռեալ են խորհրդովք իւրեանց, զմահն նորա տեսանեն. բայց կենդանիք զյարութիւնն նորա նկատեն։*

ԶԱԿՔԷՈՍ. *Եւ ո՞վ է կարացող զիս հաճել՝ եթէ յարեաւ։*

ԱԹԱՆԱՍ. *Մարգարէն Դաւիթ՝ ասելով ի սաղմոսին. «Ոչ թողցես զանձն իմ ի դժոխս, և ո՛չ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն»։*

ԶԱԿՔԷ. *Իսկ արդ ուրեմն մարդ էր՝ յոգւոյ և ի մարմնոյ։*

ԱԹԱՆԱՍ. *Մարդ է ըստ մարմնոյ, և Աստուած ըստ հոգւոյ. վասն որոյ լո՛ւր զի՞նչ ասէ Աստուած մարգարէիւն Եսայեաւ. « Աշխատեցաւ, վաստակեաց[5] Եգիպտոս, և վաճառքն Եթովպացւոց և Սաբայայիք արք բարձունք ի քեզ անցցեն, և եղիցին քո ծառայք, և զկնի քո շրջեսցին՝ կապեալ ձեռակապօք, և երկիր պագցեն քեզ, և ի քեզ յա-*

1. Յօր. եդեալ էր՝ առեալ. ուղղեցաւ ըստ Ձ. ձեռ.
2. Ձ. ձեռ. կարգի։
3. Ձ. ձեռ. չունի՝ զի։
4. Ձ. ձեռ. եղիցի։
5. Ձ. ձեռ. վաճառեցաւ։

զօթս կացցեն. զի Աստուած գոյ ի քեզ: Եւ ոչ է[1] այլ Աստուած բաց ի քէն. դու ես Աստուած՝ և ոչ գիտէաք, Աստուած Իսրայէղի փրկիչ: Ամաչեսցեն և յամօթ լիցին ամենեքեան՝ որ հակառակ կան նմա, և գնասցեն ամօթով: Նորոգեցարուք առ իս, կղզիք. զի Իսրայէղ փրկեցաւ ի Տեառնէ զփրկութիւն յաւիտենից. մի՛ ամաչեսցեն՝ և մի՛ յամօթ լիցին[2] յաւիտեան. այսպէս ասէ Տէր որ արար զերկինս»:

ԶԱԿՔԷՈՍ. Դու քեզէն ընթերցար և խոստովան եղեր՝ թէ Իսրայէղ փրկեցաւ[3] ի Տեառնէ, մի՛թէ զմեզ՝ դուք[4] ի հեթանոսաց:

ԱԹԱՆԱՍ ասաց. Սուրբ մարգարէալն ասէ Իսրայէղ. ապա թէ ոչ՝ զիա՞րդ յաղագս ձեր ինքեանց[5] վարկանիս՝ լսելով. «Մի՛ ամաչեսցեն, և մի՛ յամօթ լիցին մինչև յաւիտեան»: Մի՛ վարկանիր սուտ ասել մարգարէին, թէ Իսրայէղ փրկի ի Տեառնէ զփրկութիւն յաւիտենից. ապա թէ կամեսցիս[6] ասել, ո՞չ ամաչեցաք և ոչ յամօթ եղեաք՝ զամենայն կորուսանելով և Հռոմայեցւոց ծառայելով, յանդըգնես ասել՝ թէ ստութեամբ ստացան հարքն մեր զմարգարէսն:

ԶԱԿՔԷ. Մի՛ լիցի սուտ ասել զմարգարէութիւնն:

ԱԹԱՆԱՍ. Քանզի Իսրայէղ ապա փրկեցաւ զփրկութիւն յաւիտենից, և մի՛ ամաչեսցեն և մի՛ յամօթ լիցին մինչև յաւիտեան: Առաքեալքն բնութեամբ[7] Հրեայք գոլով, և ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ, զի ո՛չ որ յայտնապէս թլփատեալ է Հրեայ, այլ որ ի ծածուկ զթլփատութիւնն ունիցի, ուստի մեղադիր ապա լինի Աստուած յայտնապէս

1. Ձ. ԺԹ. գոյ:
2. Ձ. ԺԹ. յաւիտեան՝ մինչև:
3. Ձ. ԺԹ. փրկի:
4. Ձ. ԺԹ. մի՛թէ և զմեզ՝ դուք...:
5. Ձ. ԺԹ. յաւիտեան՝ ասել:
6. Ձ. ԺԹ. կամիցիս:
7. Ձ. ԺԹ. բնութեամբք:

ունողացն զԹլփատութիւն՝ այղ ոչ սրտիւք, ասելով այսպէս. «Ամենայն հեթանոսք անԹլփատք են մարմնով, իսկ ժողովուրդ իմ սրտիւք»:

ՋԱԿՔԷ. Աստուած՝ որ պատուիրեաց Աբրահամու ասելով՝ «Թլփատեսցի քո ամենայն արու յաւուրն ութերորդի», ի բաց դարձաւ[1] ի Թլփատութենէն:

ԱԹԱՆԱՍ. Ուսանիս և զԹլփատութեանն բան. համայն առ այժմ ասա՝ եթէ ծանեար, ո՞ւմ ասաց Աստուած ի ձեռն մարգարէին, «Աշխատեցաւ, վաստակեաց[2] Եգիպտոս[3] և վաճառքն ԵԹեովպացւոց[4] և Սաբայեցիք արք բարձունք ի քեզ անցցեն, և քեզ ծառայեսցեն, և զկնի քո չրջեսցին՝ կապեալք ձեռակապօք, և երկիր պագցեն քեզ, և ի քեզ յաղօթս կացցեն. զի Աստուած դու ի քեզ, և ոչ է այլ Աստուած, բայց ի քէն. դու ես Աստուած՝ և ոչ գիտէաք, Աստուած իսրայելի փրկիչ»:

ՋԱԿՔԷ. Երուսաղեմի ասաց, «Աշխատեցաւ, վաստակեաց[5] Եգիպտոս, և վաճառքն ԵԹեովպացւոց և Սաբայացիքն[6] արք բարձունք ի քեզ անցցեն, և քեզ ծառայեսցեն, և զկնի քո չրջեսցին՝ կապեալ ձեռակապօք»:

ԱԹԱՆԱՍ. Մի՛ թէ չո՞ւրջ գայր Երուսաղէմ, և այնպէս նոքա զհետ չրջէին կապեալք:

ՋԱԿՔԷ. Երուսաղեմի զհետ չրջի որ օրէնք նորա վարի, և որ ծառայեն նմա հանապազ և երկրպագեն նմա, և ի նմա յաղօթս կան, որպէս կապեալք ի նա հանդիպին[7]:

ԱԹԱՆԱՍ. Այս Երուսաղէմ և Աստուած է. քանզի ասէ, «Եւ երկիր պագցեն քեզ և ի քեզ յա-

1. Ձ. ձԹ. բարձաւ:
2. Ձ. ձԹ. վառապահեցաւ:
3. Ձ. ձԹ. չունի՝ Եգիպտոս:
4. Ձ. ձԹ. Եթեովպացւոց. միշտ այդպէս:
5. Ձ. ձԹ. վառապահեցաւ:
6. Ձ. ձԹ. Սաբէացիք:
7. Ձ. ձԹ. այսպէս ունի. Երուսաղէմի զհէտ չրջի, որ աւրէնաւքն վարի. որ ծառայէնն նմա՝ աղօթս կան, որպէս կապէալք ի նա հանդիպին:

ղօթս կացցեն. զի Աստուած գոյ ի քեզ, և ոչ է Աստուած, բաց ի քէն. դու էիր Աստուած՝ և ոչ գիտէաք, Աստուած Իսրայէղի փրկիչ»։

ԶԱԿԳԷ. Եւ ո՞ւմ այլ ումեք, ասա՛։

ԱԹԱՆԱՍ. Ոչ այլ ումեք՝ բայց Քրիստոսի։

ԶԱԿԳԷ. Ո՞րպէս։

ԱԹԱՆԱՍ. «Քանզի վաստակեաց Եգիպտոս, և վաճառքն Եթւովպացւոց»․ զի ի ծնանելն Քրիստոսի՝ կռապաշտութիւնն լուծաւ, և մոգութիւնք խափանեցան, և Սաբայացիք՝ արք բարձունք ի նա անցին, և նմա ծառայելով՝ զհետ նորա գնացին կապեալ ձեռակապօք ամենայն, բարձունք երկրի, և ի նա յաղօթս կան, և նմա երկրպագեն, և խոստովանին՝ թէ Աստուած է ի նմա, և ոչ է այլ Աստուած՝ բայց ի նմանէ․ քանզի նա էր Աստուած, և ո՛չ գիտէին. Աստուած Իսրայէղի փրկիչ։

ԶԱԿԳԷՈՍ. Զի՞որդ և ի նմա է Աստուած, և ոչ է այլ Աստուած բաց ի նմանէ։

ԱԹԱՆԱՍ. վասն անփոփոխ բնութեանն, վասն նոյնութեան փառացն, վասն անմիջնորդելին զօրութեան։ Զի յաղագս այսորիկ և Տէր և Աստուած մի է․ վասն զի մի կամք, մի իշխանութիւն և մի զօրութիւն է․ քանզի, ոչ զայլ ինչ Հայր խորհի, և զայլ Որդի․ կամ այլում Հայր իշխէ և այլում Որդի։ Ապա թէ կամիս և յոլովագունից խորհրդոց լսել, վերծանեա զեւթանասներորդ առաջնորդն Դաւթայ[1] զսաղմոս՝ հանդերձ բարուոքապէս գիտակցութեամբ և աստուածային երկիւղիւ. թերևս և ի ժողովարանին իսկ ձերում, փոխանակ երգոյ՝ որ հրճուեցուցանէ զլսելիս, զայս սաղմոս ասէք։

ԶԱԿԳԷՈՍ ասէ․ Եւ զի՞նչ ասէ սաղմոսն յաղագս Քրիստոսին քոյ։

1. Ճ. ԺԹ. առաջներորդ Դաւթեան։

ԱԹԱՆԱՍԻՈՍ ասէ. վերծանեա և գտցես։

ԶԱԿԽԷՈՍ. վերծանեցի[1] և գիտեմ, զի վասն Սողոմոնի ասէ։

ԱԹԱՆԱՍԻՈՍ. «Աստուած զիրաւունս քո արքայի տուր», ո՞վ ասէ[2]։

ԶԱԿԽԷՈՍ. Դաւիթ աղաչէ զԱստուած, զի իրաւունս բարուոք տացէ առնել որդւոյ իւրում, այս է՝ Սողոմոնի։

ԱԹԱՆԱՍ. «Եւ զարդարութիւնս քո որդւոյ թագաւորի»։

ԶԱԿԽԷՈՍ. Որդւոյ թագաւորի ասէ՝ իմոյ որդւոյ. քանզի թագաւոր էր Դաւիթ՝ յորժամ աղօթէրն Աստուծոյ. զի զարդարութիւն իւր տացէ Սողոմոնի՝ ինքն Աստուած։

ԱԹԱՆԱՍ. Հետեւեա քեզ ինքեան՝ հանդերձ երկիւղիւն Աստուծոյ. «Առցեն լերինք զխաղաղութիւն ժողովրդեան, և բլուրք՝ զարդարութիւն. իրաւունս առնել աղքատաց ժողովրդեան, և կեցուցանել զորդիս տնանկաց[3], և խոնարհեցուցանել զզրպարտօղսն»։

ԶԱԿԽԷՈՍ. Զայդ ամենայն յաղագս Սողոմոնի ասէ։

ԱԹԱՆԱՍ. Դիտեացուք և զըստ կարգին։

ԶԱԿԽԷՈՍ. Ասա։

ԱԹԱՆԱՍ. «Կացցէ և մնասցէ ընդ արեգական, և յառաջ քան զլուսին՝ ազգաց յազգս»։

ԶԱԿԽԷՈՍ. Անուն նորա եկաց մնաց ընդ արեգական, ուստի ահա և դուք իսկ քրիստոնեայք՝ յամենայն երկրի յիշէք զանուն նորա, որպէս զիմաստնոյ, և ազգաց մինչեւ յազգս՝ կան և մնան ընդ նմա փառք անուան նորա։

ԱԹԱՆԱՍ. «Եւ յառաջ քան զլուսին ազգաց յազգս»՝ է՞ր անուն նորա։

1. Ձ. ձԹ. վերծանեցից։    3. Ձ. ձԹ. փնանկաց։
2. Ձ. ձԹ. Ո՞Հէ ա։

ԶԱԿԹԷՈՍ ասաց․ Այո՛, ճանաչէր նորա անունն և յառաջ քան զլուսին։

ԱԹԱՆԱՍ․ Լո՛ւր և զլուտ կարգիմն։

ԶԱԿԹԷՈՍ․ Ասա՛։

ԱԹԱՆԱՍ․ «Իջցէ որպէս զանձրև ի վերայ գեղման, և որպէս զցօղ որ ցօղէ յերկիր։ Ծագեսցէ յաւուրս նորա արդարութիւն՝ բազում խաղաղութիւն, մինչև կատարեսցի[1] լուսին․ և տիրեսցէ ի ծովէ մինչև ի ծով, և ի գետոյ մինչև ի ծագս աշխարհի։ Առաջի նորա հոլովեսցին Եթեովպացիք, և թշնամիք նորա հող լիզեսցեն[2]։ Թագաւորք Թարսիս[3] և կղզեաց ընծայեսցեն[4]․ թագաւորք Արաբայ և Սաբայ պատարագս հանցեն։ Երկիր պագցեն նմա ամենայն թագաւորք երկրի, և ամենայն ազգ ծառայեսցեն նմա։ Զի փրկեաց զաղքատն ի հզօրէ, և զտնանկն՝ որո՛յ ոչ էր իւր օգնական։ Մնխայեսցէ[5] յաղքատն և ի տնանկն, և զանձինս տնանկաց կեցուսցէ, ի վաշխից և յանիրաւութեանց փրկեսցէ զանձինս նոցա[6]։ Եւ պատուական անուն նորա առաջի նոցա, և կեցցէ և տացի նմա յոսկւոյն Արաբացւոց։ Եւ աղօթեսցեն առ նա յամենայն ժամ, և զբոլոր օրն օրհնեսցեն զնա։ Եղիցի հաստատութիւն երկրի[7] ի վերայ ծագաց լերանց։ Վերամբարձցի քան զԼիբանան պտուղ նորա, և ծաղկեսցեն ի քաղաքի[8] որպէս զխոտ երկրի։ Եղիցի անուն նորա օրհնեալ յաւիտեանս, յառաջ քան զարեգակն յարամնայ անուն նորա։ Օրհնեսցին նովաւ ամենայն նահապետք[9] երկրի, ամենայն ազգք երանեսցեն զնա[10]։ Օրհնեալ

1․ Ճ․ Ժթ․ կատարեսցին։
2․ Ճ․ Ժթ․ լիզեսցեն։
3․ Ճ․ Ժթ․ Թարսի։
4․ Ճ․ Ժթ․ յաւելլու՝ նմա։
5․ Ճ․ Ժթ․ յաւելու՝ նա։
6․ Ճ․ Ժթ․ անօրէնութեանց փրկեսցէ զնոսա։
7․ Ճ․ Ժթ․ յերկրի։
8․ Ճ․ Ժթ․ ի քաղաքէ։
9․ Ճ․ Ժթ․ նախապետք։
10․ Ճ․ Ժթ․ ամենայն ազգք երկրի օրհնեսցեն զնա։

Տէր Աստուած Իսրայէղի, որ առնէ սքանչելիս միայն. և օրհնեալ է անուն փառաց նորա յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից. լցցի փառօք նորա ամենայն երկիր. եղիցի եղիցի»։

ՁԱԿՔԷՈՍ. Այս[1] խոստովանեալ է, թէ՝ յաղագս Քրիստոսի ասէ. այդ տակաւին չեւ եւս է եկեալ Քրիստոս։

ԱԹԱՆԱՍ. Ի վերայ եկելոյն կատարեցաւ. և եթէ եկեսցէ՝ որում դուն ակն ունիս, գտցէ զամենայն կատարեալ զկանխաճառեալսդ։

ՁԱԿՔԷՈՍ. Եւ զի՞նչ է կատարեալ յասացելոցդ։

ԱԹԱՆԱՍ. «Տիրեսցէ ի ծովէ մինչեւ ի ծով, ի գետոց մինչեւ ի ծագս տիեզերաց[2]։ Առաջի նորա հոլովեսցին հնդիկք, և թշնամիք նորա դուք՝ զհող ուտիցէք. և երկիր պագցեն նմա ամենայն թագաւորք երկրի[3], ամենայն ազգք ծառայեսցեն նմա. և օրհնեսցին նովաւ ամենայն ազգք երկրի»։

ՁԱԿՔԷՈՍ ասէ. Խաչահանունք նորա զիա՞րդ երկրպագեցին նմա։

ԱԹԱՆԱՍ. Թշնամիք վերտառեցան և չարչարանքն և մահ և պատիւ և փառք և յարութիւն. լո՛ւր[4] ապա և Դաւթի ասելով. «Ընդէ՞ր խռովեցան ազգք, և ժողովուրդք խորհեցան սնոտիս։ Ցանդիման կացին թագաւորք երկրի, և իշխանք ժողովեցան ի միասին՝ ընդդէմ Տեառն, և ընդդէմ օծելոյ նորա»։

ՁԱԿՔԷՈՍ. Զիա՞րդ և ընդդէմ Տեառն, և վասն նորա։

ԱԹԱՆԱՍ. Վասն զի և զբարին ճանաչէր Աստուած, և որ այլազգաբար եղեալ՝ արար գրել։ Եւ այս է ասացեալն յԱստուծոյ՝ ի ձեռն մարգա-

1. Ճ. ԺԹ. դայս։
2. Յոր. եզերաց. Եգալք ըստ Ճ. ԺԹ։
3. Ճ. ԺԹ. չունի՝ ամենայն թագաւորք երկրի, ամենայն ազգք ծառայեսցեն նմա։
4. Յոր. Լսէ՛. Եգալք ըստ Ճ. ԺԹ.

րէին. «Ահա դնեմ ի Սիոն քար գայթագղութեան և վէմ գլորման. և որ հաւատայ ի Նա՝ մի՛ ամաչեսցէ»։

ԶԱԿՔԷՈՍ. Եւ հի՞մ զնա քար գայթագղութեան եդ, և ոչ մանաւանդ բացայայտեաւ արար խոստովանել զնա։

ԱԹԱՆԱՍ. Զի թէ ոչ յառաջագոյն էր քեզ ասացեալ՝ «Որ հաւատայ ի Նա՝ մի՛ ամաչեսցէ», յիրաւի թերեւս մեղադրէիր զեդեալն. իսկ ապա թէ յառաջագոյն գուշակեցաւ քեզ, զքեզ ինքն մեղադրեա՛ զանհաւատդ եղեալ։ Քանզի Նա է վէմն անարգեալ ի ձէնջ շինողաց, սակս որոյ ասէ մարգարէն. «վէմն զոր անարգեցին շինօղք, նա եղեւ գլուխ անկեան»։

ԶԱԿՔԷՈՍ. Եւ իմաստութիւն Աստուծոյ քա՞ր եղեւ։

ԱԹԱՆԱՍ ասէ. իմաստութիւնն Աստուծոյ վէմ կոչեցաւ ըստ մարմնոյն, վասն զի մարմին էառ ի կուսէն, զի որպէս ի տաճարի մարմնով մեզ յայտնեսցի. վասն այնորիկ կոչեցաւ քար. և սոյն է վէմն՝ զոր թարգմանեաց Դանիէլ՝ հատեալ ի լեռնէ առանց ձեռին, փշրելով զպատկեր կռապաշտութեանն։

ԶԱԿՔԷՈՍ ասաց. Եւ յորմէ՞ լեռնէ հատաւ վէմն։

ԱԹԱՆԱՍ. Լեառն ասէ զսուրբ կոյս Մարիամ. վասն որոյ և առանց ձեռին ասէ հատեալ զվէմն[1], առանց առն՝ կուսին ծնանել զմարմինն։ Քանզի ասէ մարգարէութիւնն. «Նաբուքոդոնոսոր երազ ետես, և երազն մերժեցաւ ի նմանէ, այս է՝ մոռացաւ. և կոչեալ առ ինքն զգէտս, և զմոգս, և զիմաստունս Բաբելացւոց, ասէ ցնոսա. Երազն մերժեցաւ յինէն. արդ, այժմ պատմեցէք ինձ զերազն և զմեկնութիւն նորա։ Եւ մոգուցն և գիտաց ասացեալ՝ թէ ո՛չ է մարդ ի վերայ երկրի որ կարասցէ զբանդ արքայի պատմել, բայց եթէ

1. Ճ. ԺԹ. յաւելու՝ այս է՝։

ստուածք, որոց ոչ գուցէ բնակութիւն ի վերայ երկրի։ Եւ հրամայեաց Նաբուքոդոնոսոր կորուսանել զամենեսեան՝ զգէտսն, և զմոգս, և զիմաստունս։ Եւ ծանուցեալ վիրս թագաւորին՝ Դանիէլի՝ աղաչեաց տալ նմա երից աւուրց ժամադրութիւն։ Եւ առեալ ի թագաւորէն՝ եմուտ ի տուն իւր. և աղերսեալ զԱստուած, յայտնեաց նմա զերազն զոր ետես արքայ, և զմեկնութիւն նորա։ Եւ էր երազն այս ինչ. Պատկեր մի մեծ վերաբերեալ երեւէր, և տեսիլ նորա ահեղ. գլուխ նորա յոսկւոյ սրբոյ, ձեռքն և լանջք և բազուկք նորա՝ արծաթիք. որովայն և բարձք՝ պղնձիք. սրունք նորա՝ երկաթիք, ոտքն՝ մասն ինչ երկաթիք և մասն ինչ խեցեղէն։ Տեսանէիր մինչեւ հատաւ վէմ ի լեռնէն առանց ձեռին, և եհար զպատկերն ի վերայ երկաթի և խեցեղէն ոտից, և խորտակեաց զնոսա մինչեւ իսպառ։ Յայնժամ խորտակեցան միանգամայն խեցին և երկաթն և պղինձն և արծաթն և ոսկին, և եղեն որպէս զփոշի կալոյ ամառանի. և հոսեաց զնոսա յաճախութիւն հողմոց, և տեղի ոչ գտաւ նոցա։ Եւ վէմն որ եհար զպատկերն՝ եղեւ լեառն[1] մեծ, և ելից զամենայն երկիր։ Այս է երազն արքայի»։ Եւ թարգմանէ Դանիէլ զերազն. զտարբերական զպատկերն ասելով՝ զանազանադիտակ թարգմանութիւնս. և զվէմն՝ թագաւորութիւն է, որ յաւիտեանս ոչ ապականեսցի. այս է՝ Քրիստոսին թագաւորութիւն, վիմի նմանեալ՝ վասն գթելոյ ի նա հարց ձերոց։

ԶԱԿՔԷՈՍ. Այժմ լսեմ, եթէ Քրիստոսն ձեր քարի նմանեալ է։

ԱԹԱՆԱՍ. Մի՛շտ՝ անյայտ և աներեւոյթ իրք՝ ի ձեռն առակաց արտայայտեալ ճանաչին։ կամ թէ ո՞չ լուար Աստուծոյ՝ ասելով մարգարէին, «Եղէց

1. Ճ. ԺԹ. ճառ։

որպէս յովազ[1] Եփրեմի, և որպէս առեւծ՝ տանն Յուդայ». և այլուր, «Պատահեցայց նոցա[2] որպէս արջ քաղցեալ». իսկ ապա արջոյ՝ կամ այլոց կենդանեաց նմանեաց[3] նմանեցուցանելով զաստուածութիւնն՝ թշնամանիցի՞[4]:

ԶԱԿԳԷՈՍ. Մի՛թէ ճշմարիտ ա՞րջ եղեւ Աստուած, այդ վասն ահեղութեանն ասէ:

ԱԹԱՆԱՍ. Այսպէս՝ վասն բազմաց գայթագղելոյ ըստ մտացն ի Տէրն՝ վէմ կոչեցաւ: Լո՛ւր ապա և միւսոյ մարգարէութեանն[5] ի Տէրն՝ ի նմին մարգարէին. «Տեսանէի ասէ, մինչեւ աթոռք անկան, և հինաւուրցն նստաւ. զգեստ նորա որպէս զձիւն սպիտակ, և հեր գլխոյ նորա՝ որպէս զասր սուրբ. աթոռ նորա որպէս բոց հրոյ, անիւք նորա՝ հուր կիզման, և գետ հրոյ գնայր առաջի նորա. հազարք հազարաց պաշտէին զնա, և բեւրք բիւրուց կային առաջի նորա. ատեան նստաւ և գիրք բացան: Տեսանէի ի տեսլեան գիշերոյ, և ահա ընդ ամպս երկնից որպէս զորդի մարդոյ՝ զի գայր[6], և եհաս մինչեւ ի հինաւուրցն, և մատուցաւ առաջի նորա: Եւ նմա տուաւ իշխանութիւն և պատիւ և արքայութիւն. և ամենայն ժողովուրդք՝ ազգք և լեզուք նմա ծառայեսցեն. իշխանութիւն նորա իշխանութիւն յաւիտենական, որ ոչ անցանէ. և արքայութիւն նորա ո՛չ ապականեսցի: Սոսկացաւ հոգի իմ՝ յիս. ես Դանիէլ, և տեսիլ գլխոյ իմոյ խռովեցոյց զիս, և մատեայ առ մի ոմն որ անդն կային, և զճշմարտութիւնն պահանջէի ուսանել ի նմանէ վասն ամենայնի այնորիկ. և ասաց զճշմարտութիւնն և զմեկնութիւն բանիցն եցոյց ինձ: Այդ չորք գազանք, չորք թագաւորք յա-

1. Ճ. ձԹ. յաւազ:

2. Ցօր. նորա. ուղղեցաւ ըստ Ճ. ձԹ.

3. Ճ. ձԹ. չունի՝ նմանեաց:

4. Ճ. ձԹ. Թշնամանեցի:

5. Ճ. ձԹ. Թարգմանութեանն:

6. Ցօր. զի գայ, եդաք ըստ Ճ. ձԹ.:

րիցեն ի վերայ երկրի. ոլք բարձցին, և առցեն զարքայութիւնն սուրբք Բարձրելոյն, և կալցին զնա մինչև յաւիտեանս յաւիտենից»։

ՁԱԿՔԷՈՍ. Եւ ո՞յք են չորք թագաւորքն, կամ ո՞յք սուրբքն։

ԱԹԱՆԱՍ. Հինաւուրցն ո՞վ է, թէ գիտես, ասա՛։

ՁԱԿՔԷՈՍ. Ես եմ Աստուած ամենակալ. քանզի ո՞ւմ այլ ումեք հազարք հազարաց պաշտեն, և բևւրք բիւրուց առաջի կան, եթէ ոչ Աստուծոյ։

ԱԹԱՆԱՍ. Բարւոք ասացեր. և որ գայրն՝ հանդերձ ամպովք երկնից զնմանութիւն որդւոյ մարդոյ ունելով, ո՞վ էր։

ՁԱԿՔԷՈՍ ասէ. Քրիստոս։

ԱԹԱՆԱՍ ասէ. Եւ սուրբքն՝ յայտ է թէ ոյք զարքայութիւնն ունին՝ աշակերտք նորա։ Եւ չորք թագաւորքն՝ ոյք ոմանք չորից կողմանց տիեզերաց թագաւորք նոցա, սրբոյն աղօթելով գոլ ծառայս։

ՁԱԿՔԷՈՍ. Այլ ո՛չ զՔրիստոսն ասացի եւ զոր դուն ասես, այլ զոր մեքն յուսամք[1]։

ԱԹԱՆԱՍ ասէ. Եւ դարձեալ ասեմ քեզ. եթէ եկեսցէ զոր դուն յուսաս, գտցէ զամենայն ըմբռնեալ կանխաւ ի ճշմարտէն։ Վասն զի զամս ժամանակաց ընդ նմին հասեալ, ի նմին իսկ ուսաք ի մարգարէէն, և հեթանոսք փրկեցան *լուծեալ կռապաշտութեանն, և ամենայն՝ զոյգ ի միասին եհաս մարգարէացեալն։

ՁԱՔԷ. Ո՞ւր գրեալ է ժամանակն։

ԱԹԱՆԱՍ. Նոյն ինքն դարձեալ Դանիէլ ասէ. «Եւ մինչդեռ ես խօսէի և աղօթէի, պատմելով զմեղս ժողովրդեան իմոյ իսրայէղի, ընկենլով ըղձութ իմ առաջի Աստուծոյ վասն լերինն Տեառն Աստուծոյ սրբոյն, և ահա այրն Գաբրիէղ՝ զոր

1. Ճ. ձԹ. ունի այսպէս՝ Այլ ոչ զՔրիստոսն ասացի. և զոր դուն ասես, այլ զոր մեքն յուսամք։

* Յօր. Թուղթք անկեալ գոլով, ասէ սկսեալ զԹերթն լրացուցաք ի ձԹ Ճառընտրէ։

տեսի ի տեսլեանն առաջնում, թռուցեալ մերձեցաւ առ իս, որպէս ի ժամ պատարագին երեկորին. և իմաստնացոյց զիս, և խօսեցաւ ընդ իս և ասէ. Դանիէլ, այժմ եկի խելամուտ առնել զքեզ հանճարոյ: ի սկզբան աղօթից քոց ել պատգամ, և ես եկի խելամուտ առնել և պատմել քեզ. զի այր ցանկութեան ես դու. արդ՝ ած զմտաւ ըզբանդ քո, եւ ի միտ առ զտեսիլդ քո: Եւթանասուն եւթներորդք համառօտեցան ի վերայ ժողովըրդեան քո, և ի վերայ քաղաքին սրբոյ. ի վախճանել մեղաց[1], և ի կնքել անօրէնութեանցն, և ի տալ յաւիտենականն արդարութեան. և ի կնքել տեսլեան և մարգարէութեան, և օծանելոյ զսուրբն սրբոց. և գիտասցես, և խելամուտ եղիցիս յելից բանիցն տալ պատասխանի: Եւ շինել զԵրուսաղէմ, մինչեւ ցօծեալն առաջնորդ՝ եւթներորդք եւթն, և եւթներորդք վաթսուն և երկու. և դարձցին և շինեսցին հրապարակքն և պարիսպ. և նորոգեսցի ժամանակքն: Եւ յետ վաթսուն և երկուց եւթներորդացն՝ սատակեսցի օծութիւնն, և իրաւունք ոչ իցեն ի նմա. և քաղաքն և սրբութիւնն ապականեսցի »: Լուար, եթէ մինչեւ ցառաջնորդութիւն օծելոյն Կիւրոսի եւթներորդք եւթն ամացն, և եւթներորդք վաթսուն և երկու, որ են եւթներորդք վաթսուն և ինն. այս է, ամք չորեքարիւր ութսուն և երեք: Վերծանեա ապա զժամանակագիրն, և գտցես, եթէ ի Դարեհէ որդւոյ Արշաւրի մինչեւ ցՔրիստոս՝ են ամք չորեքհարիւր ութսուն և երեք: Քանզի յառաջնում ամին Դարեհի ասէ տեսանել զյայտնութիւն տեսլեանն մարգարէին: Եւ զի ի հասանել ժամանակին՝ « Սատակեսցի օծութիւնն և իրաւունք », այս է՝ թագաւոր և դատաւոր. այլ « Եւ քաղաքն և սրբութիւնն ապականեսցի »:

1. Յօր. եդեալ էր՝ փեղեալն. ուղղեցաք ըստ Ս. Գրոց:

ԶԱՔԷ ասէ. Խոստացար ինձ ասել զպատճառսն սակս որ առ ի հարցն է զթլփատութիւնն ո՛չ ընդունել։

ԱԹԱՆԱՍ ասէ. Զի Աստուած՝ որ կարգադրեաց հարցն՝ զթլփատութիւն, նոյն ինքն և ասաց. «Ահա աւուրք եկեսցեն՝ ասաց Տէր, և եդից ընդ Յուդայ ուխտ նոր, ոչ ըստ ուխտին զոր եդի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ, հանել զնոսա յերկրէն Եգիպտացւոց, տալով զօրէնս իմ ի միտս նոցա». քանզի ոչ եւս յանթլփատութեանն օրէնք, զի մի՛ փառք նոցա ամօթով, այլ ի սրտին։

ԶԱՔԷ. Եւ Աստուած որ պատուիրեաց հարցն մերոց, ասելով թէ «Ամենայն արու՝ որ ոչ թլփատեսցի յաւուրն ութերորդի, սատակեսցի ի ժողովրդենէն», ո՛չ եւս կամի զթլփատութիւնն։

ԱԹԱՆԱՍ. Գիտէ զօգուտն. յայնժամ ապա խնդրէր զըստուերն, իսկ այժմ զճշմարտութիւնս. վասն զի ոչ եթէ այս էր զոր առաջի արկեալն պահանջէր, որպէս զի թլփատել զմարմին անթլփատութեան, այլ կամելով անդուստ զեկուցանել զճշմարտութիւնն. վասն որոյ մեղադրէ նոցա ասելով. «Ամենայն հեթանոսք անթլփատ են մարմնով, իսկ ժողովուրդ իմ այս՝ սրտիւք»։ Եւ զի ոչ արդարացուցանէ զթլփատութիւնն, յայտ աստուստ է, զի Աբրահամ անթլփատութեամբն հաճոյ եղեւ Աստուծոյ. քանզի նախ և առաջին նմա երեւեցաւ, և ապա զպատուիրանն թլփատութեանն ետ. և ոյք յանապատին ծնան ի քառասնամեայն ժամանակի՝ անթլփատք էին։

ԶԱՔԷ. Ո՛չ ունիս ցուցանել։

ԱԹԱՆԱՍ. Գիտակ ես, եթէ յորժամ հանդերձեալ էին մտանել յերկիրն պարգեւացն, յայնժամ ըստ պատուիրանի Աստուծոյ առնու Յեսու Նաւեան քարինս ի վիմաց, և այնոքիմբք քարամբք թլփատէ զժողովուրդն։

ԶԱՔԷ. Եւ որովհետեւ գիտես թէ փոյթ է Աստուծոյ վասն թլփատութեանն, զիա՞րդ դու ասես թէ թլփատութիւնն ոչինչ է։

ԱԹԱՆԱՍԻՈՍ ասէ. Տեսանե՞ս զի Աստուծոյ հրաման է յայտնապէս, վասն որոյ հրամայեաց. քանզի կամեցաւ տուանել ի մէջ Եգիպտացւոցն և նոցունց որդւոցն իսրայէլի, նախ քան զերթալն յԵգիպտոս տալ նոցա զթլփատութիւնն, զի յայտնի լիցի ազգն բոլոր մարդկան։ Եւ դարձեալ, գոլով նոցա յանապատին, ոչ պահանջեաց զթլփատութիւնն, քանզի միայն էին նոքա, և ոչ ընդ ումեք ունէին խառնակումն. իսկ յորժամ հանդերձեալ էին խառնակել դարձեալ ընդ այլազգիսն, դարձեալ *հրամայեաց նոցա թլփատել. զի յայտնի լիցի ազգն շուրջ բնակչաւ[1] իւրեանց։ Եւ յայնժամ[2] ասէ ցՅեսու առնուլ քարինս ի վիմաց՝ և թլփատել զնոսա. և այս ոչ դուզնաքեայ, այլ խորհրդաբար. քանզի վէմն է Քրիստոս՝ որով թլփատիմք, ոչ զմարմին անթլփատութեան, այլ զաղտ սրտին։ իսկ ապա եթէ ո՛չ խորհրդապէս այս եղեալ, հի՞մ ոչ սրով թլփատէին, այլ քարամբք։

ԶԱԿՔԷՈՍ. Զի ցուցցի մեծութիւնն Աստուծոյ, թէ և քարամբք կարացին թլփատիլ։

ԱԹԱՆԱՍ. Եւս առաւել ցուցանիւր, եթէ սոսկ և միայն բանիւ էին թլփատեալ՝ առանց հիւթոյ իրիք։ Եւ զի գիտասցես թէ թլփատութիւնն ո՛չ արդարացուցանէ, Նոյ՝ այր արդար աստուածահաճոյ էր առանց թլփատութեան, և Ենովք փոխաբնակեցաւ անթլփատ գոլով։

ԶԱԿՔԷՈՍ. Եւ ուստի՞ ունիս ցուցանել թէ անթլփատք էին։

ԱԹԱՆԱՍ. Զի յԱբրահամէ սկիզբն առ թլփատութիւնն. քանզի նմա նախ և առաջին պատուիրեաց Աստուած թլփատիլ, և զաւակի նորա։

* Աստի սկսանի բն. օր։

1. Ձ. ձթ. բնակչաց։ 2. Ձ. ձթ. յայնժամ ձայնէ։

ԶԱԿԹԷՈՍ. Հաճեա զիս, Ե՞ր վասն և զզոհսն հրաժարէք առնել, առաջնոց արդարոցն[1] զոհելով Աստուծոյ. մի՛թէ և զայս յԱբրահամէ՞ ունիս ա֊սել սկիզբն առնել· յայտնապէս գրոց ասացեալ, թէ յԱդամայ ծնեալ զկնի Աբել զոհեաց, և ընդ֊ունելի եղեւ զոհ նորա ի կենդանեաց զոհեալ։

ԱԹԱՆԱՍ. Եւ մեք գիտակք եմք[2] եթէ ամենայն սուրբք յառաջ քան զգալուստն Քրիստոսի՝ զո֊հէին· իսկ յետ Քրիստոսի դադարեաց անբան կեն֊դանեացն, և աճեաց որ ի ձեռն Հոգւոյն սրբոյ, յայտնապէս Աստուծոյ գոչելով. «Ո՛չ ուտեմ ես զմիս զուարակաց[3], և ո՛չ զարիւն նոխազաց ըմ֊պեմ. զոհեա Աստուծոյ զոհ օրհնութեան». և այլ֊ուր ասէ. «Համբարձումն ձեռաց իմոց, զպատա֊րագ երեկորին». և, «Ահա աւուրք գան ասէ Տէր, և եդից տանդ Յուդայ ուխտ նոր. ո՛չ ըստ ուխտին՝ զոր եդի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ՝ հանել զնոսա յերկրէն Եգիպտացւոց։ Տուեալ զօրէնս իմ ի սիրտս նոցա, և ի միտս նոցա գրեցից զնոսա»։

ԶԱԿԹԷՈՍ. Հաւանեցուցեր զիս ամենայն ուս֊տեք, եթէ հարքն մեր ամպարշտեցան զՔրիստոս խաչելովն։ Քանզի երեւեցաւ[4] յասացելոցդ՝ եթէ նա էր ակնկալութիւնն, և կորուսին Հրեայքն զյոյսն իւրեանց։ Զի՞նչ ապա պարտ է ինձ առ֊նել զի ապրեցայց։

ԱԹԱՆԱՍԻՈՍ ասաց. Ապաշաւեալ[5] մկրտեցիր ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին, զի և դու լուիցես ի Դաւթէ. «Երանելի՛ք՝ որոց թողան ա֊նօրէնութիւնք, և որոց ծածկեցան մեղք»։

1. Ձ. ձթ. ունի՝ որդւոցն։
2. Ձ. ձթ. գիտեմք։
3. Ձ. ձթ. յաւելու՝ փոյ։
4. Ձ. ձթ. Երեւի։
5. Ձ. ձթ. ապաշխարեալ։

# ԺԲ

## ՏԵԱՌՆ ԱԹԱՆԱՍԻ

### ԱՌ ԱՐԻՈՍ

Չի ասէր, եթէ կրսեր է Որդի քան զՀայր․ արարած, եւ տգէտ աւուրն կատարածի։

*Ո՛վ աստուածամարտդ Արիոս, զի՞ յամառեալ ես ի վերայ սատանայակիր խորհրդոցդ՝ կրսեր կարծելով զՈրդի քան զՀայր, և տգէտ աւուրն կատարածի. զի ասաց, եթէ «վասն աւուրն այնորիկ և ժամու ոչ ոք գիտէ, ոչ հրեշտակք և ոչ Որդի, բայց միայն Հայր»։ Զոր և Հայր զԻւրմէ անձնէն ասէր. «Աղաղակ Սոդոմացւոցն յաճախեաց առ իս և մեղք նոցա բազմացան. և արդ իջեալ տեսից, եթէ ըստ աղաղակի նոցա որ յիս հասանէ՝ վըճարիցե՞ն, ապա թէ ոչ՝ զի գիտացից»։ կամ յորժամ ձայնէր առ Նախաստեղծն՝ եթէ «Ո՞ւր ես Ադամ». և երանեալն Դաւիթ ասէ. «Զանգործոն իմ տեսին աչք քո»։ Արդ, եթէ զանգործն տեսանէր, և ի սկզբանէ խօսեցաւ ի ձեռն մարգարէից իւրոց, իսկզբանէ մինչեւ ի կատարած աշխարհի, և եղեն և կատարեցաւ ամենայն ասացեալքն, զիա՞րդ լինէր երբեք արդեւք եթէ տգիտանայր Որդի զօրն կատարածի։*

*Ասա ինձ, ո՛վ ամբարիշտ Արիոս, ո՞ր մեծ է, օ՞ր և ժամն կատարածի, եթէ Հայր՝ որ անժամանակ և արարիչն է ժամանակաց։ իսկ եթէ Հայր մեծ է քան զօրն և զժամն, և Որդին միա-*

ծին այսպէս ասէ՝ եթէ «Ոչ ոք գիտէ զՀայր՝ եթէ ոչ Որդին, և ոչ զՈրդի՝ եթէ ոչ Հայր. և որպէս գիտէ զիս Հայր՝ գիտեմ և ես զՀայր». արդ եթէ զմեծն գիտէր Որդի, այս ինքն զՀայր, զի՞արդ էր եթէ զայն օր և զժամ անգիտանայր Որդին Աստուծոյ։ Զոր ուղիղ միտք ըստ[1] զիջանելոյ պարտ է իմանալ. ոչ[2] եթէ իջանելոյ և տեսանելոյ պէտք են Աստուծոյ, այլ զի զմեզ ուսուցէ կարգս, մի՛ փաղփաղակի ի լրոյ հաւատալ և դատել զոք, այլ հաւաստեաւ ի վերայ հասանել։ Նոյնպէս և Որդին Աստուծոյ ոչ[3] թէ անտեղեակ էր աւուրն և ժամուն, այլ զի զաշակերտսն արգելցէ ի խնդրոյն զոր մատուցեալ աղաչէին զնա. որպէս և յետ յարութեան ի մեռելոց՝ ասէ. «Ոչ է ձեզ գիտել զժամս և զժամանակս՝ զոր Հայր եդ յիւրում իշխանութեանն»։ Ահա նայեա ի թզենւոյն առակ, զի չէր ժամանակ պտղոյ և ցամաքեցաւ։ Այս յայտնէր զիւր զդատող և տանջող իշխանութիւնն, և զի ահ և դողումն ի սիրտս լսողացն արկանիցէ։ Արդ յայտ է զի ոչ եթէ Որդի տգէտ էր աւուրն կատարածի, այլ զի ծածկեսցէ զխնդիրն ի նոցանէ։

Այլ թէ ծնունդ ասիցեմք զՈրդի Հօր՝ ոչ եթէ այսու ասիցեմք, զի առանց միջնորդի և հաստուածոյ ծնաւ Հայր զՈրդի՝ հոգեպէս ըստ աւետարանչին ձայնի. «Ի սկզբանէ էր Բանն, և Բանն էր առ Աստուած, և Աստուած էր Բանն»։ Եւ եթէ ի սկզբանէ էր, ե՞րբ էր յորժամ ոչ էր Որդի, կամ ո՞ւր ժամանակն՝ յորում ծնաւ. զի թէպէտ և առ մեզ ոչ կարէ ծնունդն անսկիզբն գոլ, այլ և ոչ անախտ, և ոչ զծնողն ժամանակաւ անսկիզբն գտանել. իսկ զՈրդւոյ ծնունդն՝ անախտ ասացին գիրք և անժամանակ, և ոչ յափշտակութեամբ, եթէ «Ես և Հայր իմ մի եմք. և որ ետես զիս, ետես զՀայր իմ. և զամենայն զոր ինչ

1. Օր. եդեալ էր՝ ըստ։ 2 և 3. Օր. պակասէր ոչ։

ունի Հայր՝ իմ է». և այսու յայտ առնէ՝ թէ ոչ
ուրոյն բնութիւն ինչ իցէ Որդի և կամ կրսե-
րագոյն քան զԱստուած Հայր. զի թէպէտ և ա-
սէ, թէ «Հայր իմ մեծ է քան զիս», վասն
պատուոյն որով հանապազ պատուէր զՀայր զա-
ռաքիչն իւր. որպէս ինքն ասէն, թէ պատուեմ
զՀայր իմ. զոր դարձեալ ասէր, «Եթէ ոչ գոր-
ծեմ զգործս Հօր իմոյ, մի՛ հաւատայք ինձ»։
Զնոյն և աւետարանիչն ասէ, թէ «Ոչ միայն լու-
ծանէր զշաբաթս, և Հայր իւր կոչէր զԱստուած և
հաւասար առնէր զանձն Աստուծոյ». արդ եթէ
ինքն Որդի հաւասար առնէ, դու զի՞րդ կամիս
սուտ առնել զճշմարտութիւնն։ Լո՛ւր զբան սրբոյ
աւետարանին որ ասացաւ. «Իսկզբանէ էր Բանն
և Բանն էր առ Աստուած և Աստուած էր Բանն.
Նա էր իսկզբանէ առ Աստուած»։ Զիսկզբանէն
լուր և այլ մի՛ քններ. ծնունդ ասացաւ Հօր,
զորպէսն մի՛ քններ, զի այն ի մէնջ ամպով ծած-
կեցաւ։ Ապա եթէ քննես զվերին ծնունդն, ապա
ես զքեզ հարցանեմ. զի՞նչ ես դու. զի՞նչ է հո-
գիդ՝ որ շարժէ զքեզ և ինքն շարժի. զի՞նչ է
միտքդ՝ զի ի միում տեղւոջ իցէ և ի բազում
տեղիս, գտանես զդա շրջեալ. զի՞նչ է աթոռք,
զի՞նչ տէրութիւնք, զի՞նչ է իշխանութիւնք, զի՞նչ
է պետութիւնք. զի՞նչ ճառագայթ արեգականդ,
զի առ երկնաւդ որպէս հուր ելանէ և զբոլորե-
քումբք տարածի։

Ո՛վ անիմաստ. եթէ զայս ամենայն ոչ գիտես
որ ծառայակիցք են քո, ապա զի՞րդ ի վերայ
Բանին՝ ծնելով ի Հօրէ՝ զծնունդն ջանաս քննել՝ որ
անճառաբար է ծնեալ։ կամ թէ երիս փայլա-
տակունս տեսանես վառեալ՝ միով հաւասարու-
թեամբ, միով լուսով, միով կերպամբ, միով բար-
ձրութեամբ. քննե՞լ կարիցես թէ զի՞րդ մի հուրն
զմիւսն ծնաւ, կամ զի՞րդ բոցն հաւասար է և
անբաւելի ի միւս բոցոյն. կամ զի՞ երկու բնու-

*թիւնք են հրոյն, ոմն այրելի է և միւսն լուսա-
տու. ահա դու բաժանե՞ս զայրեցողն ի լուսա-
տուէն, կամ զլուսաւորն՝ յայրեցողէն։ իսկ եթէ
զայս ամենայն ոչ կարիցես առնել և ո՛չ կարիցես
զբնութիւն հրոյն բաժանել, ապա զիա՞րդ բաժա-
նես զբնութիւն սրբոյ Երրորդութեանն։ Թէ զայն
ինչ մտաբերիցես՝ որ ասէ, թէ «Անդրանիկ ա-
մենայն արարածոց». և եթէ, «Յարգանդէ նախ
քան զարուսեակ ծնեալ». և մոլորիցիս, եթէ
ծնունդ արարած կոչի և ըստ մերում հայրու-
թեանս կարծիցես. և ոչ կարծիցի ապա և Հայրն
անսկիզբն գոլ, և ոչ կարէ Որդի՝ միշտ որդի գոլ.
այլ երբեմն հայր է։ Եւ ոչ հոգեպէս և անախտ
ծնանին որդիք մարդկան. իսկ զՈրդւոյն Աստու-
ծոյ անախտ ասացին սուրբ գիրք. ասէ. «Բանն էր
Աստուած և առ Աստուած». Միշտ Հայր, միշտ Որ-
դի, միշտ Հոգին սուրբ. անմարմին, անախտ, ան-
արատ, առանց մեկնելոյ, անբաժանելի, անխառ-
նելի, անծերանալի. մի Աստուած երեք անձինք
կատարեալք. զոյգք, հաւասարք, զուգափառք, միով
բնութեամբ։ Եւ ի վախճան ժամանակաց Որդին
վասն մեր մարմին առնլով ի սրբոյ կուսէն, խաչեալ,
թաղեալ, յարեաւ եռօրեայ, և է ընդ աջմէ Հօր
իւրում բարձրութեանն. և գալոց է նովին մար-
մնով դատել զկենդանիս և զմեռեալս։*

*Վասն որոյ նզովեմք զԱրիոս և զնմանիսն նորա,
որպէս նզովեցին երեք հարիւր տասնեւութ սուրբ
հարքն՝ որք ժողովեցան ի Նիկիա մայրաքաղաքն
Բիւթանացւոց՝ յաւուրս կոստանդ(ա)ինոսի ուղղա-
փառ թագաւորի։*

*Եւ մեք հաւատացեալ ի հաւատս սուրբ Երրոր-
դութեանն, գնասցուք զճանապարհ արքունի ան-
սայթաք, ըստ Նիկիայ կուռ պողոտային, փառաւո-
րելով զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, այժմ և
միշտ և յաւիտեանս։*

## ԺԳ

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՍԱՑԵԱԼ

### ՅԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆՆ

*Հաւատք եկեղեցականք՝ զարթուցանեն զմիտս երկիւղածաց ի գիտութիւն ճշմարիտ պատուիրանացն Աստուծոյ. և բաղձան հանապազ՝ զհրամանս հաւատոցն միշտ ի տուէ և ի գիշերի՝ փութալ խորհել ըստ հաճութեան մտացն Աստուծոյ։ Իսկ որ ոչ կամի մերձենալ ի գիտութիւն ճշմարիտ հաւատոցն, յոյժ դժուարաւ ստանայ զպատուիրանացն զգիտութիւն։ Եւ որ առանց հաւատոց համարիցի ոք գիտել ի պատուիրանաց, չեւ ևս գիտաց՝ որպէս պարտ է գիտել։ Զի հաւատք եկեղեցականք՝ հիմն և արմատ են գիտութեան պատուիրանաց, և պարսպեալ պահէ զճշմարիտ հաւատացեալս Աստուծոյ։*

*Իսկ որ ոչ ջանայ բանալ զպատուհանս լուսոյ հաւատոց, նշոյլք լուսոյ ճառագայթից ճշմարտութեանն զնա ոչ պայծառացուցանեն, և ոչ զհաճութիւն կամացն Աստուծոյ կարէ ճանաչել։ Զի առաջին տեսակ ճանաչելոյ զԱստուած, ուղիղ հաւատոցն խոստովանութիւնն է. քանզի անհնար է, ասէ, առանց հաւատոց հաճոյ լինել Աստուծոյ։ Քանզի որ զհաւատս ճշմարիտս խոստովանութեանն ոչ կարէ իմանալ, նա և ոչ զվարս ինչ արժանաւորս ըստ հաճոյիցն Աստուծոյ կարէ ստանալ։ Զի որոց հաւատքն չիցեն պիտանացու, թէպէտ և վարս ունի՝ չգտանէ անտի օգուտ. զի յորժամ գլուխն ապականեսցի, զի՞նչ շահ յայլ անդամոցն*

գործեսցի։ Քանզի, ամենայն որ թերի է ի ճըշմարիտ հաւատոցն, հեռի է ի ճշմարտէն՝ ի Քրիստոսի հաւատոցն. զի անուն քրիստոնէութեան՝ զՔրիստոս ճշմարիտ խոստովանելն է. և քրիստոնեայ անուանի, որ զճշմարիտ խոստովանութիւնն ստացեալ ունի։ Եւ բարեպաշտութիւն է ուղիղ խոստովանութիւնն՝ ըստ աստուածային օրինացն. և ճշմարտութիւն է՝ երկիւղիւ լսել և պահել զպատուիրանս աստուածայինս։ Ուղղափառութիւն է՝ գիտութիւն սրբոյ Երրորդութեանն, որում ոմանց ցանկացեալ՝ մեծապայծառ լուսաւորեցան աստուածային օրինացն ճառագայթիւք։ Ոմանք՝ ի շնորհաց Հոգւոյն ընկալան, և ոմանք՝ գրոց կըրթութեամբք զերից էիցն գիտութիւն. որք յարաժամ ի մրցումն աստուածային օրինացն վաստակին, միշտ Հոգւոյն սրբոյ պարապեալք՝ վերին լուսոյն պայծառանան։ Եւ որք միանգամ այսմ կամին նմանող լինել, և մերձենալ ի գիտութիւն ճշմարիտ հաւատոյ, նախ պարտ է մեծաւ երկիւղիւ, և ուղիղ վարուք լուսաւորել. զի ոչ կարէ այլազգ հաւատացեալ լինել, եթէ ո՛չ քան զմարմնաւոր սովորութիւն ի վեր ելանիցէ, և զամենայն աշխարհական հոյլս մթերից պղտորութեան՝ մաքրիցէ ի սրտէ. զի մտաց աչք՝ կարիցեն նըկատել զլուսաւորութիւն ճշմարիտ հաւատոց. նըման այնոցիկ, որ զաման ճառագայթից արեգականն կամին տեսանել, եթէ ոչ նախ զբիժ և զմըթեր աչացն մաքրիցեն, ո՛չ կարեն զճառագայթս արեգականն նկատել. այլ կափիչ և շլացուցիչ տըկար աչաց լինի՝ պայծառութիւն արեգականն։ Նոյնպէս և ահեղ յօրինումն Երրորդութեանն և մեծ անուանցն զանազանութիւնսն օրէն է հայել՝ աչացն մտօք մաքրեցելովք յամենայն աղտոյ։ Ընդ որս և մեզ պարտ է՝ մեծաւ երկիւղիւ մաքրել զխորհուրդս մեր, և բազում զգուշութեամբ յշտեմարանս գրոց մտանել. զի յայնմ գիտու-

թենէ և ի լուսոյ՝ առ մեզ ձգելոյ՝ արժանի լիցուք ընդունել. որպէս զի կարասցուք իմանալ ճշմարիտ բարեպաշտութեամբ զպատուիրանացն դաւանութիւնն, զի մի՛ վրիպեալք ի ճշմարտութենէն, գահավէժք լիցուք յանդունդս կորստեան հերձուածողաց, որք չփոթեալ խառնակեցին զառանձնաւոր Երրորդութիւնն։ Քանզի ի պատուիրանացն այսպէս ընկալաք, եթէ, Հայր և Որդի և Հոգին սուրբ խառն են, եբրև զի չեն միացեալ և չփոթեալ. և որիշ են՝ իբրև զի չեն բաժանեալ։

Ծնօղ ասի Հայր, և մի՛ որովայնի կարծիցես. ծնունդ ասի Որդի, և մի՛ երկունս[1] իմասցիս. Հայր ասի, և մի՛ ահեղ համարեսցիս. Որդի ասի, և մի՛ կրտսեր համարեսցիս։ Հոգի ի Հօրէ ասի, և մի՛ ծնունդ անուանեսցես՝ և եղբայր Որդւոյ իմասցիս. այլ ելանէ ի Հօրէ՝ և առնու յՈրդւոյ, հաւասար Հօր և համագործ Որդւոյ։ Հայր ասի նախակարծ, և յառաջ իմն քան զամենայն արարեալս. այլ և ոչ Որդի կրտսեր է ժամանակաւ։ Ո՛չ Հայր Որդի ասի, և ո՛չ Որդի՝ Հոգի անուանի։ Ո՛չ ինքն եղեալ ասի Հայր, և ո՛չ յայլմէ ստեղծեալ. ոչ գոյս ունի գոյացեալ, և ոչ յօդապատ բընութիւն պարունակեալ. այլ ինքնածին տեսիլ, իմաստութիւն անմահ, և պատկեր առատութեան. պատճառ Որդւոյ՝ ծնելութեամբ, և Հոգւոյ՝ ելողութեամբ։ Զի ո՛չ է պարտ փոփոխել և այլայլել զանուանցն զանազանութիւնն. չփոթելով զանուն Հօր՝ յՈրդի, և զանուն Որդւոյ՝ ի Հոգի։ Զի Հայր՝ միշտ Հայր անուանի, ծնօղ Որդւոյ, և Որդի միշտ Որդի անուանի, ծնունդ ի Հօրէ. և Հոգին սուրբ՝ միշտ Հոգի անուանի, ելօղ ի Հօրէ, բըղխումն մշտնջենաւոր, որ ելանէ՝ ոչ բաժանի, բըղխէ՝ և ո՛չ սպառի։ Ո՛չ մեծացուցանելի է Հայր՝ քան զՈրդի, և ոչ Որդի՝ քան զՀոգին սուրբ.

1. Յօր. եդեալ էր վրիպակաւ Երկուս։

զի ո՛չ եթէ ա՛յլ պատկեր և այլ բնութիւն է Հօր, և այլ պատկեր և այլ բնութիւն է Որդւոյ, և ա՛յլ պատկեր և այլ բնութիւն է Հոգւոյն սրբոյ։ Եւ ոչ եթէ ա՛յլ կամք և այլ պատիւ և այլ իշխանութիւն է Հօր. և այլ կամք և այլ պատիւ և այլ իշխանութիւն է Որդւոյ. և այլ կամք և այլ պատիւ և այլ իշխանութիւն է Հոգւոյն սրբոյ։ Անտեսանելի, անչարչարելի, անըմբռնելի, և անմահ է Հայր. անտեսանելի, անչարչարելի, անըմբռնելի և անմահ է Որդի· ըստ էական բնութեանն՝ անտեսանելի, անչարչարելի, անըմբռնելի և անմահ է Հոգին սուրբ։ Եւ ո՛չ այլ երկրպագութիւն է Հօր, և այլ երկրպագութիւն է Որդւոյ, և այլ երկրպագութիւն է Հոգւոյն սրբոյ. այլ միով երկրպագութեամբ երկիր պագանեմք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. զաւանձնաւորութիւնն՝ որոշեմք, իսկ զաստուածութիւնն միաւորեմք։ Ո՛չ զերիսն ի մի հաւաքեմք, և ո՛չ դարձեալ յերիս օտարս և յայլ որդիս բաժանեմք. այլ զմինն ամբողջ պահեմք, և զերիսն բարւոք խոստովանիմք անշփոթելիս, անայլայլելիս· և մի աստուածութիւն, միականութիւն, մի բնութիւն, մի հաւասարութիւն, միապէս իշխանութիւն, մի հաւատ, մի յոյս, մի մըկրտութիւն, մի՛ աննման զօրութիւն, մեծ, հզօր, կարող. և ի վեր քան զամենայն՝ անեղ, անանց, անկատարած, անտես, անքննին, անհաս, անզըննելի, անյօդ, անշարժ, անչափ, անբովանդակելի· զի ո՛չ երկինք բաւեն մեծութեան նորա, և ոչ երկիրս բովանդակէ զօրութեան նորա. այլ ի վեր է քան զերկինս, և անդր է քան զծագս· և երկինք և երկիր՝ և ամենայն արարածք՝ ընդ նովաւ են բովանդակեալք։ Զի մեծ է քան զամենայն, և հզօր յամենայնի, և բաւական յամենայնի, և ամենակալ ի վերայ երևելեաց և աներևութից· որում փառք և զօրութիւն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից· ամէն։

## ԺԴ

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

### Ի ՀՈԳԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*Աղբիւր ահա և լոյս ասի Հայր, քանզի «Թողին, ասէ, զաղբիւր ջրոց կենդանեաց». և դարձեալ ի Բարուք ասէ. «Զի՞նչ է Իսրայէլ, զի՞ է զի յերկրի թշնամեաց ես, զի թողեր զաղբիւրն իմաստութեան». և որ ըստ ի Յովհաննու աւետարանին ասէ, «Աստուած մեր լոյս է»:*

*Ասի և Որդի առ աղբիւրն գետ. «Քանզի գետն Աստուծոյ լի եղեւ ջուրբք». իսկ առ լոյսն՝ ճառագայթ, ըստ ասելոյն Պաւղոսի. «Որ էն ճառագայթ փառաց և նկարագիր էութեան Նորա»: Իսկ Հօր լոյս եղելոյ, և Որդւոյ ճառագայթից Նորա, վասն զի զնոյն սակս այսոցիկ ոչ է դանդաղելի ասել, յոլով անգամ պարտ է տեսանել և յՈրդւոյ զՀոգին, որով լուսաւորիմք. «Զի տացէ ասէ, զՀոգին իմաստութեան և յայտնութեան գիտութեամբն իւրով, լուսաւոր առնել զաչս սրտից»: Եւ Հոգւով լուսաւորելոյ մեր՝ Քրիստոս է որ լուսաւորէ. քանզի՝ «Էր, ասէ, լոյսն ճշմարիտ՝ որ լուսաւոր առնէ զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ»:*

*Եւ դարձեալ, Հօր գոլով աղբիւր, և Որդւոյ գետ ասացելոյ, ըմպել ասեմք զՀոգին. զի գրեալ է, «Մեք ամենեքեան զմի Հոգի արբաք», և զՀոգին ըմպելով՝ զՔրիստոս արբաք. «Զի ըմպէին ի հոգեւոր վիմէն՝ որ երթայր զհետ Նոցա.*

և մեռեալ էր՝ ինքն Քրիստոս »։ Եւ դարձեալ, Քրիստոս ճշմարտապէս գոլով Որդի, մեք զՀոգին ընդունելով՝ որդեգրիմք. « Քանզի ոչ առէք զՀոգին ծառայութեան միւսանգամ յերկիւղ, այլ առէք զՀոգին որդեգրութեան ». և որդեգրեալք Հոգւովն, յայտ է թէ Քրիստոսի՝ կոչիմք որդիք Աստուծոյ. « Զի որք ընկալանն զնա՝ ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել ». և դարձեալ Հօր՝ որպէս և Պաւղոս ասաց, « Միայնոյ իմաստնոյ Աստուծոյ ». Որդի ասի իմաստութիւն սորա. վասն զի « Քրիստոս Աստուծոյ զօրութիւն և իմաստութիւն ». իսկ ապա Որդւոյ գոլով իմաստութիւն, մեք զՀոգին ընդունելով, զՔրիստոս ընդունիմք. և նովաւ իմաստնացեալք լինիմք. քանզի այսպէս և գրեալ է ի հարիւր քառասուն և հինգ° սաղմոսին. « Տէր լուծանէ զկապեալս, Տէր իմաստնացուցանէ զկոյրս ». և Փրկիչն ասաց, « Առէք Հոգի սուրբ »։ Քանզի զոր օրինակ ծնունդ միածին[1] Որդին է, այսպէս և Հոգին՝ որ յՈրդւոյ բաշխեալ առաքեալ՝ նա մի է և ոչ բազում, և ոչ ի բազմաց մի, այլ միայն է նոյն Հոգի, միայն գոլ կենդանի Բանին, մի գոլ պարտ է, լի և կատարեալ, զսրբական և զլուսաւորական զկենդանի նորա ազդումն և զպարգևս նորա, « Որ ի Հօրէ ասի ելանել ». քանզի ի Բանէն՝ որ ի Հօրէ է՝ խոստովանեալ փայլէ, առաքի և բաշխի։

Որդի ի Հօրէ առաքի, քանզի « Այնպէս, ասէ, սիրեաց Աստուած զաշխարհ, մինչև զՈրդին իւր միածին առաքեաց ». իսկ Որդի զՀոգին առաքէ. « Զի եթէ ես երթամ, առաքեցից զՄխիթարիչն »։ Եւ դարձեալ, Որդի զՀայր փառաւորէ ասելով, « Ես զքեզ փառաւորեցի յերկրի ». իսկ Հոգին զՈրդին փառաւորէ, քանզի ասէ. « Նա զիս փառաւորեսցէ »։ Եւ Որդի ասէ. « Զոր լուայ

1. Յօր. Միածնին։

ի Հօրէ, զայս և յաշխարհի խօսիմ»: Իսկ Հոգւոյն՝ յՈրդւոյ առնու. «Ցիմմէ անտի առնու և պատմեսցէ ձեզ»: Եւ դարձեալ, Որդի՝ յանուն Հօր եկն. իսկ զՀոգւոյն սրբոյ ասէ Որդի. «Զոր առաքեսցէ Հայր յանուն իմ»: Եւ արդ, զայսպիսի կարգ և զընութիւն ունելով Հոգւոյն առ Որդին, որպէս ունի Որդի առ Հայր, տեսցուք այսուհետեւ և զնոյն առանձին, որ յաստուածեղէն գիրս՝ վասն սրբոյ Հոգւոյն, և որպէս փորձ վաճառականք՝ քննեալ ընտրեսցուք զասացուածս յաղագս Հոգւոյն:

Եւ արդ, ի Ծննդոց ահա գրեալ է. «Եւ Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջուրց». և յետ սուղ ինչ ասէ. և «Ո՛չ մնասցէ Հոգի իմ ի մարդկանս յայսմիկ յաւիտեան, վասն լինելոյ նոցա մարմին»: Եւ ի Թիւսն ասէ Մովսէս առ Յեսու որդի Նաւեայ. «Մի՛ նախանձեցուցաներ դու զիս. և ո՛ տացէ ինձ զամենայն ժողովուրդն Տեառն մարգարէս, յորժամ տացէ Տէր զՀոգի իւր ի նոսա». և ի Դատաւորսն՝ յաղագս Գոթոնիէլի ասէ. «Եւ եղեւ Հոգի Տեառն ի վերայ նորա, և դատեաց զիսրայէլ». և դարձեալ, «Եղեւ ի վերայ Յեփթայեայ Հոգի Տեառն». իսկ վասն Սամփսոնի՝ «Աճեաց, ասէ, մանուկն, և օրհնեաց զնա Տէր, և սկսաւ Հոգի Աստուծոյ գնալ ընդ նմա. և խաղայր ի վերայ Հոգի Աստուծոյ». և դարձեալ, սաղմոսելով Դաւթի՝ «զՀոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն». և դարձեալ, «Հոգի քո սուրբ և բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ». և յԵսայեան գրեալ է. «Հոգի Տեառն ի վերայ իմ, վասն որոյ և օծ իսկ զիս»: Ասիւր և յառաջ քան զայս. «Վա՜յ որդիք ապստամբք, այսպէս ասէ Տէր, խորհեցայք խորհուրդ և ոչ ինեւ, և դաշինս կռեցէք, և ոչ Հոգւով իմով». և դարձեալ ասէ. «Լուարուք զայս. ո՛չ ի սկզբանէ ի ծածուկ խօսեցայ. քանզի յորժամ լինէրն՝ ես անդ էի. և

արդ, Տէր առաքեաց զիս և Հոգի նորա». և յետ սուղ ինչ ասէ. «Եւ այս նոցա՝ որ յինէն ուխտ ասէ Տէր. Հոգի որ է ի քեզ». և դարձեալ զըստ կարիան ի վերայ բերեալ, ասէ. «Ո՛չ բարեխօս և ո՛չ հրեշտակ, այլ ինքնին Տէր փրկեաց զնոսա. վասն սիրելոյ զնոսա և խնայելոյ ի նոսա, ինքն փրկեաց զնոսա և ընկալաւ զնոսա, և բարձրացոյց զնոսա զամենայն աւուրս յաւիտենից: Եւ նոքա ո՛չ անսացին, այլ բարկացուցին զՀոգի նորա սուրբ»: Եւ Եզեկիէլ այսպէս ասէ. «Եւ էառ զիս Հոգին, և տարաւ զիս յերկիրն Քաղդէացւոց ի մէջ գերութեանն՝ տեսլեամբ Հոգւոյն Աստուծոյ». իսկ ի Դանիէլն. «Եւ զարթոյց զՀոգին սուրբ ի վերայ մանկան միոյ տղայոյ, որում անուն էր Դանիէլ. և գոչեաց ձայնիւ մեծաւ և ասէ. Անպարտ եմ ես յարենէդ յայդմանէ». և Միքիաս ասէ. «Եւ տունն Յակոբայ բարկացոյց զՀոգին Տեառն». և ի ձեռն Յովելայ այսպէս ասէ Աստուած. «Եւ եղիցի յետ այսորիկ՝ հեղից յՈգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոց»: իսկ ի ձեռն Զաքարիայ դարձեալ՝ ձայն Աստուծոյ է որ ասէ. «Բայց զբանս իմ և զօրէնս իմ ընկալարուք, զոր ես պատուիրեմ Հոգւով իմով՝ ծառայից իմոց մարգարէից». յորժամ և մեղադրելով մարգարէն ժողովրդեանն, յետ սուղ ինչ ասաց. «Եւ զսիրտ իւրեանց կարգեցին յանհաւատութիւն՝ առ ի յոչ լսել օրինաց իմոց և բանից իմոց, և բանից՝ զոր առաքեաց Տէր ամենակալ Հոգւով իւրով»: Եւ արդ, կայսոսիկ ասացեալ ի հնոյն դուզնաքեայ ինչ:

Բայց հարցէք և դուք և որ ինչ յաւետարանսն, և զորս գրեցին առաքեալքն վասն սրբոյ Հոգւոյն: իսկ արդ, Տէրն՝ որպէս յառաջագոյն ասացի՝ մարդկապէս մկրտիւր ի ձեռն զոր զգեցաւ մարմնոյն, ասի իջանել ի վերայ նորա Հոգին սուրբ. և զայս տուեալ աշակերտացն՝ ասէ. «Առէք Հոգի

սուրբ »· և ուսոյց նոցա , « Բայց մխիթարիչ Հոգին սուրբ, զոր առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամենայն »· և յետ փոքր ինչ ասաց. « Յորժամ եկեսցէ մխիթարիչն՝ զոր ես առաքեմ ձեզ ի Հօրէ, զՀոգին ճշմարտութեան՝ որ ի Հօրէ ելանէ, և նա վկայեսցէ վասն իմ»· և դարձեալ, « Ոչ դուք իցէք որ խօսիցիք, այլ Հոգի Հօր ձերոյ՝ որ խօսիցի ի ձեզ »: Եւ յետ սուղ ինչ ասէ. « Իսկ եթէ Հոգւով Աստուծոյ հանեմ զդեւս, ուրեմն հասեալ է ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ ». և զբոլոր իսկ ահա զաստուածաբանութիւնն, և զմեր կատարելութիւնն, որով յարեաց զմեզ առ ինքն, և ինքեամբ առ Հայր, սովաւ կատարելով պատուիրէ աշակերտացն ասելով· « Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ». և խոստացեալ նոցա առաքել զնա, « Պատուէր տայր նոցա յԵրուսաղէմէ մի՛ մեկնել ». և յետ սուղ ինչ, « Ի կատարել աւուրցըն պէնդէկոստէից՝ էին ամենեքեան ի միասին. և եղեւ յանկարծակի հնչիւն յերկնից՝ իբրեւ սաստիկ հողմոյ, և լից զամենայն տունն յորում նստէինն. և երեւեցան նոցա բաժանեալ լեզուք իբրեւ ի հրոյ, և նստաւ իւրաքանչիւր ի վերայ նոցա: Եւ լցան ամենեքեան Հոգւով սրբով, և սկսան խօսել յայլ լեզուս, որպէս և Հոգին տայր բարբառել նոցա »:

Այպա աստուստ ի ձեռն առաքելոցն ձեռնադրութեան՝ պարգեւեալ լինէր վերստին ծնեցելոյն Հոգին սուրբ. և Ագաբոս մարգարէացաւ նովաւ ասելով· « Այսպէս ասէ Հոգին սուրբ », և Պաւղոս· « Որով եդ զմեզ Հոգին սուրբ տեսուչս, հովուել զեկեղեցի Տեառն, զոր գնեաց արեամբն իւրով ». և Ներքինւոյն մկրտելով՝ « Յափշտակեաց Հոգին սուրբ զՓիլիպպոս »: Եւ Պետրոս գրեաց ասելով. « Ընկալեալք զկատարումն հաւատոյ զոգ-

ւոցն փրկութիւն. և քննէին յորում և յորպիսի ժամանակի գուշակէր ի նոսա Հոգին Քրիստոսի. յառաջագոյն վասն չարչարանացն Քրիստոսի, և յետ այնորիկ զփառացն»։ Եւ Յովհաննէս գրեաց ասելով. «Յայսմ ճանաչեմք, եթէ ի Նմա եմք և Նա ի մեզ, զի ի Հոգւոյն ետ մեզ». և Պաւղոս գրէ առ Հռովմայեցիսն. «Բայց դուք ո՛չ էք մարմնով, այլ հոգւով, եթէ իցէ Հոգի Աստուծոյ ի ձեզ բնակեալ. իսկ եթէ ոք զՀոգի Քրիստոսի ո՛չ ունի, սա չէ՛ Նորա»։ «Իսկ եթէ Քրիստոս ի ձեզ, ապա մարմին մեռեալ է վասն մեղացն. և Հոգին կենդանի է վասն արդարութեանն. իսկ եթէ Հոգի այնորիկ՝ որ յարոյցն զՔրիստոս».[1] ժառանգորդք Աստուծոյ. քանզի, «Ո՞չ գիտէք, ասէ, եթէ տաճար էք Աստուծոյ և Հոգի Աստուծոյ բնակեալ է ի ձեզ. եթէ ոք զտաճար Աստուծոյ ապականէ, ապականեսցէ զնա Աստուած. զի տաճար Աստուծոյ սուրբ է, որ էք դուք»։ Իսկ արդ՝ Հայր ի ձեռն Բանին Հոգւովն սրբով ստանայ զամենայն և Նորոգէ, ո՞ր նմանութիւն և կամ ազգակցութիւն ունի ստացողին առ ստացուածս։

Պատկեր Որդւոյ ասի և է Հոգին սուրբ. «Քանզի զորս յառաջն ծանեաւ՝ յառաջագոյն սահմանեաց լինել կերպարանակից պատկերի Որդւոյն իւրոյ»։ Իսկ ապա եթէ ո՛չ է ստացուած Որդի, ո՛չ ուրեմն է և սորին պատկերն ստացուած. քանզի որպիսի է պատկերն՝ այնպիսի եւս հարկ է և որոյ է պատկերն գոլ. ուստի յաւէտ յիրաւի խոստովանեալ լինի Բանն՝ ոչ գոլ ստացուած, այլ պատկեր Հօր ելով։ Իսկ արդ՝ որ զՀոգին ընդ ստացուածս զուգէ, ամենայն իրօք և զՈրդին ի սոսա վարկանի ամպարշտելով. և ի ձեռն այսորիկ՝ և ի Հայրն՝ սակս որ ի սորին պատկերն հայհոյութեան։

1. Ի լս. եդեալ էր ի գաղափարողէն. «սատանոր թերթ մի թղթոյ անկեալ էր յօրինակէն»։

Եւ արդ, դարձեալ իմաստուն նոցա հարցումնն. զի եթէ յԱստուծոյ է և Հոգին, հի՞մ ո՛չ ասի և նա Որդի։ Եւ արդ, ցուցեալ եղեւ այս և յառաջկոյս, յանդուգն և յոյժ ամպարհաւանճ. բայց և այժմ ցուցցի, ոչինչ նուազ քան զառաջինն. զի թէպէտ և ո՛չ Որդի ասացաւ ի գիրս, այլ Հոգի Աստուծոյ, նովիմբ Աստուծով, և վասն այնորիկ ի նմին յԱստուծոյ ասի, որպէս առաքեալ գրեաց։ իսկ եթէ Որդի, զի ի Հօրէ՝ և նորին ինքեան բնութեանն, հարկ է և զՀոգին զասացեալն յԱստուծոյ՝ և նորին գոլ ինքեան Որդւոյն բնութեան. վասն որոյ և Տէրն գոլով Որդի, նոյն ինքն Հոգին ասի՝ Հոգի որդեգրութեան։ Եւ դարձեալ, Որդւոյն ելով իմաստութիւն և զօրութիւն և ճշմարտութիւն[1], գրեալ է զՀոգին գոլ հոգի իմաստութեան և ճշմարտութեան։ Եւ դարձեալ, Որդի է զօրութիւն Աստուծոյ և Տէր փառաց, և նոյնգունակ և Հոգին սուրբ՝ հոգի զօրութեան և հոգի փառաց. այսպէս վկայելով ամենայն գրոց։ Պաւղոս գրելով առ կորնթացիսն. «Զի թէ էր ծանուցեալ՝ ոչ արդեւք զՏէր փառացն ի խաչ հանէին». և այլուր՝ զի «Ո՛չ առէք զՀոգին ծառայութեան միւսանգամ յերկիւղ, այլ առէք զՀոգին որդեգրութեան». և դարձեալ՝ «Առաքեաց Աստուած զՀոգի Որդւոյն իւրոյ ի սիրտս մեր, որ աղաղակէ աբբայ, Հայր»։ և Պետրոսի գրելով. «Զի եթէ նախատիցիք եւս վասն անուանն Քրիստոսի՝ երանելի էք, զի փառաց և զօրութեան անուն է, և Աստուծոյ Հոգին ի վերայ ձեր հանգուցեալ է». և Տէրն ասաց՝ «Հոգի ճշմարտութեան, և մխիթարիչ գոլ զՀոգին». յորոց ցուցեալ եղեւ կատարեալ գոլ զԵրրութիւնն։ իսկ ի ձեռն սորա՝ զստացուածքս, Բանն փառաւորէ աստուածագործելով, և որդեգրելով՝ մատուցանէ առ

1. Յոր. իմաստութեան և զօրութեան և ճշմարտութեան։

Հայր։ Իսկ արդ, որ միացուցանէ ընդ Բանին զստացուածս, ապա ոչ ուրեմն է նա ստացելոցս. և որ որդեգրէ զստացուածս՝ ո՛չ է օտար յՈրդւոյ· խնդրել հարկ է ա՛յլ Հոգի, զի և սա նովաւ յարեսցի ի Բանն. այլ անտեղի է այս. ո՛չ ուրեմն ապա յեղելոցս է Հոգին, այլ ինքեան Հօր աստուածութեանն, որով զեղականքս՝ Բանն աստուածագործէ, որով աստուածագործին ստացուածքս. ո՛չ է նա առանց Հօր աստուածութեանն, և զի Աստուած է Հոգին, պա՛րտ է աստուստ իմանալ։

Անփոփոխելի և անայլայլելի է Հոգին. «Քանզի սուրբ Հոգին իմաստութեան, ասէ, փախիցէ ի նենգութեանց· և մերժեսցի ի խորհրդոց անզգամաց»· և Պետրոս ասէ. «Անեղծութեան, հեզութեան, հանդարտութեան Հոգւոյն». և դարձեալ, յիմաստութիւնն, «Զի անապական Հոգի է յամենեսեան»· և եթէ՝ «Ոչ ոք գիտէ զաստուծոյսն, եթէ ո՛չ Հոգին Աստուծոյ՝ որ ի նմա»։ Եւ «Ոչ է առ Աստուծոյ, որպէս ասացն Յակովբոս, փոփոխումն և կամ շրջումն ստուերի». զի յԱստուծոյ ելով Հոգին սուրբ, յիրաւի է անփոփոխելի և անայլայլելի Հոգին սուրբ և անապական. իսկ եղականացս և ստացականացս բնութիւն՝ է փոփոխելի· վասն զի արտաքոյ եղեալ աստուածեղէնն բնութեան և յոչէութեան գոյացեալ. զի ամենայն մարդ սուտ է, և ամենեքին մեղան, և նուազեալ ի փառացն Աստուծոյ։ Դարձեալ, և աստուստ ոք տեսցէ զՀոգին սուրբ, զի ինքնաբուն է, և ոչ ընդ ումեք կցորդ. վասն զի զնոյն ոչ է դանդաղելի ասել. քանզի անհնար է միանգամ մկրտելոցն, որք ճաշակեցին պարգեւացն և հաղորդ եղեն սրբոյ Հոգւոյն, և զգեղեցիկ Բանին Աստուծոյ ճաշակս ճաշակեցին։ Եւ զի մի է Հոգին սուրբ և անբաժանելի յՈրդւոյ, և զի ո՛չ է ի ստացականաց, ցուցեալ եղեւ ահա յաստուածաշունչ գրոց։

Ցեացուք դարձեալ և յաղագս Որդւոյ. քանզի արիանոսքն յինքեանս դարձեալ, ոչինչ աւելի կամ արտաքուստ ինքեանց իմացեալք, ըստ Սադուկեցւոցն՝ մարդկօրէն խորհրդովք ընկալան զաստուածեղէն գիրս. քանզի լսելով իմաստութիւն և ճառագայթ և բան Հօր՝ զՈրդի, սովորեցին ասել զայս՝ թէ զիա՞րդ կարելի է այսմ լինել. որպէս զի ոչ գոլ կարելի լինել՝ զոր նոքա ոչ կարեն իմանալ։ Ուստի ժամ է նոցա և յաղագս ամենայնի այսպէս իմանալ, թէ զիա՞րդ կարեն ստացուածքս՝ ո՞չ գոլով երբեմն՝ լինել. կամ զիա՞րդ կարաց հողս ստեղծանել մարդ բանաւոր. կամ ո՞րպէս ապականացուն անապական լինել. կամ զիա՞րդ երկիր ի վերայ ծովու է հիմնացեալ, և ի վերայ գետոց պատրաստեաց զնա Աստուած. և այնուհետեւ ասել նոցա անձանց, թէ՝ «կերիցուք արբցուք, զի վաղիւն մեռանիմք». յայտ է թէ ապականացու նոքա՝ ապականին և հերձուածոց նոցա մոլորութիւնք։ Իսկ ճշմարտութեանն բանք, զոր և արժան է և նոցա ի միտ առնուլ, այսպիսի է։

Աղբիւր և լոյս և Հայր է. աստուածավայելուչ է ասել՝ ո՞չ զաղբիւրն ցամաք, և ոչ զլոյսն ճառագայթ, և ո՞չ զԱստուածն Բան. զի մի՛ առանց բանի և անիմաստ և անլոյս Աստուած. և ի յեղաշրջմանէ Հայր լիցի Աստուած. քանզի մշտնջենաւորի եղոյ Հօր, հա՛րկ է և Որդւոյ մշտնջենաւոր գոլ. վասն զի զոր ինչ ի Հօր իմանամք, զայս և յՈրդւոջ գոլ ո՞չ է յերկուանալի, ասելով նորին իսկ Տեառնն. «Ամենայն ինչ զոր ունի Հայր՝ իմ է, և որ ինչ իմ է, այն ամենայն Հօր է»։ Արդ., յաւիտենական է Հայր, յաւիտենական և Որդին, քանզի նովաւ յաւիտենականք եղեն. *Է՛ է՝ Հայր հարկաւորութեամբ, է՛ է Որդի*, «Որ ի վե-

* Աստուածային բանքդ յոր. գրեալ էր այսպէս. Է՛, Է՛ Հայր հարկաւորութեամբ. Է՛, Է՛ Որդի. ուստի միայ անհասականալի. այլ թէ զի՞նչ

րայ ամենեցուն Աստուած օրհնեալ յաւիտեանս, ամէն », որպէս ասայն Պաւղոս։ Անմարթ է ասել սակս Հօր, եթէ է երբեմն՝ զի ոչ էր. անփայելուչ է ասել և յաղագս Որդւոյ, երբեմն՝ զի ոչ էր։ Ամենակալ Հայր, ամենակալ և Որդին ասելով ի Ովաննու. «Այսպէս ասէ որ էն, որ էր որ գալոցն է ամենակալ »։ Լոյս է Հայր, ճառագայթ Որդի, որ և լոյս ճշմարիտ. ճշմարիտ Աստուած է Հայր, ճշմարիտ Աստուած և Որդի։ Քանզի այսպիսի Յովաննէս գրեաց. « Եմք ի ճշմարտի Որդւոջ Նորա Յիսուսի Քրիստոսի. սա է Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենական », որ բոլորովիմբ իսկ՝ ոչ ինչ է, զոր ունի Հայր, որ ոչ է Որդւոյ. քանզի վասն այնորիկ Որդի ի Հայր. զի ամենայն ինչ Հօր՝ յՈրդւոջ է։ Եւ դարձեալ նոյն այս ի Հօր իմանի. քանզի ասէ. « Ես և Հայր իմ մի եմք ». վասն զի ոչ այլ ինչ ի յայսմ, և ոչ այլ ինչ յՈրդւոջ, այլ որ ինչ ի Հայր, այս և յՈրդւոջ է. և զոր ինչ տեսանես ի Հայր, տեսանես և յՈրդւոջ, իմացեալ բարւոքապէս ըստ նմա, եթէ « Որ ետես զիս, ետես զՀայր ». վասն որոյ գրեալ է, « Յիսուս Քրիստոս երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս ». իսկ եղականքս ոչ էին և եղեն [1], վասն զի երկիր որպէս զոչինչ արար, և որ կոչէ զչգոյն իբրեւ զգոյ, արարած է և ստեղծուած. վասն որոյ և զսկիզբն ունի զլինելութիւնն. քանզի « Ի սկզբանէ արար Աստուած զերկին և զերկիր, և զամենայն զարդ որ ի նոսա ». և դարձեալ, « Ձեռն իմ արար զայս ամենայն »։

Իսկ ի է՛ էն[2] ի վերայ ամենայնի Աստուած, որպէս զՀայր, և այս ցուցեալ եղեւ, զի ոչ արարեալ, այլ

իցէ ստոյգ միտք բանին, չեղեւ մեզ մարթ հաւաստեաւ ի վերայ կալ. կալցի ոք՝ որպէս և ախորժէ։

1. Յօր. եղեալ էր՝ ոչ էղէն։ 2. Յօր. գրեալ էր այսպէս. իսկ ի է՛, էն։

արարող և արարիչ գործոց Հօր․ քանզի նովաւ յաւիտեանք եղեն, ամենայն ինչ նովաւ եկաց բովանդակ, և առանց նորա եղեւ և ոչինչ, որպէս առաքեալ եցոյց ի սաղմոսէն․ «Նա ինքն ի սկզբանէ զերկիր հիմնեցոյց, և գործք ձեռաց նորա երկինք»․ որպէս ասէ ի սաղմոսին «Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան արքայութեան քո․ սիրեցեր զարդարութիւն և ատեցեր զանօրէնութիւն»․ և մարգարէն Եսայեաս գոչէ ասելով․ «Աշխատեցաւ վաստակեցաւ Եգիպտոս, և վաճառականք Հնդկաց և Սաբայեցիքն, արք բարձունք ի քեզ եկեսցեն, և հետեւեսցին զհետ քո կապեալ ձեռակապք, և քեզ երկիր պագցեն, զի Աստուած քո ի քեզ․ դու ես Աստուած խորայեցի, և ոչ գիտէաք»։

Արդ, ո՞վ է Աստուած՝ յորում Աստուած, եթէ ոչ Որդի՝ որ ասաց, «Ես ի Հայր և Հայր յիս է»․ և զայս ունի Որդի համարձակն Հօր գոլով ամենակալ, որ էն և անպայլայլն․ և վասն այնորիկ հաւատ մեր է ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին։

Երրորդութիւն ապա սուրբ և կատարեալ է՝ Հարբ և Որդւովն և սուրբ Հոգւովն աստուածաբանեալ, ոչինչ օտար արտաքոյ ի ներքս խառնեալ ունելով։ Եւ ո՛չ յարարչագործէ և ի ստացուածէ ի միասին կացեալ, այլ բոլորովին ստացող և արարչագործ գոլով, նման ինքեան է և անբաժանելի բնութեամբ։

Մի սորին և ազդումն․ քանզի Հայր ի ձեռն Բանին՝ Հոգւովն՝ սուրբ զամենայն առնէ, ուստի միանականութիւն սրբոյ Երրորդութեանն ողջ պահեալ լինի, և այսպէս Աստուած յեկեղեցւոջ քարոզի, որ ի վերայ ամենեցուն և յամենայնսն, և ընդ ամենայնսն Հոգւովն սրբով։

Երրորդութիւն ոչ անուամբ միայն երեւոյթական տարիւք, այլ ճշմարտութեամբ և էութեամբ

Երրորդութիւն. քանզի զոր օրինակ Հայր է՛ է[1], այսպէս՝ է՛ է և Որդի՝ ի վերայ ամենեցուն սուրբն Բան. իսկ և Հոգին սուրբ ո՛չ անգոյ է, այլ է՛ է մշտնջենաւորապէս ճշմարտութեամբ. և քան զայս ոչինչ նուազս խորհի կաթողիկէ եղեղեցի: Եւ զի այս է եկեղեցւոյ հաւատ, ուսցին, եթէ որպէս Տէրն առաքելով զաշակերտսն պատուիրէր ասելով. «Գնացէք աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ». և առաքելոցն գնացեալ ուսուցին այսպէս: Եւ այս է ընդհանուր կաթողիկէ եկեղեցւոյ քարոզութիւն. Երրորդութիւն խոստովանել զմի աստուածութիւնն. իսկ եթէ Երրորդութիւն է, զոր օրինակ և է իսկ ճշմարիտ, և ցուցեալ եղեւ անբաժանելի գոլ և ոչ աննման, հարկ է և սրբութիւն մի գոլ սորա. մի, դարձեալ, սորին և մշտնջենաւորութիւն և անփոփոխութիւն բնութեանն. զայս ծանուցեալ Պաւղոսի, ո՛չ բաժանէ զԵրրորդութիւնն, այլ մանաւանդ զմիանականութիւն սորին ուսուցանէ գրելով առ Կորնթացիսն վասն հոգեւորացն, և զամենայն ի մի Աստուած գլխաւորէ, ասելով. «Թէպէտ և բաժինք շնորհաց են, այլ Հոգի նոյն է, թէպէտ և բաժինք ներգործութեանց են, այլ Աստուած նոյն է՝ որ ներգործէ զամենայն յամենայնի». վասն զի զոր Հոգին իւրաքանչիւր ումեք բաժանէ, այս առ ի Հօրէ ի ձեռն Բանին մատակարարի, զի ամենայն ինչ Հօր Որդւոյ է. յաղագս որոյ, և որ առ ի յՈրդւոյ ի ձեռն Հոգւոյն բաշխեալն՝ Հօր են շնորհքըն. և Հոգւոյն գոլով ի մեզ, և Բանն, որ սորին տուիչ՝ է ի մեզ. և ի բանին է հայր, «Եւ այս է եթէ «Եկեսցուք ես և Հայր, և օթեւանս առ նմա արասցուք»: Քանզի ուր լոյս՝ անդ և ճառագայթք, և ուր ճառագայթ՝ անդ և սորին ներգործու-

1. Յոր. եր՝ Ե, Է. նոյնպէս և յաջորդքն:

թիւնք և ինքներեւակ շնորհք։ Եւ զայս ուսեալ Պաւղոսի՝ գրեաց առ Կորնթացիսն յերկրորդ-թղթին, ասելով. «Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և սէրն Աստուծոյ, և հաղորդութիւն սուրբ Հոգւոյն եղիցի ընդ ձեզ ամենեսեան»։ Քանզի տուեալ շնորհքն և պարգեւք Երրորդու-թեամբն բաշխին, ի Հօրէ՝ ի ձեռն Որդւոյ՝ Հոգւովն սրբով. վասն զի որպէս ի Հօրէ է տուեալ շնորհ-քըն՝ ի ձեռն Որդւոյ, սոյնպէս և ո՛չ լինի հաղոր-դութիւն ի մեզ պարգեւացն, եթէ ոչ Հոգւովն սրբով. քանզի ի սմա հաղորդեալք՝ ունիմք ըզ-Հօր սէրն, և զՈրդւոյ շնորհս, և զնոյն ինքն՝ ըզ-Հոգւոյն սրբոյ հաղորդութիւն։ Մի ուրեմն է ապա յայսցանէ սուրբ Երրորդութեանն ազդումն ցու-ցեալ. զի ոչ եթէ զառ ի յերկաքանչիւրոցն զա-նազանապէս և բաժանմամբ զտուեալն նշանակէ առաքեալ, այլ զի տուեալն՝ Երրորդութեամբն պար-գեւի, և ամենայն միոյն Աստուծոյ է։ Իսկ ապա ո՛չ գոլոյ ստացուած, այլ միասնական Որդւոյ, որ-պէս Որդի միասնական է Հօր՝ փառաւորակիցն Հօր և Հոգւոյ[1], աստուածաբանեալ ընդ նոսին և գործէ, ահա զոր օրինակ և Հայր ի ձեռն Որդ-ւոյ. զայս և ի սաղմոսին երգէ ասելով. «Բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նորա»։ Եւ ի հարիւր քառասուն և եւթն սաղմոսին. «Առաքէ զԲան իւր, և հալէ զնոսա շնչեսցեն հոգիք և հոսեսցին, ջուրք»։ «Եւ արդարացայք որպէս, ասացն Պաւղոս, յա-նուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և ի Հոգին Աստուծոյ մերոյ». քանզի անբաժանելի ի Բա-նէն է Հոգին. վասն որոյ և յասելն Տեառն՝ եթէ «Եկեսցուք ես և Հայր», ընդ նոսին ի ներքս գայ և սուրբ Հոգին, ո՛չ այլազգ, այլ որպէս Որդի ի մեզ բնակելով, գրելով Պաւղոս առ Կորնթացիսն.

1. Յօր. Որդւոյ։

«Զի տացէ ձեզ ըստ մեծութեան փառաց իւրոց, հաստատել զօրութեամբ ի ձեռն Հոգւոյն իւրոյ, ի ներքին մարդն բնակեցուցանել զՔրիստոս», և Որդւոյն ի մեզ ելով՝ է Հայրն, ասելով Որդւոյն, «Ես ի Հայր և Հայր յիս»։ Ուստի և ի լինել Բանին ի մարգարէսն՝ նոյն ինքն Հոգւովն սրբով մարգարէանային· գրոց ահա ասելով, «Եղեւ բան Տեառն առ այս անուն մարգարէ»· ցուցանի մարգարէացեալ ի Հոգւոյն սրբոյ. որպէս Զաքարիա գրեալ է. «Բայց զբանս իմ և զօրէնս իմ ընկալարուք, զոր ես պատուիրեմ Հոգւով իմով՝ ծառայից իմոց մարգարէից»։ Յորժամ և փոքր ինչ մեղադրելով գիրն՝ ասաց ժողովրդեանն. «Եւ զսիրտս իւրեանց կարգեցին յանհաւանութիւն առ ի յոչ լսել պատգամաց իմոց և բանից, զորս առաքեաց Տէր ամենակալ Հոգւով իմով ի ձեռն ծառայից իւրոց մարգարէիցն առաջնոցն»։ Եւ Պետրոս ի Գործս առաքելոցն ասաց· «Արք եղբարք, պարտ էր կատարել գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հոգին սուրբ», և առ հասարակ առաքեալքն ամենայն գոչէին ասելով· «Դու տէր Աստուած՝ որ արարեր զերկինս և զերկիր և զծով և զամենայն որ է ի նոսա, որ ի բերանոյ Հօր մերոյ Դաւթի ի ձեռն Հոգւոյն սրբոյ ասացեր»։ Եւ Պաւղոս հասեալ ի Հռովմ, համարձակէր՝ որ գային առ նա Հրեայքն՝ ասելով· «Բարիոք ասաց Հոգին սուրբ ի ձեռն Եսայեայ՝ առ հարսն մեր». և առ Տիմոթէոս գրէ· «Այլ Հոգին սուրբ յայտնապէս ասէ, թէ ի ժամանակս յետինս քակտեսցին ոմանք ի հաւատոցն և հայեսցին յայսս մոլորութեանն[1]». վասն որոյ և յորժամ ասէ Հոգին ի՞ւ լինել, իմանի թէ Բանն է, որ ի համար տայ զՀոգին· իսկ արդ՝ մարգարէութիւնն կատարելոյ՝ «Հեղից յոգւոյ իմմէ ի վերայ ամենայն մարմնոյ». և Պաւղոս ասէ. «Ըստ

1. Յօր. մոլորութեանն։

պարգեւացն ինձ Հոգւոյն Յիսուսի Քրիստոսի». և առ Կորնթացիսն գրեաց ասելով. «Եթէ զփորձ ինչ խնդրէք զՔրիստոսի՝ որ ինեւս ընդ ձեզ խօսի»․ իսկ եթէ Քրիստոս էր՝ որ Նովաւ խօսէր, յայտ է եթէ Քրիստոսի էր Հոգին՝ որ Նովաւ խօսէր. վասն զի և Քրիստոսի խօսելով Նովաւ, ի Գործս առաքելոցն ասաց. «Եւ այժմ ես կապեալ Հոգւովն երթամ յԵրուսաղէմ, և զինչ անդ անցք անցանելոց են ընդ իս՝ չգիտեմ. բայց զի Հոգին՝ ըստ քաղաքաց քաղաքաց վկայէ ինձ ասելով, եթէ կապանք և նեղութիւնք մնան քեզ». ուստի եթէ սուրբքն ասեն՝ այսպէս ասէ Տէր, ոչ այլազգ՝ եթէ ոչ Հոգւովն սրբով խօսին, և Հոգւովն սրբով խօսելով՝ Քրիստոսիւ զնոյն խօսէին։ իսկ եթէ և Ագաբոս ի Գործս առաքելոցն ասէ, «Այսպէս ասէ Հոգին սուրբ», ո՛չ այլազգ՝ եթէ ոչ բանիւն եղելովն առ Նա՝ Հոգին պարգեւէ զխօսելն Նմա, և գնել վկայութիւն[1] զի՞նչ կրելոցն էր Պաւղոս յԵրուսաղէմ. վասն որոյ և Հոգին՝ դարձեալ վկայելով Պաւղոսի, ինքն Քրիստոս խօսէր Նովաւ, որպէս զի լինել Բանին զառ ի Հոգւոյն եղեալս վկայութիւնս։ Այսպէս և ի սուրբ կոյսն Մարիամ գոլով Բանին, ընդ Նմին ի ներքս եկն և Հոգին. և Բանն Հոգւովն ստեղծ և պատշաճեցոյց ինքեան մարմին. կամեցեալ յարել և մատուցանել ինքեամբ զստացուածս առ Հայր, և հաշտեցուցանել զամենեսեան՝ արարեալ խաղաղութիւն յերկինս և ի վերայ երկրի Քրիստոս Աստուած մեր. որում փառք յաւիտեանս. ամէն։

1. Յոր. վկայութեան.

## ԺԵ

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

### Ի ԾՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ*

*Արդ, եղեալ ի վեցերորդումն աւուրն Ադամ, ի վեցհազարեան, դարուն կուսականն ծնունդ։ Խարդաւանող հրեշտակն[2] մահաբեր թիւնիւքն զծանծաղամիտ կինն երևոյթս[3] առնէր. իսկ Գաբրիէլ հրեշտակապետ[4] աւետաւորէր[5] երջանկացեալ կուսին՝ «Տէր ընդ քեզ»։ Հրապուրողի չարին բանսարկու եղեալ, և ի մախանս դրժողս[6] որսացաւ[7] զԱդամ. զի ի պատուիրանին ծանեաւ զսէր աստուածութեանն[8], եթէ հանդերձեալ պահին՝ մետուղփեան հրաշիւքն[9]։*

* Ձ. ԻԹ և Ձ. ԺԳ դնեն. Նորին Աթանասի եպիսկոպոսի ասացեալ՝ ի ծնունդն Քրիստոսի։

1. Հւք. Գ. ունի այսպէս. Արդ է վեցերորդումն աւուրն եղեւ Ադամ, և առ ի վեցհազարեան.... (Յօր. ի վեցերորդ). իսկ Ձ. ԻԹ. չունի՝ աւուրն։

2. Ձ. ԻԹ. դնէ՝ վիշապն։

3. Ձ. ԻԹ և Ձ. ԺԳ.. դնեն՝ երեւոյթք։

4. Ձ. ԻԹ, Ձ. ԺԳ և Հւք. Գ. հրեշտակն։

5. Ձ. ԻԹ. ունի այսպէս. երջանկացեալ կուսին աւետարանէր ասելով. իսկ Հւք. Գ. աւետաւորեալ երջանկացեալ կուսին՝ Տէր ընդ քեզ ասէր։

6. Ձ. ԻԹ. վրիպակաւ դնէ՝ դրդողս։

7. Ձ. ԻԹ. որսացեալ։

8. Ձ. ԻԹ. զի պատուիրանաւն ծանեաւ զսէրն Աստուծոյ։ Հւք. Գ. պատուիրանէն. իսկ Ձ. ԺԳ ... ծանեաւ զսէր աստուածութեանն։

9. Յօր. հրաշագործն. եդաք ըստ Ձ. ԺԳ. իսկ Հւք. Գ. դնէ՝ հրաշագործն. Ձ. ԻԹ. ընդ հանդերձեալ է պահել ի մեծամեծեանն հրաշմանք։

*Ընդ[1] խորամանկ օձին միացաւ[2] Բելիար, և խարդախութեամբ զկինն դաւաճանէին[3], զի մեղիցեն և մեռցին և ապականեսցին, և տիրեսցէ[4] նոցա և փարթամասցի[5]: Ստունգանեցին[6] բանին[7] և պատուիրանին, և տարագիր եղեն ի ծառոյն կենաց. զի խրոխտացան լինել որպէս զարարիչն, և տենչացեալք նմին՝ անձամբ արտաքսելին ի խորհրդանոցէն մեծէ ի սուրբ խորանէն[8]:*

*Խորհուրդ էր Հօր և Որդւոյ[9], և սուրբ Հոգւոյն, վասն գալստեան Բանին և մարմնանալոյն[10] *և բառնալոյն զմեղս որդւոց Ադամայ*: Ընդ կատարէր խորհուրդն անեղին, Բանն[11] և միածին Որդին ի ծոց կուսին[12]. ոչ փոփոխեալ ի նմա[13], և ոչ այլայլեալ: Ո՞վ սքանչելեաց մեծաց և զարմանալեաց. Թէ Աստուած փառաց երեւեցաւ[14] յերկրի, հիացումն ունէր և զզօրս հրեշտակաց, և զանխլանայր ահաւոր խորհուրդն. ահեղակերպ*

1. Ճ. ԻԹ. ունի՝ զի ընդ:
2. Ճ. ԻԹ. գնէ՝ միացեալ:
3. Ճ. ԻԹ. գնէ՝ դաւաճանել:
4. Ճ. ԺԳ. գնէ՝ տիրեսցէ:
5. Ճ. ԻԹ. գնէ՝ փարթամասցէ:
6. Յոր. եղեալ էր՝ զի ստունգանեցին. յապաւեցաք զ՛զի ըստ Ճ. ԻԹ, Ճ. ԺԳ և Հւք. Գ:
7. Ճ. ԻԹ. չունի՝ բանին և:
8. Այս իմաստ յոր. եղեալ էր այսպէս. անձնամբք (իսկ Ճ. ԺԳ և Հւք. Գ. անձնամբք) եղեն ի խորհրդանոցէն մեծէ ի սուրբ խորանէն. տպագրեցաք ըստ ԻԹ ձառընտրի:
9. Ճ. ԺԳ. չունի՝ և Որդւոյ:
10. Ճ. ԻԹ. մարմնացելոյ:
*. Յաստեղանշէդ ցմիւսն չունի Հւք. Գ:
11. Ճ. ԻԹ. ունի այսպէս. Ընդ կատարէ խորհուրդ անեղ Բանին:
12. Ճ. ԻԹ. յաւելու՝ բերեալ. և ապա յարէ որպէս և Հւք. Գ. որպէս և ի ծոց Հօրն՝ նոյնպէս (Հւք. Գ. և) ի ծոց կուսին:
13. Ճ. ԻԹ. չունի՝ ի նմա:
14. Ճ. ԻԹ և Հւք. Գ. գնեն՝ մարմնացաւ:

հրոյն անբաւութեանն[1], բաւականանայր[2] արգանդ-անարատ[3] կուսին։ Այսք[4] են հրաշք յաւէժք[5] անհանդուրժելիք, զի ոչ եկէզ զարգանդն՝ և ոչ տոչորեաց։ Զայս տպաւորեաց[6] յառաջագոյն ի սուրբ մորենւոջն, յոր[7] բորբոքեալ վառէր հուր աստուածութեանն. զոր Մովսէսի տեսեալ և զարհուրեալ[8], զի ոչ բոցակիզէր հուրն զմորենին. այս[9] տարացոյց անբաւ սուրբ Աստուածածնին՝ և գաղափար հրաշալի ծննդեանն. ոչ հրամայէր[10] հայել[11] մեծին Մովսէսի, և ոչ խուզել ստուգիւ զմորենւոյն վառումն, զի ուսուսցէ զախմարսն[12]. և զգուշացուսցէ՝ զկուսական յղացումն[13] ոչ հարցափորձել[14]։

Ուղղապէս[15] և մեք խոստովանեսցուք յանապական մարմնի զտնօրէնութիւնն. քանզի մարմին եղեւ Բանն բնութեամբ[16], և միացաւ ի Նմա ան-

1. Հւք. Գ. դնէ՝ անբաւ էութեանն։
2. Ճ. ԻԹ. Ճ. ԺԳ և Հւք. Գ. բաւականայր։
3. Հւք. Գ. չունի անարատ. իսկ Ճ. ԻԹ. փոխանակ անարատի դնէ սրբոյ։
4. Ճ. ԻԹ. դնէ՝ այս։
5. Ճ. ԺԳ և Հւք. Գ. դնեն՝ անբաւելիք։
6. Յօր. եղեալ էր՝ զայս տպաւորեաց է սուրբ մորենւոջն. ուղղեցաք ըստ Ճ. ԻԹ, Ճ. ԺԳ և Հւք. Գ։
7. Յօր. որ, Ճ. ԺԳ. առ, ուղղեցաւ ըստ Ճ. ԻԹ. որ ունի այսպէս. յոր վառեալ բորբոքեալ..։
8. Ճ. ԻԹ. զիմաստ բանիս այսպէս յարմարէ՝ յորոյ տեսլեանն Մովսէս զարհուրէր։
9. Յօր. և ի Ճ. ԺԳ. եղեալ էր այլ. ուղղեցաք ըստ Ճ. ԻԹ և Հւք. Գ։
10. Հւք. Գ. դնէ՝ հրամայէ։
11. Յօր. պակասէր. եդաք ըստ Ճ. ԻԹ, Ճ. ԺԳ և Հւք. Գ։
12. Ճ. ԻԹ և Հւք. Գ դնեն՝ զտխմարսն։
13. Հւք Գ. դնէ՝ արգանդն։
14. Ճ. ԻԹ. հարցափորձել։
15. Ճ. ԺԳ. յաւելու՝ ուղղափառաբար։
16. Ճ. ԻԹ. դնէ՝ բաղադրականութեամբ. իսկ Ճ. ԺԳ. բնականութեամբ։

*որոշաբար[1]. անսպական է[2] մարմինն և աներկծական, և զկուսական արգանդն անխախուտ[3] պահեաց. զի տապանակ սուր[4] և խորան աննիւթ և քաւութիւն ահեղ[5], ըստ մովսիսեան գրոց: Մի է տէր մեր՝ և փրկիչն Յիսուս Քրիստոս. միով բնութեամբ եղեալ մարդ[6] յարգանդի: Մարգարէիցն տառից ունկնդիր լերուք[7], զի անապական ցուցին՝ միով բնութեամբ[8]. ոչ ուրանամ զբընութիւնն և ոչ բաժանեմ[9], այլ միութիւն ասեմ անշփոթաբար[10]:*

*Զի որ ի ծոցն Հօր՝ և[11] ի ծոց կուսին, ոչ գերահրաշեալ փառաց՝ և ոչ նուազեալ[12]: Ի Բեթղեհէմ երևեալ լուսոյն և ի մսուր եդեալ՝ տըպաւորէր զխորհուրդն[13]. ինքն ի քերովբէս բազմի[14] և ոչ որոշի, քանզի իջեալ յերկնից՝ և է յերկինս. աստեղակերպ փայլումն՝ հեղինակ մոգուցն, և բացօթեայք հովիւքն երգէին ընդ հրեշտակս. և լի եղեալ չար խորհրդով Հերովդէս[15] և խողխողեալ[16] զտղայսն անողորմաբար: Յեգիպտոս փախ-*

1. Ճ. ԻԹ. անորոշաբար:
2. Ճ. ԻԹ. չունի՝ է.
3. Հռ. Գ. անխախտ:
4. Ճ. ԻԹ. դնէ՝ ոսկի:
5. Ճ. ԻԹ. չունի՝ ահեղ:
6. Ճ. ԻԹ. չունի՝ մարդ:
7. Ճ. ԻԹ և Ճ. ԺԳ. դնեն լիցուք:
8. Ճ. ԻԹ. դնէ՝ մարմնով բնութեամբն:
9. Ճ. ԻԹ. յաւելու՝ զբնութիւնն:
10. Ճ. ԺԳ. դնէ՝ անբաժանաբար և անշփոթ:
11. Ճ. ԻԹ. չունի և:
12. Մինչև ցայս վայր ունէր Հռ. Գ.
13. Յոր. եդեալ էր այսպէս. ի Բեթղեհէմ յայտնի նուազեալ լուսոյն, և ի մսուր եդեալ տպաւորէր խորհուրդն. իսկ Ճ. ԺԳ. ի Բեթղեհէմ յայտնի երևեալ մոգուցն և ի մսուր եդեալ տպաւորէր խորհուրդն. եդաք, ըստ Ճ. ԻԹ.
14. Ճ. ԻԹ. հանգչի:
15. Ճ. ԻԹ. ունի այսպէս. ի վերայ եկեալ եղեռնաչար Հերովդէս. իսկ Ճ. ԺԳ. այսպէս. եղեռնաչար խորհրդով լի եղև Հերովդէս:
16. Ճ. ԻԹ և Ճ. ԺԳ. խողխողէր.

չէր ապաւէնն յորունց. յինքն յանգելով[1] կարգաւ զտառն մարգարէից։ Քատակութիւն ամպոյն վրիպեաց զսուրբ[2] մարմինն, զի հոգիընկալ[3] էր ամպն և անապական. խռովեցոյց զոգիս իշխանաց նոցա, և զձեռագործս նոցա տապալեաց յերկիր[4]։ Ի յորդահոսան[5] վտակսն Յորդանան գետոյ[6] ապենիազն Աստուած իջեալ մկրտէր, զի սրբեսցէ զարգանդ սուրբ[7] աւազանին, և բերկրեսցի ամուլն ի բազմորդութեանն։

Հայր յերկնից վկայէ[8] զՈրդւոյ՝ յայտնելով, և սուրբ Հոգին իջեալ տեսլեամբ աղաւնւոյ, զի ծանիցի միութիւն Երրորդութեանն և յաւէժութիւն փառացն հասարակապէս[9]։ Կարապետին տեսեալ զկերպարանս Հոգւոյն, զի բարձրագոյն[10] հնչմամբ դաւանէր զՈրդի. «Սա Որդի և գառնն Աստուծոյ՝ որ բառնայ զմեղս աշխարհի»։ Հաւատովք սրբովք՝[11] և մեք ընկալցուք զՈրդին Աստուծոյ[12], զմարմնացեալն Աստուած, որ յիջանելն ի Յորդանան[13] ջախեաց զվիշապն և զխոհերս[14] չարին ենթադրեաց ի ջուրսն։ Աստանօր է բանս սուրբ մարգարէին[15]. եթէ «Ծնաւ երկիր ազգ

1. Ձ. ԻԹ. դնէ յորդելով.
2. Ձ. ԻԹ. չունի զսուրբ. ուստի և դնէ՝ զմարմինն։
3. Յոր. եղեալ էր՝ հոգեընկալ. ուղղեցաք ըստ Ձ. ԻԹ և Ձ. ԺԳ։
4. Ձ. ԻԹ. յերկրէ։
5. Յոր. ի յորդահոսեան ուղղեցաք ըստ Ձ. ԻԹ և Ձ. ԺԳ։
6. Ձ. ԻԹ և Ձ. ԺԳ դնեն՝ Յորդանանու։
7. Ձ. ԺԳ. չունի՝ սուրբ։
8. Ձ. ԺԳ. դնէ վկայեաց Որդւոյ. իսկ Ձ. ԻԹ. Հայր ի յերկնից վկայեալ՝ յայտնէր զՈրդի։
9. Ձ. ԺԳ. դնէ՝ հաւասարապէս։
10. Ձ. ԻԹ. դնէ՝ բարձրաձայն։
11. Ձ. ԻԹ. չունի սրբովք. և զբառդ հաւատովք եզ. դնէ։
12. Ձ. ԻԹ. չունի Աստուծոյ։
13. Ձ. ԻԹ. դնէ՝ յորձանսն Յորդանանու։
14. Ձ. ԻԹ. դնէ՝ խոհակերս։
15. Ձ. ԻԹ. ունի այսպէս. Աստանօր և բան մարգարէին։

մի[1] միանգամայն». գի անմահացոյց զշուրան[2] և դալարացոյց, և անապական գործեաց զհոգւոյն ծնունդն. շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի[3], որում փառք յաւիտեանս. ամէն։

## ԺԶ

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

### ԱՍԱՑԵԱԼ

### Ի ՎԵՐԱՑՈՒՄՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

Որ ի սկզբանէ՝ յառաջ քան զյաւիտեանս Աստուած, Աստուածն[4] Բան, անձանց մերոց փրկութիւնն, սատանայի պատերազմիչն, տիեզերաց ազատութիւնն. որ զամենայն յօրինեաց արուեստաւոր բանիւ առ ի զմեզ յինքն պատուածել[5] շնորհօք. որ զանկեալս զմեզ ի ձեռն յանցանացն յարոյց, խոնարհեցաւ ի մեզ ի ձեռն մարդանալոյն. որ զմեռեալս զմեզ՝ սակս ստունգանութեանն[6] նորոգեաց վերստին՝ զալատեամբն իւրով առ մեզ, միացեալ ի Հօրէ անբաժանելի. որ զերկինս[7] կոխեաց, և զերկիրս[8] ընդ մեզ լինելով մարմնապէս՝ ինքեամբ լնոյր. որ ամենայնս եղեւ իբրեւ

1. Ճ. ԺԳ. յաւելու՝ ողջոյն։
2. Ճ. ԻԹ. չունի՝ զէ անմահացոյց զջուրան։
3. Ճ. ԻԹ. ունի՝ է Քրիստոս Յիսուս է Տէր մեր։
4. Սոկ. Ա. ունի՝ առ Աստուածն Բան։
5. Սոկ. Ա. ունի՝ յինքեան պատիւ ածել։
6. Սոկ. Ա. ունի՝ ստանձնականութեան։
7. Սոկ. Ա. դնէ՝ զերկիրս։
8. Սոկ. Ա. դնէ՝ զերկինս։

զմեզ բայց ի մեղաց, և միաց անփոփոխելի. որ և յոչ միոյ չարչարանաց՝ որ վասն մեր՝ հրաժարեաց, զի զմեզ յանախտութիւն հանցէ. որ ի խաչին բեւեռեցաւ, և երաց զդրունս դրախտին։ Այսպէս և որ առ բանսարկուն՝ զպատերազմ վասն մեր յանձն էառ, զմեղացն փշրելով զզօրութիւն. զհրէից խորհուրդս յանճիւն դարձոյց, զվաստականութեան[1] նոցա ունայնացուցեալ զմեծութիւն. և զտաճարն նոցա ապականեալ՝ սկսանելով պղծոցն ձեռօք՝ զկտակարանս ուխտին դադարեցուցեալ և պաշտօնս խափանեալ, և զհեթանոսս հրաւիրեալ. որոյ զմահն ընկճեալ[2], և զերկիրս երկինք արարեալ, հրեշտակականն կրօնաւորելով վարուք, բեւեռելով[3] ի խաչին՝ զհակառակ մեզ ձեռագիրն մեղաց, և զընդ ձեռամբ եղեալ մեզ[4] մեղացն՝ կոչեաց յորդեգրութիւն ի ձեռն Հոգւոյն տնօրէնութեան։

Այսօր ել ուստի երբէք ոչ պակասեաց, մի՛ ստուեր ստորագրեր[5] զտնօրէնութիւնն, մի՛ երեւոյթ լոկ ասեր զփրկութիւնն. մի՛ ստուեր վարկանիր զճշմարտութիւնն։ Լուար թէ էջ[6], այսպէս իմա՝ թէ և ել աստուստ. և զերկիրս յինքենէ ոչ դատարկացոյց, վասն զի անպարագրելին[7] բնութեամբ՝ տէրութեամբ[8] լնոյր զերկինս և զերկիր, ըստ մարգարէականն[9] ձայնի։

1. Սոկ. Ա. դնէ՝ վախճականութեան. իսկ ի լս. վաճառականութեան։
2. Սոկ. դնէ՝ խափանեալ։
3. Սոկ. Ա. ունի՝ բեւեռեալ։
4. Սոկ Ա. ունի այսպէս. և զընդ ձեռաց յետամբ եղեալս զմեզ կոչեաց։
5. Յօր. սորագրէր. ուղղեցաք ըստ Սոկ. Ա.։
6. Սոկ. Ա. յաւելու՝ Քրիստոս. և չունի այսպէս։
7. Սոկ. Ա. դնէ՝ անպարտ գրելին։
8. Սոկ. Ա. չունի՝ տէրութեամբ։
9. Սոկ. Ա. դնէ՝ մարգարէութեան։

*Առ Մարիամ[1] գոյր և առ Հօր. առաջի Պի-
ղատոսի և ընդ հրեշտակս. ի մահուն և յերկինս.
ի դժոխս և յերկրի և յօդս. քանզի Աստուած
էր՝ կառավարն[2] ամենայն արարածոց. եւ[3] ուր
էրն. եւ՝ ուստի[4] ոչ երբէք պակասեաց. յաշխարհի
էր[5], զիա՞րդ եկն. եկն յաշխարհ, այլ վասն զի
եղեալ[6] աստուածութեամբն՝ մարմնապէս ոչ երե-
ւիւր, առնու ապա մարմին, զի ի ձեռն մարմնոյ
նորա՝[7] որպէս ընդ հայելի տեսեալ՝[8] զարդա-
րեսցուք[9] ի բարեպաշտութիւնն։*

*Անդրէն դարձուսցուք զբանս։ իսկ արդ թե-
րեւս յերկրի գոլով՝ և յերկինս էր. եւ ուր էրն.
բայց ոչ ինչ են այժմ պէտք բազմախօսութեան ա-
ռաջարկել[10], և զի ո՛չ խառնել[11] պատերազմ ընդ
խաղաղութիւն, քանզի համապարաւորեալ[12] այսօր՝
որ յաղագս մեր պատերազմեալ[13] եկաք։ Ելանելով
նորա այսուհետեւ յերկինս՝ ամենեքեան հետեւես-
ցուք նմա՝ ի բաց ընկեսցուք զմարմնականս. հը-
րաժարեսցուք ի հեշտալեացս՝ ամենեքեան եղի-
ցուք հոգեւորք. զի հետեւեալք նմա՝ լուիցուք
երկնաւոր զօրացն ասելով. «Համբարձէք իշխանք
զդրունս ձեր ի վեր, համբարձցին դրունք յա-
ւիտենից և մտցէ թագաւոր փառաց»։ Եւ որ ան-*

1. Սոկ. Ա. դնէ՝ Մարիամ։
2. Սոկ. դնէ՝ և կառավար։
3. Սոկ. Ա. դնէ՝ էին.
4. Սոկ. Ա. ունի՝ ուստր։
5. Սոկ. Ա. յաւելու՝ և ենէ յաշխարհի էր, զիա՞րդ եկն յաշխարհս։
6. Սոկ. Ա. դնէ՝ անեղ։
7. Սոկ. Ա. չունի նորա. յոր. զկնի նորայոյն գոյր ես։
8. Սոկ. Ա. յաւելու՝ զԱստուած։
9. Սոկ. Ա. դնէ վարժեցուցէ։
10. Սոկ. Ա. դնէ՝ բազմախօսութեան առաջի արկանել։
11. Սոկ. Ա. խառնել։
12. Սոկ. Ա. դնէ՝ համապարաւորել։
13. Սոկ. Ա. յաւելու՝ յաղթել։

դրէնն[1] հարցանիցեն, թէ «Ո՞վ է սա Թագաւոր փառաց», բարբառեսցուք առ նոսա, որոյ[2] զփորձ առեալ էք[3] զբարերարութեան[4] Նորա, և ասասցուք ազատեալքս. «Տէր հզօր զօրութեամբ *իւրով, Տէր հզօր*[5] ի պատերազմի. սա ինքն է Թագաւոր փառաց»։ Ոչինչ լռեաց՝ որ յաղագս մերոյ փրկութեան ի մարգարէիցն, ոչինչ չտեսմարանելով[6] ծածկեցաւ անճառութեամբ. զամենայն որչափ և հանդերձեալ էր չարչարիլ Քրիստոս վասն մեր, զայն ահա յառաջագոյն տպաւորեալ մարգարէիւքն ձայնիւք[7]. զի յորժամ եկեալ հասցէ առ մեզ Աստուած, և չարչարեսցի զմարդկայինս, մի՛ զարմասցուք, լուեալք յառաջագոյն եղեալք։

Ծնանիլ հանդերձեալ էր որպէս զմարդ, և ասէ Եսայիաս մարգարէ. «Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ»[8]. յառաջագոյն ծանոյց մարգարէն[9] զսքանչելիսն։ Խաչիլ հանդերձեալ էր, և ասէ նոյն ինքն Եսայիաս. «Որպէս զոչխար ի զենումն[10] ածաւ, և իբրեւ[11] զորոջ առաջի կտրչի անմռունչ», և որ ի կարգին է։ Ունիս ասա և զհեզութիւնն և զիշխանութիւնն, և որ յաղագս մեր զչարչարականն[12], և զբոլորն իսկ ի միասին կապեալ գոլ զոյգ զսքանչելիսն[13] և զտնօրէնութիւնն։ Ապտակել

1. Սոկ. Ա. ունի՝ անդէն։
2. Սոկ. Ա. որոյ։
3. Սոկ. Ա. դնէ՝ է։
4. Յօր. զբարերարութիւն. եդաք ըստ Սոկ. Ա։
5. Աստեղանիշքն յաւելան ի Սոկ. Ա.
6. Սոկ. Ա. չտեմարանելով։
7. Սոկ. Ա. զիմաստ բանիս այսպէս յարմարէ. զայն ահա յառաջագոյն կանխեալ՝ պատմեաց նախնի մարգարէականն ձայնիւք։
8. Սոկ Ա. դնէ Էմմանուէլ։
9. Յօր. եղեալ էր՝ մարգարէին. ուղղեցաւ ըստ Սոկ. Ա։
10. Սոկ. Ա. դնէ՝ սպանումն։
11. Յօր. պակասէր իբրեւ. եդաք ըստ Սոկ. Ա։
12. Յօր. եղեալ էր՝ չարչարականն. եդաք ըստ Սոկ. Ա.
13. Սոկ. Ա. ունի՝ զոյգ և զսքանչելիսն։

հանդերձեալ էր և տանջիլ, և ասէ դարձեալ նոյն ինքն. «Զթիկունս իմ ետու ի հարուածս, և զծնօտս իմ յապտակս»։ Բեւեռիլ հանդերձեալ էր ի փայտի, և յառաջագոյն բարբառեալ ի ձեռն մարգարէին Դաւթայ՝ ասաց. «Ծակեցին զձեռս իմ և զոտս»։ Ծարաւիլ հանդերձեալ էր, և ըմպել քացախ. և ասէր ի ձեռն նորին Դաւթի[1], «Ետուն ի կերակուր ինձ լեղի և ի ծարաւ իմ արբուցին[2] քացախ»։ Վերանալ հանդերձեալ էր ի հայրենիսն իւր. թէպէտ և ամենայն ինչ նորա[3], և ինքն զամենայն լնու, համայն յինքնավայելուչն վերացաւ պատիւ. և զի հանդերձեալ էր և զայս վասն մեր կրել զխորհրդածութիւն, ասէ ի ձեռն Եսայեայ մարգարէի այսպէս. «Ո՞վ է սա որ դիմեալ գայ յԵդովմայ»։ Փոքր մի անսա՛ սիրելի. զի զմերձաւոր տօնիս ասացից զխնամ տեսչութեան քեզ[4] և զպատճառսն. և ուսուցից թէ ո՞րպէս պարտ է տօնել. ո՛չ որպէս անտեղեակ ոք, այլ որպէս գիտակ. յառաջագոյն յիշատակեցից, զի ստուգագոյն պատմութեամբք զեկուցից քեզ, որպէս զի ամենայնորդոր փութով երկրպագեսցես չարչարեցելոյն[5] յաղագս քո, քանզի յերկինս հանդերձեալ էր ելանել՝ զամենայն կրելով[6] վասն մեր։

Արդ՝ ել, ո՛չ որպէս էջն. քանզի էջ անմարմին, ոչ եւս զմարմնոց ախտ կրելով[7]. և ապա խառնեալ անշփոթաբար ի միասին աստուածայնովն զօրութեամբ։ Եւ վասն զի ելանելովն յերկինս յաղագս հասարակաց իրաց, հիացեալ երկնայինքն

1. Յոր. եղեալ էր՝ Դաւթայ նորին. եդաք ըստ Սոկ. Ա։
2. Սոկ. Ա. յաւելու՝ ինձ։
3. Սոկ. Ա. յաւելու՝ է։
4. Սոկ. Ա. չունի՝ զխնամ տեսչութեան քեզ։
5. Սոկ. Ա. դնէ՝ չարչարեցելոյն։
6. Սոկ. Ա. կրեալ։
7. Սոկ. Ա. դնէ այսպէս. ոչ եւս զմարմնոյ ախտակրելով։

զօրութիւնքն ասացին. «Ո՞վ է սա որ դիմեալ գայ յԵդովմայ», այս է՝ որ յերկրէ յերկինս ելանէ. ոչ ոք այսպէս[1] էջ ի վերուստ. մեք այսպիսի ընդունել ո՛չ ուսաք. մարմին ո՛չ յօդավարի, մարդ՝ երկնագնաց ոչ լինի։ Ո՞վ է սա որ դիմեալ գայ յԵդովմայ, ո՞վ է սա՝ որ յերկրէ յերկինս գայ. Եդովմ[2] թարգմանի երկիր։ Ո՞վ է սա՝ որ եհատ զդրունս եթերականն օդոյ. ո՞վ է՝ որ վեհագոյն քան զտարերս[3] եղեալ. ո՞վ է՝ որ զբնութիւնն փոխեաց. ո՞վ է՝ որ զերկրայինն յերկինս հանէ. ո՞վ է՝ որ զմեռեալն ազատեաց զԱդամ։ Պատկեր տեսանեմք երկնագնաց եղեալ. հիացեալ զարմանամք ընդ եղեալսն. ո՞վ է սա՝ որ դիմեալ գայ յԵդովմայ. տարակուսելի է բանս, անհաս միտաց. քանզի մոռացումն արար Որդին Աստուծոյ զառ ի ստորինս ճանապարհն. ո՛չ զեկոյց հրեշտակաց, ո՛չ ծանոյց զօրութեանցն. էջ, մոռացումն առնելով գալըստեամբն[4], զի՛ նշաւակեացէ ի ծածուկ զբանսարկուն. ոչ էր ժամանակ պատուողական չքոյ և պատուոյ[5], անարգութեան էին պէտք։

Արդ՝ զի մի՛ ուսանիցին սպասաւորքն, վասն այսորիկ լռէ Տէրն. և զի զառ ի ստորինս իջանելն ո՛չ գիտացին վերին զօրութիւնքն՝ ընդ աստուստ ի վերն ճանապարհն զարմանային, զսքանչելիս Նորա[6] և զիրս սոսկալիս արտաքոյ բնութեանն տեսեալ կատարելով, և ասէին առ միմեանս. «Ո՞վ է սա որ դիմեալ գայ յԵդովմայ, կարմրութիւն ձորձոց իւրոց ի Բոսորայ»։ Բոսոր դարձեալ թարգմանի մարմին. արդ կարմրութիւն ձորձոց իւրոց ի մարմնոյ ասի։ իսկ ո՞ր

1. Սոկ. Ա. ունի՝ Քրիստոս։
2. Սոկ. Ա. դնէ՝ Եդոմ։
3. Սոկ. Ա. դնէ՝ զորբեն։
4. Սոկ. Ա. գալստեանն։
5. Սոկ. Ա. չքոյ և պատուոյ։
6. Սոկ. Ա. դնէ՝ Նորա։

թերեւս կարմրութիւն, եթէ ոչ արիւնն որ բըղխեաց ի կողիցն Նորա. քանզի պահէ՝[1] որպէս ասացաք բազում անգամ, զկողն և զարիւնն, առ ի Հրէիցն յանդիմանութեան մոլորութիւն[2]. զի մի՛ փառօքն տեսեալ զնա, ուրասցին զխաչն, և ասասցեն՝ թէ զսա մեք ոչ խաչեցաք. վասն այսորիկ և զարիւնն և զտեղիսն խոցոտեալ ի կողմն ցուցանէ, զի յամօթ արասցէ զնոսա ի թագաւորութեան ժամանակի[3] իւրոյ: «Կարմրութիւն ձորձոց իւրոց ի Բոսորայ, գեղեցիկ պատմուճանաւ և բռնու զօրութեամբ». և թարգմանի բռնութիւնն՝ զօրութիւն. իսկ ի յայլոց թարգմանչացն՝ կամ ոյժ[4] կամ մանաւանդ: Արդ, գեղեցիկ[5] պատմուճանաւ ամենեւին, քանզի զմերս զանարգութիւն առընկալաւ, ազատեաց ի ձեռն չարչարանաց զծառայեալսն ամօթոյ, և յազատութիւն կոչեաց: Եւ զի էր յանարգութեան, ասէ մարգարէն. «Տեսաք մեք զնա, և ոչ գոյր Նորա տեսիլ և ոչ գեղեցկութիւն. այլ տեսիլ Նորա անարգ նուաղեալ քան զամենայն որդւոց մարդկան». վասն զի ի թուք և յապտակս եղեւ, յամօթ և ի կատականս, ի քաղց և ի ծարաւ, յատեան և ի դատաստանս, ի հրապարակս Հրէից, ի սպառնալիս և ի ծաղր, ի թշնամանս և ի հալածանս, ի զրպարտութիւնս և ի նեղութիւնս. երբեմն ի Գալիլէէ ի Հրէաստան փախեալ[6], իսկ երբեմն ի Հրէաստանէ ի Կեսարիա հալածեալ. յայսմ ամենայնի եղեալ, արդարեւ «Ոչ գոյր Նորա տեսիլ և ոչ գեղեցկութիւն»: Եւ քանզի յայսմ յաղթեաց, յաղագս այ-

1. Սով. Ա. չունի՝ պահէ:
2. Սով. Ա. դնէ միայն՝ յանդիմանութիւն:
3. Սով. Ա. ունի այսպէս. ի ժամանակի թագաւորութեան:
4. Սով. Ա. ունի այսպէս. իսկ առ ի յայլոց թարգմանչացն ամենեւին կամ ոյժ:
5. Սով. Ա. յաւելու՝ առէ:
6. Սով. Ա. դնէ՝ փախեաւ:

սորիկ ելեալ եսյոյ նմա[1] զաստուածութիւնն առանց թշնամանաց. վասն զի ի չարչարելն մնաց անչարչարելի, և ի թշնամանելն՝ առանց թշնամանաց, և ի քաղցն՝ ամենեցուն կերակրիչ. ի հալածանսն՝ փրկիչ բոլորից, ի նեղութիւնսն՝ ազատիչ ամենեցուն։ Քանզի առեալ առ ի մէնջ զառ ի փշոցն պսակ, եդ[2] ի վերայ գլխոյ հաւատացելոց պսակ ի քարէ պատուականէ. ամենայն ձաղանօքն այնոքիւք կոխեաց[3] զփառսն և[4] մշակեաց յԱդամ։ Աւէին ապա հրեշտակական զօրութիւնքն. «Գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութեամբ»։ Եւ մի՛ ոք զիս անգոսնեսցէ, թէ յո՞ր սակս ընդ մարգարէականսն ընդ այնս անցանեմ տառս. մի՛ արդեւք առաջին ինչ այժմ ճառեցեալ[5], մի՛ այժմ միայն ընթերցաք, և կամ՝ յեսայիաս այժմ ինչ լուաք։ Մ՚ի՛ ոք ամբաստանեսցէ[6] սիրելիք, մի՛ ոք[7] չարախօսեսցէ. քանզի թէ արտաքոյ արդեւք տօնիս զբանս պատմութեան ձգեցի, և այլ ինչ պատճառս ի ներքս մուծի, անգոսնեսցէ[8] որպէս զանժամ և զշատախօս[9]. իսկ ապա եթէ պատմութիւնս մարգարէականս պատշաճ այսմ տօնի ի դէպ ժամու ձեզ[10] ի ներքս բերի, ընկալարուք հաւանաբար, և առաւել եւս ընկալարուք յօժարապէս. և սուղ ինչ ներեալ անասցէք[11] ինձ, զի զեկուցից ձեզ և զայլ եւս հարցաքննութիւնն, թէ ո՞վ է որ համբարձաւն, և զՔրիստոս տարաբե-

1. Սոփ. Ա. դնէ նմա։
2. Ցոր. եդեալ էր և, ուղղեցաք ըստ Սոփ. Ա։
3. Սոփ. Ա. կոխեալ։
4. Սոփ. Ա. չունի՝ և։
5. Սոփ. Ա. դնէ՝ ճառեցաւ։
6. Սոփ. Ա. դնէ՝ բամբասեսցէ։
7. Սոփ. Ա. չունի՝ մի՛ ոք։
8. Սոփ. Ա. դնէ՝ անկասնեսցէ։
9. Սոփ. ունի՝ շատախօս։
10. Սոփ. Ա. չունի՝ ձեզ։
11. Սոփ. Ա. ունի. տանասցեալ (անասցեալ°) ներեսցէ։

*ըելով[1] ի ծառայից իւրոց. պատմելով զմերոյ[2] փրկութեանս խորհուրդ. «Ո՞վ է սա որ դիմեալ գայ յԵդովմայ. կարմրութիւն ինչ[3] ձորձոց իւրոց ի Բոսորայ, գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութեամբ»։*

*Արդ, այս ի հրեշտակաց ի վերին զօրութեանցն. առ այս ապա Քրիստոս, քանզի և ոչ է իսկ այնպիսի ոք՝ եթէ անտես առնէր, գիտէ[4] ի ծառայից տարաբերիլ[5], գիտէ և ի ծառայ հարցանողաց[6] պատասխանի առնել. «Ո՞վ է սա՝ որ դիմեալ գայ յԵդովմայ»։ Պատասխանատրէ ապա կարգաւ, և ասէ հանդերձ զօրութեամբ. «Ես խօսիմ զարդարութիւն և զիրաւունս փրկութեան»։ Ո՛վ նորա[7] գեղեցիկ տիրականն իրի[8], ո՛վ ճշմարտութեան, նմա միայնում՝ գոլով վայելուչ. հանդերձ զօրութեամբ, ասէ[9], «Ես խօսիմ զարդարութիւն և զիրաւունս փրկութեան»։ կամի՞ս ուսանել ըզզօրութիւնն. ի խաչ ելեալ յաղթեաց, ահա զօրութիւնն. իսկ եթէ զզօրութիւնն կամիս ուսանել[10], լուր. էառ զքեզ բանսարկուն, ոչ ելով նորա. վարատեաց զքեզ ժամանակս բազումս, լերամբք և բարձանք զարհուրեցոյց զքեզ. եդ ի վերայ քո լուծ, ո՛չ գոլով քո Տէր։ Եկն եհաս ապա ճշմարիտ հովիւն, ի բաց կորզեաց զքեզ ի գայլոցն. արար ընդ քեզ զարդարութիւն, և ապա կատարեցաւ ասացեալն հանդերձ զօրութեամբ. «Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկու-*

1. Յոր. եղեալ էր՝ տարաբերելով. իսկ Սոկ. Ա. տարբերելեալ։
2. Յոր. զմերոյ. եդաք ըստ Սոկ. Ա։
3. Սոկ. Ա. չունի՝ ինչ։
4. Սոկ. Ա. ծառայիցն։
5. Սոկ. Ա. տարբերելի։
6. Սոկ. Ա. դնէ՝ և ծառայիցն հարցողաց։
7. Սոկ. Ա. չունի նորա։
8. Սոկ. Ա. դնէ՝ յոյնէ։
9. Յոր. չգոյր՝ ասէ, եդաք ըստ Սոկ. Ա։
10. Սոկ. Ա. դնէ՝ իմանալ։

*թեան»․ ո՛չ զմեր[1] ինչ ուղղութիւնն, քանզի ոչ եթէ զմեր ինչ բարեգործելով[2] հաւանեցուցաք մարդանալ զԱստուած․ և ոչ մեր ինչ արդարութիւն ինչոյց զնա յերկիր, այլ բռնաւորին անօրէնութիւն. զի ուսցի բռնաւորն զայլոց ոչխարս ո՛չ կապել[3]․ հանդերձ զօրութեամբ, «Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկութեան»․ զգործն ասէ, իսկ զպատիւն լռէ։ Քանզի հարցեալ թէ ո՞վ է սա, ո՛չ ասաց՝ թէ ես եմ Տէրն ձեր, այլ զայն լռեաց։ ի գործոյն կամեցաւ[4] զինքն ծանուցանել. հանդերձ զօրութեամբ, «Ես խօսիմ զարդարութիւն և իրաւունս փրկութեան»․ և միայն ահա զայս ասացեալ՝ լռեաց։ իսկ հրեշտակականն դարձեալ անդրէն բարբառ արձակեալ դասուց՝ ասէին ցնա. «Հի՞մ կարմիր են ձորձք քո իբրեւ[5] հնձանահարի լիոյ հնձան կոխելոյ»։ Եւ զի մի՛ ոք զմեր բանս ստեղծական կարծեսցէ[6], կամ ի բազում մարգարէութեանց ի միասին հաւաքեալ[7], ի միում[8] իսկ տան գտանել բովանդակել[9] զամենայն, վասն որոյ և միաբան ունի զհետեւումն կարգին, որպէս զպատշաճեալ մարմին, Եսայիաս մարգարէ․ և զի՞նչ ասէ[10]․ զկատարումն ընթերցի՛ր ո՛վ ուսումնասէր դու և փոյթ, և գտցես՝ ո՛չ որպէս ի բազում մարգարէութեանց զայս ժողովեալ, այլ զմի կարգեալ[11] թարգմանեցաք։*

1․ Յոր․ Ձեռ․ եղաք ըստ Սոփ․ Ա․
2․ Սոփ․ Ա․ ունի՝ բարեգործութեամբն, իսկ ի լս․ բարեգործելով․
3․ Սոփ․ Ա․ դնէ՝ կարօղել։
4․ Սոփ․ Ա․ ունի՝ կամեցեալ։
5․ Սոփ․ Ա․ ունի այսպէս․ Զի՞մ կարմիր են հանդերձք քո, և պատմուճան քո որպէս․․․։
6․ Սոփ․ Ա․ ունի՝ կարծիցէ։
7․ Սոփ․ Ա․ յաւելու՝ ձայնն։
8․ Սոփ․ Ա․ դնէ՝ յորում։
9․ Սոփ․ Ա․ դնէ՝ գտանել բովանդակեալ։
10․ Սոփ․ Ա․ դնէ՝ ասիցէ։
11․ Սոփ․ Ա․ դնէ՝ զմի կարգ առեալ։

Իսկ արդ՝ որպէս տասցէն անա Հրեշտակքն[1]. «Վասն է՞ր են կարմիր ձորձք քո հանդերձի, և պատմուճան քո որպէս հնձանահարի լիոյ հնձան կոխելոյ»։ Կարմիր հանդերձս տեսանեմք, և կամիմք ուսանել զպատճառսն. քանզի իբրև հարցեալ եղեւ թէ ո՞վ ես[2], լուեալ զբնութիւնն, չտեմարանեաց զպատուողականն, և քարոզեաց մեզ զչարչարանսն, և խոստացաւ իրաւունս[3] փրկութեան։ Իսկ արդ՝ թողեալ ապա մեր ուսանել զայն, *ուստի լուեալ թերևս ի վեր քան զմեր լսելիս*[4], զոր տեսանեմք՝ ասեն՝ կամիմք ուսանել. «Հի՞մ կարմիր են հանդերձք քո». և ոչ մի անա ժամանակ դատարկ էր, փրկչին ի վերայ երկրի լինելով՝ յաղագս մեր չարչարի. իսկ ի յերկինս ելանելովն՝ զհրեշտակս ուսուցանէ. «Է՞ր վասն կարմիր են հանդերձք քո, և պատմուճան քո որպէս հնձանահարի լիոյ հնձան կոխելոյ»։ Ո՛վ ողջախոհութեան[5] մարգարէին, մանաւանդ թէ զամենայն իսկ գիտողի զօրութեան Հոգւոյն սրբոյ։ Վասն զի[6] և ո՛չ գրեմ[7] Եսայեայ պայսպխտիս, և ո՛չ ընդունիմ Նորա զբանս. վասն զի քնար զնա ի ներքոյ եդեալ, իմանամ Նովաւ զնոյն ինքն զքնարերգակն Աստուած. և ընդ Նմին ի ձեռն Եսայեայ զսրբոյ Հոգւոյն իմանամ, զԱստուած խօսեցեալ ի ձեռն մարդոյ։ Այլ թերևս ասիցէ ոք դարձեալ, մի՛ թէ ո՞չ գիտէր Հոգին սուրբ, զի հարցանէր. «Վասն է՞ր կարմիր են հանդերձք քո».

1. Սոկ. Ա. զիմաստ բանիս այսպէս կարգէ. Իսկ արդ որպէս տասցէ, ասէ Հրեշտակն։
2. Սոկ. Ա. ունի՝ է ես։
3. Սոկ. Ա. դնէ՝ զիւրաստանս։
4. Աստղանիշքդ չգտանին ի Սոկ. Ա։
5. Սոկ. Ա. ո՛չ ողջախոհէ ճշմարտութեան։
6. Սոկ. Ա. քանզի։
7. Սոկ Ա. յաւելու՝ Իսկ։

մի՛թէ պատասխանի՞ւր[1] Հոգւոյն այս ձայն. ո՞չ գիտէր Հոգին՝ զի՞նչ և[2] Քրիստոսն. ո՞չ գիտէր Հոգին թէ չարչարեցաւ Որդին. ո՞չ գիտէր Հոգին՝ զի՞նչ յաղագս մեր կրեաց. իսկ ապա[3] վասն է՞ր հարցանէր Հոգին:

Հարցաքննելի է զայն, ո՛չ որպէս ծանօթութիւն զանգիտութեանն ուսուցանելով[4]. վասն զի խօսի Հոգին ի ձեռն մարգարէին, և խօսի ոչ որպէս ի միոյ երեսաց՝ այլ յառաջիկայն պատճառս զբանն պատասխանեցուցեալ[5]. և զի այս այսպէս է, սուղ ինչ անսա սիրելի, և գիտեալ[6] զտարացոյցս այսոցիկ ընկալ: Քանզի գտանես ի պատճառս և[7] ի պատգամս մարգարէիցն՝ ձայնս և՛[8] յերեսաց Հօր, և յերեսաց Որդւոյ, և յերեսաց սրբոյ Հոգւոյն, և յերեսաց հրեշտակաց, և յերեսաց մարգարէիցն[9]. և ո՛չ է պարտ զամենայն ասացեալս պատասխանեցուցանել Աստուծոյ՝ և ո՛չ դարձեալ՝ վասն զի Հոգին բարբառի, հարկ է զայս ամենայն ածել ի վեր ի սրբոյ Հոգւոյն անձնաւորութիւն:

Յերեսաց Հօր ասէ. «Ես այսօր ծնայ զքեզ. խնդրեա՛ յինէն և տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն[10] և յիշխանութիւն քեզ ընդ ամենայն[11] ծագս երկրի»: Խօսի մարգարէն Հոգւովն,

1. Սոփ. Ա. դնէ՝ պատասխանի՞:
2. Սոփ. Ա. դնէ՝ զի՞նչ էր:
3. Սոփ. Ա. վրիպակաւ գրէ՝ ապաէն է՞ր վասն:
4. Սոփ. Ա. ուսուցանելով:
5. Յօրինակին եդեալ էր՝ պատասխանեցուցանել. ուղղեցաւ ըստ Սոփ. Ա.:
6. Սոփ. Ա. գտեալ:
7. Սոփ. Ա. չունի՝ ի պատճառս և:
8. Սոփ. Ա. չունի՝ և:
9. Սոփ. Ա. յաւելու՝ և յերեսաց Հրէից:
10. Սոփ. Ա. յաւելու՝ քեզ:
11. Սոփ. Ա. զամենայն:

այլ ոչ պատշաճի բանի[1] Հոգւոյն, այլ Հօր. ո՛չ որպէս Հոգւոյն սրբոյ օտար գոլով, այլ որպէս սըրբոյ[2] Հոգւոյն յերեսաց Հօր բարբառեալ։ Դարձեալ յերեսաց Որդւոյ. «Բաժանեցին զհանդերձս իմ՝ յինքեանս, և ի վերայ պատմուճանին իմոյ արկին վիճակս». մի՛ արդեօք պատշաճի՞ այս Հոգւոյն. մի՛թէ զՀոգւո՞յն զհանդերձս բաժանեցին յինքեանս. մի՛թէ զՀոգւո՞յն զգեստս պատառեցին. բայց բարբառի յերեսաց Որդւոյ՝ Հոգին։ Բարբառի դարձեալ յիւրմէ յերեսաց, որպէս յորժամ ասէ. «Որոշեցէք ինձ զՊաւղոս և զԲառնաբաս ի գործ, յոր կոչեցեալ է իմ զդոսա». ահա յերեսաց Հոգւոյն. և ոչ երբէք պատշաճի Հօր կամ Որդւոյ[3], քանզի լուեալ[4] մեր՝ թէ Հոգին սուրբ ասաց, «Զատուցէք ինձ զՊաւղոս և զԲառնաբաս ի գործ՝ յոր կոչեցեալ է իմ զնոսա»[5], ի վեր ի Հոգին սուրբ բերեմք զզօրութիւն պատգամացն, ո՛չ օտարացուցանելով[6] զբանն ի Հօրէ կամ Որդւոյ, այլ տալով տեղի զպատճառն երեսաց[7]։ Դարձեալ յերեսաց մարգարէին, ահա. «Անօրէնութեամբ յղացաւ, և ի մեղս ծնաւ զիս մայր իմ». միթէ ո՞չ ասաց Հոգւովն. միթէ Հոգւո՞յն պատշաճի այնր ձայն[8]. մի՛թէ անօրէնութեա՞մբ յղացաւ և ծնաւ զնա[9] մայր։ Զոր օրինակ աստ[10] ըսես Դաւթի, իսկ իմանաս՝ ի ձեռն Հոգւոյն բարբառեալ մարգարէին, այսպէս և ուր յորժամ ըս-

1. Սոկ. Ա. բանն։
2. Սոկ. Ա. չունի որբոյ։
3. Սոկ. Ա. յաւելու՝ Հոգւոյն։
4. Յոր. եդեալ էր՝ լուեալ է. եդաք ըստ Սոկ. Ա։
5. Սոկ. Ա. զդոսա։
6. Սոկ. Ա. օտար ցուցանելով։
7. Սոկ. Ա. վրիպակաւ գրէ՝ զպատշաճն" եր ասցա։
8. Սոկ. Ա. այս Հոգւոյն։
9. Սոկ. Ա. զէս։
10. Սոկ. Ա. չունի՝ աստ։

սիցես[1]. «Վասն է՞ր կարմիր են հանդերձք[2] քո, և պատմուճան քո որպէս հնձանահարի», *ի միտ առ զասացեալս Հոգւոյն յերեսաց հրեշտակաց. «Վասն է՞ր կարմիր են ձորձք քո և պատմուճան քո որպէս հնձանահարի*[3] լիոյ հնձանի կոխելոյ»։ Պատասխանի տայ ապա Քրիստոս և ասէ. «Հնձան հարի միայն»։ Արդարեւ հնձան եհար Քրիստոս, հնձան զմերոց ախտից, հնձան զմերոց չարչարանաց. քանզի զնոցա ողկոյզս ճմլեաց, և ա՛յլ հնձանս յարոյց։ Վասն այնորիկ Դաւիթ սաղմոսելով ասաց. «Որպէ՜ս զի սիրելի են յարկք քո Տէր զօրութեանց»· քանզի այս[4] սաղմոս արդ եւս[5] ընթերցաւ մեզ. ի միտ ա՛ռ, սիրելի, մանաւանդ թէ ուսի՛ր իսկ ի մէնջ, եթէ ախորժեսցես, որ զայս ունի սաղմոսն վերնագիր[6]. Սաղմոս հընձանաց։ «Եւ հանդերձք քո՝ որպէս հնձանահարի». զայն հնձանս դադարեցուցեալ, ա՛յլ երկնաւորս[7] յարոյց։ Առ այս ապա՝ որպէս ասացի, պատասխանի տայ Քրիստոս և ասէ. «Հնձան հարի միայն»։ Քանզի ո՞վ իսկ ա՛յլ ոք չարչարեցաւ վասն մեր. մի՛թէ Պաւղո՞ս ի խաչ ել վասն մեր, կամ՝ յանուն Պաւղոսի՞ մկրտեցաք. միայն խաչեցաւ Քրիստոս Որդի Աստուծոյ, միայն վասն մեր չարչարեցաւ, միայն զմեզ փրկեաց. «Հնձան հարի միայն»։ Մ՛ի՛ դարձեալ արտաքս հաներ, ո՛վ սիրելի, զՀայր ի տնօրէնութենէն[8], կամ՝ զսուրբ Հոգին. մի՛ ասեր, թէ ո՛չ գիտէր[9] Հայր զչարչա-

1. Սոկ. Ա. լսես։
2. Սոկ. Ա. ձորձք։
3. Աստեղանիշ բանքդ յաւելան ի Սոկ. Ա։
4. Սոկ. Ա. ունի՝ և զայս։
5. Սոկ. Ա. արդար ես։
6. Սոկ. Ա. զվերնագիր։
7. Սոկ. Ա. յաւելու՝ մեզ։
8. Ցոր. զտնօրէնութենէն. ուղղեցաք ըստ Սոկ. Ա։
9. Սոկ. Ա. գիտէ։

ռելն Որդւոյ. այլ գիտէր՝ և[1] յառաջագոյն կանխաւ տպաւորեաց[2], և կամակից լինէր. բայց ո՛չ ընդ նմա չարչարեցաւ, որպէս և ո՛չ Հոգին սուրբ. *քանզի Որդին միայն ընկալաւ զյաղագս մերն տնօրէնութիւն. այլ և ոչ նա բնութեամբ աստուածութեանն չարչարեցաւ, այլ ընկալաւ զյաղագս մերն տնտեսութիւն, տեսութեամբ յինքն զչարչարանսն*[3]. բայց ոչ չարչարեցաւ, քանզի Աստուած էր: «Հնձան հարի միայն, ասէ, և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս». ո՛չ մարգարէ, ոչ արդար, ոչ հայրապետ, ո՛չ սուրբք[4], որպէս ասէն իսկ ուրեմն, «Բարեկամք իմ և մերձաւորք իմ առաջի իմ մերձեցան և կացին»: «Հնձան հարի միայն», քանզի «հեռի արար յինէն[5] զծանօթս իմ». «Եւ ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս». կամի՞ս[6] ուսանել զի ոչ ոք էր ի հեթանոսաց, ի միտ ա՛ռ աստ զժամանակ չարչարանացն. քանզի յորժամ խաչիւր[7], Պետրոս և Յովհաննէս և այլք իսկ ամենեքեան թողին զնա և փախեան, և դարձեալ ի ձկանց ընթացան յորս. մի՛թէ է՞ր ոք ի հեթանոսաց ընդ նմա: «Հնձան հարի միայն», այլ միայն յաղթեալ՝ պարգեւեմ իմոցն զյաղթութիւնն. զի թէպէտ սակս անձնիշխանականն[8] յօժարութեանն թշնամիք են, համայն[9] ըստ բնութեանն՝ իմ գործածն են: «Հնձան հարի միայն, և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս. ճմլեցի զնոսա

1. Յոր. չգոյր և. յաւելաւ՝ ի Սոկ. Ա.
2. Սոկ. Ա. տեսանէր:
3. Զատեղանիշ բանսդ զայս ձեւ օրինակի կարգէ Սոկ. Ա. Այլ և ոչ բնութեամբ աստուածութեանն չարչարեցաւ, այլ ընկալաւ զյաղագս մերն տնօրէնութեամբ յինքն զչարչարանսն:
4. Սոկ. Ա. սուրբք ոչ:
5. Սոկ. Ա. արարեր յինէն ասէ զծանօթս իմ:
6. Յոր. եդեալ էր՝ կամիմ. ուղղեցաք ըստ Սոկ. Ա:
7. Յոր. խոյսին. ուղղեցաք ըստ Սոկ. Ա:
8. Սոկ. Ա. դնէ՝ անձնիշխանութեան:
9. Յոր. ի լս. դնէ՝ սակայն:

բարկութեամբ », և որ ի կարգին. և իսկ և իսկ ածէ ի վերայ զպատճառս կոխման հնձանին, թէ յո՞ր սակրս կոխեաց, և ասէ. «Քանզի օր հատուցման եհաս[1] նոցա»։ Երկայնամտեցի, ասէ, բանսարկուին ժամանակս բազումս՝ անսացեալ բռնութեան նորա. տեսանէի զգործածն իմ խոնարհեալ[2], այլ համբերէի. այլ վասն զի եհաս օր հատուցման, և զի ի վերայ այսչափ մեղաց ստացուածոց՝[3] քաւիչ լինել կամեցայ, ողորմեալ Ադամայ թշնամանողին զիս. եհաս ժամանակ՝ և զամենայն դեւս հաւաքեալ ի միասին որպէս զողկոյզս, միայն վնոսա հնձան կոխեցի և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս. և զի՞նչ յետ այսորիկ օր հատուցման[4] ասէ։ Իսկ առ այս ապա ազդումն ընկալեալ երկնաւոր զօրացն, և զգացեալք[5] խորհրդապէս եթէ զի՞նչ իցէ, որ բարբառիցէ առ նոսա Տէրն, մանաւանդ եթէ ի Հօգւոյն իսկ ազդմանէ լուսաւորապէս առաջնորդեալք առ ճշմարտութիւնն, պատասխանի տան ապա առ այս և ասեն. «Զողորմութիւն քո Տէր յիշեցի»։ Քանզի գիտեմք ասէ՝ զի՞նչ ասաց ի ձեռն այլոց մարգարէիցն, զի՞նչ խոստացաւ Ադամայ՝ գիտեմք։ Զի՞նչ ասաց յայնժամ. խոստացաւ գալ և ի վերայ երկրի շարշարիլ որպէս զմարդ զմարդկայինս, զոր և տեսանեմք իսկ դէմ յանդիման. «Զողորմութիւն Տեառն յիշեցի »։

Զայսոսիկ յաղագս այսր աւուր Եսայիաս մարգարէ աղաղակէր խորհրդածելով զայս աւուրս[6]. վասն զի ի ստորուստ զօրութիւնք[7] այսպէս յայտ-

1. Յօր. էր ոհա. ուղղեցաւ ըստ եղելոյն ի լս. և ըստ Սոկ. Ա։
2. Սոկ. Ա. խորտակեալ։
3. Սոկ. Ա. յաւելու՝ խնդ։
4. Սոկ. Ա. յաւելու՝ էր։
5. Սոկ. Ա. զգետարացեալ։
6. Սոկ. Ա. դնէ՝ օրս։
7. Սոկ. Ա. յաւելու վրիպակաւ՝ +չէտորոս։

նեալ՝ ասէին. «Ո՞վ է սա, որ դիմեալ գայ յԵդովմայ, կարմրութիւն ձորձոց իւրոց ի Բոսորայ»։ Իսկ յետ այս առաջ հարցման[1] և յետ այլոց ևս հարցափննութեանցն, յետ զայս բանս ստուգելոյ, յետ բազում անգամ թարգմանելոյ զխորհուրդն, յետ ոչինչ լսելոյ Քրիստոսի, առ հրեշտակսն ասացին վերինն զօրութիւնքն[2]. «Ո՞վ է սա, որ դիմեալ գայ յԵդովմայ». և կամ յո՞ր սակս կոչէք ասեն՝ «Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից, և մտցէ թագաւոր փառաց. ո՞վ է սա թագաւոր փառաց»։ Զայս լուեալ որ մերձ զօրութիւնքն՝ ասեն. «Տէր հզօր զօրութեամբ, Տէր հզօր ի պատերազմի»։ Կարգ գոն և յանմարմինսն, և հետևմունք ի Նոսա[3]. քանզի ոչ ամենեքին աթոռք, ոչ ամենեքին տէրութիւնք, այլ և խոնարհագոյն գոն կարգ և վերնագոյն զօրութիւնք։ Արդ, վասն զի ի մէջ երկոցունց կողմանցն հաւանական էին հարցափննութիւնքն, թէ «Ո՞վ է սա՝ որ դիմեալ գայ», ասեն. «Համբարձէք իշխանք զդրունս ձեր ի վեր, համբարձցին դրունք յաւիտենից և մտցէ թագաւոր փառաց». *և ասեն դարձեալ վերին զօրութիւնքն, ծանիք «ո՞վ է սա թագաւոր փառաց*[4]»։ Եւ վասն զի հարցին, ոչ ևս ունէին պէտս թարգմանութեան և ոչ երկայնագոյն բանից. քանզի ասացն թէ «Տէր զօրութեանց՝ սա ինքն է թագաւոր փառաց»։

Մինչև ցայս վայր հետևեցայ Տեառն, անաշխատ ունելով զոտից ընթացս. երանի՜ թէ գոյր իմ զօրութիւն և[5] ի լեառն ընդ նմա ելանել. երանի՜

1. Սոկ. Ա. ունի աստ այսպէս. խօսք այսր առաջին հարցման։
2. Յօր. եդեալ էր այսպէս. յետ ոչ ինչ լսելոյ Քրիստոսի, առ հրեշտակսն ասացեալ վերին զօրութիւնքն. եդաք ըստ Սոկ. Ա.։
3. Սոկ. Ա. յաւելու՝ զանազանէ։
4. Աստեղանիշքդ չգտանին յօրինակին, յաւելաք ի Սոկ. Ա.։
5. Յօր. չգոյր և. յաւելաք ի Սոկ. Ա.։

թէ էր ինձ ընդ Պետրոսի և ընդ Յովհաննու և ընդ Յակովբայ հաղորդել աստուածայնոյն այնորիկ տեսութեան[1], որպէս զի տեսից և[2] հոգւով. քանզի՝ «որ յարին, ասէ, ի Տէր՝[3] մի հոգի է», և «մեզ յայտնեաց Աստուած Հոգւովն իւրով»: Ընդ նմա ելցուք այսուհետև, եղբարք, ընդ Քրիստոսի յերկինս. մի՛ մնասցուք ի վերայ երկրի, մի՛ դարձեալ զերկրաւորս խորհեսցուք, մի՛ դարձեալ յաղագս ցանկութեանց, *մի՛ դարձեալ յաղագս յափշտակութեանց*[4], մի՛ դարձեալ սակս ընչասիրութեանց. մի՛ համբարձցիս մեծս[5], զի մի՛ և դու անկցիս յերկնից՝ որպէս փայլակն: Այլ մի՛ լիցի զայս կրել Քրիստոսի հետևողաց, քանզի *հաստատեալ եմ վասն ձեր, սիրելիք, ի լաւ անդր և որ լին է փրկութեամբ. զի*[6] թէպէտ և այսպէս խօսիմք, այլ զայս ասեմք առ ի ձեր զգուշութիւն, որպէս ասաց առաքեալ. «Քանզի ինձ ասելն ոչինչ դանդաղելի է, և ձեզ կարի զգուշալի»: Եւ լիցի մեզ ամենեցուն ամբիծս և անարատս երևել[7] Քրիստոսի, և հանդերձեալ[8] արքայութեան նորա. զի նմա վայելեն[9] փառք պատիւ և զօրութիւն հանդերձ Հարբն և ամենասուրբ Հոգւովն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1. Սոկ. Ա. տնօրէնութեան:
2. Սոկ Ա. չունի և:
3. Սոկ. Ա. վրիպակաւ գրէ՝ ասէին տէր:
4. Աստեղանիշքդ ոչ գոյին յօրինակին, յաւելաք ի Սոկ. Ա.:
5. Սոկ. Ա. չունի՝ մեծս:
6. Աստեղանիշ բանքդ չգտանին յօր. եդաք ի Սոկ. Ա.:
7. Սոկ. Ա. հետևել:
8. Սոկ. Ա. հանդերձել:
9. Սոկ. Ա. չունի՝ վայելեն:

# ԺԷ

# ԱԹԱՆԱՍԻ ԱՍԱՑԵԱԼ

## ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ

### ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԱԾԱՅՆՈՅՆ ՄԱՐՄՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ

### ԱՍՏՈՒԾՈՅ ԲԱՆԻ

Խոստովանիմք զՈրդին Աստուծոյ՝ նախ քան զյաւիտեանս մշտնջենաւորապէս ի Հօրէ ծնեալ. իսկ ի յետնում յաւիտենիս՝ վասն մերոյ փրկութեան ի Մարիամայ կուսէ ծնեալ ըստ մարմնոյ, որպէս առաքեալ ուսուցանէ, ասելով. «Իսկ յորժամ եկն լրումն ժամանակի, առաքեաց Աստուած զՈրդին իւր, որ եղեւ ի կնոջէ»։ Խոստովանիմք[1] գոլ զնոյն Որդի Աստուծոյ և Աստուած՝ ըստ հոգւոյ, և Որդի մարդոյ՝ ըստ մարմնոյ։ Ոչ երկուս բնութիւնս զմինն Որդի, զմինն երկրպագելի և զմիւսն աներկրպագելի. այլ մի բնութիւն Աստուծոյ Բանին մարմնացելոյ, և երկրպագելի՝ հանդերձ իւրովն մարմնով՝ միով երկրպագութեամբ։ Ոչ երկուս որդիս, ա՛յլ Որդի Աստուծոյ ճշմարիտ և երկրպագելի, և ա՛յլ ի Մարիամայ մարդոյ՝ ոչ երկրպագելի, ըստ շնորհի որդի Աստուծոյ եղեալ՝ որպէս և մարդիկ. այլ զոր յԱստուծոյն՝ որպէս ասացի՝ մի՛ Որդի Աստուծոյ և Աստուած, զնոյն և ոչ ա՛յլ՝ և ի Մարիամայ ծնեալ ըստ մարմնոյ ի վերջին աւուրս, որպէս հրշտակն Աստուածա-

1. Յօր. պակասէր խոստովանիմք. յաւելաք ի յունէն։

ծնին Մարիամայ յասելն. «Զիա՞րդ լինիցի ինձ այս, զի զայր ոչ գիտեմ. ասէ ցնա. Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ, և զօրութիւն Բարձրելոյն հովանի լիցի ի վերայ քո. վասն որոյ և ծնեալն ի քէն սուրբ՝ կոչեսցի Որդի Աստուծոյ»: Արդ ծնեալն ի կուսէն՝ Որդի Աստուծոյ ճշմարիտ, և ոչ շնորհիւ և հաղորդութեամբ ըստ մարմնոյ միայն՝ որ ի Մարիամայ մարդ, այլ ըստ հոգւոյն. Նոյն ինքն Որդին Աստուծոյ և Աստուած, կրեալ զմերս կարիս ըստ մարմնոյ, որպէս և գրեալ է. «Քրիստոսի չարչարեալ մարմնով վասն մեր». և դարձեալ, «Որ յիւր Որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա»: Իսկ անչարչարելի մնացեալ և անայլայլելի՝ ըստ աստուածութեանն, ըստ ասացելոյն ի մարգարէէն. «Ես եմ Աստուած և ոչ այլայլիմ»: Եւ մեռեալ զմերս մահ ըստ մարմնոյ՝ վասն մեղաց մերոց, զի զմահ սպանցէ ի ձեռն վասն մեր մահուանն, ըստ առաքելոյն ասացեալ. «Ընկլաւ[1] մահ յաղթութիւն քո. ո՞ւր դժոխք խայթոց քո». և դարձեալ՝ «Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց ըստ գրոց»: Իսկ անմահ և անըմբռնելի ի մահուանէ մնացեալ վասն աստուածութեանն, որպէս անչարչարելի Աստուծոյ զօրութիւն, ըստ ասացելոյն Պետրոսի. «Քանզի ոչ էր կար, ասէ, ըմբռնել նմա ի մահուանէ»: Ելեալ ի յերկինս և նստեալ ընդ աջմէ Հօր՝ հանդերձ ի յերկրէս բարձրացելովն մարմնով Բանին, ըստ ասացելոյն ի Դաւթէ. «Ասաց Տէր ցՏէր իմ՝ նիստ ընդ աջմէ իմմէ». և նոյն ի Տեառնէ հաստատեալ և յառաքելոցն: Իսկ ըստ աստուածութեանն անպարունակութեան՝ զամենայն պարունակելով ընդ Հօր. մշտնջենաւոր ի մշտնջենաւորէ, որպէս հայրական և անճառելի. հզօր զօրութիւն, ըստ ուսուցանելոյն Պաւղոսի, «Քրիս-

1. Յօր. Ընկղաւ:

տոս Աստուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութիւն»։ Իսկ գալոց է Նոյն ինքն Որդին Աստուծոյ և Աստուած, որպէս խոստացաւ՝ դատել զկենդանիս և զմեռեալս, որպէս ասէ առաքեալ. «Քըննողին զգաղտնիս մարդկան և յայտնողին զխորհուրդս սրտից, և զգովութիւն և զպարսաւանս ըստ արժանաւորութեան ածեալ ի վերայ»։ Իսկ թէ ոք քան զայս յաստուածայնոց գրոց ուսուցէ, այլ ասելով զՈրդին Աստուծոյ, և այլ զոր ի Մարիամայ մարդ, ըստ շնորհի եղեալ որդի՝ որպէս մեք, որպէս զի գոլ երկուս որդիս, մի՝ ըստ բնութեան՝ որդի Աստուծոյ, և մի ըստ շնորհի՝ զոր ի Մարիամայ մարդ. կամ թէ ոք ասիցէ զՏեառնն մարմինն ի վերուստ և ոչ ի կուսէն Մարիամայ, կամ փոփոխեալ զաստուածութիւնն ի մարմին, կամ շփոթեալ կամ այլայլեալ, կամ չարչարելի ըզՏեառնն աստուածութիւնն, կամ աներկրպագելի զՏեառն մերոյ մարմինն՝ որպէս մարդոյ, և ոչ երկրպագելի՝ որպէս Տեառն Աստուծոյ մարմին, զայնպիսին նզովէ կաթողիկէ առաքելական եկեղեցի, հաւանեալ աստուածայնոյն առաքելոյ, «Եթէ ոք աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր առէքն, նզովեալ լիցի»։

---

# ԺԲ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

### ԽՕՍՔ Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ

### ԵՒ ՑՈՂՋՈՅՆ ԵՂԻՍԱԲԵԹԻ *

Անճառ են խորհուրդք՝[1] որ ի ձեռն ամենասուրբ կուսին երեւեցաւ ազգի մարդկան. անքնին և անհաս և անհետազօտելի, անպատմելի մարդկայնոցս[2]. զի[3] ո՛չ հրեշտակաց է ասել զգոյն խորհուրդ[4], թո՛ղ թէ մարմնաւորաց[5]. զի սոքա՝ աւետաւորք սրբուհւոյն[6] լինէին, և փառք ի բարձունս առաքելով[7], և մարդկան հաճութիւն և խաղաղութիւն զեկուցանէին[8]: Այլ զզիարդն ոչ գիտէին[9], բայց միայն ամենասուրբ կոյսն, զառ ի նոցանէն անգիտացեալն[10] ընկալաւ, և ծնաւ անճառապէս զան-

* Ճ. Գ. Սրբոյն Աթանասի Աղեքսանդրացի հայրապետի Ներբողեան ի սուրբ Աստուածածինն և ի միշտ կոյսն Մարիամ։

1. Ճ. ԺԳ. անճառելի խորհուրդ։

2. «անքնին», Ճ. Գ. դնէ՝ անքննելի, իսկ Ճ. ԺԳ չունի.— «և անհաս և անհետազօտելի», Ճ. ԺԳ դնէ՝ անհետազօտելի և անհասանելի.— «անպատմելի» չունին Ճ. Գ և Ճ. ԺԳ։

3. Ճ. ԺԳ չունի, իսկ Ճ. Գ դնէ որ։

4. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն խորհրդոյն։

5. Ճ. Գ մարդկայնոցս։

6. Ճ. ԺԳ չունի, իսկ Ճ. Գ դնէ սրբուհեան էին։

7. Ճ. ԺԳ ծիրանաւորելով։

8. Ցոր. զեկուցանելով. եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։

9. Ճ. Գ գիտելով. իսկ Ճ. ԺԳ դնէ՝ այլ զխորհուրդն ոչ գիտէին։

10. Ճ. Գ զանգիտեալն։

ճառելին և զանսկիզբն, որ ի ծոցոյ Հօր առաքեցաւ ի փրկութիւն[1], զի կեցուսցէ զիւր ստեղծուածն[2]։ Արդ որ այսքան և այսպիսի[3] մեծութեան եղեր[4] ընդունօղ[5], օրհնեալդ ի կանայս[6], երանեն քեզ[7] ազգք և ազինք, և անմարմնոց զինուորութիւնքն՝ ընդ[8] հողեղինացս միաձայնութեամբ՝ ի մի բերելով զօրհնութիւնսն[9]։

Օրհնեալ ես, ամենասուրբ կոյս, ի կանայս և յարս, և օրհնեալ պտուղ որովայնի քոյ՝ որ Տէրն է փառաց։ Երանեն քեզ[10], ով ամենասրբուհի և միշտ[11] կոյս, երկնաւորք և երկրաւորք, դասք հրեշտակաց և մարդկան, որ զուրախութիւն ազդեցեր ամենեցուն[12]. վասն որոյ և մեք՝ ընդ հրեշտակապետին՝[13] ցուրախ լեր բերկրեալն առաձայնեսցուք[14] քեզ հոգեւոր երգով, միշտ կոյս[15]։

Ուրախ լեր բերկրեալ, Տէր ընդ քեզ և դարձեալ ի քէն, զի կեցուսցէ զազգս մարդկան ուրախութեամբ աւազանին[16]։

Ուրախ լեր բերկրեալ, որ զտրտմութիւն լու-

1. Ճ. ԺԳ յաւելու՝ աշխարհի։
2. Ճ. ԺԳ չունի զի կեցուսցէ զիւր ստեղծուածն, իսկ Ճ. Գ ունի այսպէս. զի կեցուսցէ զիւր անճառ խորհրդով ստեղծուածն։
3. Ճ. Գ դնէ միայն՝ Արդ որ այսքան։
4. Ճ. Գ չունի՝ եղեր։
5. Ճ. Գ դնէ՝ ընդունակ։
6. Յոր. պակասէր օրհնեալդ ի կանայս. յաւելաք՝ ի Ճ. ԺԳ և Ճ. Գ։
7. Ճ. Գ դնէ զքեզ։
8. Յոր. էր Ն. եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։
9. Ճ. ԺԳ ունի այսպէս. ի մի բերան զօրհնութիւնս երգեն։
10. Ճ. Գ զքեզ։
11. Ճ. ԺԳ չունի՝ միշտ։
12. Ճ. ԺԳ և Ճ. Գ չունին՝ ամենեցուն։
13. Յոր. պակասէ հրեշտակապետին. եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։
14. Ճ. Գ ունի այսչափ ինչ. զուարթ լերն առաձայնեսցուք։
15. Ճ. ԺԳ չունի՝ կոյս։
16. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին այսպէս. և դարձեալ զի կեցուսցէ զազգս մարդկան ուրախութեամբ աւազանին։

ծեր, և ուրախ արարեր բերկրմամբ[1] փրկական տնօրէնութեանն[2]։

Ուրախ լեր բերկրեալ, որ զկեանս աւետարանեցեր կենսաբեր տնօրէնութեամբդ[3], և զտըրտմականսն[4] փոխեցեր յուրախութիւն և ի խնդութիւն[5]։

Ուրախ լեր, ամենասուրբ կոյս, բերող լուսոյն նստելոցս ի խաւարի և ի ստուերս մահու վասն յանցմանն[6]։

Ուրախ լեր, ամենասուրբ կոյս, խաղաղատու[7] տիեզերաց և հաշտեցուցիչ Աստուծոյ[8] ընդ արարածս[9]։

Ուրախ լեր բերկրեալ, ամենասուրբ կոյս, արդարութեան նորոգող և քաւիչ մեղաց փրկական տնօրէնութեամբդ[10]։

Ուրախ լեր, ամենասուրբ կոյս, լուծիչ անիծից ըստ յանցմանն[11] Ադամայ և բերող օրհնութեանցն[12]։

Ուրախ լեր[13], ամէնօրհնեալդ ի կանայս, որ զնախահօրն սուգ դարձուցեր յուրախութիւն միածնաւդ քով։

1. Յոր. սխալագիր՝ «բերկր» ութեամբ. ուղղեցաք ըստ Ճ. ԺԳ, իսկ Ճ. Գ դնէ՝ բերրմամբ։
2. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ և փրկական տնօրէնութեամբն։
3. Ճ. ԺԳ ծննդեամբդ։
4. Ճ. ԺԳ զտրտմութիւն։
5. Յոր. պակասէ և ի խնդութիւն. եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։
6. Ճ. ԺԳ դնէ ըստ յանցմանն. իսկ Ճ. Գ չունի։
7. Ճ. ԺԳ խաղաղութիւն։
8. Ճ. ԺԳ դնէ՝ արարչին։
9. Այս տուն պակասի ի Ճ. Գ։
10. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին այսպէս. Ուրախ լեր բերկրեալ, նորոգող և հրաշափառ տնօրէնութեամբ և մեղաց քաւիչ։
11. Ճ. ԺԳ Ուրախ լեր բերկրեալ... լուծիչ յանիծից ըստ յանցուածոցն։
12. Այս տուն պակասին ի Ճ. Գ։
13. Ճ. ԺԳ յաւելու բերկրեալդ. իսկ Ճ. Գ ունի՝ Ուրախ լեր միշտ կոյս։

Ուրախ լեր[1], օրհնեալդ ի կանայս, որ զնախամօրն տրտմութիւն բարձեր, ծնանելով զՔրիստոս զմխիթարիչն ազգաց[2]։

Ուրախ լեր, սուրբ կոյս[3], կուսից պարծանք, ողջախոհաց յորդորիչ՝ ճգնաւորելով միշտ առ հանդէս մարտից[4]։

Ուրախ լեր, միշտ կոյս, զարդ կուսից[5], որ հանապազ սփոփես կալ մնալ ի սէրն Քրիստոսի, և առանց արատոյ բաղձալ բարեացն Աստուծոյ[6]։

Ուրախ լեր, միշտ կոյս, պսակ և փառք կուսից[7], որ արծարծես յուսով հոգւոյն[8] գնալ, և զցանկութիւն մարմնոյ արհամարհել սիրովն՝ որ ի Քրիստոս[9]։

Ուրախ լեր, սրբուհի անարատ, որ մաքրութիւն վարդապետես սիրողաց զՔրիստոս, և զամուսնացեալսն պարկեշտս պահես[10]։

Ուրախ լեր, սրբուհի[11] անարատ, որ քոյին ամենասուրբ կուսութեամբդ զարթուցանես զամենեսեան ի զգաստութիւն։

Ուրախ լեր, անարատ կոյս, սրբութեան ընդունարան, ի պարգևս շնորհացս՝[12] որ ի քէն մարմնացաւ Քրիստոս Աստուած[13]։

1. Ճ. ԺԳ յաւելու բերկրեալ. իսկ Ճ. Գ դնէ ամենօրհնեալդ։
2. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ ազանց։
3. Ճ. ԺԳ ունի ուրախ բերկրեալ. իսկ Ճ. Գ Ուրախ լեր միշտ կոյս։
4. Յօր. ճգնաւորաց առ հանդէս մարտին. իսկ Ճ. Գ. ճգնաւորելով միշտ առ հանդիսական մարտն. եդաք ըստ Ճ. ԺԳ։
5. Ճ. ԺԳ կուսանաց։
6. Ճ. ԺԳ և առանց արատոյ է բարիսն Աստուծոյ. այս տուն պակասէ ի Ճ. Գ։
7. Ճ. ԺԳ]և Ճ. Գ կուսանաց։
8. Յօր. հոգւոյն. Ճ. ԺԳ չունի. եդաք ըստ Ճ. Գ։
9. Ճ. ԺԳ. արհամարհես սիրովն որ առ Քրիստոս։
10. Այս տուն պակասի ի Ճ. ԺԳ և Ճ. Գ։
11. Ճ. ԺԳ. կոյս։
12. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին և պարգևաբաշխ շնորհաց։
13. Յօր. մեր. եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։

Ուրախ լեր, անարատ մայր և կոյս, որ զէա-կիցն Հօր և սուրբ Հոգւոյն՝ զԲանն Աստուած ծը-նար, որով ազատեցաք[1]։

Ուրախ լեր, սուրբ մայր և կոյս, որ զդատա-պարտեալս մեզ, հրաշափառ մարմնանալովն ի քէն Քրիստոսի՝ լուծեր զկնիք։

Ուրախ լեր, աղախին Տեառն և մայր, որ ի քէն հանեցաւ արարիչն արարածոց առնուլ զկերպա-րանսն ծառայի[2]։

Ուրախ լեր[3], աղախին և մայր Տեառն, որ ըղ-Տէրն տիեզերաց և զթագաւորն փառաց ծնար, որպէս ինքն կամեցաւ։

Ուրախ լեր, մայր Տեառն և աղախին անբաւ Բանին Աստուծոյ, ըստ մարմնոյ ծնօղ, որ ծա-ռայից և աղախնեաց[4] ես ազատիչ։

Ուրախ լեր, երանուհի կոյս, որ երանութեանց եղեր արժանի յերկինս և յերկրի, յաղագս օծե-լոյն մարմնով[5]։

Ուրախ լեր, երանուհի կոյս, որ երանութեանց արժանի եղեր վասն մարմնանալոյն ի քէն Տեառն փառաց[6]։

Ուրախ լեր, երանուհի կոյս, որ երանեցար ի բոլորից եղելոցս, զի[7] ծնար զանեղն՝[8] որ զերա-նութիւն մեզ[9] խոստացաւ։

Ուրախ լեր, սրբուհի աստուածածին Մարիամ,

1. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ և ազատեցեր նովաւ զմարդոյս։
2. Այս տուն պակասէ ի Ճ. ԺԳ և ի Ճ. Գ։
3. Ճ. ԺԳ յաւելու Մարեամ։
4. Ցօր. աղախնոյէդ. իսկ Ճ. ԺԳ աղախնոյ է ազատիչ. ՃԳ աղախնեանց ազատիչն է։
5. Այս տուն պակասէ ի Ճ. ԺԳ և ի Ճ. Գ։
6. Զայս տուն Ճ. ԺԳ ունի այսպէս. Ուրախ լեր երանուհի կոյս, որ երանեցար ի վերին զօրաւորեանց՝ վասն մարմնանալոյ ի քեն Տեառն փառաց. ի Ճ. Գ. պակասէ բնաւ։
7. Ճ. ԺԳ դնէ՝ որ։
8. Ճ. Գ դնէ՝ զայն։
9. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ էր և խոստացաւ։

որ զարարիչ Բանն Աստուած ըստ մարմնոյ ծը-նար, որ նստի ի քերովբէական աթոռ[1] և խը-նամէ զամենայն արարածս[2]։

Ուրախ լեր սրբուհի անարատ[3], որ եղեր տե-ղի անտանելւոյն, որ բովանդակեցաւ ի քեզ[4], և[5] փրկեաց զազգս մարդկան։[6]

Ուրախ լեր մայր և կոյս աստուածածին, զի զԱստուած ծնար. մայր, վասն զի ի քէն ծնաւ[7]. կոյս, վասն զի միշտ կոյս գոս[8]։

Ուրախ լեր լուսոյ մայր և կոյս[9], կենաց և խաղաղութեան. լուսոյ, վասն զի լուսաւորեցաք ի խաւարային մեղաց, ի ձեռն միածնի որդւոյ քո[10]. կենաց՝ վասն զի զդատնութիւն[11] մահու եղծ Քրիստոս Աստուած, և կեանս և ազատութիւն պար-գևեաց[12]. իսկ խաղաղութեան, վասն զի[13] ա-րար խաղաղութիւն Աստուած Բանն[14] ի յերկինս և յերկրի, և քակեաց զթշնամութիւն անձամբ իւրով[15], և աւետարանեաց զխաղաղութիւն[16] ա-

1. Ճ. ԺԳ և Ճ. Գ նստս։
2. Ճ. ԺԳ դնէ միայն՝ զարարածս, իսկ Ճ. Գ չունի։
3. Ճ. ԺԳ և Ճ. Գ Ուրախ լեր սրբուհի աստուածածին։
4. Ճ. ԺԳ ի քեն։
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ յաւելուն՝ բովանդակ։
6. Ճ. ԺԳ դնէ՝ ամենայն, իսկ Ճ. Գ դնէ միայն զազգս։
7. Ճ. ԺԳ դնէ՝ զի ի քէն ծնանիլ հաճեցաւ, իսկ Ճ. Գ ի քէն հաճեցաւ...։
8. Ճ. Գ գոլով։
9. Յօր. պակասէր կոյս, եդաք ըստ Ճ. Գ, իսկ Ճ. ԺԳ չունի՝ կենաց։
10. Ճ. ԺԳ Լոյս՝ վասն զի լուսաւորեցան ի խաւարային կապա-նաց և ի խաւարային մեղաց, ի ձեռն կենարար միածնի քո. իսկ Ճ. Գ Լուսոյ՝ վասն որոյ լուսաւորեցան ի խաւարային կենաց և մեղաց...։
11. Ճ. ԺԳ և Ճ. Գ զի բանտութիւն։
12. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ և կեանս և ազատութիւն յաղա-խանութենէ մեղաց և մահու պարգևեաց։
13. Ճ. ԺԳ չունի իսկ խաղաղութեան վասնզի։
14. Ճ. ԺԳ և Ճ. Գ մարմնացեալ Բանն։
15. Ճ. Գ յանձին իւրում։
16. Ճ. Գ չունի զխաղաղութիւն։

սելով. « Զխաղաղութիւն զիմ թողում ձեզ, ըզ-խաղաղութիւն զիմ տամ ձեզ ». *ոչ զաշխարհիս այս որ ի ստորին բերումն է, որ առեալ լինի և դարձեալ լուծանի. որպէս գիշերոյ ստուեր՝ որ ի մերձենալ տունջեանն հալածի. այլ որ կայն և մնայն անշարժ և ոչ սասանի յընդդիմակացն որք զխնուորին ընդդէմ ոգւոյ մերոց *։

Արդ՝ որ այսքանեաց և այսպիսեաց երանութեանց և մեծութեանց եղեր ընդունարան, ամենասուրբ[1] կոյս աստուածածին Մարիամ, լեր բարեխօս առ որդիդ քո և Աստուած մեր, փըրկել զմեզ յաշխարհէս ատի չարէ[2], և առնել միշտ զհաճոյսն ըստ աւետարանին քարոզութեան, զհետ երթալ բարեաց, ոչ խռովել[3] և ոչ խուսափել ի բարւոք վարուց, և ի լուսաւոր կարգաց և կրօնից որ աւանդեցաւ մեզ ի Քրիստոսէ որդւոյ քո[4] և ի նորին աշակերտացն։ Եւ քոյին բարեխօսութեամբդ զմերս ուղղեսցես[5] զվարս և զկեանս ամբիծս և անարատս, շնորհօք և մարդասիրութեամբ միածնի քո Յիսուսի Քրիստոսի[6]. և ուղղափառ հաւատով և արժանաւորութեամբ[7] զկուսականս կատարեսցուք զտօնս. և զքեզ, ո՜վ ամենասուրբ կոյս, հոգեւոր երգով մեծացուցանելով[8] ե-

* Յաստեղանշէդ ցմիւսն չգտանին ի Ճ. Գ, իսկ Ճ. ԺԳ ունի այսպէս. ոչ զաշխարհիս և ոչ որ է ունին բերմանէ և դառնալն որպէս գիշերոյ խաբէբայ երազոյ. այլ որ կայ և մնայ, որ ոչ շարժի և ոչ խախտանի յընդդիմակացն որ զխնուորին ընդդէմ անձանց։

1. Ճ. ԺԳ ամենօրհնեալ։

2. Ճ. Գ աւարտէ աստէն զճառս այսպէս.... և հաւանել յերկնաւոր առաջնորդն է Քրիստոս Յիսուս է Տէր մեր, որում փառք յաւէ"։

3. Ճ. ԺԳ չունի՝ ոչ խռովել։

4. Ճ. ԺԳ յորդւոյ քումմէ։

5. Ճ. ԺԳ անցուցէ։

6. Ճ. ԺԳ չունի՝ շնորհօք և մարդասիրութեամբ միածնի քո Յիսուսի Քրիստոսի։

7. Ճ. ԺԳ դնէ՝ արժանաւորապէս ընդունելութեամբ։

8. Ճ. ԺԳ մեծացուցանէ։

րանեսցուք [1], բարեհամբաւեսցուք և զԱստուած [2] փառաւորեսցուք, և քոյին սրբութեանդ հետեւել, անարատք յամենայն հոսմանց գիջութեանց [3]. և մերձեալ յաստուածային սրբութիւնն՝ ընդունարան լիցուք մարմնոյ և արեան փրկչին [4]. զի երթիցուք աստի մաքրեալք, և նորին երանութեանցն հասցուք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր՝ որում վայել է փառք և զօրութիւն յաւիտեանս. ամէն։

1. Ճ. ԺԳ չունի երանեսցուք։
2. Ճ. ԺԳ չունի զԱստուած։
3. Ճ. ԺԳ ունի այսպէս. և քում սրբութեանդ հետեւողք լիցուք, անարատք և անաղտք լինելք յամենայն հոսմանց գիջութեանց։
4. Ճ. ԺԳ յաւելու. որպէս արժանաւորք եղեալք, և աւարտէ այսպէս. զի երթիցուք աստի մաքրեալք, և նորին երանութեանցն հասցուք յերկնային յարքայութիւն, ի փառս և ի գովութիւն ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ԺԸ

## ՄՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

## ՀԱՅՐԱՊԵՏԻ

## ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ

## ԱՍԱՑԵԱԼ

## ԵՒ Ի ՄԻՇՏ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ*

*Աստանօր զմիտս ածելով իմ զխորհուրդն մեծ, զխորհուրդ մարմնացելոյ[1] Բանին Աստուծոյ, և զնախախնամութիւն բարերարութեանն, զանհամեմատ առաւելութիւն զօրութեան կարողութեան և զանեղծութիւն անեղին և բարձողին զմեղս[2], զներգործութիւն տնօրէնութեանն անհետազօտելի ծննդեան[3], որոյ անզննելի են ճանապարհք նորա, և դատաստանք նորա անդունդք բազումք. զորոյ զշաւիղ ոչ ծանեաւ թռչուն, ըստ մարգարէին՝*

* Ձ. ԺԳ Հինգերորդ ասացն՝ երանելւոյն Աթանասի Աղեքսանդրու հայրապետին, ներբողեան ասացեալ է սուրբ կուսին Մարիամ Աստուածածնին: — Իսկ Ձ. ԻԸ դնէ Եւ սորին ասար՝ երանելւոյն Աթանասի Աղեքսանդրու հայրապետի, ներբողեան ասացեալ սուրբ Աստուածածնին և ի միշտ կուսին Մարիամ:

1. Ձ. Գ դնէ՝ մարմնանալոյ:

2. Ձ. ԺԳ և Ձ. Գ դնեն՝ և զնախախնամութիւն բարերարութեան անհամեմատ առաւելութեան, կարողութեան զօրութեան. իսկ Ձ. ԻԸ ունի այսպէս. և զնախախնամութիւն բարերարութեանն, զանհամեմատ առաւելութեանն, զզօրութիւն կարողութեանն և զանեղծութիւն անեղին և բարձողին զմեղս:

3. Ցոր. պակասէր՝ անհետազօտելի ծննդեան, եդաք ըստ Ձ. ԺԳ, Ձ. Գ և Ձ. ԻԸ:

եթէ ի ծովու են ճանապարհք քո[1], և շաւիղք քո ի ջուրս բազումս, և հետք քո ոչ եւս երեւին. որոց և[2] հրեշտակաց է անգիտելի, անիմանալի զօրութեանցն[3]. յայսմ վայրի յիմարեալ թմբրեցայ, և տարակուսեալ միտք իմ[4], ոչ գիտելով ստուգաբար[5] զորպիսութիւն, և ոչ բերելով յիս մաքուր վրանս աստուածայինս, և ոչ ունիմ լեզու արժանապէս՝ թերեւս արդարապէս խօսեցայց յաղագս հրաշալի ծննդեանն և տնօրէնութեան[6], զի անհաս է և անճառելի ամենայն եղականացս։

Զի զԱստուած իմանալ՝ ասէ, կարի դժուարին է, և ճառել՝ անկարութիւն[7], մանաւանդ յաղճատեալ և հիւանդացեալ մտօս[8]. զոր և առակողն ասաց, եթէ «Յանձն չարարուեստ իմաստութիւն ոչ մտանէ, և ոչ բնակէ ի մարմնի վարեցեալ մեղօք»[9]. զի ակն է նա՝ արթուն, տեսանողական զօրութիւն. ի պատրաստութիւն մտաց[10] հայի, և զանգործս տեսանէ ըստ մարգարէին՝[11] թէ գործք առաջի նորա, այս ինքն, զխորհուրդս

1. Յոր. էր՝ Նորա, եղաք ըստ Ճ. Գ և Ճ. ԻԸ։
2. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին՝ որ և։
3. Ճ. ԺԳ և հեռանալի վերին զօրութեանցն, իսկ Ճ. ԻԸ և հեռանալի անիմանալի բնութեանցն, Ճ. Գ և հեռանալի իմանալի զօրութեանցն։
4. Ճ. ԺԳ և Ճ. Գ մտածութեանս։
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ ստուգապէս։
6. Ասմանօր Ճ. ԺԳ ունի այսպէս. և ոչ ունելով լեզու արժանաւոր, թէ արժանապէս խօսեցայց յաղագս հրաշալի.. իսկ Ճ. Գ արժանաւոր՝ թէ արդարապէս խօսեցայց... Ճ. ԻԸ չունի և տնօրէնութեանն։
7. Ճ. Գ. անկարելի մտաց։
8. Ճ. ԺԳ և Ճ. ԻԸ յաղճատեալ և ի հիւանդացեալ մտաց. Ճ. Գ յաղքատացեալ և ի հիւացեալ մտաց։
9. Յոր. էր այսպէս. Եթէ յանձն չար իմաստութիւն Աստուծոյ ոչ մտանէ, և ոչ արուեստ՝ ի մարմին վարեցելոյ մեղօք. եղաք ըստ Ճ. ԺԳ, Ճ. ԻԸ և Ճ. Գ։
10. Ճ. ԺԳ և Ճ. Գ սրտից։
11. Ճ. ԺԳ և Ճ. Գ յաւելուն՝ յայնի։

սրտից ճանաչելով[1], և առաջի Նորա լինելով յամենայն ժամ։

Ապա ածեալ զմտաւ. եթէ ճանաչելն զԱստուած[2] դժուարին է, իսկ լսելն զաստուածգիտութենէն՝ անհնարին կորուստ, լաւ համարեցայ ապա ճառել սակաւուք, և օգտել ըստ աստուածային գրոց, օրհնել զՏէր յամենայն ժամ, խորհել[3] ի տուէ և ի գիշերի, ի նստել ի տան, եւ ի գնալ ի ճանապարհ, ի ննջել և յառնել և կանխել, և ի տարաժամու[4] աղաղակել, և ի բանս Նորա յուսալ։ Զայս ամենայն զմտաւ ածելով, հարկաւորեաց զիս ապա և յօժարութիւն մտացս, և կարգադրութիւն տենչանացս[5], որ յաղագս Աստուծոյ Բանին աղօտաբար ասել յաղագս դրուատեաց աստուածածնին, բարեբանեալ այսպէս[6]։

Ուրախ լեր Մարիամ, ազն ազատատեռիցն ընծիւղեալ ի սուրբնոս, զի տաճարազարդեաց զքեզ աննիւթ Նախատիպն՝ անտես սորա իսկութեամբն. և բարեհաճեցաւ[7] բնակել ի քեզ՝ յաւիտենից պարփակողն[8]։

Ուրախ լեր Մարիամ, անեղական Բանին ներմարդացելոյ, որ [illegible][9] բանիւդ հրաշալեաւ զներգործութիւն Աստուծոյ Բանին[10] և զքացա-

1. Ճ. ԻԸ գնէ՝ սրտի ճանաչել։
2. Ցոր. էր զԱստուծոյ, իսկ ի Ճ. ԺԳ Աստուծոյ. եղաք ըստ Ճ. Գ և Ճ. ԻԸ։
3. Ճ. Գ յաւելու ի նոսա. իսկ Ճ. ԺԳ ի նա։
4. Ճ. ԺԳ ժամս և պարաժամս։
5. Ցոր. էր՝ կարգադրութեան տանջանացն. Ճ. Գ կարգաւորութեան տենչանացս, Ճ. ԻԸ և գիտութեան տենչանացս. եղաք ըստ Ճ. ԺԳ։
6. Ճ. ԺԳ և Ճ. ԻԸ դրուատեալ աստուածածնին և բարեբանեալ այսպէս. իսկ Ճ. Գ... բարեբանեալ ծննդեանն այսպէս։
7. Ճ. ԺԳ և Ճ. ԻԸ գնեն՝ բարեհաճեցաւ։
8. Այս տուն պակասի ի Ճ. Գ։
9. Ճ. Գ և Ճ. ԻԸ գնեն՝ հաճեցաւ։
10. Ճ. ԻԸ զներգործութեան զԱստուծոյ բանն, Ճ. ԺԳ և Ճ. Գ զներգործել զԱստուծոյ բանն։

փայլութիւն փառաց տիրականին ի մեզ ելով ար-տայայտեցեր[1] անտարրաբար և միապէս ներմաք-րելով զատորինաս, և կենածնելով մեզ զլոյսն ճըշ-մարիտ[2], ըստ մարգարէին, թէ «ծագումն անուն նորա, և ի ներքոյ իւրմէ ծագեսցէ». և դարձեալ՝ թէ «ի ներքոյ նորա որպէս հուր շրջեցաւ»[3] ։

Ուրախ լեր Մարիամ, զի զանեղն բնութեամբ և զանախտանալի Աստուած Բանն կրեցեր յորո-վայնի անյեղաբար և անփոխելապէս[4], ներգործեալ զաստուածանշանութիւնս տնօրինաբար, և ոչ ար-տակացեալ[5] ի գոլոյն Աստուած, և ոչ հեռացեալ յէէն պատկերէ[6] նախատիպ դիմաց. այլ Բանն մարմին եղեալ տաղաւարեցաւ ի քեզ՝[7] անփոխար-կելի[8] միացեալ ի բնութեանն. բայց բովանդա-կեալ[9] վասն մեր, քանզի կարողութիւն է՝ ըստ կամելն իւրում՝ բովանդակել զինքն ։

Ուրախ լեր Մարիամ, յաղագս տնօրէնու-թեանն շարժեցելոյ և ի նմանէ կատարելոյ հրա-շագործութեանց[10], որ վասն մեր եղեալ մարդ՝ գոլով[11] Աստուած. զի որ էրն՝ միաց, և որ ինչ ոչն էր՝ ընկալաւ[12] ։ Քանզի էակն Աստուած, որ է՝ կեր-

1. Ճ. ԻԸ դնէ արտափայլեցեր ներմատրելով ։
2. Ճ. ԺԳ դնէ կենածնել, և չունի՝ զլոյսն ճշմարիտ. իսկ Ճ. ԻԸ կենածնել մեզ զլոյսն ճշմարիտ ։
3. Ճ. ԻԸ չունի՝ և դարձեալ թէ ի ներքոյ նորա որպէս հուր շրջեցաւ ։
4. Ճ. ԺԳ անփոփոխապէս ։
5. Ճ. ԺԳ արտաքսեցեալ ։
6. Ճ. ԺԳ և Ճ. Գ պատկեր ։
7. Ամենայն օրինակք դնեն տաղաւարեաց ի մեզ ։
8. Ճ. ԺԳ, Ճ. ԻԸ և Ճ. Գ դնեն՝ անփոխարկելով միացեալ բնութեանն ։
9. Ճ. Գ բովանդակելով . . ըստ կամելն է լրումն բովանդա-կեալ զինքն որպէս և կամի ։
10. Յօր. եղեալ էր՝ հրաշագործութեանց. եդաք ըստ Ճ. ԺԳ, Ճ. ԻԸ և Ճ. Գ ։
11. Ճ. Գ միալով. իսկ Ճ. ԺԳ և Ճ. ԻԸ մարդանալով ։
12. Ճ. ԺԳ չէ որ ինչ էր միա, և զոր էր ընկալաւ ։

պարան էութեանն Հօր[1] և գծաւորութիւն ենթակայութեան Նորա, սա՝ կամեցեալ եղբայր մեր յամենայնի լինել, զինքն թափեալ[2] զկերպարանս ծառայի առեալ, զմարմնաւորութիւնն և զներմարդութիւնն ընկալեալ համագոյ մեզ, և հանդէտ Աստուծոյ ցուցեալ, զաստուածութիւն և զներգործութիւնն, զմարմնոյն ճշմարտութիւնն[3] իբրև խըմոր եղեալ ամենայն[4] զանգուածին, և առ ինքն միաւորէ անճառապէս և անպարփակելի, ամենայնի ի վերայ[5] եղեալ տեղւոյ, զամենայնն ամէնն ելից[6], ընդ ամենայնս ուղեւորեալ մեծարար[7]. և կատարեալ զամենայն չափս[8] քաղցի և ծարաւոյ, ելից զամենայն համբերութեամբ, ըստ մարգարէին, «Թէ այր մի ի հարուածս, և գիտէ համբերել ցաւոց։

Ուրախ լեր Մարիամ, մայր սրբասնեալ և կոյս շնորհաւէտեալ[9], զի յանսերմնական[10] արգանդէ՝ և յանփորձ ամուսնութենէ ծնար զԷմմանուէլն և զինքնագոյ զօրութիւնն, և զարարիչն ժամանակաց, որ սակս մերոյ փրկութեան փակեալ ընդ ժամանակաւ, և խանձարրապատեալ կաթնարուծեցեր[11], և մերօրէն զետեղեալ ի սուրբ արգանդի քում։

1. Ձ. ԺԳ չունի Հօր։
2. Ձ. ԺԳ Թափեալ։
3. Ձ. ԻԸ և Ձ. Գ չունին՝ զմարմնոյն ճշմարտութիւնն, իսկ Ձ. ԺԳ և հանդէտ Աստուծոյ ցուցեալ զաստուածութիւնն ներգործութեան զմարմնոյն ճշմարտութեան։
4. Ձ. ԻԸ խմորեալ զամենայն։
5. Ձ. ԺԳ. ի վերոյ։
6. Ձ. ԺԳ զամենայն յամենայնի լցեալ. իսկ Ձ. Գ և Ձ. ԻԸ զամենայն ամէնն լցեալ։
7. Ձ. ԻԸ մեծվայելչաբար. իսկ Ձ. Գ. ամբծաբար։
8. Ձ. ԻԸ յաւելու՝ հասակի։
9. Ձ. ԻԸ դնէ շնորհաւէտ. Ձ. ԺԳ չունի. Ձ. Գ սրբասնեալ . . . շնորհաւորեալ։
10. Ձ. Գ անսերմն։
11. Ձ. ԺԳ և Ձ. ԻԸ. խանձարրապատեալ կաթնաբուծեցար.

Ուրախ լեր Մարիամ, օթարան ուղփեան լուսոյն[1] և աստուածիշխան մարմնաւորին տիրացելոյն[2]. զի իսկականն Աստուած ի քեզ ելով՝[3] տնօրինեցաւ անհաս մարմնազգեցութեամբ և անորիչ[4] միաւորութեամբ. զի Աստուծոյ բնութիւնն ոչ մտանէ ընդ քննութեամբ[5] և ոչ հասանի խնդրականաց,[6] և ոչ կարծիցի երագագոյն[7] մտաց, այլ պատուի[8] լռութեամբ:

Ուրախ լեր Մարիամ, ցօղակերպ իջիւք Հոգւոյն սրբոյ[9]. երագընթաց պատգամացն՝ զսա[10] մարգարէն ասաց, թէ «Ակնկալեացի[11] որպէս զանձրեւ բարբառ իմ, և իջցէ որպէս ցօղ պատգամք իմ, որպէս զանձրեւ ի վերայ սիզոյ. որպէս տարափ ի վերայ խոտոյ»: Զնոյն և յաջորդեալ աստուածայնոյն Դաւթի, թէ «Իջցէ որպէս զանձրեւ ի վերայ գեղմոյն, որպէս ցօղ ցօղեալ յերկիր[12], զի ի ցօղելն Նորա՝ զուարթասցի բուսեալն, և պարարտասցի գեղեցկութիւն Նորա անապատի[13]»:

Ուրախ լեր Մարիամ, ազատածին և թագաւորազն, որ ծնար զԹագաւորն փառաց, որ վասն մեր դարձաւ ի մանկութիւն և ի սկիզբն տղայութեան անհետազօտելի ծննդեամբն, հրաշատեսակ երեւմամբն՝ և բազմազարման տեսչութեամբ[14].

իսկ Ձ. Գ խանձարրապատեցաւ կարճառօտեցաւ:
1. Յօր. ուղփեան. իսկ Ձ. ԺԳ և Ձ. Գ ուղփեան լուսոյն, յոր յաւելուն՝ Ձ. ԺԳ նախախնամչայ լուսոյն. իսկ Ձ. Գ նախախնամչայ խաղոյն:
2. Յօր. էր՝ տիրեցելոյն, եդաք ըստ Ձ. ԺԳ, Ձ. Գ և Ձ. ԻԲ:
3. Ձ. ԺԳ նշելով:
4. Ձ. ԺԳ, Ձ. ԻԲ և Ձ. Գ դնեն՝ անշփոթ:
5. Յօր. չիք ընդ քննութեամբ. եդաք ըստ Ձ. ԺԳ և Ձ. ԻԲ:
6. Ձ. ԺԳ, Ձ. ԻԲ և Ձ. Գ խնդրողաց:
7. Ձ. Գ դնէ՝ արարչին:
8. Ձ. ԺԳ և Ձ. ԻԲ. պատուի:
9. Ձ. ԺԳ և Ձ. Գ չունին՝ սրբոյ:
10. Ձ. ԺԳ և Ձ. Գ զոր:
11. Ձ. ԻԲ ընդունելի եղէ. իսկ Ձ. Գ ան կալցէ:
12. Ձ. Գ որպէս ցօղ յերկիր:
13. Ձ. ԺԳ չունի և պարարտասցէ գեղեցկութիւն անապատի:
14. Ձ. Գ տեսութեամբ:

*որ խոնարհեալ ծառայեաց բազմաց մոադիւրու-թեամբ և կամաւոր աղքատութեամբ, վասն ըզ-մեզ ազատելոյ[1] ի ծառայութենէ մահու մեղաց. որ միեղջերին[2] կոչեցաւ միածնութեամբն և բա-զում զօրութեամբ, և փրկեաց զմեզ յեղջերէ միեղջերուին և ի բերանոյ առիւծուն, ընուա-տութիւն աղքատութեանն. որ վասն թզենա-սաղարթ զփածանելին Ադամայ բառնալով[3], խանձարրովք պատեցեալ և ի մսուր անբանից առ-ընկեցաւ[4], ըստ այնմ զոր ասէ[5], եթէ «կամեցի քեզ միեղջերուն[6] ծառայել և հանգչել առ մսուր քո»:*

*Ուրախ լեր Մարիամ, դուստր մարգարէին Դաւթի, ծնեալ յարդարութեան ծնողաց, և սնեալ ի սրբոց. զի առաջար զմարգարէին պատուա-կան՝ զգանձն երկնաւոր, զթագաւորն զօրութեանց Քրիստոս[7]. զոր և ինքն իսկ ասաց Դաւիթ Հոգւովն*

1. Ճ. Գ չունի զի զմեզ ազատելոյ:
2. Ճ. ԺԳ միեղջերն, իսկ Ճ. Գ միեղջերուն:
3. Ճ. ԺԳ և Ճ. Գ որ չունի թզենակարկատած սաղարթն Ադամայ բառնալոյ, իսկ Ճ. ԻԸ որ չունի սաղարթնակարկատած թզենայն Ադամայ բառնալով:
4. Ճ. ԻԸ և Ճ. Գ ընկեցաւ:
5. Ճ. Գ ասէն Տէր:
6. Ճ. Գ եղջերուն:
7. Ճ. ԺԳ *ունի՝* զՏէր Քրիստոս. Ճ. Գ *դնէ՝* թագաւորու-թեանց զՏէր Յիսուս, իսկ Ճ. ԻԸ *աստէն վախճան առնէ ճառիս այսպէս*. Զգանձն երկնաւոր, զթագաւորն զօրութեանց Քրիստոս, զոր և ինքն ասաց. Մարիամ [illegible] բերեցէք, յորում խաղաղութեան զարմանալի՝ արար զերկրաւորսն մի, ըստ սրբոյն Զաքարիայի, որ արեգակնաբար ի մեզ ծագեցաւ: Արդ, զի՞նչ առաւել առաքինակն ի մեզ առնել ընծայեցուցանել, սուրբ Աստուածածին. ո՞չ ապաքէն անցեր ըստ միտս, ո՞չ ապաքէն եկեր ըստ բան. ո՞չ ապաքէն է Մարեայ դուստր ասացեալ՝ զի Հոգին սուրբ եկ առ քեզ, և զօրութիւնք Հօրայն հովանաւորեցայ. և այս յաւէտ յիրաւի, զի զԱստուածածին ընկալար, զի զԱստուածածին յղացար, զի զԱստուածածին ծնար, զի զԱստուածածին սնուցեր, զի զԱստուածածին կաթնաբուծեցեր, զի զԱստուածածին երգակեցեր, զի զԱստուածածին բարձեր, զի զԱստուածածին գրկաեցեր, զի զԱստուածածին անդադարաբար ի գիրկս բարձեր, և որոյ երկինք ամփոփ են և

սրբով, թէ «Լուր դուստր և տես, խոնարհեցո զունկն քո, մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո. է սա Տէր քո»։ Զնոյն և Տէր՝ յաջորդեալ յաւետիս հըրեշտակապետին, աւելով ցկոյսն. թէ «Ուրախ լեր բերկրեալ՝[1] Տէր ընդ քեզ». զնոյն և Եսայի, թէ «Կոչեսցեն զնա[2] ընդ մեզ Աստուած»։

Ուրախ լեր Մարիամ, թոռն Դաւթի, արմատ անմահութեան[3], դրախտ արեւելեան ամենալից[4], այգի տաշտաւոր և ողկուզաբեր որթ[5], բուրաստան ամենածաղիկ, սպարթեալ հեղինուոյն[6], զարգացեալ բուսոյ բանին[7], ծայրարձակ շառաւեղ, ուղէշ գաւազանաբուղխ թագաւորութեանն Քրիստոսի. չինեալ պտղալից ուրախութեամբ[8] և շտեմարանապարար զեղուածովք, ըստ մարգարէին որ ասէ[9],

երկիրս պատուանդան ոտից նորա. և զենսս խաչափայտեան նորա, զի երկինք երկնից բաւական են տանել, բայց զնա էջեալ բազմեցուցեալ որոյ խոնարհաբարար ասեմք: Մէ՛ նս (տէ՛ նա?), զէ՞կոյ իմ և ընդ այնպիսի մեծամեծս խոստելոյ. ընդէ՞ր վերաներ պատուհասին երանութեանցս ցոյցն. զի ահա երեւի որ է անեղական լուսին հեմանս՝ ծագակերպ հրով է ատեդարատեղաց և այսր զեղեղեալ սատանեցուցին. և չելոյն որ զերկինս և զերկիր առար, այժմ է մեջ անցեալ էջեալ զոր մի բամանէ մասունս բերեալ ողջին մարմնոյն: Այդ, բովանդակ այս որ այլ ինչ է՝ այլ քոյին մարգարէին (մարգարէութիւն?) ըն ահա յայսմ հետէ երանեցեն ինձ ամենայն ազգք: Այդ՝ աղաչեմ զքեզ, ողջոյն լուսոյ Մարիամ, մաղթեսցես յորդորոյ քամե և յԱստուծոյ մերմէ, շնորհել զանձեզ ցողորմութիւն իւր ամենայն երկրպագուացս խորոյ. ամէն:

1. Ճ. ժԳ չունի ընդ ասրաւ լեր բերկրեալ:
2. Ճ. ժԳ կոչեսցեն զանուն նորա, իսկ Ճ. Գ մեզ Աստուած կոչէ:
3. Ճ. ժԳ և Ճ. Գ աբրահամեան:
4. Ճ. ժԳ և ամենալի, իսկ Ճ. Գ և խմանալի:
5. Ճ. ժԳ և Ճ. Գ դնեն՝ ողկուզաբեր որթոյն:
6. Այս բառ անշուշտ նոյն իցէ ընդ խաղինոյ (ծառ իւղաբեր կամ խնկաբեր) որ յիշատակի ի Նարեկն՝ «Ի պարտէզ խաղինեաց տածեալ ծրծեցէք». (ՂԳ):
7. Ճ. ժԳ չունի՝ զարգացեալ բուսոյ բանի:
8. Ճ. Գ պտղալիութեամբ:
9. Ճ. ժԳ ասացելոյ. իսկ Ճ. Գ ասելոյ:

թէ « Գողալից չինեցի Երուսաղէմ, դարձուցի ի քաղաքի[1] Տեառն, որպէս խոտ երկրի » ։

Ուրախ լեր Մարիամ, աստուածառաք լուսափդ մշտնջենաւոր[2] և հրավառ[3] բորբոքմամբ երկնային հրովն[4]. որ ի քեզ եկաւորեալ մարմնացելոյ Բանին Աստուծոյ անփառաբար խոնարհութեամբ, եղեւ սկիզբն փրկութեան, զմեզ ի կեանս նորոգելով, ըստ մարգարէին՝ թէ « Ինքնին եկեալ է[5] և փրկեսցէ զմեզ » ։

Ուրախ լեր Մարիամ, զի բաւական եցոյց ըզքեզ իւրում աստուածութեանն[6], և բովանդակեցաւ[7] յորովայնի քում անբովանդակելի[8] Բանն, ջահավառ ամփոփեալ զճառագայթս աստուածութեանն լուսոյ և ղամբարափայլ[9] հոսանս աստուածային կայծականցն, տեսագործելոյ ի նմա անձնաւորի և զգայարանի մարմնի[10] մարդկային կերպի. զի ելով Աստուած՝ եղանի մարդ, հաւասարեալ արեան և մահու, ընդ ամենայն աղքատութիւնս մեր անցանելով կամաւորաբար, մինչեւ ժամանեալ փորձութեանց[11], ըստ մարգարէին՝ թէ « Ի հող մահու իջուցին զիս, և եդին զիս ի ստորերական խաւարի և մահուտ գբի[12] » ։

1. Ձ. ԺԳ դարձուցի քաղաք. իսկ Ձ. Գ ունի այսպէս գողոլից չինեցի Երուսաղէմ. և ոչ դարձուցի քան զԼիբանան պտուղ նորա, և ոչ ծաղկեցի ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի։
2. Ձ. Գ մշտնջենաւորով։
3. Յոր. վրիպակաւ հրովն ու. եդաք ըստ Ձ. ԺԳ և Ձ. Գ։
4. Ձ. Գ. երկնային հրոյն։
5. Ձ. ԺԳ և Ձ. Գ եկեալ։
6. Ձ. ԺԳ չէ բաւականացոյց զերկ իւր աստուածութեանն. իսկ Ձ. Գ բաւականացոյց զերկ իւր աստուածութեանն։
7. Ձ. ԺԳ և Ձ. Գ բնակեցաւ։
8. Ձ. ԺԳ և Ձ. Գ գնեն՝ անբաւական։
9. Ձ. ԺԳ և Ձ. Գ զղամբարափայլ։
10. Ձ. Գ. գնէ՝ անձնաւորականի և զգայականի մարմնի։
11. Ձ. Գ. գնէ՝ մինչև ի մահ ժամանեալ փորձութեան. իսկ Ձ. ԺԳ. մինչև մահու ժամանեալ փորձութեան։
12. Ձ. ԺԳ և ի մահու գբի. իսկ Ձ. Գ և ի մահամահու՝ գբի։

Ուրախ լեր Մարիամ, զարմացումն հրեղինաց և պարծանք հողեղինաց ազգի մարդկան. զի անպարունակելին ի քեզ պարունակեալ[1] տաղաւարեցաւ անօրինաբար. և ոչ կիզար ի բորբոքեալ հրոյն կենդանույ[2], այլ պահեցար որպէս զոսկի ի հուր քուրայի հրաշափայլ նշուլիւք[3]:

Ուրախ լեր Մարիամ, պատճառ էակացս[4] կենդանութեան, և արմատ կենդանի[5] ի քէն բղխեալ, պետ ինքնիշխանութեան[6] և գաւազան զօրութեան թագաւորական[7]. որդեակ՝ ի շառաւիղէ ելեալ, Քրիստոս ի կուսէ ծնեալ՝ ծագումն արդարութեան. ոչ բոցակիզեալ որովայն կուսիդ[8], ոչ շարժեալ և ոչ դղորդեալ և ոչ հատեալ զկուսութեանն կնիք, այլ պահպանեալ[9] անկողոպուտ, անհամեմատ առաւելութեամբ կարողաբար. քանզի մօտ է[10] յորժամ կամեսցի կարող է[11], և տկարանայ և ոչինչ:

Ուրախ լեր Մարիամ, մայր աննախատական և կոյս անամուսնական, տեսող[12] արդարութեան Բանին զօրութեան, զոր առաքեացն և բժշկեաց զմեզ. ի ձեռն քո տեսաք զարդարութիւնն խոնարհեալ յերկնից՝ և լոյս ի խաւարի ծագելով, մաքրելով զիմ ապառութիւնս[13] վերադիտողու-

1. Ճ. ԺԳ ի քէն պարփակեալ:
2. Ճ. Գ և ոչ կիզար ի բոցոյ Աստուածութեանն. իսկ Ճ. ԺԳ ի բոցաստուածութեանն կենդանւոյն հրոյն:
3. Ճ. Գ հրոյն հրափայլ նշողիւք, Ճ. ԺԳ հրոյն նախափայլ նշողիւք:
4. Յօր. եղեալ էր էակացս, եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ:
5. Ճ. Գ կենդանական:
6. Ճ. Գ յաւելու՝ փրկութեան:
7. Ճ. ԺԳ Թագաւորութեան:
8. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն զէջս կուսին:
9. Ճ. ԺԳ պահէ, Ճ. Գ պահեալ:
10. Յօր. պակասէր քանզի մօտ է, եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ:
11. Ճ. ԺԳ լինել, իսկ Ճ. Գ լեալ:
12. Ճ. ԺԳ. տեսանող:
13. Ճ. ԺԳ զիմ ապառաժութիւն, Ճ. Գ զիմ ապականութիւնս:

թեամբ[1], յորժամ գտեաց զմեզ յարեւելից ի բարձանց[2]. ինքն Քրիստոս Աստուած եղով՝[3] Տէր յայտնեցաւ մեզ, լոյս ի լուսոյ ծագեալ։ Եւ յիրաւի, ըստ մարգարէին՝ թէ « Ժողովուրդ՝ որ նստէր ի խաւարի՝ ետես լոյս մեծ »։

Ուրախ լեր Մարիամ, աշխարհի ապաւինութիւն[4]. և յառաջ քան զյաւիտեանս հաստատեալ ի փառս, և յառաջ քան զամենայն եղելութիւնս ծնելութիւն մարմնոյն Քրիստոսի հաստատեցաւ, և ի վաղճանի ծնաւ ի փրկութիւն և ի պարծանս[5] յուսոյ մերոյ. զի դու իսկ ես փառք մեր և խնդութիւն, և պսակ պարծանաց մերոց՝ ըստ սողոմոնեան[6] տառիցն, թէ « Կին ժրագլուխ պսակ է առն իւրում »։

Ուրախ լեր Մարիամ, որ փառաւորեալ[7] և գըրուատեալ ես ի կանայս. զի փառօք և պատուով պսակեցեր[8] զբնութիւնս մեր[9] վերստին ծննդեամբդ[10], ըստ որում աստուածապէս դրոշմեալ անկաւ միաւորութեանն պատմուճան երկնաւոր[11]. զի թէպէտ և յերկրէ էր մարմինն, այլ ընդ երկնաւորին միաւորեալ՝ կոչեցաւ երկնաւոր[12]։

Ուրախ լեր Մարիամ, օրհնութիւնաբեր կոյս, զի ի քեզ օրհնեցան ամենայն ազգք երկրի, և ամենայն տոհմք[13] երանեցին քեզ, և բարեբանեցին

1. Ճ. ԺԳ յաւելու և ծագողութեամբ. իսկ Ճ. Գ ծագողութեան։
2. Ճ. ԺԳ չունի՝ ի բարձանց։
3. Ճ. Գ եղեալ։
4. Ճ. Գ ունէ պայծառութիւն։
5. Յօր. էր՝ պարծանս, եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։
6. Ճ. ԺԳ ունէ ըստ սողոմոնեան։
7. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին փառաւորեալ։
8. Ճ. Գ փոխանակ ունէ պսակեցար։
9. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին մարդկային։
10. Ճ. Գ ունէ ծննդեան։
11. Ճ. ԺԳ չունի երկնաւոր։
12. Ճ. ԺԳ երկնային։
13. Ճ. ԺԳ ունէ ազինք, իսկ ի Ճ. Գ պակասի և ամենայն տոհմք երանեցին քեզ։

զքեզ դստերք Թագաւորաց, ըստ սողոմոնեան[1] տաղիցն, թէ «Կին բարեպաշտօն[2] օրհնեսցի»։

Ուրախ լեր Նախանկար[3] ծննդեամբդ, Մարիամ, զի ծնար զյառաջ քան զարեւ անունն, զլոյսն առաջին, զյարատեւն Քրիստոս, ըստ կերպարանի առաջին մարդոյն[4], զի ըստ նմանութեան պատկերին զոր հանդերձեալն էր առնուլ[5], ըստ նմանութեան այնմ արար զմարդն, ըստ գրեցելումն՝ թէ «Արասցուք[6] մարդ՝ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան»։

Ուրախ լեր Մարիամ, կուսական ծննդեամբդ, զի պարկեշտաբար և հոգեւորապէս[7] ծընար զհուրն Աստուած. կատարեալ ըստ ամենայնի՝ զանձեռագործ խորանն. զի որպէս առանց երկամթոյ կատարեցաւ տաճարն, նոյնպէս առանց ցաւոց և երկանց[8] ծնար զՔրիստոս։

Ուրախ լեր Մարիամ, զի ծնար զԱստուածն Բան, անժամանակապէս[9] և առանց մեկուսանալոյ։ Եւ յիրաւի, զի ի կուսական արգանդ[10] սաղմնաւորեցաւ լոյսն ճշմարտութեան[11] անպարփակապէս, և ներգործեաց ինքն իւր մարմին, ներանձնաւոր, ներամիտ, որպէս ինքն միայն գիտէ, հաւասար մեզ և համակարի, ըստ ամենայնի[12], բայց ի մեղաց։

Ուրախ լեր Մարիամ, հրաշազանելի կոյս[13], և

1. Ճ. ԺԳ սաղոմոնեան։
2. Ճ. Գ և Ճ. ԺԳ զնեն խմաւորան և բարեպաշտօն։
3. Ճ. ԺԳ նախնական, իսկ Ճ. Գ նախնականի։
4. Ճ. ԺԳ և Ճ. Գ ստեղծուածին։
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ շինելու։
6. Ճ. ԺԳ և Ճ. Գ էկայք արարցուք։
7. Ճ. ԺԳ հոգեպէս, իսկ Ճ. Գ ծնար զհոգեպէսն։
8. Ճ. ԺԳ և Ճ. Գ տղախանութեան։
9. Ճ. ԺԳ և Ճ. Գ անբաժանաբար։
10. Ճ. ԺԳ արգանդիէ, իսկ Ճ. ԺԳ յարգանդիէ սաղմնաւորեաց։
11. Ճ. ԺԳ լոյսն անճառելի, Ճ. Գ լոյսն անճառաբար։
12. Ճ. ԺԳ և Ճ. Գ չունին ըստ ամենայնի
13. Ճ. ԺԳ հրաշազանելոյ է կուսայս, իսկ Ճ. Գ հրաշանալիլէ կոյս։

մայր անապատելի լուսոյն, զի ի քէն ծագեաց արե- գակն արդարութեան, և լոյսն ճշմարիտ աստուածութեան, զոր մարգարէն ասաց՝ թէ «Ճշմարտութիւն յերկրէ ծագեաց, արդարութիւն յերկնից երեւեցաւ»։

*Ուրախ լեր Մարիամ, զի երկիրդ խաւարային և աղջամղջին ի լուսոյ ծագմանէն ոչ խաւարեցաւ*, և խաւար նորա որպէս լոյս նորա՝ զոր աւետարանիչն Յովհաննէս ասէ՝ թէ «Լոյսն՝ ի խաւարի անդ լուսաւորէ[1], և խաւար նմա ոչ եղև հասու»։ Զնոյն և մարգարէն՝ թէ «Ծագեաց ի խաւարի լոյս ուղղոց»· և «Զի՞նչ երկիր իցէ՝ յորում լոյսն ագանիցի»։

Ուրախ լեր Մարիամ, անաղտ ծննդեամբդ և անարատ կուսութեամբդ. սկիզբն անսկզբնականին, ծնունդ և ծնօղ. ծնունդ հոգեղինին[2], և ծնօղ ստեղծողին. զի ծնաւ[3] մեզ այսօր փրկիչ[4], տէր և օծեալ ի քաղաքի Դաւթի։ Զի յարգանդէ եւս[5] Եմմանուէլն զոր մարգարէն ասաց, թէ «Յորովայնէ[6] կարդաց զիս Տէր, և յորովայնէ մօր իմոյ կոչեաց[7] զանուն իմ»։

Ո՛վ Մարիամ[8], փառաւորեալ Աստուածածին, պսակ փառաց ամուսնաւորաց[9], զուգաց տատրակաց՝ որ Քրիստոսիւ[10] զուգեցաւ։ Եւ մանեակ ոսկի կուսանաց, որք նմանեցին ձագուց աղաւնեաց, զի իցեն սուրբ հոգւով և մարմնով։

* Յաստեղանիշեդ ցմիւսն չիք ի Ճ. Գ։
1. Ճ. ԺԳ և Ճ. Գ լուսաւորէր։
2. Ճ. ԺԳ հոգեղէնին։
3. Ճ. ԺԳ և Ճ. Գ ծնաւ։
4. Ճ. ԺԳ չունի՝ փրկիչ։
5. Ճ. ԺԳ չունի, իսկ Ճ. Գ դնէ՝ եւս։
6. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն յարգանդէ։
7. Ճ. ԺԳ կարդաց։
8. Ճ. ԺԳ դնէ Ուրախ լեր Մարիամ։
9. Ճ. ԺԳ ամուսնաց։
10. Յօրինակին և ի Ճ. ԺԳ չՔրիստոսի, եդաք ըստ Ճ. Գ։

*Ո՜վ Մարիամ, երկիր խոր և երկին բարձր, զի բարձրագոյն քան զերկինս, և գեր ի վերոյ գըտար քան զքերովբէս. սակս այսորիկ՝ որ յաղագս քո խոնարհեցաւ յերկնից, ըստ մարգարէին, թէ «Բարձր է Տէր՝ և խոնարհ յոյժ». զնոյն և Եսայիաս ասաց ցԱքազ, թէ «Խնդրեա դու քեզ նշան ի Տեառնէ Աստուծոյ քումմէ». Նշան Քրիստոս է. ի խորութեան երկրի, յարգանդի կուսին[1], ի բարձրութեան՝ յերկինս և ընդ աջմէ Հօր, նոյն ի խաչին, նոյն ի գերեզմանին[2]:*

*Ո՜վ Մարիամ, երկիր կենաց և մայր ամենայն կենդանեաց. զի քեւ յայտնեցաւ խորհուրդն ծածկեալ, խորհուրդ մարդանալոյն[3]. և ի ձեռն քո ծանեաք զՔրիստոս Աստուած մեր[4], որ սիրեացն զմեզ և ցանկացաւ նստել ընդ հովանեաւ նորա[5] և լինել պտուղ որովայնի նորա[6]:*

*Ո՜վ Մարիամ, երկիր քաջաբեր և արդիւնաւոր, զի ի քեզ անկաւ հատն ցորենոյ, որ մեռաւ՝ և արար արդիւնս բազումս[7] ըստ սողոմոնեան[8] տաղիցն, թէ «Որոյ՝[9] արդիւնք բազում են, և յայտնի են եղին զօրութիւնք»[10]:*

1. Ճ. ԺԳ ի խորութեան՝ յարգանդի կուսին:
2. Զայս տուն Ճ. ԺԳ ունի այսպէս. Ո՜վ Մարիամ, երկիր խոր և երկիր բարձրագոյն քան զերկինս, և գեր ի վերոյ քան զգերովբէս. սակս այնորիկ որ յաղագս քո խոնարհեցաւ յերկնից՝ ըստ մարգարէին, թէ «Բարձրագոյն Տէր և խոնարհ յոյժ». զնոյն և Եսայի ասաց ցԱքազ. «Խնդրեա դու քեզ նշան ի Տեառնէ Աստուծոյ քումմէ». Նշան՝ Քրիստոս. ի խորութեան՝ յարգանդի կուսին, ի բարձրութեան՝ յերկինս և ընդ աջմէ Հօր, նոյն ի խաչին և նոյն ի գերեզմանին:
3. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ մարմնանալոյն:
4. Ճ. ԺԳ չունի:
5. Ճ. ԺԳ չունի:
6. Ճ. ԺԳ չունի:
7. Ճ. Գ յաւելու՝ զսուրբս ամենայն:
8. Ճ. ԺԳ սողոմոնեան
9. Ճ. ԺԳ որում:
10. Ճ. Գ չունի՝ յայտնի են եղին զօրութեանք:

Ո՛վ Մարիամ, երկիր արգաւանդ և գեղմնաւէտ[1]. զի ի քէն ել[2] հացն կենաց իջեալ յերկնից, զոր մարգարէն ասաց[3], թէ՝ «Հանէր զհաց յերկրէ». և դարձեալ Ցովբ ասէ. «Երկիր՝ և ի նմանէ ելցէ[4] հաց[5]»:

Ո՛վ Մարիամ, երկիր ծարաւուտ և պտղաբեր, անապատ անկոխ և անջրդի. վասն զի յանապատացեալ յարգանդէդ[6] բղխեաց տունկ բազմապտուղ, որպէս արմատ ի ծարաւուտ երկրի. ըստ սողոմոնինեան[7] տառիցն, թէ «Ի պտղոյ արդարութեան՝ բուսանի ծառ կենաց»:

Ո՛վ Մարիամ, աղբեւր բուրաստանաց և կենդանույ[8], որ է ակն ջրոյ բղխեցելոյ ի Լիբանանէ[9], զոր մարգարէն ասէ. թէ «Ջուր բղխեաց յանապատէ, և գետ ի ծարաւուտ երկրի[10]»:

Ջուարճացիր Մարիամ և խնդա բերկրեալդ ի կանայս, հովանացեալ զօրութեամբ[11], գերագունին աւետաբեր և ցօղաբերով իջիւք[12] ի վերայ գեղման, նորանշան յղացմանն և ծննդեան:

Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, ծաղկոցդ աստուածային, պարտէզ փակեալ և կնքեալ, աղբիւր ցանկապատեալ շուշանոց. մաքրական որովայն, քանզի ծնար և[13] յղացար առանց սերման՝ անախտա-

1. Ճ. ԺԳ գնէ բեղնաւէտ:
2. Ճ. ԺԳ չունի ել:
3. Ճ. ԺԳ ասէ:
4. Ճ. ԺԳ չունի ելցէ:
5. Ճ. ԺԳ յաւելու՝ և է ներքոյ նորա էքրև զհաւր շրջեցաւ. այս տուն չիք ի Ճ. Գ:
6. Ճ. ԺԳ արգանդէդ, իսկ Ճ. Գ յորովայնէդ բխեցաւ:
7. Ճ. ԺԳ սաղմոնեան:
8. Ճ. ԺԳ չունի. իսկ Ճ. Գ գնէ՝ և Ենգադդէ:
9. Ճ. ԺԳ և Ճ. Գ Լիբանանէ:
10. Ճ. ԺԳ երկրէ:
11. Ճ. ԺԳ զաւրութեան:
12. Ճ. Գ գնէ՝ և ցաւղ էջեալ հոգւոյն. իսկ Ճ. ԺԳ ցողաբեր էջեալ հոգւոյն
13. Ճ. ԺԳ և Ճ. Գ չունին ծնար և:

*բար և անապականաբար, և զԱստուած վայելչապէս ծնար։*

*Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, դուռն փրկութեան փակեալ փեսային[1] ամրութեամբ, մտեալ և ելեալ[2] արեգակն արդարութեան, որ յեղական[3] և անախտական ճառագայթիւքն, ըստ սողոմովնեան[4] տաւիցն, թէ «Ելանէ արեգակն՝ և մտանէ արեգակն՝ և ի տեղի իւր դառնայ»․ և դարձեալ, եթէ «Արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ[5]»։*

*Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, զի յԱստուծոյ ծնար և ո՛չ ի մահկանացու մարդոյ, այլ ի Հօրէ հաստատեալ մարմին՝ ըստ առակողին, թէ յինէն գտաւ պտուղ ի քէն[6], որպէս գտաւ[7] յղացեալ ի Հոգւոյն սրբոյ։*

*Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, զի որ ի քէն ծնեալդ, և մա՛րդ է իսկապէս գոյութեամբ, և ոչ իսկ[8] այլեւայլ ոք։ վասն զի Աստուած՝[9] և եղեւ մարդ մնալով Աստուած[10], ըստ այնմ՝՝ զոր մարգարէն ասէ, թէ «Մարդ է՝ և ո՞ ծանիցէ զնա», և դարձեալ. «Մայր սիովնի ասի[11] մարդ, և մարդ ծնաւ ի նմա», և վասն միանալոյ Բանին, ասէ՝ թէ «Ինքն հիմունս արկ նմա՝ Բարձրեալն» որպէս և եղեւ[12] ինքն Քրիստոս։*

1. Ճ․ ԺԳ և Ճ․ Գ դնեն խմանալէ։
2. Ճ․ ԺԳ չունի և ելեալ։
3. Ճ․ ԺԳ դնէ անյեղական։
4. Ճ․ ԺԳ սողոմոնեան։
5. Յոր․ և դարձեալ, եթէ «Ելանէ արեգակն, և՝ ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ»․ Ճ․ ԺԳ և դարձեալ, թէ՝ արեգակն «Ծանեաւ զժամանակս իւր»․ եդաք ըստ Ճ․ Գ։
6. Ճ․ ԺԳ և Ճ․ Գ դնեն է տեղ։
7. Ճ․ ԺԳ գտար, իսկ Ճ․ Գ որ գտար։
8. Ճ․ ԺԳ չունի, իսկ Ճ․ Գ դնէ և։
9. Ճ․ ԺԳ և Ճ․ Գ յաւելուն էր։
10. Ճ․ Գ չունի Մնալով Աստուած։
11. Ճ․ ԺԳ սիոնն ասէ, իսկ Ճ․ Գ սիոնի ասէ։
12. Ճ․ Գ չունի եղև։

Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, կոյս շնորհատուեալ[1], զի շնորհօք հաստատեալ ծնար՝ Աստուած և մարդ. անուն զարմանալի, զոր մարգարէն ասաց՝ թէ «Տէր, Տէր մեր, զի՞ սքանչելի է անուն քո յամենայն երկրի»:

Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, զի ի սրբեալ և յանապական արգանդէ ծնաւ[2] և ստեղծ ինքն իւր մարմին շնչական, և պատմուճան ծիրանական արիւնազանգ՝ արկեալ զիւրեաւ, որպէս զօթոց զկարմրացեալ ձորձս բոսորական. «Ածեալ արդարութիւն ընդ մէջ իւր, և ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր»[3]. լուացէ ի գինի զպատմուճան իւր և յարիւն խաղողոյ՝ զճիտս օրհնութեան, զոր ճմլեցին ի վերայ երկնալոյս քառանկիւնի[4] խաչին, գեղարդնապատառ չարչարանօք, բղխեալ արիւն և ջուր՝ ի տիգախոց կողէն ճշմարիտ ըմպելւոյն, աղբերացն փրկութեան[5], զոր արբաք և արբեցաք՝ յարբենէ ճշմարիտ ըմպելւոյն. կերաք զցորեան երիտասարդաց, և արբաք[6] զգինի անուշաբեր[7] կուսից, զոր մարգարէն ասաց թէ «Գինի ուրախ առնէ» և դարձեալ թէ «Ջուխս փափկութեան քո տացես ըմպել նոցա»:

Խնդա՛ բերկրեալդ ի կանայս, բաժակ հոգեւորական[8] լցեալ մարգարտովք պատուականաւ: Խնձոր ոսկի[9] հիւսեալ ընդ սարդիոնս, սափոր ոսկի, լցեալ[10]

1. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն կոյս շնորհաւորեալ:
2. Ճ. ԺԳ և Ճ. Գ չունին ծնաւ:
3. Ճ. ԺԳ ունի այսպէս. Ածեալ արդարութիւն ընդ մէջ իւր և պատեալ ճշմարտութեամբ զկողս իւր:
4. Ճ. ԺԳ և Ճ. Գ չունին երկնալոյս քառանկիւնի:
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին այսպէս. ի տիգախոց կողէն՝ աղբերացն փրկութեան:
6. Ճ. ԺԳ արբեցաք:
7. Ճ. Գ դնէ՝ անուշաբեր:
8. Ճ. ԺԳ և Ճ. Գ հոգեկան:
9. Ճ. ԺԳ յաւելու՝ պարարով:
10. Ճ. ԺԳ դնէ էլ:

մանանայիւ քաղցրութեան, Նարդոս բուրեալ, քրքումն անուշահոտ. ոսկէճաճանչ շուշան [1] ծաղիկք։

Խնդա՛ բերկրեալդ ի կանայս և զուարճացիր Քրիստոսիւ, իմանալի վիմաւդ պատուականաւ. վէմ ընտիր և պատուական, վէմ ժառանգութեան Քրիստոս, վէմ անարգ՝ ի ձեռին Զօրաբաբելի [2], վէմ եւթնատեսարանեայ՝ որ հայի ընդ ամենայն երկիր. վէմ անարգեալ ի շինողաց՝ որ է գլուխ անկեան. վէմ հատեալ առանց ձեռին [3], Քրիստոս առանց սերման մարմնացեալ և առանց ապականութեան ծնեալ. վէմ ամրութեան և վէմ հաստատութեան Քրիստոս. վէմ գլորման և վէմ գայթակղութեան Քրիստոս, որ [4] գայթակղին ապստամբեալքն ի Բանէն՝ որ մեզ [5] առաքեցաւ, զոր մարգարէն ասաց, թէ «Փրկութիւն առաքեաց Տէր ժողովրդեան իւրում»։ Եւ դարձեալ, եթէ «Ցոյց [6] Տէր զփրկութիւն իւր, առաջի ազգաց՝ յայտնեաց զարդարութիւն [7] իւր»։

Զուարճացիր Մարիամ, տաճար աստուածական և աթոռ քերովբէական [8], օդ առագաստեալ [9], որ բարձիր զանձն [10] ճառագայթաւէտ և զդիւրագիւտն Քրիստոս, որ դիւրաւ գտանի սիրողաց իւրոց [11]։

Զուարճացիր Մարիամ, ամպ ոսկէճաճանչ և

1. Յոր. շուշանէ՝ եդաք ըստ Ճ. ԺԳ և Ճ. Գ։
2. Ճ. ԺԳ վէմ կանգնեալ է ձեռն Զօրաբաբելի
3. Ճ. ԺԳ և Ճ. Գ յաւելուն՝ մարդոյ։
4. Ճ. ԺԳ յոր։
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ յաւելուն՝ երկնաւորեան։
6. Ճ. Գ դնէ՝ ցուցոյց։
7. Ճ. ԺԳ դնէ՝ զողորմութիւն։
8. Ճ. ԺԳ Սերովբէական.
9. Ճ. Գ. առագաստացեալ։
10. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն զանձ։
11. Ճ. ԺԳ դնէ՝ որ դիւրաւ երևի սիրողաց իւրոց որք խնդրեն զնա. իսկ Ճ. Գ որ դիւրաւ երևի սիրաւղ և գտանի խնդրողաց իւրոց։

լուսաթեւ, մաքուր և անծանակ աղաւնի՝ որ սլացար ի թեւս հողմոց և նստար ի վերայ քերովբէից[1], բարեբանեալդ ի վերնոց և ի ներքնոց[2]։

Զուարճացիր Մարիամ, բարեբանեալ աստուածածին. զի արեգակն արդարութեան եդաւ ի խորանն անճառելի, աստուածանիստ խորան՝ անձեռագործ, զոր Աստուած կանգնեաց և ոչ մարդ. պատրաստեալ առագաստ երկնաւոր փեսային, հարթածաւալ ճառագայթից ծագմանն ընդունակ և փառացն[3] հաղորդ՝ ըստ գրեցելումն, թէ «Հաղորդութիւն ունիմք ընդ Նմա»։

Զուարճացիր Մարիամ, մայր անխախտական[4] և կոյս անլուծանելի, հրաբորբոք և անկիզելի մորենի. որ զանտանելին տարար բովանդակաբար յաստուածային որովայնիդ՝ և զանբովանդակելին՝ բովանդակեցեր հրաշալի միաւորութեամբ։

Զուարճացիր Մարիամ, օթարան անճառ լուսոյն և բնակարան՝ անբաւ աներևութեան նորա[5]. որ զՅահաւորեալ և զանստուեր զլոյսն ունիս ի քեզ պարփակեալ[6], և եղեր տաճար անապական Բանին[7] և բանակեաղ Հոգւոյն սրբոյ։

Զուարճացիր Մարիամ, յարկ ապաւինութեան[8] և տեղի խորանի փառաց բնակութեան, տուն վայելչութեան և տաճար սրբութեան. զոր մարգարէն ասէ. «Սուրբ է՝ տաճար քո սքանչելի արդարութեամբ». և թէ, «Տէր ի տաճարի[9] սրբոյ իւր-

1. Ճ. ԺԳ սերովբէից։
2. Ճ. Գ չունի բարեբանեալդ ի վերնոց և ի ներքնոց. Զուարճացիր Մարիամ։
3. Ճ. ԺԳ չունի փառացն։
4. Ճ. ԺԳ և Ճ. Գ անախտելի։
5. Ճ. ԺԳ և Ճ. Գ ունին. Զուարճացիր Մարիամ, օթարան անբաւ զօրութեանն և բնակարան անճառ աներևութեան նորա։
6. Ճ. ԺԳ դնէ՝ զանստուեր լոյսն ի քեզ պարփակեցեր. իսկ Ճ. Գ զանարատ զլոյսն ի քեզ պարփակեցեր։
7. Ճ. Գ դնէ Աստուծոյ։
8. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն՝ արդարութեան։
9. Ճ. ԺԳ ի տաճարէ։

մէ » և ի մարմնի անմեկնելի, և Տէր յերկինս յաթոռ անմերձանալի։

Զուարճացի՛ր Մարիամ, կանթեղդ ինքնալոյս, զի վառեցաւ[1] ի քեզ հուրն անշիջանելի։

Զուարճացի՛ր Մարիամ, եւթնածագեան[2] աշտանակ բորբոքեալ և լուսաւորեալ գլխաւոր մեր, զոր մարգարէն ասէ, թէ « Ճրագ են բանք քո ոտից իմոց և լոյս տան շաւղաց իմոց »։

Զուարճացի՛ր Մարիամ, քաղաք Աստուծոյ, քաղաք փրկութեան, զի փառաւորեալն խօսեցաւ վասն քո. ըստ մարգարէին՝ որ ասէ, թէ « Խօսեցայց զքեզ ինձ յաւիտեան, և խօսեցայց զքեզ՝ ինձ իրաւամբք, և խօսեցայց զքեզ ինձ արդարութեամբ»։

Զուարճացի՛ր Մարիամ, բարեբանեալ աստուածածին, զապեալդ յամենայն երկրական[3] զբաղմանց, ամրացեալ շաւղօք լուսագնաց վարուք առաքինութեամբ[4], հրճուեալ երանելի ձրիւք, ինննակ երանութեամբքն Քրիստոսի և թռուցեալ ի թեւս հոգւոյն, ժառանգեցեր զպատրաստեալ արքայութիւնն Քրիստոսի[5]։

Զուարճացի՛ր Մարիամ, պարիսպ անպարտելի[6], աշտարակ անմերձենալի, քաղաք ապաստանի և տուն ապաւինի, որ ապաւէնդ իսկ ես մեղաւորաց և հանգիստ աշխատելոց. բարեխօսեա Քրիստոսի Աստուծոյ անդադար, զի կեցուսցէ զանձինս մեր. Նմա փառք յաւիտեանս. ամէն[7]։

1. Ճ. Գ դնէ կառուցաւ։
2. Ճ. ԺԳ և Ճ. Գ դնեն եւթնածրարեան։
3. Ճ. ԺԳ դնէ մարմնական։
4. Ճ. ԺԳ դնէ... շաւղաւ վարուց առաքինութեան. իսկ Ճ. Գ շաւշանաւ վարուք առաքինութեամբ։
5. Ճ. ԺԳ ունի այսպէս. զպատրաստեալ քեզ զարդարութիւնն է ակնկալեան աշխարհի։
6. Ճ. ԺԳ անպարտելի, իսկ Ճ. Գ անպատերազմելի։
7. Ճ. Գ աւարտէ զճառս այսպէս.... Բարեխօսեա Քրիստոսի, փրկել զմեզ շնորհաւ ողորմութեամբ իւրով. որում փառք յաւիտեանս յաւէտ"։

## ԺԹ

# ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

### ԱՍԱՑԵԱԼ ՆԵՐԲՈՂԵԱՆ

### Ի ՍՈՒՐԲ ԽԱՉՆ ԱՍՏՈՒԱԾԸՆԿԱԼ

Զխաչն մեր կենարար՝ ուղիղ երգով օրհնեսցուք և զխաչելեալն Քրիստոս՝ ճշմարիտ բարեբանութեամբ[1] փառաւորեսցուք, որ կանգնեալ բարձրացաւ ի սուրբ Գողգոթայ և լուսաւորեալ պայծառացաւ ի մէջ Երուսաղեմի ի վեր քան զարեգակն պայծառացեալ, և տարածանք ճառագայթից նորա լցին զտիեզերս ամենայն[2], և յահէ փառաց նորա պակեան[3] դողալով ամենայն զօրքն սանդարամետականացն[4], զի հայեցեալ տեսին ի վերայ խաչին զանմահ Բանն չարչարեալ և հեղիւսիւք բևեռեալ ի վերայ փայտին[5]· հրեշտակք ահիւ դողացեալք և հրեշտակապետք դողութեամբ սարսէին[6]. սերովբէքն սարսեալ սարսափէին[7], և պետութիւնք վերին զօրացն ապշանային։ Արեգակն խաւարեցաւ ի մէջօրէի և մթացուցանէր զլոյս իւր[8], և լուսինն թա-

1. Ճ. ԻՁ բարեպաշտութեամբ։
2. Ճ. ԻՁ է վեր քան զարեգակն Աստուածոյ պայծառացեալ, և տարածմամբ ճառագայթից նորա լցաւ տիեզերք ամենայն։
3. Յոր. պատկերն, ուղղեցաք ըստ Ճ. ԻՁ։
4. Ճ. ԻՁ սանդարամետականին։
5. Ճ. ԻՁ զանմահ որդին Աստուծոյ մարդացեալ և հեղիւսէ ընդ փայտին բևեռեալ։
6. Ճ. ԻՁ սարսեալ զարմանային։
7. Ճ. ԻՁ դողացեալք սարսափէին։
8. Ճ. ԻՁ արեգակն խաւարեցաւ զմիջօրէն մթացուցանէր։

զեալ[1] ընդ պատրուակաւ. և պայծառ աստեղք չըր-
քանային, իսկ երկին[2] ի վեր սգալով ողբայր զահեղ կուրութիւն[3] յիմարեալ ազգին Հրէից[4], զի ոչ ծանեան զարարիչն արարածոյ բովանդակեալ[5] ի մարմնի, *այլ իբրև զչարագործ և զմահապարտ չարչարեալ սպանին*[6]։ Աճեղ արհաւիրք և մեծ սքանչելիք և չքնաղիմաց յարմարումն ի վերայ խաչին երևեալ[7]. երկու բնութիւնք ընդ միմեանս միացեալք և միաւորեալք[8] անշփոթելի և անորոշելի տեսանիւր ի վերայ խաչին։ Որպէս յառաջագոյն երկու հաւս նշանակեալ[9], վասն բժշկութեան բորոտեալ մարմնոյն[10] Ադամայ մեղօք, ասէ, «Առցես երկուս հաւս կենդանիս և սուրբս և փայտ եղևնեայ[11] և աման խեցեղէն. և զոպա մշտիկ և ջուր կենդանի. և զենցես զմի հաւն յամանն խեցեղէն[12] և առցես յարենէ հաւուն մեռելոյ, և դիցես ի վերայ թիկանց հաւուն կենդանոյ[13] և արձակեսցես»։ Արդ՝ երկու հաւքն սուրբ և կենդանի, զերկու բնութիւնն Քրիստոսի նշանակէ, զաստուածայինն և զմարդկայինն[14]. և փայտն եղևնեայ[15]՝ զխաչն, զի ի փայտից եղևնեաց[16] կանգնեցաւ խաչն փրկական

1. Ճ. ԻՋ յաւելու՝ ծածկէր։
2. Յոր. երկիր, եդաք ըստ Ճ. ԻՋ։
3. Ճ. ԻՋ ողբայր ողբալով եղկաւորութիւն՞։
4. Ճ. ԻՋ չունի Հրէից։
5. Ճ. ԻՋ տաղաւարեալ։
6. աստեղանիշքդ պակասին ի Ճ. ԻՋ։
7. Ճ. ԻՋ երևէր։
8. Ճ. ԻՋ յաւելու՝ է միմեանս։
9. Ճ. ԻՋ յաւելու՝ Մովսէսի։
10. Ճ. ԻՋ մարդոյն։
11. Յոր. ղևեայ. եդաք ըստ Ճ. ԻՋ։
12. Ճ. ԻՋ և է Ջուր կենդանի։
13. Ճ. ԻՋ չունի Թիկանց։
14. Ճ. ԻՋ զերկուս բնութիւնս ցուցանէն զՔրիստոսի՝ զմարդկային և զաստուածային։
15. Յոր. էր ղևեայ, և չունէր խաչն, եդաք ըստ Ճ. ԻՋ։
16. Յոր. տանջէ փայտն ղևեայ։

եւ աստուածընկալ։ Եւ ամեն խաչեղէն զմարմինն նշանակէ, քանզի[1] ի սկզբանն ի հողոյ ստեղծաւ նախահայրն[2]. և զոպա մշտիկ, քանզի իբրեւ զոպա մշտկաւ սրսկէր արիւնն տէրունական յաստուածային մարմնոյն. Ջուր կենդանի բղխեաց ի կողից կենարարին և լուացումն մեղաց ամենեցուն աւազանին պարգեւօք[3]։ « Եւ առցես յարենէ հաւուն մեռելոյ և դիցես ի վերայ թիկանց[4] հաւուն կենդանոյ », նշանակելով զՔրիստոսի երկուց բնութեանցն միաւորութիւն. մերովս խոցեալ և մեռեալ, աստուածութեամբն անմահ[5] և կենդանի, և զմահ մարմնոյն իւր էական Բանին[6] ի զանգուածոյ Ադամայ։ Եւ բնութիւն Աստուծոյ ոչ տեսանի և ոչ ըմբռնի և ոչ չարչարեալ մեռանի. քանզի անմահական է. իսկ մարմին Բանին չարչարեալ ի խաչին և խոցեալ գեղարդեամբ հոսեալ իջանէր արիւնն ի վերայ խաչին. յաղագս որոյ[7] մեծապատիւ գոհութեամբ երկիր պագանեմք սուրբ խաչին[8] և փառաւորեմք զամենապայծառ զնորա զօրութիւնն, յորոյ վերայ մատեաւ պատարագ որհնութեան Հօր ի հոտ անուշից, և ազատիչ[9] ի նախահօրն անիծից։ Վասն որոյ աստուածային Երեմիաս՝ յառաջագոյն գուշակեաց զբեւեռումն մարմնոյն Քրիստոսի ի վերայ խաչին, ասելով. « Եկայք

1. Ճ. ԻՋ որ է։
2. Ճ. ԻՋ չունի Նախահայրն։
3. Ճ. ԻՋ մարմնոյն, Ջուր կենդանի ցուցանէր, որ բխեաց ի կողից կենարարին ի լուացումն մեղաց, աւազանաւն մեզ պարգեւել։
4. Ճ. ԻՋ չունի Թիկանց։
5. Ճ. ԻՋ յաւելու՝ Հայր։
6. Ճ. ԻՋ աստանօր ունի այսպէս. իւր հաշտեալ համարելով՝ և ոչ մերժանել. քանզի Բանն Աստուած բնութեամբ Աստուծոյ և մարմին։
7. Ճ. ԻՋ վասն որոյ։
8. Ճ. ԻՋ ունի այսպէս. երկիր պագանեմք և փառաւորեմք զամենապայծառ խաչին զօրութիւն։
9. Ճ. ԻՋ չունի՝ ի հոտ անուշից, այլ դնէ միայն հաշտեցուցիչ։

արկցուք փայտ ի հաց նորա, և ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց». քանզի ինքն ասաց, թէ «Ես եմ հացն կենաց իջեալ ի յերկնից. և ամենայն որ ուտէ ի հացէս յայսմանէ, կեցցէ յաւիտեան. և հացն զոր ես տաց՝ մարմին իմ՝ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհի». արդ՝ որ ուտէ ի հացէս յայսմանէ սրբութեամբ և ոչ սովորութեամբ, ոչ կարեն արգելուլ զնա խաւարային զօրքն[1], այլ համարձակութեամբ վերանայ ելանէ մտանէ ի ներքին կողմն վարագուրին աստուածային սիրողացն վայելչութիւնն. սոյնպէս և երանելին Դաւիթ, յառաջագոյն գուշակեալ ասէր վասն արդարացուցիչ[2] նշանին, թէ «Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան»։

Արդ, ամենայն որ հաւատով ապաւինին ի զօրութիւն սուրբ[3] խաչին, ոչ միայն յերեւելի նեղութեանց ապրեցուցանէ և պահէ, այլ և յաներեւոյթ նետից բանսարկուին փրկէ և պահէ[4]։ Բայց դու յորժամ պարապեալ կնքիցիս նշանաւ սուրբ խաչին, յիշեսցես և զչարչարանս խաչեցելոյն[5], յայնժամ զօրանաս ի վերայ թշնամոյն։ Սոյնպէս և համարձակաբերան մարգարէն Եսայիաս գուշեաց[6] վասն իշխանական խաչին ասելով, եթէ «Մանուկ ծնաւ մեզ, որոյ իշխանութիւն իւր ի վերայ ուսոց իւրոց». քանզի եդեալ զխաչն փրկական ի վերայ ուսոց կենարարին, ի դրանէ քաղաքին[7] ձաղանօք տարեալ մինչեւ ի տեղին Գողգոթայ[8]. և զոր նոքա

1. Ճ. ԻԶ յաւելու՝ օրայքն այսոյն։
2. Ճ. ԻԶ ապրեցուցիչ։
3. Ճ. ԻԶ նշանի։
4. Ճ. ԻԶ Ընդհանրային ամբարացուցեալ պարապարէ։ Եւ յորժամ։
5. Ճ. ԻԶ յիշեսջիր և զչարչարանս խաչելոյն և ապա զօրանաս։
6. Ճ. ԻԶ յառաջագոյն գուշակեաց։
7. Ճ. ԻԶ մինչև ի դրանն։
8. Ճ. ԻԶ գագաթան։

*ամօթոյ և ձաղանաց կարծէին, Նովաւ ամենայն տիեզերք պայծառացան[1]։*

*Սոյնպէս և իմաստունն Սողոմոն յառաջագոյն գուշակեաց վասն կենարար փայտի խաչին, ասելով. «փայտ կենաց է ամենեցուն՝ որ յուսացեալ են ի Նա[2] իբրև ի Տէր՝ հաստատութեամբ». քանզի յայնժամ՝ գտցես օգնականութիւն ի սուրբ խաչէն, յորժամ ի Նա իբրև ի Նոյն ինքն ի Տէր հաստատեսցիս, վասն զօրութեանն՝ որ ի վերայ պատարագեցաւ։ Եւ[3] տեսանօղն արովբէից յառաջագոյն գուշակեաց, վասն դատողականին[4] խաչին՝ ասելով՝ «Դիցէ երկիր զդատաստան[5] և յանուն Նորա հեթանոսք յուսասցին». քանզի զպտուղ խաչին հեթանոսք ընկալան և վայելչացեալք պայծառացան. իսկ ընդդիմացող ժողովուրդն Հրէից[6] դատապարտելոց[7] են Նովաւ, զի զլոյսն տեսին և խաւարի փափագեցին, որպէս ասէ մարգարէն, «Անկաւ հուր և ոչ տեսին զարեւ մինչեւ ի միտ առեալ էին զփուշս իւրեանց». սոյնպէս և Մովսէս յառաջագոյն բարձրացուցանէր զօձն պղնձի ի վերայ փայտի, Նշանակելով Որդոյն Աստուծոյ ըզբարձրանալն ի վերայ խաչին[8], և ամենեքին որ կարէին[9] տեսանել ի վիրաւորելոցն զօձն պղնձի ի վերայ փայտին, բժշկէին ի թիւնից մահաբեր օձին. սոյնպէս և որք հաւատով նային յիմանալի զօրութիւն աստուածընկալ սուրբ խաչին, ընդունին զբժշկութիւն վիրաւորեալ մեղաց[10]։ Նոյնպէս*

1. Ճ. ԻՋ լուսաւորեցաւ։
2. Ճ. ԻՋ յուսան ի Նա և ոչ յենուն ի Նա իբրև։
3. Ճ. ԻՋ նոյնպէս և։
4. Ճ. ԻՋ դատողականին։
5. Յօր. զդատաստանն իւր և ի Նա։
6. Յօր. էր ընկալեալ ընդդիմոց. եդաք ըստ Ճ. ԻՋ։
7. Ճ. ԻՋ դատելոց։
8. Յօր. փայտին, եդաւ ըստ Ճ. ԻՋ։
9. Ճ. ԻՋ և ամենայն որ կարէր։
10. Ճ. ԻՋ ի վերայ մեղաց և [illegible] յանցանաց։

և կախումն խոյին յառաջագոյն զծառոյն[1] Սաբեկայ, նշանակէր զկախումն[2] Որդւոյն Աստուծոյ ի վերայ խաչին. և* որպէս ո՛չ խնայեաց Աբրահամ՝ յորդի իւր միածին, այլ եւս ի զենումն փոխանակ Որդւոյն Աստուծոյ, սոյնպէս և Աստուած՝ ոչ խնայեաց յՈրդին իւր միածին, այլ եւս ի չարչարանս փոխանակ մահու մեղաց աբրահամեան զաւակին և ամենայն ազգացն։ Նոյնպէս և զենումն գառինն յԵգիպտոս՝ յառաջագոյն նշանակէր զզենումն որդւոյն Աստուծոյ. և որպէս զզենումն գառինն տեսեալ մահաբեր հրեշտակն դրունս նոցա զանց առնէր սատակիչն. Նոյնպէս և այժմ՝ ամենայն որ հաւատով և սրբութեամբ ճաշակէ յարենէ Որդւոյն Աստուծոյ, զանցուցանէ յիւրմէ զսուրն սատանայի և զյարձակումն դիւաց։ Նոյնպէս և տարածումն յառաջագոյն ձեռացն Մովսեսի ընդդէմ Ամաղեկայ, որով զթշնամին վանէր, օրինակ էր աստուածընկալ խաչին տարածման, զորմէ կեանքն մեր կա-

* Աստի և անդր Ճ. ԻՉ բնաւ իսկ այլատարազ յօդէ զբանս, ուստի հարկ համարեցաք աստանօր ի ստորև առանձինն տպագրել, ի դիւրութիւն ընթերցանելեաց։

« Եւ որպէս ոչ խնայեաց Աբրահամ յորդին իւր սիրելի, այլ եւս ի զենումն Աստուծոյ՝ իբրեւ զողջակէզ յաղագս կատարեալ սիրոյն որ առ Աստուած. Նոյնպէս և Աստուած ոչ խնայեաց յՈրդին իւր՝ յաղագս սիրելոյ զմարդիկ, այլ եւս ի մահ խաչի, փոխանակ մահու մեղաց աբրահամեան զաւակին, մանաւանդ թէ և ամենայն իսկ ազգաց։ Ահա և յառաջագոյն գառանցն յԵգիպտոս նշանակէր զզենումն որդւոյն Աստուծոյ. և որպէս արիւն գառանցն նշանակեալ ի վերայ սեմոց դրանցն, զսատակիչն բացամերժէր ի սպանմանէ, ո՞րչափ եւս առաւել որ հաւատովք և սրբութեամբ ճաշակէ յարենէ Որդւոյն Աստուծոյ, ամրացեալ և պարսպեալ է ի նենգից բանսարկուին։ Սոյնպէս և յառաջագոյն տարածումն ձեռացն Մովսէսի ընդդէմ Ամաղեկայ, որով և ըզթշնամիսն վանէր, օրինակ առ աստուածընկալ խաչին տարածմամբ, զորմէ կեանք մեր կախեցաւ, զորմէ ասէ գիր՝

1. Յօր. պակասէր եղաք ըստ Ճ. ԻՉ։
2. Ճ. ԻՉ զքարշումն։

խեցաւ, որպէս և գիրն ասէ, «Տեսանիցէք զկեանս ձեր կախեալ զփայտէ»։

Եւ արդ, բազում՝ յառաջ ժամանակաւ ի մարգարէից անտի պարունակեաց, քարոզեալ էր ամենապայծառ աստուածընկալ խաչին զօրութիւն, զի մի՛ ոք դուզնաքեայ առժամայն վրիպակ լեալ կարծիցէ զմեծ և զահեղ խորհուրդ չարչարանացն Քրիստոսի, վասն այնորիկ մարգարէին յառաջագոյն գուշակեաց։ Քանզի յորժամ հանդերձեալ իցէ Աստուած մեծամեծս ինչ կատարել, յառաջ բազում ժամանակաւ քարոզէ, առ ի հաւատարիմ և ի դիւրընկալ լինել արարածոց՝ զոր գործիցէ. որպէս, յառաջ բազում ժամանակաւ տապանագործութեամբ Նոյի, նշանակէր վասն ջրհեղեղին և սատակման ամենայն կենդանեաց։ Նոյնպէս և զԱբրահամ յառաջագոյն հանեալ ի Քաղդէացւոցն, նշանակէր զվրէժխնդրութիւն ազգացն Քանանացւոց. նոյնպէս և զՂովտ ի Սոդոմայ առաքելով, նշանակէր զկործանումն հնգից քաղաքացն անօրինիլոյն։ Նոյնպէս և զՅովսէփ յառաջագոյն յԵգիպտոս առաքելով, լինէր կերակրիչ

թէ «Տեսանիցէք զկեանս ձեր կախեալ զփայտէ»։

Եւ արդ որ այսչափ յառաջ ժամանակօք ի մարգարէիցն իբրեւ ընդ պատրուակաւ քարոզեցաւ օրինակ ամենապայծառ և աստուածընկալ խաչիս զօրութիւն, մի՛ ոք իբրեւ դուզնաքեայ ինչ առժամայն վրիպակ լեալ կարծիցէ զմեծ և զահեղ խորհուրդ չարչարանացն Քրիստոսի. վասն այնորիկ յառաջագոյն ի մարգարէիցն գուշակէր։ Քան զի յառաջ բազում ժամանակօք ազդ առնէ Աստուած առ ի հանդերձեալսն զգործեցելոցն, առ ի հաւատարիմ և դիւրընկալ լինելոյ իրացն՝ որ գործելոցն են. որպէս տապանագործութեամբն Նոյի՝ նշանակէր վասն համատարած ջրհեղեղին և սատակման ամենայն կենդանեաց։ Նոյնպէս և յառաջագոյն զԱբրահամ հանել ի Քաղդէացւոցն, նշանակէ զվրէժխնդրութիւն անօրէն ազգացն Քանանացւոց. Նոյնպէս և զՂովտ հանեալ ի Սոդոմայ, նշանակէր զկործանումն հնգից քաղաքացն անօրինաց։ Նոյնպէս և յառաջագոյն զՅովսէփ յԵգիպտոս առաքէր՝ լինել կերակրիչ ամենայն ցեղիցն Իսրա-

ամենայն ազգաց և ցեղից Իսրայէլի։ Սոյնպէս և զբարձրանալ Որդւոյն իւրոյ ի վերայ խաչին՝ մարգարէիւքն յառաջագոյն գուշակեաց։ Արդ, այս խաչ կենարար, յառաջ բազում ժամանակաւ քարոզեալ ի մարգարէից, և յայտնեալ ի յետին ժամանակս, կանգնեցաւ ի Գողգոթայ ի վեցերորդ դարուն, ի վեցերորդ ժամու ուրբաթուն, զոր հրէից չար մախանքն զօրս զայս մեզ տրտմութիւն կարծէին. այլ չարչարանօքն Քրիստոսի՝ սա առաւել լուսոյ է մեզ առիթ, և ի ձեռն ամենապայծառ խաչիս՝ զորմէ ոչ բաւեն գոհանալ բերանքն ամենայն կենդանեաց։

Իսկ ես նուաստս ամենայնիւ, զի՞նչ ասացից կամ զի՞նչ խօսեցայց վասն աստուածընկալ խաչիս զօրութեան. կամ ո՞ր բերան բովանդակեսցէ պատմել զբարերարութիւն, որ տէրունական խաչիւն մեզ պարգեւեցաւ. կամ ո՞ր լեզու ժպրհիցի ասելով զայնմ նշանաց՝ որ ի ձեռն խաչին մեզ պարգեւեցան. և կամ ո՞ր միտք ցուցանել զանբաւ բարերարութիւնն, որ առ յԱստուծոյն է պատրաստեալ պատուողաց և երկրպագուաց սուրբ խաչիս

յէլի։ Եւ վասն կենարար չարչարանաց Քրիստոսի յառաջագոյն ի մարգարէից քարոզեցաւ։ Եւ արդ, խաչս կենարար բազում օրինակօք ի մարգարէից ասացաւ, և յայտնեալ իւրում ժամանակի՝ բարձրացաւ ի սուրբ Գողգոթա ի վեցերորդ դարուն, ի վեցերորդ աւուրն, ի վեցերորդ ժամու ուրբաթուն. զոր Հրէից չար մախանքն զօրս զայս մեզ տխրութեան կարծեն. այլ չարչարանքն Քրիստոսի զսա մեզ առաւել լուսաւոր գործեցին, ի ձեռն ամենապայծառ խաչիս, զորմէ բարեաց սիրոյ խաչիս՝ ոչ բաւեն գոհանալ բերանք ամենայն կենդանեաց։

Իսկ ես նուաստս ամենայնիւ, զի՞նչ ասացից կամ զի՞նչ խօսեցայց վասն աստուածընկալ խաչիս զօրութեան. և կամ ո՞ր բերան բաւական իցէ պատմել զբարերարութիւնս զոր կենսաբեր խաչիւս մեզ պարգեւեցաւ։ Կամ ո՞ր լեզու ժըպրհիցի զզանազան նշանացն որ ի ձեռն սուրբ խաչիս գործեցան. կամ ո՞ր միտք ցուցանել կարիցեն զանբաւ բարերարութեանն՝ զոր առ ի յապայն է պատրաստեալ պատուողաց

զօրութեան։ Զի մեծ և զարմանալի ահեղ և սքանչելի տեսանեմք զզօրութիւն սուրբ խաչին՝ որում ոչ ըստ արժանի ասել ինչ կարեն կամ բաւեն ցուցանել աղքատիմաց բնութիւնք մարդկայնոցս. բայց սակայն փոքր ի շատէ նշանակեսցուք ըստ սակաւ գիտութեանս մերոյ, վասն ամենապայծառ խաչիս զօրութեան, յորմէ սոսկան ներքին բնութիւնք դիւաց, և երկիւղիւ փառաւորեն վերին զօրութիւնք հրեշտակաց. որոյ նշուլք ճառագայթից փայլեն և փարատեն զմէգ ստուերային թանձրամած, որ ի վաղնջուց նախնեացն՝ իբրեւ զմառախուղ տարածեալ ունէր զամենայն երկիր, և աստուածվայելչաբար և տիեզերագով հնչմամբ՝ զօրութիւն սուրբ խաչին ծովացաւ և ծաւալեցաւ ընդ տիեզերս, և ծաղկեալ նովաւ լուսաւորեցան ամենայն արարածք։

Վասն որոյ մեծապատիւ գոհութեամբ երկիր պագանեմք և փառաւորեմք զամենապայծառ սուրբ խաչին զօրութիւն, ոչ միայն մտաւորք և բանաւորք, այլ և անբան անշունչք արարածք՝ ահիւ

և երկրպագուաց սուրբ խաչիս զօրութեան։ Զի մեծ է և զարմանալի, այլ և սքանչելի տեսանեմ զզօրութիւն սուրբ խաչիս, որում ոչ ըստ արժանի ինչ կարեմք ասել, և կամ բաւեն ցուցանել աղքատիմաց միտք մեր մարդկայինք. բայց միայն փոքր ի շատէ նշանակեսցուք ըստ սակաւ գիտութեանս մերում, վասն ամենապայծառ լուսազարդեալ խաչին զօրութեան, յորմէ սոսկան դողալով զօրք սանդարամետականքն, և երկիւղիւ փառաւորեն վերին զօրք հրեշտակաց. որոյ նշոյլք ճառագայթիցն ծագեցին փարատել զստուերային խաւարն մեր թանձրամած, որ ի վաղնջուց նախնեացն իբրեւ զամպ և զմէգ տարածեալ ունէր զամենայն երկիր, և աստուածավայելչաբար և տիեզերագոչ հնչմամբ քարոզիւ խաչին ծովացաւ և ծաւալեցաւ և տարածեցաւ, և ծաղկեալ լուսաւորեցաւ ամենայն երկիր։

Վասն որոյ և մեծապատիւ գովութեամբ երկիր պագանեմք և փառաւորեմք զամենապայծառ խաչիս զօրութիւն, և ոչ միայն բանաւորք և մտաւորք, այլ և անբան և անշունչ

հիացեալ դողան ի զօրութենէն նշանի խաչին. վասն զի պատուած վէմն կատարատաշ ծայրահիրձ պատառէր, ի բղխումն երկուց վտակաց ծարաւահիւծեալ պապքելոց յարբեցութիւն։ Ահա ի ձեռն նշանի խաչին, ծովն անդնդափակ սառնապատ յանկարծաբաց բաժանէր յերկոտասան վտակս, ըստ թուոյ ցեղից ազգացն իսրայելի։ Ի ձեռն նշանի խաչին՝ Յորդանան (սանձահարէր) յորդւոցն իսրայելի. ի ձեռն նշանի խաչին՝ ծովահերձ ընկղմէր աստուածամարտն փարաւոն և զօրքն նորա. ի ձեռն նշանի խաչին՝ (ի) տասն հարուածս (տանջեալ) զաղրագործ և ժանդապաշտօն եգիպտական ազգին. ի ձեռն նշանի խաչին՝ յաղթութիւն աստուածասէր կոստանդիանոս մեծ արքային. ի ձեռն նշանի խաչին՝ բագնեաց կործանումն և եկեղեցեաց հիմնանալ. ի ձեռն նշանի խաչին՝ դիւաց հալածումն և հրեշտակաց ի մեզ ծաւալումն. ի ձեռն նշանի խաչին՝ քահանայից պայծառութիւն և ժողովրդոց խնդու-

արարածք ահիւ հիացեալ դողան ի զօրութենէ նշանի խաչիս. քանզի յահէ զօրութեան խաչիս՝ վէմն կատարատաշ ծովահերձ պատառէր, երկոտասան վտակս հոսեցուցեալ ծարաւի և հիւծեալ պապքելոցն յագեցութեան։ Ահա ի ձեռն նշանի խաչիս՝ ծովագնացք իսկ յատակաբաց սառնապատ բաժանէր յերկոտասան ճանապարհ, ըստ թուոյ ցեղիցն ծովաչու ազգին։ Ի ձեռն նշանի խաչիս, Յորդանան ի յորդեակսն իւր սանձահարէր յանցից որդւոցն Իսրայելի. ի ձեռն նշանի խաչիս՝ ծովահերձումն զարմանագործ աստուածամարտն Փարաւոնի և զօրաց նորա. ի ձեռն նշանի խաչիս՝ տասն հարուածովք տանջեալ ժանդապաշտօն եգիպտական ազգին։ Ի ձեռն նշանի խաչիս՝ զօրացեալ աստուածասէրն Կոստանդինեայ մեծի թագաւորի՝ յաղթէր պատերազմին։ Ի ձեռն նշանի խաչիս, Հրէից գայթակղութիւն և հեթանոսաց յիմարութիւն. ի ձեռն նշանի խաչիս՝ բագնաց կործանումն և եկեղեցեաց հիմնանալ։ Ի ձեռն նշանի խաչիս՝ դիւաց հալածումն և հրեշտակաց ի մեզ մերձաւորութիւն։ Ի ձեռն նշանի խաչիս՝ քահանայից պայծառութիւն, ժողովրդոց խնդութիւն, կուսանաց զգաստութիւն, կրօնաւորաց պնդութիւն և խաղաղութիւն ամենայն աշխարհի։

թիւն, կրօնաւորաց մխիթարութիւն, և ամենայն աշխարհի խաղաղութիւն։

Եւ արդ, ո՞ր բերան բաւական է պատմել ըզգօրութիւն ամենայաղթ սուրբ խաչին. զի խաչիւն կապանք մեր անիծից՝ որ ի ձեռն Նախահօրն մեր՝ փրկեցաւ. խաչիւն տիեզերք պայծառացան, և ազատեցան ի ծառայութենէն սատանայի, խաչիւն թշնամութիւն մեր՝ որ ընդ Աստուծոյ՝ հաշտեցաւ։

Եւ արդ, ո՞ր բերան բաւական է պատմել զզօրութիւն ամենապայծառ խաչիս. զի խաչիւն կապանքս մեր որ ի ձեռն անիծիցն՝ բարձան. խաչիւն Նախահայր մեր փրկեցաւ. խաչիւն տիեզերք ազատեցան ի ծառայութենէ սատանայի. խաչիւն թշնամութիւն մեր՝ որ ընդ Աստուծոյ՝ հաշտեցաւ. խաչիւն զմեզ Որդին Աստուծոյ ի խաւարային գնացիցն լուսաւորեաց. խաչիւն զմեզ զմոլորեալս ի կռապաշտութեանցն դարձոյց, զցրուեալս ժողովեաց, զփարատեալսս միաւորեաց, զամենեսեան արար քաղաքակիցս սրբոց և ընտանիս Աստուծոյ։ Եւ արդ, ո՞ր բերան բաւական է պատմել զզօրութիւն աստուածընկալ խաչիս։ Քանզի զայս խաչ կենարար մարգարէքն որպէս պատրուակաւ քարոզեցին, իսկ առաքեալքն խաչիւս պարծէին. մարտիրոսք սովաւ զօրացան, ուխտաւորք ի սա ապաւինէին, և ամենայն արդարք սովաւ պսակեցան։ Քանզի այս խաչ կենարար՝ կորուսելոց Հրէիցն յիմարութիւն, իսկ մեզ փրկելոցս զօրութիւն Աստուծոյ. մեղաւորաց թողութիւն, արդարոց ամրութիւն, կեցուցիչ կենդանեաց, հանգուցիչ մեռելոց և պահապան ամենայն աշխարհի։ Առ այս խաչ կենարար և աստուածընկալ որք հաւատով ապաւինին՝ զմթերս ամենայն յանցանաց քաւէ, զախտս դիւաց հալածէ, զցաւս և զհիւանդութիւնս բժշկէ, զմահ տարաժամ դարձուցանէ, զցասումն բարկութեան դադարեցուցանէ, զողորմութիւնս յերկինս առաքէ, զպտուղս անդաստանաց բազմացուցանէ և զամենայն կարօտս կերակրէ։ Առ այս խաչ կենարար և աստուածընկալ որք հաւատով ապաւինին՝ ի պատերազմի օգնէ և ապրեցուցանէ, ի գերութենէ փրկէ, ի նեղութենէ սփոփէ, յաւազակաց ապրեցուցանէ և յամենայն թշնամեաց օգնականութիւնս գործէ և շնորհէ ողորմութիւնս։ Առ այս խաչ կենարար և աստուածընկալ որք հաւատով ապաւինին, ի յորձանաց գետոց փրկէ և ի ժանեաց գազանաց ապրեցուցանէ, ի բռնութենէ իշխանաց փրկէ և յամենայն վտանգից օգնակա-

նութիւնս շնորհէ ։ Այս խաչ կենարար և աստուածընկալ զպաշտօնեայս իւր պատուէ, զքահանայս պահէ, զթագաւորս շքեղացուցանէ, զտօնս պայծառացուցանէ, զեկեղեցիս լուսաւորէ և աշխարհի շինութիւն շնորհէ ։ Այս խաչ կենարար և աստուածընկալ, ամենեցուն բաւէ, զամենեսեան լցուցանէ, զամենեսին զարդարէ, զամենեսեան դարմանէ և լուսաւորեալ պայծառացուցանէ երկնաւոր պըսակաւն ։

Եւ արդ, ո՞ր բերան բաւական է պատմել զզօրութիւն կենսաբեր սուրբ խաչիս. զի խաչիւն սրբի սեղանն մեր սրբութեան, խաչիւն օրհնի պատարագն մեր հաշտութեան, խաչիւն կնքի մկրտութիւնն մեր քաւարար, խաչիւն հաստատի օծումն մեր քահանայական, խաչիւն կատարին աղօթք մեր սրբարար, և խաչիւն ամենայն եկեղեցիք մեր լուսաւորեալ պայծառանան ։

Արդ, որպիսի՞ գովութիւն կամ ո՞րչափ փառաւորութիւնս առաքեսցուք մարդասիրութեանն Աստուծոյ, որ ոչ միայն ստեղծ զմեզ ի հողոյ և շնչով կենդանացոյց զմեզ և զամենայն պարգեւեաց զլիութիւն, այլ և ի ձեռն խաչիս մեզ յերկինս ի վեր ճանապարհ արար. զի ի խաչիս ձեռն եկեալ Աստուած մարդացաւ, ի ձեռն խաչին զմերն առեալ աստուածացոյց, ի ձեռն խաչին զդրախտն երաց, ի ձեռն խաչին յարութիւն խոստացաւ, ի ձեռն խաչին արքայութիւն պարգեւեաց, ի ձեռն խաչին մարդիկ ընդ հրեշտակս խառնեցան և հողեղէնքս ընդ հոգեղէնսն դասակցեցան ։ Արդ որ այս(չափ) բարութեանց խաչն եղեւ մեզ պատճառք, ամենեքեան միաբան ամենայօրդոր փութով փութասցուք զտօնս յօրինել, և զխաչիս յիշատակ կատարել աստուածային ընծայիւք և սրբամատոյց աղօթիւք, օրհնութեամբ գովութեամբ և անդադար փառաւորութեամբ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին այժմ և միշտ և յաւիտ" ։

---

# Ի

# ԹՈՒՂԹ

## ՏՐ. ՍՐԲՈՅ ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՑ

### ԱՌ ԵՊԻԿՏԵՏՈՆ[1] ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿՈՐՆԹԱՑՒՈՑ

զոր ապականեալ էր ի հերձուածողաց[2], յորմէ զգուշացոյց զԱնտիոքացիս Սուրբն Կիւրեղ

*Ես այսպէս ածէի զմտաւ, թէ ամենայն ընդունայնաբանութիւնք՝ ուր և իցեն ամենայն հերձուածողաց[3] և աղանդաւորաց, լռեալ դադարեցին, ի լինել մեծի ժողովոյն Նիկիայ: Քանզի որ ի նմա ըստ աստուածեղէն[4] գրոց դաւանեցան ի հարցն[5] հաւատք, կարող են տապալել զամենայն[6] ամբարշտութիւնս և հաստատել զբարեպաշտութիւն քրիստոսեան հաւատոյն: Քանզի եղեն և յայլ ի բազում տեղիս ժողովք, ի Գաղղիայ, ի Սպանիայ, և ի մեծն Հռովմ. և էր ուրեք՝ որք ի գաղտնի ունէին զԱրիոսի աղանդն, զԱւքսենտեայ ասեմ՝ զմեդիոլենացւոյ, և Ուրսակէս և Վաղենտեսիոս պաննոնիացին[7]. վասն այսց արիանոսաց՝ ժողովեցան*

1. Բ օր. Էպիկտիտեմոն, իսկ Գ. օր. Էպիկտետեսոն:
2. Գ. օր. է հերետիկոսաց:
3. Գ. օր. ամենից հերետիկոսաց:
4. Գ. օր. աստուածայնոց:
5. Գ. օր. չունի է հարցն:
6. Գ. օր. զամենեսին:
7. Գրչագիր օրինակք մեր ունին փրկական «զԱւքսեն-

հարքն[1], որպէս և ի սուրբ Հոգւոյն նզովեցին և ի բաց մերժեցին զարիանոս, և գրեցին յամենայն տեղիս, եթէ վասն այսպիսեացս խառըողն մոլութեանց[2] մի՛ անուանեսցի այլ սինոդոս, որ է ժողով, որ թարգմանի զուգաճանապարհ, ի սուրբ և ի կաթուղիկէ եկեղեցի, բայց միայն ի ժողովոյն[3] որ ի Նիկիայ եղեւ, որ կարող է յանդիմանել զամենայն աղանդս, եւս առաւել զաղանդն արիանոսաց, վասն որոյ և ժողովեցան հարքն։

Արդ, որպէս զհետ այսչափ մեծի հաստատութեան՝ արժան է ումեք յերկրայս լինել, կամ ի խնդիրս և ի քննութիւն հաւատոց ձեռն արկանել։ Զի թէ ոք յարիանոսացն իցէ, չեն ինչ զարմանք, քանզի զիւրեանցն լուծանեն, որպէս և հեթանոսք լսեն ի մէնջ, թէ «կուռք հեթանոսաց արծաթ են և ոսկի, և ձեռագործք են որդւոց մարդկան»[4]. յիմարութիւն համարին վասն

տեայ (այլ օր. Օգսենտեայ) ասեմ, ընդդիմանայցս՝ և Ուրսակէս և Վաղենտեսիոս տանեցէն». յիշատակեալդ Աւքսենտ է նոյն ինքն Աւքսենտիոս (Բ), որ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեան Մեդիոլանոն քաղաքի, զոր զկնի ապա յաջորդեաց ս. Ամբրոսիոս։ Նոյնպէս և յորջորջումն Ուրսակէսի և Վաղենտեսիոսի՝ տանեցէ, ուղղելի է ի դանեննէցէ։ Ցայլում թարգմանութեան այսր թղթոյ, որ գտանի ի գիրս Պարապմանցն Կիւրղի, (տպ. ի Կ. Պոլիս յամի 1717–ՌՃԿԶ), և թուի յեղեալ ի հռովմայեցւոց բարբառոյն ի հայ, այսպիսի ինչ ունելով խորագիր, — Սրբոյն Աթանասի եպիսկոպոսի Աղեքսանդրի, թուղթ առ Եպիկտիմոն եպիսկոպոս կորնթացւոց. Ցաղագս ուղղափառ հաւատոյ. Ընդդիմադրութիւն ճշմարիտ եւ սուրբ հաւատոց, — զհատուած բանիցդ ընթեռնումք զայս ձեւ օրինակի. «զայնոսիկ որք ի ծածուկ զԱրիոսին խորհին զՕքսէնտիոսի ասեմ և զմադիողոնացիսն և զՈւրսակէս և զՎաղենտինոս և ըզԳայիոս սպանիացի» (իմա՛ պաննոնիացի)։

1. Գ օր. յաւելու՝ երեւհարէր և դաւանեալքն։

2. Գ օր. մոլորութեանց։

3. Գ օր. բայց ի ժողովոյն Նիկի։

4. Սղմ. ՃԺԳ. 4։

աստուածեղէն վարդապետութեանն և տէրունեան խաչին։ Իսկ եթէ յուղղահաւատից, որք սիրեցին զյայտնութիւն հաստատութեան հաւատոյ հարցն ժողովոյ, և արդ կամիցին վերստին քննութիւն և խնդիրս առնել, ոչինչ ոչ վճարեն[1]. այլ ըստ գրեցելոյն, արբուցանեն ընկերաց իւրեանց զպղտորութիւնս մոլորութեան յոչինչ պիտանացու ի շրջել յունայնութիւնս։

Զայս ամենայն վասն այսորիկ[2] գրեցի առ քո աստուածպաշտութիւնդ, զի պատահեալ ընթերցայ զմեկնութիւն գրելոցն[3] քոց, զոր ո՛չ գրել արժան է և ոչ յիշատակել զայսպիսի ինչ՝ զհետ այսչափ մեծի հաստատութեանն։ Ո՞ լուաւ զայսպիսի ինչ ոք երբեք, և կամ յորմէ՞[4] վարդապետէ տեղեկացեալ ուսաւ։ Զի մեք գիտեմք զգրեալս՝ որ ասէ. «Ի Սիոնէ ելցեն օրէնք, և բան Տեառն յԵրուսաղէմէ[5]». Իսկ այս հուր բարկութեան ուստի՞ ել և բխեաց, և կամ ո՞ր դժոխք զգայռեցան ասել մի բնութիւն՝ որ ի Մարիամայ մարմինն էր և Բանին Աստուծոյ։ Եւ կամ՝ թէ Բանն ի մարմին և յոսկր, և կամ թէ ամենեւին բնաւ ի բնութիւն մարմնոյ շրջեցաւ, և կամ փոփոխեցաւ յիւրմէ բնութենէն։ Եւ կամ ո՞ լուաւ յեկեղեցւոջ և կամ յամենայն հաւատացեալս, եթէ պիտակապէս նմանութիւն և զբնութիւն մերոյ մարմնոյս զգեցաւ Տէրն։ Եւ այսչափ ամբարշտեալ ասիցէ, և կամ ի միտ իւր անկանիցի, եթէ աստուածութեան բնութիւնն՝ որ էր հաւասար Հօր, թլփատեցաւ, և անկատար ի կատարելութենէ եղեւ։ Եւ թէ որ ի խաչին բեւեռեցաւ՝ չէր մարմին, այլ նոյն ինքն էր արարիչ բնութեանն[6], որ էր իմաստութիւն Հօր։ Ո՞ ոք լուաւ զայս, եթէ ո՛չ ի Մարիամայ՝

1. Գ օր. ոչինչ վճարէն։
2. Գ օր. այն։
3. Գ օր. գրեցելոյն։
4. Գ օր. յառմէ՞։
5. Եսայ. Բ 2։
6. Բ և Գ օր. բնաւորթեանն։

այլ յիւրմէ բնութենէն շրջեալ, արար իւր մարմին չարչարական Բանն: Եւ կամ ո՞վ հաւատացեալ և քրիստոնեայ զայս ասիցէ. և կամ ո՞ զանիծից և զնզովից իմացաւ զամբարշտութիւնս զայս. և կամ զիա՞րդ էարկ ի միտս իւր՝ եթէ որ ասէ թէ ի Մարիամայ է տէրունական մարմինն, ոչ եւս ասեն երրորդութիւն, այլ չորրորդութիւն յաստուածութեանն համարի: Վասն զի ասեն մերձաւոր եղեալ[1] բնութեանս յերրորդութիւնն մարմնոյս, զոր զգեցաւ ի Մարիամայ՝ Փրկիչն: Եւ կամ ուստի՞ դարձեալ զգայռեցան զուղխ ամբարշտութեան, ասել յառաջ զմարմինն և ոչ ապա յետոյ ժամանակս, և ոչ կրտսերագոյն աւուրբք զմարմինն Աստուծոյ, այլ միշտ և հաւասար ընդ Բանին ասեն, և էակից ընդ Նմին, համազոյգ ժամանակաւք: Վասն զի գիտացին եթէ ի բնութենէ իմաստութեանն հաստատեալ ընդ իւր մարմին միացաւ: Եւ ո՞րպէս յերկուանալ իշխեցին և յանդըգնեցան՝ որք լոկ անուամբ միայն են քրիստոնեայք, թէ՝ որ ի Մարիամայ ծնաւ Տէր և Որդի, ըստ բնութեան էութեան աստուածութեանն հաւասար Հօրն է, որ եղեւ մարմնով ի զաւակէ Դաւթի ի մարմնոյ սուրբ[2] Մարիամայ: Եւ ո՞ ոք են ամբարիշտք, որք այսչափ յանդգնեցան, մինչեւ ասել զՔրիստոսէ, որոյ մարմինն չարչարեցաւ և խաչեցաւ, եթէ ոչ է Տէր և Փրկիչ և Աստուած և Որդի Աստուծոյ Հօր: Եւ կամ ո՞րպէս հաւատացեալք անուանեն և քրիստոնեայք, որք ասեն, որպէս ի մարդ ոք սուրբ՝ որպէս զմի ոք ի մարգարէից՝ եմուտ ի Նա Բանն, և ոչ եթէ ինքն եղեւ մարդ՝ առեալ ի Մարիամայ մարմին. այլ զայլ ոմն ասեն ըզՔրիստոս, և այլ զոմն զԱստուծոյ որդին, յառաջ քան զՄարիամ և քան զամենայն յաւիտեանս, Որդի էր առ Հօր: Եւ կամ դարձեալ, զիա՞րդ

1. Գ օր. մերձաւորել:  2. Բ և Գ օր. սրբուհւոյն:

կարեն անուանել քրիստոնեայք, որք ասեն զայլ ոմն զՈրդին, և զայլ ոմն զԲանն Աստուծոյ։

Զայս ամենայն գրեալ ի մեկնութիւնսն, պէսպէս մասամբք և դիմօք էր ասացեալ, այլ ամենայն ի մի դէմս եկեալ միաբանէր, քանզի ցուցանէր զմիտս ամբարշտութեան ի ներքս։ Վասն այսր ամենայնի դատեալ կշռեցին ընդ միմեանս, և կուի[1] եդեալ քակեցին զամենայն հերձուածս ժողովք հարցն՝ որ եղեն ի Նիկիայ։ Այլ ես զարմանամ ընդ աստուածասիրութիւնդ քո, ո՞րպէս կալար յանձին զայս, որք խափանեալ յայնպիսի սուրբ ժողովոյն, միւս հաղ[2] դարձեալ նորաձեւս և պէսպէս քննութիւնս ի մէջ բերեալ[3], և լինել ընդվայր հակառակող։ Քանզի զայս ամենայն ո՛չ ասել արժան է և ո՛չ լսել հաւատացելոց և քրիստոնէից, այլ[4] օտար և հեռի է յառաքելոցն վարդապետութենէ։ Վասն այսորիկ և ես՝ զոր լուայ ի նոցանէն զգրեալսն, յայտնի ամենեցուն գրեցի ըղթուղթս. զի որք լսեն՝ հեռացեալք[5] լիցին, և տեսցեն և իմասցին զեւրեանց ամբարշտութիւնսն և զամօթանսն։ Եւ թէպէտ եւ պիտէր[6] բազում բանիւք յանդիմանել զանզգամութիւնն և որք զայսպիսիսն իմացան, այլ՝ չատ և բաւական է մինչեւ ցայսվայր գրել զթուղթս, և մի՛ այլ առաւելս ինչ գրել[7]։ Քանզի կարող է յայտնի ցուցանել զմոլորական միտսն, որք կամին կրթել այսու բանիւ։ Եւ ո՛չ է արժան աւելի ի խնդիրս և ի քննութիւնս անգանել, զի մի՛ հակառակողացն երկբանութիւնք[8] ինչ թուեսցին, այլ առնել նոցա պատասխանիս սակաւուք։ Ասել, թէ ո՛չ է այս խորհուրդ՝ զոր դուք զմտաւ ածէք՝ սուրբ և կա-

1. Գ օր. կշէր։
2. Բ օր. միահաղ։
3. Բ օր բերել։
4. Բ օր. զի։
5. Բ օր. հաւատացեալք։
6. Բ. օր. պարտ էր, իսկ Գ օր. պիտոյ էր։
7. Բ և Գ օր. չունիցին գրել։
8. Բ օր. երկբայութիւնք։

Թուղիկէ եկեղեցւոյ. և ո՛չ հարքն զայս հաստատեալ կանոնեցին[1] ։ Եւ մեք դարձեալ ո՛չ ի սպառ լռեսցուք, զի մի՛ պատճառս գտցեն ։ Բարիոք[2] է մեզ և աստուածեղէն գրոց սակաւ ինչ յիշատակս բերել, զի Նոքօք յանդիմանեսցուք, և լռեցուսցուք զընդվայրայածող և զաղտեղի խորհուրդս Նոցա ։

Արդ, սկսցուք ասել. ուստի՞ է Նոցա ասելն, եթէ մի բնութիւն է մարմնոյ և Բանին Աստուծոյ։ Քանզի և աստ արժան է մեզ սկիզբն առնել, զի յորժամ յայսմ ըմբերանեսցին Նոքա, լուծեալ կորնչին ամենայն ամբարշտութիւնք Նոցա. քանզի ամենայն գիրք միաբանեալ ասեն. եթէ Բանն Աստուծոյ մարմին ի կուսէն առեալ, ծնաւ Էմմանուէլ։ Եւ հարքն ի Նիկիայ ժողովեալ, ոչ եթէ զմարմինն, այլ զնոյն ինքն զՈրդին Աստուծոյ ասացին մի բնութիւն և հաւասար Հօր. իսկ զմարմինն ի Մարիամայ դաւանեցին, ըստ գրեցելոցն յաստուածեղէն գիրս։ Արդ, եթէ ոք ուրանայ զասացեալսն ի Նիկիայ սուրբ ժողովոյն, և իբրեւ զհերձուածող բերէ ի մէջ զայն ամենայն, եթէ կամիցի լինել որդի հարցն, մի՛ աւելիս խորհեսցի քան զայն, զոր գրեցին Նոքա. քանզի յայսմ գիտեմք զայլանդակութիւնս հերձուածողացն։ Արդ, փորձեսցուք զայս եթէ մի բնութիւն է Բանին և մարմնոյ։ Մարմինն յերկրէ ունի ըզբնութիւնն իւր. իսկ Բանին Աստուծոյ և Հօր մի բնութիւն է ըստ հարցն խոստովանութեան։ Ապա թէ այդպէս է զոր ասեն հերձուածողքն, մի բնութիւն է և նոյն իսկ Հօր և մարմնոյն որ յերկրէ եղեւ, և զի՞ եւս պախարակեն զարիանոսս, որք ասեն զՈրդի արարած, քանզի և Նոքա աւասիկ ասեն զՀօր և զարարածոյ մի բնութիւն ։

Եւ եւս առաւել յամբարշտութիւն կործանեցան,

1. Բ օր. կնքեցին։ 2. Բ օր. Բարւոք։

որք ասացինն, ի մարմին և յոսկր և ի նեարդս, և ի ջիլս և ի բովանդակ իսկ բնութիւն մարմնոյ եթէ շրջեցաւ Բանն և փոխեցաւ յիւրմէ բնութենէն։ Տեսանե՞ս զի ասացին յայտնապէս, եթէ յերկրէ ինքն եղեւ. քանզի յերկրէ ոսկր է և բովանդակ մարմնոյ բնութիւն։ Արդարեւ մեծ անզգամութիւն է ընդ սոսա հակառակել. այլ զի մի՛ մեծաբանեսցեն, սանձահարեալ[1] ընդդիմասցուք նոցա։ Զմի բնութիւն ասել Բանին և մարմնոյն, որպէս ընկեր առ ընկեր նշանակէ, որ լինին երկուք և ոչ մի։ Իսկ յասելն թէ ի մարմին շըրջեցաւ Բանն, նմին իսկ Բանին զփոփոխումն և զապականութիւն ցուցանեն։ Ո՞վ ոք իցէ, որ զայսպիսի բան յանձին ունիցի։ Քան զամենայն հերձուածողս եւս առաւել յամբարշտութիւն կործանեցան։ Զի եթէ մի բնութիւն իցէ Բանին և մարմնոյն, աւելորդ էր յիշատակել զՄարիամ. զի եթէ բնութիւն մարմնոյն յառաջագոյն էր քան զ՚ի Մարիամայ առնուլն[2], և էր աներեւոյթ և անտես մարմինն, ապա թէ այդպէս է, նա իսկ է Բանն։ Եթէ ըստ ձերում ասելոյդ, մի բնութիւն է Բանին և մարմնոյն, զի՞նչ պէտք էին գալուստ Բանին, զի եկեսցէ և զիւր բնութիւնն ըզգեցցի, և կամ յիւրմէ բնութենէն փոխել՝ զի մարմին լինիցի։ Այլ ոչ երբեք կայգ և ի մոլեգնելոցն ոք կարծեսցէ, եթէ ինքն զինքեան[3] զիւր բնութիւնն զգեցցի. և ո՛չ՝ թէ ինքն որ մեղուցեալն է, զայլս ի մեղաց փրկել կարիցէ Բանն։ Եւ դարձեալ, եթէ շրջեալ փոխիցի Բանն ի մարմին, ինքն վասն ի՞ւր պատարագ մատուցանիցի և զի՞նքն փրկիցէ։ Այլ ո՛չ այսպէս, քաւ լիցի, « զզաւակէն Աբրահամու բուռն հարկանէ, ա-

1. Գ օր. սանձեալ։
2. Բ և Գ. օր. զառնուլն է Մարիամայ։
3. Գ օր. զինքն։

առեալ զմարմինն, որպէս ասաց Առաքեալ, վասն զի ըստ ամենայնի պարտ է նմա եղբարց նըմանել »[1], և առնուլ զմեր բնութեանս մարմին. վասն այսորիկ և անուանէ ճշմարտութեամբ զկոյսն Մարիամ՝ մայր, զի ի նմանէ զմերոյ բնութեան զմարմինն առցէ, և միացուցեալ[2] ընդ Բանին որպէս և իւր, վասն մեր զնա պատարագ մատուսցէ[3] ։ Եւ զայս մարգարէացեալ Եսայեայ, յայտնապէս ցուցանէ. « Ահաւասիկ, ասէ, կոյս յղասցի և ծնցի[4] »։ Եւ Գաբրիէլ առաքեցաւ, ոչ եթէ առ վայրապար կոյս, այլ[5] « առ կոյս խօսեալ[6] առն[7] », զի և ի խօսմանէն ցուցցէ զկոյսն Մարիամ ճըշմարիտ մարդ ըստ բնութեան մերում։ Եւ ի նմանէ ասեն ծնեալ գիրք սուրբք, և ի խանձարուրս պատեալ[8], և մատուցեալ ի տաճարին վասն սրբութեան պատարագ, վասն բանալոյ և պողաբերութեան արգանդին իւրոյ զմանուկն։ Այս ամենայն վասն ծննդեան կուսին է գիտելութիւն և ի ծանօթութիւն ամենեցուն ։ Եւ Գաբրիէլ զգուշութեամբ աւետարանէ զմանէ ասելով, ո՛չ եթէ վայրապար ասաց՝ ծնանել ի նմանէ, զի մի՛ եթէ որպէս արտաքուստ՝ ի կուսէն զմարմին կարծեսցեն, այլ զգուշութեամբ ասէ. « Որ ի քէն ծնանելոց է », զոր ի նորուն ի բնութենէ ։ Եւ այսպէս հաւատացեալ յայտնապէս եցոյց զառ ի բնութենէ ծնունդ կուսին, և ոչ այլ ուստեք ։ Քանզի ոչ է հնար կուսին լինել կաթն՝ եթէ ոչ էր ծնեալ. և ոչ էր մարթ դիեցուցանել և կաթամբ սնու-

1. Եբր. Բ. 16։
2. Գ օր. միաւորեցեալ։
3. Բ և Գ օր. մատուցանէ։
4. Եսայի Է, 14. — Բ և Գ օր. յաւելուն որդի։
5. Բ և Գ օր. յաւելուն որդւոյ։
6. Բ և Գ օր. խօսեցեալ։
7. Գ օր. պատմեցեալ։
8. Ղուկ. Ա, 27։

ցանել զմարմինն և պատել ի խանձարուրս, եթէ ոչ էր ծնեալ յիւրմէ բնութենէն։ Սա ութօրեայ թլփատի. զսա Շմաւոնն ի գիրկս իւր ընկալաւ։ Սա եղեւ մանուկ և աճեաց, եղեալ երկոտասանամեայ, և հասեալ մինչեւ յերեսնամեանս, եկն ի մկրտութիւն և յայտնեցաւ աշխարհի։ Այլ ո՛չ, որպէս ոմանք մոլորեալ ասացին, եթէ բնութիւն Բանին շրջեալ փոխեցաւ ի մարմին և թլփատեցաւ։ Քանզի անշրջելի և անփոփոխելի է բնութիւն Բանին Աստուծոյ։ վասն զի ասէ ինքն Աստուած այսպէս. «Տեսէ՛ք, տեսէ՛ք, զի ես նոյն եմ, և ոչ երբեք փոփոխեցայ[1]»։ Եւ Պաւղոս վկայեալ սմին, ասէ. «Յիսուս Քրիստոս երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս յաւիտենից[2]»։ Այլ, երեւեցաւ թէ նոյն բնութիւնն է ճշմարիտ, մարմինն՝ որ թլփատեցաւ և ի գիրկս գգուեցաւ, և կերաւ[3] և արբ և վաստակեալ աշխատեցաւ, և ի փայտ խաչի բեւեռեցաւ և չարչարեցաւ[4], և էր ի մարմնի անչարչարելի և անմարմին Բանն Աստուծոյ։ Այս մարմին էր որ եդեալ էր ի գերեզմանին, և ընդ նմին էր և Աստուած Բանն, որ քարոզէր զարձակումն, և զթողութիւն մեղաց հոգւոցն, որք պահպանեալքն էին ընդ աղխիւք դրամբք պատուհասին, որպէս և ասէ Պետրոս մի ըստ միոջէ։ Որ կամին՝ ընթերցցի զայն, և կարող է ի նմանէն իմանալ, և յանդիմանեալ կշտամբէ զայնոսիկ, որք ասեն ի մարմին շրջեալ փոխեցաւ Բանն Աստուծոյ։ Եթէ այդպէս էր, զի՞նչ պէտք էին գերեզմանին, քանզի ինքն երթեալ էր՝ որ շրջեցաւ ի մարմին Բանն՝ քարոզել զարձակումն արգելելոցն[5] ի դժոխս։

Իսկ արդ՝ աւասիկ ինքն Բանն երթեալ քարո-

1. Մաղ. Գ, 6։
2. Եբր. ԺԳ, 8։
3. Բ օր. եկեր։
4. Գ օր. չունի՝ չարչարեցաւ։
5. Գ օր. արգելեալցելոցն։

զէր. իսկ զմարմին Բանին առեալ Յովսեփայ[1] պատէր կտաւովք, և դնէր ի նոր գերեզմանի ի Գողգոթայ։ Ահաւասիկ ամենեցուն յայտնի երեւեցաւ եթէ ոչ մարմին էր Բանն, այլ մարմին էր Բանին։ Եւ զայս մարմին յարուցեալ ի մեռելոց՝ Թովմաս շօշափեաց, և եւտես ի նմա զտեղիս բեւեռացն, և անչարչար մնացեալ ինքն Բանն, տեսանելով բեւեռեալ զիւր մարմինն, զոր կարողն էր արգելուլ զբեւեռս և զչարչարանս մարմնոյն իւրոյ, և ինքն աներեւոյթ և անչարչարելի էր Բանն։ Ի հարկանել զմարմին իւր[2] ի սպասաւորէ քահանային[3], որպէս թէ ինքն հարկանիցիւր[4], ասէր. «Զի՞ հարկանես զիս». և անշօշափելի և անըմբռնելի բնութիւն Բանին, իւր համարեալ՝ զիւրոյ մարմնոյն, ասէր. «Զթիկունս իմ ետու ի հարուածս, և զերեսս իմ ո՛չ դարձուցի ի թքանելոյ[5]»։ Քանզի մարմինն իւր չարչարի[6] Բանին. զայս որ միաբան մարմնոյն Բանն էր, իւր զամենայն հաշուեալ համարի, զի և մեք Բանին աստուածեղինի ընդունիչք կարասցուք լինել։ Եւ արդարեւ հւս նոր զքանչելապէս զարմազանութիւնք[7]. զի ինքն էր չարչարական, և ինքն էր անչարչարական։ Վասն զի իւր ինքեան էր որ չարչարէր[8] մարմինն, և ինքն ի նմա ի չարչարելումն էր, և անչարչարական էր. զի բնութիւն աստուածութեանն Բանին անչարչար և անախտ մնայ։ Եւ ինքն անմարմին էր միացեալ[9] ի չարչարական մարմար-

1. Գ օր. Յովսէփ։
2. Գ օր. մարմնոյն իւրոյ։
3. Գ օր. քահանայապետին։
4. Բ օր. չարչարէցին և հարկանէցին.։
5. Եսայի Ծ, 6։
6. Բ և Գ օր. չարչարէր։
7. Գ օր. զարմանազանութիւնք։
8. Բ և Գ օր. չարչարէր։
9. Գ օր. միաւորեցեալ։

մնին[1] իւրում, և մարմին ունէր միացեալ[2] անշարչար Բանն Աստուծոյ. որ ընջէր և ապականէր զտկարութիւն[3] ապականութեան զբնութեան մարմնոյն և զգեցուցանէր մարմնոյն զանապականութիւն։ Եւ արարեալ զայս և զառ ի մէնջ մարմինն ընկալեալ յինքեան միաբանութիւն, ի յանմահէն մահկանացուս զանմահութիւնն. և մատուցեալ մարմինն պատարագ, ընջեալ ապականէր ի մարմնոյն զմահ, և զգեցուցանէր մահկանացուիս՝ զանմահութիւն։ Քանզի ոչ կարէր մահկանացուն զանմահկացուն ի մահ գրաւել. այլ՝ անմահին զմահ ի բաց ընջեալ, և զմահկանացուս ընդ. անմահին միաբանեալ անմահ արար։ Եւ իւրով մարմնովն զայսպիսի անմահութիւն սմին շնորհեալ՝ տայ այսուհետև մեծաբարբառ իւրում առաքելոյն գոչել և ասել. «Արժան է ապականացուիս այսմիկ զգենուլ զանապականութիւն, և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն»[4]։

Ո՛չ եթէ առաչօք և նմանութեամբք այս ամենայն եղեւ, քա՛ւ լիցի, որպէս ոմանք ի հերձուածողաց ասեն զմարմինն եթէ նմանութիւն էր[5] և ոչ բնութիւն. այլ արդարև ճշմարիտ մարդ եղեւ փրկիչն մեր, և բովանդակ զբնութիւնս մեր միացոյց իւր Բանն Աստուծոյ, և կատարեալ բովանդակ մարդոյ բնութեան փրկութիւն շնորհեաց։ Զի եթէ նմանութեամբ և պիտակապէս էր Բանն ի մարմնի, ըստ ասացելոյն, քանզի պիտակապէս՝ առաչօք ասի և ոչ բնութեամբ, գտանի այնուհետև առ աչօք և ոչ բնութեամբ և փրկութիւն մարդոյն, և լինիմք հաւասարեալ և նման ամբարիշտ Մանինեցւոցն[6]։ Այլ ոչ է առ աչօք և յարութիւն մարմնոյ Տեառն և փրր-

1. Գ օր. մարմնոյ։
2. Գ օր. միաւորեցեալ։
3. Գ օր. զտկարութեամբ։
4. Ա. Կորնթ. ԺԵ. 53։
5. Գ օր. ինչ է։
1. Բ օր. Մանիքեցւոցն։

կութիւն մեր ամենեցուն, այլ ճշմարիտ իսկ է. և ոչ միայն զմարմին մեր միացոյց իւր Բանն, այլ բովանդակ զոգի և զմարմին ճշմարիտ և ըզ-բնութիւն մարդոյ միացոյց իւր Բանն Աստուծոյ, և արար փրկութիւն մարդկան[1] բնութեանս։ Ար-դարեւ զմարմին բնութեանս մերոյ էառ ի Մա-րիամայ, ըստ աստուածեղէն[2] գրոց, և ճշմարիտ էր մարմինս այս Փրկչին մերոյ. քանզի էր քոյր մեր սուրբ[3] կոյսն Մարիամ, վասն զի ամենե-քեան յԱդամայ եմք։ Եւ զայս ոչ ոք կարէ յերկ-բայս լինել. քանզի խօսեալ էր զնա առն[4], որպէս և Ղուկաս ցուցանէ մի ըստ միոջէ, յայտ է թէ Յովսէփ և Մարիամ՝ մեր քոյր և եղբայր էին և ի մերմէ բնութենէս։

Եւս առաւելագոյն այլք մոլորեցան և ասեն. եթէ յետ յարութեանն ի մեռելոց, ոչ նոյն մար-մինն էր զոր առն ի Մարիամայ, և ո՛չ բնու-թեամբ մարմնոյ տեսին զՏէրն, այլ հոգի իմն ասեն և ի նմանութիւն մարմնոյ։ Եկայք յան-դիմանելով կշտամբեսցուք զնոսա ի սուրբ[5] աւե-տարանէ՝ բանիւ Տեառն, որ ասէր ցաշակերտսն. «Տեսէք զոտս իմ և զձեռս իմ, և զտեղիս բեւե-ռացն, զի ես նոյն եմ. շօշափեցէք զիս, և տե-սէք զիս, զի ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որ-պէս զիս տեսանէքդ զի ունիմ։ Եւ զայս ասացեալ, եցոյց նոցա զձեռս և զոտս»[6]։ Եւ այսու բանիւ դարձեալ յանդիմանէ զայնոսիկ, որք յանդգնին և ասեն. եթէ ի մարմին և յոսկր շրջեալ փոխեցաւ Բանն Աստուծոյ։ Ոչ ասաց, որպէս տեսէք զիս մարմին և ոսկերս, այլ թէ՝ որպէս տեսանէք զի

1. Բ. օր. մարդկայէն, իսկ Գ. օր. մարդկայնոյ։
2. Գ. օր. աստուածայնոյ։
3. Գ. օր. սրբուհի։
4. Բ և Գ. օր. խօսեցեալ էր նա առն։
5. Բ. և. Գ. օր. սրբոյ։
6. Ղուկ. ԻԴ. 39։

ունիմ մարմին և ոսկերս ։ Վասն զի մի՛ զնոյն ինքն զԲանն ի մարմին շրջեալ փոփոխմամբ իմանայցես , այլ ինքն Բանն էր ի մարմնին իւրում, և յառաջ քան զմահն , և զկնի յարութեանն ի նմին մարմնի մեր միացեալ , և այսպէս յայտնի ամենայն հաւատացելոց քարոզեցաւ յառաքելոյն ։

Եկայք այսուհետև ըմբերանեսցուք զայնոսիկ , ոյք իշխեցին զմտաւ ածել , և ասացին երրորդութիւնն չորրորդութիւն լինել. եթէ ասեմք՝ եթէ[1] ի Մարիամայ էր մարմինն , եթէ մի բնութիւն ասեն , ասեմք , Բանին և մարմնոյն , մնայ երրորդութիւնն երրորդութիւն ։ Ապա եթէ ասեմք մարդկեղէն բնութիւնն ի Մարիամայ , հարկ է թէ օտար իմն բնութիւն , ասեն , յերրորդութիւնն մերձեցուցանեմք , և միաբանեալ Բանին ընդ մարմնոյն իւրում, չորրորդութիւն ասեն յերրորդութեան[2] լինի , վասն յաւելուածոյն մարմնոյն ի Բանն ։ Եւ զայս այսպէս ասացեալ՝ ոչ իմանան թէ ինքեանք զարկուցեալ յաղթահարին ։ Զի եթէ ոչ ի Մարիամայ իցէ մարմինն , այլ մի բնութիւն Բանին և մարմնոյն, որպէս և ասեն ինքեանք՝ յորմէ փախչին , զնոյն չորրորդութիւն քարոզեն ։ Եւ արդ[3] , եկայք ասասցուք . Որդի ապաքէն մի բնութիւն և էութիւն է Հօր , որպէս և հարքն ի Նիկիայ դաւանեցին առ մեզ ։ Եւ թէպէտև մի բնութիւն է , և ոչ եթէ ինքն Որդին՝ Հայր է , այլ ինքն Որդին՝ Հօր ասի ։ Ահա՛ մի բնութիւն երեւեցան երկու անձինքն կատարեալք , և մի էութիւն երկու ինքնութիւնք ։ Այսպէս և մի բնութիւն մարմնոյ և Բանին , ոչ ինքն նոյն Բան , այլ՝ այլ ումն է ընկեր Բանին , և նոյն բնութիւն մարմնոյն , որպէս և ասեն նոքա , արարին զերրորդութիւնն չորրորդութիւն ։ Այլ

1 . Բ օր . չունի եթէ ։
2 . Գ օր . յերրորդութեան ։
3 . Բ և Գ օր . ընդ Հօր ։

ճշմարիտ Երրորդութիւնն կատարեալ է և անքակ, և ոչ ընդունի զոք յաւելուած, որպէս եթէ ինքն անկատար, ինքն և ոչ զայլ ոք Բանն Աստուծոյ՝ ընկերակից զոք ըստ իւրում բնութեանն ընդ ինքեան երեւոյթ մարմին ունիցի։ Այլ զիա՞րդ սոքա քրիստոնեայք անուանիցին, և զայլ ոմն էակից աստուածութեանն համարուն՝ ի միոջ իւրեանց կարծեցին, և ասեն։ Եւ դարձեալ ընդդէմ գրոց հակառակին, և ի ներքս հերձուածս և պատառմունս արկանեն[1]։ Զի գիրք ասեն, եթէ ի Մա՛րիամայ էառ զմարդկեղէն մարմինն փրկիչն մեր Բանն Աստուծոյ. և նոքա չորրորդութիւն ի ներքս արկանել իշխեն և յաւելուած իմն զմարմինն աստուածութեանն առնեն, և զայլ հաւասար արարչին զարարածն, և աստուածութեանն որպէս թէ թերացելոյ[2] յաւելուած համարին։ Եւ ո՛չ իմացան, եթէ ո՛չ ի կատարումն ինչ աստուածութեանն, և առ կարօտ ինչ՝ Բանն մարմին եղեւ, այլ զի մեռելութիւն մարմնոյն ի կենդանութիւն դարձցի· և ոչ եթէ անկատար Բանն կատարեալ լիցի՝ վասն այնորիկ ծնաւ ի Մարիամայ, այլ զի զմարդկեղէն բնութիւնս փրկեսցէ ի մեղաց։

Ո՞րպէս ո՛չ իմանան, թէ Բանիւն եղեւ փրկութիւն մարդկան և կենդանութիւն. այլ զիա՞րդ յաւելուած որ եղեւ ի կենդանի մարմինն Բանին կենդանարար լինէր. մանաւանդ թէ առաւել մարդկութեան բնութեանս եղեւ յաւելուած՝ հաղորդութիւն և միութիւն Բանին։ Քանզի մարմինն մահկանացու եղեւ անմահ, և ի շնչաւորութենէ եղեւ հոգևոր, և որ յերկրէ լեալ էր, վերացաւ անց ի վեր ընդ դրունս, և ելեալ յերկինս՝ նստաւ ընդ աջմէ Հօր։ Երրորդութիւն կատարեալ է, և ո՛չ ընդունի զյաւելուած և ըզ-

1. Գ օր. չունի՝ արկանեն։
2. Ց օր. ի լուսանցս դնէ Թերացելոյ, որպէս ունի և Բ օր.։

ունիմ մարմին և ոսկերս։ Վասն զի մի՛ զնոյն ինքն զԲանն ի մարմին շրջեալ փոփոխմամբ իմանայցես, այլ ինքն Բանն էր ի մարմնին իւրում, և յառաջ քան զմահն, և զկնի յարութեանն ի նմին մարմնի մեր միացեալ, և այսպէս յայտնի ամենայն հաւատացելոց քարոզեցաւ յառաքելոյն։

Եկայք այսուհետև ըմբերանեսցուք զայնոսիկ, որք իշխեցին զմտաւ ածել, և ասացին երրորդութիւնն չորրորդութիւն լինել. եթէ ասեմք՝ եթէ[1] ի Մարիամայ էր մարմինն, եթէ մի բնութիւն ասեն, ասեմք, Բանին և մարմնոյն, մնայ երրորդութիւնն երրորդութիւն։ Ապա եթէ ասեմք մարդկեղէն բնութիւնն ի Մարիամայ, հարկ է թէ օտար իմն բնութիւն, ասեն, յերրորդութիւնն մերձեցուցանեմք, և միաբանեալ Բանին ընդ մարմնոյն իւրում, չորրորդութիւն ասեն յերրորդութեան[2] լինի, վասն յաւելուածոյն մարմնոյն ի Բանն։ Եւ զայս այսպէս ասացեալ՝ ոչ իմանան թէ ինքեանք զարկուցեալ յաղթահարին։ Զի եթէ ոչ ի Մարիամայ իցէ մարմինն, այլ մի բնութիւն Բանին և մարմնոյն, որպէս և ասեն ինքեանք՝ յորմէ փախչին, զնոյն չորրորդութիւն քարոզեն։ Եւ արդ[3], եկայք ասասցուք. Որդի ապաքէն մի բնութիւն և էութիւն է Հօր, որպէս և հարքն ի Նիկիայ դաւանեցին առ մեզ։ Եւ թէպէտեւ մի բնութիւն է, և ոչ եթէ ինքն Որդին՝ Հայր է, այլ ինքն Որդին՝ Հօր ասի։ Ահա՝ մի բնութիւն երեւեցան երկու անձինքն կատարեալք, և մի էութիւն երկու ինքնութիւնք։ Այսպէս և մի բնութիւն մարմնոյ և Բանին, ոչ ինքն նոյն Բան, այլ՝ ա՛յլ ոմն է ընկեր Բանին, և նոյն բնութիւն մարմնոյն, որպէս և ասեն նոքա, արարին զերրորդութիւնն չորրորդութիւն։ Այլ

1. Բ օր. չունի եթէ։
2. Գ օր. յերրորդութենէն։
3. Բ և Գ օր. ընդ Հօր։

ճշմարիտ Երրորդութիւնն կատարեալ է և անքակ, և ոչ ընդունի զոք յաւելուած, որպէս եթէ ինքն անկատար, ինքն և ոչ զայլ ոք Բանն Աստուծոյ՝ ընկերակից զոք ըստ իւրում բնութեանն ընդ ինքեան երեւոյթ մարմին ունիցի։ Այլ զի՞րդ սոքա քրիստոնեայք անուանիցին, և զայլ ոմն էակից աստուածութեանն համարին՝ ի մտաց իւրեանց կարծեցին, և ասեն։ Եւ դարձեալ ընդդէմ գրոց հակառակին, և ի ներքս հերձուածս և պատառմունս արկանեն[1]։ Զի գիրք ասեն, եթէ ի Մարիամայ էառ զմարդկեղէն մարմինն փրկիչն մեր Բանն Աստուծոյ. և նոքա չորրորդութիւն ի ներքս արկանել իշխեն և յաւելուած իմն զմարմինն աստուածութեանն առնեն, և զայլ հաւասար արարչին զարարածն, և աստուածութեանն որպէս թէ թերացելոյ[2] յաւելուած համարին։ Եւ ո՞չ իմացան, եթէ ո՞չ ի կատարումն ինչ աստուածութեանն, և առ կարօտ ինչ՝ Բանն մարմին եղեւ, այլ զի մեռելութիւն մարմնոյն ի կենդանութիւն դարձցի. և ոչ եթէ անկատար Բանն կատարեալ լիցի՝ վասն այնորիկ ծնաւ ի Մարիամայ, այլ զի զմարդկեղէն բնութիւնս փրկեսցէ ի մեղաց։

Ո՞րպէս ո՞չ իմանան, թէ Բանին եղեւ փրկութիւն մարդկան և կենդանութիւն. այլ զի՞արդ յաւելուած որ եղեւ ի կենդանի մարմինն Բանին կենդանարար լինէր. մանաւանդ թէ առաւել մարդկութեան բնութեանս եղեւ յաւելուած՝ հաղորդութիւն և միութիւն Բանին։ Քանզի մարմինն մահկանացու եղեւ անմահ, և ի շնչաւորութենէ եղեւ հոգեւոր, և որ յերկրէ լեալ էր, վերացաւ անց ի վեր ընդ դրունս, և եղեալ յերկինս՝ նստաւ ընդ աջմէ Հօր։ Երրորդութիւն կատարեալ է, և ո՞չ ընդունի զյաւելուած և ըզ-

1. Գ օր. չունի՝ արկանեն։
2. Ցօր. ի լուսանցս դնէ Ներացելոյ, որպէս ունի և Բ օր.։

թերութիւն, այլ միշտ ի կատարելութեանն իւրում է[1] և է, և յԵրրորդութիւնն մի աստուածութիւն ճանաչի, և այսպէս յեկեղեցւոջ մի Աստուած քարոզի։ Արդ, վասն այսր ամենայնի լռեալ կարկեսցին հերձուածողքն։

Արդ, աւելորդ է և այլ ևս զհետ մտաց հերձուածողացն երթալ. քանզի մարմին էր միացեալ ընդ Բանին, և ոչ իւր մի բնութիւն Բանին աստուածութեանն և մարմնոյն, այլ ի սրբոյ[2] Աստուածածնէն Մարիամայ ճշմարտութեամբ ծընեալ, և ոչ եթէ Բանին Աստուծոյ շրջեալ և փոփոխեալ ի մարմին. այլ ի մարմնին իւրում զոր առ ի կուսէն, անքակ էր Բանն միացեալ[3]. և միանալն[4] ցուցանէ իսկ զբնութեանցն զանքակութիւն և զմիութիւն։ Իսկ արդեւք յայն ինչ դրդուեցան և գայթակղեցան, զոր Յոհաննն ասաց, «թէ Բանն մարմին եղեւ»։ Այս են միտքն զոր ասէն, և արժան է զսա միով բանիւ՝ որ ըստ նման սորա է, գտանել և մեկնել։ Գրէ այսպէս Պաւղոս, ասէ. «Քրիստոս վասն մեր եղեւ անէծք»[5]. քաւ լիցի, այլ վասն զի զմեր զանէծսն յանձն իւր ընգալաւ, և ընդ մեր անիծիցն և պարտուց՝ ինքն չարչարեցաւ. վասն այնորիկ է ասացեալ, եթէ «Քրիստոս վասն մեր անէծք եղեւ»։ Ըստ այնմ օրինակի է որ[6] ասէն, թէ «Բանն մարմին եղեւ»։ Ոչ շրջեալ փոխեցաւ ի մարմին, այլ վասն զի զմարմին վասն մեր առեալ իւր միացոյց Բանն Աստուծոյ՝ եղեւ մարդ, վասն այնորիկ ասացաւ թէ «Բանն մարմին եղեւ»։ Եւ դարձեալ, զոր ասեմքս, թէ մարդ եղեւ, նման է սա այնմ, զոր ասէ Յովել մարգարէ. «Հեղից յոգւոյ իմոյ[7] ի վերայ ամենայն մարմնոյ»[8]։ Իսկ արդ՝ ասէն ի վերայ ամենայն

1. Գ օր. դնէ էր։
2. Գ օր. սրբուհւոյ։
3. Գ օր. միաւորեցեալ.
4. Գ օր. միաւորելն։
5. Գաղատ. Գ, 13։
6. Բ օր. զոր։
7. Բ և Գ. օր. իմմէ։
8. Յովել Բ, 28։

մարմնոյ, մինչեւ ի վերայ անամնոյցն եհեղ զշնորհս հոգւոյն. այլ միայն ի վերայ մարդկան բանաւորաց. ըստ այնմ օրինակի է որ ասէ. «Բանն մարմին եղեւ»։ Եւ դարձեալ, որ ասէ եթէ մարդ եղեւ Տէրն ամենայնի. այս միտք և մեկնութիւն են, զոր ասէ աւետարանիչն Յովհան, եթէ՝ «Բանն մարմին եղեւ»։

Շատ և բաւական է բանս այս, յամօթ առնել զայնոսիկ, որք ասեն, թէ յառաջ քան ի Մարիամայ առնուլ զմարմինն, էր ընդ Բանին, և յառաջ քան զմարմնանալ Բանին Աստուծոյ, և յառաջ քան ի Մարիամայն ծնանիլն՝ բազում անգամ գալուստ ասեն Բանին Աստուծոյ յաշխարհս։ Արդ, լուեալ դադարեսցեն ընդվայրայած և անամօթ բերանք նոցա։

Եւ դարձեալ, այնք որ ասենն, եթէ՝ ոչ էր ընդունիչ մահու մարմինն. վասն զի, ասեն, յանմահութենէն Աստուծոյ էր անմահ։ Իսկ եթէ ո՛չ մեռաւ մարմինն տէրունական, զիա՞րդ Պաւղոս աւանդէր կորնթացւոց, զոր ինքն ընդալաւ. «Քրիստոս, ասէ, մեռաւ վասն մեղաց մերոց»[1], ըստ գրոց. և կամ ո՞րպէս յարեաւ, որ ոչն մեռաւ։ «Դարձցին անդրէն յետս և ամաչեսցեն ամենեքեան՝ որ խօսին զանօրէնութիւն»[2]։

Ասասցուք և առ այնոսիկ՝ որք ասեն, եթէ որ ի Մարիամայ մարմինն էր, ոչ է նա Քրիստոս և ոչ Տէր և ո՛չ Աստուած։ Թէ որպէս ասեն, և ո՛չ տէրունական մարմին էր, և ո՛չ Աստուած Բանն էր ի նմա, զիա՞րդ իսկ և իսկ ծնեալ ի Մարիամայ՝ կոչեցաւ Էմմանուէլ, որ թարգմանեալ կոչի, Ընդ մեզ Աստուած։ Որպէս դարձեալ և Պաւղոս, թէ ոչ Բանն էր ի մարմնին, զիա՞րդ Հռովմայեցւոցն գրէ. «Յորոց Քրիստոսն ըստ մարմնոյ, որ է ի վերայ ամենայնի Աստուած, օրհնեալ յաւիտեանս. ամէն»[3]։

1. Ա. Կորնթ. ԺԵ, 3։ 3. Հռովմ. Թ, 5։
2. Սղմ. ԼԴ, 4։

*Արդ, եկեալ խոստովանեսցին, թէ յանցեան և մեղան, և հաւանեալ հաւատասցեն աստուածեղէն գրոյ, մանաւանդ Թովմայի, յորժամ ետես զտեղիս բեւեռացն, մեծաձայն գոչեաց, և ասէ. «Տէր իմ և Աստուած իմ»[1]: Աստուած և Տէր փառաց, այսինքն՝ էակից Հօր Որդին՝ էր յանփառ և ի չարչարելում ի մարմնին: իսկ մարմինն չարչարեալ մեռաւ բեւեռեալ ի խաչին, և խոցեալ գեղարդեամբ, բղխէր ի կողիցն չարչարական մարմնոյն՝ ջուր և արիւն:*

*Բանին Աստուծոյ մարմինն չարչարեալ, լցեալ և միացեալ ընդ աստուածութեանն Բանին, և ըղչարչարանս իւրոյ մարմնոյն՝ Որդին միածին Աստուծոյ՝ իւր համարէր, և ինքն անախտ և անչարչար էր յիւրում մարմնի չարչարականի: Վասն այսորիկ իսկ արեգական տեսեալ, այսինքն զԲանն խաչեալ և թշնամանեալ՝ զտէրունական մարմինն, յինքն ամփոփեաց զլուսաւորութիւն ճառագայթից իւրոց, և խաւար արար ամենայն աշխարհի: Եւ դարձեալ, մարմնոյ Բանին Աստուծոյ, որ ըստ բնութեան մարմին էր մահկանացու, Բանն որ ի մարմնին էր, ի վեր քան զբնութիւն մահկանացու մարմնոյ՝ արար զմարմինն իւր անմահ, և անապականացու, և միացոյց և ջնջեաց ի մարմնոյն զբնական մահ և զապականութիւն: Վասն զի զգեցեալ և միացուցեալ զմարմին Բանն Աստուծոյ, որ ի վերն էր քան զբնութիւն մարդկան. վասն որոյ եղեւ անապական մարմին մարմինն ապականացու, և յաղթահարեցաւ մահ ի բնութեան մարմնին մահկանացուի. վասն զի Բանիւն Աստուծոյ կեանք թագաւորեցին ի նմա:*

*Ասասցուք դարձեալ և վասն այնոցիկ, որք յանդգնեալ ասեն, թէ, որպէս ի մի ի մարգարէից եմուտ ի նա Բանն. զսոսա եւս դիւրագոյն է յան-*

1. Յովհ. ի, 28:

դիմանել. վասն զի առաջի ամենեցունց ի կուսական արգանդէն ծնաւ Բանն մարմնացեալ։ Եթէ էր լինել որ իբրեւ զմի ի մարգարէիցն Քրիստոս, ընդէ՞ր ի կուսէն ծնանէր և ոչ յառնէ և ի կնոջէ, որպէս ամենայն մարգարէքն և սուրբք. և ընդէ՞ր նորա մահն ասի վասն մեր ամենեցուն, իսկ այլոց մարգարէիցն և սրբոց՝ ոչ նոյնպէս։ Եւ ընդէ՞ր միայն ի գալստեան Բանին՝, որ մարմնացաւն ի Մարիամայ, ասի, թէ ի վախճան աշխարհիս այսորիկ, խօսեցաւ ընդ մեզ Որդւովն իւրով. իսկ զայլոց մարգարէից և զսրբոց՝ որ յառաջ քան զնա էին և կամ յետոյ զիւրաքանչիւր ծննդս ծնան, և զիւրաքանչիւր զմահ մեռան, և ո՛չ ասի վասն նոցա։ Եթէ Բանն Աստուծոյ, և ոչ ի նոսա, և ոչ վասն մեր ամենեցուն զմահ ճաշակեալ. և դարձեալ, Առաքեալ ասէ. «Ամենեքեան ննջեցին, և ոչ ևս յարուցեալ ընդալան զհատուցմունս, այլ մեզ մնան»։ Իսկ ի Մարիամայն, նա միայն յերիր աւուր յարեաւ և արար փրկութիւն ամենայն տիեզերաց։ Եւ եթէ նման արդարոցն էր, ընդէ՞ր որ ի Մարիամայն ծնաւ, նա միայն ասի Էմմանուէլ, որ էր մին միացեալ և լցեալ աստուածութեամբն, ծնանէր յաստուածածին կուսէն. քանզի Էմմանուէլն՝ թարգմանեալ կոչի, Ընդ մեզ Աստուած. և դարձեալ, ամենայն սուրբք կերան և վաստակեցան և մեռան, և ո՛չ ասի, որպէս վասն նորա, եթէ եկեր, վաստակեցաւ և մեռաւ. և ոչ յինքեան ինչ պէտս, այլ վասն մեր ամենեցուն։ Եւ դարձեալ, իւրաքանչիւր ծննդեան սրբոցն, ոչինչ վասն ուրուք ի նոցանէ ասացաւ, իսկ որ ի Մարիամայս է, վասն նորա միայն է ասացեալն, թէ «Բանն մարմին եղեւ»։ Որով երեւեցաւ թէ առ սուրբսն տուաւ. ի Բանէն Աստուծոյ շնորհք մարգարէութեան. իսկ որ ի Մարիամայն է, ինքն Բանն իւր մարմին ա՛ռ և ծնաւ մարդ կատարեալ, ըստ բնութեանն

և ըստ էութեանն Բան Աստուծոյ և հաւասար Հօր, և ըստ մարմնոյ՝ ի զաւակէ Դաւթի և ի մարմնոյն Մարիամայ մարդ եղեալ. որպէս և ասաց Պաւղոս ի սկզբան Հռովմայեցւոց թղթին։ Զսա և Հայր եցոյց յէջն Յորդանանու, և ի Թափովրական լերինն, և ասէ. «Սա է որդի իմ սիրելի, ընդ որ հաճեցայ»[1]։ Զսա արիանոսք և հերձուածողք ուրացան, մեք հաւատացեալ երկրպագեմք, և ոչ բաժանեմք զՈրդի ուրոյն և զԲանն ուրոյն[2], այլ զնոյն ինքն զԲանն գիտեմք ճշմարիտ Որդի Աստուծոյ, որով ամենայն ինչ եղեւ և մեք փըրկեցաք և տիեզերք ամենայն Հօր փառաբանութիւն մատուցանեն։

Այլ ես ընդ այս զարմացեալ էի, թէ որ այսչափ յայտնի եղեն իրք, և ի հարցն Նիկեայ դաւանեցան հաւատք, զի՞արդ դուք գայք ի մեծ հակառակութիւն, մինչեւ առ մեզ եւս հասանել։

Այլ փառք Աստուծոյ, զի թէպէտեւ տրտմեցուցէք ի վերայ գրեցելոցն և մեկնութեանցն, եւս առաւել ուրախ եղաք վասն այնոցիկ, որ եկին ի ձէնջ առ մեզ. զի միաբանեցան ընդ մեզ և խաղաղութեամբ արձակեցան առ ձեզ, խոստովանելով զբարեպաշտութեան և զուղղափառութեան հաւատս։ Եւ զայս զոր գրեցի առ ձեզ, ոչ բազում ընդ միտ ածելով, այլ սակաւ բանիւք հարկեցայ գրել, զի մի՛ լռութեամբ տրտմեցուցից զձեզ, այլ ի ձեռն սակաւ գրելոցս, միաբանեալ ընդ ձեզ, ուրախութիւն ընգալցուք։

Այլ աղաչեմ՝ յառաջ զաստուածասէր լաւութիւնդ քո. և երկրորդ անգամ զայնոսիկ, որք լսեն զբանս թղթոյդ, հանդերձ մտերմութեամբ ընդունել զասացեալսդ։ Եւ եթէ իցէ պակաս ինչ և նուազ դէմք ասացելոցդ, դուք եղբայրաբար

1. Մատթ. Գ, 17։
2. Գ. օր. դնէ՝ զՈրդի ուրոյն և զԲան ուրոյն։

ուղղեսջիք, և տաջիք բերել։ Եւ եթէ ինչ տգիտաբար դիր բանիցդ, որ ոչ ունիցի զարժանն կատարելութեան, շնորհեցէք մեզ, գիտացեալ զամենեցունց զբնութեան մարմնոց զտկարութիւն և զտգիտութիւն. զի հաւատով փառաւորեսցուք զամենեցունցն զԱստուած, այլ ո՛չ եթէ քննութեամբք ինչ ի վերայ բնութեան աստուածութեանն համանել կարիցեմք։

Ողջունեա՛ զամենեսեան որ ընդ քեզ եղբարք. զքեզ՝ որ ընդ մեզ ամենեքեան, ողջունեն։ Զօրացեալ Տերամբ Նահատակիցիս, սիրելի։

# ԻԱ

## ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ

### ԱՌ ՅՈՎԲԻԱՆՈՍ ԹԱԳԱՒՈՐ ՎԱՍՆ ՀԱՒԱՏՈՅ

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ի վերայ մկրտութեան օրինադրելով, զատոյգ և զճախարակեալ հաւատոյ սահման արար ասելովն սրբոց Առաքելոց. «Գնացէք աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ». ապա ուրեմն հաւատով կատարելութիւն ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին։ Արդ, սրբոյ Երրորդութեանն յաւելուած ոչ ընկալեալ ամենայն իրօք, զի և հաճութեամբ Հօր կամաւորութեամբ հաղորդ եղեալ[1] որոյ ի մեղս միածինն Նորա Բանն, ի Հոգւոյ սրբոյ և ի Մարիամայ կուսէ և մօրէ, մի դարձեալ է Որդի հանդերձ առեցելովն միաւորութեամբ տնօրէնութեամբ. քանզի համանգամայն մարմին, համանգամայն Աստուծոյ Բանին մարմին, և համանգամայն հոգեւոր բանական. քանզի նովաւ և զգոյութիւն ունէր։ Ուստի իրաւամբք յաւէտ և ճշմարտապէս Նորին Տեառնն իւր և ոչ այլոյ ուրուք առեալքն[2] խոստովանեցին։ Քանզի նախ Տէրն ընդ նմա աստուածապէս, և յայնժամ ի նմանէ նոյն ինքն տնօրինաբար մանուկն։ վասն որոյ և կոյս մայրն՝ որպէս Աստուածածին՝ սուրբն Մարիամ։ Արդ, մի յաւէտ վայելուչ է ասել և խոստովանել զԲանին բնութիւն և անձնաւորութիւն մարմնացեալ, և կատարելապէս մարդացեալ։ Եւ որ ոք զայս ոչ ասէ, աստուածամարտ է և սրբոց հարց պատերազմիչ։

1. Բ. հաղորդեալ։ 2. Յօր. առաքեալն, ուղղեցաւ ըԲ օր.։

# ԻԲ

## ԹՈՒՂԹ

## ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

### ԱՌ ՅՈՒՍՏԻՆԷ ՅԱՓՐԻԿԷ *

Ես այսպէս կարծէի, եթէ աղանդն եղկեացւոց[1] ի վաղուց հետէ չիջեալ խափանեցաւ. իսկ դա աւադիկ արմատ դառնութեան[2] ի վեր երեւեալ, զբազումս ջանայ ապականել. ուստի և քում[3] աստուածսիրութեանդ մեղադիր[4] եղեալք՝ լսելով զայդպիսի չարահոտութիւն աղանդոյդ, որք համարձակեցան ասել, եթէ յետ հրաժարելոյ մարդկան աստի, ոչ կարեն պատարագք և ողորմութիւնք օգնել և սրբել զգնացեալսն, և շնորհել նոցա թողութիւն։ Քանզի այսպիսի բանք հայհոյութեան հեթանոսաց վայել են և ոչ հաւատացելոց[5] քրիստոնէից։ Զի եթէ զայր թագաւոր ածէր[6] ոք ի հաւան, և լուծանել հրամայէր[7] զկալանաւորսն. իսկ որք[8] ի քրէական մետաղոն իցեն ըմբռնեալ[9] մեծամեղքն, զորոց ոչ ոք ի նոցանէ յիշել իշ-

* Ճ. Գ և Ճ. ԻԲ դնեն՝ առ Աւգոստինէ յԱֆրիկէ։
1. Ճ. ԻԲ եկեղեցացւոց։
2. Ճ. ԻԲ և Ճ. Գ յաւելուն դարձեալ։
3. Ճ. ԻԲ քո խոկ։
4. Ճ. ԻԲ յոյժ մեղադրէր։
5. Ճ. Գ հաստատացելոց։
6. Ճ. ԻԲ ածէ։
7. Ճ. ԻԲ հրամայէ։
8. Ճ. ԻԲ և Ճ. Գ և որք։
9. Ճ. ԻԲ ստորերեալք լինին։

խօսցէ առաջի Թագաւորին[1]. ապա եթէ[2] որ համարձակութիւն ունիցի առ Թագաւորն[3], և զորդի Թագաւորին բարեխօս ունիցի[4] հօրն, ոչ ապաքէն զամենայն շնորհեսցէ[5] Թագաւորն, և արձակէ յայնպիսի չար[6] և դառն տանջանաց։ Արդ ես առաւել Հայրն երկնաւոր, շնորհէ մարդկան զյանցանս նոցա[7]. յորժամ զենմամբ Քրիստոսի առաջի անկանիմք[8], Ներէ և Թողու գնացելոյն[9], միայն եթէ մեք ջերմութեամբ մատչիցիմք և աղաչիցեմք[10] զանբաւ մարդասիրութիւնն Աստուծոյ[11]։

1. Ճ. ԻԲ որ և յիշեցուցանել ած չէչխէ վայրագոր գնոցանէ Թագաւորէն. իսկ Ճ. Գ յիշել ած գնոցանէ չէչխէ վայրագոր առաջի Թագաւորէն։
2. Ճ. ԻԲ խօսի ապա եթէ։
3. Ճ. ԻԲ չունի առ Թագաւորն։
4. Ճ. ԻԲ առնիցէ։
5. Ճ. ԻԲ և Ճ. Գ շնորհէ
6. Ճ. ԻԲ չարաչար։
7. Ճ. ԻԲ և Ճ. Գ չունին։
8. Ճ. ԻԲ յաւելու նմա։
9. Ճ. ԻԲ և Թողութեան գնացելոյ շնորհէ։
10. Ճ. ԻԲ դնէ միայն՝ աղաչեսցուք. իսկ Ճ. Գ աղաչեսցուք։
11. Ճ. Գ. Նորա, այսպէս է և Ճ. ԻԲ որ յաւելու՝ նմա փառք յաւիտեանս։

# ԻԳ

## ԵՐ. ԱԹԱՆԱՍԻ ԱՍԱՑԵԱԼ

## ՀԱՐՑՄՈՒՆՔ ՎԱՅԵԼՈՒՉՔ

### ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ՀՈԳԵՇԱՀՔ

**Ա**ᶦᶦ. **ՀԱՐՑՈՒՄՆ**. *Քանզի ոչ ոք յաշխարհիս այսմիկ եկեալ ոք ի մեռելոց պատմեաց վասն ոգւոց մարդկան բան ինչ ուսուցանել, վասն այդմիկ հարցանեմք զարքունութիւնդ քո, ո՛վ երանելի հայր*[1]:

**ՊԱՏԱՍԽԱՆԻ**. *Հոգի մարդոյ գոյութիւն է իմանալի, անմարմին և անտեսանելի, ի նմանութիւն հրշտակաց ընդունող, և ոչ իբրեւ հրշտակ*[2] *գոյացեալ [ըստ չաղփաղփութեան Որոգինի ասացուածոյն]*[3], *և ոչ նախ քան զմարմին էին հոգիք, որպէս Մանիքեցիքն չարաբար աւանդեցին,*

1. Գ. Դ և Ե *օրինակք, զայս սկսուած ունին այսու վերնագրով*. Երանելւոյն Աթանասի արքեպիսկոպոսի աղեքսանդրացւոյ, հարցմունք վայելուչք եւ պատասխանիք Կիւրղի Երուսաղէմի հայրապետին, յաղագս մակացութեան եւ հանճարոյ:

**Ա. Հարց.** *Հետեւեալն համարիմ ընդ այս երեք բանս (Ե. օր. ըՈդ այս բաՈս), և այս այնուհետեւ է մեզ գալ, յանէ բազմաց խնդրելի եղեւ վասն այսմ էր է ծննդեանց և երկառանելի երկպառակութեան (Ե. օր. երկուաՈալ երկպառակութեամբ), և առաջեօ եւ, զի այսպէս էջէ՞ զխորանացս ոգի մարդոյ, եթէ առաջի՞ հաստատեցաւ, և ընդէ՞ր ոչ է մարդկանէ ոչ եկն յաշխարհս յայս ի մեռելոց, պատմեաց մեզ և հաստատարմացոյց վասն ոգւոց մարդկան բան ինչ ուսուցանել. վասն այդմիկ հարցանեմ ընդ արքունեանդ քո, ո՛վ երանելի հայր:*

*Աստանօր արժան է գիտել զի առհասարակ ամենայն գրչագիրք մեր սկսանին այդու հարցմամբ, դնելով առընթեր* **Ա**. *Հարցումն, և որ ի կարգին. այլ զի համեմատի սա ԺԶ հարցման յոյն բնագրին, արժան համարեցաք նշանակել այսպէս՝* **Ա**ᶦᶦ. *Հարցումն, կամելով իմն ցուցանել այսու՝ եթէ* **Ա** *Հարցումն հայ գրչագրաց, հմմ. ԺԶ Հարցմանն յոյն բնագրին, այդպէս ունիս իմանալ և ի յաջորդսն:*

2. Դ և Ե *օր. դնեն զհոգի:*

3. *Պակասէր յօրինակին, յաւելաւ յԳ. Դ և Ե օրինակաց:*

այլ յօրինակ քարի և երկաթոյ, որ ընդ միմեանս հարկանելով յերկոցունց անդի հուր ծնանի, այնպէս յառնէ և ի կնոջէ հաստատի հոգին հրամանաւն Աստուծոյ: [Եւ հաւան առնէ զքեզ աստուածային առաքեալն Պաւղոս, որ ասէ. «Սերմանի մարմին շնչաւոր, և յառնէ մարմին հոգեւոր»[1], յայտ է թէ յաւուրն դատաստանի][2].

Բ^ժԵ. ՀԱՐՑ. Ուստի՞ յայտ է թէ ի ժամանակի մահուն ոչ մեռանի հոգին ընդ մարմնոյն:

ՊԱՏՍԽ. Բանն Աստուած յայտնապէս ուսուցանէ մեզ վասն մահու մարմնոյն և կենդանութեան հոգւոյն, ասէ. «Մի՛ երկնչիք յայնցանէ որ սպանանեն զմարմինն և զոգին ոչ կարեն սպանանել»[3], յայտ է, զի անմահ է[4]:

Գ^ժԶ. ՀԱՐՑ. Ո՞ր աղագաւ բաժանի հոգին ի մարմնոյն.

ՊԱՏՍԽ. Ի չորից գոյութեանց հաստատեցաւ մարմին մարդոյն, յարենէ, ի մաղձէ, ի մաղասէ[5] և ի հիւթոյ, այսինքն՝ ի ջրոյ: Ի վերայ չորից գոյութեանց հաստատի մարմին մարդոյն, և ի նմանութիւն աղաւնոյ ի ներքս[6] ի մարմինն բնակեալ է Հոգին: Իսկ ի ժամ մահուն հրամանաւ Աստուծոյ բաժանին չորք գոյութիւնքս[7] այս, [որպէս քակտել տան զքարշապինդ որմունս][8], և ելանէ անդստին աղաւնին արգելեալ, որ է օրինակ հոգւոյ մարդոյ, և զկնի հոգւոյն բաժանելոյ ի մարմնոյն[9], արիւնն ցամաքի [որ է ջերմ և կենդանարգոյն գոյութիւն][10]: Ուստի մեռեալ մարմինք զկնի մահուանն ոչ ունին արիւն, այլ զմաղասն և զմաղձն և զհիւթ ջրոյն կուտեալ:

1. Ա. Կորնթ. ԺԵ, 44:
2. Փակագծեալդ յաւելաւ յԳ, Դ և Ե օրինակաց:
3. Ղուկ, ԺԲ, 10:
4. Այլ օրինակք յաւելուն և անշարժաշարժելի:
5. Բ. օր. ի մաղձոյ, ի մաղասոյ:
6. Բ. օր. ի ներս:
7. Դ և Ե օր. գոյացութիւնք:
8. Փակագծեալդ յաւելաւ յԲ և Գ օր.:
9. Այլ օրինակք՝ ի մարդոյն:
10. Փակագծեալդ յաւելաւ յԳ. Դ և Ե օր.:

Դ՛Թ. ՀԱՐՑ. Ո՞ւր արդեաւք իցեն երթելոց ոգիք մարդկան:

ՊԱՏԱՍԽ. [Օտար և աՀաւոր է Հարցումնդ այդ և ծածկեալ ի մարդկանէ. քանզի յայնցանէ ոյք անդ երթեալ իցեն՝ ո՛չ Հրամայեաց Աստուած գալ այսր, թէ ո՞ւր կամ ո՞րպէս իցեն անդ Հոգիքն][1]: Արդ որպէս ի գրոց ուսանիմք, այսպէս գիտեմք, զի ոգիք մեղաւորաց ի դժոխս իցեն՝ ի ներքոյ երկրի և ծովու, որպէս ասէ ի տաղ սաղմոսին. «Եդին զիս ի գբի ներքնումն» [և այլ՝ թէ «փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց»[2]. և Յոբ ասէ][3] «յերկիր խաւարային, ի միջի ուր ոչ գոյ ճաճանչ արփոյ»[4]. այսմ վկայէ՝ և ի գիրսն Եպիփանու: Իսկ Հոգիք արդարոցն զկնի գալստեանն Քրիստոսի առ մարդիկ, որպէս ուսաք յաւազակէ անտի, ի դրախտի անդ իցեն. զի ոչ եթէ Աստուած աւազակին միայն եբաց զդրախտն, այլ ամենայն ոգեաց սրբոց և արդարոց,

Ե՛. ՀԱՐՑ. Եւ ապա զի՞նչ, ընկալա՞ն միանգամ[5] արդարք զբարին և մեղաւորք զտանջանս:

ՊԱՏԱՍԽ. Ո՛չ երբեք, այլ ունին խնդութիւն և ուրախութիւն ոգիք սրբոցն, և մասնաւոր վայելումն, նոյնպէս և տրտմութիւն մեղաւորացն զոր ունին՝ մասնաւոր տանջանք իցէ: Զոր օրինակ Հրաւիրէ մեծատուն ոք զոմանս, զի ուտիցեն ճաշ ընդ նմա, և նոքա ակն ունիցին վայելեալ ի պէսպէս խորտկաց. սոյնպէս և ոյք մեղանչականքն իցեն, ա՛կն ունին տանջանաց, զաւուրս իւրեանց ահով և տրտմութեամբ անցուցանեն, այնպէս պարտ է իմանալ, և վասն ոգեացն անդր գնացելոցն արդարոց և մեղաւորաց:

Զ՛. [ՀԱՐՑ. Իսկ եթէ այդպէս ասացեր, զի

1. Փակագծեալդ յաւելաւ յԳ. Դ և Ե օր.:
2. Սղմ. ՁԶ, 7:
3. Փակագծիւ նշանակեալդ լրացաւ յԳ և Դ օր.:
4. Յոբ Ժ, 12:
5. Գ. Դ և Ե օր. դնեն ժամանակայն:

ոչ ոգիք արդարոց յարքայութիւն մտանեն՝ և ոչ մեղաւորացն ի տանջանս դժոխոց, զիա՞րդ ապա վասն մեծատանն և Ղազարու լսեմք ի Քրիստոսէ ի ձեռն սուրբ աւետարանին, որ ասէ՝ զի մեծատունն ի հուր դժոխոց պապակէր և աղաչէր զԱբրահամ առաքել զՂազարոս, որպէս և լուաք։

ՊԱՏԱՍԽ. Առակօք խօսեցաւ զայդ Քրիստոս, զոր օրինակ վասն կուսանացն և վասն այլոցն։ Եւ արդ, զի ոչ եղեւ գործն Ղազարու արդեամբք, քանզի որք տանջելոց են ի դժոխոց, տեսանեն զարդարսն որք առ Աբրահամու վայելեն յարքայութեան. բայց զմիմեանս ոչ է հնար մեղաւորացն տեսանել. և այդ է անհնարին տանջանք մեղաւորացն, որք զանձինս իւրեանց միայն տեսանեն։ իսկ արդարքն ոչ միայն զիւրեանց ազգականսն տեսանեն այլ և զամենայն արդարսն. որպէս ի Թափորական լերինն ծանեան առաքեալքն զՄովսէս և զԵղիա։ իսկ մեղաւորքն տեսանեն զամենայն արդարսն ի փառս և ինքեանք զմիմեանս ոչ տեսանեն, զի մի՛ մխիթարեսցին. իսկ արդարքն տեսանեն զմիմեանս և զմեղաւորսն][1]։

ԷԺԳ. ՀԱՐՑ. Ճանաչիցե՞ն արդեւք անդ եղբայր զեղբայր, կամ հայր զորդի, կամ բարեկամ զբարեկամ։

ՊԱՏԱՍԽ. [Ճանաչումն ի պատկերին տեսութենէն նշանակի[2], իսկ հոգիքն անմարմինք են և միմեանց նմանք. զոր օրինակ մեղուք միմեանց նմանք են և հաւասար[3] երեւին ամենայն աչաց][4]։ Արդարոցն եւ ճանաչել Քրիստոս զմիմեանս, իսկ որք ի դժոխս իցեն մեղաւորքն՝ նոցա ո՛չ եւս։

ԸԺԴ. ՀԱՐՑ. Եւ արդ՝ եթէ նախ քան զգա-

1. Փակագծեալդ յաւելաւ յԲ. Գ. Դ և Ե օր.։ յԲ. Գ. Դ և Ե օրինակաց։
2. Դ և Ե օր. չէնէ։
3. Փակագծեալդ յաւելաւ
4. Բ օր. որպէս մեղու ճանաչէ մինն է միայն, այլ մա- կերպ։

լուսոն ո՞չ ճանաչէին հոգիք մեղաւորացն զմիմեանըս, ապա և ո՞չ յետ յարութեանն ճանաչեն, ասա՛ ։

ՊԱՏՍԽ. Եւ ո՛չ յետ յարութեանն ճանաչեն ասէ ։ [Վասն որ յապականութենէ անցք անցանեն ընդ մարմին մեր, վասն այնր ոչ ճանաչեմք զմիմեանս ։ Ի յարութեան մեռելոց ընդ գոյս սերմանցս և ապականութիւն խորտակի և որպէս յառաջին Աստուած մի մարդ ստեղծ և մի կերպ, այնպէս վերստին զամենայն մարդիկ պատրաստէ մի կերպով յառնել ի մեռելոց՝ մեծութեամբ և փոքրկութեամբ. վասն այնորիկ ի յարութեան ոչ գոյ արու և ոչ էգ, ոչ մեծ և ոչ փոքր ։ Եւ զիա՞րդ հնար է ճանաչել հայր զմանուկ իւր՝ յորժամ տղայ մեռանի և երեսնամեայ յառնէ, որպէս և Քրիստոս երեսնամեայ մկրտեցաւ. կամ զիա՞րդ ճանաչի եթովպացի մեռանել՝ սպիտակ յառնել. կամ որ կոյր մեռանիցի՝ և յառնէ աչօք, կամ մեռանի անդամալոյծ՝ և յառնէ ամբողջ ։ Ապա թէ յաղագս այսորիկ երկպառակիս և անհաւատալի լինիս համարեալ զասացեալս, լուր Քրիստոսի զի ասէ, « Ի յարութեանն ոչ արք կանայս առնեն և ոչ կանայք արանց լինին »[1] ։ Արդ որպէս հրեշտակք միակերպ են և միաձեւ, այնպէս հաւատացուք բնութեան մերում ի յարութեան անապական լինել ։ Զոր օրինակ զհատ ցորենոյ հասկ արար Աստուած, և դարձեալ ի հասկէն լինի հատ, և դարձեալ սերմանի՝ և ապականեալն լինի հասկ, այնպէս և զմարդն արարեալ Աստուած ի սկզբանէ, եթէ զպատուիրան Նորա պահեալ էր, անապական իսկ եղեալ էր. այլ նա ի ձեռն պատուիրանազանցութեան եղեւ ապականացու, անկաւ ի ձեռն մահուն, թաղեցաւ յեր-

1. Մտթ. ԻԲ, 30 ։

*կէր, վերաբուսանի և լինի անապական որպէս յառաջագոյն ստեղծաւ]*[1]։

**Թ**ᴵᴵ. ՀԱՐՑ. *Արդ՝ ուրեմն այց արասցեն երբեք ոգիք յետ գնալոյ նոցա յաշխարհէս յայս, թէ ոչ։*

ՊԱՏԱՍԽ. *Ո՛չ երբեք. լուր մարգարէին Դաւթի որ ասէ, «Մարդոյ որպէս խոտոյ են աւուրք իւր, որպէս ծաղիկ վայրի այնպէս ծաղկի, չնչէ ի նմա հողմ, և ոչ է, և ոչ ևս երևի տեղի նորա»*[2]։

**Ժ**ᴵ. ՀԱՐՑ. *Իսկ եթէ այդպէս իցէ, զի՞արդ ապա սուրբք երևին ի տաճարս իւրեանց բազում անգամ։*

ՊԱՏԱՍԽ. *Արդ՝ յորժամ ի տաճարս և ի գերեզմանս լինիցի երևումն սրբոց արանց, ոչ եթէ ի ձեռն ոգւոց նոցա լինիցի, այլ ի ձեռն հրշտա-*

1. Փակագծեալդ յաւելաւ յԳ. օրինակէն. — Բ. օր. զայդ հարցումնդ՝ վասն որ, այսպէս համառօտէ ըստ իւրոյ ոճոյն. Հարց. Վասն ո՞յր ոչ ճանաչեմք զմիմեանս, որ յապականութենէն անցանեն ընդ մարմնոյ մեր։ Պատասխ. Յարութեան մեռելոցն ընդ աներման և ապականութեան խորհրդոյն (*), և ամենեքեան Ադամայ կերպովն յառնեն, վասն այնորիկ ոչ գոյ արու և ոչ էգ, ոչ մեծ և ոչ փոքր. զի՞արդ հնար է ճանաչել հօր զորդի իւր, որդւոյ զմայրն և երեխայից յարուցեալ, կամ որդի զհայր ալեօք մեռեալ և երեխնամեայ յարուցեալ. այլ լինին որպէս զհրեշտակ Աստուծոյ. և հրեշտակք հաւր են մայրն և մանկերդ. այնպէս հաւասարացեալ և բնութեան մերում յանապականելի յարութեան, որ յառաջն էին ստեղծաւ։ Զոյն Դ և Ե օրինակք ունին այսպէս.

*Հարց.* Զի՞արդ ճանաչէ յորժամ որդւոյ մեռանի և յառնէ երեխամեայ, և սեաւ է մեռեալ կամ խորշեալ, և յառնէ ողջերակ։ Պատասխ. Զոր օրինակ զցորեանն հատ արար Աստուած և ի հասկէն լինի հատ. և զարմեալ հատ սերմանի, և ապականեալ՝ անդրէն լինի հասկ. այնպէս և զմարդն արար Աստուած ի սկզբանէ, և եթէ զպատուիրանն պահեալ էր, անապական իսկ էր լեալ. իսկ նա ոչ պահեաց զպատուիրանն, եղև ապականացու, անկաւ ի մահ և թաղեցաւ յերկիր. իսկ ի յարութեանն վերաբուսանի և լինի անապական որպէս յառաջն ստեղծաւ։

2. Սղմ. ՃԲ, 15։

կայ որբոց ։ Ասա դու ցիս. մի՞ գոյութիւն հոգւոյ երանելոյն Պետրոսի և Պաւղոսի, ի նոյն ի մի ժամու յական թօթափել երեւենա՞լ[1] ի տեղիս բազումս, ի բիւր տաճարս նոցա, ընդ ամենայն երկիր. և ո՛չ հրշտակ կարէ առնել զայդ, բայց եթէ միայն Աստուծոյ է հնար առնել զայդ, զի յերկու տեղիս և ամենայն ուրեք երեւեսցի ։ իսկ[2] իմանալի զօրութիւնքն՝ յորժամ ի սպասաւորութիւն ինչ առաքին՝ պակասին յերկնային փառաբանութենէ անդի ։

ԺԱիէ. ՀԱՐՑ. Զի՞նչ լաւագոյն առաւելապէս կերպս բերէ հրշտակաց՝ քան զհոգիս մարդկան ։

ՊԱՏՍԽ. Երեք գոյութիւն անհասանելի է քան զմարդկան, [զոր ոչ ոք երբեք կարացէ տեսանել ի վերայ երկրի][3] . ասեմ իսկ զԱստուծոյ, զհրշտակի և զհոգւոյ. զի որչափ պայծառ և լաւագոյն է արեգակն քան զլուսին, այնչափ առաւելապէս լաւագոյն է գոյութիւն հրշտակաց քան զմարդկան ։

ԺԲիը. ՀԱՐՑ. Զիա՞րդ մարգարէքն բազում անգամ տեսանէին զԱստուած ։

ՊԱՏՍԽ. Յետ մարգարէիցն և յետ յարութեանն Քրիստոսի, Յովհաննէս աստուածաբան ասէ. «զԱստուած ոչ ոք երբեք ետես, բայց միածին որդին՝ որ է ի ծոց Հօր»[4]. և Պաւղոս ասէ. «Զոր ոչ ոք ետես ի մարդկանէ, և ոչ տեսանել ոք կարող է»[5]. քանզի ոչ եթէ նոքա մերկ զգոյութիւնն Աստուծոյ տեսանէին, այլ ըստ տկարութեան մարդկային աչաց[6] զիջանելով՝ Աստուած կերպարանէր, և [որ յայնժամ անմարմին էր և առանց

1. Գ և Դ օր. երեւանալ ։
2. Գ, Դ և Ե օր. չէ և ։
3. Փակագծեալդ յաւելեալ յ՚Գ, Դ և Ե. օրինակաց ։
4. Յովհ. Ա, 18 ։
5. Տիմ. Զ, 16 ։
6. Գ, Դ և Ե. օր. ըստ կարողութեան մարդկանց ։

անդամոց,][1] որպէս մարդ Նոյա երեւէր[2], զի ոչ տեսանէին զգոյութիւնն այլ զփառս: Սոյնպէս և վասն Հրշտակաց, և յաղագս մերկ հոգեաց պարտ է զայս իմանալ: Բայց միայն Աստուածածինն Մարիամ, տեսեալ առսկ գոյութիւն հրշտակի, այսինքն է զԳաբրիէլ:

ԺԳԻԹ. ՀԱՐՑ. Զի՞նչ արդեօք, ապա և ո՞չ հրշտակք ըստ գոյութեանն երեւին մարդկան:

ՊԱՏԱՍԽ. Ո՛չ երբեք. քանզի ոչ զօրէ աչք ապականացու տեսանել զգոյութիւն անապական, [և ոչ աստանօր ստուգապէս է տեսանել][3]. զի ոչ ըստ գոյութեան իւրեանց երեւին մեզ հրշտակք, այլ ի կերպս երիտասարդի զանձինս իւրեանց երեւեցուցանեն:

ԺԳԼ. ՀԱՐՑ. Զի՞նչ իցէ կամ որպիսի՞ սահման գոյութեան հրշտակի անմարմնոյ:

ՊԱՏԱՍԽ. Հրշտակն կենդանի գոյութիւն իցէ, բանաւոր և աննիւթ, օրհնաբանող և անմահ:

ԺԵԼԱ. ՀԱՐՑ. Զի՞նչ իցէ գործ յերկինս զօրաց Երկնաւորաց:

ՊԱՏԱՍԽ. Օրհնաբանութիւն անդադար, և գըղձանք[4] հանապազորդ կալ առաջի մեծվայելչութեանն[5] Աստուծոյ, թերեւս աղաչանս ցաւագինս մատուցանեն վասն փրկութեան մերում: [6][Քանզի և դասքդ այդոքիկ ըստ իւրաքանչիւր պէտս են կարգեալ. դասք վարդապետութեան[7], դասք շուրջ

1. փակագծեալդ յաւելու յ'Գ, Դ և Ե. օրինակաց:
2. Գ, Դ և Ե. օր. յաւելուն աստէն՝ ի յերա մարմնոյ:
3. փակագծեալդ յաւելու յ'Գ, Դ և Ե օրինակաց:
4. Գ, Դ, Ե և Զ օր. ունին ըղձանք. իսկ Բ. օր. ունի բաղձանք:
5. Բ. օր չունի. մեծվայելչութեանն... և դնէ՝ վասն փրկութեան մարդկան ըստ խորատանչեաց:
6. փակագծեալդ պակասէր յօր. յաւելու յ'Գ օրինակէն:
7. Դ և Ե. օր. վարդապետականք:

կանգնելով, դասք իմացողականք[1], դասք պահպանողականք, դասք սպասաւորականք, դասք տանջողականք, դասք հոգւոց ուանդողք[2], դասք պատերազմականք[3], դասք մարդկան վերակացուք։ Եւ այսպէս դասք զանազանք զերկնային զուարթունսն ճանաչեսցուք[4] կացութեամբ և կարգօք։ Իսկ զաթոռք և զքերովբէք՝ առանց միջոյ աստուածութեանն[5] ճանաչեմք, զի ի վեր են քան զամենայն և մերձ են առ Աստուած։ Իսկ սերովբէքն ուսուցանեն զստորադոյնն ազգք և դասք, և այնպիսի կարգ վերնագոյն. իսկ ցածագոյն դասքն՝ հրեշտակք սուրբք են, որք են վերակացուք մարդկան]։

ԺԶ[ա]. ՀԱՐՑ. Իսկ բնաւ յիշե՞ն զմեզ հոգիքն երթեալքն ի մէնջ. որպէս և հրշտակք յիշե՞ն, թէ ո՛չ։

ՊԱՏՍԽ. Յիշեն, ասէ, հոգիք սրբոցն յամենայն ժամ. իսկ մեղաւորացն՝ որ ի դժոխսն իցեն, նա և ոչ զԱստուած յիշեն, թող թէ զմեզ. լուր յաղագս այդորիկ թէ զինչ ասէ երանելին Դաւիթ. «Ոչ ոք է որ ի մահու յիշէ զքեզ, կամ ի դժոխս խոստովան առնի առ քեզ»[6]. և դարձեալ, «Ոչ մեռեալք օրհնեսցեն զքեզ, և ոչ այնոքիկ որ իջանեն ի դժոխս»[7]։

ԺԷ[ա]. ՀԱՐՑ. Զի՞նչ արդեւք իցէ անդ յառաջ երթեալ հոգւոց ննջեցելոց։

ՊԱՏՍԽ. Յորժամ հոգին ի մարմնոյն բաժանի, ոչ բարի ինչ գործէ, և ոչ չար. զոր օրինակ նուագարանն՝ յորժամ ոչ իցէ ոք որ հարկանէ զտաւիղն, խափանեալ տեսանի և առանց գործոյ, այնպէս մարմինն և հոգին՝ որ ի միմեանց բաժանին՝ ոչինչ կարասցեն գործել։ Իսկ հոգիք սրբ-

1. Բ. օր. խմացականք։
2. Բ. օր. ռանդք։
3. Բ. օր. պատմողականք։
4. Բ. օր. ծանեաք։
5. Գ. օր. տարտամութեամբն. իսկ Բ օր. ծոյլ ոմանք և տեղովքեք տանոց միջոց են յատարածութեանն. Ե. օր. տանոց միջոցէ։
6. Սաղմ. Զ, 6։
7. Եսայի ԼԸ, 18։

*բոցն ի Հոգւոյն սրբոյ ներգործեալք՝ ընդ հրշտակս յերկրին կենդանեաց զԱստուած օրհնաբանեն և ցնծան ։*

ԺԸու. ՀԱՐՑ. *Զի՞նչ արդեւք ապա, ո՞չ իմանան ոգիք մեղաւորաց յորժամ լինիցի վասն նոցա ողորմութիւն և պատարագ ։*

ՊԱՏՍԽ. *Որք ճշմարիտ հաւատով են վախճանեալ, թէ և յանցեալ իցեն ի տկարութենէ մարմնոյ, և դարձեալ գայցեն ի միտս իւրեանց և յապաշխարութիւն ընթանան, և ի չափ երից ժամու ժամանակի ի բաց կացցէ ի մեղաց և ի կենցաղոյս յայսմանէ, ամենայն ինչ որ լինի վասն նոցա, ընդունելի և օգտակար է ։ Զոր օրինակ յորժամ՝ այգին ծաղկեսցի յագարակի անդ, ազդ լինիցի[1] գինւոյն՝ որք յամանս ածեալ են[2], այնպէս և մեղաւորաց, յորժամ լինիցի վասն նոցա ողորմութիւն և պատարագ անարիւն ։*

ԺԹն. ՀԱՐՑ. *Արդ, հնա՞ր ինչ իցէ իմանալ, թէ վասն է՞ր ոչ թողեալ Աստուած ի հոգեացն երթելոց գալ այսրէն, և պատմել մեզ առ յօգտութիւն մերում, թէ զի՞արդ կամ՝ որպիսի՞ իցեն անդ նեղութիւնք[3] ։*

ՊԱՏՍԽ. *Բազում մոլորութիւնք ծնանելոց էին անտի. քանզի դեւք այնուհետեւ ի ձեւս մարդկան փոխանձեւեալ[4] էին և ասացեալ՝ թէ յարեաք իսկ ի մեռելոց. և բազում ինչ սուտ պատմեալ էին և չար հերձուած սերմանեալ[5], առ ի մոլորութիւն և ի կորուստ մեզ հաւատացելոցս ։*

Իու. ՀԱՐՑ. *Լաւագո՞յն էր մարդոյ եթէ կարէր գիտել զօր հանգստեան իւրոյ ։*

ՊԱՏՍԽ. *Եթէ Աստուած զամենայն առ ի յօգտութիւն մարդկան աւանդեաց[6], նա եւ ոչ զայս իսկ*

1. Այս է՝ հոտն ։
2. Իմա՛ որ է հասու խաղողոյ էն ։
3. Գ, Դ և Ե. օր. առ ի յօգտութիւն մեզ. Իսկ զի՞արդ մնիցեն կերպն ի դժոխս ։
4. Գ, Դ և Ե. օր. փոխանձեւեալք ։
5. Գ և Դ օր. յաւելուն՝ վասն հեշտութեան կենցաղոյս ։
6. Բ և Զ. օր. Սահմանեաց ։

թողացուցեալ ունէր, եթէ օգտութիւն ինչ[1] լինել աստանօր գիտացեալ էր։ Քանզի թէ որ գիտէր զօր մահուն իւրոյ, զամենայն աւուրս կենաց իւրոց մեղանչէր՝ առանց երկիւղի և առանց ողորմութեան, և չարիս բազում գործէր. և եթէ չառ ինչ՝ ոչ առաւելագոյն քան զերիս աւուրս յառաջ զանձայր յապաշխարութիւն, զի՞նչ շնորհ էր այն. լուր մարգարէին,[2] որ ասէ բանիւ Աստուծոյ, թէ «Յոր ինչ գտից զքեզ՝ յայն իսկ դատեցայց զամենայն մարդ»։ Ասա դու ցիս, եթէ որ բազում սպանութիւնս գործեալ և զրկեալ, և այլ չարիք զանազան արարեալ և արհամարհեալ զհրամանս Աստուծոյ, և ի ձեռն երից աւուրց միայն լռեալ ի չարեաց, զի՞նչ օգուտ էր նմա։

[3] Արդ յայսմ վայրի փառք Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ընդ Հօր և սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւ''։

ԻԱ[կե]. ՀԱՐՑ. Արդ, մինչև ցայժմ ասեն, թէ յանցանք հարց ի վերայ [որդւոց՝ մինչև յերրորդ և ի չորրորդ ազգն։

ՊԱՏՕԽ. Ի ձեռն Մովսիսի միայն ասացաւ այդ, հրամանաւ Աստուծոյ. իսկ ի ձեռն Երեմիայի դարձեալ ասաց. «Քաւ լիցի, այլ որ ուտեն զագոխն, նոցին առցեն և ատամունքն»[4]. լուիցուք անդրէն Քրիստոսի որ ասէ. «Ամէն ասեմ ձեզ, եկեսցեն մեղք հարց ձերոց ի վերայ ձեր յարենէ Աբելի արդարոյ՝ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բարաքեայ՝ զոր սպանէք ընդ մէջ տաճարին և

1. Բ և Գ, օր. ունի այսպէս. Թողացուցեալ էր առանց ընտանութեան, եթէ էր ինչ օգուտ։
2. Զբանդ՝ զի՞նչ շնորհ էր այն. լո՛ւր մարգարէին. այսպէս ունին Գ, Դ և Ե. օրնաև զայն ևս զորէր ապաշխարել. քանզի դեռանէր զինչ — մահ մերձեալ, թողացեալ զլարէր և ի վայր յաւիտենականութենէն նորածանէր. լուր Աստուծոյ յաւելն է յետն մերձակայ մարգարէին։
3. Գ և Դ. օրինակ չունին։
4. Երեմ. ԼԱ, 30։

սեղանոյն »[1]: Ուստի յայտ է, զի այնոքիկ որ ոչ են մկրտեալ, գայցեն ի վերայ նոցա յանցանք հարցն, իսկ զհաւատացեալքս՝ սուրբ մկրտութիւնն սրբէ յամենայն ախտից:

ԻԲկր. ՀԱՐՑ. [2] Ասեն ոմանք թէ, վասն յանցանաց ծնողացն մեռանին որդիքն, և ա՞յդպէս իցէ:

ՊԱՏԱՍԽ. Լաւ է այդպէս լինել, քան թէ դիւահարին վասն յանցանաց հարցն:

ԻԳկր. ՀԱՐՑ. Վասն է՞ր ոմանք մեռանին, և այլք ծերանան առաւել քան զչափն, և ոմանք արդարագործ ոչ լինին և բազում ամս հարստութեամբ վայելեն և ապա մեռանին. և այլք՝ բարեգործ լինին և առանց որդեաց և աղքատք. և այլք՝ ամբարիշտք և քաջաբեր որդեաց հայր և ոչ մեռանին:

ՊԱՏԱՍԽ. Բազում բանք են յաղագս այդոցիկ, այլ սակայն զոր յաստուածաշունչ գրոց ուսեալ եմք, ասասցուք: Հաւատացելոց մանկունք ոչ վասն յանցանաց հարցն մեռանին, այլ վասն ողջախոհութեան ծնողացն. երկու պատճառ բարեաց՝ յԱստուծոյ առաջի եդեալ կայ. մի՝ զի մաքուր մատչին առաջի Աստուծոյ և հասանեն փրկութեան, թերևս չարագոյն ի կենցաղս հանդերձեալ են կալ, և Աստուած վասն այնորիկ յափշտակեաց զնոսա երկու, զի ծնողք նոցա զգաստասցին, և զինչսն զայն՝ որ ի ձեռն կտակացն թողլոց էին][3] մանկանցն, զայն բաշխեսցեն աղքատաց: Եւ ծնողք նոցա թէ գոհութեամբ տարցեն վշտացն, քաւին ի յանցանաց իւրեանց՝ զոր ունիցին, և անդ վայելեսցեն զարքայութիւնն: Իսկ որք ի բարուոյ լինիցին հանապազ[4], և քաջաբեր որդեաց

1. Մատթ. ԻԳ, 35:

2. Բ. օր. Հարց. Ասեն թէ վասն ծնողացն յանցանաց մեռանին մարդիկ: Պատաս. Լաւ է մեռանել քան դիւահարիլ վասն յանցանաց հարցն:

3. Փակագծեալդ յօրինակին պակասէր, լրացուցաք յ'Գ, Դ և Ե. օրինակաց:

4. Գ, Դ և Ե. օր. որք բարով են հանապազ:

հարք ամբարիշտք, սակայն և լինիցի նոցա սուղ ինչ բարիս գործեալ, և փոխանակ այնց բարեացն՝ աստէն վայելիցեն և առցեն զհատուցումն. որպէս և մեծատունն այն լուաւ յԱբրահամէ, թէ «ընկալար զբարիս քո ի կեանս քո»[1], այսինքն՝ թէ լցար բարութեամբ գործովքն զոր արարեր: իսկ արք արդարք և սուրբք, յորժամ՝ դժուարակեանս[2] լինիցին, թերեւս սուղ ինչ յանցանք գործեալ իցեն, և ի ձեռն նեղութեանցն այնոցիկ մաքրեալ սրբին. որպէս Ղազարոս ի յանցանաց իւրոց, և անդ՝ ի ձեռն այսմիկ դժուար կենդանութեանս[3]՝ հանդիստ գտանիցեն, «զի զոր սիրէ Տէր խրատէ»[4]: Արդ, վասն այդորիկ մի՛ խռովեսցիս, յորժամ զամբարիշտս տեսցես ի բարեկենդանութեան[5], և զարդարսն ի դժուարութեան. զի իբրեւ ի մնուր ոսկի՝ այնու աստուածային ցորենոյն պարարտանայ[6]: Մի՛ ապա խռովիր այսուհետեւ, զի ոչ մինչեւ յցասս դատարեն մեր իրքս, այլ զինչ աստ վախճանք, անդ պակասեսցին, և զինչ աստ պակասեսցին, անդ յաւելուցումք[7] և վայելմունք զարքայութիւնն Աստուծոյ. վասն այսորիկ յոլովակի բազում ժամանակս տացէ մեզաւորաց, զուցէ և ի մեռեալ ժամու ասուրն հասանիցեն վարձուցն՝ ի խորին ծերութեանն ապաշխարելովն: իսկ զարդարս[8] փութայ սակաւ աւուրց առաջի յափշտակել աստի, զի մի՛ փոխեսցէ ի չարութիւն զիմաստս արդարութեանն[9],

1. Ղուկ. ԺԶ, 25:
2. Յօր. դժուար կեանս եղաք ըստ Գ, Դ և Ե. օր:
3. Գ, Դ և Ե. օր. դժուար կենաց:
4. Առակք Գ, 12:
5. Յօրինակին պակասէր բարեկենդանութեան, յաւելաք յ'Գ և Դ. օր. իսկ Ե. օր. դնէ բարեկենդանութեանս:
6. Այդպէս ունին ամենայն օրինակք մեր, այլ ճշգրիտ իմաստ բանից է այս. Չէ եթէ զիտոչ՝ է [illegible] է հօրն յաւիտենական պարգեւաց և պատրաստելոց:
7. Գ, Դ և Ե. օր. դնեն, է յետն պարգեւաց տալ է գիտութեան և վայելել:
8. Գ, Դ և Ե. օր. բազում անգամ:
9. Գ, Դ և Ե. օր. հանճարոյ:

կամ՝ նենգութիւն պատրիցէ զմիտս նոցա. վասն այնորիկ կատարին սուղ ինչ ժամանակաւ յառաջ, զի ոգիք նոցա[1] վայելեսցեն զկեանսն յաւիտենից:

ԻԴ՛. ՀԱՐՑ. Զի՞նչ ապա, որ աստ տառապանայ և նեղի, մտանիցէ՞ յարքայութիւնն. և որ աստ ի բարեկենդանութեան իցեն՝ մտանե՞ն ի գեհենն:

ՊԱՏՍԽ. Այո՛, ասէ. բազումք ի մարդկանէ՝ աստէն մեծամեծ տանջանօք խրատին, և դարձեալ անդրէն պատիժս կրելոց են, որպէս Սոդոմայեցիքն: Իսկ այլք բազումք, վասն զի մատուցին Աստուծոյ վաստակս բազումս, որպէս Նոյ, Աբրահամ, Սահակ, Յակոբ, Յովսէփ, Մելքիսեդեկ: Եւ այլք ոմանք՝ որք բարեկենդանութեամբք աստ վայելեցին, և անդ կայ մնայ նոցա արքայութիւնն երկնից: Եւ դարձեալ այլք, ոմանք կրեն չարչարանս և ոչ տեւեն, և ո՛չ համբերեցին վշտացն գոհութեամբ, այլ հայհոյեն. նոքա իսկ աստ մարմնովն տանջին, և անդ ի յաւիտենից տանջանացն պատժելոց են: Եւ այլք վայելեսցեն ըզկեանս զայս՝ և անդ զտանջանսն, որպէս մեծատունն՝ որ վասն վայելման աստի կենացս՝ կայ և մնայ ի տանջանսն յաւիտենից: Եւ այլք կատարեցին զժամանակս իւրեանց մաշկօք և մորթօք այծենեօք, հրաժարելով յամենայն վայելմանէ աշխարհիս այսորիկ, որք մեծապէս արժանաւորին պարգեւաց առաւելապէս քան զբազումս: Եւ այլք մեղանչեն ինչ մանաւոր Աստուծոյ, և աստէն առցեն զխրատ ըստ չափոյ յանցանացն, և գոհութիւն մատուցանելովն ազատեսցին ի յաւիտենական տանջանացն: [2] Արդ, բազում անգամ Աս-

1. Գ., Դ և Ե. օր. յաւելուն՝ առատաշնորհեամբ:

2. Բ. օր. աստէն յաւելու. Եւ ոմանք աստ և անդ ընկալցին զտանջանս. քանզի ըզմերայեղէնաւ վճարեն փառանեամբք ոչ ընկալան. իսկ այլք աշխատեցին փառօքն. և անդ վայելեսցեն. և այլք՝ աստ ոչ կրեցին վիշտս և ոչ անդ կրեսցեն. և ոմանք աստ և անդ տանջին. և դարձեալ, ոմանք աստ վայելեսցեն, և անդ հանքին վայելից....:

*տուած անարժանից և մեղաւորաց մեծութիւն շնորհեաց է, զի նովաւ ի ձեռն ողորմութեանն ի բաց լուասցեն զմեղս*[1] *յանձանց իւրեանց. քանզի ողորմութիւն մաքրէ զմեղս, ասէ ոմն իմաստուն ։*

ԻԵ^երորդ. ՀԱՐՑ. *Զի՞նչ համիցիմք ասել վասն այնոցիկ որք յանկարծակի մեռանին, և դաժանաչէժ լինիցին, կամ այլ ինչ մահուամբ որ յայս նման իցէ ։*

ՊԱՏԱՍԽԱՆԻ. *Ամենայն ինչ որ այդպիսի է, անյայտ է ի մարդկանէ և ծածուկ, Աստուծոյ միայն է գիտելի*[2]*։ Լուր Տեառն՝ զինչ ասէ. «Աշտարակն՝ որ ի Սելովամ անկաւ, զի՞նչ արդեւք, մի՛թէ մեղաւորք էին քան զամենեսին որ բնակեալ են յԵրուսաղէմ. ո՛չ, ասեմ ձեզ»*[3]*։ Եւ յայսմանէ ուսցուք, զի ոչ եթէ որ դառն մահուամբ մեռանին ամբարիշտք միայն իցեն ։ Այլ քանզի և որդիքն Յոբայ արդարք էին, և Զաքարիա և Յովհաննէս, և այլք բազումք. այլ ոչ է պարտ զայդ ամենայն զմտաւ ածել. քանզի յայսմ ժամանակի յորժամ երկիւղածք և բարեպաշտք որ դառն մահուամբ*[4] *մեռանիցին, յանցանս ինչ ստացեալ ունիցին, և ազատին յայնմանէ չարաչար մեռանելովն. զի անդ ճշմարտապէս մեծագոյն պատուի արժանաւոր լինիցին*[5] *։*

ԻԶ^երորդ. ՀԱՐՑ. *Եթէ ոք խնդրեսցէ ողորմութիւն, և տացէ ոք և ոմանք մերձ լինիցին, զի՞նչ պարտ է առնել. քանզի այնպիսոյն՝ չէ հնար ի ծածուկ առնել զողորմութիւնն ։*

ՊԱՏԱՍԽԱՆԻ. *Զմիտս մարդոյն քննէ Աստուած. զի թէ ի միտս իւր յօժար է ի ծածուկ առնել, եթէ և բիւրուց*[6] *[առաջի առնէ, ոչ դատապարտի, ապա*

1. Բ. օր. լուացին ի մեղաց և յանցանաց իւրեանց։
2. Բ. օր. յաւելու, այլ և չէ պարտ երկրպագանել։
3. Ղուկ. ԺԳ, 4։
4. Բ. օր. տառապանօք մեռա- նին յանցանս ինչ գործելոյ իւրեանց։ Գ. օր. դնէ. զի մեծապէս
5. պատուոյ արժանացին։ Փակագծեալդ ցՙէջն 363
6. պակասէր յօր. լրացաւ ի Դ. օր։

*թէ յօժար է զի տեսցեն մարդիկ, թէ և ի խորս շտեմարանաց առնէ՝ չէ օգուտ*[1]:

ԻԷդ. ՀԱՐՑ. *Ասաց աստուածային առաքեալն. ոչ նեղելով և ոչ ի հարկէ, այլ զուարթ տուրս սիրէ Աստուած. ապա, ո՞չ է պարտ առնել ողորմութիւն, յորժամ սիրտն բռնադատէ ողորմելումն*[2]:

ՊԱՏՍԽ. *Կատարեալ իսկ այն է՝ որ հանապազ առնէ ողորմութիւն առատապէս. իսկ որ բռնադատեսցի ի պատուիրանս Աստուծոյ, ընդունելի է առաջի Աստուծոյ, որպէս և ինքն ասէր. «Բռունք յափշտակեն զարքայութիւնն Աստուծոյ»*[3]:

ԻԸդ. ՀԱՐՑ. *Եթէ ոք վասն մեղաց իւրոց ապաշխարիցէ, յայտ է թէ ջնջեաց զմեղս իւր. ապա ուրեմն եթէ ոք առնէ ողորմութիւն և ապաշխարիցէ և յապաշաւս բերիցէ զծախումն իրացն, ապաշաւելովն այն՝ կորո՞յս զինչսն և զվարձսն:*

ՊԱՏՍԽ. *Քաւ լիցի. այլ զոր օրինակ ապաշաւելն ի վերայ մեղացն՝ Աստուած լինի առիթ ապաշխարութեանն, նոյնպէս և ապաշաւանաց ի վերայ ողորմութեանն, սատանայ լինի գործոյդ այդմիկ առիթ: վասն այդորիկ ոչ լուծանին եղեալ վարձքն:* [4] *Այլ սակայն չէ բարւոք ապաշաւս բերել զգործս բարիս, քանզի որ ստէպ ապաշաւէ, դանդաղագոյն գտանիցի առնել զբարիս:*

ԻԹդ. ՀԱՐՑ. *Ոչ է պարտ, որպէս կարծեմ, առանց հարցափննութեան առնել ողորմութիւն, այլ հարցանել և իմանալ ստուգապէս, եթէ կարօտեալ ոք իցէ՝ որոյ առնես զողորմութիւն. քանզի Սողոմոն ասէ. «Յորժամ՝ առնես ողորմութիւն, տես թէ ում արասցես»*[5]:

1. Գ. օր. փորձէ ոչ օգտէն, Ձ. օր. օգնեացէ ոչ օգտեցէ:
2. Գ. օր. զնէ, տալ ոչ է պարտ առնել զողորմութիւն յորժամ սիրտն բռնադատի առնելոյն:
3. Մատթ. ԺԱ. 12:
4. Աստի մինչև ցվերջակէտն պակասի ի Գ. օր:
5. Ժողովող ԺԲ, 1:

ՊԱՏՍԽ. *Այդպէս իմանայք զգիրս և չարաչար ածէք զմտաւ, և դարձուցանէք զբանն ի միտս անձանց. զի ոչ եթէ վասն աղքատի ասաց զայս Սողոմոն, այլ այսպէս ասէ. «տես թէ ո՛ւմ արասցես»· քանզի ինքն ասաց. «ինձ արարէք»· և գիր ասէ, թէ «Որ ողորմի աղքատին, փոխ տայ Աստուծոյ զտուրսն զայն»[1]. իսկ եթէ ընտրել հրամայեալ էր զխնդրողն, ապա ընդէ՞ր ասաց՝ թէ «Որ խնդրէ ի քէն, տուր»: իսկ եթէ այնպէս է ասացեալ, ապա ամենեցուն հասարակաց խնդրողաց պարտ է տալ և ոչ քննել:*

Լ[ձդ]. ՀԱՐՑ. *Որ եկեղեցեաց մատուցանեն՝ ա՞յն է ընդունելի, թէ այն՝ որ կարօտելոց բաշխէ:*

ՊԱՏՍԽ. *Յասելն Յիսուսի ընդ այնոսիկ որ ընդ աջմէն են, թէ «Քաղցեայ և ետուք ինձ ուտել»[2], եցոյց զի պատուականագոյն է տալ աղքատին. զի ասաց, թէ՝ «ինձ արարէք». քանզի ըստ պատկերի իւրոյ արարեալ զմարդն, և նոցա պարտ է առնել ողորմութիւն, զի նոքա իսկ են տաճար անմահ Բանին Աստուծոյ: իսկ յաղագս եկեղեցւոյ՝ ուսցուք ի պոռնկէն, զի յոր ինչ և փափագի ոք գործել վասն Աստուծոյ, ընդունելի է առաջի նորա. զի թէ միւսն զեղբայրն սիրեաց, և միւսն զտուն եղբարցն նորոգէ, բարիոք է և այն, այլ սակայն եթէ զերկու կողմն ոչ կարէ կատարել, լաւագոյն է յաղքատսն տալ:*

[3] ԼԱ[ձէ]. ՀԱՐՑ. *Եթէ անհաւատ ոք վստահացեալ] լինի ինչս յոք հաւատացեալ, և նա տայ զայն, ուրեմն դատապարտեսցի՞ յԱստուծոյ:*

ՊԱՏՍԽ. *Ասաց Տէրն, թէ՝ «Տուք զկայսերն, կայսեր»՝ քաջայայտ է, զի կայսրն այն հեթանոս էր. ուսցուք աստանօր, զի չէ պարտ առնուլ ինչ յայնմանէ. իսկ եթէ մեռանիցի այն՝ որ վստահա-*

1. Առակք ԺԹ, 17:
2. Մատթ. ԻԵ, 42:
3. *Զայս հարցումն հանդերձ պատասխանեաւն չունի Գ. օրինակ:*

ցաւն, պարտ է զայն աղքատաց ծախել, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւ՚՚:

ԼԲ^րդ. ՀԱՐՑ. Կարո՞ղ է ողորմութիւնն ջնջել զմեղս ամենայն:

ՊԱՏԱՍԽ. Եթէ առնես որպէս պարտ է, կարի կարող է. իսկ եթէ տխակալութիւն ունիցիմք առ ընկերին՝ եթէ բեւր ինչս ողորմութիւն արասցուք, ոչինչ օգտեսցուք: Եթէ ո՛չ թողցես զպարտս ընկերին, ըստ բանին Տեառն, և ոչ Հայրն երկնաւոր թողցէ զյանցանս ձեր: Բայց ա՛յլ է որ կայ ի մեղսն և առնէ ողորմութիւն, և ա՛յլ է վարձք երկրագործին՝ որ ի քրտանց իւրոց առնէ զողորմութիւնն. և ա՛յլ է այն՝ որ ի սակաւէն տայ զողորմութիւն, և ա՛յլ է որ յաւելորդացն, և այլ է այն՝ որում վստահանան տալ զինչս աղքատաց. և ոչ եթէ այս միայն, բայց զի նա ինքն՝ որ մարմնով յաշխարհիս յայսմիկ է, և ո՛չ կարէ վասն յանցանաց իւրոց այլ ինչ մատուցանել Աստուծոյ, պահք կամ աղօթք կամ տքնութիւն, զայնպիսեացն իսկ սրբէ ողորմութիւնն: իսկ ի կրօնաւորաց այլ ինչ պահանջեսցի. զի պարտ է նոցա մեծամեծ քաղաքավարութիւն ցուցանել, և ապա զողորմութիւն: Այլ սակայն ողորմութիւնն, որ զնաբուզոդոնոսոր՝ զայնպիսի ամբարիշտ կարաց արդարացուցանել, կարող է և զայլ զանբժշկելի զմեղս ջնջել, որպէս և լուաք ի մարգարէէն Դանիէլէ ասել ցնա. «Զմեղս քո ողորմութեամբ քաւեսցես, և զանօրէնութիւնս քո՝ տրօք տնանկաց»[1]. և դարձեալ ասէ գիր. «Ողորմութիւն նուազեցուցանէ զմեղս մեծամեծս»[2]. և դարձեալ, «փրկանս մեղաց ընչեղութիւն առն»[3]. և Դաւիթ ասէ. «Երանի որ խորհի զաղքատն և զտնանկ, յաւուր չարի փրկէ զնա Տէր»[4], այսինքն՝ յաւուր դա-

1. Դան. Դ, 24:
2. Սիրաք Գ, 33:
3. Առակք ԺԳ. 8:
4. Սղմ. Խ, 2:

տաստանին։ Իսկ որ ոխս ունի ընդ ընկերին, ոչ օգտէ ողորմութիւնն։ Իսկ որ ողորմութիւն ոչ առնէ, և անոխակալ է և չարին բարի առնէ, կարի՛ մեծապէս օգտեսցի։ Իսկ այն՝ որ զայդ ի մտի եդեալ գործեսցէ յաղագս արքայութեանն երկնից, նա և ոչ զաղքատ անտես առնիցէ։

ԼԳրդ. ՀԱՐՑ. Համարձակեցան ոմանք երանել զկատարեալսն, վասն զի նշանս բազումս գործեցին։

ՊԱՏԱՍԽ. Ոչ է պարտ զվճիռդ զայդ տալ ումեք, այլ սակայն լուիցուք ի Փրկչէն որ ասէ. «Ցայսմ ծանիցեն ամենեքեան՝ եթէ իմ աշակերտք էք, ո՛չ զի նշանս առնիցէք, այլ զի սիրեսջիք զմիմեանս»[1]։ Քաջայայտ է, զի ճանաչումն սիրոյն Աստուծոյ՝ ողորմութիւնն իցէ. քանզի յորժամ՝ կացցեն արդարքն ընդ աջմէ, ոչ ասասցէ, «Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն»[2], զի նշանս և արուեստս արարէք և կամ այլ ինչ, այլ եթէ, «Քաղցեայ և ետուք ինձ ուտել»։ Այնպէս և այնոցիկ, որ ընդ ահեկէն լիցին, «Անիծեալք» ասէ, և առաքէ ի գեհենն արտաքին. վասն անողորմածութեանցն ասաց՝ և անգթութեանն. քանզի նշան առնել, միայն Աստուծոյ է շնորհքդ այդ և կարողութիւն. իսկ սէր առ ընկերքն և ախտակցութիւն, ի բարուց բնութեան մարդոյն է։ Լո՛ւր երանելոյն Պաւղոսի ասելոյն, վասն այնոցիկ ոյք նշանս առնեն. «Եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ՝ և զհրեշտակաց, և զամենայն հաւատս ունիցիմ, մինչեւ ըզլերինս փոփոխելոյ, և մատնեցից մարմին իմ յայրումն, և սէր ո՛չ ունիցիմ, ոչինչ օգտիմ»[3]։ Եւ Տէրն ասէ. «Եղերուք, մի՛ նշանագործք, այլ գթածք, որպէս և Հայրն ձեր երկնաւոր գթած է»[4]։

ԼԴր. ՀԱՐՑ. Քանի՞ բաժին յընչից մարդոյն պահանջեսցի առնել ի նմանէ ողորմութիւն։

1. Յովհ. ԺԳ, 35։
2. Մատթ. ԻԵ, 34։
3. Ա. Կորնթ. ԺԳ, 1։
4. Ղուկ. Զ, 36։

ՊԱՏՍԽ. *Աստուածային առաքեալն հրամայէ, «Ձեր առաւելութիւնն եղիցի ի նոցա պակասութիւնն»[1]. վասն զի ոչ հայի Աստուած ի տուրս՝ այլ յաւելորդութիւնն. վասն զի ի ձեռն ընչից մերոց կարող եմք ապրեցուցանել զբազումս ի մահուանէ, և ոչ ապրեցուցանեմք, այլ անտես առնեմք:*

ԼԵրդ. ՀԱՐՑ. *Զի՞նչ համարեսցի այն, զոր թողուցումք յաւուր մահուն, զի արասցեն մեզ այլք:*

ՊԱՏՍԽ. *Մեռելոտի պատարագ իցէ այն. այլ սակայն՝ եթէ ի կենդանութեան իւրում արարեալ է ողորմութիւն, այնպիսոյն ընդունելի է և այն, զոր յետ մահուն արասցեն նմա ողորմութիւն, և այնու առաւելապէս փառաւորեսցի. ապա եթէ ի կենդանութեան սովորութիւն ոչ ունէր տալոյ, և այն իսկ ընդունայն է զոր արասցեն:*

ԼԶրդ. ՀԱՐՑ. *Եթէ ոք մեղօք ծերանայ, և ոչ պահել կարասցէ, և ո՛չ գետնախշտի լինել կամ՝ տքնիլ, կամ՝ այլ ինչ ապաշխարութիւն գործել, և ոչ ունիցի ինչ զի արասցէ ողորմութիւն, և ո՛չ կարասցէ հրաժարել ի կենցաղոյս յայսմանէ. զի՞նչ օրինակաւ, կամ ո՞րպէս կարասցէ ապաշխարել:*

ՊԱՏՍԽ. *Զոր օրինակ ապրեցաւ մաքսաւորն, և որպէս Դաւիթ ասէ. «Խոնա՛րհ եղէ, և ապրեցոյց զիս Տէր իմ»[2]. և որպէս պատարագ անարիւն մատուցանի Աստուծոյ և ողորմութիւն, այնպէս համարեսցի և այն՝ որ խոնարհ են սրտիւ, և հեզութն արտասուս. «Պատարագ Աստուծոյ հոգի բեկեալ, զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ո՛չ արհամարհէ»[3]: Եւ դարձեալ ասէ. «Մերձ է Տէր առ այնոսիկ՝ որ մաշեալ են սրտիւք, և զխոնարհս հոգւով կեցուցանէ»[4]: Եւ որպէս երանին ողորմածք, նոյն և որ սուրբ են սրտիւք: Նախ քան զայլ երանութիւնսն երանին*

1. Սաղմ. ՃԺԹ, 6:
2. Բ. Կորնթ. Ը, 14:
3. Սաղմ. Ծ, 19:
4. Սաղմ. ԼԳ, 19

և խոնարհքն սրտիւք, և աղքատքն հոգւով, զի նոցա է արքայութիւնն երկնից. փրկութեան ճանապարհ այս իսկ է գնացողաց, և զճանապարհս զայս կարող է գնալ աղքատ և տնանկ, տկար և ծեր, ռամիկ և տգէտ, և ուղղել զգործս իւր խոնարհութեամբ:

ԼԷրդ. ՀԱՐՑ. Զի՞նչ իցէ խոնարհութիւն, կամ ո՞ր խոնարհութեամբ պարտ է խոնարհել:

ՊԱՏՍԽ. Խոնարհութիւն այս իսկ է. ո՛չ հայել յանցանս այլոց, բայց իւրաքանչիւր ոք հայեսցի յանցանս իւր. և ոչ դատեսցէ զայլ ոք և ո՛չ բամբասէ. այլ հանապազ զանձն իւր պարտական կացուցանէ դատաստանին յաւիտենից. և ասասցէ, ապրեցո զիս Տէր ողորմութեամբ քով, և ոչ ի ձեռն ողորմութեան իմում: Իսկ այն՝ որ զանձն իւր պարտական և մեղաւոր համարեսցի, ոչ երբեք լինիցի չարայուշ, և ո՛չ ոխս պահեսցէ ընկերի իւրում, և ո՛չ բամբասէ, և ոչ դատի զընկեր իւր, որ մեղուցեալ ինչ իցէ. ապա այնուհետեւ զթողութիւն մեղաց իւրոց ընկալցի յԱստուծոյ, և յերից բարուց յայսցանէ առցէ թողութիւն, ո՛չ դատէ և ոչ դատապարտի. լինել խոնարհ և արդարանալ. թողուլ զյանցանս, և իւրն թողցին յանցանք: Իսկ զերիս զառաքինութիւնս զայս ո՛չ ծերութիւն խափանէ և ոչ տկարութիւն, ոչ աղքատութիւն և ոչ այլ ինչ:

ԼԸրդ. ՀԱՐՑ. Եթէ ոք բազում անգամ մեղանչէ յանցանս բազումս, և դարձեալ յապաշխարութիւն գայցէ, և սկսանի ապաշխարել, և յապաշխարութեան անդ դարձեալ յայլ եւս մեղս անկանի և ի բազում յանցանս, և դարձեալ կրկին ապաշխարէ, ընդունի՞ Աստուած զայնպիսին թէ ոչ:

ՊԱՏՍԽ. Աստուած որ գիտէ զդիւրափոխ[1] մարդ-

1. օր. դիւրափոփոխ, Ե. օր. դիւրափոփոխութիւն: դիմափոխ, իսկ դնէ Զ. օր.

կան բնութիւն, եթէ բիւրապատիկ խոկ մեղանչէ, և դարձեալ բիւրապատիկ ապաշխարիցէ, ոչ երբեք ի բաց մերժէ զայնպիսին Աստուած յերեսաց իւրոց. զի այն որ պատուէր ետ Պետրոսի, եւթանասնեկին եւթն թողուլ եղբօր իւրում, նա ինքն բիւրապատիկ անգամ թողու մարդկան ապաշխարելոց. զի այլ է բնութիւնն Աստուծոյ, և այլ է բնութիւն մարդոյ: Բայց մեզ պարտ է զայս ստուգապէս իմանալ, զի սովորութիւնն այն՝ ի մեղանչելն և անդրէն ապաշխարելն արհամարհէ զԱստուած, և ի սովորութենէ յայնմանէ առէպ անդրէն ի մեղս դառնայ, և դժուարին լինիցի այնպիսոյն ի բաց կալ ի մեղաց: Այլ որպէս չուն ի սպանդանոցի[1] սովորեալ, ոչ ի բաց կայ ի չար սովորութենէն մինչև անդէն սատակեսցի. նոյնպէս և մարդ՝ որ ի մեղսն է սովորեալ: Դարձեալ, և կատարած կենաց մերոց ծածկեալ է ի մէնջ, և ոչ է յայտ մեզ օր ելից մերոց. գայցէ արդեւք իբրև զգող ի ժամանակի մեղաց մերոց և գտանիցէ զմեզ անապաշխարս, և մատնիմք ի տանջանսն յաւիտենականս:

ԼԹդ. ՀԱՐՑ. Քանի՞ չնութիւնք իցեն մեղաց[2]:

ՊԱՏԱՍԽ. Երկու չնութիւնք. քանզի առնակին և այր կանամբի որ երթայ յօտար, և դարձեալ եթէ առնակին կամ այր կանամբի բաժանի յառաջնոյն և առցէ այլ, չնայ. և որ զթողեալն առնու՝ չնայ. և աններելի իցեն վասն յանցանացն այնմիկ առ Աստուած:

Խդ. ՀԱՐՑ. Ասեն ոմանք, եթէ քաւութիւն ունիցի՞ պոռնկութիւն առաւել քան զայլ յանցանս, քան-

1. Յօրինակին եդեալ էր չուն տապալէ է կանարայն, ուղղեցաք ըստ Գ, Դ և Ե օրինակաց. յ'Բ. օր. պակասի, իսկ ի Զ. օր. այսչափ ինչ կայ սկսեալ ի նախընթաց տողէն՝ ի մէջս դառնայ և ի սպանդանոցն ասացեալ, զի կոտորածն կենաց:

2. Գ, Դ և Ե. օր. դնեն Քանի՞ գէթ են չնութեան մեղաց:

զի բնական է, և բռնադատէ զբնութիւնն և շարժէ զախտն:

ՊԱՏՍԽ. Առաքելոյն ծանրագոյն յանցանս անուանէ զսա քան զամենայն յանցանս. ասէ. «Զամենայն մեղս՝ զոր ինչ և գործէ մարդ, արտաքոյ մարմնոյ իւրոյ է. իսկ որ շնայ՝ ի մարմին իւր մեղանչէ»[1]. քանզի ի մարմնոյ անդի շնութեանն[2] քաղցրութիւն, հեշտութիւն[3], որպէս զոհ իմն[4] մատուցանէ սատանայի զսերմունս իւր. և ըստ ժամու ժամու, որպէս թէ պարտական իցէ, այնպէս կատարէ և անկանի ի մոլորութիւնն, կէս ի տաճարէ իւրմէ, և այլ ի սատանայէ. քանզի ոչ ի բնութենէ իցէ շարժումն[5], այլ և յուտելոյ և յըմպելոյ. [իսկ մեղանչելն՝ ի կամացն է, զի թէ կամի՝ մեղանչէ, և եթէ ոչ կամի՝ ոչ մեղանչէ][6]. ահաւասիկ Աստուած այդուիկ զԱդամ յանցաւոր դատապարտեաց. [զի եթէ ոչ էր կամեցեալ՝ ոչ էր յանցեալ][7]:

ԽԱզէ. ՀԱՐՑ. Քանի՞ մեղք յանցանաց իցեն պոռնկութեան:

ՊԱՏՍԽ. Իցեն իսկ բազում և ազգի ազգի, բայց մեծագոյն այն իսկ է՝ որ կին ունիցի և շնայ, քան զայն՝ որ ոչ ունիցի: Եւ առաւել մեծագոյն այն իցէ յանցանք, որ կին բարի ունիցի և շնայ, քան զայն՝ որ չար ունիցի. և այն որ ի ծերութեան շնայ, քան զայն՝ որ ի մանկութեան. և այն՝ որ ոչ պակասէ ի շնութենէ, քան զայն՝ որ ի ժամանակէ ժամանակ: Եւ մեծագոյն յանցանք այն իսկ է, որ ոչ է ջերմ ախտիւ այլ ցուրտ,

1. Կորնթ. Զ, 18:
2. Գ, Դ և Ե. օր. շնորհեան:
3. Աստէն յաւելուն Գ, Դ և Ե. օր. զայս ամենայն ախտմունս չարեաց:
4. Դ. օր. ինչ:
5. Գ, Դ և Ե. օր. և այս է բնութենէն ոչ լինի:
6. Փակագծեալդ յաւելաւ յ'Գ, Դ և Ե օրինակաց:
7. Փակագծեալդ յաւելաւ յ'Գ, Դ և Ե օրինակաց:

և ջանս դնէ՝ զի ի ձեռն դեղոյ ջերմացուցանէ զախտն՝ և ի հեշտութիւնս մարմաջեցուցանէ։ Եւ այլ բազում ինչ է ասել վասն պոռնկութեան, զի ազգի ազգի իցէ, որք դատապարտին յԱստուծոյ։ Այլ մեղք իցէ՝ որ ընդ մի կին մեղանչէ, և այլ չարագոյն այն՝ որ ընդ բազումս ընթանայ և զբազում անձինս կորուսանէ։ Եւ այլ մեղք է՝ որ խտրէ և երկիւղածութեամբ[1] մեղանչէ, քան զայն՝ որ լրբագոյն և անամաչ յանդիման ի մեղս մատնեն զանձինս իւրեանց։ Այլ է՝ որ ամուսին[2] ունիցի և յառնակին մեղանչէ, և այլ է՝ որ կանամբի ոչ է, և ընդ առնակին շնայ, քանզի սոսկալի յանցանք են զկին օրինաւոր ամաչեցուցանել։ [Են և այլ պէսպէս չարիք մեղաց. են որ ի մէջ եկեղեցւոյ մեղս գործեն, և են՝ որ ընդ կինս բարեկամաց շնան, և պարտական լիցին յուդայական տիրոյն։ Այլ պարտ է զգուշանալ և ոչ անկանել ի չարիքս յայս, զի արդար ակն Աստուծոյ՝ ըստ անճառ դատաստանին իւրոյ՝ դատեսցէ զամենեսեան, և զդատաստանս նորա անաչառս և անբիծ՝ ո՞ պատմեսցէ][3]։

ԽԲՂԸ. ՀԱՐՑ. *Բազումք յարդարոց երկուս և երիս կինս առացեալ են[4] ի միասին, և մեզ ընդէ՞ր ոչ հրամայէք այնպէս լինել, [այլ և ոչ հարճս, որպէս զԱբրահամ և զայլ հարս. և մարգարէքն ունէին և ոչ Նախատէին][5]։*

ՊԱՏՍԽ. *Ո՛չ եթէ Քրիստոս զայն միայն խափանեաց՝ երկու կին առնել, այլ և ի միոյ կնոջէ ի բաց կալ հրամայեաց. «Ամէն ասեմ ձեզ, որ ոչ ատէ զհայր և զմայր և զկին, և գայ զկնի իմ, ոչ է ինձ արժանի»[6]։ Ապա եթէ զայդ խնդրես,*

1. Դ. օր. երկիւղիւ։
2. Դ. օր. կին։
3. Փակագծեալդ յաւելու յ'Գ, Դ և Ե օրինակաց։
4. Դ. օր. առացան։
5. Փակագծեալդ յաւելու յ'Գ, Դ և Ե օրինակաց։
6. Ղուկ. ԺԴ, 26. — Դ. օր. դնէ այսպէս. որ ոչ ատէ զհայր կամ զմայր առաւել քան զիս ոչ է ինձ արժանի։

լուր զմեծագոյնն. «Լուարուք, ասէ, զի ասացաւ՝ մի՛ շնար. բայց ես ասեմ ձեզ, թէ ամենայն որ հայի ի կին մարդ՝ առ ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա ի սրտի իւրում»[1]. իսկ եթէ Քրիստոս զցանկութիւն աչացն շնութիւն համարի, զի՞րդ ապա ի Քրիստոս հաւատացեալքդ՝ զքաղաքավարութիւն առաջնոցն պահանջէք: Զի եթէ խնդրէք միում առն երկու կին ստանալ, ապա և միում կնոջ պարտ է երկու այր ստանալ. լուր զի՛նչ ասէ յաղագս առն և կնոջ. «Եղիցին երկոքեանն ի մարմին մի»[2], և ոչ եթէ երեքեան կամ չորքեան: իսկ առն առաջին, կին մի միայն տուաւ, և նա զայր իւր և զտիեզերս ամենայն դառնաճանեալ կործանեաց. ապա եթէ երկու կին իսկ հրամայեալ էր, զի՞նչ հանդերձեալ էր լինել աշխարհս: իսկ եթէ կամիցիս գիտել եթէ ընդէ՞ր առաջինքն կանայս բազումս առնուին, ուսիր զստուգապէսն[3]: Զի բազում էր բռնութիւն սատանայի, էր չատկերութիւն, և բազմանային ախտքն[4], և Քրիստոս զերկոսեան խափանեաց, և զբազումս ի դիւաց՝ ի միջոյ ի բաց հերքեալ աքսորեաց[5], զոմանս յանդունդս, և զոմանս յանապատ տեղիս հալածեաց և կործանեաց:

ԽԳ. ՀԱՐՑ. Բազում Հրէայք և հեթանոսք բարիս գործեն, մտանե՞ն յարքայութիւնն թէ ոչ, կամ պարգեւս ինչ ընդունիցի՞ն. զի՞նչ կամ ո՞րպէս պարտ իցէ վասն նոցա իմանալ:

ՊԱՏՍԽ. Տէրն ասացեալ է ցՆիկոդեմոս. «Ամէն ամէն ասեմ քեզ, եթէ ոք ոչ ծնցի ի ջրոյ և ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւնն երկնից[6]»: Եւ որք ի Քրիստոս հաւատացեալ են,

1. Մատթ. Ե, 27:
2. Ծնն. Բ, 24:
3. Դ. օր. զարդոյն:
4. Դ. օր. դնէ՝ և չար տարե-լոյն և ընկելոյն քաղմանայք տեսութեն:
5. Դ. օր. է քաղ հալածեալ և հերքեալ:
6. Յովհ. Գ, 5:

քաջայայտ է իմանալ՝ զի առանց մկրտութեան ոչ մտանիցէ ոք ի նոյն ։ իսկ դու, եթէ հարցանես, զայս իսկ պարտ է իմանալ, զի գործք այնպիսեացն բարի՝ ոչ կորնչի, այլ ի կեանս յայս առ-ցեն զհատուցումն և ընկալցին վարձս. բայց ի կեանսն յայն տանջեսցին[1] վասն անհաւատութեան իւրեանց, այլ թեթեւագոյն՝ վասն բարի գործոցն զոր արարին, քան զայլ անհաւատսն, որ ոչ են բարի ինչ գործեալ ։ իսկ եթէ աստուածային առաքեալն ասացեալ է, «փառք պատիւ և խաղաղութիւն ամենայնի՝ որ գործէ զարդարութիւն, նախ Հրէի, և ապա հեթանոսի»[2], մի՛ զքանչանար, զի վասն այնոցիկ է ասացեալ՝ որք յառաջն էին քան զգալուստն Քրիստոսի ։

ԽԴ՞Ե. ՀԱՐՑ. Ուրեմն ունիցի՞ արդեւք վախճան տանջանք մեղաւորացն, թէ ոչ ։

ՊԱՏՍՒԽ. Տէրն ասացեալ է վասն գեհեննին, թէ «Որդն նորա ոչ ննջէ և ոչ մեռանի, և հուր նորա ոչ շիջանի[3]». և դարձեալ ասէ. «Երթիցեն նոքա ի տանջանսն յաւիտենականս»[4] ։ Եւ Պաւղոս ասէ, «Մի՛ խաբիք, ո՛չ շունք, ոչ գողք, ոչ պոռնիկք ; ոչ արուագէտք, ոչ իգացեալք, ոչ արբեցողք, ոչ բամբասողք, ոչ յափշտակողք զարքայութիւնն Աստուծոյ ոչ ժառանգեն»[5] ։ Քաջայայտ է, զի յաւիտենական է արդարոցն վայելումն, նոյնպէս և տանջանք մեղաւորացն[6] ։ [Տէրն ասաց վասն Յուդայի. «Լաւ էր մարդն այն՝ թէ չէր եղեալ»[7]. իսկ եթէ տանջանացն վախճան կայր, ապա լաւ էր Յուդայի՝ թէ յետ սակաւ աւուրց ելանելոց էր ի տանջանաց և յարքայութիւն մտանէր, քան զոչ եւս լինել ։ Բազումք ի հերձուածողացն ասացին

1. Դ. օր. տանջանս ընկալցին ։
2. Հռովմ. Բ, 10 ։
3. Մրկ. Թ, 47 ։
4. Մտթ. ԻԵ, 46 ։
5. Ա. Կորնթ. Զ, 10 ։
6. Փակագծեալդ յաւելուած յ՚Բ. օրինակէն ։
7. Մտթ. ԻԶ, 24 ։

զբանդ զայդ. այլ ոչ է այդպէս։ Զի՛րդ արդար[1] դատաստանն Աստուծոյ զարդարութիւն մարդոյ և զյանցանսն հաւասարէ իւրեարց, զի ի միասին արժանաւորին հանդստեան։ Այլ ոչ է հնար ելանել ի դժոխոց կամ յարքայութենէն]։

ԽԳ[րդ]. ՀԱՐՑ. Ուստի՞ իցէ այս, զի տեսանեմք զարդարս, զի աւուրս երկարագոյն հոգեվարին, և մեղաւորք՝ խաղաղագոյն և փութապէս[2] աւանդեն զհոգին և մեռանին այնպէս։

ՊԱՏՍԽ. Զամենայն իրաւունս Աստուծոյ անհընարին է իմանալ, բայց վասն այդորիկ զայս պարտ է իմանալ և զմտաւ ածել։ Արք երկիւղածք վասն այնորիկ նախ քան[3] զվախճանելն տանջին կամ ի ժամ՝ մահուն, զի մեք տեսանելով երկիցուք և զգաստասցուք, և իմասցուք՝ թերեւս մարդիկ են սուրբք, այլ փոքր ինչ յանցանս ունիցին, և յանցանքն այն ի ձեռն փոքր ինչ տանջանաց սրբեսցի, և նոքա անբիծ երթիցեն աստի։

ԽԴ[րդ]. ՀԱՐՑ. Ուստի՞ իցէ, զի ոմանք յօժարանօք[4] յախտս պոռնկութեան մատնին, այլք ի հեշտութենէն յայնմանէ ի բաց հատանին։

ՊԱՏՍԽ. Ի մարմնոյն ցանկութենէ այդ ամենայն լինի մարդոյն[5], կամ յառաւելապէս փափագանաց, կամ ի գինոյ, և կամ ի հեշտ հանդըտենէ[6] մարմնոյն, թերևս ի ներգործութենէ սատանայական[7]։ Իսկ այլոց ուղղոց յորժամ լինիցի այդ, թերեւս վասն դատելոյ զընկերն լինիցի և ի բարձրամտութենէ. յորժամ հպարտանայ ոք ի վերայ ուղղութեան իւրում՝ և բարձրամիտ լինիցի, այնպիսոյն թոյլ տայ Աստուած անկանել, որ-

1. Յօր. էր զի արդար, եդաք ըստ Գ. օր։
2. Դ. օր. փութով։
3. Դ. օր. չունի նախ քան, ուստի և դնէ՝ ի վախճանելն։
4. Դ. օր. յօժար կամօք։
5. Դ. օր. յաւելու՝ կամ ինքնմատնինէ ախտի մարմնոյն։
6. Գ և Դ օր. հանգստութենէ։
7. Դ. օր. սատանայի։

պէս զի ի ձեռն պոռնկութեան՝ ի բաց դիցէ զհպարտութիւնն և հաստանիցէ փրկութեան։ Քանզի յընտրելոյ երկուց չարեացն՝ թեթեւագոյն է ընական ցանկութիւնն քան զամբարտաւանութեան յանցանս։ Եւ որք յախտից յայսպիսեաց հովացեալ են[1], կամ ի ձեռն բազում ճգնութեան իւրեանց զանձինս իւրեանց բռնադատեն, և ոչ են դատապարտեալ զոք։ իսկ ոմանք եթէ ամբարտաւանք իցեն, և յախտէ և յայլ յանցանաց սուրբ են, պարտ է իմանալ, զի այնպիսիքն ի սատանայէ արհամարհին. քանզի բաւական է ախտ ամբարտաւանութեանն քան զայլ ախտս ամենայն, առաւելապէս պարտական առնել զստացիչն իւր յաւիտենական տանջանացն, և աղարտել զայլ ինչ գործս ուղղութեան՝ զոր գործեալ իցէ։

ԽՆԴ. ՀԱՐՑ. Իսկ զայս առաւելապէս խնդրեմ իմանալ քան զամենայն իրս. եթէ կա՞յ օր մահու և ժամ, եթէ ոչ։ իսկ եթէ ժամ կայ մահու, զիա՞րդ ապա ասէ Դաւիթ, «Մի ածեր զիս ի ժամանակս ծերութեան իմոյ»[2]։ Ապա եթէ ժամ ոչ գոյ և ոչ սահման կենաց, զիա՞րդ դարձեալ ասէ, «Ահա չափով եդիր զաւուրս իմ»[3]։ Եւ եթէ օր կայ մահու և սահման կենաց, զիա՞րդ ասէ Սողոմոն. «Մի՛ լինիր խիստ և ամբարիշտ, զի մի՛ մեռանիցիս յաւուր որ ոչ է ժամանակ մահու»[4]. ոչ եթէ ի վճարել կենացն գայցէ ի վերայ մահն. զիա՞րդ[5] Եզեկիա և Նինուէացիքն հայցեցին կեանս և յաւելաւ նոցա. և կամ՝ Սոդոմայեցիքն և Գոմորացիքն, հաւասար ամենեցուն նոցա պարտ էր ի միում աւուր մեռանել. ապա չէի՞ն չարագործ, և ո՞չ առին խրատ վասն յան-

1. Դ և Ե. օր. յաւելուն ատէն Աստուծոյ հովանաւորեալ էցեն։
2. Սղմ. ՀԱ, 25։
3. Սղմ. ԼԸ, 6։
4. Ժող. Է, 17։
5. Դ. օր. դնէ՝ քանզի։

ցանաց ։ Ապա եթէ խրատ ընկալան ըստ գործոց իւրեանց, ապա պարտ է իմանալ զի մահն ժամ ոչ ունի ։

ՊԱՏՍԽ. Եւ Պաւղոս՝ որ է աղբիւր իմաստութեան և մեծ ընդունող ամենայն գիտութեան, գրէ առ Կորնթացիսն. «Զի որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ ի մարմնոյն և յարենէն Քրիստոսի, ի դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ. վասն այդորիկ իսկ են ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք, և շատ եւս այն են՝ որ ննջեցեալքն իսկ են»[1]։ Եւ արդ, միտ դիք և ստուգապէս իմացիք, զի ի ձեռն անարժան հաղորդելոյն՝ որ է յանցանք մեծագոյն՝ մեռանէին, [այլ ոչ օրինաւոր ժամանակ և ոչ սահման կենաց։ Եւ դարձեալ, առ Եղիփազ Թեմնացի ասէ Աստուած. «Մեղար դու և երկոքին բարեկամք քո. եւ եթէ ոչ էր վասն Յոբայ ծառային իմոյ, սատակեալ էի զձեզ»[2]։ Արդ, վասն Յոբայ առաքինութեանն՝ զոր ունէր առ Տէր Աստուած, ոչ մեռան, յայտ է թէ չէր հասեալ ժամանակ իւրեանց՝ և ոչ մեռան, և եթէ սատակեալ էր, ոչ զի ժամանակ էր մեռանելոյ. իսկ եթէ հաստատած և սահմանած է կեանք մարդոյ, զիա՞րդ որ հանդերձեալ են մեռանել անօրէնութեամբ, ընթանան առաջի արանց սրբոց՝ և աղաչեն զի դարձցին ի կեանս և ապաշխարեսցեն։ Նաև ոչ ոք աղաչէր զԱստուած վասն որդւոց իւրոց լինել երկայն աւուրբք, և բազումք հասանեն խնդրոց իւրեանց][3]։ Իսկ եթէ սահման իցէ մահու, զիա՞րդ ապա ասէ գիր, «Պատուեա՛ զհայր քո և զմայր, զի երկայն աւուրբք լինիցիս»[4]։ Իսկ սահման կենաց մարդոյ կամքն է Աստուծոյ. ում կամի՝ երկայնագոյն ժամանակս տացէ, և ում

1. Ա Կորնթ. Բ, 29։
2. Փակագծեալդ յաւելուա յ'Գ, Դ և Ե. օրինակաց։
3. Յովբ. ԽԲ, 7։
4. Ելից. Ի, 12։

կամի՝ ի բաց բառնալ, ըստ իւրաքանչիւր ումեք օգտութեան. զոր օրինակ տէր հօտից յորժամ կամիցի առաքեսցէ յանդ, և բերիցեն ոչխարս, այնպէս արասցէ Աստուած և յազգս[1] մարդկան. յորժամ կամիցի յայնժամ առաքէ, և գայցէ ի վերայ մահ. իւրաքանչիւր սահման կենաց կամքն է Աստուծոյ:

ԽԶ. ՀԱՐՑ. Բազումք ի վեր քան զբանս և զմիտս՝ ինչս անհնարինս ածեն ի միտ, և ասեն[2] յաղագս ապականեալ մարմնոյ, եթէ ի յարութեանն զիա՞րդ[3] իցէ յառնել մարմնոյ, որոց յոլովակի նաւակոծեալ՝ եղեն կերակուր ձկանց, և զայլս առեւծ եկեր. և որք կերակուր լինիցին գազանաց, նոքին իսկ գազանքն սատակեալ ապականեցան:

ՊԱՏԱՍԽ. Խոստովանեսցի իսկ անմիտն այն, որ զայդ ածցէ զմտաւ, [զի ամենազօր է Աստուած][4]. և ասաց մեզ գիր, զի ի չգոյէ գոյացոյց Աստուած զամենայն, [5]և հողն փոշի է որ հօսի առաջի հողմոյ. և այն՝ որ ի փոշոյ այնպիսի ոսկերս և անդամս ստեղծանէ, ապա կարող է և զմարմին ապականեալ և զոսկերս մանրեալ և փոշի եղեալ՝ անդրէն վերստին ստեղծանել: Ո՞ր է հեշտագոյն, ասա՛ դու ցիս. որ ի չգոյից անօթ գործեսցէ, եթէ զանօթս բեկեալ և մանրեալ՝ անդրէն նորոգեսցէ. յա՛յտ է զի եղեալն վերստին՝ թէպէտեւ ի բազում կողմանս ցրուեալ լինիցի՝ յարմարի դիւրաւ: Եւ արդ, պարտ է յօրինակէ յայսմանէ հաւան առնել զանհաւանս, [6][քանզի հուրն շիջանի և տապն վերանայ յօդս, և արեգակն անտեսի յաչաց մարդկան, և դարձեալ յորժամ լուսանայ, անդրէն գայ

1. Դ. օր. յաղագս:
2. Յօր. էր՝ ածցէն... տա- ցէն, եդաւ ըստ Գ, Դ և Ե օրինակաց:
3. Դ. օր. յաւելու հնար:
4. Փակագծեալդ յաւելուա յ'Գ, Դ և Ե օրինակաց:
5. Դ. օր. յաւելու, և է հո- գւոյ որոյ Աստուած զմարդն:
6. Փակագծեալդ յաւելուա յ'Գ, Դ և Ե օրինակաց:

ջերմութիւնն. յայտ է զի յարեգակնէ անտի գայցէ: Այդպէս իմա և զապականեալ մարմին մարդկան. զի ամբողջ կացուցէ զմարմինս մարդկան, գազանաց, ձկանց և թռչնոց՝ որովք բաժանի մարդն ըստ չորս տարերացդ, և լուծանի և ի բաց գնայ ուստի հաստատեցաւն՝ ըստ նմանութեան և օրինակի արեգական. որպէս ի ջրոյ՝ հիւթն իցէ, և ցուրտն՝ յօդոյ, տապն ի հրոյ, և հուրն ի տապոյ. և ի ժամանակի յարութեան՝ հրամանաւն Աստուծոյ՝ աներեւոյթ տացէ իւրաքանչիւր ոք զոր առեալն է ի մարդոյ, և խառնի հոգին ի մարմինն իւր և յառնէ մարդն: Եւ թէ զիա՛րդ, միայն ինքն գիտէ որ ստեղծ զնա. սփռեալ յերկիր ապականացու բնութեամբ, և յառնէ անապական: Ուստի և զՍամարացիսն աստանոր կշտամբեսցուք. զի նոյն մարմին որ մեռանի, նա ինքն յառնէ. զոր օրինակ հատ ցորենոյ ծածկի ի ներքոյ երկրի, այնպէս և մարմին մարդոյ. և զայս ակամայ խոստովանեսցի մարդն, զբուսանելն ծածկեալ սերմանց[1] այնպիսի յուսով և ծածկեալ թաղեալ մարմինք]: Իսկ եթէ մեռելոց յարութիւն ոչ գոյ, որպէս և հերձուածողքն ասեն, ապա Աստուած անիրաւ գտանիցի. զի զարդարս և զուրբս թողացոյց՝ որ աստ տառապեցան ի չարչարանս և ի նեղութիւնս, և մեղաւորաց բազմաց և ամբարշտաց ետ ծնունդս բազումս, և բարութիւնս պարգեւեաց: Այլ մի՛ ի զուր մոլորեսցին որդիք Սամարացւոյն. վասն զի ստուգապէս գոյ յարութիւն: Զի որք աստ տառապանօք չարչարին բարեպաշտութեամբ, անդ պսակեսցին. և որք աստ ամբարշտութեամբ ի բարիկենդանութիւնս վայելեն, անդ յաւիտենական հրոյն դատապարտեսցին:

ԽԷժե. ՀԱՐՑ. Ո՞ւր երթիցեն հոգիք տղայոց հա-

1. Գ. օր. դնէ սերմանոյն:

ւատացելոց ի Քրիստոս, ի տանջա՞նս երթէ յար-քայութիւնն, այլ և որդիք անհաւատից տղայք. և ու՞ր հաւատացելոց առանց մկրտութեան, ընդ հաւատացելոց մանկու՞նսն դասաւորին, եթէ ընդ անհաւատից :

ԳԱՏՍԻ. Զայս իսկ սուրբ գրոցս պէս գիտացաք, զի վայելեսցեն տղայք յարքայութեան երկնից, յաստուածոց Տեառն, զի ասաց. «Թոյլ տուք մանկըտոյդ գալ առ իս, զի այդպիսեացդ է արքայութիւն երկնից»[2]: Եւ դարձեալ, «Եթէ ոչ դառնայք և լինիք[3] իբրեւ զմանկունս զայս, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից»[4]: Եւ այժմ տղայք հաւատացելոց սուրբ իցեն, յայտ է[5], զի անմարդք և ամբիծք գնացին աստի, մտանեն յարքայութիւն երկնից : իսկ տղայք հաւատացելոց՝ որք ոչ մկրտեալ և տղայք անհաւատից, ոչ ի տանջանս մտանիցեն և ոչ յարքայութեանն վայելեսցեն, քանզի մեղք ոչ են գործեալ[6] :

ԽԸ՞՞. ՀԱՐՑ. Հերձուածողք ամենայն ի կորուստ իցեն[7], թէ ոչ :

ԳԱՏՍԻ. Որպէս և զանազանք իցեն հերձուածողք, որպէս այլեւայլ են յանցանք. այլ կորուստ է Մանիքեցոցն և այլ Մոնդանացւոյն. այլ է որ ի մարմինն Աստուծոյ հերձուածեսցեն[8], և կէսք ասեն թէ ապականացու մարմին զգեցաւ Քրիստոս, և այլք ասեն թէ մարմինն ոչ է Աստուած : Ոչ եթէ այս միայն իցէ. զի ի մի հերձուածս՝ բազում զանազանութիւնք իցեն. այլ մեղք է եպիսկոպոսին հերձուածող լինել, և այլ է որ ի ժողովրդինէն. այլ է որ կարող է ուսուցանել զժո-

1. Դ. օր. շարժայաբերանն :
2. Մատթ. ԺԹ, 14 :
3. Դ. օր. դառնայցէք և լինիցիք :
4. Նոյն ? :
5. Դ. օր. յայնժամ հաւատացելոց որդիքն յայտ է :
6. Դ. օր. դնէ՝ քանզի ոչ չար գործեցին և ոչ բարի :
7. Դ. օր. երթիցեն :
8. Գ և Դ. օր. և այլ որ ըզմարմինն Աստուծոյ հերձուածեցին :

ղովուրդն, և այլ է որ ոչ կարէ. և այլ նոքա՝ որ նզովեն զճշմարտութիւնն և հակառակին՝ մեզ. այլ է որ գիտութեամբ սխալեսցի, և այլ է որ տգիտութեամբ։

ԽԹ[ԺԷ]. ՀԱՐՑ. Զի՞նչ արդեօք իցեն այնոքիկ՝ որք[1] իբրեւ մեռեալս մեռանիցին, և տեսիլս տեսանիցեն, և զկնի երկու աւուրց կամ երից յառնեն, և տեսիլս ամենեցուն պատմեսցեն։

ՊԱՏԱՍԽ. Այնպիսիքն ոչ եթէ կատարեալ մահուամբ մեռանիցին, այլ իբրեւ ի հիացման լինիցին[2]։ Իսկ այն՝ որ զտեսիլն ի միտ ունիցի և պատմեսցէ, արհաւիրք առնելով Աստուած ցուցանէ մեզ։

Ծ[ԺԸ]. ՀԱՐՑ. Զիա՞րդ ամենայն հոգի առանց մոլորելոյ ճանաչէ զմարմին իւր ի յարութեան, և յօտար մարմին ոչ մտանէ։

ՊԱՏԱՍԽ. Բնական հետեւողութեամբ[3] պարտ է ստանալ և կամ իմանալ յաղագս այդմ իրայ. զոր օրինակ գառինք երկօրեայք կամ երեքօրեայք բաժանիցին ի մարց իւրեանց, ի վաղիւն արձակելով՝ բնական իրօք[4] իւրաքանչիւր գտանիցէ զմայր իւր[5]։

ԾԱ[ԺԹ]. ՀԱՐՑ. Եթէ ոք բարի գործս գործեսցէ, և չար ինչ գործս ի միասին, և խառն չար գործովս և բարի և մեռանիցի[6], զի՞նչ պարտ իցէ իմանալ զայնպիսին։

ՊԱՏԱՍԽ. Զայդ միայն Աստուծոյ է գիտել. զի և հրշտակաց զայդ անհնարին է իմանալ[7], թող թէ

1. Գ, Դ և Ե օր. յաւելուն՝ յերրորդ։
2. Գ. օր. եղեալ։
3. Ցօր. էր՝ հետեւողութեան, եդաք ըստ Դ. օր։ Իսկ Գ. օր. ունի այսպէս. Այսպէս պարտ է իմանալ յաղագս այդմ իրաց։
4. Ե. օր. ճանաչմամբ։
5. Ե. օր. Աստէն յաւելու՝ այնպէս են և հոգիք։
6. Գ, Դ և Ե. օր. և նոյն գործով չարաւ և բարեաւ մեռանիցի։
7. Գ, Դ և Ե. օր. զի և ոչ հրեշտակք չեն այդմ իրաց (Դ. օր. այդպիսեաց) հասու, թող թէ մարդիք։

*ի մարդկանէ. բայց շնորհելովն Աստուծոյ, զայս ասեմք. զի թէ լինիցի ի մարդն ծածկեալ չարիք՝ որ ապականէ զամենայն գործս բարեաց, և իցէ գործ բարի ծածկեալ՝ որ ապականէ զամենայն գործս չարեաց զմեծամեծս, այլ որ հաւասար գործս գործեալ իցէ զչարն և զբարին, և ապա մեռանի, յաւուրն դատաստանի լինի կանգնեալ յանդիման հրոյ գեհեննին և ահարեկ լինիցի. ընդ-դուշասցի թէ գուցէ գայցէ ի վերայ նորա բոց հրոյն, և ահիւն հալի և մաշի և ճողոպրել ոչ զօրէ, և հուրն զնա ոչ ուտէ, այլ յահէ գեհեննին հանապազ ի տանջանս կացցէ ահիւն այնուիկ։*

ԾԲ՛ժդ. ՀԱՐՑ. [*Զի՞նչ լաւագոյն է մահ մարդոյ քան զանասնոյ, զի ունի հոգի գոյացեալ անմահ. և մարդ և անասուն միապէս մեռանին և միապէս ապականին։*

ՊԱՏԱՍԽԻ. *Բնութիւն արեան անասնոյ կենդանական գոյութիւն է. և յորժամ յանասնոյն բաժանի՝ մեռանի, և ոչ օգտեսցի այնուհետեւ յերիցս յայսցանէ՝ ի հոգւոյ, ի մարմնոյ և յարենէ։ Իսկ առ մեզ բանաւոր բնութիւնս, բնութիւն արեանն կապեալ լինի ընդ հոգին և ընդ մարմինն. և ի բաժանել կապանացն՝ հարկ է և ամենայն կապելոցն ի միասին բաժանել։*

ԾԳ՛ժե. ՀԱՐՑ. *Բարիոք է բնական ցուցումն. այլ սակայն որպէս մարդիկ մեռանին անասունք, առանց ելանելոյ արիւն ի նոցանէ. զի՞նչ է որ ոչ ելանէ՝ մատուցանէ զմահ։*

ՊԱՏԱՍԽԻ. *Անասնոց և յաճախեալ արիւնն ի ջերմանալն և ի շարժելն՝ տայ նոցա մեռանել. զոր օրինակ լական պղնձի լցեալ ջրով՝ յորժամ հուրն ի ներքոյ վառեալ լինի, յուզումն լինի ջրոյն և եռայ. իսկ յորժամ հուրն պակասի, առ փոքր մի անշարժ երևեսցի և ցուրտ ջուրն այն։ Այնպէս և բնութիւն անասնոցն լինի յարիւնէ. և իմացիր՝ զի արիւնն լինի պատճառ կենաց և չար-*

*ժելոյ. յորժամ զօրանայ արիւնն, տկարանայ և մեռեալ անշարժ լինի եթէ անասուն և եթէ թռչուն: իսկ յաղագս մարդկային բնութեանս ոչ միայն ջերմն և տապ արեանն ի ժամանակ մահուն բաժանին, այլ ընդ նոսին և հոգին բանաւոր, հաստատուն և անմահ իսկ և իմանալի գոյութիւն]*[1]:

ԾԴ՛Ա. ՀԱՐՑ. *Ցո՞ր ամիս ստեղծ*[2] *Աստուած զԱդամ, և կամ զի՞րդ:*

ՊԱՏՍԽ. *Ի քսան և հինգ ի մարտի ամսեան, յաւուր վեցերորդի, որ է ուրբաթ:*

*ԾԵ. ՀԱՐՑ. *Ո՞ նախ ասաց զանունն Աստուծոյ:*

ՊԱՏՍԽ. *Օձն բերանով սատանայի ասաց ընդ Եւայ*[3]:

ԾԶ ՀԱՐՑ. *Զի՞նչ էր եւթն վրէժն՝ որ խնդրէր ի Կայենէ:*

ՊԱՏՍԽ. *Զի զԱստուած ի գործս իւրում*[4] *բարկացոյց, զի զհեզութիւնն պակասեցոյց, զի ըղմայրն անորդի արար*[5], *զի եղբայրսպան եղեւ*[6], *զի զերեսս երկրի պղծեաց*[7], *զի արիւն եհեղ և սպանութիւն*[8] *յայտնեաց*[9], *զի*[10] *զդժոխս նորոգեաց:*

ԾԷ. ՀԱՐՑ. *Ցո՞ր ժամ մեռաւ չորրորդ մայր*[44] *աշխարհիս:*

ՊԱՏՍԽ. *Յորժամ զՀաբէլ եսպան եղբայր իւր Կայեն:*

1. Փակագծեալդ յաւելու յ'Գ օրինակէն. պակասի յ'Բ, Դ և Զ. օր:
2. Գ. օր. Ցո՞ր ժամ ստեղծ:

* Հայն սկսեալ ի հարցմանէդ՝ զարտուղի ի յն. բնագրէն:

3. Ե. օր. չունի ցայս վայր՝ սկսեալ ի ԾԲ հրցմ. իսկ Գ. օր. չունի զԾԵ. հրցմ.:
4. Գ և Դ. օր. [illegible] [illegible]:
5. Յօր. [illegible], եդաք ըստ Բ և Դ օր:
6. Յօր. [illegible], եդաք ըստ Բ և Դ օր:
7. Յօր. [illegible], եդաք ըստ Բ և Դ. օր:
8. Բ. օր. [illegible]:
9. Գ. օր. [illegible]:
10. Զ. օր. ունի [illegible]:
11. Բ. օր. [illegible]:

ԺԸ. ՀԱՐՑ. Ո՞ էր որ ոչ ծնաւ ի մօրէ և մեռաւ[1]։

ՊԱՏԱՍԽ. Ադամ՝ որ ի հողոյ ստեղծաւ[2]։

ԺԹ. ՀԱՐՑ. Ո՞վ իցեն[3] մարդիկն այն՝ զորոց ասէ մարգարէն. «Երկինք պատմեն զփառս Աստուծոյ»։

ՊԱՏԱՍԽ. Թէպէտ և զառաքեալսն ասեն, բայց աղքա իսկ իցեն. Սէթ, Ենովս, Ենովք, Նոյ, Աբրահամ, Իսահակ, Յակոբ[4]։

Ի. ՀԱՐՑ. Քանի՞ մասն հերձեալ[5] ծովն՝ յորժամ անցին որդիքն Իսրայէլի յելանելն յԵգիպտոսէ։

ՊԱՏԱՍԽ. Տասն և երկու մասն[6], զի իւրաքանչիւր ազգ ճանապարհաւ իւրով ճանապարհորդէր։

ԻԱ. ՀԱՐՑ. Զի՞նչ է Սիոն, կամ յառաջմանէ[7] Սիոն ո՞ կոչեցաւ։

ՊԱՏԱՍԽ. Հողն՝ ուստի Ադամ ստեղծաւ, այն է[8] Սիոն։

ԻԲ. ՀԱՐՑ. Ուստի՞ առաւ[9] հողն՝ յորմէ Ադամ ստեղծաւ։

ՊԱՏԱՍԽ. Յերկրէն Մադիամու, ուր բնակեցաւ Ադամ յորժամ ելաւ[10] ի դրախտէն։ Մադիամն մէջ[11] երկնի և երկրի է, որպէս ասաց սաղմոսերգն[12]. Աստուած թագաւոր մեր յառաջ քան զյաւիտեանս, որ արարեր զփրկութիւն ի մէջ երկրի. և անդ խաչեցաւ Քրիստոս։

ԻԳ. ՀԱՐՑ. Քանի՞ գործ արարեալ է[13] Աստուած ձեռօք իւրովք։

1. Բ և Դ. օր. ծնաւ։
2. Բ. օր. յաւելու և մեռաւ։
3. Բ. օր. ո՞յք էին։
4. Աստանօր Բ և Գ. օր. յաւելուն այլ ևս չորս հարցմունս յիմարականս և անօգուտս, զորս անպատշաճ վարկաք կարգել աստէն։
5. Դ և Ե. օր. հերձեալ։
6. Ե. օր. յաւելու՝ հերձեալ։
7. Ե. օր. զնէ. Յառաջ ո՞ր պեղէ անուանեցաւ Սիոն։
8. Դ և Ե. օր. այն կոչեցաւ Սիոն։
9. Ե. օր. առեալ եղեւ։
10. Ե. օր. եւ։
11. Դ. օր. ի մէջ։
12. Դ և Ե. օր. սաղմոսն։
13. Դ և Ե. օր. արար։

ԳԱՏՕՒ. *Երիս գործս, զԱդամ, զդրախտն և զգրեալ զտախտակսն։*

ԿԴ. ՀԱՐՑ[1]. *Ո՞ զմահ ո՛չ ճաշակեաց, և ինքն փախեաւ ի մահուանէ։*

ԳԱՏՕՒ. *Հեղիաս ոչ մեռաւ և փախեաւ յԵզաբելէ։*

ԿԵ. ՀԱՐՑ. *Ո՞ր արուեստ առաջին ածաւ յաշխարհս։*

ԳԱՏՕՒ. *Կարկատելն, այսինքն՝ զոր Ադամ և Եւա կարեցին[2] և սփածան։*

ԿԶ. ՀԱՐՑ[3]. *Ո՞ զերկինս ո՛չ ետես, և յերկիր ոչ կոխեալ[4], աչօք ոչ տեսաւ, և Աստուծոյ երկրպագեալ, ոչ որպէս յերկինս և ոչ երեւեալ ի վերայ երկրի։*

ԳԱՏՕՒ. *Կարապետն[5]։*

ԿԷ. ՀԱՐՑ. *Ո՞ր յանցանք անընդունելի արասցէ զաղօթս մարդոյ առաջի Աստուծոյ։*

ԳԱՏՕՒ. *Ոխակալութիւնն, ըստ բանին Տեառն՝ որ ասէ. «Եթէ մատուցանիցես զպատարագն քո ի վերայ սեղանոյն, և անդ յիշեսցես, եթէ եղբայր քո ունիցի ինչ խէթ զքէն, թող զպատարագն քո ի վերայ սեղանոյն, և երթ նախ հաշտեաց ընդ ընգերին քում». այսինքն՝ զոխակալութիւնն, յայտ արասցէ, զի անընդունելի արասցէ զպատարագն, յայտ է թէ և զաղօթսն[6]։*

ԿԸ. ՀԱՐՑ. *Ո՞ր յանցանքն ոչ զօրէ զղջացուցանել զԱստուած։*

ԳԱՏՕՒ. *Անյուսութիւնն՝ որով ըմբռնեցաւ Յուդա, և[7] խեղդեցաւ փաղփաղակի։*

ԿԹ. ՀԱՐՑ. *Ո՞ր յանցանք ծանրագոյն է քան զամենայն մեղս։*

1. Ե. օր. չունի զայս հարցումն։
2. Դ և Ե. կարկատեցին։
3. Ե. օր. չունի։
4. Դ. կոխեալ։
5. Դ. յաւելու Յովհաննէս։
6. Ե. օր. դնէ. առա ոխակալութիւն անընդունելի առնէ զպատարագն, յայտ է ասելովն՝ նոյն ասա զաղօթսն։
7. Ե. օր. յաւելու չորս։

ՊԱՏԱՍԽ. *Որպէս սէրն ընդ ընկերին՝ վերագոյն է քան զամենայն առաքինութիւնն, որպէս և Պաւղոս ասէ, այնպէս և եղբայրատեցութիւնն վերագոյն յանցանք են քան զամենայն, նոյնպէս անգթութիւնն և անողորմութիւնն ։*

Հ. ՀԱՐՑ. *Ո՞ր պատուիրան գործի ի մարդկանէ, և այնու քաւի*[1] *ամենայն յանցանք իւր ։*

ՊԱՏԱՍԽ. *Ասաց Տէր, «Մի՛ դատիք, և ոչ դատապարտիք. և եթէ՝ թողէք, և թողցի ձեզ. և որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ» ։*

ՀԱ. ՀԱՐՑ. *Թէ ոք արասցէ յանցանս մեծագոյնս և ապաշխարեսցէ, զիա՞րդ կարասցէ իմանալ, թէ թողաւ նմա թէ ոչ ։*

ՊԱՏԱՍԽ. *Սակաւուց*[2] *լինիցի ի մարդկանէ իրքըդ այդ ։ Այլ սակայն որպէս ծառայ և տէր, այնպէս և այն. զոր օրինակ ծառայն յորժամ մեղանչէ, ի կերպէ*[3] *բանիցն ճանաչէ զկամս տեառն իւրոյ, գի ոչ է ընդ նմա*[4] *աչօք բարի, և ոչ կամօք այնպէս, որպէս յառաջագոյնն էր նախ քան զմեղանչելն, և ի բաց թողու զհամարձակութիւնն զոր ունէր առ տէրն իւր ։ Եւ յորժամ հաշտեսցի ընդ նմա, [ի խօսիցն իմանայ*[5]*, այնպէս և ապաշխարելն՝ որ ըստ արժանեացն լինիցի. զի ]*[6] *դարձեալ Աստուած շնորհեսցէ նմա զառաջին համարձակութիւնն*[7] *զոր ունէր յառաջ քան զմեղանչելն. և այսպէս իմասցի մարդն, եթէ եթող Աստուած նմա զյանցանսն զոր յանցեաւ ։*

ՀԲ. ՀԱՐՑ. *Եթէ ոք արասցէ մեղս մեծագոյնս, և ապաշաւեսցէ յանձն իւր, և սկսանի ապաշխարել, և ապա յետ երից աւուրց մեռանիցի, զի՞նչ պարտ է իմանալ զայնպիսոյն ։*

1. Դ. օր. Զո՞ր պատուիրան գործէ մարդ՝ որով քաւիցի ։
2. Ե. սակաւուց ։
3. Դ և Ե. օր. ի կերպս ։
4. Դ և Ե. օր. ընդ նմա՝ իբր ուղղոյն ընդ նմա բարի աչօք ։
5. Ե. օր. իմացեալ լինի ։
6. Փակագծեալդ յաւելուած ՚ի Գ, Դ և Ե. օր ։
7. Ե. օր. շնորհն ։

ՊԱՏԱՍԽԱՆԻ. Եթէ սկսեալ իցէ յապաշխարութիւն, և ցածուցեալ իցէ զանձն իւր ի չար խորհրդոց, և եդեալ իցէ ի սրտի իւրում առաջի Աստուծոյ՝ որ ոչ երբեք յանցանիցէ[1] զկարգն, և ոչ դառնայ յանցանս առաջինս՝ զոր գործեալ իցէ, և յայլ մեղս ինչ չանկանիցի, եթէ ի վաղիւն[2] սկսանի յապաշխարութիւնն՝ և երկուսնն մեռանիցի, ընդունելի է առ Աստուած ապաշխարութիւն Նորա[3], որպէս աւազակին։ Քանզի սկսանելն յապաշխարութիւն՝ ի մարդոյն իսկ իցէ, և յաջողելն՝[4] յԱստուծոյ։ Քանզի բազումք սկսանին[5] յապաշխարութիւն, և յափշտակէ զնոսա Աստուած վաղվաղակի որպէս բարերար, Նախագիտութեամբ[6] իւրով, զի մի՛ դուցէ[7] դարձեալ ի մեղս անկանիցին և ի Նմին կորնչիցին։

ՀԳ. ՀԱՐՑ. Արդ, ուստի՞ լինիցի՝ զի երբեմն բարի իցէ բնութիւն մարդոյն, և երբեմն խրատագոյն[8] առ ի յողորմութիւն[9]։

ՊԱՏԱՍԽԱՆԻ. Այդ՝ բնութեանն Աստուծոյ միայն Նիցէ լինել, զի անփոփոխելի մնասցէ միշտ. քանզի գիտեմք զի և հրեշտակաց փոփոխեցաւ բնութիւնք[10]. զի որպէս կեանք մեր յեղյեղումն ունի ի վերայ երկրի, Նոյնպէս և բնութիւնք մեր։ Իսկ յորժամ բնութիւն մարդոյն բարի լինիցի, այն իսկ է զի

1. Դ, Ե և Զ օր. անցանէ իսկ Գ. օր. յանցանէ։
2. Դ և Ե օր. վաղուն։
3. Գ. օր. չունի առ Աստուած ապաշխարութիւն Նորա։
4. Յօր. առաջնորդէն. եդաք ըստ Գ, Դ, Ե և Զ օրինակաց։
5. Յօր. բազմաց սկսեալ լինին. եդաք ըստ Գ, Դ, Ե և Զ օրինակաց։
6. Գ, Դ և Ե օր. նախախնամութեամբ։
7. Գ, Դ և Ե օր. յաւելուն աստէն՝ յերկրորդում ապաշխարութեան և։
8. Գ, Դ և Ե օր. դնեն խիստ։
9. Գ. օր. չունի առ ի յողորմութիւն։
10. Դ և Ե օր. զի և ոչ հրեշտակք մնացին անփոփոխ բնութեամբ։

ըստ պատկերի Աստուծոյ իցէ[1] ։ Իսկ այն որ երբեմն խոտանայ, որպէս թէ ի թշնամեաց պատերազմեսցի. բայց եթէ մարդ զանձն իւր յողորմութիւն սովորեցուցանէ և ի բարի առնել, ամենայնի հաստանիցէ ։

ՀԴ. ՀԱՐՑ. Եթէ ոք ոչ ունիցի ինչ որ արասցէ ողորմութիւն և ցանկայ առնել, զի՞նչ լինիցի և կամ համարեսցի այնպիսին ։

ՊԱՏՍԽ. Աստուած զբարի ցանկութիւնն առաւելապէս ընդունի քան զչար ցանկութիւնն ։ Եւ արդ, եթէ որ ցանկայ կնոջ, զայն շնութիւն համարեցաւ, և ասաց, եթէ « Շնացաւ ի սրտի իւրում » ցանկացողն, ապա որչափ եւս առաւել՝ որ զբարին գործել ցանկայ, կատարեալ գործ բարի համարեսցի ընա Աստուած ։ Արդ, որ ոչ ունիցի ինչ, և տեսանիցէ զաղքատն ծարաւեալ, քաղցեալ, մերկ[2], ցրտացեալ, և ոչ կարէ լնուլ և ոչ մի ինչ յայնցանէ, և փափագէ լնուլ, իբր թէ կատարեաց զայն՝ այնպէս համարեսցի նմա Աստուած և պսակեսցէ ։ Ապա եթէ կարող է լնուլ զայն ամենայն[3], և ցանկայ լնուլ՝ և ոչ լնու, դատապարտի չարաչար ։

ՀԵ. ՀԱՐՑ. Եթէ ոք ոչ ունիցի զի լնուցու զամենայն կարօտութիւն աղքատաց, և զոր ունիցի կարողութիւն՝ և զայն ոչ լնու[4], զի՞նչ համարեսցի այնպիսոյն ։

ՊԱՏՍԽ. Վասն այդորիկ Աստուած մինչեւ բաժակ մի ջուր ցուրտ ընդունեցաւ զողորմութիւնն. զի եթէ ոչ է ստացեալ ոք ինչ, այլ սակայն ջուր կարող է արբուցանել ծարաւելոյն. ապա եթէ կարող է արբուցանել և կերակրել, և զկերակրելն

1. Գ. օր. դնէ՝ զԱստուծոյ զկերպակցութիւնն ի մեզ ցուցանէ ։
2. Գ. օր. մերկացեալ ։
3. Գ, Դ և Ե օր. չունին զայն ամենայն ։
4. Ե. օր. յաւելու՝ այլ անտես առնէ ։

անտես արասցէ. և ծանրագոյն համարեսցի, և զլուրն որ թեթևագոյն է, զայն միայն արբուցանէ, ոչ է ընդունելի: Զոր օրինակ, եթէ երկու անդամ մարդոյ վիրաւորեալ իցէ[1], և կարող է բժիշկն զերկոսեանն բժշկել, և նա զմինն բժշկեսցէ, և զմիւսն անտես արասցէ, ոչ է ընդունելի[2]. Նոյնպէս եթէ ոք կարողութիւն ունի զգեցուցանել՝ և զայն անտես առնէ, և կերակրէ միայն և արբուցանէ, [3]և այդպէս որ ինչ ի կարգին է՝ համարեսցի:

ՀԶ. ՀԱՐՑ. Իսկ եթէ և ոչ արբուցանելոյ ջուր ունիցի կարողութիւն, զի՞նչ լինիցի:

ՊԱՏԱՍԽ. Որպէս ասացի, այնպէս կատարեալ իցէ վարձք նորա: Բայց անհնարին է առանց ողորմութիւն առնելոյ կամ այլ գործս բարիս՝ ողորմութեանն Աստուծոյ հանդիպել: Քանզի և բանիւ առնել ողորմութիւն՝ վերագոյն է քան զտուրս: Այլ և իցեն գործք բարիք, որ պահանջի ի չքաւորէ և ի մեծատանէ, և յանապատաւորէ և յիշխանաւորէ[4]: Եւ ո՞ր իցէ այն. այսինքն է, զոխ ընկերին արմատախիլ առնել[5] ի սրտէ. զայս ոչ աղքատութիւն կարէ խափանել, և ոչ տկարութիւն մարմնոյ: Արդ, եթէ ոք առաջնորդեսցէ մոլորելոյն, և զպէտս գործոյ իւրոյ անտես արասցէ՝ և նմա առաջնորդեսցէ, այս առաւելապէս ողորմութեան է, և ոչինչ պակաս քան զտուրս ընչից[6]:

ՀԷ. ՀԱՐՑ. Որ ցանկայ և յօժարի և փափագի

1. Բ, Գ, Դ և Ե օր. զոր օրինակ՝ թէ ոք յերկուս անդամն վէրս ունիցի:
2. Գ, Դ և Ե օր. ոչ է անողջելի:
3. Գ. օր. աստի ցվերջակէտն չունի:
4. Գ. օր. դնէ՝ ի պաշտօնաւորէ և ի շինաւորէ:
5. Գ, Դ և Ե օր. արմատաքի խլել:
6. Բ. օր. սկսեալ ի Կ. Հարցմանէս ցայս վայր չունի:

կատարել, և ոչ պատրաստի առ ի լինել զցանկութիւն իւր, զի՞նչ համարեսցի այնպիսին, և կամ որ ցանկայ և կարող է կատարել՝ և ոչ կատարէ իսկ[1]։

ԳԱՏՈՒ. Պէսպէս լցէ ցանկութիւնդ այդ[2], և ազգի ազգի բնութիւն գործոյդ. և օրինակաք հաւան արարից զքեզ։ Է ցանկութիւն որ հանապազ լուցանի ցանկութեամբն, եթէ ոչ կատարէ և խափանէ զցանկութիւնն. այնպիսին համարեսցի իբրեւ զայն՝ որ առնու զսուր իւր և երթայ ի դուռն թշնամւոյն, զի թէ ելանէ յարկէ իւրմէ՝ սպանանէ զնա. և թէ ոչ ելանէ՝ ոչ սպանանէ, և[3] ոչ դատապարտի մարդասպանութեան դատաստանաւ։ Իսկ այն՝ որ կայ և մնայ հանապազ ի ցանկութեան, և հասանէ ի վերայ մահն, իբրեւ անօրէնն՝ յանօրէնութեանն մեռանի և դատապարտի, և ամբարտաւանն՝ յամբարտաւանութեանն, և շնացողն՝ ի շնութեանն, և ոխակալն՝ յոխակալութեան. այնպէս դատապարտի և ցանկացողն չարեաց[4], որ ի ցանկութեանն մեռանի։ Եւ[5] որպէս ասացի, զի Աստուած զբարի ցանկութիւնն լաւագոյն համարի քան զչարին. զի եթէ բազումք ցանկան մտանել յարքայութիւնն, և ոչ կատարեն գործ արքայութեան, այլ շնան, գողանան, զուր վկայեն[6] և ոչ առնեն գործս ողորմութեան, արդ[7] ցանկալոյն միայն ոչ հասանեն տենչանացն. այնպէս և որ ցանկայ կատարել զգործ մեղաց և ոչ արասցէ զգործ ցանկու-

1. Գ. օր. Որ ցանկայ և յօժարէ է կատարել զցանկութիւն իւր և ոչ կարէ, զի՞նչ համարեսցի այնպիսին. և որ ցանկայ և կարող է կատարել՝ և ոչ կարէ։
2. Դ. օր. Պէսպէս են ցանկութիւնք այս։
3. Դ. օր. այնպիսին։
4. Ցօր. պակասէր չարեաց, յաւելու յ՚Գ, Դ և Ե օր.։
5. Գ, Դ և Ե օր. յաւելուն՝ այլ են ցանկութիւնք։
6. Բ, Գ, Դ և Ե օր. սուտ վկայեն։
7. Դ. օր. այլ։

թեանն, այլ արարացէ ողորմութիւն, անոխակալութիւն, պահոց պնդութիւն, աղօթից յերկարութիւն[1], և այլ առաքինութիւն, սակայն ցանկութեամբն այն ոչ դատապարտեսցի։ իսկ այն՝ որ ցանկայ և կարող է կատարել, և ոչ կատարէ վասն ահի գեհենին, այնպիսին պսակեսցի քան թէ դատապարտեսցի. որպէս և այն, որ կարող է առնել ողորմութիւն և ցանկայ առնել և ոչ առնէ, դատապարտի. սոյնպէս և որ ցանկայ առնել չնութիւն և ոչ առնէ, և կարող է առնել՝ և ոչ կատարէ, պսակեսցի։ Զի այն որ կարող էր առնել ողորմութիւն և ոչ արար, դատապարտեսցի, զի յաղթեցաւ ի մարտին. այնպէս և որ կարողն էր կատարել զչնութիւնն՝ և ոչ կատարեաց, պսակեսցի, զի յաղթեաց մարտին։

ՀԸ. ՀԱՐՑ. Որ թողու զաշխարհս և հեռանայ վասն ցանկութեան, և որք կան և մնան ի քաղաքս և յաղթեն ցանկութեանն, հաւասա՞ր են երկոքեան, եթէ առաւելապէս ունիցի պսակ[2] որոշեալն քան զբնակեալն ի քաղաքի։

ՊԱՏՍԽ. իսկ այն որ թողու զքաղաքս, և բնակէ ի տեղի՝ ուր ոչ տեսանէ զգեղ կանանց՝ և ցանկայ, ոչ կոչի նա առաքինի, զի բորբոքի հեշտութեամբն[3], և ոչ գտանէ տեղի որ կատարէ զցանկութիւնն. և որպէս գողն որ ոչ գտանիցէ ինչ զի գողասցի, և սպանողն զի սպանանիցէ, այնպէս որ ցանկայ յանապատին՝ և ոչ գտանէ տեղի կատարել զցանկութիւնն։ Եւ դարձեալ, զի ոչ տեսանէ զգեղ կանանց, ո՛չ ցանկայ։ Այլ ոչ է անընդունելի որոշելն նորա ի քաղաքէն, բայց առաքինի ո՛չ համարեսցի, այլ միայն զգաստ և ողջախոհ. զի ոչ ճակատեցաւ ընդ մարտնչողն և յաղթեաց[4], այլ

1. Դ. օր. դնէ պահք և աղօթք։
2. Ցօր. պակասէր պսակ, յաւելեալ ի Դ և Ե. օր.։
3. Դ. օր. ցանկութեամբք։
4. Դ. օր. չունի՝ և յաղթեաց։

փախեաւ. այնպէս այն՝ որ փախուցեալ լինիցի ի դիմամարտէն, միայն ապրեցաւ ի տանջանաց և ո՛չ պսակեցաւ ի նահատակադրէն. այնպէս և որ միայն փախեաւ ի դիմամարտէն, այսինքն ի ցանկութենէն, միայն ի տանջանաց ապրեցաւ, այլ ոչ պսակեցաւ[1]: Իսկ այն որ ի քաղաքի բնակեսցէ, և տեսանիցէ զգեղ կանանց և ցանկասցի, և ոչ կատարէ զցանկութիւն իւր, դիմամարտեցաւ ընդ պատերազմողն և յաղթեաց մարտին, պսակեսցի ի նահատակադրէն: Այլ[2] պարտ է չցանկալ ամենևին. քանզի առնու արմատ ցանկութիւնն. զոր օրինակ ագռաւ կլանէ զպտուղ թզենւոյ, և երթեալ արձակէ արտաքոյ որովայնի իւրում[3], և անկեալ հատ թզենւոյն ի վերայ ապառած վիմի, և գտեալ անդ հիւթ ինչ հողոյ՝ բուսանի, և սուղ ինչ առ սակաւ սակաւ առցէ արմատս և արձակեսցէ ոստս, հաստատի տերևօք և պտղաբերեսցէ[4]. այնպէս է և ցանկութիւնն. զի բնութիւն[5] մարդոյ ի հիւթոյ և ի ցամաքոյ հաստատեալ է. որչափ և ապառաժացեալ ստացեալ իցէ ոք մարմին ի հիւթոյ ախտից, այլ սակայն՝ որպէս ի մարմնոյ և յարենէ հաստատեալ է, գտանիցի անդ արմատ սուղ ինչ, և հաստատէ զոստս և զպտուղ չարութեան:

ՀԹ. ՀԱՐՑ. Զի՞նչ[6] ապաշխարութիւն փութապէս մաքրէ և սրբէ զյանցանս բազումս[7]:

ՊԱՏՍԽ. Լուաք ի սուրբ աւետարանէն ասելով ցմեզ. «Բարի արարէք ատելեաց ձերոց. օրհնեցէք զանիծիչս ձեր. և լերուք նմանողք Հօր ձերոյ որ յերկինս է»[8]: Եւ արդ, եթէ ոք արասցէ զառա-

1. Դ. օր. չունի՝ այլ ոչ պս-ակեցաւ:
2. Դ. օր. Այդ:
3. Ե. օր. խորոյ:
4. Ե. օր. դնէ՝ և ապա սուղ ինչ արմատ առեալ՝ արձակէ ստոր, հաստատէ տերևօք և պտղաբերէ:
5. Ե. օր. չունի զի բնութիւն:
6. Ե. օր. Ո՞ր:
7. Գ, Դ և Ե օր. զանձնայն յանցանս:
8. Մատթ. Ե, 44, 48:

քինութիւնս զայս, և սրբեսցէ և ի բաց հանցէ[1] զամենայն արմատ ոխակալութեան ի սրտէ՝ զըն-կերին, այնպէս զի յորժամ չար ինչ լինիցի նմա՝ վշտանայ, և յորժամ բարի լինիցի՝ ուրա-խանայ։ Արդ, այնպիսին եթէ բիւր չարիս գոր-ծեալ իցէ, շնութիւն, գողութիւն, ագահութիւն, թէ և ոչ իցէ պահեալ պահս, և ոչ յաճախապէս աղօթեալ[2], այլ ընդ բազում մեղօք շաղեալ[3] իցէ, զայն ամենայն ի նմին ժամու յական թօթափեալ[4] ջնջեսցէ և ոչ եթէ միայն մաքրեսցի ի յան-ցանաց, այլ և ըստ կարի մարդոյ՝ նման Աստու-ծոյ լինիցի։

Զ. ՀԱՐՑ. Զի՞նչ գործի ի չարեաց[5] որ աղար-տէ և ապականէ զամենայն գործս բարեաց։

ՊԱՏԱՍԽ. Որպէս և[6] յառաջն ասացաք, թէ որ ոչ սիրէ զեղբայրն՝ ծանրագոյն մեղք են, և որ սիրէ՝ վերագոյն առաքինութիւն, սոյնպէս և որ ոխս պահեսցէ ընկերի իւրում և չար հատուցանէ, եթէ ոչ է շնացեալ, եթէ ոչ է գողացեալ, այլ թէ և պահս պահեալ իցէ, եթէ աղօթս աղօթեալ իցէ, եթէ[7] զամենայն առաքինութիւնս արարեալ իցէ[8], այդիւ աղարտէ զամենայնն և դատապարտեսցի։ Զի որպէս անոխակալութիւն զամենայն յանցանս աղարտէ և սպանանէ[9], այսպէս և ոխակալութիւնն զամենայն առաքինութիւն ապականէ։

ԶԱ. ՀԱՐՑ. Ամենայն գողութիւն հաւասա՞ր իցէ, և որք գողանան՝ հաւասա՞ր դատին։

ՊԱՏԱՍԽ. Ո՛չ այդպէս իցէ[10]. քանզի այլ է այն որ քաղցեալ և կարօտեալ իցէ և գողանայցէ, և

1. Դ. օր. դնէ և որքէ և ի բաց հատանէ։
2. Դ. օր. դնէ՝ եթէ ոչ պահեալ, եթէ ոչ աղօթեալ։
3. Դ. օր. շաղախեալ։
4. Դ. օր. Թօթափել։
5. Դ. օր. Զի՞նչ գործ է չարեաց։
6. Դ. օր. չունի՝ Որպէս և։
7. Դ. օր. դնէ և։
8. Դ. օր. կատարեալ էցէ։
9. Դ. օր. դնէ և ապականէ։
10. Դ. օր. Ո՛չ, այլ դէպքէ իցէ։

*միայն զկարօտութիւնն լնուցու*[1]. *և այլ է որ վասն աճեցուցանելոյ զինչսն՝ դիցէ ջանս բազումս ի վերայ գողութեան. այնպիսին բազում*[2] *տանջանս կրեսցէ քան զայնոսիկ, որ վասն լնլոյ զկարօտութիւնն՝ գողանան*:

ՉԲ. ՀԱՐՑ. *Ասացեր, թէ որ չարին չար հատուցանէ*[3] *զի՞նչ լինիցի*:

ՊԱՏՍԽ. *Կարի սաստկագոյն*[4] *և չարագոյն. զի զոր օրինակ այն որ աղքատին ոչ տայ*[5], *այլ և առնու ևս, չարաչար տանջեսցի քան զայնոսիկ*[6], *որ թէպէտ և տան ոչ՝ այլ և ո՛չ յափշտակեսցեն, այնպէս և այն առաւելապէս տանջեսցի՝ որ բարոյն չար արարացէ, քան զայնոսիկ՝ որ չարին չար հատուցանիցեն առ ընկերս*:

ՉԳ. ՀԱՐՑ. *Իսկ այն, որ ոչ չար արարեալ է ումեք և ոչ բարի, և նմա ոք չար արասցէ, զի՞նչ լինիցի այնպիսոյն*:

ՊԱՏՍԽ. *Չարագոյն գատեսցի քան զայնոսիկ որք բարոյն չար*[7] *հատուցանեն, և թեթեւագոյն քան զայն՝ որ չարին չար*[8] *արարին փոխարէն*:

ՉԴ. ՀԱՐՑ. *Եթէ լինիցի՞, ասէ, տանջանք չարագոյն քան զմիւսն և թեթեւագոյն*[9]:

ՊԱՏՍԽ. *Կարի յոյժ ասէ*[10]. *զի զոր օրինակ ասէ Քրիստոս, « Ի տան Հօր իմոյ օթեւանք բազում են »*[11], *այնպէս և չարչարանքն. ոչ հաւասար*[12]

1. Գ և Դ օր. լնու:
2. Գ, Դ և Ե օր. առաւել:
3. Գ, Դ և Ե օր. Թէ որ չարին չար հատուցանէ զարդարոյն, իսկ որ (Ե. օր. այլ որ) բարւոյն չար հատուցանէ (Ե. օր. առնէ):
4. Գ, Դ և Ե օր. սատանի:
5. Ե. օր. այն որ ոչ միայն ողորմի աղքատին:
6. Գ, Դ և Ե օր. տանջի քան զայն:
7. Գ և Ե. օր. չարին չար:
8. Գ և Ե. օր. բարւոյն չար:
9. Ե. օր. Ե՞ն արդեօք տանջանք դժոխոցն չարագոյն կամ թեթեւագոյն ի վերայ մեղաւորաց, թէ զանազանք են:
10. Գ, Դ և Ե օր. չունին ասէ, իսկ Ե. օր. զնէ Կարէ յոյժ զանազանք են:
11. Յովհ. ԺԴ, 2:
12. Գ և Ե օր. զնեն՝ բազում են:

արդարք զարքայութիւն վայելեն և մեղաւորք զգեհենն. գոյ հանգիստ պէսպէս. այլ է որ վայելէ յարքայութեանն[1], և այլ է որ հանգիստ միայն գտանէ. այլ է որ մեծապէս վայելէ, և այլ է որ ցածագոյն[2]. այլ է որ պայծառանայ լուսով պայծառապէս, և այլ է որ վայելէ վատթարագոյն[3]: Այսպէս այլ է որ տանջեսցի ի հուր գեհեննին, և այլ է որ ի ցածագոյն[4] տանջանս. այլ է այն՝ որ սրով հարկանեն, և այլ է այն՝ որ բրով[5]. այլ է այն՝ որ կախեսցեն հանապազ և հարկանեն, և այլ է՝ որ առանց կախելոյ ապտակեսցեն[6]: Վասն որոյ պարտ է իմանալ, զի է տանջանք՝ որ թեթեւագոյն իցէ, և է տանջանք որ խստագոյն, [7]և է տանջանք որ կարի չարաչար և մեծագոյն:

ՁԵ. ՀԱՐՑ. Որք աստ տանջին և աղքատանան և քաղցիցին և տառապին[8], օգտի՞ն ինչ և ազատի՞ն յաւէտ տանջանացն:

ՊԱՏԱՍԽԻ. Այսպէս ուսաք ի զօրութենէ աստուածաշունչ[9] գրոց, որպէս յառաջագոյն ասացաք, զի լինիցին ոմանք արդար գործովք[10], լինիցին գործեալ և չար ինչ. Աստուած այնպիսոյն աստ տացէ աղքատութիւն, հալածանս, մահ վշտաց, կորուստ ընչից, և այլ պէսպէս պատճառս վշտաց, որ կարող է տրտմեցուցանել զմարմինս մեր. զի այնու[11] յանցանքն այն քաւեսցին, և անդ զմեծագոյն

1. Գ, Դ և Ե օր. զարքայութեանն:
2. Դ. օր. Նուաստագոյն, իսկ Ե. օր. Նուաղապէս:
3. Գ. օր. խոնարհագոյն, իսկ Ե. օր. դնէ՝ և այլ է որ աղքատանի:
4. Գ. օր. դնէ ի Նուաստագոյն, իսկ Ե. օր. դնէ այսպէս. Նմանապէս զանազանք են և տանջանք. զի այլ է որ տանջի ի հուր գեհեննին, և այլ՝ որ կայ ի ժահահոտութեան:
5. Գ. օր. զյաւիտեան դնէ այսպէս. և այլ որ կախեն և բրով հանապազ տանջեն:
6. Ե. օր. ծեծեն:
7. Գ. օր. սաստի ցվերջակէտն չունի:
8. Ե. օր. ծարաւին:
9. Գ, Դ և Ե օր. սուրբ:
10. Դ և Ե օր. արդարագործք, որք լինիցին (Ե. օր. ունիցին):
11. Դ և Ե օր. այնու:

հանդիստ վայելեսցեն։ Եւ են ոմանք զի ոչ տեւեն վնասուց և արտմութեանց[1], և հայհոյեն և կորուսանեն զվարձս իւրեանց. և են ոմանք ի մեղս անդրջանալի. վասն որոյ[2] և բազում արկանէ ի վերայ նոցա տանջանս, որպէս Սոդոմայեցւոցն և Գոմորացւոցն[3], և անդ դարձեալ տանջեսցին, այլ թեթևագոյն, որպէս Տէրն ասացեալ է[4]. «Զի թէ ի Տիւրոս և ի Սիդոն լեալ էին զօրութիւնքն՝ որ ի ձեզ եղեն, վաղուց ևս արդեւք խորգով և մոխրով[5] ապաշխարեալ էր։ Բայց ասեմ ձեզ. դիւրագոյն լիցի երկրին Տիւրոսի և Սիդոնի[6] յաւուրն դատաստանի՝ քան ձեզ»[7]։ Արդ, քաջայայտ է, զի աստ նոքա տանջեսցին և անդ դարձեալ տանջին, այլ դիւրագոյն[8]։

ԶԶ. ՀԱՐՑ. Զինչս յափշտակեալ կամ հրձիգ եղեալ, կամ նաւակոծութիւնս կրեալ կամ յանօրինաց աւար եղեալ[9], տերանցն իցե՞ն ինչ վարձք, թէ ոչ[10]։

ՊԱՏԱՍԽ. Երանելին Պաւղոս զհամբերութիւն վնասուց մեծապէս գովէ, և այսպէս ասէ. «Տրտմութիւն՝ զհամբերութիւն գործէ, համբերութիւն զհանդէս, հանդէս զյոյս, յոյս ոչ երբեք ամաչեցուցանէ»[11]. արդ, որ համբերեսցէ ի վերայ եկեալ վնասուցն, եթէ մահ իցէ, եթէ ընչից կորուստ

1. Դ և Ե օր. նեղութեանց. իսկ Գ. օր. չունի սատի մինչև անդրջանալի։
2. Ցօր. պակասէր վասն որոյ, յաւելաւ ի Ե. օր։
3. Գ. օր. չունի և Գոմորացւոցն։
4. Գ, Դ և Ե օր. Տէրն ասաց։
5. Գ, Դ և Ե օր. յաւելուն նարօտաւ. իսկ Գ. օր. չունի խորգով և մոխրով։
6. Գ. օր. փոխանակ Տիւրոսի և Սիդոնի, դնէ Սոդոմայեցւոցն։
7. Մատթ. ԺԱ. 21, 22։
8. Գ, Դ և Ե օր. Թեթևագոյն։
9. Դ. օր. առեալ։
10. Գ և Ե օր. դնեն՝ Զի՞նչ յափշտակել կամ հրձիգ առնել, կամ նաւաբեկութեան կրել, կամ յանօրինաց աւար եղեալ, տերանցն վա՞րձք են թէ ոչ։
11. Հռովմ. Ե, 3, 4։

իցէ, եթէ հրայրեցութիւն է[1], եթէ անօրէնք յափշտակեսցեն, եթէ նաւակոծութիւն կրեսցեն, և գոհութեամբ տարցին[2], առաւելապէս ընդունելի է քան զայն, թէ[3] եդեալ իցէ ի ձեռս աղքատաց։ Իսկ եթէ հարցանես[4] եթէ զի՞րդ. ասացից զանցսըն՝ որ անցին ընդ Յոբ. և անդի յարմարիմ[5] հաւան առնել զքեզ։ Յորժամ զսեղանս բարեաւ[6] եդեալ էր, և հանապազ ոչ եւս պարապէր ի սպասաւորելոյ կարօտելոց. զի դայլին և յագենայլին ի բարեաց նորա[7], և այնպէս կատարէր զամենայն[8] զկեանս իւր. այլ[9] սատանայ ոչ համարեցաւ զայն առաքինութիւն նմա, այլ դէմ եդեալ այնիւ մարտընչէր ընդ նմա. զի թէ զայն ամենայն բառնայցէ ի նմանէ, և ապա կարող լինիցի յաղթել նմա։ Իսկ իբրև յափշտակեցին անօրէնք զինչս նորա, և հուր իջեալ յերկնից[10] եկեր զխաշինս նորա, և տունն կործանեալ մահացոյց զորդիս նորա, և կրեաց բազում[11] ցաւս հիւանդութեան, և գոհութեամբ համբերեաց, ապա եւս առաւելապէս յաղթեաց սատանայի։ Եւ այդ իսկ ոչ եթէ Յոբայ միայն եղեւ, բայց և ամենայն ոք[12] որ զայդ իսկ գործեսցէ՝ այնպէս երանեսցի, և համարեսցի նմա յարդարութիւն[13]։ Զի թէ ոք սովոր իցէ տալ աղքատաց, և ապա զինչս իւր հուր այրեսցէ, կամ դեւ տանիցի, [14]կամ գողք ական հատանի-

1. Գ և Ե օր. չունին եթէ հրայրեցութիւն է։
2. Գ, Դ և Ե օր. ընդունելին։
3. Դ և Ե օր. դնեն՝ որ։
4. Գ, Դ և Ե օր. տես։
5. Գ. օր. չունի յարմարիմ։
6. Յօր. փոխանակ բարեաւի եդեալ էր՝ Հ., եդաք ըստ Դ և Ե օրինակաց։
7. Գ. օր. չունի՝ ի բարեաց նորա։
8. Գ, Դ և Ե օր. չունին՝ զամենայն։
9. Գ, Դ և Ե օր. բայց։
10. Գ. օր. չունի՝ իջեալ յերկնից։
11. Գ. օր. անտանելի։
12. Գ և Դ օր. այլ ամենեցուն։
13. Գ. օր. չունի՝ և համարեսցի նմա յարդարութիւն։
14. Դ. օր. կամ անօրէնք յափշտակեսցեն. իսկ Ե. օր. դնէ, կամ անօրէնք յափշտակեսցեն, և նա գոհութեամբ։

ցեն, և նոքա գոհութեամբ համբերեսցեն, առաւելապէս համարեսցի նոցա[1] քան զեդեալն զայն ի ձեռս աղքատաց[2]։

ՁԷ. ՀԱՐՑ. *Իջանէ՞ Հոգին սուրբ ի պատարագ արատաւոր քահանային, եթէ պիղծ համարեսցի պատարագ նորա։*

ՊԱՏՍԽ. *Վասն ժողովրդեանն՝ որչափ և արատաւոր[3] է քահանայն, Հոգին սուրբ ոչ արգելու զշնորհս իւր, այլ իջանէ ի պատարագն։ [4] Զի եթէ ի ձեռն իշոյն և Բաղաամայ՝ այնպէս փրկութիւն եղեւ Իսրայէլի[5], ապա որչափ ևս առաւել ի ձեռն քահանային արատաւորի։ Զի թէպէտ և քահանային՝[6] որ անարժան մատուցանէ զպատարագն, հուրն ոչ շիջանի և որդն ոչ ննջէ[7], այլ պատարագն ընդունելի է։ Քանզի անդ՝ ուր մարմին և արիւն Տեառն պատարագի, զի՞նչ ազդէ անդ պղծութեան օրինակ[8]։ Զի եթէ զորդի թագաւորի բարձցէ ոք ի վերայ ձեռաց իւրոց՝ եթէ ավպացի կամ գողի կամ բորոտ կամ աղտեղի ձեռաց[9], գանեսցի այնպիսին ի թագաւորէն, այլ փառքն և պատիւն որդւոյ[10] թագաւորին ոչ պղծեսցի[11], և ոչ եպեր ինչ ընկալցի։ [12] Եւ դարձեալ,*

1. Ե. օր. նմա։
2. Ե. օր. աստանօր ունի զայս վերնագիր. Դարձեալ հարցմունք պիտանիք. ապա կարգէ այսպէս. Հրց. Իջանե՞ Հոգին արդեօք ի պատարագն արատաւոր քահանային, թէ արհամարհեսցի (Գ. օր. դնէ թէ ու. իսկ Դ. օր. եթէ համարեսցի) պատարագ նորա։
3. Գ, Դ և Ե օր. պիղծ։
4. Բ. օր. աստի ցվերջակէտն չունի։
5. Գ. օր. չունի՝ եղեւ Իսրայէլի։
6. Դ և Ե օր. քահանայն։
7. Գ, Դ և Ե օր. մեռանի։
8. Գ, Դ և Ե օր. անդ ոչ է պղծութեան օրինակ։
9. Բ և Գ օր. չունին կամ աղտեղի ձեռաց։
10. Բ և Գ օր. չունին՝ որդւոյ։
11. Դ. օր. չունի պղծեսցի, իսկ Բ. օր. չունի՝ և ոչ եպեր ինչ ընկալցի։
12. Բ. օր. աստի մինչև տանջանաց ոչ ազդեսցի (երես 398) համառօտէ այսպէս.

ինքն ճշմարտութիւնն աստուածային մարմինն[1], ոչ գարշէր ի մեղաւորաց, և ոչ զնոսա պիղծ համարէր, այլ հանապազ ընդ նոսա ուտէր և ընդ նոսա բազմէր. և նոքա որ ուտէին ընդ նմա և բազմէին, եթէ ոչ հաւատային և ապաշխարէին[2], ուտելովն ընդ նմա և բազմելովն ոչ սրբէին, այլ տանջէին չարաչար[3]. այնպէս և արատաւոր քահանային[4], ոչ հզգին սուրբ ի պղծութենէ նորա գարշի, և ոչ նա մատուցանելովն զպատարագն՝ սրբեսցի և սուրբ լինիցի, այլ չարաչար տանջեսցի[5]. և ոչ եթէ մեղօքն՝ զոր գործեալ իցէ տանջեսցի միայն, այլ անարժանապէս մատուցանելովն զպատարագն՝ եւս առաւելապէս անըմբերելի տանջեսցի: Իսկ դու՝ եթէ լուար ի Պաւղոսէ՝ որ ասէ, եթէ «Որ ուտէ զհացս զայս, կամ ըմպէ զբաժակս Տեառն անարժանութեամբ, պարտական եղիցի մարմնոյ և արեանն Տեառն»[6]. և որ պարտական եղիցի մարմնոյ և արեանն Քրիստոսի, քաջայայտ է՝ զի ընդ խաչողսն տանջեսցի, այլ յաւիտեան։ Բայց որ անարժանութեամբ հաղորդի՝ պարտական լիցի մարմնոյ և արեանն Քրիստոսի, որպէս Հրեայքն: Ահա, զի որպէս ասացի, այն՝ որ

Դարձեալ, ենէ Քրիստոս նստէր ընդ մաքսաւորս և ընդ մեղաւորս ուտէր և ըմպէր և ոչ փարշէր. և նոքա ենէ ոչ հաւատային՝ ոչ սրբէին, այլ դատէին. և Պօղոս ասէ. Որ ուտէ անարժանութեամբ ի մարմնոյ և յարենէ Տեառն. և քահանայն որ մատուցանէ՝ անհնար է ասանց ճշմարտելոյ ժամ. և դատի ընդ խաչեցելոյն. և ոչ եթէ մեղաւ ի նա սա՝ այլ ենենեալքըն. և դա ենէ անարժան՝ և ի յեալոյն Քրիստոսի հաղորդի՝ ոչինչ օգտի. և ենէ արժանաւոր է, և ի մեղաւոր քահանայէ հաղորդի, ոչինչ վնասի, զի սուրբ է պատարագն:

1. Գ, Դ և Ե օր. դնեն՝ ճշմարիտն Աստուած:
2. Գ, Դ և Ե օր. չունին՝ և ապաշխարէին:
3. Ե. օր. դնէ. այլ և չարաչար տանջանաց արժանի լինէին:
4. Գ, Դ և Ե օր. քահանայն:
5. Ե. օր. դնէ դատապարտի եա:
6. Ա. Կորնթ. ԺԱ, 27:

անարժանութեամբ մատուցանէ զպատարագն, առաւելապէս տանջեսցի անհնարելի տանջանօք։ Իսկ դու եթէ անարժան իցես ճաշակելոյ, թէ և ի ձեռացն Քրիստոսի հաղորդիս, ոչ ինչ օգտիս[1]. և եթէ արժանի իցես հաղորդելոյ, թէ և ի մեղաւոր քահանային ձեռաց հաղորդիս, ոչ ինչ վնասիս. [2] այլ պատարագն ամենեւին ոչ պղծի, և քահանայն ի չարաչար և ի խստագոյն տանջանաց ո՛չ ապրեսցի։

ՁԸ. ՀԱՐՑ[3]. Զի՞նչ ապա[4], պա՞րտ է զարատաւոր քահանայն ընդունել որպէս զսուրբն։

ՊԱՏԱՍԽԱՆԻ. Լուաք ի Քրիստոսէ զի ասաց. «Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ»[5]. և դարձեալ, «Յաթոռն Մովսէսի նստան դպիրքն և փարիսեցիքն»[6], իսկ այժմ յաթոռն Քրիստոսի։ Եւ արդ, եթէ որ յաթոռ թագաւորի նստի չարագործ ոք, միթէ հնա՞ր է ումեք անարգել զնա[7], կամ ոչ ընդունել զհրամանս նորա, իբր թէ մեղաւոր ես։ Ո՛չ. բայց թէ ո՛չ լինիցի պատերազող և իմաստուն և արիարար[8]։ Որչափ եւս առաւել ապա զայն, որ նստի յաթոռն Քրիստոսի. զի որչափ և մեղաւոր է, ոչ է պարտ արհամարհել և անարգել, այլ ընդունել։ Զիա՞րդ հնար է անարգել հօտին ըզհօտապետն, կամ ոչխարացն զհովիւն. և դու, որ ոչ առեր հրաման զընկեր քո դատել, ո՞րչափ եւս

1. Դ. օր. յաւելու՝ որպէս Յուդայ։
2. Դ. օր. ունի այսպէս. և ոչ պղծէ պատարագն ի քահանայէն, այլ ի տանջանացն ոչ ազդէ։
3. Զայս Հարցմ. հանդերձ պատասխանեաւն չունի Բ. օր։
4. Գ, Դ և Ե օր. չունին՝ Զի՞նչ ապա։
5. Մատթ. Ժ, 41։
6. Մատթ. ԻԳ, 2։
7. Յօր. էր. և չարագործ անհնար է, մի՞թէ ինչ ոք կարէ՞ անարգել զնա. եդաք ըստ Գ, Դ և Ե օր.։
8. Գ. օր. չունի, իսկ Դ. օր. դնէ՝ բայց թէ լիցի (Ե. օր. լիցի ես) ոչ պատերազմող և իմաստուն և արիաբար (Ե. օր. արի)։

*առաւել ապա զհօտապետն քո և զառաջնորդն. իսկ եթէ դատիս՝ դատապարտիս յԱստուծոյ, և եթէ անարգես՝ անարգեսցիս ։ Եւ դարձեալ, եթէ ընդունիս՝ ընդունեսցիս, և եթէ պատուես՝ պատուեսցիս*[1] ։

**ՂԹ. ՀԱՐՑ.** *Եւ զի՞նչ արդեւք. զմեղաւոր քահանայն պա՞րտ է ընդունել որպէս զսուրբ, և խոստովանել*[2] ։

**ՊԱՏԱՍԽԻ.** *Ցորինակէ յայսմանէ հաւան արարից զքեզ, զոր ինչ ասելոց իցեմ*[3] ։ *Հովիւ ո՞ր իցէ ընդունելի տեառն ոչխարացն. որ ճարտա՞ր իցէ և առողջ, և ո՛չ գիտէ հատանել զերակսն և արբուցանել դեղ հիւանդացելոյն*[4] *և ողջացուցանել. եթէ այն՝ որ բորոտ իցէ և հիւանդ, և գիտէ հատանել զերակսն և արբուցանել դեղ, և առողջացուցանել զհիւանդն. քաջայայտ է՝ զի զայսպիսիս*[5] ։ *Այնպէս և քահանայն՝ պարտ է ընտրել ոչ զայն՝ որ սուրբ է և տգէտ, այլ զայն՝ որ գիտուն է և մեղաւոր ։ Իսկ եթէ սուրբ լինի և գիտուն՝ պարտ է նմա խոստովանել, ապա թէ*

1. Ե. օր. յաւելու. Քանզի որպէսն ոչ է պարտ խոստովանել ըղձերս, այլ որչափ հնար իցէ և կարելի, պարտ է ընտրել զխոստովանն և զհմուտն ի կրոնս որդւոց ։ Զի մեղաւոր քահանայն եթէ ոչ կարիցէ ցուցանել զայլս, զիարդ հոգին մեղաց կարասցէ. Քանզի որպէսն՝ Քաղցրոց կերակրոց պատճառ լինի. որպէս ասաց Տէրն մեր. «Կոյր կոյրի յորժամ առաջնորդէ՝ անկանի, և երկոքեանն ի խորխորատ անկանին». և Սողոմոն ասաց. «Որ հանճարեղն իցէ զառաջնորդութիւն ստասցէ». զի որպէսն ոչ է պարտ ամենեւին առաջնորդ լինել. և նոյն է մարմնաւոր օրինակաւ, ապա ո՞րչափ առաւել է հոգեւորն ։

2. Բ, Գ և Զ օր. Պա՞րտ է մեղաւոր քահանայէն խոստովանել որպէս որդւոյն. իսկ Դ. օր. Զմեղաւոր քահանայն պա՞րտ է ընդունել որպէս զսուրբն և խոստովանել, թէ ոչ ։ Ե. օր. Զարատաւոր քահանայն պա՞րտ է ընդունել զսուրբ, թէ ոչ ։

3. Բ և Գ օր. չունի, զոր ինչ ասելոց իցեմ. իսկ Ե. օր. դնէ՝ համանեցայցէ զերկ՝ զոր ասեմ ։

4. Բ. օր. չունի հիւանդացելոյն. Գ, Դ և Ե օր. հիւանդին ։

5. Գ. օր. յայտ է (Դ. օր. քաջայայտ) թէ հիւանդն է ընդունելի ։

ոչ՝ պարտ է գիտնականին խոստովանել և մեղաւորին, քան տգիտին և սրբոյն: [1] Եւ որպէս զբժիշկ պարտ է ընտրել. զի թէ բիւր վիրօք լցեալ է բժիշկն և տկարացեալ հիւանդութեամբ, և գիտեն զնա բազումք՝ զի հմուտ իցէ յարհեստ բժշկութեան, ամենեքեան[2] առ նա ընթանան, և խնդրեն զդեղն, թէպէտ և ի մահիճս մահու եդեալ իցէ, և ոչ առ այնոսիկ՝ որ կարի առաւելապէս ողջք իցեն, և ոչ են հմուտ արուեստի[3] բժշկութեան. այնպէս և առ քահանայն՝ գալ պարտ է առնել[4]:

Գ. ՀԱՐՑ. Եւ առ Աստուած այնպէս[5] ընդունելի՞ իցէ քահանայն մեղաւոր և գիտնական[6], քան որ սուրբ և տգէտ:

ՊԱՏՍԽ. Այնպէս է՝ որպէս յառաջն ասացի. [7] զի հովիւ այն է ընդունելի՝ որ գիտէ զհիւանդ ոչխարսն առողջացուցանել, թէպէտ ինքն տկար և բորոտ իցէ, քան զայն՝ որ ոչ գիտէ ողջացուցանել, թէ և ինքն առողջ և ճարտար իցէ: Այնպէս և առ Աստուծոյ համարեսջիր. զի ասաց Քրիստոս ցՊետրոս եթէ՝ «Սիրես զիս. արածեա զխաշինս իմ»[8]. արդ՝ որ արածէ[9] զոչխարս Նորա, զնա

1. Գ. օր. աստի ցվերջակէտն այսպէս ունի. Զոր օրինակ ընտրել բժիշկ՝ որ բիւր վիրօք լցեալ, և գիտեն զնա բազումք՝ զի հմուտ է յարհեստ բժշկութեան, ամենայն ուրուք առ նա ընթանան և խնդրեն դեղ, թէ և ի մահիճս է, և ոչ այն՝ որ առողջ է, և չէ հմուտ բժշկութեան. այսպէս զընտրողութիւն պարտ է առնել:
2. Դ և Ե օր. ամենայն ուրուք:
3. Դ և Ե օր. յարհեստ:
4. Ե. օր. Այսպէս պարտ է ընտրել զքահանայն, որ է հաւատով բժիշկ հոգւոց մեղաւորաց:
5. Բ. օր. չունի՝ այնպէս:
6. Բ. օր. գիտուն. իսկ Գ. օր. չունի:
7. Բ. օր. աստի մինչեւ համարեսջիր չունի. իսկ Գ. օր. վասն ախտաւորացն և հաւանին երբե՞ք է ընդունելի դեղատուն խորամ, այնպէս է և առ Աստուած, որպէս և ասաց Տէրն ցՊետրոս:
8. Յովհ. ԻԱ, 15:
9. Բ, Գ, Դ և Ե օր. Այր որ գիտէ արածել:

սիրեսցէ։ Եթէ քահանայն արդար իցէ, և գիտէ զբանս աստուածային գրոց, գիտէ և զկարգ ապաշխարութեան ուղղել, այնպիսին առաւելապէս[1] ընդունելի է առ Աստուած՝ քան զմեղաւորն և զգիտունն, և քան զուրբն և զողջէտն. ապա թէ ոչ զայն իսկ ընդունիցի՝ որ մեղաւորն է և գիտնաւորն[2], և գիտէ դարձուցանել զմեղաւորն ի չար ճանապարհէն և ուսուցանել զբանն Տեառն, և ըստ[3] գրոց գիտէ դնել զկարգն ապաշխարութեան, որ կարէ սրբել զմեղս. և այնիւ՝[4] որ զմեղաւորն դարձուցանէ, քաւեսցի և ինքն ի յանցանաց իւրոց, քանզի աճեցոյց զքանքարն. և լուիցէ ի Տեառնէ. «Ծառայ ազնիւ և հաւատարիմ, որովհետև ի սակաւուդ հաւատարիմ եղեր, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն Տեառն քո»[5]։ իսկ այն՝ որ արդար իցէ և գիտնաւոր՝ և ո՛չ ուսուցանէ զժողովուրդն, և[6] զգիտութիւնն ծածկէ, այնպիսին թէ և մեռեալս յարուցանէ, և ասիցէ լերինն[7], թէ փոխեաց և փոխեսցի, և յապաղեալ լինի և ոչ ուսուցանէ, այլ միայն անձին հոգ տարցի, և սուրբ պահեսցէ զանձն իւր, և զպատկեր իւր անարատ պահեսցէ, և ասասցէ, «Տէր, գիտէի զի այր մի խիստ ես, հնձես զոր ոչ սերմանեցեր»[8]. այսինքն թէ զայնոսիկ դատեսցես[9] ուր ոչ է սերմանեալ աւետարան քո. և դու ասացեր, «Մի՛ շնար, մի՛ գողանար, մի՛ սուտ վկայեր, պատուեա՛ զհայր քո և զմայր. և

1. Գ, Դ և Ե օր. դնեն՝ առաւել. իսկ Բ օր. չունի։
2. Բ, Գ, Դ և Ե օր. գէտան։
3. Ե. օր. յաւելու՝ կանոնի։
4. Ե. օր. դնէ և այն խօսի։
5. Մտթ. ԻԵ, 21։
6. Բ. օր. դնէ այլ։
7. Բ. օր. դնէ՝ և չլերինս փոխէ, և ոչ ուսուցանէ, այլ զանձն իւր անարատ։
8. Մտթ. ԻԵ, 24. — Դ. օր. յաւելու՝ և ժողովես զոր ոչ սփռեցեր։
9. Գ և Դ օր. պատրես զայնոսիկ. իսկ Բ. օր. դնէ, այսինքն, պատրես զայնոսիկ որ ոչ սերմանեցին յաւետարանէ քո։

սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո »[1], և յայդ իսկ միայն պարապեցի, զի զայդ միայն կարացի կատարել, և զայլ ոք չկարացի ուսուցանել. թողուցի զվարդապետութիւն իմ և զքահանայութիւն. քանզի երկեայ եթէ տանջես զիս իբրև զայնոսիկ՝ որ ոչ լուան զաւետարանն քո. լուիցէ զայս ի Տեառնէ՝ զի ասէ. «Ծառայ չար և վատ, եթէ այդպէս գիտէիր զիս՝ պարտ էր արկանել քեզ զարծաթն իմ ի սեղանաւորս »[2]. [3] այս ինքն՝ թէ երկեար յինէն, և անձին քում միայն զգուշացար և զժողովուրդն ոչ ուսուցեր, պարտ էր քեզ զքահանայութիւնդ թողուլ յեկեղեցիս՝ զի այլքն էին առեալ[4], «և ես եկեալ տոկոսէի զիմն. հանէք զծառայդ անպիտան ի խաւարն արտաքին »[5]։ Արդ, այսպէս իմացիր վասն քահանայից. զի որչափ և սուրբ իցէ և յապաղէ ուսուցանել զժողովուրդն, ընդ պոռնիկսն և ընդ չարագործսն ի գեհենն տանջեսցի. [6] և որչափ մեղաւոր է և ուսուցանէ զժողովուրդն, և դարձուցանէ ի մեղաց, ընդ Նոսա[7] և զմեղս իւր քաւեսցէ։

ԴԱ. ՀԱՐՑ. Եթէ ոչ է պատկառեալ քահանայն յուսուցանելոյ, և ժողովուրդն ո՛չ լուաւ և ոչ դարձաւ, զի՞նչ լինիցի նմա, պարտաւորի՞[8], թէ ո՛չ։

ՊԱՏՍԽ. [9] Զոր օրինակ տացէ ոք զմանուկ իւր ի վարժանոց, և նա ոչ ուսանի, պարտ է քննել

1. Մատթ. ԺԸ, 18, 19։
2. Մատթ. ԻԵ, 26։
3. Բ և Գ օր. չունի սատի մինչև ոչ ուսուցեր։
4. Ե. օր. զի այլք առնուին։
5. Մատթ. ԻԵ, 27. – Գ, Դ և Ե. օր. գնեն փոխանակ պահանջէ։
6. Բ. օր. սատի ցվերջակէտն չունի։
7. Գ, Դ և Ե օր. ընդ Նոցայն և մեղքն իւր քաւեսցէ։
8. Գ, Դ և Ե օր. պարտաւորի՞։ — Բ. օր. գնէ թէ յուսուցանելոյ ոչ դադարեալ, և ժողովուրդն ոչ ոչ լսեն և ոչ դարձան։
9. Բ. օր. սատի մինչև ցխառնելոցն չունի։

դատաւորին[1] և իմանալ, եթէ ո՛չ է պակասեալ յուսուցանելոյ[2] զցայգ և զցերեկ, և տուն տալոյ նմա յարաժամ, և նա ո՛չ առ[3] ի միտ, և ոչ ուսաւ[4], քաջայայտ է, զի մանկանն բարկացի, և դանեսցէ զնա[5]։ Ապա թէ ի շաբաթն մի անգամ՝ ասացեալ է և կամ՝ երկու և սակայն ոչ է ուսուցեալ՝ այլ յապաղեալ է[6], վարդապետին բարկացեալ խռովեսցի[7]։ Քանզի ոչ եթէ քահանային մի անգամ պարտ է ուսուցանել ի շաբաթուն կամ երկիցս, այլ հանապազ և յարաժամ և օր ըստ օրէ, ի տուէ և ի գիշերի։ Քանզի ձկնորսք յորժամ արկանեն ուռկանս ի ծով՝ և ձուկն ոչ անկանի, մի՛թէ այլ ո՞չ եւս արկանիցեն. կամ հովիւն՝ յորժամ արբուցանէ դեղ խօթացեալ հօտին[8], և առ ժամայն չողջանայ[9], մի՛թէ այլ ո՞չ արբուցանէ[10]. սոյնպէս և բժիշկ առ հիւանդս՝ ո՛չ դադարէ[11] յարբուցանելոյ զդեղս, մինչեւ կամ մեռանի և կամ առողջանայ։ Այնպէս և քահանային պարտ է անդադար ուսուցանել և խրատել մինչեւ մեռանիցի և կամ դարձցի ի գործոցն չարաց[12]։

1. Գ, Դ և Ե օր. չունին դատաւորին։
2. Գ և Դ օր. աստի մինչև ցյարաժամ չունին։
3. Ցօր. էր առեալ, եղաք ըստ Գ, Դ և Ե. օրինակաց։
4. Ցօր. էր. ուսեալ եղաք ըստ Գ, Դ և Ե օր.։
5. Գ, Դ և Ե օր. դնեն քաջայայտ է՝ զի մանկանն պարտ է բարկանալ և զնա ծեծել։
6. Դ և Ե օր. չունի այլ յապաղեալ է։
7. Ե. օր. դնէ յայնժամ վարդապետին պարտ է խռովել։
8. Բ. օր. խօթացելոյ։
9. Բ և Գ օր. ոչ ողջանայ, իսկ Դ. օր. ոչ առողջանայ։
10. Ե. օր. և կամ հովիւն յորժամ արբուցանէ դեղ ախտացելին որ հիւանդ էին, և առժամայն ոչ բժշկէին և ողջանային, մի՛թէ այլ ո՞չ եւս արբուցանէ։
11. Բ և Գ օր. դադարէ։
12. Բ. օր. Այսպէս քահանային պարտ է տանել մինչ դառնայ կամ մեռանի. Գ. օր. ուսուցանել մինչև մեռանի կամ դառնայ ի չարեացն. իսկ Ե. օր. Այսպէս պարտ է քահանային անդադար ուսուցանել ժողովրդեանն զբանս աստուածային խրատուց, և ոչ լռել բնաւ կամ յապաղել մինչև ի մահ։

ԴԲ. ՀԱՐՑ. *Եւ եթէ ոչ լաւ աղաչանօք և պաղատանօք, զի՞նչ է պարտ առնել, խստութեամբ բանադրե՞լ և արտաքսե՞լ յեկեղեցւոյ և նզովե՞լ, թէ ոչ*[1]:

ՊԱՏԱՍԽ. *Ո՛չ. քանզի Հովիւն, զմոլորեալ ոչխարն պարսաքարո՞ւն և հարկանելով ոչ կարէ արկանել ի փարախ, այլ ողորքանօք և աղ արկանելով*[2]. *և զհիւանդացեալն ոչ հարկանել, այլ ածել զձեռօք, հատանէ զերակն*[3]. *ապա եթէ զմոլորեալն պարսաքարէ և հարկանէ, ո՞չ ապաքէն բնաւ մոլորեսցի*[4] *և գազանաբեկ լիցի, և համարս տալոց է տեառն ոչխարացն*[5]: *Այնպէս և զմեղաւորն՝ եթէ արտաքսես յեկեղեցւոյն և անարգես, բնաւ խստանայ և ապստամբեալ կորնչի: Այլա պարտ է արտասուել*[6] *և լալ առաջի նորա և աղաչել. և այնպէս ուսուցանել*[7], *զի յորժամ տե-*

1. Բ. օր. Եթէ ոչ լաւ աղաչանօք, պա՞րտ է բանադրել և արտաքսել յեկեղեցւոյն և նզովել: Գ. օր. Եթէ ոչ լաւ աղաչանաց և պաղատանաց, զի՞նչ պարտ է առնել, խստութեամբ բանադրե՞լ և արտաքսե՞լ յեկեղեցւոյն, (Դ օր. յաւելու և նզովել) թէ ոչ: Ե. օր. Եթէ ոչ լաւ խրատուց, աղաչանաց, պաղատանաց, այլ խստութեամբ կացցէ, զի՞նչ պարտիմք առնել այնպիսեաց, արդեօք պա՞րտ իցէ խստութեամբ բանադրել և արտաքսել յեկեղեցւոյն և նզովել, թէ ոչ:
2. Գ. օր. աղէ հայն առնելով, իսկ Դ և Ե օր. աղաչելով:
3. Բ. օր. չունի. իսկ Գ. օր. դնէ այսպէս. և զհիւանդացեալն ոչ հարկանէ, այլ ածէ զձեռամբ, հատանէ զերակն: Դ. օր. այլ ածել զձեռամբ, հատանել զերակն: Ե. օր. ոչ հարկանելով՝ այլ ածելով զձեռն զերակն հատանելով:
4. Գ. օր. չունի ոչ ապաքէն բնաւ մոլորեսցի:
5. Բ. օր. ապա եթէ պարսաքարէ, մոլորի բնաւին և գազանաբեկ լինի. չունի՝ և համարս տալոց է տեառն ոչխարացն, զոր Ե. օր. դնէ տէր ոչխարացն համարս խնդրէ ի նմանէ:
6. Ե. օր. այլ պարտ է յորդորել, աղաչել և արտասուել մանաւանդ ի վերայ նորա. զի յորժամ տեսանէ զլալ քո, յայնժամ խելք մտաց նորա ի քաղցրութիւն շարժի, աղաչանօք և զղջայ ի մեղս իւր և գայ:
7. Բ. օր. չունի՝ և աղաչել և այնպէս ուսուցանել, և յառաջ վարէ այսպէս. զի տեսանելով զքեզ՝ ինքնին զղջայ և գայ,

սանիցէ զի այնպէս լաւ և ապաշաւէ, զղջասցի և ասասցէ թէ՝ անձն օտար այնպէս լաւ ի վերայ իմ, ես ընդէ՞ր ոչ զղջացայց ի վերայ չարեաց իմոց։ Եւ որպէս բժիշկ՝ յորժամ արբուցանելոց է զբաժակն, եթէ բարկութեամբ և անարգանօք խորհի արբուցանել, ո՛չ լուիցէ հիւանդն և ոչ արբցէ. այլ սովորութիւն է հասարակաց ամենայն բժշկաց, ողոքանօք և աղաչանօք արբուցանել զդեղս հիւանդին[1]։ Այլ և հովուաց՝ աղ արկանել և բերել[2] զոչխարս մոլորեալս ի փարախն, և քահանային այնպէս առնել զմեղաւորն[3]։

ԴԳ. ՀԱՐՑ. Զի՞նչ ապա, պա՞րտ է հաւասար մեղաւորաց ամենայնի տարածանել զդրունս եկեղեցւոյ[4]։

ՊԱՏՍԽ. Մեք այսպէս լուաք, և այսպէս ուսաք յաւետարանչացն սրբոց. զի ինքն[5] Տէրն մեր և Աստուածն՝ յորոյ անուն հաստատեցաւ հիմն ե-

նէ, ատ որ օտար է լաւ ի վերայ իմ, ես ընդէ՞ր ոչ զղջանամ ի վերայ չարեաց իմոց։ Իսկ Գ. օր. այսպէս. և ապաշխարօղ ասացանել, զի յորժամ տեսանէ որ լաւ և ապաշխարէ, զղջայ ի միտս իւր և ասէ.... ես ընդէ՞ր ոչ լացից (Դ. օր. յաւելու և զղջացայց ի վերայ չարեաց իմոց) չկորուսանել անձին իմոյ։

1. Բ. օր. Նոյնպէս և բժիշկն, թէ բարկութեամբ և անարգանօք արբուցանէ զդեղն հիւանդին, ոչ լաւ, այլ աղօթանօք, զի մի՛ նեղեսցի բժիշկն։ Գ. օր. դնէ. և որպէս բժիշկն՝ զի յորժամ հիւանդին արբուցանել կամի զդեղն, (Դ. օր. արբուցանելոյ իցէ զդեղն), թէ բարկութեամբ և անարգանօք ջանայ արբուցանել, հիւանդն ոչ արբցէ, և բարկամ անգամ հանդերձ մեռանել, և նեղեսցի բժիշկն, վասն կեղեւոյն (Ե. օր. ներքոյն) զհիւանդն, այլ սովորութիւն է բժշկացն՝ աղօթանօք արբուցանել զդեղն։

2. Ե. օր. աղ ջերմով բերեն։

3. Ե. օր. նոյնպէս պարտ է տածել։

4. Բ. օր. դնէ. Պա՞րտ է ամենայն մեղաւորի տարածել զդրունս եկեղեցւոյ։ Գ. օր. չունի զայս Հարցումն հանդերձ Պատասխանեաւն։ Դ. օր. Զի՞նչ պարտ է հաւասար մեղաւորաց ամենայնի տարածանել զդրունս եկեղեցւոյն։ Ե. օր. Պա՞րտ է ամենայն մեղաւորաց հաւասար ընդ այլոց կանգնել ի դրան եկեղեցւոյն։

5. Բ. օր. սատի սկսանի և քաղելով անցանէ։

կեղեցեայ, ոչ գարշեցաւ ի մեղաւորայ։ Եւ արդ, եթէ Նա ինքն ճշմարտութիւն այնպէս առնէր, և էր իսկ սրտագէտ, և գիտէր զայնոսիկ՝ որ գային առ Նա ապաշխարութեամբ, և գիտէր որ գային կեղծաւորութեամբ, այլ հաւասար զամենեսեան ընդունէր, և ընդ նոսա ուտէր և բազմէր. որչափ եւս առաւելապէս մեք, որ հող եմք և մոխիր, գարշիմք ի մեղաւորէն, կամ ջանամք զեկեղեցւոյն գարշեցուցանել. զի ոչ աթոռն մեծագոյն է քան զթագաւորն, և ո՛չ տաճարն բարձրագոյն քան զարքայն բնակեալ ի տաճարին։ Արդ, եթէ տեսանիցես զոք բազմեալ ընդ արքայի, միթէ կարե՞ս դու արհամարհել զնա և վարել ի տաճարէն, և ասել, թէ ոչ ես արժանի կոչեալ այսր։ Եւ դարձեալ, Նախ իսկ արարիչն սրտագէտ էր որպէս ասացի, և գիտէր զեկեալն զղջմամբ և զեկեալն կեղծաւորութեամբ և ոչ գարշէր, որչափ եւս առաւել մեք քահանայքս, և ոչ գիտեմք եթէ ապաշխարութեամբ[1] գայցէ, եթէ անզղջութեամբ, զի արգելլից զնա յեկեղեցւոյ։ Եւ Քրիստոս ասաց. «Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս»[2]։ Եւ եթէ Նա վասն մեղաւորաց մարմնացաւ, քաջայայտ է, զի և եկեղեցի վասն մեղաւորաց հիմնարկեցաւ։ Ասա՛ դու ցիս. Քրիստոս[3] ի տուն մեղաւորաց մտեալ խոնարհագո՞յն է, եթէ մեղաւորին մտանել ի տաճարն Քրիստոսի. թագաւորն մտեալ ի տուն մեզանչականին՝ զի դարձուսցէ զպքսորեալն, վերագո՞յն[4] է՝ եթէ ծառայն մտեալ ի տուն թագաւորին։ Ինձ այսպէս թուի, թէ արգելուլն յեկեղեցւոյն քան եթէ առաքինութիւն մնաս իցէ քահանային[5]. զի թէ հնար

1. Դ և Ե օր. յապաշխարութեան։
2. Մատթ. Թ, 13։
3. Դ և Ե օր. չունին Քրիստոս։
4. Ե. օր. վեհագոյն։
5. Ե. օր. ինձ այսպէս թուի թէ մեծ է նախատասցելոյն քան ըզձիտան, վասն որոյ ոչ է պարտ արգելուլ զմեղաւորն յեկեղեցւոյ։

*էր ապրել ոչխարայ ի բերանոյ գայլոյ՝ առանց փարախի կամ առանց հովուի ճարակել, և չմոլորել, ապա փարախ ոչ ստանայլին։ Այնպէս, եթէ հնար էր մեղաւորայ առանց քահանայի ապրել, և կամ առանց եկեղեցւոյ ժողովել, նա ինքն Աստուած ոչ էր զայս օրինադրեալ[1]։ Եւ եթէ հնար էր առանց ուսուցանելոյ[2] և վարդապետի՝ գիրս ուսանել, ապա աշակերտելոյ չէր պէտս[3]. և եթէ հնար էր առանց քահանայի վարդապետելոյ և[4] եկեղեցւոյ՝ մեղաւորին[5] դառնալ ի մեղաց, չէր քահանայ կարգաւորեալ և եկեղեցիք հաստատեալ. իսկ եթէ եկեղեցիք և քահանայք վասն մեղաւորաց կարգեցան, զի ուսուցանէ քահանայն և ժողովէ ի փարախն, և դու ի բաց հալածես և արտամերժես ի փարախէն, զի՞նչ տայցես պատասխանի։ Իսկ ասա՛ դու ցիս. առ Թագաւորք[6] և իշխանք՝ վասն ո՞ւմ բարեխօսեն, վասն մեղանչականի՞ն եթէ վասն անմեղին, ո՞չ ապաքէն վասն մեղանչականին. իսկ եթէ զմեղանչականն ի տանէ քումմէ ի բաց հալածես և անարգես, առաջի Թագաւորին զի՞նչ ապա համարձակիս վասն նորա բարեխօսել։*

ԼԴ. ՀԱՐՑ. *Լուաք, ասէ, յաստուածային գրոց, զի ասաց Տէր[7] ցՄովսէս և ցԵրեմիա, թէ «Մի՛ աղաչէք վասն ժողովրդեանդ այդորիկ, զի ոչ լըւայց ձեզ»[8]. զի չարք են և անպիտանք[9]։*

ՊԱՏԱՍԽԻ. *Ցիրաւի ասացեր, այլ լուր դու ըզ-*

1. Ե. օր. Աստուած ոչ օրէնսդրէր զայս։
2. Ե. օր. ուսանելոյ։
3. Ե. օր. ապա ոչ է պէտս ընկերս ուսանելն։
4. Ե. օր յաւելու՝ առանց։
5. Ե. օր. չունի մեղաւորին։
6. Դ. օր. դնէ Թագաւորք. իսկ Ե. օր. ունի այսպէս իշխանք՝ որո՞ց բարեխօս լինին առ Թագաւորն։
7. Բ. օր. լռաւ զի ասաց Աստուած։
8. Բ. օր. լսեմ ձեզ։ — Երեմ. Է, 16։
9. Բ. օր. դնէ՝ զի չարք էին և ծառայ։

պատասխանիս և հաւանեա յօրինակէն։ [1] Օրէնք՝ ի ժամանակս Մովսիսի՝ չարին չար հատուցանէին, «Ակն ընդ ական և ատամն ընդ ատաման»[2]. և ժողովուրդն այն բազում անգամ անարգեցին զՄովսէս, այլ նա որպէս թէ ի Քրիստոսէ ուսեալ, զոր ոչ իսկ էր տեսեալ, ասէր. «Տէր, եթէ թողուս ժողովրդեանդ այդորիկ, թողցես. ապա թէ ոչ, և զիս ջնջեա ի դպրութենէ քումմէ կենաց»[3]։ Արդ, եթէ զմարգարէսն օրինակեցեր, ուսիր յօրինակէն՝ զոր խնդրեցեր[4]. եթէ քեզ մեղանչէ մարդ՝ աղօթեա[5] վասն նորա առ Աստուած՝ յաղագս բարեկենդանութեան. զի Մովսէս և Երեմիա, և Սամուէլ վասն մարմնոյ բարեկենդանութեան բարեխօսէին, և ոչ վասն հոգւոց նոցա։ ԶՍամուէլ անարգեցին և թագաւոր խնդրեցին. զՄովսէս ուրացան, և զլուխ որթու[6] պաշտեցին. և նոքա անդադար վասն նոցա բարեխօսութեան, ոչ դադարէին առ ի յաղաչել զԱստուած[7]։ Եւ յորժամ քեզ մեղանչեն, աղաչեա [8]* զԱստուած վասն կենաց նոցա բարեկենդանութեան. և յորժամ Աստուծոյ մեղանչեն, աղաչեա* զԱստուած վասն յանցանաց նոցա թողութեան, [զի վասն այդորիկ կարգեցար այր դու ի լուսաւոր աստիճանդ][9] և կատարեսցես զՄովսէսին, և եղեր պսակաւոր, և կատարեցեր զՔրիստոսին, զի ոչ ասացեր եղբօրն քո մորոս, և ապրեցար ի գեհենէն։

1. Բ. օր. Աստ դնէ Պատասխ.։
2. Ելք, ԻԱ, 24։
3. Ելք, ԼԲ, 32։
4. Բ. օր. և որդ ունիր յօրինակս։
5. Ե. օր. նո՛ց յաղօթս. Բ. օր. աղաչեա։
6. Բ. օր. դնէ և որթն պաշտեցին։
7. Ե. օր. դնէ. և նոքա անդադար աղօթէին վասն նոցա և աղաչէին զԱստուած. իսկ Դ և Ե. օր. աստէն յաւելուն, և զոր ունէր յօրինակէր։
8. Յաստեղանիշդ ցմիւսն չունին Դ և Ե օր.։
9. Չփակագծեալդ յաւելլաք յ'Բ օր.։

ԴԵ. ՀԱՐՑ. Զի՞նչ ապա, պա՞րտ է տարածել զդրունս եկեղեցւոյ մեղաւորաց, և բռնութեամբ ածել զնոսա յեկեղեցի[1]։

ՊԱՏԱՍԽ. Ո՛չ ասէ[2]. մի՛ բռնութեամբ արկանեք, և մի՛ զեկեալն արտաքսեր։ Բայց և այլ ինչ ասեմ[3]. յորժամ տեսանես զժողովուրդն քո՝ զի ոչ մատչի[4] յեկեղեցին և ոչ հաղորդի ի պատուական մարմնոյ և յարենէն Քրիստոսի[5], պարտ է քննել և ոչ անտես առնել։ [6]* Զոր օրինակ, յորժամ՝ տեսանէ հովիւ զոչխար՝ զի ո՛չ արածի, ըստուգապէս պարտ է իմանալ զի հիւանդ է, ի դէպ է քննել. եթէ ի ներքս է ցաւն, պարտ է դեղ մատուցանել[7], զի առողջասցի. և եթէ արտաքոյ իցէ, զերակսն հատանել. այսպէս և քեզ քահանայիդ[8], զայն որ ոչ ճաշակէ ի սեղանոյն սուրբ, եթէ ի ներքս է պատճառն, այսինքն՝ *[9] վասն յանցանաց, պարտ է ուսուցանել և ածել ի խոստովանութիւն և տալ դեղ ապաշխարութեան. ապա եթէ արտաքոյ է պատճառն, այսինքն թէ ոխս[10] ինչ ունիցի ընդ ընկերի իւրում, պարտ է հաշտեցուցանել զնոսա և արժանաւորել սեղանոյն[11].

1. Բ. օր Հա՞րկ է (Գ և Դ օր. պա՞րտ է) զմեղաւորն բռնութեամբ ածել յեկեղեցի. յոր յաւելու Ե. օր. թէ ոչ։
2. Բ, Գ և Դ օր. չունին՝ ոչ ասէ։
3. Բ. օր. չունի Բայց և այլ ինչ ասեմ։
4. Բ, Գ, Դ և Ե օր. մերձենան։
5. Բ. օր. չունի՝ ի պատուական մարմնոյ և յարենէն Քրիստոսի. և զյաջորդն՝ այսպէս համառօտէ. պարտ է քննել և ոչ առնել անտես, թէ վասն յանցանաց խոստովանութեան, և տալ դեղ ապաշխարութեան. և թէ վասն ոխի ունելոյ ընկերին է՝ հաշտեցուցանել և արժանաւոր առնել սուրբ սեղանոյն։ Պարտ է զայս առնել քահանային հանապազ։
6. Գ. օր. Ցաստեղանշէդ ցմիւսն չունի։
7. Ե. օր. արբուցանել։
8. Ե. օր. յաւելու՝ պարտ է առնել։
9. Ե. օր. չունի՝ այսինքն։
10. Գ և Ե. օր. խէթ։
11. Ե. օր. արժանի (Գ. օր. արժանաւոր) առնել սեղանոյն Քրիստոսի։

*և այսպիսի օրինակաւ պարտ է վարել քահանային հանապազ և գործել*[1]։

ԴՁ. ՀԱՐՑ. *Լուաք յառաքելական կանոնաց, զի պարտ է արտաքոյ դրանն պահել զմեղաւորն, ըստ գոյից*[2] *յանցանացն*։

ՊԱՏԱՍԽԻ. *Բարւոք ասացեր*[3]. *Լուաք և ի Տեառնէ զի ասէ. «Թէ ածիցէ ոք ապատակ յաղ ծնոտ քո, դարձո նմա և զմիւսն»*[4], *և այլն՝ որ ի կարգին է։ Արդ, եթէ դու զայն կատարեցեր*[5], *պահան- ջեա ի նմանէ և զայն։ Ապա եթէ դու զայն ոչ կատարեցեր, և համարձակեցար կալ առաջի սե- ղանոյն և զՔրիստոս պատարագել*[6], *և զինքն մա- տուցանես և ընդունիս ի քեզ բովանդակ, որ հրամայեաց քեզ առնել զայն և ոչ կատարես, այլ արհամարհես զայն, և համարձակիս ընդունել զայն՝ զոր արհամարհեցեր. և զմիւսն՝ և ոչ ար- տաքոյ բեմբի՞ն թողուս կալ յաղօթս։ Ասա՛ ցիս դու, եթէ ոք անցանէ ընդ հրամանս թագաւորի*[7], *հնա՞ր ինչ իցէ ամենեւիմբ մերձ լինել առ նմա՝ ուր աթոռն է արքունական, կամ հպիլ ի նա*[8]։

1. Ե. օր. յաւելու շփոթ խառ։
2. Բ. օր. չունի գոյից։
3. Բ և Գ. օր. չունի Բարւոք ասացեր։
4. Մատթ. Ե, 36։
5. Գ. օր. կատարես։
6. Գ, Դ և Ե օր. պատարագես. իսկ Բ. օր. դնէ պատա- րագել և ընդունել արար, բովանդակ. և յառաջ վարէ զայս ձև օրինակի. որ հրամայեաց քեզ առնել զայն, և դու արհամարհեցեր զնա, և համարձակիս ընդունել զոր արհամարհեցեր. և զմիւսն ոչ թո- ղուս արտաքոյ բեմին կալ յաղօթս։ Թէ ով անցանէ զհրամանաւ թա- գաւորին՝ զի պարտ մերձ կալ առ աթոռն և արքայական, այլ է գա- ւթին կալ. արդ, եթէ անցեր զհրամանաւ թագաւորին և համարձակիս կալ առաջի նորա և հաղորդ լինել և ընդունել զնա, և նա ներէ քեզ, կարէ՞ս զմիւսն է գաւթին հալածել. այլ ոչ է պարտ զմեղաւորն ար- գելուլ յեկեղեցւոյ՝ յորժամ դիմէ, այլ ընդունել։
7. Գ, Դ և Ե օր. Ասա դու ինձ, եթէ ոչ հրամանաւորանց լինի։
8. Դ. օր. և հաղորդ լինել ի նա։

*Ո՛չ, ասէ*[1]*. այլ և ի գաւիթս թագաւորականս*[2] *անհնար է կանգնել։ Արդ, եթէ դու անցեր զհրամանս թագաւորին և համարձակիս առաջի նորա հուպ լինել և բաւանդակ ընդունել զնա, և նա ներեսցէ քեզ, կարեն և զմիւս այլ մեղանչականն ի գաւիթէ անտի ի բաց հալածել։ Ո՛չ, ասէ։ Ապա, այնպէս և զքեզ համարեայ։ Արդ, յորժամ դիմեալ գայ մեղաւորն յեկեղեցին, ոչ է պարտ արգելուլ, այլ ընդունել։*

ՂԷ. ՀԱՐՑ[3]. *Իսկ եթէ խիղճ ինչ ի մտի ունիցի, և ոչ ճաշակէ վասն յանցանացն, հարկիւ մատուցանել պա՞րտ է*[4]*։*

ՊԱՏԱՍԽ. *Ո՛չ, ասէ, հարկիւ, այլ և ոչ պարտ է անտես առնել. նա և ոչ պարտ է գովել անդրէն, եթէ բարիոք գործէ, զի ոչ հաղորդի. և իբրեւ զերկիւղած մեծարեսցէ զայնպիսին*[5]*։ Ասա՛ դուցիս. եթէ տեսանիցէ հովիւն զոչխարն չճարակել ինչ, մինչ գովեսցէ՞ զնա, և անտես արասցէ. այլ թէ իմասցի զի հիւանդ է, դեղ արբուցանէ, զի առողջասցի. այնպէս և քահանային պարտ է առնել։*

ՂԸ. ՀԱՐՑ. *Եթէ ոք համարձակի մատչել առանց երկիւղի ի սեղանոյս յայսմիկ ճաշակել, պա՞րտ է առանց խոստովանութեան տալ նմա ըզպատուական զմարմին և զարիւնն Քրիստոսի*[6]*։*

1. Գ, Դ և Ե օր. չունին ասէ։
2. Դ. օր. [illegible]։
3. Գ. օր. չունի զայս Հարցմ. հանդերձ Պատասխ.։ Իսկ Բ. օր. ունի. Իսկ եթէ խղճիւ մտօք ոչ ճաշակէ (Ե. օր. ճաշակեսցէ), հարկիւ մատուցանել պա՞րտ է։
4. Դ և Ե օր. չունին՝ հարկիւ մատուցանել պարտ է։
5. Ե. օր. Ոչ հարկիւ պարտ է ասել և ոչ անտես առնել, նա և ոչ է պարտ գովել եթէ բարւոք արարեր՝ որ ոչ հաղորդեցար, և մի՛ երբեք զերկիւղած ու գովեսցէ։ Իսկ Բ. օր. այսպէս համառօտէ. Ոչ ասեմ հարկիւ. այլ անտես առնել չէ պարտ. (զոյ աստ բառ մի եղծեալ) գործէ և երկիւղած. մեծարեա և գովեա զայնպիսին, և թէ հիւանդ՝ ած ի խոստովանութիւն։
6. Բ. օր. Եթէ ոք աներկիւղ համարձակի ի սեղանն, պարտ է

ՊԱՏՐԻ. *Եթէ գիտէ քահանայն՝ եթէ մեղաւոր*[1] *իցէ, և յանդգնի համարձակապէս*[2], *ոչ է պարտ տալ նմա, ապա եթէ տայ՝ պարտական է արեանն Քրիստոսի*[3]*։ Իսկ քահանայ, որ սուղ ինչ ժողովուրդ ստացեալ է, պարտ է քննել զմատուցեալն. իսկ որ ի կաթուղիկէ եկեղեցի ձեռնարկեալ իցէ, վիճարդ հնար իցէ զայնչափ ամբոխ քննել և իմանալ. վասն այնորիկ կարգաւորեցին զսարկաւագունսն, աղաղակել և ասել, Որ ոչ էք կարող հաղորդել, առ դուրս ելէք և աղօթեցէք։*

ՂԹ. ՀԱՐՑ. *Մեծապէս հոգածութիւն է քահանային այդպէս, ապա լաւագոյն է որոշել յանապատս, քան եթէ կալ յեկեղեցւոջ*[4]*։*

ՊԱՏՐԻ. *Բարւոք ասացեր*[5]*. այլ որ քահանայ օծեալ է և թողու զայն և որոշի յանապատս, ինձ այսպէս թուի թէ դատապարտի, քան եթէ օգտեսցի։ Զի յորժամ Քրիստոս յարեաւ, ասաց ցՊետրոս, «Եթէ սիրես զիս. արածեա զխաշինս իմ»*[6]*, և ո՛չ ասաց թէ լեր*[7] *յանապատի և պահս պահեա, կամ այլ ինչ լուծ ծանրագոյն կրեսջիր*[8]*, այլ եթէ, «Արածեա զխաշինս իմ»։ Իսկ որ յանապատսն իցեն, բազումք ի նոցանէ խոտաճարակք իցեն, և կէսք բազում աւուրս անսուաղ անցու-*

նմա տալ ստանց խոստովանութեան։ Գ. օր.... է որքոյ սեղանոյն ճաշակէ։ Ե. օր. է սուրբ սեղանն և ճաշակել։

1. Գ, Դ և Ե օր. յանցաւոր։

2. Գ. օր. չունի և յանդգնի համարձակապէս։

3. Գ. օր. և թէ տայ ինքն դատապարտի։

4. Բ. օր. Մեծապէս հոգս է քահանային, և լաւ որոշել յանապատս։ Գ. օր. Մեծապէս հոգ է քահանային, և արդ, լաւագոյն է որոշելն յանապատ, քան թէ կալն յեկեղեցւոջ։ Դ. օր. Եթէ մեծապէս...։ Ե. օր. Եթէ այդպէս մեծապէս հոգածութիւն պիտոյ է քահանային։

5. Բ, Գ, Դ և Ե օր. չունին՝ Բարւոք ասացեր։

6. Յովհ. ԻԱ, 15։ — Բ, Գ, Դ և Ե օր. զոչխարս։

7. Դ և Ե օր. է՛ր. իսկ Բ. օր. էր անապատացիր։

8. Գ, Դ և Ե օր. կրեա։

ցանեն, և այլք մեծամեծ ժուժկալութիւնս կրեա֊ցեն. և ոչ զանուանս նոցա ամենքեան գիտեն իսկ[1]. իսկ զանունն Պետրոսի և Պաւղոսի՝ սկիւ֊թացիք և հնդիկք[2], և ամենայն իսկ հաւատացեալք գիտեն և ճանաչեն, ծեր և տղայ և ամենայն հա֊սակ: Եւ զի՞նչ արարին. մի՞թէ յանապատի՞ բնակեցան կամ խստաճարակք եղեն, կամ կրօ֊նաւորական կարգաւք[3] ճգնեցան: Ո՛չ. այլ[4] զի՞նչ արարին. զոչխարս արածեցին, ի քաղաքէ ի քա֊ղաք ընթացան[5] և զՔրիստոս[6] քարոզեցին, և զմո֊լորեալսն յաստուածպաշտութիւն դարձուցին. և զքահանայս ի տեղիս իւրեանց կարգեցին, զի նո֊ցա հետեւողք լինիցին, և զփառս նոցա ժառան֊գեսցեն և նոցա նմանողք լինիցին, որպէս և նո֊քա՝ Քրիստոսի, ըստ երանելոյն Պաւղոսի: Իսկ եթէ ոք զիշխանութիւնն քահանայութեան ոչ է առացեալ, և որոշի յանապատ և ճգնեսցի ճգնու֊թիւն[7] խստակրօն, մեծապէս պսակեսցի յԱս֊տուծոյ:

Ճ. ՀԱՐՑ[8]. Եթէ ոք արասցէ մեղս բազումս կամ սակաւ և խոստովանեսցի, և ոչ եւս այլ գործեսցէ զայն, և հնա՞ր ինչ իցէ առանց ապաշ֊խարութեան թողութիւն ընդունել՝ թէ ոչ:

1. Գ, Դ և Ե օր. զնեն խոլ անապատացիէն, բազում խորամա֊նկութեամբ են և այլք զշաբաթս չգեն (Ե. օր. շաբաթն է շաբաթ ա֊սեն) և ոմանք բազում աւուրս անօսսութ անցուցանեն (Գ. օր. չունի անօսսութ անցուցանեն), և լուծս ծանրագոյնս կրեցին. որոց զբազմաց և ոչ զանուանս նոցա լսաք:
2. Գ, Դ և Ե օր. է սկիզբն և է հնդիկս:
3. Դ և Ե օր. կարգաւ:
4. Գ, Դ և Ե օր. այլ:
5. Գ, Դ և Ե օր. չընթացան:
6. Գ, Դ և Ե օր. յաւելուն՝ Աստուած:
7. Դ և Ե օր. է ճգնաւորութեան (Ե. օր. խիստ):
8. Գ. օր. չունի զայս Հարցմ. հանդերձ Պատասխ.: Իսկ Բ. օր. դնէ այսպէս. Եթէ ոք մեղս արար բազում կամ սակաւ, և խոստովանեցաւ այլ ոչ գործեաց, առանց ապաշխարութեան հնա՞ր է ապրել:

ՊԱՏՍԽ. *Մարգարէն Դաւիթ ասէ. «Խոտորեա՛ ի չարէ, և արա զբարի*[1]*»: Առանց գործոյ բարեաց ոչինչ օգուտ՝ որ թողու զմեղսն. և արդ, ոչ ասացից*[2] *քեզ զմարդ՝ որ գործեալ իցէ զմեղս, և դարձեալ թողու զմեղսն զայն և այլ ոչ եւս արասցէ զնոյն, և բարի ինչ ոչ գործիցէ. այլ ասացից քեզ զայր մի՝ որ յորովայնէ ամենեւին սուրբ իցէ, և մեղս ոչ իցէ գործեալ, և բարի չէ ինչ արարեալ, դու զի՞նչ համարեսցիս զնա: Անասուն, ասէ: Իսկ այն՝ որ յորովայնէ մեղս ոչ իցէ գործեալ, և բարի ինչ ոչ իցէ արարեալ, անասուն համարեսցիս, ո՞րչափ եւս առաւել ապա այնպիսին՝ որ մեղս գործեալ իցէ և բարի և ոչ մի ինչ. յայտ է թէ վատթարագոյն եւս իցէ նա քան զանասուն:*

ՃԱ. ՀԱՐՑ. *Իցէ՞ ինչ մեղք յաշխարհի*[3]*, որ կարէ կալ առաջի*[4] *ապաշխարութեանն:*

ՊԱՏՍԽ. *Լուաք, ասէ, զի՛նչ եղեւ պոռնկին և այլոց բազմաց, որք զմեծամեծ յանցանս իւրեանց քաւեցին ճշմարիտ ապաշխարութեամբ*[5]*: Եւ Եզեկիէլ մարգարէն ասէ. «Անօրէնն եթէ դառնայ*[6] *յամենայն անօրէնութեանց իւրոց՝ զոր արարեալ իցէ*[7]*, և պահեսցէ զպատուիրանս իմ, և արասցէ արդարութիւն և ողորմութիւն, ամենայն յանցանք նորա՝* [8] *զոր գործեալ իցէ, և ամենայն անօրէնութիւնք իւր՝ զոր անօրինեալ իցէ՝ մի՛ յիշեսցի.* [9] *այլ արդարութեամբն իւրով զոր արար,*

1. Սաղմ. ԼԳ, 15:
2. Դ և Ե օր. ասացէ:
3. Գ, Դ և Ե օր. չունին՝ յաշխարհի:
4. Ե. օր. կալ ընդդէմ:
5. Բ և Գ օր. չունին՝ ճշմարիտ ապաշխարութեամբ:
6. Բ. օր. դարձցի:
7 Բ. օր. չունի՝ զոր արարեալ իցէ:
8. Բ. օր. չունի աստի մինչև զոր անօրինեալ իցէ:
9 Բ. օր. չունի աստի մինչև՝ կենօք կեցցէ. իսկ զյաջորդն այսպէս դնէ. ոչ կամիմ զմահ մեղաւորին, ասէ Տէր:

կելով կեցցէ. մինչ կամելով կամիցի՞մ զմահ մե-ղաւորին, ասէ Տէր »[1], և այլն՝ որ ի կարգին։

ՃԲ. ՀԱՐՑ[2]. Իցէ՞ այլ ինչ առաքինութիւն ա-ռաւելապէս՝ քան զողորմութիւն առատապէս։

ՊԱՏՕԽ. Ցերանելոյն Ցոբայ անդի ստուգեցաք[3], զի համբերութիւն վկայաց՝ առաւելապէս և վե-րագոյն է քան զողորմութիւնն։ Զի նա յորժամ՝ առատապէս զողորմութիւն գործէր, սատանայ ոչ համարեցաւ զայն իւրն յաղթութիւն[4]. իսկ յոր-ժամ համբերեաց ի վերայ եկեալ վշտացն, ապա յաղթեաց սատանայի, և վերահռչակեցաւ ընդ ամենայն տիեզերս[5]։

ՃԳ. ՀԱՐՑ. Իւ քան զհամբերութիւնն իցէ՞ այլ ինչ առաքինութիւն բարձրագոյն[6]։

ՊԱՏՕԽ. Սէրն մեծագոյն եւս է[7], այսինքն անո-խակալութիւնն. արդ, զայսոսիկ զերիս առաքի-նութիւնս ի մի վայր ժողովեալ Պաւղոս, զսէրն աւարտ արարեալ[8] ամենայնի և օգտակար քան զայլսն ասէ, ո՛չ զառատապէս զողորմութիւնն ասացեալ. այլ թէ և զամենայն ինչս որք բաշխէ՝ առանց սիրոյ[9], ոչ ինչ օգտի. քանզի այսպէս ասէ. « Եթէ զամենայն ինչս իմ՝ ջամբիցեմ՝ աղքատաց,

1. Եզեկ. ԺԸ, 21, 22, 23։
2. Գ. օր. Ո՞րն առաքինութիւն՝ ո՞ր առաւել է քան զողորմութիւն։ իսկ Դ և Ե օր. Է՞ առաքինութիւն որ առաւել է քան զողորմութիւն առաւելապէս (Ե. օր. առատապէս)։
3. Գ, Դ և Ե օր. տեսաք։
4. Գ, Դ և Ե օր. դնեն. ոչ համարեցաւ զայն նորա առա-ւելապէս արդարութիւն։
5. Գ. օր. և հռչակեցաւ ընդ տիեզերս։
6. Բ. օր. Եւ առաքինութիւն ո՞ր առաւել է քան զողորմութիւն։
7. Գ, Դ և Ե օր. սէր ընկերին բարձրագոյն է։
8. Գ. օր. արար աւարտ. իսկ Ե. օր. աւարտ եդ։
9. Գ, Դ և Ե օր. չունիմ՝ այլ թէ և զամենայն ինչս ոք բաշխէ։ Գ. օր. դնէ. ոչ եթէ զողորմութիւնն ասաց միայն, այլ թէ զամենայն ինչս իմ ջամբեցից աղքատաց, և զանձն իմ մատնեմ յայ-րումն, և սէր ոչ ունիմ, ոչ ինչ օգտիմ։

և տաց զանձն իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ »[1]։ ԱՀա զի սէրն վերագոյն է քան զՀամբերութիւնն. զի Համբերել վշտացն Հեշտագոյն է քան զայրելն Հրով[2]. այլ զսէրն վերագոյն ասաց՝ քան զՀամբերելն այրեցմանն։

ՃԳ. ՀԱՐՑ. Եթէ ոք զրկեսցէ զոք, և առնէ ագաՀութիւն[3], և յայնմանէ բաշխէ առատապէս[4] աղքատաց, է՞ ընդունելի առ Աստուած, թէ ոչ[5]։

ՊԱՏԱՍԽԻ. Ո՛չ. այլ այնպէս է որպէս թէ շուն[6] ոք մորթիցէ առաջի Աստուծոյ։ Քանզի Աստուած ատէ զզրկողն և զագաՀն և զվաշխառուն։ Արդ, զի՞նչ օգտի մարդ, զմինն մերկացուցանել և ըզմիւսն զգեցուցանել. այնպիսոյն անընդունելի է[7] ողորմութիւնն զոր առնէ առաջի Աստուծոյ. և ոչ եթէ այն միայն իցէ անընդունելի՝[8] զոր ի զըրկանաց առնէ և յագաՀութենէ, այլ և այն՝[9] զոր յիւրում վաստակոց առնէ՝ պիղծ Համարեսցի, վասն խառնելոյն ընդ զրկանսն և ընդ ագաՀութիւնսն։ [10] Ապա զի՞նչ լինիցի օրՀնութիւնն, յորժամ բազմեցուցանեն այնպիսիքն զկարօտեալսն և զմերկսն զգեցուցանեն և կերակրեն և նոքա միաբան օրՀնեսցեն։ Լո՛ւր արդեւք[11], եթէ Հար-

1. Ա. Կորնթ. ԺԳ, 3։
2. Գ. օր. զի Համբերութիւն վշտացն Հեշտագոյն է քան զայրեցումն (Դ և Ե օր. զայրումն Հրոյ)։
3. Դ և Ե օր. և առնէ (Ե. օր. առցէ) ագաՀութիւնս։
4. Ե. օր. ողորմութիւն։
5. Ե. օր. Ընդունի՞ Աստուած։ Բ. օր. այսպէս ունի. զՀարցմ. Եթէ ոք ագաՀութիւն առնէ և զրկէ և բաշխէ աղքատաց առատապէս, ընդունելի լինի՞ առ Աստուած. իսկ զՊատասխանին Համառօտէ անիմաստօրէն։
6. Դ. օր. փոխանակ շան՝ դնէ [illegible]։
7. Ե. օր. ընդունայն է։
8. Ե. օր. անընդունականն։
9. Դ. օր. այլն։
10. Ե. օր. աստ դնէ Հարցմ. մինչեւ միաբան օրՀնեսցեն. յոր յարէ Պատասխ. Լուր...։
11. Ե. օր. արդ։

ցանես։ Աստուած հրամայեաց յարդար վաստակոց առնել զողորմութիւնն և զաղքատս կերակրել. իսկ յորժամ զկարօտութիւն աղքատին լնուցումք, մի՛թէ եպերեսցէ՞ զնա աղքատն, եթէ ի յափշտակութենէ կերակրէ զնոսա[1]։ Ոչ. այլ օրհնեսցէ։ Բայց Աստուած ոչ ընդունի, այլ բարկանայ ի վերայ նորա, զի հրամայեաց յարդար վաստակոց տալ աղքատաց, և նա արհամարհեաց զհրամանս նորա, և բաշխեաց յագահութենէ և ի զրկանաց։ Զոր օրինակ, թագաւոր ոք հրամայէ սպասաւորի իւրոյ հաց ի նաշհոյ կազմել, և գինի անուշահոտ և անապակ պատրաստել, և կերակրել և արբուցանել կարօտելոց եղբարց իւրոց[2]. իսկ սպասաւոր թագաւորին խառնիցէ ի նաշիհն[3] աւազ, և յանապակն՝ ջուր, և ընդ միսն խառնէ արիւն և փուխէ, և այնու կերակրեսցէ զկարօտեալսն. բայց նոցա իսկ կարօտելոցն և քաղցելոցն՝ կարի անուշահամ թուեսցին կերակուրքն, և օրհնեսցեն զմատակարարն, որ է սպասաւորն[4]. իսկ թագաւորն յորժամ իմանայ, չարաչար տանջեսցէ զմատակարարն։ Այնպէս և Աստուած առնէ այնմ՝ որ խառնէ զրկանս ընչից՝ որ յագահութենէ և ի վաշխից տոկոսեաց, ընդ ինչս իւր՝ զոր ստացեալ է յարդար վաստակոց, և տացէ զայն կարօտելոց և քաղցելոց։

ԾԵ. ՀԱՐՑ. Ամենայն սպանութիւն մի՞ է,[5] և ամենայն շնութիւն, եթէ այլ է մեծամեծաց և այլ է աղքատաց։

ՊԱՏԱՍԽ. Մի է, ասէ[6], եթէ սպանանես զթա-

1. Ե. օր. տուներձ զայն։
2. Ե. օր. և գինի անուշահոտ տանել և այնպէս տալ աղքատաց, այսինքն՝ կարօտելոց եղբարց։
3. Դ և Ե օր. ընդ նաշիհն։
4. Դ և Ե օր. չուներին՝ որ է սպասաւորն։
5. Բ օր. աստի ցվերջակէտն չունի։
6. Բ, Դ և Ե օր. չուներին՝ ասէ։

գաւոր և թէ սպանանես զաղքատն. [1]եթէ չնայ[2] ոք ընդ թագուհւոյ, եթէ ոք ընդ աղքատի. բաց ի քահանայէն և յամուսնոյ նորա[3], որպէս և ինձ թուի։

ԾԶ. ՀԱՐՑ. *Եթէ մարդիկ բազում մի մարդ սպանանեն, բաժանի՞ արիւն նորա ի վերայ ամենեցուն, և սուղ առ[4] սակաւ հասանէ ապաշխարութիւն իւրաքանչիւր առն։*

ՊԱՏԱՍԽ. *Ոչ այդպէս[5] իրաւունքն Աստուծոյ. այլ զոր օրինակ այր մի չնասցէ[6] ընդ կին մի և առցէ ապաշխարութիւն չնութեանն այնմիկ. և յորժամ բազում մարդիկ չնան ընդ կին մի, յիւրաքանչիւր ումեքէ չնութիւն մի պահանջեսցէ Աստուած. [7]որպէս և այր մի չնասցէ ընդ կանայս բազումս, յիւրաքանչիւր կնոջէ չնութիւն մի պահանջեսցէ ի չնացեալ յառնէն[8] յայնմանէ. այնպէս և որք ի միասին այր մի սպանանեն, յիւրաքանչիւր յառնէ մարդոյ մի արիւն պահանջէ Աստուած[9]։*

ԾԷ. ՀԱՐՑ[10]. *Որպիսի՞ պահք ընդունելի է առ Աստուած. քանզի տեսանեմք զոմանս, զի զքառասնորդսն պահեսցեն զամենայն[11] և այլք զկէսն, և այլք ի շաբաթէ ի շաբաթ միայն ճաշակեսցեն[12].*

1. Բ. օր. աստի մինչև ընդ աղքատի չունի։
2. Դ և Ե օր. չնայցէ։
3. Ե. օր. չունի նորա։
4. Բ. օր. չունի սուղ առ, իսկ Դ և Ե օր. չունին առ։
5. Բ. օր. Ոչ է այդպէս, իսկ Դ և Ե օր. Ոչ այդպէս են։
6. Բ. օր. այլ որպէս այր մի չնայ։
7. Բ. օր. աստի ցվերջակէտն չունի։
8. Դ. օր. յանձնէն։
9. Գ. օր սկսեալ ի ԾԴ Հարցմանէն և այսր չունի. Նոյնպէս նաև Զ. օր. սկսեալ ի Ղ Հարցմ. յ'էջն 400, ի բանէն «Եթէ քահանայն արդար իցէ»։
10. Բ. օր. չունի զայս Հարց. հանդերձ Պատասխ.։
11. Գ և Զ. օր. դնեն՝ պահեն, Գ. օր. չունի զամենայն։
12. Գ և Զ. օր. և այլք ճաշակեն, զորոյքն բովանդակ և ոչ մտեալքն ինչ ճաշակեն և ոչ փոփոխել կերակուր։

սոյնպէս և զտարին ամենայն և ոչ մսեղէն ճաշակեն ինչ, և ոչ այլ ինչ ի փափուկ կերակրոց։

ՊԱՏՃԱՌ. Պահք, ասէ[1], ոչ եթէ զայն սիրէ Աստուած, զոր միայն ի կերակրոց զգուշասցի ոք, այլ զայն՝ որ զամենայն անդամսն պահիցէ[2] ի մեղաց։ Քանզի յորժամ ոչ ուտիցէ ոք, լուծանին անդամքն ամենայն. պակասի լոյս աչացն, վատեն ոտքն, թուլանան ձեռքն[3], և տկարանայ ամենայն մարմինն։ Այլ եթէ զաչսն[4] ի ցանկութենէ ոչ պահիցէ, և զձեռսն ի հարկանելոյ և[5] ի յափշտակելոյ, և զոտս ի գնալոյ ի չարիս գործոց մեղաց[6], զլեզուն յանարգանաց[7], յանիծից, ի բամբասանաց, յերդմանէ, զսիրտն յոխակալութենէ[8] սանձելով համբերութեամբ. եթէ այսմ ամենեքումբք ո՛չ պահեսցէ[9], ունայն և դատարկ են պահք որ ի կերակրոց. ապա եթէ զոսա[10] պահեսցէ, ընդ պահելն իւրում ի կերակրոց, առաւելապէս պայծառասցին պահք նորա. ապա եթէ զորկորն միայն պահիցէ, որո՞յ ակն ունիցի[11], զի պահելով նորա

1. Գ, Դ, Ե և Զ օր. չունին ասէ։
2. Գ և Զ. օր. այլ որ ամենայն անդամօքն պահեսցէ։
3. Զ. օր. չունի պակասէ լոյս աչացն, վատէն ոտքն, թուլանան ձեռքն։
4. Զ. օր. յաւելու և զմիտսն։
5. Դ. օր. չունի ի հարկանելոյ և ի յափշտակելոյ, և զոտս. իսկ Գ և Զ օր. չունին միայն ի հարկանելոյ։
6. Զ. օր. չունի ի գործոյ մեղաց։
7. Գ և Զ. օր. դնեն, զլեզուն անպատեհ խօսելոյ. իսկ Զ. օր. աստէն աւարտէ զբանն այսպէս, եթէ զայս ամենայն ոչ պահէ ոչինչ օգտէ ի պահոցն։
8. Ցօր. զսիրտն յոխակալութենէ սանձելոյ (Դ. օր. սանձելով) համբերութենէ (Դ և Ե օր. համբերութեամբ)։ Գ. օր. չունի՝ սանձելոյ և դնէ այսպէս, և հաստատուն համբերութեամբ։
9. Գ. օր. եթէ զայս ամենայն ոչ պահէ, ոչ ինչ օգտէ ի պահոցն յայն. իսկ Ե. օր. եթէ յայսմ ամենեքեամբք ոչ պակասէ ... որ է կերակրոյ լինի։
10. Ցօր. եդեալ էր և զոսս, ուղղեցաւ ըստ Դ և Ե օր.։
11. Ե. օր. մի՛ ակն ունիցի ինէ։

ամենայն անդամքն ապականին, և զայլ անդամսն՝ ոչ պահեսցէ[1]. որ եթէ[2] աչք քո ոչ ցանկայ գեղոյ կամ ընչից՝ ոչ վատնեսցի[3]. և ձեռք քո՝ եթէ ոչ յափշտակէ կամ հարկանէ զոք՝ ոչ թուլանայ. և ոտք քո ոչ գնասցէ ի գործս չարեաց, ոչ վատեսցի. և լեզու քո՝ եթէ ոչ անարգէ կամ ոչ բամբասէ զոք կամ ո՛չ անիծանէ կամ ոչ երդնու, ոչ լուծանի և ոչ ապականի յայսցանէ. եթէ զայսոսիկ ոչ կապես և ոչ պահեսցես, զի՞րդ օգտեսցիս անդամոյն այն, որ եթէ պահեսցես ամենայն անդամքդ ընդ նմին ապականին. զայն պահեսցես, զայլ անդամսդ՝ որ եթէ պահես և կապես ամենեւին ոչ ապականին?. զայն արձակես, զի՞րդ է քեզ ապրել։ Եւ ընդէ՞ր ոչ օգտի ի բազում պահոց անդի, որով վատնի և ապականի ամենայն մարմինն։ Արդ, բաւական է մեզ յիմար կուսանացն ուսանել, զի նոքա ոչ օգտեցան։ Այլ դու, եթէ գովեսցես՝ եթէ ոմն պահեաց անսուաղութեամբ զաւուրս չաբաթոյ միոյ. ես ասացից, թէ այս անուն լեզու ունէր բամբասող և թշնամանող, և եհատ զայն։ Եթէ զայլ ումեքէ ասասցես, եթէ երկու չաբաթ ոչ ճաշակեաց կերակուր. ես զայն գովեցից՝ որ ունէր ակն ցանկացող, և փակեաց զնա յախտէն յայնմանէ։ Եթէ դու ասասցես, աւուրց[4] երից չաբաթուց ճգնեցաւ այլ ոմն մի. ես զայն գովեցից՝[5] որ ի բաց եհատ ի մարմնոյ իւրմէ զշնութիւն և զպոռնկութիւն, և ժուժկալութեամբ պնդեաց զինքն յաղօթս։ Եթէ

1. Ե. օր. չունի՝ և զայլ անդամսն ոչ պահեսցէ։
2. Ե. օր. չէ եթէ։
3. Ե. օր. ստորի մինչև յայսցանէ չունի, իսկ զյաջորդ բանսն այսպէս կարգէ. Արդ, զանդամս զայն՝ որով ամենայն անդամքն մեռանին՝ պահես և զայլն որ եթէ պահես ոչ ապականին, զայնս արձակես, զի՞րդ օգուտ ապրեսցես։
4. Դ. օր. առաւրդ, Ե. օր. զառաւրս։
5. Դ. օր. յաւելու, արգելեալ։

դու զայլ ոք ասասցես, եթէ զչորրորդ չաբաթն պահեաց ժուժկալութեամբ, ես զայն վերագովեցից, որ սովորեցոյց զձեռս իւր արձակել առատապէս յողորմութիւն: Եւ եթէ ասասցես եթէ միւս այլ ոք զքառասներորդն աւարտեաց, լինելով անսուաղ. ես զայնմանէ ասացից՝ որ զաւարտն ամենայն առաքինութեան կատարեաց, և կորզեաց զոխ ընկերին ի սրտէ իւրմէ: Զայսպիսի պահս ընտրեաց Աստուած, որպէս և Եսայի ասէ. «Ոչ եթէ պահք՝ զայն ընտրեցի՝ որ զքուրձ զգենուցուս, կամ ի վերայ մոխրոյ նստիցես, կամ անսուաղ լինիցիս. ոչ սիրեցի, ասէ, զայնպիսի պահս. այլ եթէ տեսանիցես զոք քաղցեալ, բրդեա՛ նմա զհաց քո. և զաղքատս անյարկս ա՛րկ ընդ յարկաւ քո[1]. եթէ տեսանիցես զմերկն՝ զգեցո՛, և յընտանեաց զաւակի քոյ զակն քո մի՛ արկանիցես[2]: Զմուրհակս անիրաւութեան պատառեա, և լուծ զկնճիռն անիրաւութեան վաճառաց[3]»: Եթէ այս ամենայն ի ձեռն ստուերացն ասացաւ, որչափ եւս առաւել ի ձեռն շնորհացս պարտ է առաւելապէս ստանալ: Զի՞նչ ապա. չէ՞ պարտ պահել: Քա՛ւ լիցի, ի բա՛ց տար. կարի կարեւոր է պահքն, և հիմն ամենայն առաքինութեանց. իսկ որ հիմն արկանէ զպահսն, քաջայայտ է[4] չինել այնու զտուն առաքինութեան: Արդ, եթէ հիմն զպահսն արկանես, և ոչ կանգնեսցես զորմունսն աղօթիւք, առանց չնութեան և առանց գողութեան, և ոչ ածես ի վերայ գերանս, որ է առանց զրկանաց և առանց յափշտակութեան սուրբ լինել ձեռացն. և ո՛չ զառաստաղս կապեսցես՝ գործով ողորմա-

1. Ե. օր. տար ի տուն քո:
2. Գ. օր. զշտապեալ աղքատանին քո ընդ ականջս մի՛ արհամարհեր. Դ. օր. հարկանիցես:
3. Մրգ. Ես. ԾԸ, 5, 6 և 7:
4. Ե. օր. յաւելու ինչ օգտանի:

*ծութեան յարդար վաստակոց, և ի վերայ ա-ճառս արկանել, որ է համբերութիւնն, և ապա ատարտել անոխակալութեամբ և սիրով. արդ, եթէ այս ամենայն ի ներքս ոչ ժողովի, սակայն հիմն և տուն ոչ անուանեցի, և ոչ լինիցի բնա-կարան, այլ կոխան անցաւորաց, և ապականեալ անյայտ լինիցի ։ Իսկ պահք վասն այնր սահմա-նեցաւ*[1], *զի ի բաց հատանէ զախտ չնութեան և զայլ յանցանս ։ Ապա եթէ զայն ինչ՝ որ պահքն վասն նորա սահմանեցաւ՝ ի ներքս հաւաքես, ի պահոցն զի՞նչ շահեսցիս, զպատճառս փրկութեանն՝ արասցես պատճառս յանցանացն*[2]*. զի որ ի կե-րակրոց միայն պահեսցէ և զայլոցն զանց ա-րասցէ, թէ զամենայն աւուրս հող կերիցէ փոխա-նակ հացի, աստէն մարմնով տանջեսցի պիղծ պահօքն, և անդ աններելի հոգին տանջեսցի ի հուր գեհեննին ։*

*ՃԸ. ՀԱՐՑ. Գինին զի՞նչ վնաս արկանէ*[3] *առա-ւել քան զմիս կամ զայլ փափուկ կերակուր ։*

*ՊԱՏԱՍԽ. Զոր ինչ արար Աստուած ի սկզբա-նէն՝ ասէ Գիր, զի բարի են. այնպէս գինին բարի է և ոչ չար. և մեզ չէ պարտ զգինին պիղծ հա-մարել և զԱստուած անարգել ։ Արդ, զգինին ոչ խափանէ Գիր ի մարդոյ. և եթէ խափանելոց էր՝ սակայն ոչ էր ասացեալ մարգարէն, եթէ «Գինի զսիրտ մարդոյ ուրախ առնէ*[4]*». և եթէ չար էր, Քրիստոս զնա իւր արիւն ոչ էր արարեալ ։ Արդ, ո՛չ եթէ գինին է չար, այլ արբեցութիւնն. քաւ լիցի չար ասել զարարչութիւնն Աստուծոյ, այլ բարի ։* [5]*Մի՛ եթէ գինին վասն արբեցութեան տու-*

1. Ե. օր. անուանեցաւ ։
2. Գ, Դ և Ե օր. տանջանաց ։
3. Ե. օր. տանէ. Ջ. օր. ընտա է ։
4. Սղմ. ՃԳ, 15 ։
5. Ջ. օր. աստի ցվերջակէտն չունի ։

ու, ապա զի՞նչ պատճառ այս տուաւ, զի՞նչ խօսիս։ Եթէ համարիս զգինին վասն արբեցութեան տուեալ, ապա զջուրն վասն նաւակոծութեան համարեա, և խեղդելոյ զանձինս մարդկան, և ոչ վասն կենաց։ Եւ զհողն՝ չար, զի փուշ և դժնիկ[1] և այլ չար բոյսս մահաբերս բուսուցանէ[2]. և զերկաթն՝ զի սպանանէ, և ոչ յայլ պէտս ինչ պիտանիս վարել. և զայլ բազում ինչ՝ զոր արարեալ է Աստուած։ Կրակն այրէ զմարդիկ, եթէ դու թողուս զպէտս նորա ելանելով[3] և յայրումն[4] միայն վարես. և քարինս տուաւ՝ զի պարիսպ և որմունս կանգնեսցես[5], և դու թողեալ զայն, ի քարկոծ առնել[6] զընկերս քո և ի հարկանել՝ վարեսցես. և փայտս տուաւ՝ զի պտուղս տացէ[7] մարդկան, և վարեսցի ի պէտս շինութեան. և դու զայնու զանց արարեալ՝ վարեսցես զայն ի պէտս նետից և գեղարդեանց[8], զի զանձինս մարդկան սատակեսցես[9]. և երկաթն վասն այնորիկ տուաւ, զի սպասաւորեսցէ յաղագս օգտութեան մարմնոյ քո՝[10] ի գործս զանազանս, և[11] դու զայլ պէտս զանց արասցես և ի պէտս սպանութեան[12] վա-

1. Ե և Զ. օր. յաւելուն բերէթ։
2. Զ. օր. չունի բուսուցանէ, իսկ Ե. օր. յաւելու համարեա չար։
3. Զ. օր. չունի, իսկ Դ և Ե օր. դնեն ելանել։
4. Զ. օր. դնէ յայրեցումն և չունի միայն։
5. Ե. օր. կանգնեսցի, Զ. օր. չունի զորմունս և կանգնես։
6. Ե և Զ. օր. առնես.
7. Ե. օր. բերցէ. Զ. օր. բերէցէ։
8. Յօր. պակասէր և վարեսցի ի պէտս շինութեան, և դու զայնու զանց արարեալ. եդաք ըստ Դ և Ե օր. իսկ Զ. օր. չունի միայն գեղարդեանց։
9. Ե. օր. զի մարդիկ սպանցես։
10. Զ. օր. չունի զի սպասաւորեսցէ յաղագս օգտութեան մարմնոյ քո, և դնէ՝ ի գործս պէտոյից բարեաց։
11. Ե. օր. ունի այսպէս. Եւ դու զայլ պէտս զանց արարեալ՝ վարես զնա ի պէտս սպանութեան։
12. Զ. օր. սպանանութեան։

րեսցես։ Այնպէս համարեաց և զգինին. Աստուած զգինին հրամայեաց, զի որպէս հացին յագենաս, այնպէս և գինւոյն[1]. զի զսիրտ մարդոյ ուրախ առնէ, և դու անցանելով ընդ չափն, և ի պէտս արբեցութեա՞ն վարես զպէտս ուրախութեանն[2]. և ո՞չ գիտես և ո՞չ զմտաւ ածես, զի որպէս շնութիւն, պոռնկութիւն, սպանութիւն, արուագիտութիւն և իգացութիւն խափանեն ի վայելմանէ արքայութեանն[3], այնպէս և արբեցութիւնն։ Եւ ես ասէ, զբազումս տեսի զի արբեցան՝ և ոչ շնացին, և ոչ սպանին, և ոչ թշնամանեցին. և ես ասեմ[4], ոչ եթէ զայդ ամենայն գործել տայ, ասացի, թէ խափանէ յարքայութենէն. այլ արբեցութիւնն միայն առանձինն ինքն չար է, և խափանէ յարքայութեանն փափկութենէ։ Քանզի Պաւղոս յորժամ զարբեցութիւնն ի մէջ բերէ, ոչ եթէ ասաց, արբեցողն որ գործէ զայս ինչ և կամ զայն՝ զարքայութիւնն Աստուծոյ ոչ ժառանգէ, այլ զայնու ամենայնիւ զանց արարեալ, միայնակ զարբեցողն ասէ. որպէս և գրեալ է առ Կորնթացիսն. ասէ. « Մի՛ խաբիք, ոչ շունք, ոչ գողք, ոչ արուագէտք[5], զարքայութիւնն Աստուծոյ ժառանգել ոչ կարեն »[6]։ Եւ ընդէ՞ր լինիցի այդ. լո՛ւր աղաչեմ, զի քան զդիւահարն վատթարագոյն է արբեցողն, և քան զշնացողն դառնագոյն իցէ. Նախ մարմնոյն, և ապա կորստեամբ հոգւոյն։ Քանզի զդիւահարն յորժամ տեսանիցեն բազումք ողորմին նմա, և ցաւագեն և լան, և ապաշաւեն. և եթէ նա համբերութեամբ տարցի նեղութեանցն, զարքայութիւնն երկնից[7] ժառանգեսցէ։ Իսկ արբեցողն պիղծ հա-

1. Մինչև ցայս վայր Զ. օր։
2. Ե. օր. չունի զպէտս ուրախութեանն։
3. Դ և Ե օր. խափանէ յարքայութենէն։
4. Յօր. ասէ. եդաք ըստ Գ, Դ և Ե օրինակաց։
5. Դ և Ե օր. յաւելուն ոչ իգացեալք ոչ արբեցողք։
6. Ա. Կորնթ. Զ, 10։
7. Գ, Դ և Ե օր. ընդ երկնային։

մարթալ է[1] քան զչնացողն. քանզի չնացողին՝ թէպէտ և հոգւոյն ապականութիւն է և կորուստ, այլ մարմնոյ երազական և սնոտի հեշտութիւն: Իսկ արբեցողն ըմպէ և սուկայ ամենայն անդամօքն, դառնանայ ստամոքսն, անախորժ լիցի կոկորդն, ործկոտայ[2] և դարձեալ այլ ըմպեսցէ, և ապա փրսխէ, ապականի ստամոքսն, առցեն ատամունքն: Եւ յորժամ հայի յայն զոր սիրեացն, իբրեւ յօձէ փախչի ի նմանէ, տապի իբրեւ զվիրաւոր, հեծէ իբրեւ զհիւանդ. և իբրև դիւահարի այլագունին երեսքն, շրջին աչք[3], պակասի լոյսն, խեղին ոտքն, թիւրին ձեռքն[4], լուծանին ամենայն անդամքն. եթէ տէր է, արհամարհի ի ծառայից. եթէ ծառայ է՝ անարգի ի տեառնէն, այլ և յամենայն մարդկանէ արհամարհին, անարգին, եպերին, պարսաւին, բամբասին. տղայոց այպն լինիցին, ի կանանց նախատին. և ոչ որպէս դիւահարին այնպէս ողորմին նմա, այլ նզովեն և քարքարեսցեն[5]. և ոչ եթէ այնպիսի տանջելովն և նախատ լինելովն քաւի ի յանցանաց անդի, այլ և այնու ամենայնիւ զանչէջ[6] հուրն ժառանգեսցէ: Վասն այդորիկ ոչ է պարտ զգինին պիղծ ասել, այլ զարբեցութիւնն, և զանչափութիւն ագահութեանն:

7 Ապա չէ՞ պարտ քահանայի, ասէ, ըմպել գինի: 8 Եւ ասէ. զայդ իսկ ոչ կարացի[9] պատուիրել, այլ որ զգուշանայ քահանայն և ռամիկն, բարւոք առնէ, ապա թէ ոչ՝ զչափաւորն ընկալցի. զի թէ

1. Ի. օր. պինդ է — Աստուած:
2. Բ. օր. ործկոյ, իսկ Ե. օր. նծուռոյ:
3. Դ. օր. աչքն շրջի:
4. Յօր. ձուքն, եղաք ըստ Գ և Դ օր.:
5. Յօր. այդպէս, այլք չունին:
6. Դ և Ե օր. յաւիտենական:
7. Ե. օր ասա դնէ Հարց.:
8. Ե. օր. ասաէն Պատասխ.:
9. Գ և Դ օր. ոչ կարացից, իսկ Ե օր. ոչ կարեմ:

ախտս այս կարող է, ասէ, յարքայութենէն արտաքսել զոչ զգուշացեալսն, քաջայայտ է՝ զի ոչ է բարի, այլ չարագոյն քան զշնութիւն, որպէս և ասացին։ Եւ եթէ շնութիւն ապականէ զպատիւ քահանայութեան, քաջայայտ է՝ զի առաւել ևս արբեցութիւնն։ Եւ եթէ ուսուցանողն այնպէս գործեսցէ[1], զի՞նչ ապա ուսանողքն. և եթէ վարդապետն յանցանիցէ, զի՞նչ ապա և աշակերտն. և եթէ առաջնորդն սխալէ, զի՞նչ ապա և ժողովուրդն։ Վասն որոյ պարտ է ամենեւին փախչել յախտէս յայսմանէ, իբրեւ յօձէ ապանողէ. քանզի ինքն իսկ արբեցութիւնն գործ չար է, և տայ գործել գործս չարեաց[2] բազումս և մեծամեծս. յորմէ փրկեսցէ զմեզ Քրիստոս Աստուած. պահեսցէ ի սուրբ պատուիրանի իւրում, ըստ կամաց իւրոց բարեսիրաց. և ինքն եղիցի օրհնեալ ընդ Հօր և սուրբ Հոգւոյն. յաւիտեանս։

ԾԹ. ՀԱՐՑ. Ապա և բամբասելն չա՞ր է. քանզի և Պաւղոս զբամբասողն և զարբեցողն ասէ խափանեալ յարքայութենէն։

ՊԱՏՍԽ. Այո. քանզի Քրիստոս, ասէ, թէ «Որ ասէ եղբօր իւրում յիմար՝ պարտական է դատաստանի. և որ ասէ եղբօր իւրում մորոս, պարտաւոր է գեհենին»[3]։ Եւ դարձեալ ասէ. «Մի՛ դատեր, զի մի՛ դատեսցիս»[4]. և եթէ, «Կեղծաւոր, հա՛ն նախ զգերանդ յականէ քումմէ, և ապա քննեա[5] հանել զշիւղ յական ընկերի քում»[6]. այս ամենայն յաղագս բամբասանացն ասացաւ։ Եւ Պաւղոս յայտնապէս ասէ, «Ոչ շունք, ոչ գողք, ոչ արբեցողք, և ոչ բամբասողք, զարքայութիւնն երկ-

1. Դ. օր. առնէ։
2. Գ. օր. աստի ցվերջակէտն չունի։
3. Մատթ. Ե. 22։
4. Մատթ. Է, 1։
5. Գ, Դ և Ե օր. դնեն քննեսջիր։
6. Մատթ. Է, 5 և 6. – Գ, Դ և Ե օր. զշիւղ յականէ։

*նից ոչ ժառանգեն »[1]։ Վասն ախտիս այս՝ աւետարանիչք ոչ ասացին զանուն Յուդայի անարգանօք [որպէս սովոր է զայնպիսի այր նախատել][2], թէ Յուդա անօրէնն և նենգաւորն և չարագործն, այլ Յուդա Սկարիովտացին. զի մի՛ բամբասելովն հաղորդ գտանիցին յանցանաց նորա[3]։ Եւ արդ, պարտ է իմանալ, զի մինն չնայ և գողանայ և սպանանէ, և այլ ինչ չարիս գործէ, և միւսն բամբասէ, և առ հասարակ տանջին։ Եւ զիա՞րդ իսկ չար ոչ իցէ, զի զմեղս՝ զոր դու ոչ իցես գործեալ, անձամբ քով՝ ի ձեռն բամբասանացն այնմ պարտական լինիցիս[4]։*

ԾԺ. ՀԱՐՑ[5]. *Ապա յանցանք բաղում իցեն ծածկեալ ի մարդկանէ, պա՞րտ է զամենայնն յայտնել մարդկան, զի թերևս զգուշասցին և ապրեսցին. եթէ ոք ի նեղութեան իցէ և վաճառէ զինչս իւր առատապէս, և որ գնէ, գիտէ թէ առաւելապէս իցէ գին իրացն այն՝ քան զոր խնդրէ վասն հարկի սովոյն, կամ վասն նեղութեանց չարչարանաց մարմնոյն, և յօժարութեամբ առնու և առանց խղճի, զի՞նչ լինիցի այնպիսոյն։*

ՊԱՏՍԽ. *Արդ, ոչ ասեմ զայն միայն՝ որ առատապէս գտանիցէ զվաճառն, [6][այլ թէ և ի փողոցի գտանիցէ], և ծածկեսցէ զնա ի տեառնէ իրացն, դատապարտի։ Այնպէս և որ վասն հարկի նեղութեան մարմնոյն[7] գտանէ զվաճառն, և ոչ խնայէ բարեպաշտաբար, այլ ագահէ անխնայաբար և առնու զվաճառն, և ոչ խնայէ ի տէր իրացն, և զաւելորդն նմա ծախիցէ, այնպէս համարիցի նմա, թէ*

1. Ա. Կորնթ. Զ, 10։
2. Փակագծեալդ յաւելաւ յ'Գ, Դ և Ե օրինակաց։
3. Գ, Դ և Ե օր. լինիցին մեղաց նորա։
4. Գ, Դ և Ե օր. ի ձեռն բամբասանաց ի մասին տանջիս։
5. Գ. օր. Աստի սկսեալ ցՀարցումն ցԾԺԳ չունի։
6. Փակագծեալդ չիք ի Դ և Ե. օր։
7. Ե. օր. աստի սկսեալ ԾԻ Հարցումն պակասի։

եգիտ զայն ի փողոցի յայտնապէս առաջի տեառն իւրոյ, և յափշտակիցէ ի նմանէ, և ոչ եթէ եգիտ, և տէրն իւր ոչ ետես. քանզի բազումք կորուսանեն ինչս բազումս, և քարոզս հռչակեն, և ինչս խոստանան, և բազումք գտանեն զկորուսեալն, և վասն ահի դատաստանին ոչ թագուցանեն՝ այլ յայտնեն ։ Եւ բազումք ի ձեռն ագահութեան կուրանան, և ոչ յայտնեն. իսկ որք ոչ ծածկեն այլ յայտնեն, բազում վարձս առցեն իբր թէ տուեալ զայն յընչից իւրոց ի ձեռս աղքատաց ։ իսկ այն որ ծածկեաց և ոչ յայտնեաց, այնպէս համարեսցի նմա՝ իբր թէ գողացաւ և ծածկեաց, այնպէս և այն, որ զվաճառն առատապէս գտանէ՝ ի պատճառանաց բազում խնայեսցէ[1], այլ առանց խղճի առցէ ։ կամ ոչ լինի վաճառոյն հմուտ՝ վաճառողն, և ախմար[2] և կամ լինի կարօտ իրացն, և ի ձեռն սովուն առատապէս վաճառէ, կամ վասն նեղութեան մարմնոյն, զի ապրեսցի ի տանջանացն. և գնողն գիտէ զգին իրացն ստուգապէս, և ոչ խնայէ, այլ առնու իսկ, խաբող համարեսցի ։ Եւ մեղք յետ ամբարտաւանութեանն, առաջին՝ խաբէութիւնն է, որ խաբեաց օձն զԵւայ ։ Ապա եթէ քաղցեալ իցէ, և վասն հարկի սովոյն առատապէս վաճառեսցէ, և դու ոչ խնայեսցես այլ առնուս առանց խղճի, այնպէս համարեսցիս իբրև զայն որ աղքատին ոչ տայ, այլ և առնու ևս ի նմանէ ։ Եւ քանզի մեծատունն աղքատի ինչ ոչ ետ, բայց և ոչ ա՛ռ ի նմանէ, այնպէս պապակէր ի մէջ հրոյն, մինչ զի կաթի միոյ ջրոյ ծագիւ ճկութանն[3] կարօտանայր. ապա որ առնու յաղքատէն և զրկէ զնա, զի՞նչ արդեւք լինիցի, ո՞չ ապաքէն չարաչար տանջեսցի ։ Այնպէս և այն համարեսցի՝

1. Դ. օր. և ոչ խնայեսցէ ։
2. Դ. օր. ախմար ։
3. Դ. օր. ճկոյթին ։

որ զաղքատն ի վաճառն զրկեսցէ. իսկ այն՝ որ վասն արեան իւրում, և կամ վասն գերութեան վաճառէ առատապէս, և գնողն ոչ խնայէ, այնպէս համարեսցի՝ եթէ զգերեվարեալն[1] զրկեաց ։ Եւ կամ զայն որ ի սպանմանէ երկեաւ, կամ ի տանջանաց, և նա ի սպանանելն յորդորեաց և ի տանջելն ։

ՃԺԱ. ՀԱՐՑ. Եթէ ոք գտանէ ինչս, և քարոզն բողոքէ, և գտողն խորէ, և զկէսն տացէ աղքատաց, օգտի՞ այնպիսին թէ ոչ ։

ՊԱՏՍԽ. Եթէ բողոքն ոչ բողոքէ և զտէր ընչիցն ո՛չ ճանաչիցէ, օգտի եթէ տացէ աղքատաց. իսկ եթէ բողոքն բողոքէ, և զտէր ընչիցն ճանաչիցէ, թէ և զամենայն գտեալն ծախէ ի պէտս կարօտելոց, դատապարտի և ոչ օգտի՝ թէպէտ յափշտակել զինչս մարդոյ, թէպէտ գողանալ ։ Այլ թէպէտ և գտեր, և ո՛չ դարձուցանես անդրէն, այնպէս համարեսցի՝ որպէս զյափշտակեալն. այլ և ի քոց արդար վաստակոց եթէ տայցես՝ ոչինչ օգտեսցիս, եթէ զգտեալն ոչ հատուցանես՝ և զյափըշտակեալն և զրկեալն. թէ և չորեքկին ոչ հատուցանես ըստ Զակքէին, գոնեայ զառեալն թերեւս հատո, և ապա տուր ի քոց վաստակոցն, և ընդունելի լիցի ։

ՃԺԲ. ՀԱՐՑ[2]. Զի՞արդ համարեսցի ողորմութիւն, որ ոչ ունի, կամ այն՝ որ ինչս սակաւ ստացեալ իցէ, կամ այն՝ որ այլ առաւելապէս, կամ որ մեծատուն է, կամ որ բնաւ յոյժ փարթամ է ։

ՊԱՏՍԽ. Պէսպէս իցէ ասել յաղագս այդմիկ ։ Իցեն մեծատունք՝ զի ստացեալ են ինչս բազումս, և զինուորս յաղագս պատերազմաց.[3] արդ, պարտ է վպէտս կենաց զինուորացն պատրաստել, և ա-

1. Դ. օր. ջերբ վարեալն ։
2. Գ և Ե օր. չունիին զայս Հարց. հանդերձ Պատսխ.։
3. Բ. օր. աստի սկսանի և համառօտելով անցանէ ։

պա վայլն առատապէս բաշխել աղքատաց և կարօտելոց. ո՛չ որպէս փարիսեցին՝ որ տասանորդս միայն տայր, այլ առաւելապէս ևս ըստ հրամանի Տեառն, որ ասէ, « Թէ ոչ առաւելուցու արդարութիւնն ձեր աւելի քան զդպրացն և զփարիսեցւոցն, ո՛չ մտանիցէք յարքայութիւնն Աստուծոյ »[1]: իսկ որ փարթամ իցէ, և ոչ է ստացեալ վինուորս և ստորակացս ի պէտս պատերազմաց, այլ ունիցի որդիս և ազգականս, որպէս պահանջէ գութ և բնութիւն մարդկան, պարտ է ածել ի մէջ զամենայն ինչս իւր, և զատել զբաժինս որդւոց իւրոց և ազգականաց, ըստ մարգարէին բանի, որ ասէ, « Եւ յընդանեաց զաւակի քո ընդ ակամբ մի՛ արկաներ »[2]. և զբաժին անձին իւրոյ զատուցանել, և զայլն ամենայն տալ աղքատաց. և մի՛ պահել և չտեմարանել տգահութեամբ զաւելորդս ընչից: իսկ որ չքաւորն իցէ, և միայն տամբ իւրով բաւականասցի, ամ յամէ զոր ինչ և տալ կարասցէ, ընդունելի է. ապա թէ պակասեցուցանէ զիւր զմասնն և տայ աղքատաց, կարի իսկ մեծապէս պսակեսցի: իսկ որ ընաւ չքաւոր է, և յայնմանէ՝ զոր կւրն հնարեսցի ինչ ի պատճառ կենաց՝ և տացէ ա՛ղքի, այնպէս համարեսցի նմա որպէս մեծատանն, որ զբազում ինչս տացէ. քանզի որ տուացեալ բեւր տաղանդ ոսկւոյն, և որ ընտացեալ է փոքս տասն, և բաշխեսցեն զայն աղքատաց, հաւասար համարեսցի առ Աստուած. և զայս յայտ արասցէ երկու լումայն այրւոյն, զոր արկ ի գանձանակն. զի որպէս մեծատունն որ զամենայն ինչս իւր ետ աղքատաց, այնպէս և չքաւորն զիւրն զամենայն: իսկ որ առաւել քան զպէտս իւր ստանայ, և առաւել քան զպէտս որդեաց, արծաթասէր է այնպիսին. և Պաւղոս զար-

1. Մտթ. Ե, 20:
2. Մրգ. Ես. ԾԸ, — Դ. օր. զակն մի՛ արկանիցես:

ծածկատէրն կռապաշտ է ասացեալ, քանզի արմատ և մայր է ամենայն չարեաց. զի ասոր ծնանին զրկութիւն[1], ագահութիւն, անիրաւութիւն, յափշտակութիւն, անողորմութիւն, ատելութիւն։ Քանզի արծաթասէրն ասէ զմեծատունն, ասէ և զաղքատն. զմեծատունն ասէ, զի զամենայն ինչս նորա ցանկայ արկանել ի գանձս իւր. զաղքատն ասէ, զի մի՛ եկեալ խնդրեսցէ ինչ ի նըմանէ. զպտուղն ասէ, զի մի՛ գուցէ քան զոր ինչ եբերն աւելի ևս խնդրեսցէ. զխնդրողն ասէ, զի ամենևին մի՛ պահանջեսցէ ինչ ի նմանէ։ Ծառայ է ընչից իւրոց և ոչ տէր. զի որպէս ի տեառնէ երկնչի ծառայն հուպ լինել նմա, այնպէս և արծաթասէրն յինչս իւր մերձենալ ոչ իշխէ։

ՃԺԳ. ՀԱՐՑ. Եթէ մեռանի ոք և կտակս գրեսցէ, զի զամենայն ինչս իւր տացեն աղքատաց, ունիցի՞ վարձս արծաթասէրն, թէ ոչ։

ՊԱՏՍԽ. Ոչ, որպէս կարծեմ. քանզի այնոքիկ՝[2] որք ի մահիճս մահու անկանին[3], և կտակ գրեսցէ, զի զամենայն ինչս իւր տացեն աղքատաց, պէսպէս իցէ իմանալ զայնպիսեացն։ Եթէ ունիցի ոք երամակս ի ծնունդս, և խաշինս և արջառս, և այլ ինչս որ ժողովի ի վաստակոց, և հանդիպի նմա մեռանել, և սովորութիւն ունէր յայնմ ամենայնէ տալ աղքատաց ի կենդանութեանն իւրում. եթէ ի ժամանակի մահուն կտակ ոչ արասցէ, և ոչ տացեն յետամնացք իւր աղքատաց, զայնպիսոյն՝ եթէ գողք գողանան կամ այլազգիք յափշտակեն, եթէ այլ ոք առնուցու, Աստուած՝ զամենայնն իւր հոգոյն համարեսցի, որպէս թէ ձեռօք իւրօք ետ զայն ի ձեռս աղքատաց։ Վասն զի, թէ լեալ էր ի կենդանութեան, և զայն ևս

1. Բ. օր. զրկողութիւն։
2. Գ և Դ օր. այն որ։
3. Յօր. անդանին, եդաք ըստ Գ և Դ օրինակաց։

յիւրաքանչիւր տարւոջ տուեալ էր կարօտելոց. սակայն որչափ տալոյն իւրով արժանաւորեալ էր պատուոյ և հանգստեան, որչափ աճեսցեն էութիւնք ընչից նորա, եթէ տացեն մնացորդքն եթէ ոչ տայցեն, Աստուած այն չափոյն առաւելապէս պատուեսցէ զնա ի կեանսն յաւիտենից: Ապա եթէ արծաթսիրութեամբն ըմբռնեալ էր, և ոչ ունէր սովորութիւն տալ, թէ և ինքն իսկ ի ժամ մահուն իւր զամենայն ինչս բաշխեսցէ, հազիւ օգտեսցի, թո՛ղ թէ կտակ արասցէ, զի տացեն աղքատաց. զի որ կտակ արասցէ և ձեռօք իւրովք ո՛չ տայցէ, զայն իսկ ածէ զմտաւ, զի թէ ապրեսցի, վայելեսցէ մարմնոյն: Եւ զի հնար ոչ է առնուլ ընդ իւր զայն ամենայն, վասն այնորիկ ասէ զայն տալ աղքատաց. որպէս և Դաւիթ ասէ, «Գանձէ և ո՛չ գիտէ ում ժողովէ. զի ոչ եթէ ի մեռանելն իւրում առցէ ընդ իւր զամենայն»[1]: Եւ արդ, յորժամ զմտաւ ածէ թէ իմ ոչ է, և ընդ իւր՝ հնար ոչ իցէ տանել, և ապա տացէ, զի՞նչ օգտեսցի: Զոր օրինակ, թէ ոք ստացեալ է ինչս բազում, և խնդրէ ոք ի նմանէ զամենայն օր և նա ոչ տայ, և ապա յետոյ մեռանի, և թողու զամենայն ինչս իւր, և ապա եկեալ յափշտակեսցեն զնա՝ բազում՝ խնդրողքն, մի՛թէ բարեբանեսցե՞ն զնա, կամ օրհնեսցե՞ն. ո՛չ: Այնպէս և զայն համարեա:

ԾԺԴ. ՀԱՐՑ. Եւ զի՞արդ ոչ օգտեսցէ՝ յորժամ որդիք նորա և յետամնացք նորա առնեն վասն նորա ողորմութիւն առատապէս և պատարագ:

ՊԱՏՍԽ. Օգուտ իսկ է պատարագ մեղաւորին. զի եթէ արտաքինքն[2] որ ոչ էին հաւատացեալ, ի ձեռն զոհից և արեամբ պատարագացն՝ ակն ունէին հանգիստ գտանել ննջեցելոցն[3], ո՞րչափ եւս

1. Սղմ. ԼԸ, 7:
2. Բ, Գ և Դ օր. ի հնումն:
3. Գ և Դ օր. ննջեցելոյ:

առաւել ի ձեռն որդւոյն Աստուծոյ, որ վասն ամենայն մեղաւորաց զենաւ և մատուցաւ Հօր պատարագ, որ ինքն է, որ մատչի, և ինքն է որ մատուցանի, և ինքն որ ընդունի։ Եւ յորժամ յիշի անդ ննջեցեալն՝ օգտեսցի մեծապէս՝ եթէ ոք բարեպաշտութեամբ մեռանիցի. ապա եթէ մեղօք և ամբարշտութեամբ մեռանի, փակեալ է նմա Աստուած զամենայն փրկութիւն։ Իսկ յաղագս ողորմութեան զոր առնեն նմա, կարծեմ թէ ոչ օգտեսցի ինչ[1]։ Զոր օրինակ, եթէ ոք ստացեալ իցէ ինչս բազումս, և ոչ է տուեալ անտի բնաւ կարօտելոց, և ոչ ընծայս մատուցեալ թագաւորին, և ապա յորժամ մեռանի, մնացորդք նորա ինչս բազումս տացեն թագաւորին և այլ խնդրողացն, ո՞ւմ համարեսցի երախտիսն, երթելո՞յն եթէ տուողին. քաջայայտ է զի տուողին։ Ապա եթէ ոք ոչ իցէ թողեալ ինչս բազումս և մեռանի, և որ յետոյ մնասցէ յընչից իւրոց՝ յաճախապէս տացէ. զոր օրինակ թագաւորն արկանէ զոք ի բանդ վասն մեղաց իրիք[2], և տարեալ ոք ինչս բազումս տացէ թագաւորին, և աղաչէ զթագաւորն, զի արձակեսցէ զնա ի կապանաց բանդին, և նա թերևս լուիցէ նմա։ Ապա թէ զինչսն զայն՝ զոր թագաւորն խնդրեալ է ի նմանէ, և նա ոչ տայ, և վասն այնմիկ արկեալ իցէ զնա ի բանդ, և զայն տացէ, ո՞չ լուիցէ. քանզի ակամայ տայ զոր կամաւ իւրով ոչ ետ։

ԾԺԵ. ՀԱՐՑ. Որոյ սիրտն ողորմած է և գալարի և աղէտն յօրդորէ տալ, և այնպիսին տայ աղքատաց, ընդունելի՞ է. եթէ այն՝ որ սիրտն ոչ է ողոր-

1. Գ. օր. չունի՝ օգտեսցի ինչ. այլ և աստէն աւարտէ զՊտսխ. այսպէս. որդւոյն Աստուծոյ, որ վասն մեղաւորաց զենաւ Հաւր պատարագ. որ ինքն մատչի և ինքն ընդունի. և յորժամ յիշի անդ ննջեցելոյն՝ առաւել մեծապէս. բայց եթէ երկոտասան գործով է մեռեալ, այսինքն՝ կէսն բարի և կէսն ոչ։ Իսկ եթէ ամբարշտութեամբ մեռանի, փակեալ է ընդդէմ նմա ամենայն ողորմութեան Աստուծոյ։

2. Դ. օր. խորոց։

մած, և բնութիւնն կապէ զտալն, և նա յաղթէ զբնութիւնն, և վասն ահի գեհեննին առնէ զողորմութիւնն աղքատաց[1]։

ՊԱՏՍԽ. «Երանի, ասէ, ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն»[2]։ Այլ է որ ի բնութենէ է առաքինութիւնն, և այլ է որ մարտնչի ընդ բնութեանն և յաղթէ. քանզի առաքինութիւնն մարտ խնդրէ, և թէ յաղթէ մարտին, ապա և պսակի։ Ո՛չ եթէ ազարտեմ զայնպիսին որ բնութեամբն ողորմած լինի, զի զայնպիսին բնութիւնն յորդորէ առնել, և առանց ընդդիմամարտութեան յաղթէ պատերազմին. որպէս և յաղագս ներքինեացն ուսուցանեն մեզ բանք սուրբ Աւետարանին. «Են ներքինիք՝ որ յորովայնէ մօր իւրեանց եղեն ներքինիք, և են ներքինիք, որ վասն արքայութեանն Աստուծոյ արարին զանձինս իւրեանց ներքինիս»[3]. մինն ի բնութենէ է, և միւսն բռնադատեալ ի բնութենէն, այնպէս դիմամարտեալ ի բնութենէն՝ յաղթեաց ախտին։ Զոր օրինակ, ցանկայ ոք գեղոյ կնոջ, և նա ընդդէմ կայ ցանկութեանն և յաղթէ, և ոչ կատարէ զգործ չնութեանն, կամ զայլ ինչ ցանկութիւն աշխարհական. այնպէս և որ ցանկայ ընչից և յաղթէ, և զայն տայ աղքատաց։

ԾԺԶ. ՀԱՐՑ. Եթէ ոք տայ ինչ աղքատաց, և նա զտուեալն ընդունիցի, և լնու զկարօտութիւն իւր որ ինչ և իցէ իրս՝ բայց ի կերակրոց, և տուողին պէտս ինչ ոչ իցէ. զի՞նչ համարեսցի այնպիսոյն տուրք։

ՊԱՏՍԽ. Որպէս պատարագն կայենի, որ զանպիտանն և զվտիտն մատուցանէր։ Զոր օրինակ, ի տեղւոջ մի լինիցի նիւթս ինչ բազումս, որ ոչ ի պէտս մարդկան, այնպէս և ի տեղւոջ մի այլ, զի ոչ լինիցի անդ բնաւ՝ և տացէ անդի նմա. և նա որ էառն՝ մեծապէս ուրախանայ ի վերայ նո-

1. Բ. օր. Զայս և զյաջորդսն ծայրաքաղ արարեալ համառօտէ։

2. Մատթ. Ե, 7

3. Յովհ. ԺԹ, 12։

րա, և տուողին ամենևին ո՛չ երևեսցի բնաւ թե-րութիւն, կամ՝ տալն դժուարութիւն։ Որպէս թէ ունիցի ոք որդի խեղ և անդամալոյծ, և կամ բո-րոտ, կամ՝ գոդի, և միւս այլ ոմն որդի գեղե-ցիկ և վայելուչ և արիաբար[1], և երկոքեան մե-ռանիցին։ Արդ, եթէ ի վերայ գեղեցիկ մանկանն համբերեսցէ արիաբար, և դիմամարտի ի գթոյն, և գոհութիւն տայ Աստուծոյ, առանց սգոյ և կո-ծելոյ, պակասեսցի որպէս երանելին Յոբ։ Իսկ այն որ զորդին անդամալոյծ և զգոդի ոչ ապաշաւէ և ոչ լայ և ոչ խռովին աղիք իւր ի վերայ նորա, և գորովն ո՛չ տոչորէ զնա, և վասն այնմիկ ոչ լայ, և ոչ կոծի, մի՛թէ զայն իսկ յաղագս առաքինու-թեանն համարեսցի Աստուած. ոչ։ Այնպէս և զայն համարեա, որ զայն իսկ տացէ աղքատաց՝ որ ի պէտս իւր ինչ ոչ իցէ։

ՃԺԷ. ՀԱՐՑ. Զբազումս տեսաք զի թողին զինչս, և զանդեայս, ոմք զշատ և ոմք զսակաւ, և եր-թեալ կրօնաւորեցան, և բազումք[2] յափշտակեցին զայն. արդ՝ ո՞չ էր լաւագոյն բաշխել զայն աղքա-տաց, քան յաւար տալ[3] այլոց։

ՊԱՏՍԽ. Որպէս ասացի, թէ իրք ինչ[4] որ ոչ իցէ ի պէտս մարդոյ և տայ զայն աղքատաց, ո-ղորմութիւն ո՛չ համարեսցի առաջի Աստուծոյ. այնպէս և զայդ համարեա։ Քանզի այնպիսին եթէ սիրեալ էր զինչս իւր և ի պէտս էր նմա, սակայն ոչ էր թողեալ. և եթէ աղքատաց բաշ-խեալ էր, այնիւ առաւելապէս վարձք ոչ էր ա-ռեալ. այլ այնպիսին եթող զաշխարհս, և զինչս զայս ընդ աշխարհիս, որպէս զշինուածս տանն և զքարինս. այնպէս և զոսկին և զարծաթն, և զայլ ինչս մեծագինս, իբրև զքարինս համարեցաւ. և

1. Բ. օր. արէ։
2. Գ. օր. այլք։
3. Բ. օր. առնէր ճաշակել. իսկ Գ. օր. տան այլոց ճաշակել։
4. Գ. օր. չէ այն իրէն։

զքարինս տալ աղքատաց, զի՞նչ վարձք իցէ։ Իսկ այնպիսին լաւ համարեցաւ վասն Քրիստոսի աղքատանալ քան զաղքատս կերակրել։

ՃԺԸ. ՀԱՐՑ.[1] Իսկ որք զինչս ոչ թողին, այլ առեալ զկէսն ետուն աղքատաց, և զկէսն առեալ ետուն ի վանս հռչակաւորս, և անդ կրօնաւորեցան, այնպիսեացն զի՞նչ իցէ պարգեւն։

ՊԱՏԱՍԽ. Զոր օրինակ, թագաւորք ոչ եթէ զինուորօք պատերազմողականօք միայն բաւականասցին՝ զի յաղթեսցեն ի մարտին, այլ իցեն ոմանք և վերակացուք քաղաքաց, ոմանք ժողովրդեան, ոմանք ի վերայ սպասաւորութեան, ոմանք ի վերայ գանձուց, ոմանք ի վերայ ընչից, ոմանք ի վերայ երամակաց, և այլք բազումք ի վերայ բազում իրաց, և ամենեքեան վասն հաւատարիմ լինելոյ՝ պատուին ի թագաւորէն. այնպէս և որք կամեցան առաքինութեամբ ծառայել զԱստուած. ոմանք արհամարհեցին զաշխարհս և որ ինչ յաշխարհիս, ի նոցանէ Աստուած ողորմութիւն ոչ պահանջէ. իսկ ոմանք սիրեցին զաշխարհս և առատապէս ողորմութեամբ առաքինիք երեւեցան, աստէն վայելեցին կենօքս այս, և անդ զյաւիտենականն ընկալցին, որպէս երանելի նախահարքն Յոբ, Աբրահամ, Դաւիթ և այլ թագաւորք. և ոմանք ըստ բանին տէրունական, որպէս ասաց ցՊետրոս. «Եթէ սիրես զիս, արածեա զխաշինս իմ»[2]։ Որք սիրեցին ստանալ վանս, և ժողովել եղբարս, և աճեցուցանել այնու զքանքարն, և ժողովեալքն վայելեն ճգնութեամբ զկեանսն յաւիտենից։ Եւ առանց արդեանց ոչ է հնար ստանալ վանք և կերակրել զեղբարսն։ Պարտ է անդ ամենայն իրաց պէտս լինել, ոսկոյ և ամենայն ընչից. զի վաճառեալ ծախեսցեն ի պէտս կենդա-

1. Գ. օր. չունի զայս Հարց. հանդերձ Պատասխ.։ .
2. Յովհ. ԻԱ, 16։

նութեան մարմնոյ և ոչ եթէ այն՝ որ թողու ըզ-բաղանս աշխարհիս, և զկէս ընչիցն տացէ կա-րօտելոց, և զկէսն ի պէտս վանաց՝ առաքինի լինի. այլ և ամենայն ոք որ իյեն յաշխարհիս, և տա-ցեն ինչս բազումս ի պէտս վանաց, վարձս բա-զումս առցեն յԱստուծոյ։

ՃԺԹ. ՀԱՐՑ. Զի՞նչ իցէ լաւագոյն, աղքատի՞ն տալ, եթէ քահանայից և վանաց։

ՊԱՏԱՍԽ. Զի թէ Քրիստոս զաղքատն եղբայր իւր անուանեաց, և զքահանայն աթոռակից, իսկ յորժամ ընչեղն յօժարի ծախել զինչս իւր, և տալ աղքատաց, չէ պարտ ապա և զքահանայն անտես առնել։ Եւ յորժամ քահանային տացէ, չէ պարտ և զաղքատօքն զանց առնել։ իսկ եթէ երկոցունցն չէ բաւական ի տալն, ապա լաւագոյն է աղքատին տալ. զի եթէ զաղքատն բազումք կերակրեն, և զքահանայս անտես արասցեն ասե-լով, ոչ են քահանայք կարօտք կերակրոյ[1], զի սո-վորութիւն է մարդոյ առաւելապէս պատուել զքա-հանայն քան զաղքատն[2]. Նա իսկ թէ զաղքատն կերակրեսցէ և զքահանայն ո՛չ, այլ համարեսցի և պատիւ քահանային հաւասար կերակրելոյ աղ-քատին։

ՃԻ. ՀԱՐՑ. [3] Արդ, լա՞ւ է աբեղայ լինել թէ ընդ ամուսնոյ բնակել, և առնել գործս բարիս։

1. Գ. օր. չունի՝ զի եթէ զաղքատն բազումք կերակրեն, և զքահանայս անտես արասցեն ասելով ոչ են քահանայք կարօտ կերա-կրոյ։

2. Գ. օր. աստէն աւարտէ զբանն այսպէս. և նոքա ոչ կա-րօտքն կերակրոյ։

3. Գ. օր. այսպէս ունի. Հարց. Արդ լա՞ւ է աբեղայ լի-նել, թէ ընդ ամուսին բնակել և բարիս գործել։ Պատասխ. Բա-զում է զանազան առաքինութի. և [illegible] [illegible] կրօնաւորս, զի բազմապէս [illegible] չնաշխարհան [illegible]։ Են ոմանք աշխարհականք որ ունին ամուսին և որդիս [illegible] չնան. և են ոմանք զի ամուսնով խա-[illegible] [illegible], և [illegible] թէ ոչ են ամուսնացեալ՝ այնպէս [illegible] զկեանս իւրեանց և յաղթեն այնիս առաքինոյ։ Իսկ ամուսնացե-

**ՊԱՏՃԱՌ**. *Բազում ինչ է պէտս այդմիկ իրաց տալ*[1]*։ Արդ, բազում է պատերազմ սատանայի ընդ ազգս մարդկան, և առաւելապէս ընդ Ջոկս կրօնաւորաց*[2]*. և առաւելապէս ախտիւ շնութեան մարտընչի ընդ բազումս. և իցեն ոմանք աշխարհականք՝ զի ամուսնիւ են, և դեռ ևս առաւելապէս շնայցեն. և են ոմանք՝ զի բաւական լինին ամուսնիւ և սուրբ պահեն զանկողինս իւրեանց. և են ոմանք՝ զի ոչ ամուսնանան, և այնպէս վարեն զկեանս իւրեանց, իբրև թէ ամուսնացեալք իցեն. մանաւանդ թէ այլ ևս վատթարագոյն և անկարգ վարուք, և այնպէս յաղթեալ գտանին ի սատանայէ, յաղագս անառակութեան իւրեանց։ Իսկ որք ամուսնացեալք իցեն, հնար է ապրել ի մարտից յայսցանէ, և եթէ այլ ինչ առաքինութիւն ստացեալ իցէ՝ այնու վայելեսցէ զկեանսն յաւիտենից։ Իսկ որ կրօնաւոր լինի, և զամենայն առաքինութիւնս գործեսցէ, և այնու ախտիւ պարտի*[3] *և սխալէ, յաղթեցաւ ի սատանայէ։ Եւ այլ բազում ինչ իցէ լուծ կրօնաւորաց քան զաշխարհականաց. զի աշխարհականք առանց լծոյ կրօնաւորաց, կարողանան վայելել զկեանսն յաւիտենից. բայց կրօնաւորն՝ եթէ աշխարհական գործով զբաղեսցի, և ոչ կայ ի կարգի սահմանադրութեան սրբոց հարցն՝ զոր մեզն աւանդեցին, ապա յայտ է թէ դատապարտեսցի։*

լոյն հնար է ապրել ի մարտից սատանայի, և թէ այլ առաքինութեամբ զարդարեալ է, ժառանգէ զկեանս անանց. իսկ լուծ կրօնաւորացն բազում է քան զաշխարհականաց. զի աշխարհականք առանց ծանր լծոյ կարեն վայելել զարքայութիւնն. իսկ կրօնաւորն եթէ զլուծ կրօնաւորութեան ոչ տանի, դատապարտի, և եթէ տանի ստանալ պսակ։

1. Դ. օր. տացեալ։
2. Դ. օր չունի, առաւելապէս ընդ Ջոկս կրօնաւորաց։
3. Ե. օր. պարտէ։

*Են ոմանք զի[1] յորժամ տեսանիցեն զայր ոք[2] զի իցէ առաքինի և բարեգործ, ապաստան լինելով[3] յառաքինութիւնն յայն, և ապա[4] յորդորեն զնա լինել արեղայ. և յորժամ[5] լինիցի, ոչ կարէ կրել զկարգ կրօնաւորութեանն, և այնու յառաջին փառացն անկանիցի և դատապարտեսցի ի դատաստան աՀաւոր: Զոր օրինակ, իշավար ոք յորժամ տեսանիցէ զէշ իւր՝ զի բարձեալ տանիցի տասն արդեան[6] ցորենոյ, և վազէ երագ-երագ. և նա[7] վստաՀացեալ ի զօրութիւն իշոյն՝ յաւելադրէ ի բեռն նորա, և նա ոչ զօրէ[8] տանել զամենայնն, այլ կտրեալ ընդ մէջն Հատանի, այնպիսին[9] երախտիս գաղանաց (ոչ) գործեաց, և ի Տեառնէ իւրում[10] անարգեսցի. այնպէս և այն՝ որ զառաքինի ոք ապաստանեալ յառաքինութիւն նորա՝[11] յորդորէ զնա լինել արեղայ. և յորժամ ոչ զօրէ կրել զկարգ արեղայութեանն, նա փառաց և պատուոյ կրօնաւորութեանն ոչ Հասանէ, և յառաջին փառացն կործանի, զոր առաքինութեամբն իւրով վայելելոց էր: Եւ ընդէ՞ր, ասէ, զառաջին առաքինութիւնն կորուսանէ: Լո՛ւր, ասէ, եթէ Հարցանես, և յառակէ յայսմանէ Հաւան արարից զքեզ: Զոր օրինակ, լինիցին թագաւորի սպասաւորք բազումք՝ ի պէսպէս սպասաւորութեան[12]. իցեն ոմանք ի փառս մեծագոյնս, և կան Հանապազ*

1. Ե. օր. որ:
2. Ե. օր. զնէ զոք. իսկ Դ. օր. զայլոք:
3. Ե. օր. ապաստանեալ:
4. Ե. օր. չունի և ապա:
5. Ե. օր. երբ:
6. Ե. օր. զէշ էր որ կարէ տանել տասն արդաս: Դ. օր. մար:
7. Ե. օր. յայնժամ:
8. Ե. օր. չկարէ:
9. Ե. օր. այնպիսի էշավարն:
10. Ե. օր. իւրոյն:
11. Ե. օր. չունի ապաստանեալ յառաքինութիւնն նորա:
12. Ե. օր. զնէ է զանազան գործս:

առաջին թագաւորին. լիցին և այլք ոմանք[1] ցածագոյն, և որ ըստ օրէ ապա տեսանիցեն զթագաւորն, և այլք այլ[2] խոնարհագոյն՝[3] յամին միանգամ[4] միայն տեսանիցեն զարքայն. և կէսք ի տարւոջն միայն տեսանիցեն. այլ ի վերայ ամենեցուն հաւասար սփռեալ է ողորմութիւն թագաւորին, և վայելեն զկեանս իւրեանց ուրախութեամբ։ Իսկ եթէ ոք յայնցանէ՝ ոչ հաւանեսցի ցածագոյն փառացն այնմիկ և վայելմանն, այլ ցանկայ ընդ մեծամեծս դասաւորել, և հանապազ լինել առաջի թագաւորին, և երթեալ յանձն առնու, զի մեծագոյն ծառայութիւն արասցէ նմա, և խոստանայ մեծամեծ չահս բերել թագաւորին[5], և ապա սկսեալ և ոչ կարասցէ կատարել զպատաւորութիւնն[6] զայն, և բարկացեալ թագաւորն աքսորեալ կործանեսցէ զնա[7]. ահա յառաջին փառացն անկաւ, և յետին փառացն ոչ հասաւ[8]։

ԾԻԱ. ՀԱՐՑ. Ընդէ՞ր ապա ասաց Քրիստոս. եթէ, «Որ ոչ թողու զհայր իւր և զմայր իւր, զկին և զագարակ, չէ ինձ արժանի»[9]։

ՊԱՏՍԽ. [10]Քրիստոս ասաց, եթէ՝ «Զոր Աստուած զուգեաց մարդ՝ մի՛ մեկնեսցէ»[11]։ Ո՛չ այդպէս ասացեալ է, զի իւրաքանչիւր ոք վայրապար թողուցու զկին իւր, զհայր և զմայր և զորդիս. զի եթէ այդպէս իցէ թողուլն՝ որպէս դուք կարծես, ապա բազումք թողին զհայր և զմայր, և

1. Ե. օր. ցածոյք։
2. Ե. օր. են և այլք։
3. Ե. օր. յաւելու ոք։
4. Ցօր. պակասէր միանգամ, եդաք ըստ Ե. օր։
5. Ե. օր. և խոստանայ կատարել զպաշտօնն ծանր։
6. Ե. օր. դնէ՝ զպաշտօնն։
7. Ե. օր. աքսորէ զնա։
8. Ե. օր. ոչ եհաս։
9. Մատթ. ԺԹ, 29։
10. Բ և Գ. օր. համառօտելով անցանեն։
11. Մատթ. ԺԹ, 6։

գնացյին ի պէսպէս գործս. Թէ այսպէս էր Թողուլն՝ որպէս դու կարծես, ապա զկինն միայն էր ասացեալ, և ոչ զհայր և զմայր և զորդի. այլ ո՛չ է այդպէս, այլ որպէս ասէ Քրիստոս, «Որ կորուսանէ զանձն իւր եգիտ զնա, և որ գտանէ զանձն իւր՝ կորոյս զնա»[1]: Արդ, ո՞վ կորուսանէ զանձն իւր, կամ՝ ո՞ որ ոչ գտանէ. կամ՝ զի՞արդ հնա՞ր է ումեք զանձն իւր կորուսանել, կամ զի՞արդ հնար է ոչ գտանել, զոր հանապազ ընդ իւր ունի ամենայն մարդ: Այլ կորուսանելն այսպէս իցէ. զի որպէս Թէ ոչ է ստացեալ մարմին, այնպէս հոգս արասցէ անձին իւրում[2], և առաւել սիրեսցէ զգործս Աստուծոյ և զգործս հոգւոյ իւրոյ, քան զգործս մարմնոյ իւրոյ: Այնպէս և այն որ ասէ, «ԵԹէ ոչ Թողու զհայր իւր և զմայր, և զկին և զագարակ, ոչ է ինձ արժանի[3]»: Այսպէս ասէ. մի՛ այնպէս սիրեսցես զկին քո, զի[4] զամենայն ինչս նմա տայցես, և Քրիստոսի ոչ. կամ սիրել առաւելապէս զմայր և զհայր, քան զՔրիստոս, որպէս և ինքն ասէ Թէ՝ «Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս, չէ ինձ արժանի[5]»: Ո՞չ ապաքէն ասէ գիր, «Սիրեա զհայր քո և զմայր[6]». և աստ ասէ ԵԹէ, Թո՛ղ զհայր քո և զմայր. անդ ասէ. «Զոր Աստուած զուգեաց, մարդ մի՛ մեկնեսցէ[7]». և աստ՝ Թողուլ, ասէ: Զի՞նչ իցէ ապա ասացեալս. ո՛չ ԵԹէ ուրանալ և ատել, այլ և ոչ զամենայն ինչ առ նոսա հաւաքել և զինչս, և զՔրիստոս անտես առնել, և այնպէս ոչ բաժանել զոր Աստուած զուգաւորեաց[8]. այլ և ոչ Թողուլ

1. Մատթ. ԺԸ, 39:
2. Ե. օր. ոչ է ստացեալ մարմնապէս հոգս յանձին իւրում:
3. Մատթ. ԺԹ. 29:
4. Ե. օր. զինչ չէ:
5. Մատթ. Ժ. 36, 37:
6. Ելք, Ի. 3:
7. Մատթ. ԺԹ, 6:
8. Դ. օր. զուգեաց, յոր յաւելու՝ Ե. օր. մարդ մի՛ մեկնեսցէ:

զպատուիրանս Տեառն, և կապիլ ընաւ ընդ ամուսինն[1]։

Իսկ եթէ կրօնաւորաց միայն է պատրաստեալ արքայութիւնն երկնից, և կանամբեաց ոչ, ապա սուղ[2] իցեն վայելողք նորա. ո՞չ ապաքէն նահապետքն ամենայն՝ կանամբիք էին, Մովսէս, Դաւիթ և այլ ամենայն մարգարէքն. և դարձեալ, Ենովք, Նոյ և առաքեալքն։ Այլ ոչ իցէ այդպէս. այլ վկայութեամբ սուրբ գրոց և հրամանաւ առաջնորդաց՝ արժան է առնել զամենայն կամսն Աստուծոյ։ Այլ կրօնաւորաց լուծն ծանրագոյն է, զի մեռուցանել պարտ է նոցա զցանկութիւն մարմնոյ, ոչ եթէ զի ոչ ուտիցեն և ոչ ըմպեսցեն[3], այլ զոր օրինակ մեռեալն եթէ անարգես զնա՝ ո՛չ վշտանայ, եթէ բամբասես սուտ ոչ խօսի և ոչ դժուարանայ, եթէ հարկանես՝ ո՛չ դարձուցանէ զերեսս իւր, եթէ պատուես՝ ո՛չ հպարտանայ՝ եթէ տեսանէ գեղ երեսաց, ո՛չ ցանկայ, եթէ ապտակես՝ ընդդէմ ոչ դառնայ, և ոչ ոխս պահեսցէ, եթէ մեծարես՝ ոչ փքանայ։ Քանզի կրօնաւոր որ սաստ պատուոյ ցանկանայցէ յանանց և յանվախճան բարեացն զրկեսցի։ Եւ զի՞նչ ասասցից ցանկալ պատուոյ.[4] Թէ բռնութեամբ հարկեն ի պատուել, պարտ է հրաժարել. զի յորժամ յայսմ պատուոյ հրաժարեսցես, անանց և անապատ պատուոյն այն և փառացն հասանիցես[5]։ Այսպիսի[6] է լուծ կրօնաւորաց. մի՛ խըն-

1. Գ. օր. Մինչև ցայս վայր ունի զՊատասխ։

2. Դ. օր, շատ, իսկ Ե. օր. չունի՝ ապա սուղ իցեն վայելողք նորա։

3. Ե. օր. չունի և ոչ ըմպիցեն։

4. Ե. օր. յաւելու այլ։

5. Դ. օր. զի յորժամ այսմ պատուոյ (Ե. օր. այս փառաց) ոչ ցանկայ, անանց և անապատ պատուոյն այն և փառացն հասանիցէ։

6. Դ. օր. այնպէս։

դրեր փառս ի մարդկանէ. մի՛ ցանկար ոսկւոյ և մի՛ արծաթոյ. մի՛ նախանձ չար ունել[1] ընդ ումեք. մի՛ առանար ատացուած ինչ, մի՛ ձի, մի՛ ջորի և մի՛ ինչս մեծագինս։ Եթէ ատեասցեն ըզ-քեզ, չնացար, խոստովանեա, և ասա, այո. և մի՛ երդնուցուս որչափ և սուտ ասեն. թէ ասեն՝ սպաներ, այնպէս յանձին կալ. զամենայն զոր ինչ և ասասցեն չար[2], ոչ է պարտ հրաժարել, այլ խոստովանել. եթէ հարկանեն[3], հաւանեա, և այլն ամենայն որ ինչ ի կարգին է, զոր Տէրն հրամայեաց։

Իսկ աշխարհական որք զայս ամենայն ոչ արասցէ. այլ պարտ է ստանալ նմա ձիս և ջորիս, ոսկի և արծաթ, զի վարեսցէ ի պէտս հեծելոց[4] և արասցէ պատերազմ։ Այլ ի պէտս սպասաւորաց իւրոց պարտ է գնալ ի հանդէսս, պարտ է նըստել նախագահ, զի անհնարին է թագաւորի կամ իշխանի կամ դատաւորի կամ մատակարարի ցածագոյն[7] նստել, կամ տանուտեառն կամ այլ որք յայդպիսեացդ[5]։ Իսկ յայսպիսեաց աստի զոր թուեցաք, եթէ ոչ շնայ, ոչ սպանանէ, ոչ գրկէ, ոչ սուտ վկայէ, ոչ արբենայ, ոչ ագահէ, ոչ նախանձի ընդ ընկերին, և ոխս ոչ պահէ, ըզ-սնափառութիւն և զհպարտութիւն յանձնէ ի բաց ձգէ, և որպէս պարտ է ողորմութիւն գործեսցէ. նա աստէն վայելէ կենցաղս այսուիկ, և անդ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ։ Մինթէ կարիցես ասել[6], թէ թագաւորն կոստանդիանոս

1. Ե. օր. ունիցիս։
2. Դ և Ե. օր. չունիցին, զամենայն զոր ինչ և ասասցեն չար։
3. Ե. օր. հարկանելով հարկանեն։
4. Ե. օր. հեծելոյ։
5. Դ. օր. վերաբերոյն. իսկ Ե. օր. զի ոչ է յարմար ասելն վեհագոյն նստել, այսինքն՝ Թագաւորի կամ իշխանի կամ մատակարարի և այլոց այսպիսեաց։
6. Ե. օր. Մի՞նե կարէ՞ ոք ասել։

ոչ ունէր ձիս և ջորիս և ոչ գանձս բազումս։ Ոչ եթէ պղնձի գօտի միայն ստացեալ էր, այլ թագաւ[1] ոսկւով և պայծառագունով զարդարեալ և ակամբք պատուականօք եդեալ ի գլուխ իւրում. նա և զբազումս խրատէր[2] նստեալ բարձրագահ պճնելովք, և բեւրք բեւրաց առաջի նորա երկիր պագանէին, և հազարք հազարաց պաշտէին զնա. և աստ՝ զթագաւորութիւնս անցաւորս փայլեաց, և անդ՝ զանանց թագաւորութիւնն. այնպէս և թագաւորն Թէոդոս և այլք բազումք։ Եւ թէ զիա՞րդ, լո՛ւր։ Առատապէս ողորմութիւն արարին[3]. եթէ ոք մեղանչէր նոցա, անտես առնէին. և եթէ այլոց մեղանչէին, մեծապէս վրէժ խնդրէին. զոք ի մարդկանէ ո՛չ զրկէին, հեզութիւն և խոնարհութիւն ստացեալ ունէին, զաղօթս և զպահս ո՛չ անտես առնէին. ո՛չ արբենային, ո՛չ շնային, ո՛չ նախանձէին ընչից մեծամեծաց. զքահանայս սիրէին, զեկեղեցիս պատուէին, մեղանչականին բարի գործէին։ Եղեւ երբեմն զի առաքեաց Թէոդոս[4] թագաւորն, բարեպաշտն այն[5] զօրինակ պատկերի իւրոյ ի Թեսաղոնիկեցիսն[6], զի երկիր պագանիցեն նմա. և նոքա ժողովեալ՝ քարկոծ արարին զպատկերն զայն։ Եւ եկեալ պատմեցին արքային, և այլ եւս բանս ինչ չարախօսէին[7] զսոցանէ, որպէս սովորութիւն է խօսել այնպիսեացն[8], զի զայրացուցանիցեն զթագաւորն ի վերայ նոցա։ իսկ նա ձեռօք իւրովք

1. Դ. օր. Թագս, իսկ Ե. օր. ունի Թագին պայծառապէս զարդարեալ էր։
2. Ե. օր. չունի Նա և զբազումս խրատէր։
3. Դ. օր. զի ողորմութիւն բազում արարին։
4. Յօր. էր՝ Կոստանդիանոս, եդաք ըստ Դ և Ե. օր։
5. Դ և Ե. օր. բարեպաշտութեան։
6. Ե. օր. Թեսաղոնիկէ։
7. Ե. օր. չարախօսին պատմեցին։
8. Ե. օր. չարախօսացն։

շօշափէր զճակատ իւր և զերեսս[1], և ասէր. ո՛չ գը-տանեմ աստ մխիթարութիւն ինչ.. և զի՞ ասէք, թէ հարին քարամբք զպատկերս քո[2]։ Եւ այնպիսի առաքինութեամբ վարեալ զթագաւորութիւնն իւր, զամենայն աւուրս կենաց իւրոց, և զարքայութիւնն երկնից վայելեսցէ[3] ընդ ամենայն սուրբս ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է օրհնեալ յաւիտեանս։

ՃԻԲ. ՀԱՐՑ. Զի՞րդ ասէ, Քրիստոս, թէ «Դիւ-րին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել[4] քան մեծատանն յարքայութիւնն երկնից մտանել»[5]։

ՊԱՏԱՍԽ. Որպէս[6] իմացաք և ստուգեցաք ի զօ-րութենէ գրոց, զի առ ի Նախանձ[7] մարդկան ա-սացեալ է զայդ Քրիստոս. զոր օրինակ, եդեալ լինի առաջի աչաց իւրս ինչ սքանչելիս[8], և ասասցէ թագաւորն. եթէ ոք զայդ իրսդ կարասցէ առ-նել[9], նա է այր սքանչելի, և նա է ժառանգելոց զթագաւորութիւնս իմ։ Բայց անհնարին է ումեք գործել զայդ. և որք լսեն իւրաքանչիւր ոք ջանս դիցէ առնել զիրսն և հասանեն[10] պատուոյն։ Այն-պէս և Քրիստոս զայդ վասն այդորիկ ասաց, զի այդպէս Նախանձ բարւոյն[11] ի մէջ անկանիցի, և

1. Ե. օր. չունի և զերեսս։
2. Ե. օր. չունի և զի՞ ասէք. զպատկերս քո։
3. Ե. օր. ժառանգեսցէ. Դ. օր. չունի ընդ ամենայն սուրբս։
4. Գ. և Դ. օր. մտանել։
5. Մրկ. Ժ. 25։
6. Գ և Դ. օր. Զոր ասէքդ։
7. Գ և Դ. օր. առ Նախանձու։
8. Գ և Դ. օր չունին առաջի աչաց. և դնեն զոր օրինակ եդեալ ասէ իրս ինչ սքանչելիս անուանեալս. այսպէս է և Ե. օր. բայց չունի սքանչելիս։
9. Գ. Դ և Ե. օր. առնել։
10. Ե. օր. հասանել. իսկ Գ. օր. դնէ այսպէս. և որք լսեն՝ ջանան և փոյթ ի վերայ փութոյ դնեն, և գործեն զայն և հասանեն պատուոյն։
11. Գ. Դ և Ե օր. չունին բարւոյն։

ամենայն մարդ ջանս դիցէ առնել զբարիս ։ Ապա թէ ոչ՝ մի՛ թէ ո՞չ գիտէր, զի բազում[1] մեծատունք ժառանգելոց են զարքայութիւնն երկնից ։ Նաև[2] յառաջագոյն Աբրահամ, Իսահակ, Յակոբ, Յովսէփ, Դաւիթ և այլ բազումք. բայց զայս վասն այնորիկ է ասացեալ՝ զի զարմանալի և սքանչելի է[3], յորժամ մեծատունն գործ ինչ բարի վասն արքայութեանն առնէ[4], որպէս մալուխ ընդ ծակ ասղան անցանէ[5], որպէս այլուր ասէ. «Նեղ և անձուկ է ճանապարհն, որ տանի յարքայութիւնն երկնից[6]» ։ Արդ, այսպէս նեղութեամբ և չափ մաշելով մալխին[7], և ապա կարասցէ անցանել[8] ընդ ծակ ասղանն[9]. և այսպէս կարի[10] նեղութեամբ պա՛րտ է մեզ մտանել յարքայութիւնն երկնից ։

ԾԻԳ. ՀԱՐՑ. Եւ ապա յորժամ այսպէս դժուարագոյն է մեծատանն մտանել յարքայութիւն երկնից, ընդէ՞ր ասեն եթէ հարստութիւնն իցէ[11] ։

ՊԱՏԱՍԽ. Ամենայն հարստութիւն ոչ է յԱստուծոյ, ում կամի[12] Աստուած հարստութիւն տայ. և այն[13] սէր է Աստուծոյ և հաստուցումն առաքինութեան. բազումք ի հաւատացելոց խորհին ի

1. Գ. Դ և Ե. օր. տանջի՞ գիտէր թէ բազում։
2. Գ. օր. զնէ որպէս. իսկ Դ և Ե. օր. Նախ։
3. Գ և Դ. օր. յաւելուն յոյժ. Գ. օր. չունի և սքանչելի։
4. Գ. օր. գործէ արքայութեան արասցէ։
5. Գ և Դ. օր. եթէ թէ ընդ ծակ ասղան մալխոյ մտանել, այնպէս զարմանալի է յոյժ։
6. Մատթ. Է, 14. իսկ Գ, Դ և Ե. օր. տանի ի կեանս։
7. Գ, Դ և Ե. օր. և չափ պարտ է մաշել մալխոյն։
8. Դ. օր. անցանէ։
9. Գ. օր. ասա աւարտէ զբանն։
10. Դ և Ե. օր. չունին կարի։
11. Գ. օր. Եղբ (Դ. օր. Եւ ապա յորժամ. իսկ Ե օր. Եթէ) այսպէս դժուարա մտանէ մեծատունն յարքայութիւն երկնից, ընդէ՞ր ասեն թէ մեծութիւն Ե. օր. հարստութիւն) յԱստուծոյ է։
12. Ց օր. պակասէր կամի, եդաք ըստ Գ, Դ և Ե օր։
13. Ց օր. պակասէր և այն, եդաք ըստ Գ. Դ և Ե օր։

սիրտս իւրեանց, և արասցեն ողորմութիւն ի պահս և յաղօթս[1], և այլ ինչ առաքինութիւնս արասցեն, զի տացէ նոցա Աստուած հարստութիւն և մեծութիւն[2]. և Աստուած ըստ խնդրուածոց[3] նոցա տացէ նոցա, զի զխնդրուածս[4] նոցա անտես ոչ արասցէ, որպէս մարդասէր[5]։ Են ոմանք զի բազում մեզք լի իցեն և սիրեն զաշխարհս, բայց ունիցին յինքեանս գործ ինչ բարիս, և վասն այնորիկ տացէ նոցա հարստութիւն ի կեանս յայս, զի անդ զտանջանս ընդունեցին։ Լինիցին դարձեալ և այլք ոմանք առաքինիք, հեզք և խոնարհք և աստուածասէրք և բարի բնութիւն, որպէս և Քրիստոս ասէ. «Խնդրեցէք նախ զարքայութիւնն Աստուծոյ և զարդարութիւն նորա, և այդ ամենայն յաւելցի ձեզ»[6]։ Քանզի յորժամ այնպիսի լինիցի, խնդան և ուրախանան ի լնուլ զպէտս կարօտելոց. և զարդարեալ իցեն հիւրասիրութեամբ, և խոնարհութեամբ և հեզութեամբ, որպէս երանելի նահապետքն Յոբ և Աբրահամ, և այլ նմանիք նոցին. այնպիսեացն Աստուած տայ զհարստութիւնն։ իսկ եթէ ոք չնացող իցէ, ագահ՝ որ է կռապաշտ, և արծաթասէր և ամբարտաւան և բարձրամիտ, որ է չարագոյն քան զամենայն մեղս, և լցեալ լինին չտեմարանք նոցա ամենայն պիտոյիւք մարմնոյ. և դու ասես[7], թէ Աստուած տայ այնպիսեացն զհարստութիւն. ապա գիտեմք զբազումս, զի թողին զԱստուած և պաշտեցին զգործս ձեռաց իւրեանց և զայլ ինչ արարածս

1. Գ և Դ. օր. պահս և աղօթս։
2. Գ և Դ. օր. չունին մեծութիւն։
3. Դ. օր. խնդրոյս։
4. Ե. օր. զխնդրէրս։
5. Ե. օր. զի մարդասէր է։
6. Մատթ. Զ, 33։
7. Դ և Ե. օր. լսես։

վաստակարագոյնս[1]։ Բայց ո՛չ ամենայն հարստութիւն յԱստուծոյ է և ոչ ամենայն աղքատութիւն. այլ ոմանց ի տանց հայրենեաց, ոմանց ի զրկանաց, ոմանց ի յափշտակութենէ և ոմանց յանդուլ և յանդադար վաստակոց, և ոմանք ջանս բազումս դիցեն տոկոսիւ և վաշխառու[2], և այնպէս հարստանան։ Եւ դու համարձակիս ասել թէ Աստուած ետ նմա զհարստութիւնն, և զԱբրահամ, զՅովսէփ և զԴաւիթ ի ներքս բերես օրինակ. արդ՝ տո՛ւր ինձ զոք լինել իբրեւ զԱբրահամ՝ հիւրասէր և աստուածասէր, և ապա զհարստութիւն այնպիսոյն յԱստուծոյ ասասցես լինել. և զԱստուծոյ ասասցես՝ որպէս թէ գարշի յաղքատէ անտի՝ և ոչ տայ նմա հարստութիւն, կամ ակն առնու ի մեծատանէն և նմա տայ։ Քանզի բազում արդարք տեսանեմք ի մէջ քաղաքի՝[3] աղքատ, և բազում մեղաւորք, և[4] մեծատունք. ապա թէ յԱստուծոյ էր և Աստուած զհարստութիւնն փոխարէն արդարութեան նոցա տայր, ապա պարտ է արդարոցն ամենայնի մեծատուն լինել, և մեղաւորաց ամենայնի աղքատանալ։ Բայց զի՛նչ Աստուած հասարակաց տուեալ է, մեծատանց և աղքատաց, մեղաւորաց և արդարոց. զի արեգակն և լուսին, անձրեւ, որ հաւասար ամենեցուն ծագէ, [5]և ամենեցուն ածէ և տեղայ։

ՃԻԳ. ՀԱՐՑ. Վասն է՞ր այլազգիք լինիցին ի հարստութեան և ի բարեկենդանութեան[6], և մեք հաւատացեալքս ի Քրիստոս՝ բազում անգամ ի հալածանս և յաղքատութիւն։

1. Գ. օր. աղա քեռեմ չքաղաքամն՝ որ շատիս և չհօսղ և ըշշուան և շայլ քաղանս պաշտօնեցին և հարստացք էին։
2. Գ, Դ և Ե օր. վաճառօք։
3. Դ և Ե. օր. քաղաքաց։
4. Ե. օր. չիք են։
5. Ե. օր. և տեղւոյ որպէս սոսոց իւիք։
6. Դ և Ե օր. չունին՝ և ի բարեկենդանութեան։

ԴԱՏՍՆ. Որք աստուածապաշտ կարծեն զխնքեանս և զՈրդի ոչ ճանաչեն, որպէս Հագարացիք և իսմայելացիքն[1], զոր Աստուած միանգամ օրհնեաց, որպէս լուաք ի գրոց. Աստուած զԱբրահամ և զայլ նահապետսն՝ մարմնական օրհնութեամբ օրհնեաց, այսպէս ասելով ցԱբրահամ. «Բազմութեամբ բազմացուցանեմ[2] զզաւակ քո, իբրև զաստեղս երկնից»[3], որ զսուրբսն և զընտրեալսն նշանակէ. «և իբրև զաւազ առ եզր ծովու»[4], զանհաւատսն և զանսուրբսն գուշակելով. և իսահակ օրհնեաց զՅակոբ, և ասէ. «Տացէ քեզ տէր Աստուած զցօղ երկնից և զպարարտութիւն երկրի»[5], և այլն որ ի կարգին. և այլ ամենայն օրհնութիւն նախնեացն յաղագս մարմնոյ լինէին[6]. Զի յայնժամ արքայութիւնն փակեալ էր և դժոխքն բացեալ. զի զկնի աստի վայելմանս իջանելոց էին ի դըժոխս, զի Քրիստոս զդժոխսն աւերելոց էր և զնոսա ազատելոց[7]. զի զժամանակն զայն մինչև ի գալուստն Քրիստոսի՝ հոգիք արդարոցն և այլոցն ամենեցուն՝[8] ապառնալեօք դժոխոցն դառնութիւն մեծ կրէին. վասն այնորիկ, Աստուած նոցա զժամանակն զայն մինչև ի գալուստն Քրիստոսի՝ փոխանակ դառնութեան դժոխոցն՝ զվայելումն մարմնոյն աստ շնորհեաց նոցա. իսկ յորժամ եկն Քրիստոս[9] և մարմնացաւ և աւարեաց զդժոխս,

1. Բ. օր. դնէ՝ Որք զՀայր պաշտեն և զՈրդի ոչ ճանաչեն, որպէս որդիքն Աբրահամու և այլքն իսմայելք. իսկ յընթացս բանին համառօտելով անցանէ:
2. Գ. օր. Բազմացուցանէ, իսկ Ե. օր. Բազմացուցից:
3 և 4. Ծնն. ԻԲ, 17:
5. Ծնն. ԻԷ, 28:
6. Ե. օր. լինէր:
7. Ե. օր. յաւելու՝ շնորհին:
8. Ե. օր. չունի և այլոցն ամենեցուն. այլ դնէ՝ և մեղաւորաց:
9. Ե. օր. Բանն Աստուած:

*և երայց զարքայութիւնն . բարեգործացն զայն խոստացաւ, «Զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց»*[1]*, և զմարմնական վայելումն անտես արարեալ*[2] *։ Արդ, օրհնութիւն Տեառն ոչ սպառեսցի ի զաւակաց օրհնելոցն մինչեւ ի կատարած. բայց վասն զի ոչ հաւատային յՈրդի, ժառանգեսցեն զդժոխսն. և որպէս ինձ թուի, վասն այնորիկ ո՛չ օրհնեաց զնոսա վայելմամբ արքայութեանն, զի զայնոսիկ որ նախ քան զգալուստն Քրիստոսի վախճանեալ էին, ինքն էր ապատելոց*[3]*, և զի մի՛ այնոցիկ որք ի Քրիստոս ոչ էին հաւատացեալ, նոքա վայելեսցեն արքայութեամբն. զի եթէ արքայութեամբն զնոսա օրհնեալ էր, անհնարին էր սուտ հրամանաց նորա, որ ասացն, թէ «Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցցեն»*[4]*. և վայելէին ամենքեան յանանց բարիսն, առանց հաւատալոյ յանճառելի մարմնաւորութիւն նորա ։ Եւ վասն զի բանք նորա ոչ անցանեն, մնաց օրհնութիւն նորա ի վերայ զաւակաց նորա, և լինիցին սոա ի բարեկենդանութեան, և անդ ժառանգեսցեն զդժոխսն, զոր երայց օրէնքն. և ժառանգեսցեն՝ որք ընդ օրինօքն իցեն ։*

ՃԻԵ. ՀԱՐՑ. *Բազումք թողին զտեղի բնակութեան իւրեանց, զի անդ բնակեալ իցեն*[5] *մարդիկ չարագործք, և երթիցեն*[6] *անդ՝ ուր մարդիկ բա-*

1. Ա. Կորնթ. Բ, 9։
2. Ե. օր. արար։
3. Ե. օր. չունի զէ զայնոսիկ որ նախ քան զգալուստն Քրիստոսի վախճանեալ էին, ինքն էր ապատելոց. և զյաջորդն դնէ այսպէս. զէ զայնոսիկ որ ի Քրիստոս չէին հաւատացեալ, եհան յարքայութենէն։
4. Մրկ. ԺԳ, 31. *իսկ* Բ. օր. դնէ, որ ասաց երկինք և երկիր և հաստատեցան։
5. Ե. օր. էին։
6. Ե. օր. գնացին։

ընգործք իցեն[1]. օգտի՞ ինչ ի զգաստութենէ յայն-մանէ :

ԳԱՏՍԻ. Բարւոք է զգաստանալ յայնպիսի տեղ-ւոջէ, այլ զարիաբարն ոչ խափանէ և ոչ մի ինչ վտանգէ. իսկ զգանդաղն և զխօթամիտն՝ և ո՛չ մի ինչ նախանձ յարուցանէ : Եւ յառաջէ յայսմանէ՝ նախ հաւան արարից զքեզ, և ապա զօրինակս ի մէջ ածից, որ բնակեալ էին ի մէջ չարագոր-ծաց և ոչ վնասեցան. և այլք՝ որ բնակեալ էին ի մէջ բարեգործաց և ոչինչ օգտեցան : Արդ, եթէ ոք ո՛չ լինիցի արիաբար պատերազմող, և բնակեսցէ ի մէջ արիաբար արանց, միթէ հնա՞ր ինչ իցէ յորժամ նոքա պատերազմին և յաղթեն, նա կարիցէ արիաբար լինել և[2] պատերազմող. և արիաբար ոք[3] որ բնակեալ է ի մէջ վատասրտաց[4] և խօթացելոց, և ի ժամանակի պատերազմի խօ-թամիտ լինի և վատասիրտ և դանդաղկոտ : Ո՛չ ասէ : Այնպէս և զայնոսիկ համարեաց. մանաւանդ, զոր օրինակ վատն և դանդաղն բնակեալ ի մէջ արիաբարաց[5], և փախուցեալ լինիցի յերեսաց թշնամւոյն, նախատի և քամահի յամենեցունց յայնցանէ. որպէս և արիաբարն՝[6] որ բնակեալն է ի մէջ վատացն և խօթիցն[7], յորժամ՝ պատերազմի և յաղթէ՝ զովի յամենեցունց, և ակն[8] ամենեցուն ի նա լինի, և գնա ճանաչեն ամենեքեան արիա-բար, և հնազանդեն նմա[9]. այնպէս և զվատա-

1. Դ. օր. բարք գործիցեն. իսկ Ն. օր. բարեգործք էին :
2. Դ. օր. պատերելու յաղթող :
3. Ե. օր. և կամ արք ոք :
4. Դ. օր. վատասրտաց :
5. Ն. օր. արեաց :
6. Ե. օր. արին :
7. Ե. օր. չունի՝ և խօթիցն :
8. Ե. օր. աչք :
9. Ե. օր. չունի և գնա ճանաչեն ամենեքեան արիաբար և հնազանդեն նմա :

սիրտն այսպէս և ծաղր և արհամարհեալ համարեցին, և զնա միայն ճանաչեն վատթարս և դանդաղ. զորին աղագաւ և այնպիսիք' որ ոչ են արիաբար[1] ի բարեգործութիւն, այլ դանդաղ և խօթամիտ, օգտին և ոչինչ բնակելովն ընդ բարեգործս և առաքինիս. և այնպիսիք' որ արդարք են և առաքինիք և բարեգործք, ո՛չ վնասին բնակելով ի մէջ արանց չարագործաց։ Զոր օրինակ, ո՛չ վնասեցաւ Յովսէփ ի մէջ չարագործաց Եգիպտացւոցն, և Յովսէփ և Նիկոդեմոս ի մէջ աստուածուրաց քահանայիցն, և Դանիէլ և երեք մանկունքն ի մէջ Բաբելացւոցն, և ոչ Ղովտ ի մէջ Սոդոմայեցւոցն։ Այլ և զի՞նչ օգտեցան Ոփնի և Փենեհէս' որ էին որդիք Հեղեայ[2] մարգարէի, բնակեալ ընդ մարգարէ[3] հօր իւրեանց. կամ զի՞նչ օգտեցաւ Յուդա բնակելովն ընդ Քրիստոսի և ընդ աշակերտսն։ Այլ սակայն պարկեշտանալ պարտ է և զգաստանալ և զգուշանալ ի տեղւոջէ ի տեղի, և զյաւագոյն տեղին ընտրել, թերևս կամ նախանձելովն զգաստասցի, կամ երկնչելովն ի մէջ բարեգործաց' պատրաստեսցի ի մեղաց և զղջասցի։

ՃԻԶ. ՀԱՐՑ. Բարկութի՞ւնն վերագոյն[4] յանցանք իցեն, եթէ չարին չար հատուցանել' ընկերն[5] ընկերին[6]։

ՊԱՏԱՍԽ. «Բարկանայք և մի՛ մեղանչէք»[7] ասէ. զբարկութիւնն' ոչ ասաց եթէ մեղայք, զի բար-

1. Ա. օր. դնէ արիք, և չունի ի բարեգործութիւն, այլ դանդաղ և խօթամիտ։
2. Դ. օր. յաւելու' քահանայի և։
3. Դ. օր չունի մարգարէ. իսկ Ե օր. դնէ. բնակեալ ի մէջ մարգարէից։
4. Դ. օր. վեհագոյն։
5. Դ. օր. չունի ընկերն։
6. Ե. օր. բարկութիւն մեծամեծ յանցանք, եթէ չարին չար հատուցանել։
7. Եփս. Դ, 26։

կայցայք, այլ թէ բարկանայք, և մի՛ մեղանչէք. այսինքն է. թէ յորժամ բարկանայք, զբարկութիւնն մի՛ ի մտի պահեսցես և ջանաս չար հատուցանել, և արասցես մեղս. «Զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք[1]»: Յորժամ բարկանաս ումեք, և անկանիս ի վերայ մահճաց քոց, և դու եւս բարկութեամբն վառեալ իցես և խորհիս ի սրտի քում, եթէ վաղիւն զայս ինչ և զայն ինչ չար արարից նմա, զայն յանկողինս քո զղջացիր, և մի՛ մեղանչեր առնելովն զչարն: Ահա զի բարկանալն ոչ է մեղանք[2]. այլ յորժամ բարկանաս և զբարկութիւնն պահես և չար հատուցանես. քանզի բնաւ չբարկանալ՝ հրեշտակաց միայն է. իսկ ի բարկութեան միալ հանապազ, սատանայի է գործ այդ: Համարձակիմ ասել՝ թէ և ոչ հրեշտակք լինիցին առանց բարկութեան, զոր լուաք եղեալ առ Զաքարիա[3]. քանզի ոչ հաւատայ, զի կին նորա Եղիսաբեթ անցեալ էր զաւուրբք իւր, և ինքն յոյժ ծերացեալ էր, անհնար[4] համարեցաւ լինել զաւակ ինքեանց[5], և ո՛չ հաւատաց և վասն այնորիկ պապանձեցոյց զնա ինն ամսեան ժամանակաւ, և այնպէս բարկացաւ նմա հրեշտակն: Զի՞նչ ապա հնար է մարմնոյ և արեան լինել առանց բարկութեան. այլ սակայն եթէ բնաւ ոչ բարկանայ ոք, կարի լաւագոյն է, ապա թէ ոչ՝ լաւ է բարկանալ[6] և ո՛չ միալ ի բարկութիւնն, այլ ընթանալ առ այն որում՝ բարկացաւ, և առնուլ թողութիւն ի նմանէ:

1. Սղմ. Դ, 5:
2. Ե. օր. մեղանչել:
3. Դ և Ե. օր. յաւելուն՝ մարգարէն:
4. Դ. օր. անհնարին:
5. Դ և Ե. օր. ծնողացն:
6. Ե. օր. յաւելու և ոչ մեղանչել:

ԺԻԷ. ՀԱՐՑ.[1] Որ ունի ոխս ընդ ընկերին վիրաւորելոյն, մեղանչականի՞ն[2] պարտ է ընծանալ առնուլ թողութիւն, եթէ որ վիրաւորեցաւն և ողորմեցաւ :

ՊԱՏԱՍԽ. Տէրն ասաց. «Եթէ ոչ թողուցուք մարդկան զյանցանս նոցա՝ և ոչ Հայրն ձեր երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս ձեր[3]» : Եւ ոչ ասաց եթէ՝ որ մեղանչէ, և ոչ առնու թողութիւն յայնմանէ որում մեղաւն. այլ ասէ նմա՝ թողուլ զպատարագն, և ընծանալ թողութիւն խնդրել : Մեք ասէ, ոչ այդպէս ուսաք և լուաք, զի արար Տէրն

1. Գ. որ. ունի այսպէս Հարց. Որ ունի ոխ ընդ ընկերին, վիրաւորելո՞յն պարտ է ընծանալ և առնուլ թողութիւն, թէ այն՝ որ մեղաւն և վիրաւորեցաւ: — Պատասխ. Տէրն ասաց. «Եթէ ոչ թողուցուք մարդկան զյանցանս, և ոչ Հայրն ձեր երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս ձեր»: Քանզի կարի յոյժ մեղաք Աստուծոյ, և ոչ եթէ յանցանս միայն գործեցաք, այլ թողաք զարարիչն և պաշտեցաք զարարածս, զփայտս և զանասունս և զքարինս կանգնեցաք. և եթէ զայդ արարաք, ոչ ասացաք, Տէր, մեղաք և չար առաջի քո արարաք. թողութիւն արա՛ մեզ մեղուցելոցս. այլ առաւել ի չարն ընթացաք. և նա վասն այսպիսի չարագործացս խոնարհեցաւ ի թագաւորութենէ երկնից զծառայի առնել զկերպ և մահու համբերեաց անպարտականն մահու. և մինչ ի խաչին էր՝ ասէր. «Հայր, թո՛ղ դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն». և խաչեցողքն ոչ ասացին, թո՛ղ մեզ. այլ և յաճախէին ի չարչարանս. և ոչ եթէ պէտս ունէր և այսմ ամենայնի աստուածութեանս, այլ զի ուսուսցէ. և զի՞նչ ոչ էջ անկարաւորութեան, զի Աստուած վասն մեղանչականացս խոնարհեցաւ, և դու ի դանէ քո ոչ խոնարհիս առ մեղանչականն քո, և ասես թէ պարտ է նմա գալ որ մեղաւն ինձ: Ոմանք ասեն, ես մեծաւորն և իշխան եմ, և նա՝ թէ ես քահանայ վէհագոյն. և զայդ ոչ գիտես՝ թէ որչափ և մեծագին ես, այլ ոչ իբրև զԱստուած և զՈրդին Աստուծոյ. և զի նա առ մեղանչականս խոնարհեցաւ, և դու առ ծառայակից քո ոչ խոնարհիս. և եթէ քահանայ ես վէհագոյն, այլ ոչ վէհագոյն քան զքահանայապետն մեր Քրիստոս, որ վասն մեր անբերելի պարտացն անպարտականն պարտաւորեալ կատարեցաւ: Արդ, ի բա՛ց դիր զչար ամբարտաւանութիւնդ, և զգեցիր զխոնարհութիւն, և խնդրեա դու զթողութիւն ի մեղանչականէն քումմէ:

2. Ե. որ. Մեղանչողին:

3. Մատթ. Զ, 15:

մեր. քանզի կարի յոյժ մեղաք նմա[1], և ոչ եթէ զոսկի և զարծաթ միայն պաշտեցաք, այլ զպղանայ և անասնոց երկիր պագանէաք. և յորժամ զայս ամենայն արարաք, ոչ եթէ ասացաք՝ թէ Տէր, մեղաք, զի չարիս մեծամեծս արարաք. արդ, խնայեա ի ծառայս քո, և թողութիւն շնորհեա մեղուցելոցս: Եւ ապա նա այնպէս եկն և մարմնացաւ վասն մեր, և խաչի համբերեաց, չարչարեցաւ և մեռաւ. այլ առաւել ես ի չարիս յաճախէաք. ի նա վասն այնպիսեաց մեղանչականաց և չարագործաց՝ խոնարհեցաւ ի բարձրութենէ երկնից, զծառայի առեալ կերպարանս և մահու համբերեաց: Եւ զարձեալ, մինչ ի վերայ խաչին էր, ոչ եթէ նոքա որ խաչեցողքն էին ասացին, եթէ մեղաք, թող մեղուցելոցս. և նա ապա ասացեալ. «Հայր, թող դոցա, զի ոչ գիտեն զի՛նչ գործեն»[2]. այլ նոքա առաւելապէս յաճախէին ի չարչարանս, և այպն առնէին, եղեգամբ ծեծէին զգլուխ նորա. այլ նա վասն նոցա աղաչէր և ասէր. Հա՛յր, թող դոցա[3]: Այլ ասեն[4], նա Աստուած էր և կարող էր առնել զամենայն: Եւ արդ, ոչ եթէ վասն այնորիկ արարեալ զայն, զի Աստուծոյ այնպէս պարտ էր առնել, կամ եթէ գովեսցեն զնա, եթէ առաքինութիւն գործեաց, այլ զի դու ուսանիցես: Իսկ եթէ ասես, զի Աստուած էր և գիտէր զի յաղթելոց էր մահու, և վասն այնորիկ արարեալ զայն[5]. և արդ, դու հայեաց ի ծառայակիցն քո ի Ստեփաննոս, եթէ զինչ ասէր վասն քարկոծողաց իւրոց, «Տէր, մի՛ համարիր սոցա զայս ի մեղս»[6]: Եւ Պետրոս և

1. Դ և Ե. օր. յաւելուն, և ոչ եթէ չարիս և յանցանս միայն գործեցաք, այլ թողաք զարարիչն և պաշտեցաք զարարածս:
2. Ղկ. ԻԳ, 34:
3. Ե. օր. յաւելու զի ոչ գիտեն զինչ գործեն...
4. Դ. օր. ասէ:
5. Ե. օր. արար, իսկ Դ. օր. և զայս ասէր:
6. Գրծ. Է, 59:

Պաւղոս, և այլք [1] բազումք զայն արարին: Եւ արդ, զիա՞րդ ոչ իցէ ապիրատութիւն, զի Աստուած վասն մեղանչականաց իւրոց խոնարհեալ ի բարձրութենէ երկնից, և առեալ զկերպարանս ծառայի, և մեռաւ վասն նոցա մարմնով. և դու ի տանէ քումմէ ոչ խոնարհիս գնալ առ մեղանչականն քո. այլ ասես, թէ պարտ է նմա գալ որ մեղաւն. և բազումք զայս ասասցեն որ եւս մեղուցեալ են և վիրաւորեալ, եթէ մեծազգի իցեն [2] և իշխան. և միւսն՝ եթէ ես քահանայ եմ, պարտ է նմա գալ առ իս և առնուլ թողութիւն: Անմի՛տ, եթէ թագաւոր կամ՝ իշխան ոք, կամ մտակարար զայս օրէնս եդեալ էր, զի առնէր ամենայն մարդ՝ ապա թէ ոչ՝ տանջէր, ո՞չ ապաքէն երկնչէիր յոյժ: Եւ դարձեալ, օրինակ ես [3] ունէիր, եթէ նա որ վերագոյն և բարձրագոյն է քան զիս՝ այդպէս արարեալ, ապա այնպէս և ինձ պարտ է առնել, ո՛րչափ եւս առաւել զոր Աստուած երկնից և երկրի արարեալ և ուսուցեալ զքեզ [4] զի արասցես, ապա թէ ոչ, դատապարտիս. և զծառայակցին պատուիրանն վերագոյն ունիցիս քան զՏեառն, և զմարդոյն՝ քան զԱստուծոյն. և ի մարմնական տանջանաց առաւելապէս երկնչիս, որ առ ժամանակ մի է, և առնես զհրամանս ծառայակցացն քոց՝ քան զտանջանս [5] հոգւոյ քո, որ յաւիտեանս յաւիտենից տանջեսցի. և արհամարհես զԱստուած և չառնես զհրամանս նորա, այլ ասես, թէ ազնուազգի իցեմ [6] քան զնա. որչափ և մեծագոյն իցես, և որդի մեծաց, այլ ոչ իբրեւ զԱստուած և զոր-

1. Ե. օր. և առաքեալք:
2. Դ. օր. իցեմ, Ե. օր. եմ:
3. Յօր. էր օրինակէս. եդաք ըստ Դ և Ե. օր.:
4. Դ և Ե. օր. քեզ:
5. Ե. օր. քան ի տանջանաց:
6. Ե. օր. ազնիւ ազգ եմ:

դի Աստուծոյ. և նա առ մեղանչականս իւր խոնարհեցաւ, և դու առ ծառայակիցն քո ո՞չ խոնարհիս։ ի բաց տար զչար ամբարտաւանութիւնդ և զգեցիր զխոնարհութիւն։ Եւ արդ, սակայն յորժամ մեղանչականն գայցէ, պարտ է առնել թողութիւն. առաւելապէս լաւագոյն է քան զայնոսիկ ոյք ոչ առնեն թողութիւն բնաւ, յորժամ գայցեն մեղանչականքն, և անկանիցին առ ոտս նոցա, և խնդրեն զթողութիւն, այնպիսեացն չարաչար է և վերագոյն տանջանքն, յորմէ թողութիւն խնդրէ և ոչ առնէ. այնպէս և որում մեղանչէն, և նա յառաջէ և խնդրէ թողութիւն ի մեղանչականէն, վերագոյն է պսակն[1]։

ԾԻԸ. ՀԱՐՑ.[2] Եւ թէ քահանային մեղանչէ ոք, ո՞յնպէս պարտ է առնել, եթէ ի քահանայէն

1. Գ. օր. Աստէն յաւելու և զայս Հարց. Իսկ եթէ ընկերանոյ մին առ միւսն և ոչ ընդդառնի, զի՞նչ պարտ է առնել։ Պատասխ. Դատն չարէ և անբժշկելի վէրք. այլ որ կամի շնորհողութեան, անպարտ է ի քանանութենէ աստուծոյ և ի մախանաց ընկերին՝ փրկութեան աստուծոյ. իսկ որ ոչ ներէ ընկերին և ոչ եւ տեղի յիւրն բնակել Քրիստոսի, ասելի է զբանս տերունական, եթէ «Աղուեսուց որջ գոն և թռչնոց երկնից բոյնք, և Որդւոյ մարդոյ ոչ գոյ տեղի, ուր դիցէ զգլուխ իւր»։ Այնպիսին թէ աղօթէ, թէ ողորմութիւն առնէ և կամ պահս պահէ, և զինչ բարութիւնս գործէ, զՔրիստոս արտաքսեալ դիւացուցանէ և զատելութեան խղճմտանս առարկայացուցանէ։

2. Գ օր. այսպէս ունի. Հարց. Եթէ քահանային մեղանչէ ոք այնպէս պա՞րտ է առնել և խնդրել թողութիւն, և ոչ մեղանչականն ի քահանայէն։ Պատասխ. Տէրն ասաց եթէ մատուցանիցես զպատարագն քո և անդ յիշեսցես եթէ ոք խէթ ունի զքէն, թող զպատարագն ի վերայ սեղանոյն, երթ նախ հաշտեա ընդ եղբաւր քում և ապա մատո զպատարագն քո։ Եւ ասաց Քրիստոս, թէ որ ածէ պատարագ յառաջ Աստուծոյ քո, մատո նմա և զմիւսն, և այս առաւել խոնարհութիւն է քան զթողութիւն խնդրելն, և եթէ ոչ արասցես պատուիրանացդ քո. իսկ եթէ հայի քահանայն ի պատուիրանս Աստուծոյ և ի փառս պատուոյն, վասն այսմ առաւելութեանս ապա քահանային պարտ է երթալ խոնարհ անձամբ և անկանել առ ոտս մեղանչականին. իսկ թէ ի փառս մարդկան հայի, և զփառսն զայն անդէն արասցէ, ապա պարտ է մեղանչականին երթալ առ քահանայն. և առաքինայն մարդ այնպէս արասցէ։

պարտ է խնդրել թողութիւն, և ոչ քահանայն ի մեղանչականէն։

ՊԱՏԱՍԽ. Տէրն ոչ տայ թէ յորժամ՝ մատուցանես[1] զպատարագն ի վերայ սեղանոյն, պարտ է քեզ գնալ հաշտել ընդ նմա և ապա մատուցանել[2] զպատարագն. այլ, «Թէ մատուցանիցես զպատարագն քո ի վերայ սեղանոյն, և անդ յիշեսցես՝ եթէ եղբայր քո ունիցի ինչ խէթ զքէն, թող զպատարագն ի վերայ սեղանոյն, և երթ նախ հաշտեաց ընդ եղբօր քում՝, և ապա եկեալ մատուսջիր զպատարագն քո[3]»։ Ձի տայ Քրիստոս, «Թէ, որ ածէ[4] ապտակ յաջ ծնօտ քո, մատո նմա և զմիւսն[5]»· այդ[6] առաւել խոնարհութիւն է, քան զայն՝ որ թողութիւն խնդրէ ի մեղանչականէ իւրմէ. ապա եթէ զայս ոչ արասցէ, պատուիրանազանց է։ Իսկ եթէ քահանայն յԱստուած հայեսցի[7] և ի պատուիրանս նորա լինիցի, և պսակայն և փառացն[8] ակն ունիցի՝ որ վասն այսմ՝ առաքինութեան զոր ասացաք՝[9] վայելելոց է[10], նա պարտ է բազում՝ անգամ երթալ և անկանել առ ոտս մեղանչականին։ Ապա եթէ ի փառս մարդկան հայեսցի, և զփառսն Աստուծոյ[11] անտես արասցէ, ապա պարտ է մեղանչականին ընթանալ առ քահանայն, և առ ամենայն մարդ[12]. ապա եթէ՝ որպէս Քրիստոս ասաց, թէ «ոլք

1. Դ և Ե. օր. մատուցանիցես։
2. Ցօր. մատուցանէ, եդաք ըստ Դ և Ե օր։
3. Մատթ. Ե, 23։
4. Ե. օր. հանէ։
5. Մատթ. Ե, 39։
6. Ե. օր. արդ։
7. Դ և Ե. օր. հայեսցի։
8. Ե. օր. չուենի և փառացն։
9. Ե. օր. զոր տայ Քրիստոս։
10. Դ. օր. էր։
11. Գ. օր. զայս։
12. Ե. օր. գնալ առ քահանայն և առ ամենայն մարդիկ։

խնդրին զփառս ի մարդկանէ, նոքա զփառս Աստուծոյ ոչ խնդրեն»[1]. Նա որպէս ասացի, այդպէս պարտ է առնել։

ՃԻԸ. ՀԱՐՑ.[2] Արդ, ոչ ասեմ՝ զաշխարհական որ ոք ոխ ունել առ իրեարս[3], այլ թէ քահանայք ունիցին ոխ ընդ իրեարս, և առնեն պատարագ։

ՊԱՏՍԽ. Ի լսել[4] միայն զայդոսիկ՝ սասանիմ, թող թէ կատարել[5] զչարագոյն[6] յանցանքդ զայդ տեսանել կամ լսել։ Զի թէ քահանայն առաջնորդ է ժողովրդեանն և զաւետարանն ընթեռնու նոցա յամենայն ժամ, և ինքն ոչ կատարէ զհրամայեալսն, զի՞նչ լինիցի արդեօք։ Արդ, որպէս թէ հակառակութիւն ինչ լինիցի ի մէջ մարդկան, և սրով մարտնչիցին ընդ միմեանս, և կամ՝ քարամբք հալածեն զիրեարս, և յարուցեալ ոք դաստիարակ որդւոյ թագաւորի, և առնուցու ի գիրկս իւր զնոյն ինքն զորդի թագաւորին երբե զասպար և մտանէ ի մէջ նոցա. և իւրաքանչիւր դաս երկնչին քարաձգել[7], զուցէ հարկանի յորդի թագաւորին, և չարաչար սատկին։ Եւ յորժամ նոքա լռեն ի պատերազմելոյ ընդ միմեանս, և լինիցի խաղաղութիւն, և ապա դաստիարակն հարկանիցէ զորդի թագաւորին քարամբ, ո՞չ ապաքէն նախ քան զթագաւորն նոքա որ ընդ միմեանս մարտնչէին՝ ջանասցեն կործանել զդաստիարակն զայն, և սատասցեն զնա. Եթէ մեք մարտուցեալքս ընդ միմեանս, յահէ որդւոյ թագաւորին՝ զոր բարձեալ ունէիր ի գիրկս քո,

1. Ե. օր. որ ոտ խնդրէ զփառս ի մարդկանէ, նա զփառս Աստուծոյ ոչ խնդրէ։
2. Գ. օր. չունի աստի մինչև ց'ՃԼ Հարց.։
3. Դ. օր. ընդ իրեարս։
4. Դ և Ե. օր. լսելոյ։
5. Ե. օր. կատարեալ։
6. Դ և Ե. օր. չունին։
7. Դ և Ե. օր. քար արձակել։

և մեզ հաշտել ընդ միմեանս բողքէիր, և մեք լուեցաք յիրեարս քարս հարկանել[1], մի՛ գուցէ հարկանիցի որդի Թագաւորին, և մեք տուժեսցուք[2]. արդ՝ յորմէ մեք երկեաք[3] առնել, զայն դու արարեր. և ապա Թագաւորն չարաչար սատջէ զնա։ Այնպէս և քահանայն առեալ զաւետարանն ի վերայ գրկաց իւրոց, և քարոզէ ախակալացն, և ասէ, եթէ ոչ հաշտիք ընդ միմեանս, ապա արհամարհէք զՔրիստոս, որ պատուիրեաց ընդ ընկերին հաշտել. և նորա լուիցեն[4] քահանային և երկնչին պահել զոխն, գուցէ արհամարհի որդին Աստուծոյ. և հաշտի իւրաքանչիւր ոք ընդ եղբօր իւրում։ Եւ յորժամ նոքա հաշտին և լինիցի խաղաղութիւն ի մէջ նոցա, և ապա քահանայն ոխս պահիցէ, քաջայայտ է թէ նա արհամարհեաց զորդին Աստուծոյ զոր ունէր ի գրկի իւրում, և նովաւ քարոզէր մեզ առնել խաղաղութիւն. ո՞չ ապաքէն աղարտեն[5] զնա ամենեքեան և արհամարհեն, և Աստուած զնա չարաչար տանջեսցէ. քանզի թէ այլ ինչ յանցանս արարեալ իցէ քահանայն[6] ի ծածուկ, և ոչ գիտէ ոք զատոյգն կամ զսուտն, գոյ ներումն թողութեան. իսկ յորժամ վիճեսցի ոք ընդ ումեք և ոխս պահեսցէ, վասն այնորիկ արհամարհի ի ժողովրդենէն և աղարտի[7], զի վէճ ի ծածուկ երբեք ո՛չ լինիցի. և յանցանքս այս վերագոյն[8] է քան զամենայն մեղս և չար. զի զամենայն առաքինութիւն աղարտէ. վասն այնորիկ և ի ժամա-

1. Ն. օր. քարշէնս յինելոյ ընդ իրեարս։
2. Ն. օր. պատժանս կրեսցուք։
3. Ն. օր. երկնչէցաք։
4. Ն. օր. լսեն։
5. Ն. օր. նախատեն։
6. Ն. օր. քահանայն։
7. Ն. օր. չունի և աղարտէ։
8. Ն. օր. ծերագոյն։

նակի պատարագին յուշ առնէ քահանային[1] թողուլ զնա ի վերայ սեղանոյն, և երթալ հաշտել ընդ ընկերին[2]. և զայն՝ որ պատուիրէ, թէ թող և հաշտեաց ընդ ընկերին, զնա պատճառս առնէ բարեխօսութեան և աղաչանաց։ Ինձ այսպէս թուի, (եթէ) ընդ խաչահանուեան համարեսցի այնպիսին. զի ի վերայ սեղանոյն այնորիկ արհամարհեաց զնա և անարգեաց։

ՃԻԹ. ՀԱՐՑ. *Ապա քանի՞ անգամ պարտ է թողուլ ընկերին։*

ՊԱՏԱՍԽ. Պետրոս եւթն անգամ ասաց, այլ Քրիստոս եւթանասնեկին եւթն, որ է չորս հարիւր և իննսուն. այլ սակայն մեք զՊետրոսին արասցուք, եթէ զՔրիստոսին ո՛չ կարասցուք առնել։ Եւ ընդէ՞ր ոչ հինգհարիւր անգամ ասաց, այլ չորս հարիւր և իննսուն[3]. քանզի Պետրոս եւթն անգամ ասաց, և գիտաց եթէ այնչափ շատ ասացի[4] զեւթն անգամն. վասն այնորիկ Քրիստոս յաւելեալ ասէ. ո՛վ Պետրէ, մի՛թէ կարծիցես եթէ շատ ասացեր, և բազում թուեցաւ քեզ զոր ասացերդ[5]. այլ եթէ հայեսցիս ի պակն առաքինութեանդ յայդ, ոչ եթէ եւթն անգամ միայն պարտ է թողուլ ընկերին, այլ եւթանասնեկին եւթն։ Զի եթէ ասէր թագաւոր որ, եթէ թողուս եղբօր քում հազար անգամ՝ մեծապէս պատուեմ զքեզ և զարքայութիւնս իմ տաց քեզ, ո՞չ ապաքէն հանապազ զնա աղաչէիր, և անկանէիր յոտս նորա և համբուրէիր, մինչև հաշտէր ընդ քեզ, զի վայելէիր մարմնով զխոստմունսն արքայութեանն և զփառս թագաւորին, որ

1. Դ. օր. քահանայն։
2. Ե. օր. մինչև ցայս վայր զՊատասխ։
3. Ե. օր. այսպէս ունի. Եւ ընդէ՞ր ոչ ասաց ՆԾՂ, (այսինքն՝ հինգ հարիւր իննսուն) քանզի. և այլն։
4. Դ. օր. չափասցէ։
5. Յօր. ասացէ, եդաք ըստ Դ և Ե. օր։

այսօր վայելէիր[1] և վաղիւն անցանէր. Որչափ եւս առաւել ապա պարտ է զհրամանս Աստուծոյ կատարել. որ հրամանատուն Աստուած է, և խոստմունքն անանցական, յաւիտեանս յաւիտենից, և վայելմունքն վախճան ոչ ունին, զոր վայելելոց ես[2] ի ձեռն թողութեան եղբօրն քո։ Զի եթէ բիւրապատիկ յանցանս արարեալ իցես, և զյանցանս եղբօր քո ընջեսցես ի սրտէ քումմէ, ահա մաքրեցեր զամենայն յանցանս քո, և եղեր արժանի արքայութեան, վասն զի պսակն այդպէս իցէ[3]։ Արդ[4], ասաց Քրիստոս՝ ոչ եթէ եւթն անգամ, այլ եւթանասնեկին եւթն պարտ է թողուլ ընկերին՝ եթէ մեղիցէ քեզ։ Թողի ասէ, և խնդրեցի թողութիւն, և նա ոչ հաշտեցաւ. Նա եւ այլ եւս անկիր[5] մինչեւ հաշտեսցի[6]. զի և այն իսկ մեղանք իցէ[7], յորժամ թողութիւն խնդրես, և նա ոչ առնէ[8]։ Սակայն, եթէ եւթն անգամ ոչ է հնար մեղանչել քեզ եղբօրն, այդիւ[9] հնարաւորեաց[10], զի և եւթն անգամ անկանիս[11] յոտս նորա. և եթէ ոչ թողու քեզ[12], եւթն անգամ՝ մեղաւ քեզ, զայնպիսին[13] պարտ է հանապազ աղաչել, և թողութիւն խնդրել մինչեւ Քրիստոսին կատարեսցի եւթանասնեկին եւթն, և կամ մինչեւ մեռանիցի։ Արդ՝ եթէ հաշտի, չահեցար դու զըն-

1. Ե. օր. յաւելու մարմնով։
2. Յօր. էիր, եղաք ըստ Դ. և Ե. օր։
3. Ե. օր. չունի վասնզի պսակն այդպէս իցէ։
4. Դ և Ե. օր. արդարոցն։
5. Ե. օր. յաւելու՝ յոտս նորա.
6. Դ. օր. չունի նա և այլ եւս անկիր, մինչեւ հաշտեսցի։
7. Դ. օր. մեղանչիցէ։
8. Դ և Ե. օր. ներէ։
9. Ե. օր. դնէ՝ այլ դու։
10. Դ և Ե. օր. հնարես մեա օր համարես։
11. Դ և Ե. օր. անկանիցես։
12. Ե. օր. յաւելու ասա։
13. Ե. օր. զայնպիսին։ .

կերն քո, ապա թէ ոչ՝ նա ժառանգեսցէ զհուրն անշէջ, և դու զկեանսն յաւիտենականս։ Զի թէ թագաւորին մեղանք ինչ ոմանք գործեալ իցեն, և ասէ թագաւորն, եթէ գնասջիք և դուք ընդ միմեանս հաշտեցարուք, և ես զինչ յանցանք ինձ արարեալ էք՝ թողից ձեզ, և տաց ձեզ զարքայութիւն իմ. ապա թէ ոչ՝ չարաչար տանջեսցից զձեզ. որ թողութիւն առնէր՝ վայելէր զարքայութիւնն. և որ ոչն առնէր՝ տանջէր չարաչար. այնպէս և զայս խոկ համարեաց։ Արդ, եթէ դու լի սրտաց[1] հաշտիս ընդ ընկերին, շահեսցար զարքայութիւն Նորա, որ ասաց, եթէ՝ «Թողէք և թողցի ձեզ»։ Եւ եթէ նա ոչ առնէ քեզ թողութիւն, ժառանգէ զտանջանսն. զի ասաց. «Եթէ ոչ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, և ոչ Հայրն ձեր երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս ձեր»[2]։

ՃԼ. ՀԱՐՑ. Եթէ մատնէ ոք զընկեր իւր ի չար, եթէ սուտ և եթէ ճշմարիտ, հաւասա՞ր դատին[3], եթէ ըստ յանցանաց։

ՊԱՏԱՍԽ. Պէսպէս իցեն մատնելութիւնք[4]. ոմանք գողանան ինչս, և ոմանք խօսին ինչ[5] չար անարգանս զմեծամեծաց. և ոմանք գողանան զինչս չքաւորաց[6], և ոմանք զինչս մեծամեծաց, և ոմանք զինչս զրկողաց։ Արդ, եթէ տեսանիցէ ոք՝ զի գողանայ այլ ոմն զինչս չքաւորին, և ասասցէ տեառն իւրում, ոչ դատապարտի, քանզի չքաւորի է. իսկ եթէ տայցէ ոք զինչս մեծա-

1. Դ. օր. սրտով, իսկ Ե. օր. սրտիւ։
2. Մտթ. Զ, 14։
3. Ե. օր. տանջին։
4. Ե. օր. մատնասիրութիւնք։
5. Դ և Ե. օր. չունին ինչ։
6. Ե. օր. դնէ խօսն զինչս չքաւորին, և չունի և ոմանք զինչս մեծամեծաց և ոմանք զինչս զրկողաց։

տանց և մատնեացէ ոք զայնպիսին, դատապարտի. վասն զի յաղագս երախտեաց մատնեաց, զի բարի գտանիցէ ի նմանէ ի ձեռն մատնութեան. այսպիսի եթէ[1] յիրաւի մատնեացէ եթէ յանիրաւի[2], դատապարտի։ Իսկ եթէ ոք յանցանս գործեացէ և մատնեացէ ոք զնա, որ է յաղագս հոգւոյ, դատապարտի, ո՞րչափ ևս առաւելապէս[3] յաղագս մարմնոյ. քան զի թէ յիրաւ մատնեացէ ոք՝ և նա ոչ յայտնէ զծածկեալն, այլ ջանայ խորել, քաջայայտ է[4], զի տանջեսցի չարաչար. և եթէ յանիրաւի մատնեացէ՝ այնպէս[5], վասն զի ոչ ունիցի զի տացէ տեառն, տանջեսցի անդրէն չարաչար. զի թէ բամբասելն չար է՝ եթէ յիրաւի և եթէ յանիրաւի, ուր ոչ տանջանք մարմնոյ, ո՞րչափ ևս առաւել մատնելն՝ ուր տանջանք իցէ։ Եւ զմեղս եթէ մատնեացէ ոք՝ դատապարտի. քանզի այլ է յանցանք գործելն ի ծածուկ, և այլ է գործելն լրբութեամբ. իսկ այն՝ որ ի ծածուկ գործէ՝ ահաբեկ լինելով, զի մի՛ գուցէ յայտնեսցի, նա ոչ յաճախէ ի չարիս յանցանաց. իսկ իբրև յանդիմանի անցանէ զամօթ[6] մարմնոյ, և անտառակութիւն ստանայ առաւելապէս, և լրբեսցի ի մեղսն՝ և գործէ անպատկառելի, և մատնիչն հաղորդ է նորա յանցանացն, զինչ և գործեսցէ[7]։

ՃԼԱ. ՀԱՐՑ. Յորժամ ոք մեռանի, ի մահիճս լաւուղոյն է մեռանել, եթէ չարաչար մահուամբ[8]։

1. Դ և Ե. օր. զնեն՝ թէ և։
2. Դ և Ե. օր. չունին եթէ յանիրաւի։
3. Ե. օր. առաւել։
4. Ե. օր. զնէ և այլ ոչ զծածկեալն, և նա ոչ յայտնէ այլ ջանայ խորել. յայտ է թէ։
5. Ե. օր. զնէ՝ և եթէ անիրաւ մատնեացէ այնպէս։
6. Ե. օր. յամօթ։
7. Ե. օր. և մատնիչն հաղորդէ յանցանացն։
8. Գ. օր. չարչարանօք մահն։

ՊԱՏՍԽ. «Մահ մեղաւորին չար է»[1] ասէ, մարգարէն. իսկ արդարոյն չար մահն՝ ոչ լինի վնաս. քանզի որ առաքինին[2] է՝ եթէ չարաչար մեռանիցի[3], եթէ գահավէժ լինիցի, եթէ գազանաբեկ լինիցի, եթէ թռչունք ուտիցեն, և եթէ ի հուր այրեսցին[4], և թէ [5] ի դիւաց խեղդի և կամ ի գետ և ի ծով, և կամ գազանք կերիցեն. և եթէ այլ ինչ չարաչար մահուամբ մեռանիցի, հոգի նորա պայծառացեալ է առաջի Աստուծոյ։ Իսկ որ մեղօք մեռանիցի, եթէ բիւրս պատուեսցեն ըզմահ նորա[6], և բիւր ջահս լուցեալ պայծառացուցանեն[7] շուրջ զնովաւ, և քահանայք և կրօնաւորք սաղմոսիւք[8] թաղեսցեն, ոչ ինչ օգտեսցի. քանզի զի՞նչ օգտեաց մահ մեծատանն, որ այնչափ փառօք մեռաւ. կամ զի՞նչ վնաս Ղազարոսի եղեւ աղքատին՝ որ սովամահ եղեւ[9]. և զի՞նչ լինիցի մահ չարագոյն քան զսովամահն լինել։ Բայց ասացից և այլ ինչ յայտնապէս. զի՞նչ լինիցի այլ մահ վատթարագոյն քան զկարապետին Յովհաննու, ո՞չ ապաքէն զգլուխ նորա այպն արարեալ աղջկան միոյ, ի ձեռն սրոյ հատանելով, և զմարմին նորա արտաքոյ արկեալ ի մէջ ազբից, և յետոյ Յուլիանոս ամբարիշտն՝ յորժամ չարչարէր զԱրտեմիս վկայ, էջ հուր և խորտակեաց

1. Սղմ. ԼԳ, 22։
2. Գ. օր. արդարն։
3. Գ. օր. յաւելու ընդ սար ի վայր անկանի։
4. Գ. օր. եթէ ի հրոյ ծախի։
5. Յօր. պակասէր՝ ի դիւաց խեղդի և կամ ի գետ և ի ծով և կամ. եդաք ըստ Դ և Ե օրինակաց. իսկ Գ. օր. չունի՝ և կամ ի գետ... ցմեռանիցի։
6. Գ. օր. չունի, իսկ Ե. օր. դնէ՝ պատուեսցի մահ նորա։
7. Գ. օր. դնէ. Իբ և բիւր ջահս վառեսն շուրջ զնովաւ. Ե. օր. պայծառացուցանիցեն։
8. Յօր. պակասէր սաղմոսիւ, եդաք ըստ Գ. Դ և Ե. օրինակաց։
9. Գ. օր. մեռաւ, իսկ Ե. օր. լինէր։

զբագինսն ի Սեբաստիայ[1]. և Նա չարացեալ բարկութեամբ իւրով, բրեալ[2] եհան զոսկերս Եղիսէի մարգարէի և զոսկերս Կարապետին՝ զմնացեալսն ի Կեսարիայ[3], և խառնեալ ընդ ոսկերս շանց և այրեալ[4] հոսեաց. մի՛թէ վնաս ինչ եղե՞ւ Կարապետին. այնպէս համարեաց և զամենայն մահ արդարոց: Արդ՝ որ առաքինի իցէ, որչափ և չարաչար մեռանի[5], ոչ ինչ վնասի հոգի Նորա. իսկ որ մեղզք է՝ որչափ և ի մահճս մեռանի և պատուի մեծապէս, ոչինչ օգտի ամենեւին:

ՃԼԲ. ՀԱՐՑ. Լաւագո՞յն է չինել եկեղեցի, եթէ զայն տալ աղքատաց,

ՊԱՏՍԽ. Արդ, իմացաք ի պոռնկէ անդի, զի յոր ինչ փափաքէ բնութիւն տուողին՝[6] զայն ընդունի[7] Աստուած. եթէ փափաքէ չինել եկեղեցի, մի՛ հատաներ զյոյս Նորա, և ասասցես[8] թէ լաւ է տալ աղքատաց. զի յոր ինչ և յօժարի բնութիւն մարդոյն[9] առնել՝ զայն ընդունի Աստուած: Արդ, զմեզ ոչխարս համարի Աստուած, և զեկեղեցի փարախ. եթէ մինն[10] արածէ զոչխարս և միւսն կերակրէ, և միւսն այլ փարախ չինեսցէ, զի անդ ժողովեսցին ոչխարքն, և առանց վնասու մնասցեն ի յափշտակող[11] գայլոյն[12]: իսկ որ կարող իցէ կերակրել զաղքատս

1. Յօր. ի Սամարիա, յոր յարէ Գ. օր. որ կոչի Սեբաստիա. եդաք ըստ Դ և Ե. օրինակաց:
2. Ե. օր. քարեալ:
3. Յօր. պակասէր զմնացեալսն ի Կեսարիա, եդաք ըստ Դ և Ե. օրինակաց:
4. Ե. օր. այրեաց:
5. Ե. օր. մեռանիցի:
6. Ե. օր. չունի բնութիւնն տուողին:
7. Գ. օր. զայն ընդունելի համարի:
8. Ե. օր. ասելով լաւ է:
9. Ե. օր. յինչ և յօժարի մարդ:
10. Յօր. միան, եդաք ըստ Ե. օր.
11. Դ և Ե. օր. յափշտակողներն:
12. Յօր. գայլոն, ուղղեցաւ ըստ Գ և Ե. օր:

և չինել եկեղեցի, կարի ընդունելի է. ապա եթէ զայն միայն ստացեալ իցէ զի զեկեղեցի չինեսցէ. արդ՝ գիրսն զայն զոր չինէ եկեղեցի, այնպէս ընդունի Աստուած՝ եթէ եա զայն աղքատաց։ Զի՞նչ պէտս էր Քրիստոսի օծանիլ իւղով. այլ յոր ինչ յօժարեցաւ կինն՝ զայն ընդունեցաւ[1] Աստուած։

ՃԼԳ. ՀԱՐՑ. Տեսանեմ զոմանս զի տանջելոց են ի մարդկանէ՝ յաղագս մեղանաց իւրոց, և հնարին տալ զամենայն ինչս իւրեանց[2] զի ապրեսցին ի տանջանաց անտի. և եթէ այնու ոչ փրկին՝ զորդիս իւրեանց ծախեսցեն. արդ, զի՞նչ վարձք իցեն նմա[3]։

ՊԱՏԱՍԽԻ. Ինձ այսպէս թուի՝ եթէ չարաչար դատապարտի այնպիսին. քանզի[4] յամենայն ժամ լուաւ զպատուէր սուրբ աւետարանին, որ ասէ. «Թէ կամիս կատարեալ լինել, վաճառեա զինչս քո և տուր աղքատաց[5]». և[6] զի՞նչ վասն անանց կենացն և անվախճան բարեացն, «Զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց[7]». և զայն՝ ոչ եթէ ամ մի միայն վայելեսցէ, կամ տասն, կամ հազար, կամ բիւր հազար, կամ զինչ ի սկզբանէ աշխարհի մինչև ցայսօր ժամանակի՝ չիթք անձրևաց իջեալ են[8], այլ ևս անթիւ և յաւիտեանս յաւիտենից. և նա վասն

1. Ե. օր. ընկալաւ։
2. Յօր. Նորա, եդաք ըստ Ե. օր։
3. Գ. օր. Տեսանեմ զոմանս զի տանջելոց են, կամ վասն սովոյ և կամ վասն այլ իրիք հարկաց, և տայ զամենայն ինչս զի ազատեսցէ ի տանջանացն, և եթէ այնքա ոչ բաւականանայ՝ զորդիս իւր ծախէ. արդ, զի՞նչ վարձք են նմա։
4. Դ. օր. դնէ տանելի յորժամ լուաւ և չունի յամենայն ժամ։
5. Մատթ. ԺԹ, 21։
6. Յօր. եդեալ էր և նա, ուղղեցաք ըստ Դ և Ե. օրինակաց։
7. Ա. Կորնթ. Բ, 9. իսկ՝ Ե. օր չունի։
8. Դ և Ե. օր. իջանեն։

կենացն այնմիկ՝ և ոչ զկէս ընչից իւրոյ սիրեաց տալ կարօտելոց[1], զի վայելէր զայն՝ որ անսպառն է. և վասն այսմիկ կենացս՝ որ այսօր ապրեսցի ի տանջանացս յայս՝ և վաղիւն մեռանիցի, զամենայն ինչս իւր ետ[2] յօժարութեամբ. այլ[3] թէպէտեւ ապրեցաւ աստ ի սուղ տանջանաց, սակայն զտանջանսն զայն ծանրագոյն[4] կրելոց է՝ որ ոչ փարատի[5] յաւիտեանս յաւիտենից։ իսկ եթէ վասն իրաց ինչ՝ ոչ տանջեսցի, այլ վասն այլ իմն մեղանաց, կամ[6] վասն գողութեան, և կամ վասն սպանութեան, կամ վասն զրկանաց, և համբերեսցէ և գոհանայ[7], որով աստ տանջեցաւ, անդ ոչ դատապարտի, ապա եթէ ի տարապարտուց տանջեսցի, և ներէ և գոհանայ[8], զամենայն յանցանս իւր քաւեսցէ։ իսկ այնորիկ՝ որ զորդիս իւրեանց վաճառեն՝ և զանձինս իւրեանց ապրեցուցանեն, ահա զի կորոյս զորդին, և այսօր կամ վաղիւն մեռանելոց է ստուգապէս. և[9] նա ընաւ ոչ ապաշաւեաց և ոչ ելաց և ոչ կոծեցաւ։ իսկ յորժամ Աստուած տանիցի[10] թէ միայն լաւաբար յուղարկէր զնա, և ոչ կոծէր և լայր, այլ գոհութեամբ ներէր և օրհնէր[11] զԱստուած. քաջայայտ է զի քաւէր յանցանք նորա[12]։

1. Դ և Ե. օր. աղքատաց։
2. Ցօր. պակասէր, եդաք ըստ Դ և Գ օրինակաց. Ե. օր. դնէ՝ տայ։
3. Ե. օր. դնէ ոչ։
4. Գ. օր. չունի, իսկ Դ և Ե. օր. դնեն ծայրագոյն։
5. Ցօր. պակասէր որ ոչ փարատի. լրացաւ ի Դ և Ե. օրինակաց։
6. Ե. օր. այսինքն։
7. Ե. օր. գոհանայցէ։
8. Գ, Դ և Ե. օր. չունին որով աստ... ներէ և գոհանայ։
9. Ե. օր. յաւելու ինքն։
10. Ե. օր. տեսանիցէ։
11. Գ. օր. դնէ՝ համբերէր, իսկ Ե օր. չունի՝ ներէր և։
12. Գ. օր. յաւելու, և վասն անցաւոր կենացս վայելման զի՞ մի՛ տանջեսցի ոսկոյ մի և մեռանի՝ վաճառէ զորդին իւր։

իսկ եթէ ոչ տեսանիցէ օտար, կոչէ ի բարեկամաց և խրախանայ ընդ նմա. և եթէ օտար տեսանիցէ՝ այնպէս արասցէ. և աղքատաց՝ որպէս սովորութիւն է գալ առ դրունս՝ անտես ոչ արասցէ տալ կերակուր նոցա, և ոչ առատապէս ողորմութիւն, որպէս թէ զամենայն կարօտութիւնս նոցա լնու. այնպիսոյն վարձքն բազում է, զի և Աբրահամ օտարասէր էր։ Իսկ եթէ փողովք և քնարօք խրախանայ, զի գովեսցի ի մարդկանէ և մարմինն փառաւորեսցի, այնպիսին, թէ և զամենայն ինչս իւր աղքատաց տացէ՝ ոչինչ օգտեսցի, որպէս և յաւետարանէ անդի լուաք, թող թէ բարեկամաց վատնեսցէ. այլ սակայն թէ զայդ ի միտ ոչ դիցէ, զի գովեսցի ի մարդկանէ, և պարզաբար յինչս իւր ոչ խնայեսցէ՝ յոսկի կամ յարծաթ, և յախտից արծաթսիրութենէ ի բաց փախեաւ, ապրեսցի ի տանջանացն՝ որ պատրաստեալ է. այնպիսեացն արծաթսիրացն ասեմ, և վարձք իւրեանց ո՛չ կորուսանին. այլ օգտեսցին ինչ վասն առատութեանն։

ՃԼԵ. ՀԱՐՑ. Իսկ եթէ ոք տայցէ ինչս բազումս աղքատաց, և զաւակք ընտանեաց իւրոց կարօտք իցեն. լաւագոյն է նոցա՞ տալ՝ եթէ աղքատաց[1]։

ՊԱՏԱՍԽ. Լուաք ի մարգարէէն զի ասայ վասն ողորմութեան, թէ «Բրդեա քաղցելոց զհաց քո, և զաղքատս անյարկս տար ի տուն քո[2]». և յորժամ զայս ասաց, ոչ մինչեւ ցայս վայր դադարեաց, այլ յաւել ասելով. և «յընտանեաց զաւակի քո զակն մի՛ արկանիցես[3]», այսինքն թէ յորժամ զնոսա կարօտս տեսանիցես՝ անտես մի՛ արասցես, այլ պարտ է զնոսա նախ տեսանել։

1. Գ. օր. չունի զայս Հարց. հանդերձ Պատասխ. իսկ Ե. օր. դնէ. Եթէ տացէ զաւակէ ընտանեացն կարօտ իցեն, լաւագոյն է նոցա՞ տալ՝ թէ աղքատաց։
2. Եսայի. ԾԸ, 7։
3. Նոյն։

ՃԼԶ. ՀԱՐՑ. *Իսկ գովելի է ողորմածն. արդ, մարդասէր ողորմա՞ծն է՝ եթէ այլ ոք առաքինի*[1]։

ՊԱՏԱՍԽ. *Ողորմածն ողորմած կոչեսցի. սակայն*[2] *այլ է ողորմածն, և այլ է մարդասէրն. «Որ ողորմի աղքատին, ասէ ոմն իմաստուն, փոխ տայ Աստուծոյ*[3]*», այսինքն է թէ՝ հատուցանէ*[4] *նմա անդրէն։ Իսկ մարդասէրն հաւասար է Աստուծոյ. մարդասէր իսկ այն է՝ որ զայն՝ որ ոչ արասցէ նմա բարի, հաւասար սիրէ, իբրև զայն՝ որ բարի արարեալ է նմա. որպէս և ինքն Տէր՝ պատուիրէ մեզ ասելով*[5]*. «Բարի արարէք ատելեաց ձերոց, օրհնեցէք զանիծիչս ձեր, և լինիջիք նման Հօրն ձերոյ որ յերկինս է*[6]*». Իսկ վասն ողորմածաց այսպէս ոչ ասաց, այլ՝ թէ «Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւնն երկնից»*[7]։

ՃԼԷ. ՀԱՐՑ. *Ապա ասեն. թէ անիծանէ ոք քահանայ կամ կրօնաւոր, ո՞չ ինչ վտանգ է*։

ՊԱՏԱՍԽ. *Մեծագոյն վտանգ և չարաչար*[8] *յոյժ. զի զամենայն պնդս զոր հրամայեալ է մեզ Աստուած թէ մի՛ արասցես և մեք առնեմք, պատուիրանազանց եմք, և դատապարտիմք. քանզի ասաց*

1. Գ. օր. ունի այսպէս. Իսկ գովելի ողորմածն է, թէ այլ ոք առաքինի. Ե օր. Գովելի է ողորմածն, արդարն և մարդասէ՞րն, թէ այլ ինչ առաքինի։
2. Գ և Ե. օր. չունին ողորմած կոչեսցի. սակայն։
3. Առակք ԺԹ, 17։
4. Դ. օր. զի հատուցանէն։
5. Ե. օր. Իսկ ողորմածն այն է, որ զայն՝ որ ոչ արար նմա բարիս՝ հաւասար սիրէ, որպէս զայն՝ որ բարի արար նմա. որպէս և Տէրն ասաց։
6. Մատթ. Ե, 44, 45։
7. Մատթ. ԻԵ, 34. աստէն յ՚Գ օր. յաւելեալ է ի գրչէն և այս բան. արա վա՜յ ինձ հայր սուրբ, որ ամենայնիւ եմ պարտական. և զի՞նչ լինիմ. արա հայր գեհենին է ժառանգաւորն եմ։
8. Ե. օր. դնէ՝ չար։

Քրիստոս թէ «օրհնեցէք զանիծիչս ձեր», և Պաւղոս ասէ, «օրհնեցէք և մի՛ անիծանէք». և դու ոչ լուար ի Քրիստոսէ և ոչ Պաւղոսի, և անիծեցեր, դատապարտիս[1]։ Արդ., եթէ թագաւորն ասէր ցքեզ, և բողոք հարկանէր ամենեցուն և ասէր, եթէ որ զմեղանչականն իւր անարգեսցէ կամ՝ անիծեսցէ [2]դատապարտեալ պատժեսցի. կամ թէ 'որ զապանող ուրուք սպանանիցէ՝ մահու մեռանիցի. և դու ասէիր թագաւորին, թէ դու անիծեսջիր, և տայիր սուր ի ձեռս նորա՝ թէ դու սպան, ո՞չ ապաքէն չարաչար տանջէր զքեզ և ասէր. ես քեզ պատուիրեցի ոչ անիծանել և ոչ սպանանել, ապա թէ ո՛չ՝ դատապարտիս և մահու մեռանիցիս[3], և դու զի՞ս յորդորես անիծանել և սպանանել[4]. այնպէս և Աստուած զայնպիսին չարաչար դատապարտեսցէ[5], որք սովորեալ են ասել ընդ ոմանս, Աստուած անիծեսցէ[6] զքեզ, և Աստուած նզովեսցէ զքեզ։ Ո՛վ անմիտ և անիրաւ, Աստուած քեզ պատուէր ետ ոչ անիծանել, և դու ասասցես[7] թէ դու անիծեա. ո՞չ գիտես թէ զի՞նչ գործես. զի նա քեզ ասէ. եթէ անիծանես՝ դատապարտիս, և դու զնա առնես պարտական և ասես, թէ դու անիծեա. մեծ դատապարտութիւն գործես անձին քում. և ո՞չ գիտես թէ վասն այդորիկ չարաչար տանջելոց ես[8]։

1. Գ. օր. և դու որ ոչ Քրիստոսի լսես և ոչ Պաւղոսի որ քերեան էր Քրիստոսի, դատապարտիս. իսկ զյաջորդ բանսն համառօտ կարգէ։

2. Ե. օր. չունի դատապարտեալ պատժեսցի. կամ թէ զապանող ուրուք սպանանիցէ։

3. Ե. օր. չունի ապա թէ ոչ դատապարտիս և մահու մեռանիցիս։

4. Ե. օր. յաւելու՝ ամենայն։

5. Ե. օր. տանջեսցէ։

6. Ե. օր. անիծէ ... նզովէ։

7. Ե. օր. ասես։

8. Դ և Ե. օր. տանջիս։

ՃԼԸ. ՀԱՐՑ. Յորժամ հրամայէ գիր, եթէ արարէք թողութիւն մեղանչականաց. ասասցեն ոմանք ընդդիմաբանելով[1], եթէ Քրիստոս Յուդայի ընդէ՞ր թողութիւն ոչ արար։

ՊԱՏԱՍԽ. Չար է ապացուածդ այդ, քան զողորմութիւն, և առաւել չար. մի՛ թէ Քրիստոս ասա՞ց, թէ անդ ոչ տանջեցից զմեղաւորն կամ զչարարարն քո, կամ զայնոսիկ՝ որ նորա մեղանչեն[2]. այլ աստ՝ ոչ ինքն չար արար Յուդայի, և ոչ քեզ հրամայեաց չար առնել քում չարարարին։ Եւ արդ, կարե՞ս ասել թէ աստ ոչ արար թողութիւն Քրիստոս Յուդայի և այլ չարչարողաց[3]։ Զի եթէ ոչ էր թողեալ նոցա, բացեալ էր երկիր[4] զի կլեալ[5] էր զնոսա, առաքեալ էր հուր, և կիզեալ էր զնոսա[6]. այլ ոչ արար աստ չար ինչ նոցա, և ոչ քեզ հրամայեաց առնել, և ոչ եթէ ինքն չար արարեալ ումեք։ Բայց Պետրոս՝ յորժամ եհատ զունկն Մաղքոսի, ասաց Քրիստոս ցնա, «Եթէ համարիցիս եթէ ո՞չ կարեմ աղաչել զՀայր իմ, և հաւուցանիցէ[7] ինձ այժմ՝ աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց»[8]։ Այլ աստ ո՛չ արար չար նոցա, և ոչ իսկ եթէ չար միայն չարար, այլ մանաւանդ աղօթէր վասն նոցա և ասէր. «Հայր, թո՛ղ դոցա՝ զի ոչ գիտեն զի՞նչ գործեն[9]»։ Եւ որ դարձաւ ի չարչարողացն և հաւատաց ի նա, ած[10] յայտնութիւնն իւր.

1. Գ. օր. չունի ոմանք ընդդիմաբանելով։
2. Գ. օր. որ նմա մեղան։
3. Դ և Ե. օր. չարչարաց։
4. Գ. օր. դնէ՝ անդրանդր. իսկ Ե. օր. յաւելու՝ զբերան իւր։
5. Դ. օր. կլլեալ։
6. Գ և Դ. օր. չունին առաքեալ էր հուր և կիզեալ էր զնոսա։
7. Ե. օր. հաստուցէ։
8. Մատթ. ԻԶ, 53։
9. Ղուկ. ԻԳ, 34։
10. Ե. օր. ետոյց։

և դու զայս ամենայն լուար, և համարձակի՞ս ասել՝ թէ ոչ արար Քրիստոս թողութիւն Յուդայի։ կարի յոյժ արար. և անդ տանջելոց է զամենայն մեղաւորս, [1]և զնա իսկ սոյնպէս. և մնանաւանդ որք զայսպիսի բանս համարձակին ասել, առաւելապէս դատապարտեսցէ։ իսկ դու՝ եթէ մեղանչականին քում արասցես թողութիւն, թողցին ամենայն յանցանքն քո, և նա թէ այլ ինչ յանցանք գործեալ իցէ՝ այնու դատապարտեսցի։

ՃԼԹ. ՀԱՐՑ. Եթէ ոք ճանաչէ զոք զի յանցանս գործեալ իցէ ի ծածուկ, պա՞րտ է յանդիմանել, թէ ոչ։

ՊԱՏԱՍԽ. Ոչ ամենեւին, այլ պարտ է քահանային ասել, զի նա միայն գիտէ զդեղ հիւանդութեան նորա. իսկ դու յորժամ յանդիմանես զնա և համբաւի գործ չարեաց[2] նորա և իմասցի, զի լուր եղեւ յանցանք նորա, առնու համարձակութիւն, և անպատկառելի մնասցէ, և լրբի և անամաչելի լինիցի[3] այնուհետեւ ի մարդկանէ, և ի մեղս մնասցէ, և պատճառ դու եղեր նորա յանցանացն։ Այլ եթէ յանդիմանել կամիցիս զնա, առ զնա մեկուսի, եթէ դու ոչ իցես յանցաւոր, և արտասուեա և աղաչանօք խրատեա, զի մի՛ եւս այլ գործեսցէ. ապա թէ ոչ՝ յանդիմանել զնա ի մէջ ընկերաց՝ ոչ է պարտ, ապա թէ ոչ՝ դատա-

1. Գ. օր. աստանօր այլապէս կարգէ զբանն. զի թէ Քրիստոս ի ծագման տեղւոջ ոչ էր առաջեալ. Յուդա, դարձ յաղագս չարութեան. և ոչ լուսեալ շղարշածէր և զհաւատարմութիւնն Քրիստոսի ի զէմս ամենայն մարդոյ, ապա անպարտ էր ամենի թանձրանացն. եթէ դու մեղանչականին քո թողացուսցես, թողցի և ամենայն յանցանքն քո. և նա որ մեղաւն քեզ՝ եթէ ոչ շղջասցի ի չարեացն և զխորովն ասպնիսցի զնէր և զխաղաղութիւն առ քեզ, թողուլն քո զյանցանս նորա՝ յառելուած թանձրանաց նմա լիցի և ամէն փեճենի և քեզ պաակոց. զի որպէս ի քեն պահանջէ զթողուլն, այնպէս և յընկերէն քում. այդպէս խնդրէր և զՅուդայէն։

2. Ե. օր. չարութեան։

3. Ե. օր. անպատկառ մնայ, և լրբի և անամօթ մնայ։

*պարտիս և հաղորդ լինիս նորա յանցանացն. զի եթէ բամբասելն չար է, որչափ ևս առաւել յանդիմանելն։ Եւ ոչ եթէ որ բամբասէ միայն, այլ և որ իգացուցանէ զլսելիս իւր առ ի լսել զբամբասանս ընկերին։*

**ՃԻ. ՀԱՐՑ.** *Եւ արդ, որպէս բամբասելն չար է, այնպէս և որ լսէ զբամբասանս՝ չա՞ր է։*

**ՊԱՏԱՍԽ.** *Այո, ասէ, որ լսել յօժարի*[1]*, հաղորդ է բամբասանաց ախտին. բամբասանքն չարահոտութիւն*[2] *է, յորժամ անցանէ ոք ի կողմն յայն*[3]*՝ ուր իցեն գարշահոտութիւնք*[4]*, ո՞չ ապաքէն խնու զհոտոտելիսն՝ զի մի՛ լցեալ լինիցի գարշահոտութեամբն. այնպէս պարտ է խնուլ ըղձմունս ականջացն*[5] *և ոչ լսել զգործս գարշելիս։ Արդ, զի՞նչ օգտեսցի ոք առ ի լսել, եթէ այս անուն չնացաւ, կամ այս անուն պոռնկեցաւ. միւսն գողացաւ*[6]*, և միւսն արուագէտ եղեւ։ Արդ, եթէ գարշահոտութիւն ինչ ուրուք ծածկեալ իցէ, և ոք բրեալ բանայ զնա և բուրէ գարշահոտութիւնն, ո՞չ ապաքէն իւրաքանչիւր ոք խնու զհոտոտելիս իւր և փախչի ի տեղւոջէն յայնմանէ, և զայն որ երաց բուրեաց զհոտն զայն՝ թշնամանեսցեն և անարգեսցեն։ Այնպէս պարտի առնել*[7] *և վասն այնորիկ՝ որ բամբասեն զընկերն առ քեզ։ Խից*[8] *զունկն քո և պարսաւեա զնա և ասա. ոչ կամիմ լսել զբամբասանս եղբօրն. և ապա բարի լինիցի քեզ յԱստուծոյ։*

**ՃԻԱ. ՀԱՐՑ.** *Եթէ ոք հարկանէ զաղքատն կամ առցէ ինչ ի նմանէ, զի՞նչ լինիցի։*

1. Դ և Ե. օր. գնեն՝ որ լսէ և որ լսել յօժարէ։
2. Գ. օր. ժահահոտութիւն։
3. Յօր. ի կողմանն յայն ոչ, եդաք ըստ Գ. օր։
4. Դ. օր. գարշութիւն, այսպէս և որ զկնի։
5. Գ. օր. զլսելիս։
6. Գ. օր. այլք գողացան։
7. Գ. օր. առնել։
8. Գ. օր. խցեա։

ՊԱՏԱՍԽ. *Մեծատունն այն՝ թէպէտեւ աղքատին ոչ ետ, բայց և ոչ էառ իսկ ի նմանէ. իսկ ապա*[1] *որ առնու՝ առաւել եւս մեծապէս ի չարաչար տանջի քան զմեծատունն. և զի՞նչ լինիցի, ասէ, այլ չարաչար տանջանս քան զայն՝ որ կարօտանայր կաթի միոյ*[2] *ջրոյ ի մէջ հրոյն: Կարի այլ չարագոյն տանջանք իցէ, և առաւել եւս չար*[3]*: Իսկ որ զաղքատն հարկանէ, ինձ այսպէս թուի՝ թէ ընդ այնոսիկ համարեսցի՝ որ զՔրիստոս ապտակեցին. զի թէ Քրիստոս ասաց, «Որովհետեւ արարէք միում յեղբարցս յայսցանէ՝ ինձ արարէք*[4] *», քաջայայտ է, զի թէ բարի արարեր աղքատին, Քրիստոսի արարեր*[5]*. և թէ զաղքատն ապտակեցեր, զնա ապտակեցեր: Քանզի այնոքիկ որ ըզՔրիստոս ապտակեցին, ոչ Աստուած խոստովանեցան և ոչ Որդի Աստուծոյ, այլ մոլորեցուցիչ. և վասն ուրացութեանն՝ առաւելապէս տանջեսցին: Իսկ եթէ զնա Աստուած խոստովանեալ էին, այլ բնաւ ոչ համարձակեալ էին կատակել զնա, թող թէ ապտակել կամ խաչել: Զի թէ թագաւորն Թէոդոս առաքեաց զպատկեր իւր յԱնտիոք, և նոքա ապտակեալ խորտակեցին զնա, ո՞չ ապաքէն չարաչար հալածեաց զամենայն քաղաքն: Եւ արդ, Քրիստոս ոչ այնպէս, այլ զաղքատս առաքեաց և պատուիրեաց ասելով, թէ « Որովհետեւ արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ, ինձ արարէք »*[6]*, և դու ապտակեա՞ս, զի՞նչ լինիցիս, եթէ ոչ ընդ Հրեայսն տանջեսցիս, որք զՔրիստոս ապտակեցին*[7]*:*

1. Գ. օր. այն:
2. Ե. օր. կաթիլ մի:
3. Գ. օր. չունի Կարի այլ չարագոյն տանջանք իցէ, և առաւել եւս չար. իսկ Ե. օր. չունի միայն և առաւել եւս չար:
4. Մատթ. ԻԵ, 40:
5. Ե. օր. դնէ. յայտ է թէ բարի թէ չար՝ զայն Քրիստոսի արարեր. և չունի մինչև ցապտակել կամ խաչել:
6. Ե. օր. զոր ինչ միում առնիցէք, այն ինձ է համարեալ:
7. Դ. օր. դնէ՝ որք զաղքատս ապտակեսցեն:

Իսկ եղիցի մեզ և սիրովն Քրիստոսի ընդունել զաղքատս և զտնանկս, և լնուլ զկարօտութիւն պիտոյից նոցա, ըստ հրամանի Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր և սուրբ Հոգւոյն վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն[1]։

1. Գ. օր դնէ՝ և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք ընդ Հօր և ընդ Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս. Դ և Ե. օր. Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։



## ԻԴ

### ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԱԹԱՆԱՍԻ[1]

*Ամենայն ոք որ կամի փրկիլ, նախ քան զամենայն պիտոյ է՝ զի կալցի զկաթուղիկէ[2] զհաւատն. զոր թէ ոք ոչ[3] ամբողջ և անբիծ[4] պահեսցէ, առանց երկբայելոյ[5] յաւիտեան կորիցէ[6]. իսկ հաւատն կաթուղիկէ[7] այս է. զմի Աստուած յԵրրորդութեան[8] և զԵրրորդութիւն ի միութեան[9] պատուեսցուք. և ոչ շփոթելով զանձինսն և ոչ զէնթակայութիւն բաժանելով[10]. քանզի այլ է անձն Հօր և այլ Որդւոյ և այլ Հոգւոյն սրբոյ. այլ[11] Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ՝ մի է աստուածու-*

1. Բ. օր. Դաւանութիւն ուղղափառ հաւատոյ, ասացեալ մեծին Աթանասի գերագունց հայրապետի Աղեքսանդրու։
2. Բ և Գ. օր. զի ունիցի ուղղափառ։
3. Բ և Գ. օր. ոչ խորտակեսցէ ոք։
4. Բ և Գ. օր. անարատ։
5. Բ. օր. տարակուսի. Գ. օր. երկբայութեան։
6. Գ. օր. աստէն յաւելու՝ այս է կորնչելի հաւատ, զոր եթէ ոչ խորտակեսցէ ոք հաստատութեամբ և հաստատապէս հաւատասցէ, ոչ կարասցէ փրկել. Գ. օր. մինչեւ ցայս վայր կարմրադեղիւ գրեալ էր ըստ խորագրին։
7. Բ և Գ. օր. ուղղափառ.
8. Բ և Գ. օր. Զի զԱստուած Երրորդութիւն։
9. Բ և Գ. ի միութիւն։
10. Բ և Գ. օր. Բայց զանձինսն մի՛ շփոթեսցուք, և զգոյացութիւն մի՛ որոշեսցուք։
11. Բ. օր. Բայց. իսկ յԳ. օր. պակասի՝ այլ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

*թիւն, հաւասար փառք և յաւիտենակից[1] մեծութիւն։ Որպէս Հայր՝ նոյնպէս Որդի, նոյնպէս Հոգին սուրբ[2]։ Անստեղծ[3] Հայր, անստեղծ Որդի, անստեղծ Հոգին սուրբ[4]։ Յաւիտենական է Հայր, յաւիտենական Որդի, յաւիտենական սուրբ Հոգին. և սակայն ոչ երիս յաւիտենականս[5], այլ մի յաւիտենական. որպէս և ոչ երիս անստեղծս և երիս անչափս[6], այլ մի անստեղծ և մի անչափ։ Նմանապէս ամենակարող է Հայր, ամենակարող Որդի, ամենակարող սուրբ Հոգին[7]. և սակայն ոչ երիս Աստուածս[8] այլ մի Աստուած։ Այսպէս Տէր Հայր, Տէր Որդի և Տէր Հոգին սուրբ. և սակայն ոչ երիս տէարս, այլ մի է Տէր. զի որպէս առանձնաբար զիւրաքանչիւր անձն Աստուած կամ տէր խոստովանել քրիստոնէական ճշմարտութեամբ բռնադատիմք, այսպէս երիս աստուածս կամ երիս տէարս ասել՝ կաթուղիկէ կրօնիւք արգելիմք[9]։ Հայր ոչ յումեքէ արարեալ[10] և ոչ ստեղծեալ, և ոչ ծնեալ. Որդի ի Հօրէ միայնոյ[11]՝ ոչ արարեալ և ոչ ստեղծեալ, այլ ծնեալ. Հոգին*

1. Բ և Գ. օր. յաւէտակից.
2. Բ և Գ. օր. Նոյնպէս է Որդի, նոյնպէս է և Հոգին սուրբ։
3. Բ և Գ. օր. յաւելուն՝ է։
4. Բ և Գ. օր. աստէն յաւելուն՝ անչափ է Հայր, անչափ Որդի, անչափ Հոգին սուրբ։
5. Բ և Գ. օր. ոչ են երեք յաւիտենականք։
6. Բ և Գ. օր. որպէս ոչ են երեք անստեղծք և ոչ երեք անչափք։
7. Բ. օր. յաւելու աստէն. սակայն ոչ են երեք ամենակալք, այլ մի ամենակալ։ Նոյնպէս Աստուած է Հայր, Աստուած Որդին, Աստուած Հոգին սուրբ։
8. Բ և Գ. օր. ոչ են երեք Աստուածք։
9. Բ և Գ. օր. զի որպէս քրիստոնէական ճշմարտութեամբ բռնադատիմք խոստովանել զիւրաքանչիւր անձն առանձինն Աստուած և Տէր, նոյնպէս կաթողիկէ կրօնիւք արգելեալ ասելոյ երիս աստուածս և տէրս.
10. Բ և Գ. օր. է եղեալ։
11. Բ և Գ. օր. միայն է։

սուրբ ի Հօրէ՝ ոչ արարեալ և ոչ ստեղծեալ և ոչ ծնեալ, այլ բղխեալ. ապա մի Հայր[1]՝ ոչ երիս Հարս, մի Որդի, ոչ երիս որդիս, մի Հոգի սուրբ, ոչ երիս Հոգիս սուրբս։ [2]Եւ ի սոյն Երրորդութիւնս՝ ոչ ինչ առաջին կամ վերջին, ոչ ինչ մեծ կամ կրսեր. այլ բոլոր երեք անձինք յաւիտենական ինքեան իցեն և համահաւասարք։ Այսպէս, զի ամենայնիւ որպէս արդէն վերագոյն ասացաք, և միութիւն Երրորդութեան և Երրորդութիւն ի միութեան պատուելոց է. որ կամի փրկեալ լինել այսպէս զԵրրորդութենէն իմասցի։ Այլ հարկա-

1. Բ և Գ. օր. ապա ուրեմն մի է Հայր, և։

2. Բ. օր. սատ ի սկսեալ մինչև ի բանն՝ պատուելոց է, այսպէս ունի. Եւ ի սոյն Երրորդութեանս, ոչ է իր ինչ մեծ կամ փոքր, այլ ամենայն երեք անձինքն յաւիտենականք են միմեանց և հաւասարք. որք, ամենևին որպէս վերոյասացեալ է, միութիւն յԵրրորդութեանն և երրորդութիւն ի միութիւն պատուեսցի. ապա ուրեմն՝ որ կամի փրկիլ, այսպէս յաղագս Երրորդութեան խորհեսցի։ Բայց հարկաւոր է առ ի յաւիտենական փրկութեան՝ զի խոստովանիցի ու ուղղափառապէս հաւատասցէ զմարմնեղութիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. արդ ուրեմն ուղիղ հաւատ է՝ զի հաւատասցուք և խոստովանեսցուք՝ զի Տէր մեր Յիսուս Քրիստոս, Աստուած և մարդ է։ Աստուած է ի գոյացութենէ Հօր՝ նախ քան զյաւիտեանս ծնեալ. և մարդ՝ ի գոյացութենէ մօր՝ ժամանակաւ ծնեալ. կատարեալ Աստուած և կատարեալ մարդ՝ գոյացեալ ի բանական հոգւոյ և ի մարդկային մարմնոյ։ Հաւասար Հօր ըստ աստուածութեան (Գ. օր. յաւելու՝ և փոքր քան զՀայր ըստ մարդկութեան) և թէպէտ իցէ Աստուած և մարդ, սակայն ոչ երկուս՝ այլ մի Քրիստոս։ Մի է իսկ ոչ փոփոխմամբ աստուածութեանն ի մարմին, այլ առմամբ մարդկութեան յԱստուած։ Մի է ամենևին, ոչ շփոթմամբ գոյացութեան, այլ միութեամբ անձին. զի որպէս հոգի բանական և մարմին մի մարդ է, նոյնպէս Աստուած և մարդ մի Քրիստոս է, որ չարչարեցաւ վասն մերոյ փրկութեան, էջ ի դժոխս և յերրորդ աւուր յարեաւ ի մեռելոց, համբարձաւ յերկինս և նստի ընդ..... (յօրինակին թուղթ անկեալ էր. իսկ Գ օր. յառաջ վարէ) աջմէ Հօր ամենակարողի։ Անտի գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս. ի գալստեան նորա ամենայն հոգիք մարդկան յարիցեն համդերձ մարմնովք իւրեանց և տացեն համարս յաղագս յատուկ գործոց իւրեանց. և որոց բարիս գործեալ իցէ՝ երթիցեն ի կեանս յաւիտենականս, և որոց չարս՝ ի հուրն յաւիտենական։

ւոր է առ ի յաւիտենական փրկութիւն, զի մար-
մնաւորութեան եւս Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-
տոսի հաւատարմապէս հաւատացէ. իսկ հաւատ
ուղիղ զի հաւատասցուք և խոստովանեսցուք, վասն
զի Տէր մեր Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ,
Աստուած և մարդ է. Աստուած է ի յէութենէ
Հօր, յառաջ քան զյաւիտեանս ծնեալ. մարդ է ի
յէութենէ մօրն՝ ի յաւիտեանս ծնեալ. կատարեալ
Աստուած, կատարեալ մարդ՝ ի հոգւոյ բանականէ,
և մարդկային մարմնոյն ենթակայացեալ. հաւա-
սար Հօր՝ ըստ աստուածութեան. կրսեր Հօր՝ ըստ
մարդկութեան. որ թէպէտ Աստուած իցէ և մարդ,
սակայն ոչ երկու՝ այլ մի է Քրիստոս. մի իսկ՝ ոչ
շարժմամբ աստուածութեանն ի մարմնի, այլ ա-
ռեցութեամբ մարդկութեան՝ Աստուած. մի ամե-
նեւին ոչ շփոթութեամբ բնութեանցն, այլ միու-
թեամբ յանձին. քանզի որպէս ոգի բանական և
մարմին մի մարդ է, այսպէս Աստուած և մարդն
մի Քրիստոս է. որ չարչարեցաւ վասն մերոյ փրր-
կութեան, էջ ի դժոխս, յերրորդ յաւուր յա-
րեաւ ի մեռելոց. համբարձաւ յերկինս, նստի
ընդ աջմէ Հօր ամենակարողի. անտի գալոց է դա-
տել զկենդանիս և զմեռեալս. յորոյ գալուստն՝ ա-
մենայն. մարդիկ յառնել ունին մարմնովք ի-
րեանց, և հատուցանելոց իցեն վասն գործոց ի-
րեանց համարս. և որք զբարիս գործեալ իցեն՝
երթիցեն ի կեանս յաւիտենականս։



# ԻԵ

## ՑԱՂԱԳՍ ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ

### Ի ԳՐՈՑ ՍՐԲՈՑՆ ԱԹԱՆԱՍԻ

*Թագաւորն Սաղիմ ըստ անուան քաղաքին Սաղիմայ անուանեցաւ Սաղիմ: և ծնաւ զԱսաղայ՝ և Ասաղայ ծնաւ զՄելքին. և Մելքին ծնաւ երկուս որդիս, և զմին անուանեաց ըստ անուան իւրոյ Մելքին, և զմիւսն անուանեաց Մելքիսեդեկ: Եւ հայրն սիրէր զՄելքին զերէց որդին, իսկ մայրն զՄելքիսեդեկ:*

*Եւ հայրն իւրեանց Մելքի Թագաւոր էր և հաւատովն հեթանոս, և զոհ մատուցանէր երկոտասան կռոց: Եւ յորժամ՝ եհաս ժամանակ զոհիցն,*

### ՅԻՇԱՏԱԿ ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ

Զոր եւ պատմեն ոմանք այսպէս[1]

(*Ըստ* Բ *և* Գ *օրինակաց*)

Թագաւորն Սաղիմ շինէ քաղաք[2] և կոչէ ըստ անուան իւրում Սաղիմ, և ծնանի զՄելքին. և Մելքի առ իւր կին զՍաղայ[3] և ծնաւ ի նմանէ որդի և անուանեաց ըստ անուան իւրոյ Մելքի: Եւ դարձեալ ծնաւ որդի, և անուանեաց Մելքիսեդեկ: Եւ հայրն սիրէր զՄելքի, և մայրն սիրէր զՄելքիսեդեկ: Եւ յաւուր միում ի տօնի աստուա-

1. Գ. օր. որ է՝ Ժ. ՅԱՅՍՄ. դրշագրատան վանացս, ունի այսպէս. (Մարտի ԻԷ և Ապրիլի ԺԷ) *Յիշատակ մեծին Մելքիսեդեկի ի գրոց սրբոյն Հեսիքոսի համառօտեալ.* Իսկ այլ օր. ՅԱՅՍՄԱՒՈՒՐԱՑ առհասարակ առանց անուան հեղինակի:

2. Գ. օր. ունի այսպէս. Յառաջագոյն յառաջինն Թագաւորն Սաղէմ շինեցաւ ընել էր քաղաք:

3. Յոր. զՋաղայ:

ասէ Թագաւորն ցՄելքիսեդեկ. Առ զծառայս զկնի քո, և երթիջիր ի Նախիրան, և բեր եւթն արջառ՝ զի մատուսցուք զոհ աստուածոցն։ Եւ յորժամ երթային ընդ ճանապարհն, Մելքիսեդեկ հայեցաւ յերկինս և ետես զարեգակն, և ի միտ առնոյր զաստեղս և զլուսինն, և ասէր. որ արար զերկինս և զերկիր և զամենայն որ ի նոսա, պարտ է երկիր պագանել և մատուցանել պատարագս, զի այնպէս երեւի ինձ ի նշանաց երկնից, որ այնոցիկ արարողն է՝ ի վերայ նոցա հանգուցեալ. և նա է անապական և անմահ, աներեւոյթ, միայն Աստուած. և գիտէ զխորհուրդս մարդկան և ըղմիրտս, և նմա արժան է զոհս մատուցանել. գնացից առ հայրն իմ և պատմեցից նմա, թերեւս լուիցէ ինձ։ Եւ դարձաւ առ հայրն իւր, ոչինչ ունելով զկնի իւր։ Եւ տեսեալ զնա հայրն՝ ասէ. Ո՞ւր իցեն եւթն արջառքն։ Ասէ Մելքիսեդեկ. մի՛ բարկանար հայր իմ թագաւոր, լո՛ւր բանից իմոց։ Եւ նա ասէ. զոր ինչ կամիս ասել՝ ասա։ Ասէ Մելքիսեդեկ. Զզոհս զոր կամիս մատուցանել այս աստուածոցս, ոչ երեւին ինձ թէ աստուածք իցեն. այլ մատուսցուք պատարագ մեծին Աստուծոյ, որ հանգուցեալ է ի վերոյ քան զերկինս, զի նա է Աստուած աստուծոց։ Եւ հայրն բարկացեալ ասէ.

ծոցն, ասէ հայրն ցՄելքիսեդեկ. Ե՛րթ որդեակ ի Նախիրն, և բեր մեզ զուարակս եւթն և խոյս տասն, զի մատուսցուք ողջակէզս աստուածոցն։ Եւ գնաց Մելքիսեդեկ. և ի ճանապարհին մտախորհ լեալ՝ ասէ. Զի՞նչ են կուռքն անշունչք որ ումեք օգնել ոչ կարեն. գնացից առ հայրն իմ, և ասացից նմա, թերեւս լուիցէ ինձ։ Եւ դարձաւ առ հայրն և ասէ. Հա՛յր, ընդէ՞ր կորուսանեմք զանասունս մեր զոհելով կռոցն, որ ոչ ումեք օգնել կարեն, և բարի առնել կամ չար. այլ Աստուծոյ պարտ է զոհել, որ արար զերկինս և զերկիր և զամենայն որ ի նոսա։ Եւ բարկացեալ[1] հայրն ի վերայ Մելքիսեդեկի, և ասէ. եթէ ոչ երթեալ բերցես

Ճ. Գ. օր. Բարլացու։

*երթիջիր, և արա զոր հրամայեցի քեզ, ապա թէ ոչ մեռանիս։ Եւ գնաց Մելքիսեդեկ ի նախիրսն։ Եմուտ թագաւորն Մելքի՝ առ թագուհին Սաղիմ կինն իւր, և ասէ. Եկեսջիր և մատուսցուք զոհս աստուածոցս՝ զմի յորդւոց մերոց։ Եւ իբրեւ լուաւ զայն կինն, հառաչեաց, զի գիտաց որ ոխս պահեաց Մելքիսեդեկի, որ անգոսնեաց զնա՝ վասն կռոցն, և պատճառանօք զոհիցն կամի սպանանել զնա, և ասէ։ Վա՜յ ինձ, վա՜յ ինձ. զի ցաւօք ծնայ և ի գիրկս իմ սնուցի, և ստեամբս իմով դիեցուցի. եղեն ընդունայն աշխատանքն իմ։ Եւ տեսեալ զնա այր իւր, զի ողբայր, և ասէ ցնա. Մի՛ լար, այլ եկ և ընկեսցուք վիճակս, և եթէ ինձ ելցէ վիճակն, ես ընտրեցից յորդւոց իմոց զոր կամիմ, և մատուսցուք զոհս աստուածոց մերոց· և եթէ քեզ ելանէ վիճակն, զոր կամիս ընտրեա և զոհեա։ Եւ զայն արար թագաւորն կարծելով թէ կնոջն ելցէ վիճակն· և ել վիճակն ինքեան, և նա ընտրեաց զՄելքի ի զոհս։ Եւ թագաւորն երկեաւ գայթակղեցուցանել զաստուածսն իւր, և ետ ի զենումն զՄելքի զոր սիրէրն։ իսկ Մելքիսեդեկ տարաւ զեւթն արջառսն։ Եւ առեալ թագաւորն*

զոր ասացի քեզ, փոխանակ անասնոցն՝ զքեզ զոհեցից աստուածոցն։ Եւ գնաց Մելքիսեդեկ բերել ըստ հրամանին։ Եւ ասէ թագաւորն Մելքի ցթագուհին[1] Սաղիմ. Ե՛կ և զմի յորդւոց մերոց մատուսցուք զոհ աստուածոց մերոց։ Եւ թագուհին սկսաւ լալ, զի գիտաց եթէ ոխս ունի ընդ Մելքիսեդեկի վասն բանիցն զոր ասաց։ Եւ ասէ. Վա՜յ ինձ, զի ցաւօք և երկամբք ծնայ և աշխատութեամբ սնուցի, և ահա ընդունայն եղեւ ամենայնն։ Եւ թագաւորն կամեցաւ մխիթարել զթագուհին և ասէ. Մի՛ տրտմիր թագուհի, այլ արկցուք վիճակ, թէ ինձ ելանէ՝ մատուսցուք զորդին իմ, և թէ քեզ՝ մատուսցուք զորդին քո. զի կարծէր եթէ կնոջն ելանէ վիճակն։ Եւ արկին վիճակ՝ և ել վիճակն թագաւորին, և պատրաստեցին զենուլ զպատանին։ Եւ եկն Մել-

1. Գ. օր. առ թագուհին։

զՄելքի զորդին իւր և զարջառն, գնաց ամենայն ազգականօքն իւրովք ի մեհեանս կռոցն. և էին ժողովեալ անդ ի զոհսն՝ հինգ հարիւր և երեք մանկունս՝ զոր տարան հարքն իւրեանց զոհել, և այլ բազում արջառս և ոչխարս, որ ոչ գոյր թիւ։ Իբրև սկսան զենուլ զմանկունսն, ասէ Թագուհին Սաղիմ մեծաւ աղաղակաւ. Որդեակ իմ Մելքիսեդեկ, ո՞չ ողորմիս եղբօրն քո՝ զոր ծնայ և սնուցի, և տանին ի զենումն անծանօթ աստուծոյն, որ ոչ է աստուած այլ դեւք։ Եւ զայն լուեալ Մելքիսեդեկ ի մօրէն իւրմէ, ելաց դառնապէս և ասէ ցմայր իւր. Գործք իմ են գնալ աստէն այսօր։ Եւ ընթացեալ առժամայն ել ի Թաբովր ի լեառնն. և մայրն գնաց ի մեհեանն կռոց՝ տեսանել զորդին իւր նախ քան զզենումն։ Իսկ Մելքիսեդեկ ելեալ ի լեառնն և զծունկն իւր յերկիր եդեալ և զձեռս իւր յերկինս համբարձեալ[1] և ասէ. Աստուած ամենայնի, արարիչ երկնի և երկրի. զքեզ աղաչեմ միայն ճշմարիտ Աստուած. լո՛ւր ինձ ի ժամուս յայսմիկ, և արա՛

քիսեդեկ և երեր զզուարակսն և զխոյսն և զնոխազսն. և ժողովեցան ամենայն ազգատոհմ Թագաւորին ի զենումն Մելքեայ[2]. և ոչ ոք մնաց յազգէ նոցա որ ոչ եկին անդ։ Ժողովեցին և այլ բազում մանգունս. և անասնոցն և ոչ գոյր թիւ։ Եւ գնացին ամենեքեան ի տուն կռոցն. և ասէ մայրն ցՄելքիսեդեկ. Ո՞չ ինչ ցաւէ քեզ, զի զեղբայրն քո զենուն. ընդէ՞ր ոչ աղաչես զԱստուածն քո զի թերեւս փրկեսցէ զնա։ Եւ ասէ Մելքիսեդեկ. Գործ է իմ այսօր երթալ կալ յաղօթս առ Աստուածն իմ։ Եւ ել նա ի գլուխ լերինն Թափովրայ[3]. և եդեալ զծունկս իւր յերկիր, և համբարձեալ զձեռս իւր առ Աստուած. և յանկարծակի եղեւ մէգ և մառախուղ, և շարժեցաւ երկիրն[4]՝ ընկղմեցաւ քաղաքն առ հասարակ, և ոչ ոք մնաց յազգէ Մելքիսեդեկի, ոչ այր և ոչ

1. Յոր. համբարձեալ։
2. Գ. օր. չունի է զինուոն Մելքեայ, այլ գնէ՝ և Բարեհանի։
3. Բ. օր. Թաբովրայ։
4. Բ. օր. շարժեցաւ երկիրն։

զմեհեան զոհից նոցա՝ (զի) դժոխք կլանիցէ զամենեսեան որք գնացին ի զենումն եղբօր իմոյ Մելքեայ։ Եւ լուաւ Աստուած Մելքիսեդեկի, և եկուլ երկիր զծնողսն և զազգատոհմն և զամենայն քաղաքացիսն, և ոչ մեհեան և ոչ բագինք, ոչ այր և ոչ կին և ոչ անասուն մնաց։ Նոյնպէս և քաղաքն ընկղմեցաւ յանդունդս. և ոչ տունկ և ոչ ծառ մնաց, այլ զամենայն եկուլ երկիր՝ և անյայտ եղեաւ։ Եւ իջեալ Մելքիսեդեկ ի Թաբօրական լեռնէն, և ետես զեղեալ գործսն Աստուծոյ, և գիտաց որ լսելի եղեն աղօթք իւր։ Ցահի լեալ և մեծաւ երկիւղիւ դարձաւ և ել ի Թաբօրական լեառն, և եմուտ յանտառն ի խուռն մայրսն. և եկաց անդ ամս եւթն. և եղեն եղնգունք ձեռացն կէս թզոյ, և հեր գլխոյն մինչեւ ի ծունկսն. և թիկունքն որպէս կրիայի. կերակուրք նորա էր ծայրք ոստոց ծառոց, և փոխանակ ջրոյ լիզէր զցօղ դալար խոտոյ։ Եւ յետ եւթն ամաց ձայն եղեւ առ Աբրահամ՝ յերկնից։ Եւ ասէ Աբրահաս. զի՞նչ իցէ Տէր։ Եւ ասէ Տէր ցԱբրահամ. Պատրաստեա զէշ քո, և առ ընդ քեզ հանդերձս մեծագինս և մկրատ և ածելի, և ել ի Թաբօրական լեառնն, և ձայնեա բարձր աղաղակաւ երիցս անգամ. Ա՜յր

կին։ Եւ էջ Մելքիսեդեկ ի լեռնէ անտի, և տեսեալ ընկղմեալ զքաղաքն իւր, երկեաւ և ել ի լեառն Թափովր, և եմուտ յանտառն. և ուտէր զծայրս ծառոց, և ըմպէր ի ցօղոյ երկնից, և ներկեաւ մարմին նորա, և բուսաւ մազ ընդ ամենայն մարմինն և ծածկեաց զնա. և աճեցին[1] եղենգունք ձեռացն և ոտից նորա[2] իբրեւ թիզ մի[3]. և եկաց յանտառին ամս եւթն. և յետ եւթն ամաց, երեւեցաւ Աստուած Աբրահամու և ասէ. Ա՛ռ ընդ քեզ հանդերձ և կերակուր և ածելի և մկրատ. և ել ի լեառն Թափովր[4], և ձայնեա երիցս անգամ. Ա՜յրդ Աստուծոյ։ Եւ եկեսցէ առ քեզ

1. Գ. օր. հերձ Նորա և։
2. Գ. օր. յաւելու Երջանկացն։
3. Այլ օր. Բեղաղաֆ։
4. Այլ օր. Զեբինեայ։

Աստուծոյ։ Եւ ելցէ այր մի վայրենացեալ. և մի՛ երկնչիր ի նմանէ, այլ ած զհեր գլխոյն, և հար-թեա՛ զեղնկունսն և զգեցո՛ հանդերձս. և օրհնեսցէ ղքեզ։ Եւ արար Աբրահամ որպէս հրամայեցաւ նմա ի Տեառնէ։ Եւ գնաց ի Թաբօր լեառնն և եկաց մերձ յանտառին. աղաղակեաց երիցս ան-գամ. Ա՛յրդ Աստուծոյ։ Եւ ել Մելքիսեդեկ յան-տառէն. և տեսեալ Աբրահամ երկեաւ։ Ասէ Մել-քիսեդեկ. Մի՛ երկնչիր. ո՞վ իցես, և զո՞վ խըն-դրես։ Ասէ Աբրահամ. Հրամայեաց ինձ Տէր Աս-տուած ածել զհերսդ և հարթել զեղնկունսդ, և զգեցուցանել քեզ հանդերձ, և դու օրհնեսցես զիս։ Ասէ Մելքիսեդեկ. Զոր ինչ հրամայեաց քեզ Տէր Աստուած[1], արասջիր։ Եւ Աբրահամ արար ըստ հրամանի Տեառն։ Եւ յետ երից ա-ւուրց իջին ի լեառնէն. և առեալ Մելքիսեդեկ եղջիւր՝ ձիթով դրօշմեաց անուամբն Աստուծոյ. օրհնեաց զնա և ասէ. Օրհնեալ ես դու Աբրահամ յԱստուծոյ բարձրելոյ, և ոչ եւս յայսմհետէ ա-նուանեսցիս Աբրահամ, այլ լիցի անուն քո Ա-բրաամ։ Եւ դարձեալ նոյն ձայն եղեւ յերկնից առ Աբրաամ։ Եւ ասէ Աբրաամ. Զի՞նչ իցէ Տէր իմ։ Եւ ասէ Տէր ցԱբրաամ. վասն զի ոչ ոք յազգէ

յանտառէն այր մի վայրենաձեւ, ահաւոր կերպարանաւ. և դու մի՛ զարհուրիր ի նմանէ, այլ ա՛ծ զհեր գլխոյ նորա և հարթեա զեղենգունս ձեռացն և ոտից նորա, և զգեցո՛ նմա հանդերձ, և տո՛ւր կերակուր, և նա օրհնեսցէ զքեզ, զի քահանայ Աստուծոյ բարձրելոյ է նա, անհայր, անմայր չհամարեալ յազգս։ Եւ արար Աբրահամ զամենայն զոր հրամայեաց նմա Տէր. և ել ի լեառն Թափովր, և ձայնեաց երիցս անգամ, Ա՛յրդ Աստուծոյ։ Եւ ել յանտառէն այր մի գազանաձեւ. և տեսեալ Աբրահամ զարհուրեցաւ։ Եւ ասէ ցնա. զի՞նչ խնդրես։ Եւ ասէ Աբրահամ. հրամայեաց ինձ Աստուած ածել զգլուխ[2] քո և հարթել զեղենգունս քո և

1. Յօր. տասէն կրկնեալ էր՝ հրամայեաց։
2. Այլ օր. զճակատն։

*Մելքիսեդեկի միայն ի վերայ երկրի, այլ[1] անուանեսցի Մելքիսեդեկ անհայր, անմայր և ոչ համարեալ ի յազգս, ոչ սկիզբն ունելով աւուր, և ոչ կատարած կենաց և նմանեալ որդւոյն Աստուծոյ, առանց շնորհացն, և միայնցէ քահանայ յաւիտեան. և սիրեցի զդա, որպէս սիրեցի զորդի իմ սիրելի, զի պահեաց զպատուիրանս իմ և պահեսցէ յաւիտեան։*

*Եւ որպէս Մելքիսեդեկ հանդիպեցաւ Աբրահամու ի կոտորմանէ թագաւորացն՝ և ետ նմա բաժակ անապական, արկեալ կոտորակս հացի, վասն երեք հարիւր և տասնեւութիւն որք ընդ նմայն էին։ Եւ եղեւ օրինակ Մելքիսեդեկ անարիւն պատարագի փրկչին մերոյ, որպէս և գրեալ է «դու ես քահանայ յաւիտեան»։*

զգեցուցանել քեզ հանդերձս, և դու օրհնեսցես զիս։ Եւ ասէ Մելքիսեդեկ. արա զոր ինչ հրամայեաց քեզ Աստուած։ Եւ իբրեւ արար Աբրահամ՝ զոր հրամայեաց նմա Տէր, ասէ Մելքիսեդեկ. օրհնեալ է Աբրահամ յԱստուծոյ բարձրելոյ. և ոչ կոչեսցի անուն քո Աբրամ, այլ Աբրահամ եղիցի անուն քո. և կին քո ոչ կոչեսցի Սարայ, այլ Սառայ[2] եղիցի անուն նորա։ Եւ էջ ընդ Աբրահամու և բնակէր[3] ընդ նմա։ Եւ ասէ Տէր ցԱբրահամ. զի ոչ ոք միայն յազգէ Մելքիսեդեկի ի վերայ երկրի, այլ Մելքիսեդեկ կոչեսցի անհայր և անմայր չհամարեալ յազգս, Որդւոյն Աստուծոյ նմանեալ, առանց խորհրդոյ[4]։ Եւ յորժամ գայր Աբրահամ ի կոտորածէ թագաւորացն, ել ընդ առաջ նորա Մելքիսեդեկ. և ետ նմա կոտորակ հացի և բաժակ, և օրհնեաց զնա. և Աբրահամ տասանորդս ետ նմա յամենայն աւարէն. և եկաց միայն քահանայ Աստուծոյ բարձրելոյ։

1. Յօր. որ։
2. Գ. օր. Սառրա։
3. Գ. օր. բնակեցաւ։
4. Գ. օր. չունի առանց խորհրդոյ։

# ԻԶ

## ՎԱՍՆ ՍՔԱՆՉԵԼԵԱՑ ՊԱՏԿԵՐԻՆ

### Ի ՊԱՏՄՈՒԹԵՆԷՆ ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

*Ի սահմանս Տիւրոսի և Սիդոնի, ի քաղաքն Բիւրիտոն,[1] էին բազում Հրեայք բնակեալ խառն[2] ընդ քրիստոնեայս։ Եւ էր մի ոմն ի Հրէից՝ որ խնդրէր տուն ի վարձու. և առեալ այլ սիրելի Հրեայս[3], գտին դատարկ տուն՝ յորում լեալ էր քրիստոնեայ և յայլ տուն փոխեալ, և մոռացեալ ի տանն յայնմիկ պատկեր ի տախտակի զՔրիստոսի խաչելութիւնն, կախեալ յորմն յարեւելից կողմանէ[4]։ Եւ յորժամ մտին Հրեայքն[5] ի տունն,*

1. Բ. օր. դնէ՝ ի Բերիտոն քաղաքն որ մերձ է (Զ. օր. յաւելու՝ յԵրուսաղէմ) ի սահմանս Տիւրոսի և Սիդոնի։
2. Բ. օր. չունի խառն։
3. Բ. օր. և առեալ զնին նոր (Ե. օր. չունի նոր) տնտեսն նոր այլ հրեայ։ Գ. օր. չունի և առեալ այլ տնտեսն հրեայս, իսկ զյաջորդն դնէ՝ և եկեալ դատարկ տուն մի։ Զ. օր. առեալ ընդ նոր այլ տնտեսն հրեայս՝ գնացին և գտին։ Է. օր. առեալ զնին նոր զորն տնտեսն՝ որ է և նա հրեայ, և այլն։
4. Բ. օր. յորում քրիստոնեայ մի յայն տանէն յայլ տուն փոխեցաւ, և մոռացաւ կախեալ ի տանն յորմն յարեւելից կողմանէ տէրունական պատկեր։ Դ. օր. յորում բնակեալ էր ... և թողեալ ի տանն յայն. և այլն։ Գ. օր. չունի յայնմիկ, նոյնպէս և կախեալ յարեւելից կողմանէ։ Զ. օր. յորմէ քրիստոնեայք ելեալ էին, և մոռացեալ էին ի յորմն յարեւելից կուսէ կախեալ տէրունական պատկերն։ Է. օր. յորմէ քրիստոնեայ մի փոխեալ էր յայլ տուն, և մոռացեալ էր ի տանն կախեալ յորմն յարեւելից կողմանէ տէրունական պատկերն Քրիստոսի։
5. Ա. օր. չունի՝ հրեայքն։

տեսին զպատկերն[1], և ասեն ցմիմեանս. տեսէք զքրիստոնէից գործս՝ թէ որչափ սիրեն զՄարիամու զորդին, որ և զկուսան իւր վասն անուան նորա պատուեն և ի խաչի բագին կանգնեն[2]։ Արդ, որպէս հարքն մեր խաչեցին զԱստուածն իւրեանց, նոյնպէս և մեք արասցուք ընդ պատկերիս մերում[3]։ Եւ հարկանէին եղեգամբ զգլուխ պատկերին[4] և ապտակէին զծնօտսն[5], և թքանէին ընդ երեսն, և սրով ծակեցին զձեռսն և զոտսն։ Եւ յորժամ խոցեցին զկողս պատկերին, արար Աստուած զսքանչելիս, և հոսեաց առժամայն արիւն և ջուր ի կողից պատկերին[6]։ Եւ զահի հարեալք՝ ազդեցին[7] քահանայապետին[8] իւրեանց և այլ Հրէից. և ընթացան միահամուռ ի տունն, և տեսին զպատկերն և ի խոցէ կողիցն հոսէր արիւն և ջուր[9]։ Եւ ասէ քահանայապետն. փորձեսցուք եթէ ճշմա-

1. Ե. օր. զքրիստոնէական պատկերն։

2. Բ, Ե, Զ և Է. օր. յաւելուն ասելն. այս պատկեր քաղկեդոնացւոյն է, և չունին՝ տեսէք զքրիստոնէից գործս՝ թէ որչափ սիրեն զՄարիամու զորդին, որ և զկուսան իւր վասն անուան նորա պատուեն և ի խաչի բագին կանգնեն։ Գ. օր. զկուսան իւրեանց, իսկ Դ. օր. չունի։

3. Բ. օր. Եւ որպէս արարին հարքն մեր ընդ նա, արասցուք և մեք ընդ պատկերս իւր (Զ. օր. նորա)։ Գ. օր. Արդ, եկայք որպէս հարքն մեր խաչեցին զԱստուած իւրեանց զՔրիստոս, նոյնպէս և մեք արասցուք ընդ պատկերիս Քրիստոսի։

4. Գ. օր. Եւ սկսան զգլուխն եղեգամբ հարկանել զպատկերին... Զ. օր. Եւ առեալ եղէգ հարկանէին զգլուխն պատկերին։

5. Դ. օր. չունի՝ և ապտակէին զծնօտսն։

6. Գ. օր. չունի՝ պատկերին. իսկ Բ. օր. և յորժամ խոցեցին զկողս պատկերին՝ առ ժամայն հոսեաց (Զ. օր. ել) արիւն և ջուր։

7. Դ. օր. զգացուցին։

8. Գ. օր. քահանայիցն։

9. Գ. օր. աստէն յաւելու, և զարմացան ընդ սքանչելիսն։ Բ, Ե և Է. օր. Եւ զահի հարեալ՝ առ ժամայն ընթացան և պատմեցին քահանայապետին իւրեանց (Զ. օր. և զայն տեսեալ զահի հարան և ընթացեալ պատմեցին քահ.) և այլ հրէից. և ժողովեալք գնացին ամենեքեան ի տունն այն, և տեսին զպատկերն, և ի խոցէն բղխէր արիւն և ջուր։

րի՞տ է զոր ասեն քրիստոնեայք վասն Քրիստոսի։ Հրամայեաց և բերին ջիղ[1], և ժողովեցին զջրախառն արիւնն[2], և երթեալ օծանէին զամենայն հիւանդս իւրեանց զկոյրս, զխեղս[3], զանդամալոյծս[4], և նոյնժամայն բժշկեցան[5]։ Ժողովեցան[6] ի միասին և գնացին առ եպիսկոպոս քաղաքին, և պատմեցին նմա զեղեալ սքանչելիսն։ Եւ եպիսկոպոսն առեալ ընդ իւր զդատաւորն և զիշխանսն՝ գնաց նոքօք ի տունն։ Եւ յորժամ տեսին զպատկերն, փայլեաց յերեսաց պատկերին որպէս լոյս[7], և դադարեաց բղխումն ի կողիցն. և հաւատացին ի Քրիստոս ամենայն Հրեայք քաղաքին ընտանեօք[8] և ազգականօք, և մկրտեցան. և եղեւ ուրախութիւն մեծ ի քաղաքին յայնմիկ[9]։ Եւ Հրեայքն զժողովարանն իւրեանց նուիրեցին եկեղեցի, և զտունն՝ յորում սքանչելագործ պատկերն էր՝ արար եպիսկոպոսն եկեղեցի[10] յանուն

1. Զ. օր. դնէ՝ հրամայեաց բերել ջուր։
2. Բ, Զ և Է. օր. և ժողովեաց զարիւնախառն ջուրն։
3. Գ և Զ. օր. յաւելուն զկաղս. իսկ Դ. օր. չունի զխեղս։
4. Բ, Ե և Է. օր. յաւելուն և զդիւահարս։
5. Զ. օր. բժշկէին։
6. Գ և Ը. օր. չունին ժողովեցան, և դնեն այսպէս. Եւ գնացին հրեայքն առ եպիսկոպոս քաղաքին՝ Մարութայ, և պատմեցին զամենայն սքանչելիսն։ Բ և Է. օր. Եւ միաբանեալ ժողովեցան, և գնացին առ եպիսկոպոս քաղաքին և պատմեցին զամենայն զեղեալ սքանչելիսն։
7. Բ, Գ և Է. օր. Եւ եպիսկոպոսն յարուցեալ գնաց (Զ. օր. դնէ՝ Եւ յարուցեալ գնացին) զկնի նոցա ի տունն. և տեսին զպատկերն, և փայլեաց երեսք պատկերին (Գ. օր. նորա) իբրև զարեգակն. (Դ. օր. յերեսս պատկերին)։
8. Զ և Ը. օր. չունին՝ ընտանեօք և ազգականօք. իսկ Բ. օր. չունի միայն ազգականօք։
9. Բ, Զ և Է. օր. յաւելուն աստէն՝ և ժողովրդեան իւ-րեանց։
10. Դ. օր. չունի՝ և Հրեայքն զժողովարանն իւրեանց նուիրեցին եկեղեցի (Դ. օր. դնէ շինեցին եկեղեցի). իսկ Բ, Ե, Զ և Է. օր. չունին՝ և Հրեայքն զժողովարանն, և դնեն այսպէս. Նուիրեցին եկեղեցի. (Ե. օր. չունի նուիրեցին եկեղեցի և զտունն) յորում սքանչելագործ պատկերն էր՝ շինեաց (Ե և Է. օր. արարեալ) եպիսկոպոսն եկեղեցի (Զ. օր. շինեցին եկեղեցի)։

փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի. և մեծաւ պատուով հաստատեցին[1] ի տեղւոջ իւրում. և բազում նշանք լինէին ի տեղւոջն յայնմիկ[2]։

[3]Եւ յետ բազում ժամանակաց բարեպաշտ[4] թագաւորն Յոհաննէս՝ որ կոչի[5] Չմշկիկ, գնաց ի քաղաքն Ամասիա[6], եգիտ և առ զՔրիստոսի Աստուծոյն մերոյ զկաղամարն[7] և զհողաթափս սուրբ ոտիցն. և երթեալ[8] ի Բիւրիտոն, առ զայն զքրիստոսի խաչելութեան պատկերն, և տարաւ ի Կոստանդնուպոլիս, և երկրպագեն նմա ընդ այլ սըրբութեանցն ի փառս և ի գովութիւն Աստուծոյ մերոյ, այժմ և յաւիտ''[9]։

1. Բ, Ե, Զ և Է. որ. հաստատեցաւ։
2. Բ, Զ և Է. որ. և նա բազում սքանչելի նշանս առնէ յեկեղեցւոջ յայնմիկ։ Ե. որ. և բազում սքանչելիս արար և առնէ։ Գ. որ. դնէ՝ յորմէ բազում նշանք լինին ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և այսու աւարտէ։
3. Այս յաւելուած գտանի յամենայն օրինակս։
4. Բ, Ե, Զ և Է. որ. չունին բարեպաշտ։
5. Բ, Ե, Զ և Է. որ. չունին որ կոչի։
6. Բ, Գ և Զ. որ. դնեն՝ Հեմս. իսկ Է. որ. Հեմսիս։
7. Բ, Դ, Զ և Է. որ. յաւելուն պատառական։
8. Բ, Ե, Զ և Է. որ. և գնաց։
9. Բ, Ե, Զ և Է. որ. և եառ զայն (Է. որ. զԱստուծոյ.) սքրոնական պատկերն, և տարաւ ի Կոստանդնուպօլիս, և եդեր ընդ այլ սրբութիւնսն, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ օրհնելոյն յաւիտ։ Դ. որ. և առեալ զպատկերն խաչելութեան Քրիստոսի, և տարաւ ի Կոստանդնուպօլիս և երկրպագեցին ընդ այլ սրբութիւնսն, ի փառս և ի գովութիւն Աստուծոյ մերոյ. այժմ և յաւիտ"։

# ԻԷ

## ՏԵՍԻԼ ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ[1]

*Ամենեցունց Աստուած՝ որ սքանչելի տեսիլ երեւեցոյց մարգարէիցն իւրոց սրբոց[2], նոյնպէս և ինձ անարժանիս Աթանասի առաւել սքանչելակերպ եցոյց, որ ահագին է և զարհուրելի, և ոչ կարեմ պատմել զբաւանդակն[3]։ Արդ, իբրեւ կացի ես ի ժամ պաշտաման պատարագին[4], և տարածեալ ունէի զբազուկս իմ առաջի աստուածընկալ սուրբ սեղանոյն[5]. և հասեալ ի բանն խորհրդոյն, յայն՝ որ ասէ՝ «դիմեալ կամաւ ի խաչն». և առեալ[6] վերացուցի զսուրբ հացն ի մաղզմանէն, և կամէի բեկանել, յանկարծակի պատառեցաւ ձեղուն եկեղեցոյն, և իջին գունդք հրեշտակաց բազմաց, և կացին շուրջ[7] զսեղանովն։ Եւ իմ զարհուրեալ ափշեցայ ընդ տեսիլն հրեշտակացն, և ունէի զսուրբ*

1. Բ. օր. Տեսիլ Աթանասի Աղեքսանդրացւոյ հայրապետին։
2. Բ. օր. չունի իւրոց սրբոց։
3. Բ. օր. որ ահագին է պատմութիւն և ասացել զարմանալի յոյժ. որ և ես իսկ տեսի աս է պատմել մեզ զոր եցոյց ինձ Թագաւորեալն։
4. Բ. օր. յաւելու է սուրբ եկեղեցւոյն Աստուծոյ։
5. Բ. օր. և սկսայ ասել զպատարագամատոյցն զոր Աստուած պարգեւեաց ինձ. և յորժամ այս բանն էին ի բերան իմ «դիմեալ կամաւ ի խաչն, առեալ զհացն ի ձեռս իւր. աւրհնեցեր, գոհացար, բեկեցեր»։
6. Բ. օր. չունի առեալ։
7. Բ. օր. և շուրջ պատեալ կային։

հացն ի ձեռին իմում[1]. իջին քերովբէքն ի վերայ սեղանոյն, և միածինն[2] Քրիստոս ի վերայ քերովբէիցն, զոր[3] բազմեցուցին ի վերայ սեղանոյն սըրբոյ: [4]Եւ ահա տեսի ես զկենարարն ի վերայ բազկաց իմոց, և խառնեցաւ հացն և գինին՝ ի կենարարն ի միածինն, և հոսէր արիւնն ի կենարարէն ի բաժակն սկոյն: Եւ ես կայի բազկատարած ի մէջ հրեշտակացն և կատարէի զխորհուրդն: Եւ ի կատարման սուրբ աղօթից պատարագին՝ վերացուցին քերովբէքն զՄիածինն ի սեղանոյն. և տեսի զհացն սուրբ՝ յերկուս մասունս ի վերայ սեղանոյն, և գոհացայ զԱստուծոյ, որ արժանի արար զիս այնպիսի ահաւոր տեսլեանն. և ապա ահիւ և սարսափմամբ հաղորդեցայ ի կենարար խորհրդոյն և բաշխեցի ժողովրդեանն: Իսկ ոմն ի ժողովրդականացն ոչ էր արժանի կենարար խորհրդոյն, իբրև հաղորդեցաւ՝ իսկոյն դիւահարեցաւ առաջի ամենայն բազմութեանն: Եւ այլ

1. Բ. օր. Եւ մինչդեռ տարհաւրեալ կայի և ընդ հրեշտակին, և հացն ի ձեռին խմում կայր:

2. Բ. օր. ընդ կենարարն և չունի Քրիստոսի:

3. Բ. օր. և:

4. Աստի մինչև ցաւարտն զարտուղի է չարագրածն այսպէս. Եւ ահա զկենարարն ի վերայ բազկաց իմոց, և խառնեցաւ հացն և գինին ի կենարարն: Ապա յայնժամ իջուցին ի վերայ սեղանոյն, և ահա տեսանեմ զկենարարն ի վերայ բազկացս, և խառնեալ հացն ընդ կենարարն, և արիւնն հոսէր ընդ բաժակն: Եւ ես կայի բազկատարած ի մէջ հրեշտակաց, առաջի սուրբ բազմականին, և սուրբ խորհուրդն զարհուրեցոյց զիս, զի ահաւոր էր տեսիլն և զարհուրելի յոյժ. զի երկնաւոր Թագաւորն իջեալ հեղոյր զարիւնն իւր ի վերայ սեղանոյն: Եւ իբրև կատարեցի ես զխորհուրդն, վերացուցին զկենարարն քերովբէքն ի սեղանոյն. և տեսի զհացն յերկուս մասունս ի վերայ սեղանոյն, և գոհացայ զԱստուծոյ՝ որ արժանի արար զիս այնպիսի ահաւոր տեսլեանն. և ահիւ և դողութեամբ մեծաւ հաղորդեցայ ի կենարարէն, և առի զմարմինն կենարարին և բաշխեցի ժողովրդեանն: Իսկ ոմն ի ժողովրդականացն ոչ

ոմն հաղորդեցաւ, և առ ժամայն սկսաւ ընդ վայր ղօղանջել․ այլ ոմն ա՛ռ ի մարմնոյն՝ և դեռ յարենէն չէր առեալ՝ նոյն ժամայն կիզեալ այրեցաւ ի տեղւոջն, քանզի բազմամեղ էր։ Եւ իմ ելեալ անդէն ի բեմն, և կամէի սրբել զսկեհն սրբութեանն․ յայնժամ՝ ձայն եղեւ յերկնից և ասէ․ Քեզ ասեմ, Աթանաս, զտեսիլդ զոր տեսեր՝ զգուշութեամբ կալ ի միտդ քո, զի արժանի եղեր տեսանել զերկնաւոր Թագաւորն։ Եւ պատուէր տուր քահանայից և ասա․ թէ, մի՛ երկուցեալ յումեքէ տացէք զսուրբ մարմին և զարիւնն իմ անարժանից․ գիտասջիք, զի ի ձեռաց ձերոց խնդրեցից զայն։ Ապա եթէ ոք բռնութեամբ գայցէ ի վերայ քահանայից, քահանայն իւր ձեռօք մի՛ տացէ, այլ առաջի կալցէ այնմ՝ որ բռնութեամբն գայցէ առնուլ։ Եւ սրբեալ իմ զսկեհն, և փառս ետու Արարչին․ և հրամայեցի ժողովրդեանն ելանել արտաքս յեկեղեցւոյն։ Եւ տարածեալ զբազուկս

էր արժանի կենարարին, իբրեւ հաղորդեցաւ, դիւահարեցաւ առաջի իմ․ և այլ ոմն ելեալ ընդ վայր ղօղանջէր․ և այլ ոմն նոյնպէս էառ ի մարմնոյն, և դեռ յարենէն չէր հաղորդեալ, քանզի բազմամեղ էր, լուցեալ այրեցաւ ի տեղւոջն։ Եւ իբրեւ տեսին զայն ժողովրդականքն, այլ ոչ իշխեցին հաղորդել։ Եւ իմ ելեալ անդէն ի բեմն՝ մտի ի սուրբ խորանն և կամէի սրբել զսկահ սրբութեանն, որով կատարի սուրբ խորհուրդն, յանկարծակի ձայն եղեւ յերկնից և ասէ․ Քեզ ասեմ, Աթանաս, զտեսիլդ զոր տեսեր, զգուշութեամբ կալ, զի արժանի եղեր տեսլեան տեսանել զերկնաւոր Թագաւորն․ և պատուէր տուր քահանայից և ասա, թէ՝ մի՛ յումեքէ երկուցեալ մատնիցէք (իմա՛ տայցէք) ի սուրբ մարմինն, և կամ կաշառ առեալ յումեքէ տաց(էք) զմարմինն սուրբ և զարիւնն Տեառն․ գիտասջիք, զի ի ձեռաց ի ձերոց խնդրեցից զայն։ Ապա թէ բռնութեամբ ոք գայցէ ի վերայ քահանային, քահանայն իւրով ձեռօք մի՛ տայցէ, այլ առաջի կալցէ այնմ, որ լրբութեամբն գայցէ․ և թո՛ղ այնպիսին առցէ իւրովք ձեռօքն և կերիցէ․ զայս ասաց հրեշտակն և անյայտ եղեւ։ Եւ սրբեալ իմ զբաժակն, փառս ետու արարչին, և հրամայեցի առ դուրս եկեղեցւոյն ելանել ժողովրդեանն։ Եւ տարածեալ զբազուկս

իմ առաջի սուրբ սեղանոյն Աստուծոյ, և ասացի. Տէր, Հայր և արարիչ երկնի և երկրի, չիք իբրեւ զքեզ աստուած յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ, որ պահես զուխտ և զերդումն քո, որպէս երդուար հարցն մերոց Աբրահամու, Սահակայ և Յակոբայ։ Որ հայեցար յազգս մարդկան, և արարեր զողորմութիւն առ հողեղէն բնութիւնս, և առաքեցեր զմիածին Որդիդ քո յաշխարհս, որ եկն և լուսաւորեաց զմեզ։ Եւ արդ, Տէր բարերար, գոհանամ զքէն, որ արժանի արարեր զիս տեսլեան փառաց քոց. փառք քեզ անբաժանելի միասնական սուրբ Երրորդութիւն։

Եւ կատարեալ իմ զաղօթսն, ելի առ ժողովուրդն, և նստայ ի վերայ աստիճանաց դրան եկեղեցւոյն. և ասացի ցնոսա. Ունկն դիք բանից իմոց, և լուարուք ինձ, զի Թագաւորն Քրիստոս երեւեցաւ ինձ այսօր, և ետ ինձ պատուէր զգուշութեամբ մերձենալ ի մարմին և յարիւն նորա. զի որ անարժանութեամբ ոք հաղորդի, այնպիսին ի հուրն յաւիտենական այրի։ Եղբարք, ոչ եթէ զմեծամեծսն ասեմք, զշնութիւն, զգողութիւն, սպանութիւն, զպոռնկութիւն, զհայհոյութիւն և զուրացութիւն, և կամ զայնոսիկ որ զայրեցուածս առնեն և կամ զայլ մեծամեծ մեղսն, այնպիսիքն մի՛ իշխեսցեն մերձենալ ի սուրբ հա-

իմ առաջի սուրբ սեղանոյն Աստուծոյ, ասեմ. Տէր, Հայր երկնի և երկրի, չիք իբրեւ զքեզ Աստուած յերկինս ի վեր և յերկիր ի խոնարհ. որ պահես զուխտս և զերդումն քո որպէս երդուար հարցն մերոց Աբրահամու, Իսահակայ և Յակոբայ։ Որ հայեցար յազգս մարդկան, և արարեր ողորմութիւն առ հողեղէն բնութիւնս, և առաքեցեր զմիածին Որդիդ քո յաշխարհ, որ եկն և լուսաւորեաց զմեզ։ Եւ արդ, Տէր բարերար, գոհանամք զքէն. եւս առաւել զի արժանի արարեր զիս զանարժանս և երեւեցուցեր զքեզ ինձ, Տէր բարերար։ Արդ, փառս մատուցանեմք քեզ Հայր Նախախնամող և Որդիդ միածին և Հոգիդ ճշմարիտ. փառք քեզ Հայր սուրբ, փառք Որդիդ սուրբ, փառք քեզ Հոգիդ սուրբ.

ղորդութիւն մարմնոյ արեանն Քրիստոսի. և ոչ եթէ այնպիսիքն միայն ոչ հաղորդին, այլ եթէ բանիւ ոք յանցանիցէ՝ կամ ստութեամբ կամ երդմամբ, կամ արբեցութեամբ. այլ այնպիսիքն երեք աւուրբք հեռացեալ լինին յեկեղեցւոյն, և մի՛ իշխեսցեն հաղորդիլ. կամ որք ընդ վայր խօսին կամ ծիծաղին, կամ թատերասէր լինին, կամ փանդռնասէրք և փողահարք, և կամ դիւաներգ, և կամ աչօք յարատ հայեցողք. յայսպիսեացս ատի ոք մի՛ իշխեսցէ հաղորդիլ մինչեւ սրբեսցի։

Ո՛վ անհնարին ահաւորութեան մարմնոյ և արեանն Քրիստոսի. ո՛վ անհնարին խորութեան, որ զարհուրին միտք իմ յասելոյս։ Լուարուք եղ-

փառք անբաժանելի սուրբ Երրորդութեանդ՝ յամենայն ժամանակի յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Եւ կատարեալ իմ զաղօթսն, ելի առ ժողովուրդն, և նստայ ի վերայ աստիճանի դրան եկեղեցւոյ, և ասացի ցնոսա. Ունկն դիք բանից իմոց, և լուարուք ինձ. ահա Թագաւորն Քրիստոս երեւեցաւ ինձ այսօր, ոչ վասն արժանաւորութեան իմոյ, վասն երդմանն Աբրահամու, Սահակայ, Յակոբայ, զի ես անարժան իմ հոգով և յոյժ եղկելի մարմնով։ Արդ, լուարուք եղբարք, և երկերուք յոյժ ի մարմնոյ և յարենէ Քրիստոսի Աստուծոյն իմոյ. զի որ անարժանութեամբ հաղորդի, այրեսցի այնպիսին ի հուրն յաւիտենից։ Եղբարք, ոչ զմեծամեծսն ասեմք՝ զշնութիւն, զգողութիւն, զսպանութիւն և զպոռնկութիւն, զհայհոյութիւն և զուրացութիւն և կամ զայնոսիկ՝ որ զայրեցուածս առնեն, և կամ զայլ մեծամեծ մեղսն. այնպիսիքն զահաւոր բարբառն մի՛ իշխեսցեն լսել։ Այլ եթէ բանիւ ոք յանցանիցէ, կամ ստութեամբ կամ երդմամբ, և կամ սուտ խօսելով, կամ արբեցութեամբ, այնպիսիքն որքան երեք աւուրբք հեռացեալ լիցին յեկեղեցւոյ, և մի՛ իշխեսցին հաղորդիլ, կամ որք ընդ վայր խօսին կամ ծիծաղին կամ թատերասէրք լինիցին, կամ փանդռանհար և կամ դիւերգք, կամ աչօք յարատ հայեցող. յայսպիսեաց աստի մի՛ ոք իշխեսցէ հաղորդիլ մինչեւ սրբեսցի։

Ո՛վ անհնարին ահաւորութեան մարմնոյ և արեանն Քրիստոսի. ո՛վ անհնարին խորութեան, որ զարհուրի միտք իմ յասելն։ Լուարուք եղբարք, բանից իմոց. ապա թէ ոչ կա-

բարք իմ, բանից իմոց, և պատրաստեցէք զանձինս ձեր արժանիս մարմնոյ և արեան Տեառն հաղորդութեան. և մի՛ տեսանէք զայն հաց և գինի, զի կգալլի աչայս հաց և գինի միայն երեւի, որպէս և մարդս է հոգի և մարմին, և մարմինս միայն տեսանի. և ո՞ ոք է որ ոչ գիտէ զմարդս հոգի և մարմին. հոգին ոչ երեւի, այլ մարմինն միայն տեսանի։ Այսպէս և աստուածութիւնն որպէս հոգի է ի նշխար սուրբ պատարագին, և հաւատով՝ մտաց աչաց միայն տեսանելի։ Արդ, գիտացէք զհաց մարմնոյն Քրիստոսի, և էութիւն աստուածային. արդ, զգոյշ լերուք զղջմամբ արտասուաց և խոստովանութեամբ, բարի գործովք և ողորմութեամբ. և ապա մերձեցարուք ի մարմին և յարիւն որդւոյն Աստուծոյ, սրբութեամբ և պարկեշտութեամբ, զի արժանի լինիջիք միանալ ի

միցիք ընդ ինձ, լուարուք Պաւղոսի երանելոյն, որ ասէ. «Լալով իսկ ասեմ զթշնամեաց խաչին Քրիստոսի, որոց կատարածն կորուստ է, և փառքն՝ ամօթն»։ Եւ արդ, ձեզ ասեմ լալով, զի նոցա կատարածն կորուստ է և ձեզ անշէջ հուրն։ Եղբարք, ես զքահանայն յորժամ տեսանեմ բաղկատարած առաջի սուրբ սեղանոյն, զարհուրիմ և դողամ, մանաւանդ յորժամ զսեղանն տեսանեմ։ Այլ դուք ոչ զարհուրիք և ոչ իսկ ի միտ առնուք. ասէք ի միտս ձեր, թէ հաց է և գինի. ոչ հաց և ոչ գինի, այլ երկնաւոր հուր։ Եւս առաւել յաւուրս տօնից և զատկաց անխտիր հաղորդիք ի սուրբ մարմնոյ և յարենէ որդւոյն Աստուծոյ անարժանութեամբ։ Ոչ մարգարէիցն լսէք, և ոչ առաքելոց և ոչ լինիք ունկնդիր բանիցն Պաւղոսի որ ասէ, թէ «Են (ի)ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք». զորո՞ց ասէ հիւանդք և ախտաժէտք, եթէ ոչ մեղաւորաց և զանարժան հաղորդողաց. վասն այսորիկ յառաջագոյն գիտացեալ Պաւղոսի, և պատուիրեաց վասն մարմնոյ և արեանն Քրիստոսի։ Եւ արդ, եղբարք, գոհանալ պարտիմք զարարողէն երկնի և երկրի՝ որ արժանաւորեաց զմեզ զանարժանքս և զմեղաւորքս իւրոյ անարատ և սուրբ խորհրդոյն ի վայելս լինել. որ անճառ մարդասիրութեամբն էջ առ մեզ, զի զնախատինս մեր ի պատիւ փոխեսցէ. զմեղս նախաստեղծին Ադամայ՝

*Քրիստոս հաղորդութեամբ մարմնոյ և արեան նո-րա, լինել բնակարան Քրիստոսի և տապնջական Հոգւոյն սրբոյ, հանդիստ Հօրն երկնաւորի։*

*իւրով չարչարանօքն և մահուամբն եբարձ, նոյնպէս և զմերս ջնջեսցէ զյանցանս, և տացէ մեզ ամենեցուն լսել զերա-նաւէտ բարբառն։*



# ԻԸ

## ՍՐԲՈՑՆ ԱԹԱՆԱՍԻ

## ԱՂԵՔՍԱՆԴՐՈՒ ՀԱՅՐԱՊԵՏԻ

### ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՍՈՒՐԲՆ ՍՏԵՓԱՆՈՍ

### ՅԱՌԱՋԱՍԱՐԿԱՒԱԳ ԵՒ ՆԱԽԱՎԿԱՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Պայծառ և նորահրաշ է խորհուրդ տօնիս, ով եղբարք իմ սիրելիք, և ըստ արփիափայլ ճառագայթից արեգական՝ սիրալի գործէ զիմանալի աչս տեսողացն, և զանմահ և զանանց կենդանութիւն ընձեռեալ պարգևէ աստուածասիրաց անձանց, հանելով ի գերակայ բարձրութիւնս անիմանալեացն, և զատորեւ կացեալսն ի նսեմութեան աղջամղջին մեղացն կործանմանց, ըստ նախկի յանցաւորութեանն, երկնաթռիչս առնելով[1] և նորոգելով վերստին զհոգի և զմարմին՝ վերին զօրութեանց անմարմնոց հոգեղինաց հանդիսակից և տօնակիցս առնէ։ Արդ, քանզի չնորհք բարերարութեան Հոգւոյն սրբոյ արժանի արար զմեզ ժամանել մեծի աւուրս[2] սուրբ և երանեալ նախավկայիս Ստեփանոսի՝ յառաջասարկաւագի և պանծալի նահատակի, որ ժողովեաց զմեզ ի մի միաբանութիւն կաթողիկէ եկեղեցւոյ, և հանդիսացոյց ի միասին զժողովս ժողովրդոց նոր սիոնի, և տարփողական սիրով ի տենչումն յորդորեաց զմանկունս սուրբ եկեղեցւոյ, պարակիցս և երգակից երկնաւորացն լինել. զմայլեալ ուրախացոյց՝ հոգևոր[3] բաժակաւն

1. Յոր. առնելով, եդաք ըստ Բ, Գ և Դ. օրինակաց։
2. Բ, Գ և Դ. օր. յաւելուն չէշտարանն։
3. Բ և Գ. օր. ունին անմահական։

զպայքումն ծառաւեացս դադարեցուցեալ, իւրով քրտնաջան[1] աշխատութեամբն և արեամբն յորդառուխ հոսելով[2] ի մաքուր մարմնոյն: Քանզի այսոքիկ բարեաց հետեւմունք յառաջադիմութեանց[3] հրաշակերտ աշակերտի ծագման Բանին Հօր, ոչ ընդհատ գործեաց զդասս մերոյ ժողովոյս յառաքելական գնդին, որք զծորանս Հոգւոյն արբին ի վերնատանն, և հրացեալք եղեն հրով աստուածագիտութեանն[4]: Սապէս և սա զարթոյց զթմբրութիւն հողանիւթեայ յարկի մերասիրացս[5], ի սահեցմանէ հոսանուտ ընութեանս արտաքերելով ի Նպատակ վեհագունիցն, և թեւարկեալ եհան ի կայեանս գերագունիցն, որք և ընդ մեզ դասակից գոլով այսօր՝ զորբոյ և զանյաղթ վկայիս հրաշացուցանեն զկացուրդս:

Արդ, յայտնի և ո՛չ զանխլացեալ երեւի ի ձէնջ՝ թէ ո՛, և ուստի՛, և յորո՛ց ոմանց յառաջեալ եղեւ յայսպիսի[6] երանութիւնս. իբրեւ զարեգակն ի մէջ աստեղաց գերափայլեալ գտաւ քան զընաւ դասս արդարոց. յայտ է եթէ յայնմանէ՝ որոյ զօրութեամբն հիմնեցան ամենայն յաւիտեանքս, այսինքն՝ ի Հոգւոյն կոչմանէ: Քանզի սմա հաւատացաւ ի սրբոց աշակերտացն Բանին Հօր՝ պաշտել զդասս այրեաց, որպէս և գրեալ է ի գիրս Գործոց առաքելոցն. «Ընտրեցին, ասէ, զՍտեփաննոս, այր լի հաւատով և Հոգւով սրբով»[7]. և կարգեցին այցելու որբոց և այրեաց, այն՝ որ զնմանութիւն այնորիկ ունէր, որ զամբաւ ստուածութիւնն ի սպաս պաշտաման բանականացս

1. Բ, Դ և Ե. օր. ճգնաջան:
2. Բ, Գ և Ե. օր. հոսելոյ:
3. Բ. օր. յառաջադրեաց:
4. Բ, Գ, Դ և Ե. օր. աստուածածանօթեանն:
5. Գ. օր. մերասիրելեացս:
6. Բ. օր. յաւելու ծայրագոյն:
7. Գործ. Առ. Զ, 5:

մատոյց., և այցելու եղեւ կորուսելոցս ի բանսարկուէն, որ իւրով իսկ մարմնովն և արեամբն լըցոյց[1] զամենեսեան. վասն զի հեզութեան և մարդասիրութեան նորին եղեւ նմանակից[2] աշակերտս նորին, և օթեվան Երրորդութեանն։ Որ զայրեացն հաւատացաւ տնտեսութիւն և սպասաւորութիւն[3], որ ամենեցուն հորդէր ճանապարհս առ եւս անճառ բարձրութեան[4] հետեւել. քանզի բազում բարութեանց եղեւ պատճառ։ Առաջին պտուղ վկայից, և հիմն բարի՝ խոստովանողական հանդիսից[5], և յառաջաշարժող՝ նահատակաց խմբից. զի ոչ ոք քան զնա յաղագս քարոզութեան աւետարանին հեղեալ վկայական արիւն, և կամ կրեալ կերս չարչարանաց. զի որպէս արեամբն Աբելի արդարոյ՝ կայէն մախացեալ ապականեաց զերկիր, այսպէս և ի ձեռն հեղման արեան նահատակին իւրոյ բարեպաշտ մրցանաց, զերկիր մաքրագործեաց յապականութենէ։ Այր՝ ժամանակաւ քան զառաքեալսն երկրորդագոյն երեւեալ, այլ քաջութեամբ առաջին և գերագոյն քան զընաւս. երեցագոյն և գլխաւորագոյն կարծեմ քան զամենայն համագումար դասս սրբազանից՝ զերանելին զՊետրոս. և նախ քան զամենեսեան դաւանող համագոյ Երրորդութեանն, Որդւոյ առ Հայր, վէմն անշարժելի, փակողն և բացողն մտից արքայութեանն երկնից։ Իսկ յորժամ նա տակաւին քարոզելով շրջէր ընդ ծագս տիեզերաց, սա մտեալ ի ստադիոն ասպարիսին, ընկալաւ զպսակ յաղթանակ մարտին, և փոխեցաւ

1. Բ. օր. լլեցոյց։
2. Գ. օր. Նմանողակից։
3. Յօր. Տնօրէնութեան և սպասաւորութեան. Բ. օր. սպասաւորութեան տնօրէնութեան։ Գ. օր. սպասաւորութեան տնօրէնութեան։ Դ. օր. սպասաւորութեան տնօրէնութեան։
4. Բ. օր. Բարութեանցն. Գ. օր. Բարեաց։
5. Բ. օր. Հաստոյց։

յերկինս փառօք, նովին Հօր և Որդւոյ կոչելով զնա ի ձեռն հրաշալի[1] տեսլեանն ։

Այլ զի՞նչ ասացից և յաղագս սուրբ Յակովբայ եղբօրն Յովհաննու, որ և երկրորդ աւետարանիչ զկնի Յիսուսի եղեւ. այն՝ որ իբրեւ հրաւիրեցաւ ի Տեառնէ ի կոչումն սուրբ շնորհին՝ լինել որսորդս մարդկան, թողոյր զհայրն վաղվաղակի հանդերձ նաւաւն, և զկնի երթայր Յիսուսի՝ քարոզ լինել ճշմարտութեանն, որ և զբաժակ մահու խոստացաւ ըմպել, զի թէպէտ եւ ի Հերովդիէ սրով վկայեցաւ, այլ զկնի Ստեփանոսի՝ և ոչ նախ քան զնա ։

Եւ զի՞րդ իսկ զիւրաքանչիւրսն կարացից յիշատակել յանուանէ, զի վերագոյն քան զբնաւսն ընկալաւ նա զբրաբիոնն յաղթութեան. առաջին ընդ նախաչար բանսարկուին առարկուած արարեալ և ճակատամարտեալ՝ և յաղթող յամենայնի գտեալ, ըստ նմանութեան մեծին Դաւթի. զի որպէս նա պարսաքարիւն յաղթեաց Գողիաթու՝ զի զյաղթանդամն զայն ընկճեաց զհսկայն. սապէս և սուրբն այն և նախամարտիկ նախավկայն, զբանսարկու բռնաւորին փշրեալ կործանեաց իսպառ զզօրութիւնն։ Այլ վասն զի առաջին էր մրցանակս, և նորագոյն հանդէսս, և առանց օրինակի տեսիլս. զի ո՞ ոք այնպէս սքանչման արժանի վարկանի զկնի առաջնոյն զերկրորդն, նախանձու յառաջագունին զբարեացն յիշատակն թողու զկնի եկելոցն, ո՛չ զոք յարուցանելով[2] ոչ և միոյ ուրուք առաջնորդի[3] վարելով. այլ ինքնակամ յորդորմամբ գտող եղեալ[4] փութայորդոր մարտի և ճգնութեան, վայելչապէս զկնի վկայեցելոյն Հօր, ընկալաւ զդատակնիք մահու։ Արդարեւ մեծ է առնս

1. Յօր. եղեալ էր հրեշտակի. ուղղեցաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր։
2. Բ, Գ, Դ և Ե. օր. յարուցայց ունելով։
3. Բ, Գ, Դ և Ե. օր. առաջնորդին։
4. Բ, Գ, Դ և Ե. յաւելուն այլովք։

պյտորիկ բարեհանդէս յօժարութիւն. վասն զի և մեծ է պատիւն, որ ոչ մոռացմամբ մտաց զանխլացեալ ծածկի, և ոչ փոփոխմամբ ժամանակաց աղօտացուցեալ աղաւաղեն. այլ տօնախմբեն անմահ և անանց յիշատակաւ ընդ ծագս տիեզերաց ընդհանուր հաւատացելոց անձինք, և պայծառացուցանեն[1] զաստուածահրաշ աւուրս պատիւ։

Արդ, քանզի ուժգնակի հպեալ լինէր ի վարդապետութիւն անդր անօթն ընտրութեան, և յաւէտ քան զայլ աշակերտսն զթշնամիսն տրտմեցուցանէր, և զչար բանսարկուին կապտէր[2] զմեքենայսն, ընդ որս և հրատեսակն այն և չարադրժնեայն՝ ահագնահայեաց աչօքն հայելով առ այն՝ որ զբարեպաշտութիւնն հաստատէր, յարուցանէր ի վերայ նորա զազգն Աղէքսանդրացւոց՝ զարագաթուիչսն ի խօսս և ի պատմութիւնս բանից, և զամենայն հոմայեղս օրինադիր կրօնիցն, և զջատագովսն աբրահամեան զաւակին և իսրայէլեան հաւատոցն. զոր միաբան համախմբեալք կուտէին ի վերայ արդարոյն զօրինացն տոկոսիսն, և զամբարտաւանութիւն հայհոյութեանն, զոր ի սիրտս իւրեանց չարայարեալ ունէին։ իսկ յորժամ տեսանէր արիագոյնն այն և իմաստախոհ նահատակն՝ հասեալ ի վերայ իւր զայնքան կատաղի խուժանին բազմութիւնն, տարակուսանս համարէր զոր լինէրն. այլ սակայն յանդիմանողական և արիական բանս դնէր առաջի նոցա, զի թերևս ցածուսցէ զնոցայն կատաղի ցասման[3] սրտմտութեանն բորբոքումն։ Աղէ՛, պատմեցէք ինձ, ասէ, զպատճառս զայրացմանդ և ատելութեանդ, ընդ որո՞յ փոխանակ զձեռսն ձեր տարածեալ էք քարաձգութեամբ առ ի սպանումն ինձ։

1. Բ, Գ, Դ և Ե. օր. պանծացուցանէն։
2. Յօր. կողէր, ուղղեցաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր։
3. Բ, Գ և Ե. օր. ցասմանն սրտմտութեան։

իսկ նոքա առ ճշմարտութեան վկայն՝ զայս ինչ ասէին. զի խրամատեալ քակտես[1] զցանկ հայրենատուր օրինացն, հակառակ գոլով Մովսեսի, և օտարոտեաց ոմանց հետեւող և պատմող լինիս. և զի՞նչ վախճան բանիցն: Զօրանայր բարբառ ամբոխին, գրգռէր ժողով ռամկին, ածեալ լինէր ի տեսարան հանդիսի նահատակն արիագոյն. և հարցեալ ամենեցունց վասն Յիսուսի, խնդրէին և պատճառս հայհոյութեան ի Մովսէս և յԱստուած. և քանզի ոչ գոյր յատենին երեւելագոյն ոք ի թագաւորաց, և կամ իշխան բարեբաստիկ՝ յերկոտասան ազգաց որդւոցն Իսրայելի, որ յիրաւունս արդարոյն հայեցեալ լինէին, այլ համօրէն տունն Յակովբայ եկաց և բնակաց Երուսաղեմի[2] շարժեալք անդանօր հասանէին ի խնդիր արեան արդարոյն փութալով[3], հանդերձ քահանայիւքն, ամենեքեան սուսերօք և զինուք սպառազինեալք և կազմեալք առ ախոյեանն անպարտելի. ոչ ոք էր որ խորհէր, և ոչ ոք էր որ ի թիկունս հասանէր և դարձուցանէր, ոչ ոք էր որ աղերսէր, և ոչ ոք էր որ զողորմութիւն ի միտ արկանէր, այլ ամենեքեան իբրեւ զծնունդս իժից թափէին զթոյնս իւրեանց ի վերայ նորա. որպէս նախ յանճառ և յանստուեր լուսոյ և իսկապէս Բանին[4] Հօր և կենարարին Յիսուսի: Անցեալ կայր նահատակն յասպարիսին՝ միայն, ոչ զոք ունելով համաշունչ, և ոչ բարեկամ մերձաւոր. հայէին ի նա ամենայն համօրէն բազմութիւնն ատենին[5], և զուարթագին տեսանէին զերեսս նորա իբրեւ զերեսս հրեշտակի: Եբաց արդարն զբերան իւր ի մէջ յոգնախումբ հրապարակին. ձգէր զձեռն իւր առ տեսուչն[6] նսեմացեալ

1. Բ, Գ և Ե. օր. տանէցեր:
2. Բ, Գ, Դ և Ե. օր. իսրայելէ.
3. Դ. օր. փութանային:
4. Ե. օր. բանին. Դ. օր. չունի:
5. Բ, Գ, Դ և Ե. ատեան բազմութեան:
6. Բ, Գ, Դ և Ե. օր. վերատեսուչն:

ազգացն. ոչ բանս հռետորականս ինչ յարհեստից ուսեալ, այլ զոր ի փչմանէ Հոգւոյն յառաջ ընկալեալ[7] էր։

«Արք եղբարք և հարք, ասէ, լուարուք ինձ»։ Իմաստութեամբ դնէր զնախերգանն և կակղագոյն. ամբոխն ջերմացեալ և ցասմամբ բորբոքեալ զհեշտալի[2] բանն իբրև ընդ խորխս մեղու խառնեալ՝ զվայրագութիւն գազանաբարուացն[3] սփոփէր։ Ապա այնուհետև ի վեր ելանէր յիշողութեամբ առ Աբրահամ, ի նախկի ամսոցն սկիզբն արարեալ՝ երկայնագոյն զբանն տարածանելով՝ հասանէր ի Մովսէս, և ցուցանէր զնա հաւատարմապէս մարգարէացեալ վասն Քրիստոսի. քաջ իմն գողանալով ի ներքս մուծանէր զբան հաւատոյն, որչափ առ ի յօգուտ լսողացն պիտանացու էր։ Քանզի տեսանէր[4] զչարութիւն նոցա աններելի, և զկամս սրտից նոցա դիմագրաւս և առանց կակղանալոյ, այնուհետև համարձակութեամբ լցեալ և հրաժարեալ յաստանօր կենացս՝ ի բաց լքանելով զապականացու իրս ստորնայնոցս, և ոչ զանգիտելով յերկիւղէ մահու, յայտնէր զտիրասպան ժողովոյն զչարութիւնն, ասելով. «Խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ականջովք, պատերազմողք և հակառակողք Հոգւոյն և ընդդիմամարտք աստուածային օրինացն»[5]։ Ասէր և զհարցն նոցա զկատաղութիւնսն և զկռամոլութիւնն, և զ(հ)եղումն արդար արեանցն՝ որ յաւուրս նոցա գործեալ եղեն։ Ապա յայնժամ շուրջ եղեն զնովաւ շունք բազումք՝ և ցուլք պարարեալք[6] պաշարեցին զարդարն, և զամբիծ ոգին ի չարչարանս մատ-

1. Դ. օր. առընկալեալ. Բ, Գ և Ե. օր. ընկալեալ։
2. Բ և Գ. օր. զհրաշալի։
3. Բ, Գ, Դ և Ե. օր. զվայրաքննութեան քաղանաբարոյիցն։
4. Բ, Գ, Դ և Ե. օր. Այլ տանջէ եւեթ։
5. Գործ. Առք. Է, 51։
6. Ցօր. պակասէր պարարեալք, եդաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր։

նէին մահու. և նա կայր մի միայն յատենի՝ յոմպարիշտ սպանողացն շրջապատեալ. ամենայն բերան թուքս նախատանաց առ նա արձակելով և բանս հայհոյութեան խօսելով. և ոչ ոք յայնմ ժամանակի հուպ լինէր ի նա բարերարութեամբ, ո՛չ հարազատ, ո՛չ բարեկամ, ոչ ընտանի և ոչ ազգակից· զի փոխանակ այսմ ամենայնի, զիմանեալեացն ունէր զտեսարանս նկարագրեալ առաջի աչաց իւրոց. և ամփոփեալ առ ինքն զմիտն՝ զվերինն խնդրէր քաղաք ի բնակութիւն[1]: Եւ ապա զի՞նչ. ի կատարածի ճգնութեան արդարոյն, բանայր նմա դրունք երկնից՝ որ փակեալ էր նախահօրն յանցաւորութեամբն: Ի բաց կացին անջրպետութիւնք վերնայարկ բնութեանց, և տեսանէր զերանեալ և զմիայն բարին՝ զՏէրն տերանց և զԹագաւորն թագաւորաց, զԱստուածն բոլորից, և զՀայրն համդերձեալ աշխարհին՝ յիւրում ինքնութեանն: Եւ տես և զանճառ ծնունդ նորա, և զկերպարան սկզբնատըպին, զմշտնջենաւորակից և զէակից նորին, նստելով ընդ աջմէ նորա ի կերպի Ադամայ. ոչ փոխեալ ի բնութենէն, և ոչ շփոթեալ ի զգեցմանէ մարմնոյն, ի բաց ունելով զտեղի խոցուածոց տիգին, և յայտնի յոտս և ի ձեռսն զնշան բևեռացն: Եւ զի՞նչ, յայնժամ մեծն ի վկայս՝ և բացողն երկնից մտիցն, և քարոզ ճշմարտութեան աւանդին, ոչ ծածկէր զնորահրաշ տեսիլն, ո՛չ զանխլացուցանէր յաստուածային խորհրդոյն. աղաղակէր ի ձայն մեծ և գոչէր ի լուր համացեղիցն, զերանականն արձակէր բարբառ, և ասէր ձայնիւ մեծաւ. «Ահա տեսանեմ զերկինս բացեալ և զՈրդի մարդոյ, զի կայ ընդ աջմէ Աստուծոյ»[2]: Ո՛վ մեծի մարդասիրութեանն, ո՛վ անպատում բարութեանցն, ո՛վ անսահման երանութեանցն, որ երևեալ եղեն նահատակին անբաւ

1. Բ, Գ, Դ և Ե. օր. քաղաք բնակութեան:
2. Գործ. Առք. Է, 55:

գերակայիցն հատուցմունք[1]։ Ձի այսպիսի իմն թուի ի վերուստ ինձ ձայն արձակեալ[2] առ Նախավկայն իւր. Մի՛ ինչ անարիագոյնս սխրանար, ո՛վ նահատակդ իմ՛, իբր ոչ ունելով մարտակից քոյոց մրցմանց՝ ի մերձակայ սիրելեաց՝ ի ժամանակի անձկութեան կռւոյդ. զի ես իմով սիրելեաւ ի վերուստ տեսանեմ զոր ինչ գործեսդ։ Պատրաստ է հանդիստն անվախճան, բացեալ են դրունք անապականութեան դրախտին, զարդարեալ է առագաստն լուսապայծառ, սպասեալ մեան և պարք հոգեղինացն. ի ձեռին իմում է և պսակն անթառամելի. փոքր ինչ համբերութեամբ ժուժկալեալ, թո՛ղ զկենցաղդ մահկանացու, և փութա՛ առ կենդանութիւնն մշտնջենաւոր և անվախճան. զի թէպէտ[3] ի մարմնի գոլով զԱստուած տեսանես, որ ամենայն գերաշխարհիկ բնութեան անտեսանելի է։ Իմա՛ և զանզուգական պատիւ սրբոց իմոց[4] առ իս. յայդոսիկ, զի և զհարազատութիւն Որդւոյ իմոյ յայտնեցի քեզ, որպէս կարող էիր հանդուրժել, զի կայանօք տեղւոյս ծանիցես զպատիւն։ Գայթագղեալ են բազումք վասն զգեցման մարմնոյ սորա, և զկատարեալ տնօրէնութիւն սորա առ աչս համարեցան. այլ դու տե՛ս աւասիկ[5] ի բարձունս զառեցեալն ի կուսէն, գերագոյն քան զբնութիւն, ինձ փառակից գոլով, որ միշտ անեղութեամբ անհատ և անորիշ էր յինէն. վասն որոյ քարկոծդ լինելով՝ մի՛ ի վայր կործանեսցիս, և մի՛ առանց զօրութեան երեւեալ լիցիս. մի՛ պատաղիր սնոտի կենցաղովդ և վրդովիր ի չարատեսակ տանջանացդ. զերծի՛ր ի կապանաց մարմնոյդ, ազատեաց ի խաւարամած բանտէդ, ի վեր

1. Յօր. էր՝ հեղեղմունք. եղաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օրինակաց։
2. Յօր. յայտնեցեալ, եղաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օրինակաց, այսպէս. քանզի և այսպիսի իմն ինձ թուի ձայն արձակեալ է վերուստ։
3. Բ, Գ, Դ և Ե. օր. զի թէ փոխարէն։
4. Բ, Գ, Դ և Ե. օր. սիրոյ քո։
5. Բ, Գ, Դ և Ե. օր. յաւելուն՝ ընդ իս։

ընթացիր աստանօր յանզրաւելի ուրախութիւնքս. քանզի պատրաստեալ է քեզ, փոխանակ արեական մրցանացդ, արդարութեան անթառամելի պսակն. փոխադրեալ լեր յերկրայնոցս ի յերկինս. թող զմարմինդ մահկանացու սպանողացդ[1] յերկրի, իբր զկերակուր գազանաց. ի բաց լեր ի կատաղի ամբոխէդ, արտաքոյ լեր յանագորոյն ռամկէդ. համբարձ զաչս ի բարձունս, և եկ առ պարս հրեշտակաց, և պարածածկեա անաղօտ և անստուեր լուսովն, որ յառաջ քան զյաւիտեանս պատրաստեալ է քեզ:

Այսպիսի իմն կամօք երեւեալ Աստուած ժուժկալողին, զի մի՛ ինչ կրեսցէ վատթարութիւն, և լքանիցի ի յօժարութեանցն. վասն այնորիկ զինքն երեւեալ ցուցանէր. և ոչ ի ձեռն հրեշտակի հաւատացաւ[2] նմա զպարգեւսն, զի սկիզբն և պտուղ էր վկայութեանն. և պարտ էր կատարել անսխալ հիման հաւատոյ, որպէս զի զկնի եկեալքն՝ ոչ զանգիտեսցեն նմանողք լինել նմա. զի զզինուորն նախամարտիկ և արիացեալ՝ յաղթեալ զամենայն եկեալսն զկնի իւր՝ համարձակ արար յերանական կոչումն, և զհակառակորդսն զարհուրեցոյց: Վասն այնորիկ և Աստուած յերկնից երեւեալ եղեւ[3], և ի ձեռն քարոզողին իւրոյ՝ զանհաւանսն ձգեաց ի հաւանութիւն. այլ նոքա եւս քան զեւս յոլովակի բարկութեամբ և մոլութեամբ դղորդեալ ի վերայ սրբոյն, զականջսն խցեալ և զօձիս պատառեալ՝ արձակեցին միաբան բարբառով աղաղակ, և դիմեցին առ հասարակ ի վերայ, և արկին առասանակ[4] ի պարանոց նորա, և քարշէին արտաքոյ քաղաքին. ի բերան ամենայն[5] ժողովոյն կայր մահ

1. Յօր. սպաննողացդ, եդաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր:
2. Բ, Գ, Դ և Ե. օր. հաւատոյ:
3. Բ, Գ, Դ և Ե. օր. լինէր:
4. Դ. օր. առասանն:
5. Բ, Գ, Դ և Ե. օր. համօրէն:

վկային, և ի գլուխ ամենեցուն՝ կուտէր մահ[1] անարատին. զի ձեռք այնոցիկ՝ որ կապեցին զՅիսուս, զիա՞րդ խորշէին ի սպասաւորէ նորա[2]. և եթէ ստեղծագործն ամենայնի, գանեալ եղև ի նոցունց, ապա զիա՞րդ խնայէին ի ծառայն նորա. և եթէ եդին յերկինս զբերանս իւրեանց, և բան ապիրատս խօսեցան զԲարձրելոյն, ապա ո՞րչափ ևս առաւել առ աշակերտս Բանին ճշմարտութեան:

Արդ, ածեալ եղև ի տեղի սպանման եղն պարարակ. և հօլանի եղեալ մերկացան մերկացեալքն ի շնորհացն. յարձակեցան իբրև զդայլս ի գառնն երկնաւոր հօտապետին. մխեցան ձեռք ամենեցուն յարիւնն ամբիծ. իբրև պտարափս անձրևաց տեղայր ի վերայ նորա կարկառք վիմացն քարանց. ներկան վէմք, և առոգեցան վայրքն ամենայն յարենէ նորին. ոչ ոք էր որ ոչ յարձակէր ի վերայ նորա. և ոչ՝ որ ունայն բերէր զգոգս իւր յանողորմ նետիցն:

Իսկ մեծն ի վկայս՝ և երկնաքաղաքացի զօրականն Քրիստոսի թագաւորին յաւիտենից, անպարտելին և յաղթողն ամենայնի, համահաւաքէր առ ինքն զբազմութիւն քարանցն՝ որպէս զծաղիկս անուշունս և հոտալի[3], և քաղցր երևեալ ամենայն եկեալքն ի վերայ նորա. քանզի տեսանէր խորհրդաբար զանտեսանելին վերին զօրութեանցն, և մատուցանէր նմա փոխարէն չարչարանացն. փոխանակ լեղւոյն և քացախոյն՝ զմաքուր արեանն իւրոյ զկայլակսն, և ընդ թքոյն և ապտակոյն՝ զհրատեսիլ[4] երեսս իւր ուղղէր ընդդէմ տարաձիգ վիմացն. և փոխանակ փշեղէն պսակին և հարուածի եղեգանն՝ յամենամաքուր գլուխ իւր ընդունէր

1. Բ, Գ, Դ և Ե. օր. ողջէն:
2. Յօր. պակասէր, և եթէ ստեղծագործն ... է ծառայն նորա, եդաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր:
3. Գ և Ե. օր. հեշտալի. Դ. օր. հրաշալի:
4. Բ, Գ, Դ և Ե. օր. հրաշատեսիլ:

զզարկուածս բազմութեան քարանցն. հոսէր և արիւնն ի կողէն՝ յաղագս կողահոս արեանն, և մանրէին փշրէին դաստակք ձեռացն և սրունք ոտիցն՝ յաղագս սեւեռման հեղուսելոյ բեւեռացն։ Խոնարհէր և պարանոցն, յաղագս երկնաւոր գլխոյն, որ խոնարհեցաւ ի վերայ խաչին. այլ նա նմանեալ արարչին իւրոյ, յորժամ բոլոր դաւք տանն Հեբրայեցւոցն՝ ի վերայ նորա թափէին զնետս դառնութեան ի կապարճէ անզգամութեան. նա զօրացեալ զօրութեամբ Հոգւոյն, եդեալ ծունր, և հայեցեալ յերկինս՝ խնդրէր զթողութիւն և հայցէր. «Մի՛ համարիր սոցա զայս մեղս։»

Արդ, մինչդեռ կայր վկայն ի մէջ ապիրատ և տիրասպան[1] ազգին, իբրեւ զնպատակ աղեղնաւորաց յամենայն կողմանց հարեալ լինէր մարմին նորա. աղաղակելով գոչէր առ երեւեալն նմա. և ասէր. «Տէր Յիսուս, ընկալ զոգի իմ»։ Քանզի փութայր ելանել յօտարութեանց նշդեհութեան կենցաղոյս, և անկանել ի գաւառն հայրենի, ի քաղաքն անդրանկաց, ի վերինն Երուսաղէմ, ի մայրն ամենեցուն։ Նաեւ վասն այնորիկ ի վերայ քարկոծողացն առնէր զըղձական աղօթսն, զի գիտաւորութիւն խորհրդական բանիցն ասասցելոյ, «Տէր, մի՛ համարիր սոցա զայս մեղս», ոչ անպարտս ըղձայ լինել թշնամեացն ի սխալանացն, այլ զառաջիկայ հանդերձեալսն տեսանէր Հոգւովն։ Տուր, ասէ, երկիւղ զըղջման, ած յապաշաւանս ի մեծի յանդգնութեանս. մի՛ տար թոյլ մեռանել անյոյս թլփատութեամբ. ձգեա՛ ի ձեռն ապաշխարութեան առ քոյ իմացութիւնդ. բորբոքեա՛ ի սիրտս նոցա զբոց Հոգւոյն, զի զօրութեամբ քոյոց շնորհացդ և իմով արեամբս, լուացեալք և ազատեալք լիցին յայսմ ամբաստանութեանցս։ Վասն որոյ և ի ձեռն այսպիսի պաղատանաց, զկնի նորա բազմացան դաւք հաւատացե-

1. Գ. օր. խաչասպանաց։

վկային, և ի գլուխ ամենեցուն՝ կուտէր մահ[1] անա-
րատին. զի ձեռք այնոցիկ՝ որ կապեցին զՅիսուս,
զիա՞րդ խորշէին ի սպասաւորէ Նորա[2]. և եթէ ստեղ-
ծագործն ամենայնի, գանեալ եղեւ ի Նոցունց,
ապա զիա՞րդ խնայէին ի ծառայն Նորա. և եթէ
եդին յերկինս զբերանս իւրեանց, և բան ամբ-
րաստ խօսեցան զԲարձրեալոյն, ապա ո՞րչափ եւս ա-
ռաւել առ աշակերտս Բանին ճշմարտութեան:

Արդ, ածեալ եղեւ ի տեղի սպանման եղն պա-
րարակ. և հոլանի եղեալ մերկացան մերկացեալքն ի
շնորհացն. յարձակեցան իբրեւ զգայլս ի գառնն
երկնաւոր հօտապետին. մխեցան ձեռք ամենեցուն
յարիւնն ամբիծ. իբրեւ զտարափս անձրեւաց տե-
ղայր ի վերայ Նորա կարկառք վիմացն քարանց.
Ներկան վէմք, և առոգեցան վայրքն ամենայն յա-
րենէ Նորին. ոչ ոք էր որ ոչ յարձակէր ի վերայ
Նորա. և ո՞չ որ ունայն բերէր զգոգս իւր յանողորմ
Նետին:

Իսկ մեծն ի վկայս՝ և երկնաքաղաքացի զօրա-
կանն Քրիստոսի Թագաւորին յաւիտենից, անպար-
տելին և յաղթողն ամենայնի, համահաւաքէր առ
ինքն զբազմութիւն քարանցն՝ որպէս զծաղիկս
անուշունս և հոտալի[3], և քաղցր երեւեալ ամե-
նայն եկեալքն ի վերայ Նորա. քանզի տեսանէր
խորհրդաբար զանտեսանելին վերինզօրութեանցն,
և մատուցանէր Նմա փոխարէն չարչարանացն. փո-
խանակ լեղւոյն և քացախոյն՝ զմաքուր արեանն
իւրոյ զկայլակսն, և ընդ թքոյն և ապտակոյն՝ զհրա-
տեսիլ[4] երեսս իւր ուղղէր ընդդէմ տարաձիգ վի-
մացն. և փոխանակ փշեղէն պսակին և հարուածի
եղեգանն՝ յամենամաքուր գլուխ իւր ընդունէր

1. Բ, Գ, Դ և Ե. օր. ողջոյն:
2. Յօր. պակասէր, և եթէ ստեղծագործն... է ծառայն Նորա, եդաք ըստ Բ, Գ, Դ և Ե. օր:
3. Գ և Ե. օր. հեշտալի. Դ. օր. հրաշալի.
4. Բ, Գ, Դ և Ե. օր. հրաշատեսիլ:

զզարկուածս բազմութեան քարանցն. հոսէր և արիւնն ի կողէն՝ յաղագս կողահոս արեանն, և մանրէին փշրէին դաստակք ձեռացն և սրունք ոտիցն՝ յաղագս սեւեռման հեղուսելոյ բեւեռացն։ խոնարհէր և պարանոցն, յաղագս երկնաւոր գլխոյն, որ խոնարհեցաւ ի վերայ խաչին. այլ նա նմանեալ արարչին իւրոյ, յորժամ բոլոր դասք տանն Հեբրայեցւոցն՝ ի վերայ նորա թափէին զնետս դառնութեան ի կապարճէ անզգամութեան. նա զօրացեալ զօրութեամբ Հոգւոյն, եդեալ ծունր, և հայեցեալ յերկինս՝ խնդրէր զթողութիւն և հայցէր. «Մի՛ համարիր սոցա զայս մեղս։»

Արդ, մինչդեռ կայր վկայն ի մէջ ապիրատ և տիրասպան[1] ազգին, իբրեւ զնպատակ աղեղնաւորաց յամենայն կողմանց հարեալ լինէր մարմին նորա. աղաղակելով դոչէր առ երեւեալն նմա. և ասէր. «Տէր Յիսուս, ընկալ զոգի իմ»։ Քանզի փութայր ելանել յօտարութեանց նշդեհութեան կենցաղոյս, և անկանել ի գաւառն հայրենի, ի քաղաքն անդրանկաց, ի վերինն Երուսաղէմ, ի մայրն ամենեցուն։ Նաեւ վասն այնորիկ ի վերայ քարկոծողացն առնէր զըղձական աղօթսն, զի դիտաւորութիւն խորհրդական բանիցն ասացելոց, «Տէր, մի՛ համարիր սոցա զայս մեղս», ոչ անպարտս ըղձայ լինել թշնամեացն ի սխալանացն, այլ զառաջիկայ հանդերձեալսն տեսանէր Հոգւովն։ Տուր, ասէ, երկիւղ զըղջման, ած յապաշխարանս ի մեծի յանդգնութեանս. մի՛ տար թոյլ մեռանել անյոյս թլփատութեամբ. ձգեա՛ ի ձեռն ապաշխարութեան առ քոյ իմացութիւնդ. բորբոքեա՛ ի սիրտս նոցա զբոց Հոգւոյն, զի զօրութեամբ քոյոց շնորհացդ և իմով արեամբս, լուացեալք և ազատեալք լիցին յայսմ ամբաստանութեանցս։ Վասն որոյ և ի ձեռն այսպիսի պաղատանացս, զկնի նորա բազմացան դասք հաւատացե-

1. Գ. օր. խոստաղուրանոց։

լոյ ի Նոյունց իսկ հեբրայական ազգէն[1]. յառաջ եկեալք քարոզք բանին կենաց, որպէս և առ աստուածընկալն Պաւղոս է տեսանել: Քանզի մի էր և նա ի սպանողայ Նախավկային, զի ճշմարտապէս է առակաւոր բանն Նահապետին ի դէմս Բենիամենի, «Գայլ յափշտակօղ, զնա կոչելով, այգուն ուտէր, ասէ, և ընդ երեկս կերակուր բաշխէր իշխանաց»[2]. վասն զի ի տղայական անգիտութեան կալով Նորա, ոչ միայն դահիճ սրբոյ վկայի երևեալ, այլ և բանդ պատրաստական և սուսեր սրեալ լինէր ընդդէմ այնոցիկ՝ որք կարդային զանունն Նորա: Իսկ յորժամ պարունակեալ արկաւ կիւրեաւ սպառազինութիւն Հոգւոյն, յայնժամ քահանայապետից և դպրաց և ծերոց ժողովրդեանն Իսրայէլի և Թագաւորաց, ի ձեռն հրաշազարդ վարդապետութեան Նորա, կապտէին օրէնքն և քակտէին ընդունայնութեան պաշտամունքն, և ցանց և հանապազ վշտանայր վասն աւետարանին և տառապէր ի տուէ և ի գիշերի. և պարծանք անձին իւրոյ վարկանէր զասացեալն թէ «մի անգամ քարկոծ եղէ». քանզի պարտ էր և վասն քարանց՝ ի ձեռն քարանց տալ պատասխանի, զորս ի վերայ վկային զձեռս ամենեցուն կարկառէր ի սպանութիւն:

Բայց արժան է մեզ և զտեսիլն ոչ առանց քննութեան թողուլ, զոր և աստանօր իսկ արար, զի թէ աստուածայայտնութիւնս վասն այս վկայիս իւրոյ միայն էր արտայայտեալ[3] շատ և բաւական էր՝ զի վերուստ ձայն միայն լինէր՝ որպէս ի վերայ Յորդանանու, կամ զկնի՝ ի Թափորական սրբոյ լերինն, և որպէս սրբոյն Պաւղոսի՝ առ ճանապարհի Դամասկեայ: Այլ վասն զի հանդերձեալ էր լի ցասմամբ չարանախանձն Սաբէլլիոս համախոհիւքն

1. Գ. օր. ի հեբրայեցւոց ազգացն:
2. Ծնն. ԽԹ, 27: Բ. օր. աղքատաց:
3. Գ. օր. Աստուածայայտնութեամբ վասն վկայիս միայն արար. Բ. օր. Աստուածայայտնութիւնս վասն վկայիս միայն էր արարեալ:

*իւրովք ի վերայ եկեղեցւոյ յառնել, և էականու- թեան չփոթութիւն ի կենցաղս մուծանել. սակս այնորիկ՝ Աստուծոյ հաստանելով զչար կարծիսն՝ զանձինս վերջնոցն զգուշացուցանէր ի չարժելոյ չարեացն, և ցուցանէր զինքն՝ մեծի Նախավկային Ստեփաննոսի, իւրական և ինքնակատար փառօքն, և զՈրդի ընդ աջմէ իւր Նստեալ՝ կատարեալ դիմօք, զի քաղցրնտրութեամբ[1] դիմացն մեկնութիւն առնէ, և էութեանցն կերպարանաւ։*

*Այլ թերևս ասիցէ ոք, թէ յաղագս Հօր և Որդւոյ է իրդ այդ. այլ ո՞ւր է Հոգին սուրբ։ Ասեմ և ես առ քեզ, ո՛վ այր դու, ո՛չ անկանել ի խոյզ և ի խնդիր անպարունակելի բնութեանն. ուր Հայր է՝ անդ իմա և զՀոգին սուրբ, և ուր Որդին է՝ ընդ Նմին ծանիր և զիսկութիւն Նորա. քանզի և Նախ քան զաքանչելի տեսութիւնս զայսոսիկ, Հոգին էր որ կառավարէր, և խորհրդածու մեծի շնորհիս այսորիկ առնէր զսրբազան և զբազմերա- նեան[2] զայն վկայ. վասն զի Նա էր՝ որ հաստատէր զնահատակն, և վառէր զգուշագոյն առաքինու- թեամբ ընդդէմ հակառակորդաց յարուցելոցն ի վերայ Նորա, որպէս և յիշատակարան պատմու- թեանց Նորա զայս մեզ վերաբերեն[3]. «Ստեփաննոս՝ այր լի շնորհօք և զօրութեամբ, առնէր Նշանս[4] մեծա- մեծս ի ժողովրդեանն։ Յարեան ոմանք ի վերայ Նո- րա, որում ասացեալ լինէր Լիբէացւոց և Կիւրենա- ցւոց և Աղեքսանդրացւոց, որ ի Կիւղիկիայ և յԱսիայ, վիճել ընդ Ստեփաննոսի. և ո՛չ կարէին զդէմ ունել զի- մաստութեանն և Հոգւոյն՝ որով խօսէրն»[5]։ Ահաւա- սիկ և զդէմս Հոգւոյն՝ քաղցրնտրաբար մեզ բանս հաստատեաց. այլ եւթէ յառաջագոյն իսկ գրեալ է,*

1. Բ. օր. քաղցրնտրութեան։
2. Դ. օր. բազմերանեալն։
3. Բ և Դ. օր. վերաբերէն։
4. Բ, Գ, Դ և Ե. օր. յաւելուն [illegible]։
5. Գործ. Առք. Զ, 8–10։

և յետոյ Հայր հանդերձ Որդւովն, ոչինչ փոփոխումն և կամ զանազանութիւն ի հաւատս ուղիղս իմացեալ լինի. զի սովորութիւն է գրոց միշտ առնել զայս. երբեմն անուանել զՈրդի միայն, և սկսանել ի Հօրէ և յանգիլ ի Հոգի. և դարձեալ անդրադարձութեամբ, զսկզբանն ի Հոգւոյն լինելով,[1] և ի ձեռն Որդւոյ բանիւն՝ առ Հայր ճանապարհորդելով: Եւ այս ինչ սովորութիւն յատկութեան՝[2] մանաւանդ առ մեծին Պաւղոսի՝ զգուշագոյն է տեսանել զայսպիսի ընդրութիւնս[3]. ասելով, թէ՝ «Հոգին քննէ զամենայն խորս Աստուծոյ, և ինքն յումեքէ ոչ քննի»[4], վասն զի անհետազօտելի է հողեղինացս համագոյութեանն քննութիւն, և անճառելի և անտեսանելի է էութիւն բնութեան աստուածութեանն. այլ զշնորհեալն պատմել պարտ է, և զանճառն առլուել[5] հարկաւոր է: Վասն որոյ և մեք ըմբերանելով զգասս չար հերձուածողացն[6]՝ աստուածապատում բանիւք գրոց սրբոց, և հաստատելով յուղիղ և ի ճշմարիտ կրօնս հաւատոց, զքրիստոսասէր և զուղղափառ ժողովուրդս Քրիստոսի, տօնախմբելով ընդ վերին զուարթնոցն[7] զամենիմաստ վեհին և սրբոյ նախավկային զարտափայլեալ և զտենչալի զյիշատակս կատարելով, և նախանձաւոր գործոց բարեաց լինելով, փառաւորեսցուք արժանաւոր զուգաձայն սրբասացութեամբ[8] զանսկիզբն Հայր, և զյառաջ քան զյաւիտեանս Որդին և զԲանն անբաւանդակելոյն՝ զուգապատուութեամբ և էակցութեամբ Հոգ-

1. Բ, Դ և Ե. օր. զսկզբն է Հոգւոյն առնել ... ճանապարհորդել:
2. Բ. օր. յարկութեան, Դ. օր. յարդարութեան. Գ. օր. և այս ինչ առ զօրութեան յարկ'' ... Պօղոսի. և զգոյշ'' :
3. Բ և Դ. օր. քննութեանս:
4. Ա. Կորնթ. Բ, 10:
5. Դ. օր. առնլուել:
6. Ե. օր. հերձուածողացն:
7. Բ, Դ և Ե. օր. զօրութեանց:
8. Յօր. էր՝ սրբաձայնութեամբ, եդաք ըստ Բ, Գ, Դ և Ե օրինակաց:

ւոյն սրբոյ։ [1]Որոց անբաւից ամէրութեան և աս-
տուածութեան, օրհնութիւն, գովութիւն, երկըր-
պագութիւն և փառաբանութիւն, յերկինս և յեր-
կրի, ի ժողովս անդրանկաց, և յազգս երկրածնաց
բանականաց, յաւիտեանս յաւիտ''։

1. Դ. օր. ստտէն յաւելու. «Եւ դարձեալ երկրորդեցաւ փոխատնական հոյնի աս սուրբ նախավկային Ստեփանոս։ Դու այսօր, սուրբ Ստեփանոս, սկիզբն ճանապարհաց վկայից Որդւոյն Աստուծոյ. դու բացող ուղեւոր դրախտին երկնից. դու լուսեղէն և աստղէն նախահօրն կերպարանօքն զարդարեալ. դու վերտին չիշողտուած լուսեղէն զգեստուն Ադամայ զգեցար, զոր ի յետն օձին մերկացաւ. դու առաւել ցուցար մեզ արդարութեան. դու քոյին վարդապետին յորդորիչ ի հանդերձեալն ապարինն. դու քոյին աշխարհ զատաղնորդն մոլորութեան և զանիծ ազանման՝ յամօթ արարեր զծանաարկան. դու քոյին աստուածորդութեամբք անիծ կենաց կացուցեր նորայ ախորժս։ Քեւ աստանել պարծին եկեղեցի հեթանոսաց. քեւ յասեմ զատարճանան հերձեալ չինի քո՝ հոգեւոր մարտիրոսական փողեցն, որոյ դու սկիզբն և առաջնորդ երկնային ճանապարհին։ Քեւ ցնծան մանկունք սուրբ եկեղեցւոյ. քեւ մոլորեալք դարձեալ եղեն ի գիտութեան ճշմարտութեան։



# ԻԹ

## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՄԻՆԱՍԻ

### ԵՒ ԵՐՄՈԳԻՆԻ ԵՒԳՐԱՓՈՍԻ

*Քրիստոսի շնորհացն յաճախմանն, և եկեղեցեաց բազմանալն, մահուան խափանելն[1] և յարութեանն երեւմանն, յորս ճշմարտութեան վըկայքն զազգի ազգի տանջանս զ'ի վերայ եկեալն ընդունէին, և թշնամւոյն ուրեանց յաղթեալք, յերկինս ընդ հրեշտակս տօնէին, զմերն իրագործէին[2] զփրկութիւն։ Վասն որոյ և ես ողորմելի Աթանասիոս՝ եպիսկոպոս Աղեկսանդրացւոց եկեղեցւոյն, արժանաւորեալ[3] Քրիստոսի շնորհօքն, պատմեմ ի կաթողիկէ եկեղեցիս Աստուծոյ՝[4] կարգաւ[5] զպատ գործելոցս. ի ձեռն ընկերի իմոյ արագագրի կարգեցից զմեծանուն և զերիցս երանելեաց արանցն յաղագս Քրիստոսի աստ վկայեցելոցս[6]. որոց և ցայտումն արեանցն՝ մինչեւ ցայժմ տեսանին[7], անուշահոտացուցեալ զամենեսեան. և ոչ այսչափ միայն, այլ և ամենայն մարդ՝ որ յախտ*

1. Յօր. պակասէր, մահուան խափանելն. եդաք ըստ Բ. օր.։
2. Բ. օր. զմերս իրագործելով։
3. Բ. օր. արժանաւորէլ։
4. Յօր. միայն՝ եկեղեցւոյ։
5. Բ. օր. ասելա։
6. Յօր. պակասէր, յաղագս Քրիստոսի աստ վկայեցելոցս. յաւելաք յ'Բ. օրինակէն։
7. Բ. օր. չունի՝ տեսանին։

հիւանդութեանց անկեալ է, և համբուրէ զնշխարս սրբոյն, նոյն ժամայն բժշկութեան հանդիպի[1]։

Արդ, յետ մարգարէին Քրիստոսի առ մեզ իջանելոյն, զկնի ամաց երկերիւրերորդի վաթսներորդի վեցերորդի, եղեւ յԱղեքսանդրիա դատաստան իրաց, ի մէջ նշանաւոր արանց քաղաքին[2]. և բազում անգամ ինքնակալն[3] Մաքսիմիանոս օրէնս եդեալ վասն նորին, և ոչ կարաց մեկնել զերացն յարմարութիւն։ Ցետոյ հասեալ թուղթ առ նոսին՝ ի թագաւորական[4] իշխանութիւնն՝ յաղագս նորին իրաց դատաստանին։

Ապա ի դէպ ժամանակին զմտաւ ածեալ Մաքսիմիանոսի, առաքեալ զայր ոմն իմաստուն և հանճարեղ. ճարտարաբան խօսողութեամբ յոյժ, զկոչեցեալն Մինաս՝ ուղղել զերացն զզօրութիւնն[5], զի ի ձեռն նորա վախճան կալցի՝ դժուարագիւտ դատաստանն։ Որ իբրեւ եհաս յԱղեքսանդրացւոց քաղաքն, զերացն ուղղեաց զճանապարհն, և վերագրէր առ թագաւորն զհասեալ լուծումն դատաստանին։ Եւ էր Մինաս՝ յոյժ հաւատացեալ ի Քրիստոս, այլ ոչ յայտնէր զինքն՝ թէ քրիստոնեայ իցէ. և մնացեալ ի քաղաքին ամ մի, մինչ ինչ ի հաւատոցն որ ի Քրիստոս յայտնէր[6], շուրջ գալով և տեսանելով զհիւանդսն, և զձեռն ի վերայ եդեալ [և արարեալ] զՔրիստոսի նշանն, առ ժամայն թողոյր ամենայն չար ախտ հիւանդութեանցն, և բազում անդամալոյծս բժշկեաց[7]։

1. Բ. օր. ողջանայրէ։
2. Ցօր. էր. վեցերորդի վաթսներորդի երկերիւրերորդի զկնի ամաց, իսկ Բ. օր. վեցերորդի վաթսներորդի և երկերիւրերորդի բռնատէրութեան, եղեւ յԱղեքսանդրիա դատաստան, ընդէր արանց, ի մէջ նշանաւոր արանց քաղաքին։
3. Բ. օր. չունի ինքնակալն։
4. Բ. օր. առ նոյն թագաւորական։
5. Բ. օր. ճարտարաբան առողջութեամբ յոյժ, ուղղել զերացն զօրութիւնն զկոչեցեալն Մինաս։
6. Բ. օր. յայտ առնէր։
7. Բ. օր. յաւելու՝ և զերծ կեցեալ։

Ցայնժամ վարդապետն կռապաշտիցն՝ գրեաց թուղթ գաղտնաբար[1], վասն Ներսին պատճառանաց՝ զգացուցեալ թագաւորին. իսկ Մաքսիմիանոս ընթերցեալ՝ և յոյժ լցաւ բարկութեամբ և սրամտութեամբ[2], և խորհեցաւ զմի ոք ի պատուական սպասաւորացն առաքել առ Նա. և հաճոյ թուեալ խորհրդակցացն, յաղագս Ներսին առաքել[3] զԵրմոգինէս՝ զփառաւորագոյն եպարքոսն, լի ամենայն հմտութեամբ, աթենացի ազգաւ, փորձ ամենայն արհեստից և իմաստութեան, այլ և բարեգործ առ աղքատս և կարօտեալս, և զգաստ առաքինութեամբ վարելով վասն օգտակարութեան իւրում անձինն[4]։

Եւ իբրև առաքեցաւ ի Մաքսիմիանոսէ թագաւորէ, [5]տեսանէ ի տեսլեան գիշերին յայնմիկ՝ երկս արս ճառագայթատեսիլս, որք և ասէին ցնա. Ե՛րթ, ե՛րթ, և ծանիր զճշմարտութեան Թագաւորն[6], որ առցէ զքեզ իւր ընծայաբեր, և զբազումս առ Նա ածցես՝ ի ձեռն քեզ առաքելոյ փառացն[7]։ Եւ զարթուցեալ ի քնոյն՝ համարեցաւ՝ եթէ վասն երկրաւոր ինչ իրաց իցէ տեսիլն[8], և սաստկագոյն հրամանաւ ասաց սպասաւորացն գնալ[9]։ Եւ եկեալ զայրացմամբ մեծաւ կամելով հանգուցանել զհրամանս թագաւորին, որպէս զի և ի գնալոյ տագնապէ շտապոյն շարժէր

1. Բ. օր. գաղտնաբարս։
2. Բ. օր. չունի՝ և սրտմտութեամբ։
3. Բ. օր. վասն Ներսի առաքելոց։
4. Բ. օր. վարելոյ վասն օգտակարութեան անձին իւրոյ։
5. Բ. օր. յաւելու ննջեցաւ և։
6. Բ. օր. զճշմարտութեանն, զճշմարիտ Թագաւորին։
7. Բ. օր. և զբազումս ածցես առ Նա ի ձեռն առաքելոյ քեզ փառացդ։
8. Բ. օր. երկրաւոր Թագաւորաց իցէ տեսիլս։
9. Բ. օր. աստի ցվերջակետն ունի այսպէս. Եւ եկ զայրացմամբ մեծաւ կամեցաւ ցածուցանել զհրաման Թագաւորին. որպէս զի ի տագնապէն և ի շփոթոյն շարժել ամենայն երկիրն իւր. Նաւն

զերկիրն իբրեւ զնաւս՝ որ ընդ ծովս գնան, ի մրրկեալ ալեաց ծովուն. այնպէս շարժեցաւ քաղաքն ամենայն ի համբաւոյ գալըոյն Երոսդենէ եպարքոսին. և երկիւղիւ ընդ առաջ ելեալ՝ իբրեւ զալիս ծովու ամբոխին, թմկօք և փողովք, ազգի ազգի պարուք և բազում լապտերօք, ելին արտաքոյ քաղաքին ի հանդիպումն նմա։ Եւ մտեալ ի քաղաքն՝ բազմեցաւ[1]. և իբրեւ երեկոյ եղեւ, մնաց առանձինն։ Յայնժամ՝ հնարեցաւ սուրբն Մինաս, աղաչեաց զդռնապանսն, և եմուտ ի ներքս, մինչդեռ նստէր դատաւորն. և խոնարհեցուցեալ զգլուխն՝ ընծայեաց[2] զերկրպագութիւնն, և ասէ՝ հարցանելով. Տէ՛րդ դատաւորայ, յի՞նչ պատճառս եղեւ գալուստ քո այսր[3] ի հայրենի բնակութիւնս[4] քո։ Եւ նորա դարձուցեալ զերեսս ի նմանէ՝ ասէ. Որպէս սիրելութեան ինչ ճարտարաբանեալ առաջի իմ, յառաջ բերես բանս ողոքանաց՝ խօսելով այդպէս[5]. անսա մինչեւ ի վաղիւն, և յետ փոքր ինչ ժամու երեւեսցի[6] որ ինչ հակառակ քեզ հրապարակաւ տեսողացն գտցի, որքան կան քեզ դժնդակքն[7]։ Եւ պատուէր ետ պահապանացն զգուշանալ նմա։

Իբրեւ այգ եղեւ, հրամայեաց զՔրիստոսի զօրականն առաջի[8] կացուցանել. և քարոզքն աղա-

որ ընդ ծովս գնայքն՝ որպէս ի մրրկեալ ծովուն պայծառ շարժեցեալ ալեաց խռովեալ լինին. և ի համբաւոյ երկիւղին յառաջ ելեալ որպէս զառաջ ծովու ամբոխին թմկաւ և փողով և լապտերաւ ազգի ազգի։

1. Բ. օր. չունի բազմեցաւ և։

2. Բ. օր. յաւելու զողջոյն։

3. Բ. օր. Հարցանեմ, ո՛վ դատաւոր, զի՞նչ պատճառ եղեւ գալուստ քո աստ։

4. Յօր. էր՝ բնակութեանս. եդաք ըստ Բ. օր։

5. Բ. օր. որպէս սիրելութեան ինչ ճարտարաբանս յառաջ բերես ողոքանաց խօսս և յոլովս և պէսպէս։

6. Բ. օր. որոշեսցի։

7. Բ. օր. որ կան քեզ դժնդակք։

8. Բ. օր. յառաջ։

զանկեցին, ամենայն բազմութեանն ի միաբին գալ.
և ժողովուրդն իբրեւ զաւազ մանր ի մրրկէ բե-
րեալ լինէին։ Յայնժամ կացեալ Մինաս առաջի
դատաւորին, ոչ որպէս դատապարտեալ, այլ որ-
պէս դատախազեալ, և զձեռնն շարժեալ՝ սկսաւ
զքաղցրաբարբառն արձակել. յերրորդ ժամու-
աւուրն մինչ ցեւթներորդ ժամն խօսէր, զանա-
զան հաւանութեանց զհամեմատութիւն կառոցն[1]
լուծանել, և զՔրիստոսի գալուստն առ մարդիկ
պատմեաց կարգաւ. մինչեւ աղաղակել ամենայն
մարդիկն[2] և ասել, մեծ է[3] Աստուած, մեծ է և
հզօր՝ զոր թարգմանեաց մեզ քաղցրաբարբառդ
Մինաս. Հաւատամք ամենեքեան ի դմանէ աստ-
ցելոցդ։

Իբրեւ ետես դատաւորն զբազմութեան[4] մասն
ժողովրդեանն՝ եթէ խոնարհեցան առ Մինաս,
արձակեաց զամբոխն։ Եւ ի միւսում վաղիւն՝
առեալ[5] զՄինաս կացոյց առաջի հրապարակին[6],
և երիցս անգամ դարձեալ յանդիմանեալ ի նմանէ՝
ընդդիմական[7] բանիւքն առաւելովք։ Յայնժամ
հրամայեաց զներբանս ոտիցն կտրել, և զտեսա-
նելիսն փորել, և զլեզուն արմատաքի խլել, և
զմնացեալ մարմինն պահել, որպէս զի ի վաղիւն
մարմնակեր թռչնոցն ընկենուլ, զի ի նոցանէն
ծախեսցի Մինաս, և մի՛ մասն ինչ յանդամոց
նորա գտցի։

Իսկ ի գիշերին յայնմիկ, յերրորդ ժամուն՝
իբրեւ զփայլակն լուսոյ եկեալ Քրիստոս ի բանդն,

1. Բ. օր. չունի կառոցն, և դնէ՝ լուծանելով։
2. Բ. օր. ամբոխն։
3. Բ. օր. Մէ է։
4. Բ. օր. զբազում։
5. Բ. օր. ածեալ։
6. Բ. օր. ժողովրդեան։
7. Բ. օր. ընդդիմակաց։

մարդասէրն[1]. և յամենայն կողմանց ողջացոյց և զուարթագոյն զնա գործեաց։ Եւ փչեաց ի նա զկենդանարար Հոգին սուրբ, և քաջալերութիւն ետ սրտի նորա[2], և ասէ ցնա. Ես եմ որ էնն, և այժմ մերձ եմ առ քեզ և եղէց ընդ քեզ յաւիտեան. իսկ զդատաւորն Երմոգինէս զոր կարծես քեզ թշնամի գոլ, եդից զնա քեզ սիրելի. վասն զի յիշեցի զգթութիւն նորա՝ զոր առ տնանկս և առ կարօտեալս գործեաց առաջի իմ՝ զհանճոյան իմ[3]. և այսուհետև քաջալերեաց, զի ոչ ես առցես զփորձ տանջանաց ի նմանէ, և անուանք ձեր գրեալ են ի դպրութիւն կենաց։

Իսկ դատաւորն Երմոգենէս, յարթուննս եղեալ[4]՝ զմտաւ ածէր զոր ինչ գործեաց ընդ սուրբ վկայն Մինաս. և լայր դառնապէս, ասելով. Զո՞ւր արարի ընդ արդարոյն ընդ այնմիկ, և ոչ մի ինչ օգուտ հոգւոյ իմոյ ստացայ։ Այնպէս արտասուեալ նորա՝ մինչև ցառաւօտն, և ասէ յինքեան[5]. Թէպէտև բարկութեամբ լցեալ[6] սպանի զայնպիսի և զայնքան այր, գոնէ հրապարակաւ առաջի եդեալ ըզպատուական մարմին սրբոյն՝ լացից ի վերայ նորա, և ի նշանաւոր տեղւոջ՝ հրաման տաց թաղել զնա, որպէս զի մասն մի դադարեցուցէ[7] զտըրտմութիւնս իմ։

Եւ հրամայեաց քարոզ աղաղակել ի վաղիւն. և ամենայն բազմութիւնն ժողովեցան, որպէս զի

1. Բ. օր. էջք և զհրեշտակն երկնեալ ի բանդին. տանգէ էջեալ մարդասէրն Քրիստոս։
2. Բ. օր. զկենդանարարն Հոգին և քաջալերութիւն եդեալ ի սրտի նորա։
3. Բ. օր. վասն զի յիշեաց զգթութեան խորհուրդն և առաջի իմ գործեաց զհանճոյան իմ. զնա կարգեցի քեզ քաղաքակից և սիրելի։
4. Բ. օր. յաւելու լայր և։
5. Բ. օր. յինքն։
6. Բ. օր. չունի լցեալ։
7. Բ. օր. մասն ինչ։

ոչ տանել թէատրոնի տեղեացն[1]: Եւ նստեալ դատաւորն, և առաքեաց հինգ այր ի սպասաւորացն, հրամայեաց բերել զսրբոյն զմնացեալ մարմինն: Իբրև չոգան, գտին զՄինաս առաւել քան զյերեկն և զյեռանդն զուարթ և պայծառագոյն. և զհրեշտակս Աստուծոյ՝ զի կային առ նա[2]. և անկեալ առ ոտս նորա, հաւատացին ի Տէր, և ոչ կամեցան ելանել ի բանդէն:

Իբրև բազում ժամք անցին ի վերայ, առաքեցան այլ սպասաւորք. տեսեալ և նոցա զհրեշտակս՝ անկան առաջի նոցա. սակայն աղաչեցեալ զսուրբն՝ գնացին ի թէատրոնն: Եւ առաջի երթեալ[3] երանելին Մինաս, գնայր ոտիւքն հաստատագոյն, և զաչսն ունելով սրատեսակ, և զլեզուն՝ արագագոյն բարբառեալ: Եւ մատուցեալ համբուրեաց զդատաւորն և ասէ. Ուրախ լեր, փառաւորեալ և երանելի բարեգործ. ծանիր զիս, և ի միտ առ զզօրութիւնն Քրիստոսի Աստուծոյն իմոյ. զի՝ երեկ սկիզբն արարեր անդամակոտոր առնելով զիս, Տէրն իմ Քրիստոս եկեալ վերաստեղծեաց զիս, և զքեզ ընտանեցուցանել իւր կամի: Տե՛ս այժմ, զի զոր յերեկ յօշեցեր զոտս իմ, այսօր հաստատագոյն գնամ. և զոր երեկ փորեցեր զտեսանելիս իմ, այսօր սրատեսագոյն լինիմ[4]. և զոր երեկ արմատաքի հատեր զլեզուս իմ, այսօր արագագոյն բարբառիմ: Մի՛ անգիտանար զայն՝ որ զքեզն ճանաչել կամի. քանզի և քեզ պարտ է ընդունել զառաքինութիւնս զայս:

Յայնժամ ամբոխն ամենայն աղաղակեաց ասելով. Գոչեա՛, գոչեա, իմաստասէրդ Մինաս, գո-

1. Բ. օր. Յայնժամ ժողովուրդն աղաղակեցին և բռնադատէին ժողովեցան, որպէս զի ոչ տանել թատերաց տեղեացն:
2. Բ. օր. առաջի նորա:
3. Բ. օր. երթայր:
4. Բ. օր. սրատեսուն լեալ:

չեա. որ երեկ սրով խողխողեցար, և այսօր զա-նազանապէս բարբառիս. քոյին արութեամբդ[1] ծա-նեաք զԱստուածն ճշմարիտ՝ զառ ի քէն քարոզեալն զՔրիստոս: Եւ կացեալ բազմութիւն ժողովոյն մինչեւ յինն ժամ աւուրն, և ոչ կամէին գնալ, լու-սաւորեալք ի սուրբ վկային վարդապետութենէն:

Ցայնժամ դատաւորն հանդերձ իշխանօքն և ժողովրդեամբն, տեսանէին երկուս հրեշտակս ճա-ռագայթատեսիլս՝ որք պահուճեալ թեւօք հովանիք ունէին ի վերայ գլխոյ երանելոյն Մինասայ: Եւ ի դողման եղեալ դատաւորն՝ ասէ ընդ միտս իւր. Ստուգապէս զճշմարիտ Աստուածն թարգմանէ մեզ քաղցրաբարբառդ Մինաս. բարիոք է հաւատալ ի Քրիստոս և ապրել, և զնա Աստուած խոստո-վանել[2], որ այսպիսի պայծառ ընծայաբերս առաքէ իւր սիրողացն ի սպասաւորութիւն. եւ ընդու-նայն վաստակէր՝ կարծելով զչաստուածսն Աս-տուած գոլ[3], զդիս կռոցն և զխաբէութիւնն՝ ճշմարտութիւն համարէր. այլ այժմ անկանիմ առաջի բարերար[4] և սուրբ քաղաքակցիս իմոյ, որպէս զի ի ձեռն սորա հասից ուղիղ ճանապար-հին: Եւ ի նմին ժամու յարուցեալ յաթոռոյն՝ ընթացաւ առ սուրբ վկայն. սակայն ոչ իշխէր մեր-ձանալ, վասն մերձ կալոյն առ նա սրբոց հրեշ-տակացն. և փոքր ինչ հեռացաւ, և դարձեալ դար-ձաւ անդրէն. իսկ ամբոխն սկսան աղաղակել և ասեն. Համբեր ո՜վ դատաւոր և մի՛ գնար, մինչեւ ծանիցուք զստուգաբանութիւն իմաստասիրին Մի-նասի:

Ցայնժամ աստուածասէր դատաւորն՝ խոնար-հեցուցեալ զգլուխն յերկրպագութիւն սրբոյն, և բուռն հարեալ զսրբոյն՝ համբուրեաց զնա. և

1. Բ. օր. Քրիստոսի զօրութեամբն:
2. Բ. օր. եւ զնա Աստուած խոստովանիմ:
3. Բ. օր. Կարծելով աստուածս զդիս կռոցն:
4. Բ. օր. Բարէ:

կալեալ զձեռանէ նորա հան արտաքոյ ամբոխին, և ասէ ցնա. Աղաչեմ զսուրբդ Աստուծոյ, զքնարդ հոգևոր, զքաղցրաբարբառ վկայդ. զգեղեցիկ առաջնորդդ, զճշմարտութեան լոյսդ, զալեկոծելոյս նաւահանգիստդ, աղօթեա վասն իմ առ Քրիստոս. քանզի տեսի զհրեշտակս նորա մերձ առ քեզ. նա ևս տեսի զհրաշալի նշանն, և հաւատամ յԱստուածն ճշմարիտ՝ զոր դու քարոզես. այլ երկնչիմ[1] զուցէ ոչ ընդունի զիս Քրիստոս, վասն յառաջագոյն պաշտելոյն իմ զդիս կռոցն սնոտեաց։ Ասէ ցնա սուրբն Մինաս. Մի՛ երկնչիր, միայն հաւատա յօժարութեամբ. քանզի Քրիստոս Աստուած մարդասէր է, անյիշաչար և ողորմած. այդ և ինձ յայտնեաց Քրիստոս զստուգութիւն հաւատոց քոց, և զանուն քո գրեաց ի դպրութիւն կենաց։ Եւ յետ համբուրելոյն զմիմեանս, հրամայեաց դատաւորն արձակել զամբոխն, պատուէր տուեալ՝ զի վաղիւն դարձեալ ժողովեսցին. քանզի ընդ երեկս էր օրն։ Եւ մնացեալ առանձինն դատաւորն և սուրբ վկայն, զամենայն գիշերն մինչև ցառաւօտն, ուսուցանէր[2] նմա զառ ի Քրիստոս հաւատսն։

Իբրև այգ եղև, քարոզն աղաղակեաց, և բազմութիւնն դարձեալ ժողովեցան. և լուեալ զհրաշալի իրսն՝ զհաւատալ դատաւորին, եկին երեքտասան եպիսկոպոսք ի ժողովն. նաև բազումք ի հեթանոսաց գային վասն համբաւոյ իրացն փրկութեան, զոր քարոզէր[3] սուրբն Մինաս։ Յայնժամ յարուցեալ դատաւորն՝ յանդիման ամենայն ժողովոյն, աղաղակեաց գոչելով առ սուրբ վկայն Մինաս, և ասէ. Բարիոք դառեցեր, ո՛վ իմաստասէր, և բարիոք ուսուցեր մեզ զառ ի Քրիստոս

1. Բ. օր. Երկնչիմ։
2. Բ. օր. Ճենեաց։
3. Բ. օր. Նարքմանէր։

հաւատս. ով բարի իմաստասէրդ, հաւատամք եթէ նա է Աստուած ճշմարիտ՝ և չիք այլ ոք։ Իբրև զայս ասաց դատաւորն, աղաղակեաց ամենայն ամբոխն միաբան և ասեն[1]. Մեծ է Աստուածն քրիստոնէից, որ և զբարեպաշտ դատաւորդ, զապաւէնդ տնանկաց՝ վերադրեաց[2] Հոգին սուրբ ի գիտութիւն ճշմարտութեան, հաստատելով ի հաւատս՝ որ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։

Յայնժամ առաքեաց սուրբն Մինաս զերագագիր դպրապետ իւր, և հրամայեաց բերել նմա ջուր[3]. և առեալ զջուրն մատոյց առաջի սուրբ[4] եպիսկոպոսացն. և խոնարհեցուցեալ դատաւորն զգլուխն իւր առաջի սուրբ եպիսկոպոսացն, և հեղին զնովաւ զջուրն սուրբ, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, ի մկրտութիւն և ի լուացումն վերստին ծննդեանն, ի թողութիւն մեղաց, ի յարութիւն կենացն յաւիտենից։ Եւ աղօթիւք սրբոյն՝ ընկալեալ զձեռնադրութիւն յերեքտասան եպիսկոպացն, ի պատիւ եպիսկոպոսութեան. մերձ կալով և իմոյ նուաստութեանս։ Եւ զկնի վեցերորդ աւուրն՝ բաշխեաց զամենայն ինչս և զստացուածս[5] իւր աղքատաց. և ապա ի քարոզութիւն ելեալ[6], ուսուցանէր ամենեցուն զհաւատս ճշմարիտս՝ որ ի Տէր մեր Յիսուս Քրիս-

1. Բ. օր. Իբրև այս եղև, դատաւորն աղաղակէին և բարձրաձայնէին ժողովրդեան. և լուեալ զհրաշալեացն, երեքտասան եպիսկոպոսացն, ժողովրդեան և ելին ի միասին առ Մինասն. և գային բազում ի հեթանոսացն վասն հաւատոյ իւրոյն փրկութեան, զոր Բարեգործէր սուրբ վկային։ Յայնժամ յարուցեալ դատաւորն, գնացեալ առ սուրբ վկայն և ասէ. Բարեխօս գտանիցեր խնդրութեանդ զոր ի Քրիստոս ընդունեցաք, ո՜վ ամենաբարի իմաստասէրդ. զայս ասացեալ դատաւորն, աղաղակեաց ամենայն ամբոխն միաբան և ասէն։
2. Բ. օր. Վերածեաց։
3. Բ. օր. դնէ միայն արագագիրն բերելով։
4. Բ. օր. չունի առաջի սուրբ, այլ դնէ աստուածասէր։
5. Բ. օր. չունի և զստացուածս։
6. Բ. օր. չունի և ապա ի քարոզութիւն ելեալ։

տոս։ Եւ մկրտէր օր ըստ օրէ զհաւատացեալսն, հարիւրաւորս և հազարաւորս. և զչարչարեալս յայսոց պղծոց բանիւ միայն բժշկէր, և զմնացեալ դիս կռոց ուր և գտանէր՝ փշրէր, և զբագինս նոցա քակէր. և զցրուեալսն վասն երկիւղի զ՚ի Քրիստոս զհաւատացեալս, ի միասին հաւաքէր սիրով ի շնորհսն Քրիստոսի։

· Իսկ մի ոմն ի ժողովոյն[1] անօրինացն, անուն Ռուստիկոս[2], ընթացեալ պատմեաց Թագաւորին Մաքսիմիանոսի զամենայն զբանս զայսոսիկ, եթէ դատաւորն և սինկղիտոսն, իմաստասէրք քրիստոնեայք եղեալ[3], և զամենայն քաղաքն և զգաւառն արեւելից կողմանցն[4] դարձուցին յերկրպագութիւն խաչեցելոյն Քրիստոսի. այլ և զգեղեցկայարմար տաճարն բարեյաղթ աստուածոցն կործանեցին[5]. և եթէ ոչ ժամանեսցէ քո ինքնակալ մեծութիւնդ[6], ոչ միայն զարեւելից կողմանսն, այլ և զամենայն աշխարհն դարձուցեն՝ որ ընդ Հռոմայեցւոց իշխանութեամբս. և ամենեքեան քրիստոնէութիւն մոլորեցան[7]։

Զայս ամենայն իբրեւ լուաւ Թագաւորն, զարհուրեցաւ և անբաւ սրտմտութեամբ շարժեցաւ. և անյապաղ նոյնժամայն հրաման տուեալ բերել առանց ժողով լինել, և այնպէս տասն հազար զօրականօք դէմ եդեալ, մեծաւ փութով եկն յԵգիպտոս, և նստաւ յատենի. և ըմբռնեալ[8] զերա-

1. Բ. օր. ժողովրդոցն։
2. Յօր. պակասէր անունն Ռուստիկոս, յաւելաք յ՚Բ. օրինակէն։
3. Բ. օր. դնէ միայն՝ եղեն քրիստոնեայք։
4. Յօր. պակասէր՝ յաւելաւ յ՚Բ. օրինակէն։
5. Բ. օր. այրեցին։
6. Բ. օր. ընդունականութեանդ։
7. Բ. օր. զամենայն աշխարհն Հռոմայեցւոց իշխանութեանն յինքեան դարձուցանէր։
8. Բ. օր. և առեալ տասն հազար արանց զօրաւորաց, գնաց յԵգիպտոս և ըմբռնեաց։

նելի եպիսկոպոսն Երմոգենէս, և զքրիստոսի զօրականն զսուրբն Մինաս. և հրամայեաց մերկացուցանել զնոսա, կացոյց առաջի նոցա մերկս[1]. և ասէ սաստելով. Զի՞ եղեւ քեզ, Երմոգենէս, ո՞չ[2] ամենեցուն շնորհեցի օգնական, և զամենայն իշխանութիւն ծովու և ցամաքի ետու ի ձեռս քո, և կացուցի զքեզ ի վերայ իշխանաց իմոց և դատաւորաց. և առաքեցի զքեզ առ ի դարձուցանել ի մոլորութենէդ զերբեմն երեւելի վայրդ զայդ և զպիտանացու, և ուսուցանել դմա զպաշտօն աստուածոցն մերոց[3]. և արդ, զի՞նչ տեսեալ քո, ունայնութեամն դորա հաւանեցար, և զերեւելի գլխաւորութիւնդ կորուսեր, և նմանեցար որ ի թատերսն ծաղրածուքն լինին։

Իբրեւ Երմոգինէս պատասխանի առնել թագաւորին կամէր, ահաւասիկ երկու հրեշտակքն որ առ Մինասիւն երեւէին, նորա դարձեալ երեւեցան նմա, իբրեւ զփայլակն լուսոյ, և հովանի ունէին ի վերայ վկային[4] Քրիստոսի, և ասէին. Քաջալերեցարուք, ահա առաքեցաք ի Քրիստոսէ յօգնութիւն ձեզ։ Յայնժամ պատասխանի ետ երիցս երանելի եպիսկոպոսն Երմոգինէս և ասէ. Եթէ կամիս իմանալ[5], ո՜վ ինքնակալ թագաւոր, եթէ զի՞նչ տեսեալ գործեցի զայս. վկայ է ժողովուրդս այս, մանաւանդ զոր արարի՝ զեղեալ իրսն[6]՝ առաջի աչացդ բերեալ՝ պատմեցից քեզ։ Արդ, զոր օրինակ եհաս սաստկութեամբ քո ինքնակալ

1. Բ. օր. կացոյց զնոսա առաջի հրապարակին մերկս։
2. Ցաստեղանէդ ցմիւսն յօր. պակասէր, յաւելաք յ'Բ. օր։
3. Բ. օր. դարձուցանել զերբեմն երեւելի և զպիտանացու այրդ զՄինաս, և այժմ մոլորեալ. առ ի խրատել և ուսուցանել զդա առ ի պաշտօն աստուածոցն մերոց։
4. Բ. օր. վկայիցն։
5. Բ. օր. գիտել։
6. Բ. օր. մանաւանդ զիրսն։

թագաւորութիւնդ, տնքաւ սրտմտութեամբ և բարկութեամբ ի վերայ մեր, նոյնպէս և ես սատակապէս մոլեկան սպառնալեօք և զարհուրանօք եկեալ ըմբռնեցի զսուրբ այրս զայս[1]. խոստովանի և բազմութիւնս այս, զի գտի զսա կատարեալ քրիստոնեայ, և ճեպեցի[2] զհրամանս քո. և քո աւանդութեամբ զոտս դորա հատի, զաչսն փորեցի, զլեզուն արմատաքի կտրեցի[3]. և կամէի զմնացեալ մարմինն՝ շան[4] և թռչնոց ընկենուլ. իսկ ի վաղիւն գտի զդա ողջ, անարատ[5], առաւել գեղեցկագոյն քան զանցեալ ժամանակն։ Արդ, ո՞վ ոք տեսանելով զհրաշալիսն զայն, և յերկմիտս լինէր[6], ի խոստովանել զԱստուածն երկնաւոր, որ զայնպիսի սքանչելիս գործեաց։ Այլ[7], զի՞նչ հանդերձեալ ես առնել ընդ մեզ՝ արա վաղվաղակի, և զոր դու ոչ կարես զմտաւ ածել՝ զտանջանարանսն, յիշատակ քեզ ածից։ Գազանաց մատնեա, ի խորս ծովու ընկեա[8], սրով խողխողեա, հրոյ մատնեա, յօդակոտոր արա, որպէս և ես արարի զլուսաւորիչդ՝ իմ Մինաս, որ լուսաւորեաց զերբեմն խաւարեալ աչս իմ՝ ճշմարիտ հաւատովն որ ի Քրիստոս[9]։

Յայնժամ բարկացեալ թագաւորն՝ հրամայեաց խոցել զկողս[10] նորա, և զձեռս նորա ի թիկանցն հատանել, և զոտսն ի ծնկացն կտրել, և զբոլոր մարմինն և զկոտորեալ անդամսն հրոյ մատնել, և

1. Բ. օր. սաստկագոյն մոլեգնելով, զարհուրանօք երկնային սարսափը և երանելի այրս այս։
2. Բ. օր. ճեպէի առ ի լնուլ զհրամանս քո սատանայութեանցդ։
3. Բ. օր. եղեցէ։
4. Բ. օր. յաւելու՝ գազանաց։
5. Բ. օր. չունի ողջ, անարատ։
6. Բ. օր. յերկմիտս ոչ եղեալ, խոստովանելով։
7. Բ. օր. Արդ։
8. Բ. օր. գազանընկէց արա՛, ի խորս ծովու ձգեա։
9. Բ. օր. մինչև իմ՝ որ ճշմարիտ գիտութեամբն լուսաւորեաց զիս։
10. Բ. օր. ոտիցն խոցեաց զորովայն։

*հրայարեացս*[1] *ընկենուլ ի գետն՝ որ մերձ էր։ Իսկ զսուրբն Մինաս կախել ի խաւարին բանդի, և վէմ մի մեծ կախել զոտից նորա. հրամայեաց անպիտանանալ քաղաքին։ Իսկ ի գիշերին յայնմիկ հրեշտակքն Աստուծոյ՝ որ երեւէին նմա, ըզսուրբ մարմին երանելի Երմոգինէի հաւաքեալ՝ հանին ի գետոյն, և բերեալ*[2] *ի բանտն՝ ուր էր կախեալ սուրբն Մինաս, և իջուցեալ զնա ի փայտէն*[3]*, զերկոսեանն կենագործեցին քաջալերելով զնոսա*[4]*. և մինչեւ ցառաւօտն խօսէին ընդ նոսա. զօրացուցանելով քաջալերէին զնոսա, ընդ ձեզ եմք, ասեն, մի՛ համարիք եթէ ի բաց կացցուք*[5] *ի ձէնջ, այլ ընդ ձեզ եմք յաւիտեան*[6]*։*

*Իսկ իբրեւ առաւօտ եղեւ*[7]*, նստեալ Թագաւորն օրէնս դնէր*[8] *անպիտանանալ քաղաքին. և ողբումն մեծ եղեւ ի քաղաքն, վասն հրամանի Թագաւորին. քանզի ասէր Թագաւորն ցամբոխն, եթէ ո՞ւր է զօրութիւն Գաղիղայեւոյն. ահաւասիկ Երմոգինէս անպիտանացեալ գետընկէց եղեւ. իսկ Մինաս՝ չանց ընկեցեալ՝ մեռաւ. վասն նոցին*[9] *և դուք անպատուիք, զի նոցա հաւանեցայք*[10]*, և քաղաքս ձեր անպիտան լիցի։ Յայնժամ կացեալ առաջի երկոսաց Թագաւորին՝ երանելի վկայքն, և ասեն. Դադարեսցէ բանդ քո, ո՞վ Թագաւոր, մեք Քրիստոսի անապական Թագաւորին զինուորեցաք,*

1. Բ. օր. չունի հրոյ մարմնել և դնէ հրամայեաց։
2. Բ. օր. և բան ընդ նմա։
3. Բ. օր. ի կախաղանէն։
4. Բ. օր. հոգիացուցեալ քաջալերէին զնոսա առաւել յօժարել ի գործն։
5. Յօր. կացէք, եդաք ըստ Բ. օր.։
6. Բ. օր. չունի այլ ընդ ձեզ եմք յաւիտեան, և ընդ այնր դնէ, և մի՛ զարհուրեսջիք։
7. Բ. օր դնէ միայն, Յայնժամ։
8. Բ. օր. Նախարարն անօրէն գրեաց անպիտանալ։
9. Բ. օր այնորիկ։
10. Բ. օր. համարեցիք, և յաւելու յաղագս այդորիկ։

և ոչ հաւանիմք ապականացու թագաւորութեանդ քո, քանզի ոչ հուր, և ոչ սուր, և ոչ ժանիք գազանաց, և ոչ այլ ինչ տանջանք կարեն մեկնել զմեզ ի սիրոյն Քրիստոսի. այսուհետեւ գործեա դարձեալ՝ զի՛նչ գործելոց ես վաղվաղակի[1]. քանզի փութամք ժամանել առ յաւիտենական թագաւորն մեր Քրիստոս։ Ընդ որոյն՝ ետ պատասխանի Եւգրափոս դպրապետ սրբոյն Մինասի և ասէ ցթագաւորն. Զի՞նչ օգուտ գործիցեր ո՛վ թագաւոր առ մեզ գալովդ. ոչինչ զօրեցեր՝ վասն որոյ եկիրդ. քանզի եկիր ի վերայ մեր՝ որպէս զառիւծ գոչելով և մռնչելով, և այդրէն դարձար իբրեւ զաղուես տկար և անզօր. դադարեա ի յանդըգնութենէդ, թեթեւացիր յընդունայն խորհրդոցդ, քանզի ոչ կարես հասանել յանդ գործոյդ քո[2]. այսուհետեւ պարտ է քեզ տրտմել, և մեզ պարտ է ցնծալ և ուրախ լինել հանապազ։

Զայն լուեալ թագաւորն բարկացաւ ի վերայ Գրափոսի, և կապեալ զնա՝ սրով կատարէր իւրովին ձեռօքն[3]։ Հրամայեաց և զերանելին զսուրբն Մինաս և զԵրմոգինէս սրով սպանանել. և չնորհս խընդրեաց ի թագաւորէն Մինաս, զի զմարմինս նոցա հրաման տացէ թաղել ի Բիւզանդիոն քաղաք. և Մաքսիմիանոս ոչ կատարեաց[4] զխնդրուածս նոցա, եդ զնոսա յերկաթեղէն տապանի, և հրաման ետ ընկենուլ ի խորս ծովուն. և ինքն ամօթալից գնաց ի Բիւզանդիայ քաղաք։ Եւ յետ քսան աւուր եկ տապանն ի Բիւզանդիա յաւուր կիւրակէի. և հասարակ գիշերի երեւեալ տապանն յարեւելից կողմանէ քաղաքին, յեզր ծովուն՝ առ

1. Բ. օր. այսուհետեւ զոր ինչ առնելոց ես արա՛ վաղվաղակի։
2. Բ. օր. և դադարեցար ի յանդգնութենէդ քումմէ, և թեթեւացար ի յունայն խորհրդոց քոց. զի ոչ կարացեր հասանել յանդ գործոյդ։
3. Բ. օր. կատարեաց սրով իւրովի ձեռօքն։
4. Բ. օր. ոչ կամեցաւ կատարել։

Քաղկեդոնի[1], և էր կցեալ ի տապանն սիւն[2] ամպոյ պայծառ լուսով[3], և երկու հրեշտակքն ջահիւք կային առաջի նշխարաց սրբոցն. և զգացուցին հրեշտակքն եպիսկոպոսի քաղաքին զգալուստ սրբոցն. և յորդորէին նոյնժամայն հաւաքել ընդ-նշխարսն։

Իսկ եպիսկոպոսն ժողովեալ զքահանայսն մեծաւ փութով և զարս հաւատացեալս և առաքինիս ի տեսիլ լուսոյն, եկեալ կացին առ ափն ծովուն. և միաբան ամենեցուն տեսեալ զհրեշտակսն Աստուծոյ՝ որք ուղղէին զտապանն. և մատուցեալ եպիսկոպոսն և քահանայքն ասեն ցնոսա[4] թէ ո՞րպէս պարտ է հանգուցանել զնշխարս սրբոցդ։ Եւ հրաման[5] առեալ՝ եդին ի ծածուկ տեղի՝ ի շտեմարանս եկեղեցւոյն, մինչեւ ցվախճանն Մաքսիմիանոսի։ Եւ յետ երկուց ամաց՝ տանջեալ յաներեւոյթ[6] հրեշտակէ՝ եհան զոգին մեծաւ տագնապաւ անօրէնն Մաքսիմիանոս։ Յայնժամ յայտնեցին զպատուական գանձն՝ զնշխարս սրբոցն. հանեալ եդին մերձ[7] առ ափն ծովուն, նախամարտիկ քաղաքին[8]. և ամենայն իշխանքն պատուականքն, խնկովք և լապտերով երկրպագեցին սրբոցն նշխարացն, գոհանալով զպարգեւացն Աստուծոյ՝ որ շնորհեաց զսուրբսն իւր՝ հիւանդաց բժշկութիւն, մեղաւորաց քաւութիւն, ճանապարհորդաց գաւազան զօրութեան, նաւելոց անքոյթ

1. Բ. օր. մերձ յեզր ծովուն Քաղկեդոնի։
2. Յօր. օրէն եդաք ըստ Բ. օր.։
3. Յօրինակին պակասէր պայծառ լուսով, եդաք ըստ Բ. օր.։
4. Բ. օր. և մատուցին եպիսկոպոսին և քահանայքն, և ասեն ցնոսա։
5. Բ. օր. չունի հրաման, և դնէ նոցա։
6. Բ. օր. յաւելու սրով։
7. Բ. օր. յայնժամ եդին զպատուական գանձն մերձ։
8. Բ. օր. յաւելու և ամենայն աշխարհն և չունի մինչև զսուրբսն իւր։

նաւահանգիստ, և ամենեցուն յամենայն վտանգէ դեղ կենաց և փրկութեան[1]։

Եւ յապարիսի բարեպաշտութեամբ կատարեցան, ի դեկտեմբերի ամսոյ որ օր տասն էր՝ ի փառս ամենասուրբ անուան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1. Բ. օր. աստանօր ունի այսպէս. այս միաբանեալ Նախամարտիրոսն ընկալաւ զպսակն յաղթութեան. կատարեցաւ սուրբ մեծին յամսեանն դեկտեմբերի որ օր տասն էր ամսոյն, ի Քրիստոս Յիսուս է տէր մեր....։



L

## ՎԱՐՔ

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ԱՆՏՈՆԻ

### ԵԳԻՊՏԱՑԻՈՅ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ

### ԵՒ ՄԱՀ ՆՈՐԻՆ ՍՈՒՐԲ ԾԵՐՈՒՆԻՈՅ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՍԻՐԻ

## ԹՈՒՂԹ ԱԹԱՆԱՍԻ

Բարւոք է նախանձ առաքինութեան դնել ընդ միայնաւորս Եգիպտացւոց, հաւասարել կամ առաւելուլ զաղջօք կամեցեալ ըստ առաքինութեան ձերոց վարուց. քանզի և առ ձեզ այսուհետեւ գոն միաւորաստանք և անուն մենակեցաց. զի զայսպիսի յառաջարկութիւն յիրաւի և գովեցուք, և աղօթիւք ձերովք Աստուած կատարեսցէ։ Արդ վասն զի և յինէն պահանջեցէք բան վասն առաքինութեան վարուցն Անտոնեայ ուսանել կամեցեալք թէ զինչ օրինակ արդեօք սկիզբն արարեալ վարուցն և կամ զինչ արդեօք յառաջ քան

Նախանձ բարւոյ առաքինութեան հաստատեալ առ միանձունս եկեղեցւոյ և Եգիպտոսի, առ իմանալ և կամ առ առաւելուլ քան զնոսա յօժարեալք առաքինութեամբ ձերով կրօնաւորեալք։ Քանզի որ առ մեզ կրօնաւորք են և միանձունք, անուն բարի ընդ ամենայն տեղիս պատմի, զի զայսպիսի զյօժարութիւն կամաց յիրաւի ոք գովեսցէ,

զայս էր, և որպիսի եղեւ վախճան կենաց Նորա, և թէ ճշմարի՞տ են զնմանէ ասացեալքն, ե քանզի առ ի Նորա հակառակութիւն զձեզ մատուսջիք՝ բազում յօժարութեամբ ընկալայ զառ ի ձէնջ հրամանդ. քանզի և ինձ իսկ մեծ շահք օգտի են և լոկ միայն Անտոնեայ անուանն յիշատակ։ Գիտեմ և դուք զայս լուեալք յետ զարմանալոյ ընդ այնր՝ կամեսջիք և նախանձել եւս ընդ Նորա գեղեցիկ շահիցն պատճառս. քանզի բաւական է առ ի գեղեցիկ օրինակ ի վարս միայնակեցութեան կրօնքն Անտոնեայ։ Արդ զոր ինչ լուեալ էք վասն Նորա ի պատմողաց՝ մի՛ անհաւատէք, այլ սակաւ քան զարժանն ի Նոցանէ լուեալ համարեցարուք, զի և Նոքա այսչափ հազիւ կարացին պատմել։ Նա և ես հրամայեալ ի ձէնջ ի ձեռն թղթոյս Նշմարեալ առաքեմ ձեզ՝ սակաւս զՆորայն յիշեցեալ։ Այլ դուք մի՛ դադարիցէք հարցանել որ առ ի մէնջ այդր Նաւարկեն. զի ամենայն ուրեք որ ինչ գիտէ ոք ասելով՝ հազիւ թէ յարժանի զի առ ի Նմանէ եղիցին պատմութիւնք։ Քանզի և ես կամեցայ զձեր թուղթն ընկալեալ կոչել զոմանս ի մենաւորաց որ մանաւանդ յաճախագոյնս սովոր էին առ Նա երթալ, զի թե-

բայց մեր աղօթս արարեալ՝ և Աստուած յորդորեսցէ։ Բայց վասն զի դուք պահանջեցէք յինէն վասն վարուց երանելւոյն Անտոնի, քանզի շահ օգտի լինիցի անուաննելն միայն զանունն անտոնի. գիտեմ և զի ձեր լուեալ, յետ զարմանալոյ և ընդ այն՝ կամիցիք նախանձել ընդ Նորա յօժարութիւնն. բայց դուք մի՛ դադարէք՝ որք աստի անդր Նաւարկեցին հարցանել՝ զի թէպէտ և իւրաքանչիւր ոք զլւեալն գիտիցէ, հազիւ ըստ արժանի գործոցն Նորա պատմութիւնն արասցէ։ Կամէի ի ձէնջ զընկալեալ թուղթն զողջունի առաքել՝ և կոչել զոմանս ի միանձանց՝ որ մանաւանդ ըստ սովորութեանն մուտ և ել էին, թերեւս յաւելագոյն ուսեալ ինչ՝ լիով առ ձեզ գրել։ Բայց վասն զի ժամանակ Նաւարկութեանն արգել, և թղթաբերն փութայր, վասն այսորիկ զինչ իմ տեղեկացեալ, բազում անգամ զՆա տեսեալ

րեւս զբազումս հարցանելով կատարելագոյնս ա-ռաքէի ձեզ։ Արդ վասն զի ժամանակ նաւարկութեանն փակէր և թղթաբերն փութայր, վասն այսորիկ զոր ես գիտեմ պատմեմ ձեզ. քանզի բազում անգամ տեսի զնա և կարայի ինչ ուսանել ի նմանէ, որոյ զհետն երթեալ էի նորա սակաւ մի ժամանակ և ջուր զձեռօք նորա արկեալ, գրել ձերում բարեկամութեանդ փութացայ՝ յամենայն կողմանց զճշմարտութիւնն հոգացեալ, զի մի՛ առաւել ոք լսիցէ և թերահաւատեսցէ, և զի մի՛ դարձեալ նուազագոյն քան զարժանն ուսանել արհամարհեսցէ զառնէն։

Անտոնիոս յազգէ էր եգիպտացի յազատ ծնողաց, և ստացուածս ըստ տանց իւրեանց ունէին. և վասն զի քրիստոնեայք էին՝ քրիստոնէաբար և նա սնեալ լինէր։ Եւ մինչդեռ մանուկն էր սնանէր առ ծնողսն. բայց ի նոցանէ և ի տանէ անտի զայլ ոք ոչ ճանաչէր։ Եւ իբրև աճեցեալ եղեւ պատանեակն և յառաջացեալ լինէր սակաւ հասակաւ, դպրութիւն ուսանել յանձին ոչ կալաւ, վասն զի անընդել լինել կամեցաւ սովորութեան մանկըտւոյ, և զցանկութիւն ունէր ըստ գրեցելումն իբրև առանց պատրաստի պաճուճանաց բնակել ի տանն իւրում։ Եւ թէպէտ և միաբանել լինէր

և ուսանել կամեցեալ, յայնմանէ՝ որ սակաւ ժամանակս զհետ նորա շրջեալ, և արկեալ ջուր զձեռօք նորա, գրել ձեր երկիւղածութեան փութացայ. ամենայն ուրեք զճըշմարտութիւնն զայն զմտաւ ածեալ. մի ինչ առաւել ումեք լուեալ թերահաւատեսցին. և մի՛ ինչ դարձեալ խոնարհագոյն քան զչափն անփոյթ առնիցեն։

Անտոն էր ազգաւ Եգիպտացի, ի տոհմային հարց, և ինչս ի բաւականութիւն ստացեալ, հայր և մայր Քրիստոնեայք, քրիստոնէութեամբ սնեալ, և նա տղայ դեռ ևս, էր սնեալ առ հօր և մօր իւրոյ, աւելի քան զնոսա և ըզտունն իւր, ոչ ճանաչէր։ Եւ յորժամ աճեաց և զարգացաւ մանուկն, և յառաջ եղև հասակաւն, դպրութիւն ուսանել չառնոյր յանձն, կամեցեալ արտաքս լինել քան զսովորու-

ընդ ծնողսն ի տէրունական տանն, սակայն ոչ իբրեւ զմանուկ ծուլայր և ոչ իբրեւ զարգացեալ հասակաւ արհամարհէր, այլ և ծնողացն հնազանդ լինէր և գրոց ընթերցուածոց ունկնդրութիւն առնէր, զի զառ ի նոցանէ օգտութիւն յինքեան պահեսցէ. և ոչ դարձեալ իբրեւ զմանուկ չափաւոր ժառանգութեան ի սնունդ նեղէր ինչ զծնողսն վասն բազմապատիկ ինչ ազգի ազգի և պայծառ կերակրոց, և ոչ ընդ այսպիսի ինչ ցանկութիւնս զանձն արկանէր։

Իսկ յետ մահուան ծնողացն ինքն միայն մնացեալ լինէր հանդերձ միով քերբ փոքու. և էր մերձ ամաց ութուտասն և կամ' քսանի եղեալ, և ինքն էր հոգաբարձու տանն և քեռն իւրում։ Զեւ եւս ամիսք վեց անցեալ էին մահուան ծնողացն, նա ըստ սովորութեան իւրում ելեալ երթայր յեկեղեցին և զմիտսն յինքն ամփոփեալ խորհէր վասն ամենեցուն թէ որպէս արդեօք առաքեալքն թողեալ զամենայն գնացին զհետ փրկչին. և դարձեալ ոմանք ի գործս առաքելոցն որք վաճառէին զիւրեանցն և բերեալ դնէին առ ոտս առաքելոցն ի բաշխումն այնոցիկ որոց պէտքն պահանջէին, որպիսի' արդեօք և որչափ սոցա յոյս յերկինս պահեալ դնիցի, զայս ընդ միտ ածելով եմուտ ի

թիւն մանկանց. բայց զչափ ցանկութեանն ունէր յանձին իւրում, ըստ գրոյն Յակոբայ, որ ասէր. եթէ «այր միամիտ է առանց պատճառանաց», երթայր յեկեղեցին՝ ընդ հօր և ընդ մօր իւրոյ և ոչ իբրև զմանուկ անփոյթ առնէր։ Եւ յորժամ ի չափ հասակի հասանէր՝ ո՛չ վիսանայր հօր և մօր իւրոյ, այլ հնազանդ լինէր և ընթերցուածոց գրոց ունկնդրութիւն առնէր, զի զառ ի նոցանէ օգտութիւն ինքեան պահեսցէ. և ոչ դարձեալ իբրև զմանուկ չափաւոր ժառանգութեան սնունդ նեղէր ինչ զծնօղսն վասն բազմապատիկ ինչ ազգի ազգի և պայծառ կերակրոց, և ոչ ընդ այսպիսի ինչ ցանկութիւն զանձն արկանէր։

Այսր և անդր տարբերութիւնքն է բնագրէն, ուղղակի են, բայց է պակասաւոր։

ներքս ի ժողովարանն։ Եւ դէպ եղեւ յայնմ ժամու ընթեռնուլ զաւետարանն, և լուաւ ի տեառնէ զի ասէր ցմեծատունն. եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչս քո և տուր աղքատաց և եկ զկնի իմ՝ և կալցես գանձս յերկինս։ Իսկ Անտոնիոս իբրեւ յԱստուծոյ իմն ունէր յինքեան զյիշատակս սրբոցն. և իբրեւ թէ վասն նորա ընթերցուածն եղեալ լինէր, անդէն վաղվաղակի ի դուրս ելեալ ի տէրունական տանէն, զստացուածսն զոր ունէր ի նախնեացն՝ զի էին նորա արտավարք քաջարերք և ընտիրք յոյժ՝ զայնս շնորհեաց գեղջէիցն, զի մի՛ ինչ բնաւ լըլկեսցեն զնա և զքոյրն։ Իսկ որ այլ ինչ էր իւրեանց բառնալի, զամենայն վաճառեալ՝ ժողովեաց արծաթ բազում և բաշխէր տնանկաց, սակաւ մի և քեռն թողոյր յամենայնէ։ Իսկ իբրեւ դարձեալ եմուտ յեկեղեցին և լուաւ յաւետարանի տեառն զի ասէր՝ մի՛ հոգայք վասն վաղուի, և ոչ կարաց յերկար եւս համբերել, այլ ի դուրս ելեալ վաղվաղակի և զայն եւս բաշխէր աղքատաց, և զքոյրն յանձն առնէր ծանօթ և հաւատարիմ կուսանաց, տուեալ զնա ի կուսութիւն սնանել, և ինքն արտաքոյ շինին բնակէր։ Այնուհետեւ ընդ կարգօք կրօնիւք զանձն ի վայր արկանէր և ժուժկալութեամբ զինքն կրթէր. քանզի չեւ եւս գոյին յայնմ ժամանակի յԵգիպտոս յաճախ միայնաւորաստանք, և ոչ բնաւ գիտէր իսկ ոք միայնակեաց զհեռաստանն անապատ, այլ ամենայն ոք որ կամէր անձին միտ դնել՝ ոչ հեռաստան ուրեք յիւրմէ գեղջէն միայնացեալ կրօնաւորէր։

Ի ժամանակին յայնմիկ գտաւ ծերունի ոմն ի մերձաւորն գեօղ, ի մանկութենէ կմենաւորութեան կրօնս վարժեալ։ Զսա տեսեալ Անտոնի նախանձեցաւ ի բարիս, և նախ սկիզբն արար իւր բնակութեան ի մօտաւոր տեղիս գեղջն. և անտի թէ ուրուք փոյթ զումեքէ լսէր, ի խնդիր

ելեալ լինէր իբրեւ զիմաստուն մեղու. և ոչ դառ-
նայր յիւր տեղին, եթէ ոչ նախ զնա տեսանէր,
և իբրեւ համբար իմն ճանապարհի առաքինու-
թեան ի նմանէ առեալ լինէր։ Այնդ սկիզբն առ-
նէր իւր ժամանակ մի բնակութեան. զխորհուրդ-
սըն կշռէր, զի մի՛ ի հայրենի երկիր իւր դարձցի
և զազգակիցսն ի միտ արկցէ. այլ զամենայն
փափագումն և բնաւ զփոյթն ունէր ի պնդութիւն
կրօնից և գործէր ձեռօք իւրովք, լուեալ զայն
թէ որ գործէն ոչ՝ և կերիցէ մի՛. և էր ինչ հացն
զոր ի կարօտեալս ծախէր։ Եւ յաղօթս կայր յա-
ճախագոյնս, և ուսեալ թէ պարտ և պատշաճ է
առանձինն կալ յաղօթս անսպառ. քանզի ուշ այն-
պէս եդեալ էր յընթերցուածս գրոց, զի մի՛ ինչ
ի նմանէ ի գրելոց ի գետին անկցի. այլ զամե-
նայն ինչ ունել, զի այնուհետեւ նմա յիշատակքն
փոխանակ գրոց իցեն։ Այսպէս զինքն վարուքն
կրօնաւորելով սիրելի էր ամենեցուն Անտոնիոս։
Եւ ինքն սրտի մտօք առ փոյթսն՝ առ որս երթեալ
լինէր՝ զանձն ընդ հպատակութեամբ կարգէր, և
յինքեան զամենայն ուրուք զառաքինութեան փոյթ
և զանվթար կրօնից խուզէր, զորումն զշնորհա-
ւոր լրջմտութիւն, և զորումն զառ ի յաղօթս
զփոյթն տեսանէր, և զայլոյ որումն զոչ բարկա-
նալն, զայլոյ մարդասիրութիւն իմացեալ տեսա-
նէր, և որումն ի հսկումնն, և որումն ի գրասէր
ընթերցուածն հայէր, և զոմն ի ժուժկալութեան,
և զոմն ի պահս և յերկրատապաստութեան. զար-
մանայր և ընդ որումն ընդ հեզութիւնն, և զո-
րումն զերկայնմտութիւն դիտէր. միանգամայն
զամենեցուն առ ի Քրիստոս բարեպաշտութիւն և
զառ միմեանս սէրն. և այսպէս ինքն ամբարեալ
այսրէն դառնայր յիւր իսկ բուն տեղի կրօնաւո-
րութեանն։ Եւ ապա այնուհետեւ զառ ի յամենե-
ցունց յանձն ժողովեալ փութայր զամենայն յին-
քեան ցուցանել։ Նա եւ ընդ հասակակիցսն իւր ոչ

*հակառակէր, բայց միայն զի մի՛ քան զնոսա երկրորդ ի լաւութեան երեւեսցի։ Եւ զայս եւս առնէր զի մի՛ զոք ամենեւին տրտմեցուսցէ, այլ և զտեսողսն եւս ի վերայ իւրոցն բերկրեցուցանէր։ Եւ ամենայն գեղջայինքն և բարեկամքն հայեցեալ ընդ Նորա գեղեցիկ սովորութիւնն և այնպէս զնա տեսեալ աստուածասէր կոչէին. ոմանք իբրեւ զորդի և ոմանք իբրեւ զեղբայր համբուրէին։*

*Իսկ չարակամ բարիատեաց մեղսասէր բանսարկուն՝ ոչ կարաց համբերել տեսլեանն ի տղայութեան այսպիսի յառաջադիմութեան. այլ որպիսի ինչ սովորն էր առնել՝ նոյնպէս և սկիզբն առնէ և վասն սորա գործել։ Եւ նախ զառաջինն փորձէր զնա ի գեղեցիկ և յանչարժ կրօնիցն ընկենուլ, յուշ առնելով նմա զյիշատակ ստացուածոցն և զքեռն իւրոյ զխնամարկութիւնն, զազգայնոցն զընտանութիւն, զարծաթսիրութիւն ըզփառասիրութիւն, զկերակրոց զազգի ազգի զցանկութիւնս, և զայլ եւս զաշխարհիս հանգիստ, և կատարած՝ զխստամբերութիւն առաքինութեանն, և թէ բազում են Նորա բանք աշխատութեան, և զմարմնոյ հիւանդութիւն ի միտս արկանէր, և զժամանակի երկայնութիւն, և բնաւ կարի իմն սաստիկ յարուցանէր ի միտս Նորա մրրիկ խորհրդոց՝ կամեցեալ քեցել զնա ի գեղեցիկ ուղիղն քաղաքավարութենէ։*

*Եւ իբրեւ ետես թշնամին զինքն տկարացեալ առ յառաջադրութիւնսն Անտոնեայ, մանաւանդ զի ետես զինքն պարտեալ ի Նորա յանչարժ հաստատութենէն և գայթակղեալ ի հաւատոցն և ընկճեալ ի ստէպ ստէպ աղօթիցն Անտոնեայ, յայնժամ ի վերայ պորտոյ որովայնին զզէնս իւր քաջալերեալ, և ողջք պանծալով պարծէր, քանզի այս է Նորա սաստիկ դարան առ տհասս. և յարձակի ի վերայ Նորահասակացն ի գիշերի ամբոխելով և ի տուէ այնպէս լլկելով մինչև տեսողացն*

անգամ՝ զգայութիւն լինել զառ ի միմեանս կռիւ։ Քանզի նա ի միտս արկանէր նորա խորհուրդս աղտեղիս, իսկ սա աղօթիւք զայն անդրէն դարձուցանէր. և նա խաղտմամբ զայրացուցանէր, իսկ սա իբրև կարծիս իմն ամօթոյ հնարէր՝ հաւատովք և պահօք զմարմինն պարսպէր, և գժընդակութեանց բանսարկուին յանցիցն տևէր։ Եւ իբրև կին մարդ ի գիշերի կերպարանեալ լինէր, և ամենայն ձև օրինակաց նմանէր, միայն զի կարասցէ զԱնտոնիոս պատրել։ իսկ սա զՔրիստոս զմտաւ ածելով և վասն բարեծնութեանն զշտեմարանս իմաստութեան ընդ միտ ածելով՝ զհուրն շիջուցանէր զկայծակն մոլորութեան նորա։ Եւ դարձեալ թշնամին ի միտ արկանէր զգայթակղութիւն ցանկութեան. իսկ սա իբրև բարկացելոյ և սրտմտեցելոյ նմանեալ՝ զսպառնալիս հրոյն և զցաւս որդանցն ընդ միտ ածելով և զայն ընդդէմ կշռելով՝ անցուցանէր անվնաս։ Եւ լինէր այս ամենայն ի յամօթ թշնամւոյն. քանզի որ կարծեացն հաւասարել Աստուծոյ, այժմ ի ձեռն մանկան տղայոյ խաղացաւ. և որ զմարմնով և արեամբն արհամարհէր, ի մարմնազգեստ մարդոյ կործանէր։ Քանզի օգնական և յաղթողիչ և գործակից էր նմա տէր, որ վասն մեր մարմին զգեցաւ և մարմնոյս ի վերայ բանսարկուին ետ յաղթութիւն, մինչև ասել այսպէս ամենայն մարտուցելոցն ընդ նմա՝ ոչ ես, այլ շնորհքն Աստուծոյ որ ընդ իս։

Եւ յետ այսորիկ իբրև ոչ կարաց և ոչ յայսմ յաղթել Անտոնի վիշապն. այլ տեսանէր զինքն մերժեալ որոշեալ ի սրտէ նորա, կրճտէր զատամունսն ըստ գրեցելումն, և իբրև հիացեալ լինէր ի զարմացումն ընդ հաստատութիւն մտացն։ Եւ այսպէս դարձեալ առաչօք թուխ և դժնեայ պատանեակ յանդիման երևէր։ Եւ իբրև ընդ ձեռամբ անկեալ եղև և ոչ ևս կարէր խորհրդոցն

գեր ի վերոյ լինել, քանզի ի դուրս քարշեալ ընկեցեալ լինէր Նենգաւորն, այնուհետեւ զմարդկան ձայն ի կիր արկեալ ասէր. բազում խաբեցի և շատս յերկիր կործանեցի, և այժմ ի վերայ այլոցն քոյոց տանջանօք և ցաւովք անկարացայ։ Ապա Անտոնիոս եհարց զնա. ո՞վ ես դու այդպիսիս ընդ իս բարբառելով։ Անդէն վաղվաղակի նա գարշելի ձայնս արձակեալ ասէր. ես պոռնկութեան եմ սիրելի, ես զօրս դարանս և զխըտղըտմունս առ Նորահասակսն յանձն առեալ և կալեալ եմ, և հոգի պոռնկութեան կոչիմ. զքանի՜ս որ կամէին ողջամիտ լինել, և ես խաբեալ պատրեցի. և թէ բազում են Նորա ջանք աշխատութեան,՝ ես հաւանեցուցի խտղտելով[1], և վասն որոյ մարգարէն մեղադիր լինի. ասէ՝ հոգւով պոռնկութեան պատրեցայք. քանզի ինեւ էին Նոքա կարթեալք։ Ես եմ որ բազում անգամ լլկեցի զքեզ և առաւել քան զբազումս եղէ ի քէն փախստեայ։ իսկ Անտոնիոս գեղեցիկ գոհութիւն տեառն աստուծոյ մատուցանէր, և արհամարհելով զնովաւ ասէր ցնա՝ թէ կարի յոյժ գձուձ ես և դիւրարհամարհ. քանզի ես դու թուխ մտօք և արհամարհ իբրեւ զմանուկ. չիք ինչ ինձ այսուհետև հոգալ վասն քո, զի տէր է ինձ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ։ Զայս իբրեւ լսէր թուխն, անդէն վաղվաղակի ի բաց փախչէր. և զարհուրեալ նա յերանելւոյն յերկեղի մեծի լինէր, այլ եւս մերձենալ յայրն ոչ իշխէր։

Նախ այս նահատակութիւն եղեւ երանելւոյն Անտոնեայ ընդ բանսարկուին. այլ և յայսմ եւս փրկիչն գտաւ Անտոնի ձեռնկալութիւն յաջողութեան, որ զմեղս դատապարտեաց ի մարմնի իւրում, զի արդարութիւն օրինացն կատարեսցի ի

1. Ցօրինակին խանգարեալ բառդ եդաւ ըստ օրինակի ճառընտրաց։

մեզ որք ոչ ըստ մարմնոյ գնայցեմք, այլ ըստ Հոգւոյ։ Այլ և ոչ Անտոնիոս իբրև զի ընդ ձեռամբ անկեալ էր դևուն՝ զգերիվերութիւն պանծացեալ անհոգ ինչ լինէր այնուհետև և անփոյթ ինչ առնէր զանձէ։ Եւ ոչ թշնամին ի պարտութիւն մատնեալ դադարէր ի դարանամուտ լինելոյ, և գնայր շրջէր իբրև առիւծ՝ խնդրելով պատճառս ինչ զնմանէն։ Իսկ Անտոնիոս ի գրոց ուսեալ թէ բազում են թշնամոյն մենքենայք խարդախութեան, վաղվաղակի ի ձիգ արկանէր զգեղեցիկ կրօնսն, զբժիշկն ախտից ընդ միտ ածել։ Զի թէպէտ և ոչ զօրեաց ի ցանկութիւն մարմնոյն զխիրտն պատրել, սակայն փորձեսցէ այլովք մենքենայիւք և դարանամտութեամբ խափան լինել. քանզի և ընդդէմ մեղանչասէր դիւին եւս քան զևս ճնշեցուցանէր զմարմինն և ծառայեցուցանէր ի հնազանդութիւն, զի մի՛ երբէք որ յայլսն յաղթեաց և յայլսն գողացեալ լիցի. կամէր այնուհետև ծանր և խիստ կրօնիւք զինքն սովորեցուցանել։ Եւ բազումք ընդ այն սքանչացեալ լինէին. սակայն նա դիւրաւ զջան վաստակոցն տանէր, քանզի յօժարութիւն հոգւոյն՝ սովորութիւն գեղեցիկ բարուց ի նմա գործէր, մինչ զի փոքր անգամ պատճառս ինչ յայլոցն ընկալեալ՝ բազում փոյթ յօժարութեան առ այս ցուցանէր, և հսկէր այնչափ՝ մինչև բազում անգամ դէպ լինէր նմա զգիշերն ամենայն անքուն կատարել. և զայս ոչ եթէ մի անգամ, այլ բազում անգամ զայս արարեալ սքանչելի լինէր։ Ուտէր մի անգամ յաւուրն յետ մտիցն արեւու. էր երբէք զի յետ երկուց, բազում՝ անգամ՝ և յետ չորից աւուրց ուտէր։ Եւ էր կերակուր նորա հաց և աղ և ջուր ըմպելի. այլ վասն մսոյ և գինւոյ և ասել իսկ աւելի է. որ ոչ և առ այլս անգամ փութականս գտանի ինչ յայսպիսեաց աստի։ Եւ ի քուն չատացեալ լինէր խոտեղինաւ, և բազում անգամ

յերկիր անանկողին անկեալ դնէր։ Այլ օծանել զինքն ձիթով ամենեւին ոչ առ յանձն, ասելով թէ պարտ և արժան է Նորահաստակայն խնդաբարոյ յօժարութեամբ զառաքինութեան կրօնսն յինքեան բերել, և մի՛ խնդրել զայն որ թուլացուցանէ զմարմինն. այլ ընդելացուցանել զսա վաստակօք, ընդ միտ ածելով զառաքելական բանն՝ թէ յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ։ Քանզի ասէր եթէ յայնժամ զօրանան միտք հոգւոյն, յորժամ ցանկութիւնք մարմնոյն տկարացեալ լինին։

Եւ էր յոյժ զարմանալի և արդարեւ արտաքոյ քան զկարծիս այս խորհուրդք Նորա. քանզի ոչ կամէր ժամանակաւ չափել զառաքինութեանն ճանապարհ, և ոչ վասն Նորա զհրաժեշտութիւն, այլ փափագելով և յօժարութեամբ։ Բայց ինքն ոչ երբէք յիշէր զանցեալ ժամանակի զվաստակն, այլ իբրև հանապազօր սկիզբն առնէր գիտութեանն, և վաստակոց վարուցն մեծապէս առնէր աճումն յառաջատութեան ի վերայ իւր, ասելով հանապազ յաճախագոյն զառաքելական բանն՝ ըզվերջինսն մոռացեալ և յառաջինսն նկրտեալ, յիշելով և զձայն մեծին Եղիայի որ ասէ. կենդանի է տէր, որոյ կացեալ եմ առաջի Նորա ես այսօր. զգուշացեալ՝ զայս օրն ասելով՝ ոչ համարէր զանցեալ ժամանակն, այլ միշտ իբրեւ սկիզբն առնելով հանապազօր փոյթ յանձին ունէր առաջի կալ Աստուծոյ այնպէս որպէս արժան էր երեւել Աստուծոյ սուրբ սրտիւ, և պատրաստէր հլու լինել կամաց Նորա։ Եւ զի թէպէտ և ոչ այլ ումեք, սակայն ասէր յինքեան՝ թէ այնպէս պարտ և պատշաճ է կրօնաւորաց ի վարուց մեծին Եղիայի ուսանել, զի իբրեւ ընդ հայելի տեսանիցէ միշտ զիւր կարգս կրօնիցն։

Եւ ապա այսպէս պնդեալ զինքն Անտոնիոս երթայր գնայր ի հեռաստան ուրեմն չիրիմս ի գեղ-

ջէն, և պատուէր տայր միում ումեմն յիւրոց ծանօթից յետ բազում աւուրց տանել նմա ըղհացն։ Եւ ինքն մի ի չիրմաց անտի եմուտ ի ներքս. և նա ած փակեաց արտաքուստ զդուռն ընդդէմ նորա, և նա միացեալ լինէր այնուհետեւ ի ներքս միայն։ Եւ զայն իբրեւ ոչ կարաց տանել թշնամին՝ երկուցեալ թէ մի՛ գուցէ առ սակաւ սակաւ և զանապատն պարապեսցէ կրօնաւորութեամբ, եկն ի վերայ նորա ի միում գիշերի հանդերձ բազում դիւօք, և այնչափ եհար զնա տանջանօք մինչև անձայն և անբարբառ անկեալ դնէր նա ի սաստիկ հարուածոցն։ Քանզի պատմէր և ասէր հաստատութեամբ այնչափ սաստիկ լինել զցաւսն՝ մինչեւ անհնար համարել զառ ի մարդկանէն հարուածս այսպիսի զգայութիւն տանջանաց գործել։ Իսկ Աստուծոյ կանխագիտութեանն խնամօք ոչ անտես առնէ որք յուսան ի նա։ Ի վաղիւ անդր ծանօթն անդր եկեալ լինէր՝ բերեալ նմա հաց. իբրեւ եբաց զդուրսն և ետես զնա զի յերկիր անկեալ դնէր իբրեւ զմեռեալ, ի վեր առեալ տանէր ի գեօղն ի տէրունական տաճարն Աստուծոյ և դնէր ի գետնի։ Եւ բազումք յազգականաց անտի և ի գեղջէիցն շուրջ զնովաւ անցեալ նստէին իբրեւ զմեռելով։ Իսկ ի մէջ գիշերի յինքն եկեալ Անտոնիոս և զարթուցեալ տեսանէր զամենեսեան ննջեցեալս, և զծանօթն միայն արթուն. ակնարկէ նմա գալ առ ինքն և աղաչէր զնա դարձեալ բառնալ տանել զնա անդրէն ի շիրիմն մի՛ զոք զարթուցանելով։

Եւ ապա իբրև տարեալ եղեւ յառնէն, և դարձեալ ըստ սովորութեանն դրօքն փակելովք էր ի ներքս միայն և յոտն կալ ոչ կարէր վասն դիւացն հարուածոց, այլ անկեալ դնելով կայր յաղօթս։ Եւ յետ աղօթիցն ասէր մեծաձայն. աստ եմ ես Անտոնիոս, ոչ փախչիմ ի ձերոց հարուածոց. զի թէպէտ և աւելի ինչ արասջիք, ոչ ինչ է որ մեկ-

նէ զիս ի սիրոյն Քրիստոսի։ Եւ յետ այնորիկ սաղմոսէր. եթէ յարիցէ ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ։ Եւ սակայն երանելի կրօնաւորն խորհելով զայս ասէր։ իսկ բարիատեաց չարակամ թշնամին զարմացաւ թէ ի՛բր յետ այսչափ հարուածոց իշխեաց աստ գալ. կոչեցեալ առ ինքն զիւր չուանսն ամենայն և հերգիծանէր ի սպանումն բարկութեան. տեսանէք, ասէ, զի ոչ խորհրդով պոռնկութեան և ոչ հարուածովք դադարեցուցաք զսա, այլ և ըմբոստանայ ընդդէմ մեր, միաբանեսցուք առ նա այլով օրինակաւ. քանզի դիւրագոյն է բանսարկուին առ ի չարիս կերպարանել։ Յայնժամ ի գիշերին յայնմիկ թնդիւն առնէին այնչափ սաստիկ մինչև կարծել զտեղին ամենայն շարժել, և զխցկանն զչորեսին որմն պատառեալ կարծիս տային դեւքն. ինքեանք ընդ այն մտանել կերպարանեալք ի գազանս և ի սողունս առ այս երեւելով, և անդէն վաղվաղակի տեղին լնոյր առ այս տեսլեամբ առիւծուք և եղուզակ զուարակօք, արջովք և ընձովք, կարճովք և գայլովք, և իւրաքանչիւր ոք ի նոցանէ շարժեալ լինելով ըստ իւրաքանչիւր կերպարանաց։ Եւ առիւծն գոչելով կամէր յարձակել և զուարակն թուէր եղջիւր ածել և օձն սողելով ոչ մերձենայր և գայլն յարձակելով արգելեալ լինէր։ Եւ ամենեւին ահագին էին և անհնարին միահամուռ ամենեցուն բարկութեան սրտմտութիւնքն և ձայնիցն հնչմունք։ Սակայն Անտոնիոս տանջելով և խոցոտելով ի նոցանէ առնոյր զզգայութիւն ի նոցանէ զանհնարին ցաւոյ մարմնաւորի. սակայն անդողդողջ և աներկիւղ զարթմամբ հոգւոյն անկեալ դնէր և հեծէր վասն մարմնոյն ցաւոցն, և լուրջ էր արթմամբ հոգւոյն։ Եւ իբրեւ ծաղր առնելով ասէր. թէ զօրութիւն ինչ գոյր ի ձեզ, բաւական էր մի ոք գալ ի ձէնջ. արդ վասն զի ջլատեաց զձեզ տէր ի զօրութենէ,

վասն այնորիկ գոնեայ բազմութեամբ իմն փորձիք
երկեցուցանել. իսկ յայտնութիւն գիտութեան
ձերոյ տկարութեանդ այդ իսկ է՝ նմանելդ ձեր
ի կերպարանս անասնոց։ Եւ քաջալերելով դար-
ձեալ ասէր. զի թէ կարէք և իշխանութիւն ա-
ռէք, մի՛ յապաղեալ յերկարէք, այլ ի վերայ
յարձակեցարուք. ապա թէ ոչ զօրէք՝ զի՞ զուր
տարապարտուց խռովեալ էք, քանզի կնիք մեր
և պարիսպ ամրութեան են ի տէր մեր հաւատք։
Եւ իբրև բազումս չիշխեցեալ ձեռնարկել՝ կըր-
ճէին զատամունս ի վերայ նորա, զի զինքեամբ
խաղային և ոչ զնովաւ։

Իսկ սակայն տէր և յայսմիկ ոչ մոռացաւ զջան
վաստակոց նահատակութեանն Անտոնեայ, այլ
օգնական ձեռնկալու եղև նմա։ Ի վեր հայեցեալ
տեսանէր զձեղունն բացեալ և ճառագայթս իմն
լուսոյ զի իջանէր առ նա, և անդէն վաղվաղակի
դևքն աներևոյթ լինէին. նոյնժամայն և ցաւք
մարմնոյն դադարէին, և տունն դարձեալ էր ողջ
բովանդակ։ Իսկ Անտոնիոս իբրև զգաց զտեառն
ձեռնկալութիւն օգնականութեանն, ոգի առեալ
և թեթևացեալ ի ցաւոցն՝ աղաչէր զտեսիլն որ
երևեցաւ և ասէր. ո՞ւր էիր և ընդէ՞ր յառաջ
իսկ ոչ երևեցար, զի վիմ զցաւսն դադարեցու-
ցանէիր։ Եւ եղև ձայն առ նա. Անտոնիէ, աստ
էի, այլ կայի մնայի տեսանել զքո նահատակու-
թիւնդ. արդ վասն զի համբերեցեր և ոչ յաղ-
թեցար պատրանօք, եղէց քեզ միշտ օգնական,
և տաց քեզ անուանի լինել ընդ ամենայն երկիր։
Զայս իբրև լուաւ յոտն կացեալ կայր յաղօթս,
և այնչափ զօրանայր մինչև գոլ նմա առաւել ևս
յաւելուած զօրութեան ընդունել ի մարմինսն քան
զոր յառաջն ունէր։ Եւ էր այնուհետև մերձ
իբրև ամաց երեսուն և հնգից։

Եւ այնուհետև յառաջ անցանէր ևս յօժարու-
թեամբ յաստուածպաշտութիւն։ Եւ առ այլ հին

ծերունի երթեալ լինէր և աղաչէր ընդ նմա բընակել յանապատին։ իսկ նա իբրև ոչ կալաւ յանձին վասն տղայութեան հասակին, և վասն զի ոչ երբէք եղեալ այսպիսի սովորութիւն, ինքն անդէն վաղվաղակի դիմէր ի լեառնն։ Եւ դարձեալ թշնամին իբրև տեսանէր զնորա փոյթն, կամեցաւ խափանել զնա. ընկենոյր զառաջօք ճանապարհին սկտեղ արծաթի առաջօք երևելոյ։ իսկ Անտոն իբրև գիտաց զարուեստ բարիատեցին, յանց եկաց, և ի սկտեղն հայեցեալ զբանսարկուն որ ի նմա՝ կշտամբեալ յանդիմանէր ասելով. յանապատի ուստի՞ գտանի սկտեղ, ոչ է ճանապարհս այս կոխեալ, չիք աստ հետ ուրուք գնացելոյ թէ անկանէր, և թէ յումեքէ անկաւ՝ ոչ կարէր անգիւտ լինել զի մեծ է. այլ որ կորոյսն՝ դառնայր և գտանէր, վասն զի անապատ է տեղիս. այս արուեստ և մենքենայք բանսարկուին են. ոչ խափանեսցես այսու զիմ յօժարութիւնս, բանսարկու, զի այս ընդ քեզ լիցի ի կորուստ։ Եւ Անտոն իբրև զայս ասաց, պակասեաց նա իբրև ծուխ հրոյ զի պակասի։

Եւ ապա դարձեալ ոչ առաջօք եւս երևելոյ, այլ մինչդեռ գնայր՝ ճշմարիտ ոսկի յանցս ճանապարհացն ընկեցեալ տեսանէր. զի եթէ թշնամին եցոյց և եթէ այլ ոք ի լաւ զօրութեանց՝ կրթելով զնահատակն և ցուցանել բանսարկուին, զի և ոչ ճշմարիտ ստացուածոցն ցանկացաւ, ոչ նա պատմեաց և ոչ մեք գիտացաք, բայց սակայն ոսկի էր որ երևէրն։ Բայց Անտոնիոս կարմանայր ընդ բազմութիւնն, և իբրև զհրով զանց արարեալ այնպէս անցանէր անյետսդարձութեամբ, և փութայր այնպէս ընթացիւք մինչև ծածկել զտեղին և չգիտել։ Այլ եւս քան զեւս պնդեալ զյօժարութիւնն դիմէր ի լեառնն. և եգիտ անդ բանակետղ մի յայնկոյս գետոյն լի սողնօք, վասն զի էր բազում ժամանակաց թափուր. անդր զինքն փոխեալ

բնակէր, և սողունքն ի բաց գնային իբրև յումեքէ հալածեալք. և ինքն զմուտն ամրայուցեալ ծածկէր, և հաց ի ներքս համբարէր ամսոյ վեցից. քանզի առնեն զայս Թեբայեցիք, և բազում անգամ անցեալ մնացեալ լինին ի տարւոյ անվընասք. և ջուր ի ներքս գոյր։ Եւ իբրև յանդունդս սորեալ ղօղէր միայն ի վանսն. ոչ ինքն ի դուրս ելանէր և ոչ զոք յեկելոցն տեսանէր։ Եւ բազում ժամանակս այսպէս անցուցանէր, չառեալ ի տարւոջն միայն երկիցս անգամ ի վերուստ ի տանեացն ընդունել զհացն։

Եւ որ առ նա ի ծանօթիցն եկեալ լինէին, վասն զի ոչ տայր ի ներքս մտանել, դէպ լինէր զի արտաքս բազում աւուրս և գիշերս լինէին, և լսէին ի ներքուստ անտի իբրև ամբոխս բազմութեան, թմբիւնս և թնդիւնս և անվայելուչ ձայն արձակէին և աղաղակէին՝ ի բաց կաց ի մերոցս, զի՞ կայ քո և անապատիս, ոչ կարես կրել զմեր խարդախութիւնս։ Եւ զառաջինն համարէին մարդս ոմանս զի մարտնչէին ընդ նմա, և արտաքինքն կարծէին զսոսա սանդղօք իջեալս առ նա։ Եւ իբրև ընդ ծերպ մի ի ներքս նայեցեալ ոչ զոք տեսանէին, յայնժամ գիտացին թէ դևք էին, և զահի հարեալք զԱնտոնիոս կարդային։ իսկ նա սոցա առաւել լսէր, քան թէ զնոսա ինչ համարէր։ Եւ մերձ երթեալ առ դուրսըն աղաչէր զարսն երթալ գնալ և մի՛ զարհուրել։ Քանզի ասէր այսպէս վասն դիւաց թէ առնեն առ աչս իմն տեսիլ վասն երկչոտաց. բայց դուք կնքեցէք զանձինս և գնացէք քաջալերութեամբ, և զսոսա թոյլ տուք խաղալ զինքեամբք։ Եւ երթեալ գնացեալ լինէին նոքա պարապեալք նշանաւ խաչին. և նա անցեալ մնացեալ լինէր ի տեղւոջն ոչ ինչ ամենևին վնասեալ ի նոցանէ, այլ և ոչ վաստակեալ լինէր մարտնչելովն, քանզի յաւելուածք եղեն նմա վերին տեսլեանն որ լինէին

նմա, և թշնամեացն ակարութիւն բազում նմա ի ցաւոց անտի մատուցանէին հանգիստ, և առաւել ևս յօժարութիւն պատրաստեալ կազմէր, քանզի յաճախագոյն երթային ծանօթքն կարծեալ եթէ գտանեմք զնա մեռեալ, և լսէին ի նմանէ ձայն սաղմոսի զի ասէր. յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն թշնամիք նորա, փախիցեն ատելիք յերեսաց նորա. որպէս պակասի ծուխ՝ պակասեսցին. որպէս հալի մոմ առաջի հրոյ, այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց Աստուծոյ։ Եւ դարձեալ. ամենայն ազինք պատեցան զինև, և անուամբ տեառն վանեցի զնոսա։ Եւ այսպէս կրօնաւորեալ քսան ամ կատարէր, ոչ ի դուրս ելեալ և ոչ յումեքէ տեսեալ։

Եւ յետ այսորիկ բազումք յախտաժետաց և որք նախանձել կամեցան ընդ նորա վարսն և այլոց ևս ծանօթիցն՝ որք եկին և բռնի զդուրսն կործանեցին և աղաչեցին զնա, և եկն ի դուրս Անտոնիոս իբրև ուստեմն յանձին ի ներքսական կողմանց խորհուրդ բերեալ քրիստոսախրատ և աստուածընկալ։ Նախ առաջին յայնժամ երևէր նոցա՝ ի բանակետեղէն ի դուրս ելեալ առ նոսա։ Նոքա իբրև տեսին զարմացան. վասն զի տեսին զմարմին նորա ի նոյն բնութեան, ոչ պարարեալ իբրև զամեհի և զանկիրթ, և ոչ վտտեալ իբրև ի պահոց ի մարտիցն դիւաց, այլ այնպէս տեսանէին զնա որպէս յառաջ քան զբացաստանն մեկնելոյ. և դարձեալ զհոգւոյն սուրբ սովորութիւն, զի ոչ իբրև ի ձանձրութենէ ծմրեալ, և ոչ ի ծաղուէ և ի տրտմութենէ բռնազբօսեալ ոչ տեսանելով պժողովսն խռովեցաւ, և ոչ իբրև ի յայսչափ ի բազմաց համբուրեալ ուրախ եղև, այլ էր ամենայն հարթ, իբրև ի բանէն մատակարարեալ և ի բնութեան կայր։ Եւ բազում ախտաժէտս որ եկեալ անդ՝ բժշկեաց տէր ի ձեռն նորա. և այլս ի դիւաց սրբէր՝ և շնորհս տայր

Անտոնեայ ի խօսելն։ Եւ այսպէս զբազում տրտմութիւնս մխիթարէր և բազում կռուեալս հաշտեցուցանէր ի խաղաղութիւն՝ ամենեցուն ասելով, մի՛ ինչ ամենեւին յերկրի ընտրել փոխանակ սիրոյն Աստուծոյ։ Խօսէր և յիշեցուցանէր վասն հանդերձելոց բարեացն և որ ի մեզ եղեւ Աստուծոյ մարդասիրութիւնն՝ որ ոչ խնայեաց յորդին իւր, այլ ընդ մեր ամենեցուն մատնեաց զնա։ Եւ հաւանեցուցանէր զբազումս յանձն առնուլ զմիաւորական կեանս։ Եւ լինէր այնուհետեւ այնպէս ի լերինս միաւորաստանք, և անապատն լնոյր վանականօք որք ի լերինն էին գնացեալք յիւրեանց ընտանեաց և գրեցան յերկնաւոր քաղաքակցութիւնն։

Եղեն նմա պէտք երբեմն անցանել ընդ Արսինոտեայ ջրադարձն, և էին պէտքն վասն այցելութեան եղբարց, և լինէր ջրադարձն լի կոկորդեղոսօք. և միայն իբր եկաց յաղօթս՝ մտանէր ինքն և ամենեքին որ ընդ նմա էին և անցեալ լինէին անվնասք։ Եւ դարձեալ իբրեւ երթայր անդրէն ի վանսն, բուռն հարկանէր զպարկեշտ և զարդար վաստակոց և խօսէր ստէպ ստէպ և զմիայնաւորացն յօժարութիւն աճեցուցանէր և զբազում զայլ եւս զարթուցանէր ի ցանկութիւն կրօնաւորութեան, և վաղվաղակի ձգեալք ի բանէն՝ եղեն բազում վանորայք, և ամենեցուն նոցա իբրեւ հայր առաջնորդէր։

Յաւուր միում եկին ոմանք առ նա և աղաչէին լսել ի նմանէ բան, և ասէր նոցա եգիպտացւոց բարբառովն կայս՝ Թէ գիրք բաւական են առ ի խրատ վարդապետութեան. իսկ մեզ արժան է զմիմեանս մխիթարել հաւատովք և մարզել բանիւք։ Եւ դուք այսուհետեւ իբրեւ որդիք հօրն պատրաստ լերուք որ ինչ գիտէք ասել, և ես որ ինչ գիտեմ քան զձեզ իբրեւ երիցագոյն հասակաւ, և հմուտ եմ մատուցանել ձեզ։ Եղիցի մեզ

ամենեցուն հասարակաց քան զամենայն զայս փոյթ ընտրելոյ սկիզբն արարեալ մի՛ թուլանալ և մի՛ ձանձրանալ վաստակօք, և մի՛ ասել թէ բազում ժամանակս եղեալք ի կրօնաւորութեանն. այլ առաւել ևս օր ըստ օրէ իբրև սկիզբն արարեալ յօժարութեանն աճեցուսցուք ։ Քանզի ամենայն իսկ կեանք մարդկան դուզնաքեայք են չափաւորեալք առ պատրաստեալ կեանսն, մինչև ամենայն ժամանակս մեր ոչ ինչ լինել առ յաւիտենական կենօքն, և ամենայն իրք աշխարհիս ըստ արժանոյ վաճառեալ լինին և զոյգ ընդ զուգի փոխանակի ։ իսկ խոստմունք յաւիտենական կենացն սակաւ մասին գնեալ լինին. քանզի գրեալ է՝ աւուրք կենաց մերոց ի նոսա եօթանասուն ամ, և որ ինչ աւելին քան զայս՝ ցաւք և վաստակք ։ Արդ յորժամ բովանդակ զութսուն ամն և կամ զհարիւրն կացեալ մնացեալ իցեմք ի վարս առաքինութեան, ոչ եթէ հաւասար ըստ հարիւր ամացն և թագաւորեալ լիցուք. և յերկրի աստ մարտուցեալք ոչ յերկրի ընդունիմք ժառանգութիւն, այլ յերկինս ընկալեալ եմք ըզխոստմունսն ։ Եւ դարձեալ զմահկանացու մարմինս ի բաց ընկեցեալք՝ անապական ընդունելոց եմք զսա ։

Արդ որդեակք, մի՛ վհատիք և կարծէք յերկարանալ ի նմին կամ մեծ ինչ գործել. քանզի ոչ են արժանի անցք արդեան ժամանակիս առ պատրաստեալ փառսն որ յայտնելոց են. և մի՛ յերկիրս հայել՝ կարծեսցուք իբրև ի մեծաց իմն հրաժարեալք, քանզի և սոյն իսկ բովանդակ ամենայն երկիրս դուզնաքեայ է քան զերկինս ։ Արդ եթէ ամենայն երկրիս տեարք էաք և ի բաց կայաք յամենայնէ, ոչ ինչ դարձեալ արժանի էր և հաւասար առ արքայութեանն երկնից. որպէս ոք եթէ արհամարհեսցէ քանքար մի պղնձի, որպէս զի ստասցի քանքարս ոսկիս հարիւր. այսպէս

որ տէր է ամենայն երկրիս, չարժէ զերկնաւորսն։ Տես զի եթէ թողեր սակաւ զերկիրս՝ իբրեւ ոչ ինչ լքեալ, կամ տուն կամ ոսկի բազում թողցէ՝ ոչ պարտի պարծել կամ վհատել։ Արժան է մեզ խորհել զի թէպէտ վասն առաքինութեան ոչ թողցուք. այլ յետոյ մեռեալք լքանեմք զայս, և դէպ լինի զի և որոց ոչ կամիմք, որպէս և ժողովողն յիշեաց։ Իսկ ընդէ՞ր մեք վասն առաքինութեան ոչ թողումք, զի զարքայութիւնն երկնից ժառանգեսցուք. վասն այսորիկ և ստանալ ոչ ինչ ի մէնջ ցանկութիւն ի միտ մի՛ արկցէ։ Իսկ զի՞նչ իցէ ստանալ զոր ոչս կարեմք ընդ մեզ առնուլ. և կամ ընդէ՞ր իսկ բնաւ զայն չստանամք զոր և առնուլ ոք կարէ ընդ իւր, որ է բարեխորհրդութիւն ողջմտութիւն պարկեշտութիւն արդարութիւն արութիւն իմաստութիւն սէր աղքատսիրութիւն հաւատք ի Քրիստոս չբարկութիւն օտարսիրութիւն։ Զայս ստացեալ՝ գտցուք զսա առաջնոյ մեր անդ պատրաստիչ վանաց մեզ յերկրին հեզոց և խոնարհաց։

Եւ այսու հաւանեցուսցէ այր զինքն մի վհատել, և մանաւանդ եթէ զինքն ծառայ տեառն համարեսցի. և եթէ պարտ է ծառայել տեառն, զոր օրինակ զի ծառայն ոչ իշխէ ասել՝ վասն զի երեկ գործեցի, այսօր ոչ գործեմ, և ոչ զառաջին ժամանակն համարելով դադարեսցէ զառաջիկայ աւուրսն, այլ զօրհանապազ որպէս յաւետարանին գրեալ է՝ զնոյն ,յօժարութիւն ցուցանել զի տեառն հաճոյ լիցի և պատուհասապարտ, այսպէս և մեք կացցուք հանապազօր ի կրօնաւորութեանս. գիտասցուք զի եթէ մի օր հեղգասցուք, ոչ վասն անցեալ ժամանակին թողցէ մեզ, այլ վասն ծուլութեանն բարկասցի մեզ։ Այսպէս և յեզեկիէլէ լուաք. այսպէս և Յուդաս միով գիշերաւ կորուսանէր զանցեալ ժամանակին վաստակսն։ Արդ եղիցուք որդիք վարուց և մի՛ ձանձրասցուք.

քանզի ունիմք և յայսմիկ զտէրն գործակից և յաջողիչ, որպէս և գրեալ է՝ ամենայնի որ առաջարկեն կամել ի բարիս, յաջողէ Աստուած ի բարիս. և ի չհեղգալն բարիոք է մեզ առաքելական բանիւն բարբառել՝ զօրհանապազ մեռանիմք. զի եթէ և մեք իբրև մեռեալք հանապազ այնպէս կեցցուք՝ ոչ մեղանչեմք, քանզի է ասացեալ այսպիսի իմն զի յառնելով հանապազօր համարեսցուք չհասանել մինչև ի սպառ աւուրն: Եւ դարձեալ ննջեցեալք չհաւատասցուք զյառնելն, վասն զի անյայտ են և բնութեամբ իսկ կեանքս մեր և չափաւորեալ հանապազօր յառաջգիտութենէն: Եւ այսպէս միշտ յուսով և այսպէս կելով ոչ մեղիցուք և ոչ ումեք ցանկասցուք և ոչ ոխս ումեք պահեսցուք և ոչ գանձեսցուք յերկրի, այլ իբրև հանապազ մեռանելով անստացուածք լիցուք և ամենեցուն զամենայն ինչ թողցուք: Այլ ցանկութիւն կանանց և կամ այլ ինչ աղտեղի խորհուրդք զբաղմանց բնաւ ամենևին ի մեզ մի՛ բնակեցուսցուք, այլ իբրև յանցաւորէ զերեսս ի բաց դարձուսցուք՝ միշտ երկնչելով և հայելով յօր դատաստանին. քանզի յարաժամ երկիւղ մեծ և արհաւիրք տանջանաց լուծանեն զբռնութիւն ցանկութեանց և զանկեալ ոգին կանգնէ:

Արդ սկսեալք և ի վերայ ելեալք ճանապարհին առաքինութեան նկրտեսցուք յոյժ զի հասանել կարասցուք, և մի՛ ոք յետս դարձցի իբրև ըղկինն Ղովտայ. մանաւանդ զի տէրն ասաց՝ ոչ ոք ձեռն զմաճով արկեալ և յետս դարձեալ ուղղադիր լիցի յարքայութեանն երկնից: Իսկ դառնալն յետս ոչ այլ ինչ է, այլ զղջանալ և դարձեալ զերկրաւորս խորհել: Եւ մի՛ երկնչիք յորժամ լսէք վասն առաքինութեան և մի՛ զարմանայք վասն անուանն, քանզի ոչ մեկուսի ուրեք է ի ձէնջ հաստատիչն, այլ ի ներքս ի ձեզ են գործքն և դիւրագոյն են իրքն, միայն թէ կամեսցուք

մինն որդ եւս վախճանեցաւ և միւսն եւս վախճանելոց է եթէ ոչ փութասջիք հասանել. քանզի այս ինձ յաղօթս կացեալ այժմ ցուցաւ։ Եւ երթեալ միայնակեացքն գտին զմինն զի անկեալ դնէր մեռեալ և թաղեցին, և միւսումն արբուցին ջուր և կանգնեցին և առեալ տարան առ ծերունին, քանզի էր ի բացեայ աւուրց գնաց ճանապարհին։ Արդ եթէ ոք խնդրեսցէ զայս եթէ ընդէ՞ր ոչ յառաջ քան զմիւսոյն եւս վախճանելն ասացաւ՝ ոչ ուղիղ խնդրէ զայս ասելով, քանզի ոչ եթէ Անտոն էր մահուն որոշիչ, այլ Աստուած որ վասն նորա զնա[1] սահմանեաց և վասն նորա[2] յայտ արար։ Այլ Անտոնի այս միայն է սքանչելիք զի ի լերինն նստելով ունէր զսիրտն զուարթ առ Աստուած որ ցուցանէր նմա զհեռաւորսն։

Քանզի և դարձեալ երբեմն մինչ նստէր ի լերինն՝ ի վեր հայեցեալ տեսանէր զոմն ի յօդս զի ի վեր տանէին. և բազմաց որք ընդ առաջ եկին՝ զեղեալ ուրախութեամբ։ Ապա յաղօթս կացեալ[3] և երանելով զայսպիսի պարս զօրաց բազմաց, և յաղօթս կայր ուսանել թէ զինչ արդեօք իցէ այս։ Եւ անդէն վաղվաղակի եկն նմա ձայն՝ եթէ այս Ամոնի հոգին է որ ի Նիտրիա էր միայնակեաց։ Քանզի էր սորա մինչեւ յալեւորոյթ զկրօնաւորական վարս վարեալ. և էր հեռաւորութիւն ճանապարհին մինչեւ ի լեառն ուր Անտոն բնակեալ էր՝ գնացք աւուրց երեքտասանից։ Իսկ որք էին ընդ Անտոնեայ, իբրեւ տեսին զարմացեալ զծերն՝ աղաչեցին ուսանել. և լուան զի ասաց՝ եթէ այժմ վախճանեցաւ Ամոն։ Քանզի ծանօթ էր նմա վասն ստէպ ստէպ առ նա երթալոյն, և վասն բազում և ի ձեռն նորա նշանացն լինելոյ՝ յորոց մի է

1. Եր. չունի։
2. Եր. սորա։
3. Եր. յաւելու զարմանալով։

այս ինչ: Երբեմն պէտք եղեն նմա անցանել ընդ գետն որ կոչի Գայլ, և էր յայնժամ յարոյցք ջուրցն. աղաչեաց զԹէոդորոս որ ընդ նմա էր՝ հեռագոյն երթալ ի նմանէ, զի մի՛ մերկ զմիմեանս տեսցեն ընդ ջուրն անցանելով: Ապա իբրև ի բաց գնաց ի նմանէ Թէոդորոս, դարձեալ ամաչէր ինքն զինքն մերկ տեսանել. և մինչդեռ յամօթն հարեալ էր և հոգայր, յանկարծակի տարեալ եղև յայնկոյս գետոյն: Իսկ Թէոդորոս վասն զի և նա այր երկիւղած էր և բարեընկալ, իբրև մերձեցաւ և ետես զնա յառաջեալ, և զի բնաւ ամենևին ջուրք չէր թացեալ, աղաչէր ուսանել թէ զինչ օրինակաւ յայնկոյս անցաւ: Եւ իբրև ետես եթէ ոչ կամի ասել նմա, բուռն հարեալ ունէր զոտս նորա, և ոչ վաղվաղ թողուլ եթէ ոչ նախ ուսցի ի նմանէ: Իբրև ետես Ամոն զյամառութիւնն Թէոդորոսի և մանաւանդ վասն բանին զոր ասաց, պահանջեաց և նա ի նմանէ բան զի մի՛ ումեք ասասցէ մինչև ի մահ նորա. և ապա այնուհետև պատմեաց՝ զի բարձաւ և եդաւ յայնկոյս գետոյն. և եթէ ոչ կոխեաց բնաւ ամենևին ի վերայ ջուրցն, և զի ոչ յայս ամենեւին կար մարդկան, բայց միայն տեառն և որոց նա հրամայեսցէ, որպէս և արարն մեծի առաքելոյն Պետրոսի: Իսկ Թէոդորոս ապա յետ մահուանն Ամոնի պատմեաց զայս: Իսկ միայնակեացքն որոց ասաց Անտոն վասն մահուանն Ամոնի, նշանեցին զօրն: Իբրև եկին անդ ոմանք յեղբարցն ի Նիտրեա յետ աւուրց երեսուն, հարցին և գիտացին զի կշիռ յայնմ՝ աւուր իսկ և յայնմ ժամու ննջեաց Ամոն յորում ետես ծերն զի զոգի նորա ի վեր տանէին, և կարի յոյժ զարմացեալ լինէին և սքա ընդ սրբութիւն ողւոյն Անտոնի՝ թէ իբրև յայսչափ հեռաստանէ յերկքտասանօրեայ գնացք ճանապարհի զեղեալն ինչ անդէն վաղվաղակի ուսաւ և զոգիսն ետես զի ի վեր տանէին:

Եւ դարձեալ երբեմն Արքեղաւոս ոմն կոմս իբրեւ եգիտ զնա յարտաքնումն լերինն, աղաչեաց աղօթս առնել վասն Պաւղիկրատեայ՝ որ ի Լաւոդիկայն էր աքանչելի և քրիստոսընկալ կոյսն, վասն զի անհնարին ցաւէին նորա ստամոքն և կողքն ի խստամբերութենէն, և ամենայն մարմընով իսկ էր տկար։ Իսկ Անտոն իբրեւ արար աղօթս, կոմսն նշանակեաց զօրն յորում եղեն աղօթքն։ Եւ իբրեւ չոգաւ ի Լաւոդիկեա, եգիտ զկոյսն ողջացեալ։ Հարցանէր եթէ յորո՞ւմ աւուր դադարեաց ի նմանէ ցաւն անկարութեան. և եբեր ի մէջ զքարտէսն յորում զժամանակ աղօթիցն գրեաց։ Եւ իբրեւ ուսաւ ի նոցանէ, ցուցանէր և ինքն զգիր քարտիսին։ Եւ իբրեւ գիտացին զարմանային ամենեքեան, զի յայնժամ դադարեցոյց տէր զցաւսն ի նմանէ յորում Անտոնիոս յաղօթս եկաց և աղաչեաց զբարերարութիւն փրկչին վասն նորա։ Եւ վասն այնոցիկ որ գային առ նա, բազում անգամ դէպ լինէր զի յառաջագոյն աւուրբք ասէր, և էր երբէք զի ամսով յառաջ ասէր զպատճառսն վասն որոյ գային։ Զի ոմանք վասն հիւանդութեան, և ոմանք ախտացեալք ի դիւաց, և ամենեքեան ոչ աշխատութիւն ինչ կամ վնաս համարէին զվաստակ ճանապարհին, քանզի դարձեալ խոնարհեալ լինէին ամենեքեան և զչափ առեալ օգտութեան։ Եւ նա իբրեւ զայսպիսի իրսն տեսանէր, աղաչէր և ասէր ցնոսա զի մի՛ ոք զարմասցի ընդ նա վասն այսոցիկ, այլ յամենայնի զտէր փառաւորել, զի մեք մարդիկ եմք և շնորհեաց մեզ որչափ զօրութիւն է ճանաչել զնա։

Եւ դարձեալ իբրեւ էջ երբեմն յարտաքին վանորեայն, և աղաչեցին զնա մտանել ի նաւ մի՝ յաղօթս կալ միայնակեցօք հանդերձ, և նա միայն զհոտ առնոյր զազրութեան չարաւոյ և յոյժ դառնութեան։ Իսկ որք ի նաւին էին ասէին ցնա՝

եթէ ձուկն տանիմք ի նաւիս և ի նոցանէ է հոտդ։ իսկ նա ասէր. ոչ, այլ այլ իմն չարաւահոտ է։ Եւ դարձեալ իբրեւ ասաց նա, ապա պատանեակ մի յորում գոյր դեւ, յառաջագոյն մտեալ և թագուցեալ էր ի նաւին, և անդէն վաղվաղակի ճչեաց մեծաձայն։ իսկ նա իբրեւ սաստեաց ի վերայ նորա յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և վաղվաղակի դեւն ի բաց գնայր ի նմանէ և այրն ողջ լինէր, և ամենեքին գիտացին զի դեւն էր այն ժահահոտութիւնն։

Եւ այլ միւս եւս ոմն այր երեւելի եկն առ նա, յորում գոյր դեւ. և էր դեւն այն չար անհնարին մինչեւ չգիտենալ նմա յորում էրն և թէ առ Անտոն եկն. այլ և զաւելիս մարմնոյն իւրոյ ուտէր։ իսկ որք ածինն զնա, աղաչեցին զԱնտոն աղօթս առնել վասն նորա։ իսկ Անտոն գթացեալ ի պատանին կայր յաղօթս և զգիշերն ամենայն հսկէր ընդ նմա։ Եւ պատանին մերձ յառաւօտն յանկարծակի յարձակեցաւ ի վերայ Անտոնի և մղեաց զնա։ իսկ որ ընդ նմայն եկեալ էին՝ բարկանային ի վերայ նորա։ Եւ ասէ Անտոն. մի՛ բարկանայք ցասմամբ ի վերայ պատանւոյդ. քանզի ոչ եթէ դա է, այլ որ ի դմա դեւն է. քանզի սաստեաց ի վերայ նորա ելանել և գնալ յանջրդի տեղիս, վասն այսորիկ մոլորեցաւ և արար զայս։ Արդ փառաւորեցէք զՏէր, քանզի այսպէս յարձակեալն նորա ի վերայ իմ՝ նշանակ եղեւ ձեզ ելք հալածման դիւին։ Եւ զայս իբրեւ ասաց Անտոն, անդէն պատանին եղեւ առողջ և զգաստացաւ այնուհետեւ և գիտաց ուր էրն և ստէպ ստէպ համբուրէր զծերունին գոհանալով զԱստուծոյ։

Եւ բազում այլ ինչ այսպիսի միաբանութեամբ և տգէտն հեզութեամբ ստացին ի ձեռն նորա եղեալ բազում միայնակեացք. այլ ոչ է այս այնչափ զարմանալի, որչափ այլ եւս ինչ սքանչելագոյն երեւի։ Քանզի երբեմն իբրեւ կամեցաւ ուտել և

յոտն կացեալ կայր յաղօթս յիններորդ ժամուն, և զգայ զինքն յափշտակեալ մըտօքն. և որ արտաքս քան զկարծիս էին սքանչելիքն՝ անցեալ կայր և տեսանէր զինքն իբրև արտաքոյ ինքեան եղեալ և իբրև յօդս զինքն առաջնորդեալ յոմանց։ Եւ տեսանէ զոմանս դառինս և անհնարինս դժնեայս որք կային յօդս և կամէին արգելուլ զնա զի մի՛ անցցէ։ իսկ որք մարտնչէին ընդ նոսա, առաջնորդէին Անտոնի, և պահանջէին նոքա բան ի նոցանէ և ասէին՝ թէ տեսցուք մի՛ գուցէ պարտապան է մեզ. քանզի կամէին ասել իմն բան ի նորա ծննդենէն և արգելուին զնոսա։ իսկ որք առաջնորդէին Անտոնի, ասէին ցնոսա՝ եթէ ըզծնընդեան նորա տէր ի բաց ջնջեաց. այլ յորմէհետէ եղև միայնակեաց և խոստացաւ աստուծոյ, իշխանութիւն ունիք խնդրել ձեզ համարս։ Ցայնժամ նոքա ամբաստան եղեն և յանդիմանել ինչ ոչ կարացին, քանզի ազատեցաւ ինքն և անարգել եղև նմա ճանապարհն։ Եւ անդէն վաղվաղակի տեսև զինքն յինքեան եկեալ ժողովեալ, և դարձեալ էր ողջ կատարեալ Անտոնիոս։ Ցայնժամ՝ զհացն ուտել մոռացաւ նա, և անց մնաց նա այնուհետև զօրն ողջոյն և զգիշերն ամենայն հեծելով և մռնչելով և յաղօթս կալով ի գլուխ հանելով։ Քանզի զարմացաւ տեսանելով թէ առ քանիս է մեզ մարտ պատերազմիս, և որչափ ջանից և մեծ աշխատութեանց անցանելոց եմք ընդ օդս։ Եւ յիշեաց եթէ այս է զոր ասացն Պաւղոս՝ ըստ իշխանութեան իշխանի օդոյս այսորիկ։ Քանզի յայսմ ունի թշնամին իշխանութիւն մարտնչել և փորձել, զի ի բաց արգելցէ որք երթանն։ Վասն այսորիկ առաւել խրատ տայր և ասէր. առէք ընդ ձեզ զսպառազինութիւն աստուծոյ, զի կարասջիք ընդդէմ կալ նորա յաւուրն չարի. զի իբրև ոչ ինչ գտցէ զձէնջ ասել թշնամին անարգանաց արժանի, յամօթ լիցի։ Եւ մեք զայս ուսեալք յիշեսցուք զայն

որ ասաց առաքեալն. զի եթէ մարմնով՝ ոչ գիտեմ, և եթէ առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ, Աստուած գիտէ. այլ սակայն Պաւղոս մինչև յերրորդ երկինս վերացաւ և լուաւ բանս անճառս և էջ: Իսկ Անտոն մինչև յօդս եսես զինքն առաջնորդեալ և մարտուցեալ մինչև ազատ երևեցի. քանզի ունէր և զայս շնորհս, զի ի լերինն միայն նստէր, և եթէ երբէք ինքն յինքեան ինչ խնդրէր և անհնարեալ տարակուսէր, այս նմա՝ իբրև յաղօթս կայր՝ ի կանխագիտութենէն և ի մատակարարութենէն յայտնեալ լինէր, և էր որպէս և գրեալն է՝ աստուածուսոյց եղեալ երանելին:

Յետ այսորիկ իբրև խօսք եղեն նմա առ ոմանս որք մտինն առ նա վասն կրօնից հոգւոյ եթէ որ տեղի յետ այսորիկ իցէ նորա, իսկ ի միւս գիշերի կոչէ զնա ոմն ի վերուստ և ասէ. Անտոնիէ, յոտն կաց, ել ի դուրս և տես: Եւ իբրև ել արտաքս, քանզի գիտէր ում ումեք արժան է լսել. և ի վեր հայեցաւ և եսես զոմն երկայն ահագնատես չարատեսիլ և ահագին, քանզի կայր և հասանէր մինչև յամպս, և ելանէին ոմանք իբրև թռուցեալք. և նորա տարածեալ զձեռսն և զոմանս արգելոյր և ոմանք ի վերոյ քան զնա թռուցեալք և անցեալք՝ այնուհետև աներկիւղ և անհոգ վերացեալք: Եւ ի վրայ այսպիսեաց և երկայնն կրճէր զատամունսն, և ի վայր անկելոցն ի նմանէ ուրախ լինէր: Եւ անդէն վաղվաղակի ձայն եղև առ Անտոն և ասէ. իմա որ եղեւդ[1]: Եւ բացան նորա միտքն և գիտաց զի հոգւոյն էին անցք ճանապարհին. և երկայնն որ կայր նա է որ զչարի ընդ բարիս հաւատացելոց, և որ դատապարտք են նմա՝ զնոսա ունի և արգելու և չտայ անցանել: իսկ որք ոչն հաւանեցան նմա, ոչ կարէ ըմբռնել, այլ ի վերոյ քան զնա զանց առնեն: Դարձեալ

1. Եր. Նա էր որ զչարիս ընդ բարիսն հատանէր:

զայս իւրիւ ետես Անտոն, իբրեւ ընդ միտ տանելով զյիշատակն, ջանայր օր ըստ օրէ և առաւել յառաջադէմ լինել վարուքն։ Եւ զայս ոչ եթէ նա կամելով պատմեաց, քանզի իբրև յերկարեաց յաղօթսն, իբրև ինքն յինքեան զարմացեալ լինէր, և հարցին զնա որք ընդ նմայն էին, և իբրև նեղեցին զնա վասն այսորիկ՝ հարկ եղև նմա ասել իբրեւ հայր զի ոչ կարէ ծածկել յորդւոց։ Այլ և զայս ընդ միտ ածէր զդիտակցութիւնն իւր, զի խիղճ մնացն էր սուրբ, և նա առնէր պատմութիւն օգտութեան որք ուսանէին, և կրօնաւորութիւնն լինէր բարի պտուղ և ջանոյ և վաստակոյ, բազում անգամ մխիթարէին զտեսիլքն. վասն զի և բարքն իւր էին անձանձրոյթ և հոգին հեզիմաց և խոնարհախորհուրդ և քաղցրաբարբառ։

Եւ քանզի այսպիսի էր, և զկարգն եկեղեցւոյ առաւելապէս պատուէր, և զամենեսեան որք վիճակեալն էին յաստիճան քահանայութեան կամէր յառաջ քան զինքն պատուել։ Իսկ որ եպիսկոպոսք և երիցունք էին, ոչ ամաչէր ինքն խոնարհեցուցանել զգլուխն։ Եւ սարկաւագունք եթէ երբէք եկեալ լինէին առ նա վասն օգտութեան, խօսէր ինչ ընդ նոսա որ օգուտն էր. բայց վասն իշխանութեան առնէր նոցա տեղի, և չամաչէր և ինքն ուսանել. քանզի բազում անգամ հարցանէր և աղաչէր լսել յայնցանէ որք երթային ընդ առ նա, և խոստովան լինէր զօգուտն եթէ ոք պիտանացու ինչ ասէր։ Եւ երեսք նորա բազում շնորհս ունէին, և ևս՝ զքանչելի շնորհս իմն ունէր նա զայս ի փրկչէն։ Քանզի թէ էր ուրեք ի մէջ բազմութեան եղբարց և յառաջ ոք ոչ գիտէր զնա և կամէր տեսանել, և իբրեւ մտանէր՝ զայլովքն ամենեքումբք զանց առնէր և դէպ ուղիղ ի նա ընթանայր՝ իբրեւ յերեսաց նորա ձգեալ. ոչ եթէ բարձրութեամբ կամ լայնութեամբ ինչ առաւել

երեւէր քան զայլսն, այլ բարուցն ցնծութեամբ և հոգւոյն սրբութեամբ։ Քանզի վասն անխուճապութեան հոգւոյն առանց խռովութեան ստացեալ ունէր և զարտաքին զգայութիւնսն. և իբրև ի խնդութենէն հոգւոյն լուրջ և զուարթ և պայծառ ունէր զդէմսն, և ի շարժմանց մարմնոյն էր զգալ և գիտել զհոգւոյն դիրս ցածութեան, որպէս և գրեալն է՝ թէ ուրախութիւն սրտի զուարթ առնէ զերեսս. և տրտմութիւն սգացուցանէ։ Այսպէս և Յակոբ ծանեաւ զԼաբան, զի խորհէր զնմանէ չարութիւն և ասէր ցկանայս իւր. ոչ են երեսք հօր ձերոյ որպէս յերեկն և յեռանդն։ Այսպէս և Սամուէլ ծանեաւ զԴաւիթ, քանզի խնդարար և ուրախագործ էր, և զաչսն ստացեալ ունէր գեղեցիկ և զատամունսն իբրև զկաթն սպիտակ։ Սոյնպէս Անտոն ծանուցեալ լինէր յորժամ խռովեալ լինէր, քանզի զուարթ երեսք էր, և կամ երբ խոժոռեալ լինէր, վասն զի ուրախ էր միտքն։

Եւ հաւատովքն և բնաւ իսկ զարմանալի էր բարեպաշտութեամբն, քանզի և ոչ ընդ մեղիտիանոսան հերձուածողս հաղորդէր, վասն զի գիտաց զնոցա զիսկզբանէ չարութիւն և զապստամբութիւն. և ոչ ընդ մանիքեցիսն և ոչ ընդ այլում ումեք և ոչ ընդ կամակոր հերետիկոսայսն ինչ խօսէր սիրով, բայց միայն յաղօթս խրատու առաջնորդէր վասն յաստուածպաշտութիւնն դարձուցանելոյ։ Պատուիրէր և ասէր զնոցա սէրն և զմիաբանութիւնն վնաս, և կորուստ ոգւոցն համարել։ Սոյնպէս և յարիանոսաց հերձուածոյն զարշէր և պատուէր տայր ամենեցուն մի՛ մերձենալ ի նոսա և մի՛ զչար հաւատս նոցա ընդունել։ Քանզի չոգան երբեմն առ նա յարիանոսացն, և եհարց զնոսա և ուսաւ, և իբրև զամբարիշտս ի լեռնէն ի բաց հալածեաց, և ասէր եթէ քան զօձս չար են բանք նոցա։ Զրպարտեցին երբեմն արիանոսքն ստութեամբ և ասեն՝ թէ և նա զմերս խորհի։

Իսկ նա իբրեւ լուաւ բարկացաւ և զարմացաւ ընդ լուրն։ Յետ այսորիկ աղաչեցին զեպիսկոպոսն և եղբարքն ամենայն և իջուցին ի լեռնէ անտի և տարան յԱղեքսանդրիա. և քարոզեաց վասն արիանոսացն և ասէ՝ եթէ ի հերձուածողութենէ են և ինքնակամ. և ասէր եթէ յետին է սա և կարապետ Նեռին։ Ուսուցանէր զժողովուրդն և ասէր՝ եթէ հաստատ ոչ է որդին Աստուծոյ և ոչ արարած և ոչ ի չգոյէ եղեալ, այլ ի հօր էութենէ և ի բնութենէ է բան և իմաստութիւն. և վասն այսորիկ ամբարշտութիւն է ասել եթէ էր երբեմն զի չէր, քանզի միշտ էր բանն էակից հօր։ Ուստի և ոչ մի ինչ հաղորդութիւն ասէր ունել առ ամբարիշտ արիանոսսն. քանզի և ոչ մի ինչ միաբանութիւն գոյ լուսոյ ընդ խաւարի։ Իսկ դուք վասն զի բարիոք պաշտէք, քրիստոնեայք էք. բայց նոքա զի արարած ասեն զառ ի հօրէ զորդին Աստուծոյ զբանն, որ ինչ են մեկուսի ի հեթանոսաց, վասն զի սպաս տանին արարածոց փոխանակ արարչին Աստուծոյ։ Հաւատամք զի և սոյն իսկ արարածք ամենայն բարկացեալ են վասն նոցա, զի զհաստատիչն և զտէրն որով ամենայն ինչ եղև՝ ընդ եղեալս համարին։

Եւ այլքն ամենայն ուրախ լինէին, վասն զի լսէին յայնպիսւոյ առնէն նզովել զքրիստոսամարտ հերձուածսն։ Իսկ քաղաքացիքն ամենայն առ հասարակ ընթանային տեսանել զԱնտոնիոս։ Իսկ հեթանոսքն և որ անուանեալ քուրմքն էին նոցա, յեկեղեցին գային և ասէին. աղաչեմք տեսանել զայրն Աստուծոյ, քանզի ամենեքեան զնա անդ այսպէս կոչէին, վասն զի և անդ ի ձեռն նորա զբազումս բժշկեաց Տէր ի դիւաց և զպականեալս ի մտաց ողջացոյց։ Բազումք և ի հեթանոսաց աղաչէին գոնեայ մերձենալ ի ծերունին միայն, քանզի հաւատային շահս օգտի գտանել, և վասն այսորիկ այնչափ քրիստոնեայք եղեն ի սակաւ

աւուրսն յայնոսիկ որ ոչ գոյր Թիւ[1]։ Ապա իբրեւ կարծէին ոմանք ի ժողովրդոցն թէ խռովի, եւ վասն այնորիկ յետս դարձուցանէին զբազումս ի Նմանէ։ Իսկ Նա ոչ եթէ խռովեալ ինչ ասէ ցնոսա՝ եթէ ոչ են սոքա բազումք քան զդեւսն որ մարտնչէին ընդ մեզ ի լերինն։ Եւ յորժամ ի բաց գնայր եւ յուղարկէաք զնա, եւ իբրեւ հասաք ի դուռնն, կին մի զկնի աղաղակէր եւ ասէր. կաց մնաց, այրդ Աստուծոյ, զի դուստր իմ ի դիւէ անհնարին չարչարի. մնա աղաչեմ զի մի՛ եւս վշտացայց ընթանալով։ Իբրեւ լուաւ ծերունին եւ աղաչեցեալ եղեւ ի մէնջ, անց մնաց կամելով։ Եւ իբրեւ մերձեցաւ կինն, եւ աղջիկն անկեալ դնէր յերկիր, իսկ Անտոն իբրեւ զաղօթսն արար եւ զՔրիստոս անուանեաց, յոտն եկաց աղջիկն ողջ, եւ դեւն ի բաց գնաց ի Նմանէ, եւ մայրն օրհնէր զԱստուած եւ ամենեքեան գոհանային, եւ ինքն ուրախ երթալով ի լեառն իբրեւ յիւր տուն։

Եւ իմաստուն էր յոյժ. եւ սքանչելի այն էր զի դպրութիւն ոչ էր ուսեալ եւ այնպէս լի էր բարի խորհրդով եւ էր՝ գիտուն այր։ Երբեմն փիլիսոփայք երկու հեթանոսք եկին առ Նա, եւ կարծէին այնպէս եթէ կարեմք զփորձ առնուլ Անտոնեայ։ Եւ էր Նա յայնժամ ի լերինն արտաքնում, եւ ծանեաւ ի դիմաց անտի զարսն. եկանէր արտաքս եւ ասէր նոցա թարգմանաւ. զի՞ այդչափ աշխատ եղերուք, ով փիլիսոփայք, գալ առ յիմար այր։ Եւ նոքա ասեն. ոչ ես յիմար, այլ կարի իմաստուն յոյժ։ Ասէ ցնոսա. զի թէ առ իբրեւ յիմար ոք եկիք, զուր եւ տարապարտուց են վաստակք ձեր. ապա եթէ կարծէք զինէն թէ իմաստուն եմ, եղերուք եւ դուք իբրեւ զիս, քանզի պարտ եւ պատշաճ է նմանել բարեաց. եւ եթէ առ ձեզ

1. Եր. այնչափ քրիստոնեայք եղեն ի սակաւ աւուրսն այնս, որչափ և ոչ է տարւոյն հարկ տեսանել։

եկեալ էի, յայտ է թէ նմանէի ես ձեզ։ Արդ վասն զի դուք եկիք առ իս, եղերուք իբրև զիս, քանզի քրիստոնեայ եմ։ Եւ նոքա զարմացան և ի բաց գնացին, քանզի տեսանէին զդեւս երկուցեալս յԱնտոնեայ։

Դարձեալ այլք ոմանք այսպիսիք եկին առ նա ի լեառն արտաքին, և կարծէին եթէ կարեմք խաղ առնել[1] զնա զի առանց դպրութեան է։ Ասէ ցնոսա Անտոն. զի՞նչ է առաջին՝ միտք եթէ գիրք, և ո՞յր պատճառք են գիւտի՝ միտք գրոց եթէ գիրք մտացն։ Եւ նոքա ասեն. միտք յառաջ են, և գտակք գրոց են միտք։ Ասէ Անտոն. ապա թէ այդպէս է, որ միտքն ողջ են՝ չեն ինչ նմա պիտոյ գիրք։ Եւ այսու բանիւ զմերձաւորսն և զնոսա հիացուցանէր։ Եւ չոգան գնացին այնուհետեւ զարմացեալք, վասն զի տեսին այնչափ իմաստութիւն ի նմա առանց խարդախութեան և դպրութեան։ Քանզի ոչ եթէ իբրեւ ի լերին սնեալ և անդ զարգացեալ ծերութեամբ՝ վայրենի ինչ բարք էին, այլ յոյժ զուարթական էր և քաղաքաբարոյ։ Եւ էին բանք նորա համեմեալ աստուածային աղիւն, զի մի՛ ոք զչարեսցի ամենեւին ընդ նա և մի՛ չարակնեսցէ, այլ առաւել ուրախ լինէին ամենեքեան որք գային առ նա։

Յետ այսորիկ դարձեալ եկին առ նա ոմանք յիմաստուն հեթանոսացն և պահանջէին ի նմանէ բան վասն Քրիստոսի հաւատոցն որ ի մեզ է, և ձեռն արկանէին և իշխէին քննել և խնդրել հակառակութեամբ վասն քարոզութեան աստուածեղէն խաչին և կամէին ընդ խաղ արկանել զիրսն։ Իսկ Անտոն սակաւ մի արգել զինքն. եւ նախ գթացեալ ի վերայ նոցա տգիտութեան, և ապա ասէր առ նոսա թարգմանաւ այնու որ գեղեցիկ զնորայն թարգմանէր, և ասէր այսպէս. ո՞ր բա-

1. Եր. խառանել։

րուք է՝ ի խա՞չ խոստովանել եթէ չնութիւն պատանեկագիտութեամբ զանկանել որ ձեր աստուածքն անուանեալ են. քանզի զոր մեքս ասեմք՝ արուութեան և առաքինութեան է հաստատուն նշանակ և արհամարհանաց մահու յայտնի գիտութիւն. իսկ ձերդ գիջութեան ախտ է և անհնարին թըշնամանաց: Եւ դարձեալ ո՞ր բարուք է ասել. զի բանն Աստուծոյ ոչ ստեղծաւ, այլ նոյն ինք որպէս և էրն՝ վասն փրկութեան մարդկան և բարերարութեան յինքն առու մարմին մարդկեղէն, զի մարդկան ծննդեան կցորդ եղեալ արասցէ զմարդիկ կցորդ իւրոյ աստուածեղէն և իմաստնական բնութեանն, եթէ յանաստուծս նմանեցուցանել զԱստուած և վասն այսորիկ պաշտել զչորքոտանիս և զսողունս և զմարդկան պատկերս, քանզի այս ձեր իմաստնոցն են գիւտք պաշտամանց: Եւ զիա՞րդ իշխէք դուք զմեզ ծաղր առնել, և ասէք զՔրիստոս մարդ յայտնեալ. որ և դուք ի մտաց զհոգին որոշէք և ասէք մոլորեալ զնա և անկեալ յերկնից: Եւ երանի թէ ի մարմին և ի մարդ միայն ասէիք, և մի՛ ի սողունս և ի չորքոտանիս փոփոխեալ և շրջեալ: Քանզի մեր հաւատքս վասն փըրկութեան մարդկան զՔրիստոսի գալուստն ասեն, իսկ դուք մոլորութիւնս անեզելածինս հոգւոց պատմէք. և մեք զհնարն և զմարթն և զմարդասիրութիւն զկանխագէտ մատակարարութեան խորհրդի, զի և այս ոչ ինչ է դժուարին Աստուծոյ. իսկ դուք ի պատկեր մտաց զհոգին ասելով կործանմամբ զանկանէք զնա, և ասէք զնա փոփոխելի առասպելաբար, և ապա այնուհետև զնոյն ինքն զմիտսն վասն հոգւոյն ի փոփոխումն խոնարհեցուցանէք. քանզի որպիսի ինչ իցէ պատկերն, նոյնպէս հարկ է լինել նմա որոյ պատկերն է: Եւ յորժամ վասն մտացն այսպիսի ինչ կարծիցէք, խորհեցարուք զի և զնա իսկ զհայր մտացն հայհոյէք: Իսկ վասն խաչին զի՞նչ ինչ լաւ կարասջիք

ասել, եթէ[1] ոչ ստութեամբ և կեղծաւորութեամբ՝ մատնութեան չարացն համբերեալ ի խաչին՝ և չերկնչել թէ որպէս զիարդ ոք ինչ և էր մահն ի վերայ եկեալ, եթէ մոլորութիւնն Ոսիրիդեայ և Իսիդեայ և Փաստակարութիւն կայծական ծնելոյ ատանցից և փախուստն Արհմեայ և որդւոցն գիշատումն և հայրասպանութեան առասպելս բարբանջել։ Այսպէս է ձեր իմաստութիւն։ Եւ իբրեւ ծաղր առնելով զՔրիստոս և ոչ զարմանայք ընդ յարութիւնն. քանզի որ զայնսն ասացին՝ և զայս նոքա գրեցին։ Եւ կամ ընդէ՞ր յիշելով զխաչն՝ լուռ լինիք և վասն մեռելոցն զոր յարոյց և կուրացն որոց աչքն բացան և անդամալուծացն որ բժշկեցան և բորոտացն որք սրբեցան և զ'ի ծովուն վերայ հետևակագնացութիւն և զայլոց նշանացն և զարուեստից որք ոչ են մարդկօրէն, այլ Աստուած յայտ առնեն զՔրիստոս։ Եւ կարի յոյժ թուիք ինձ անիրաւ մեղանչել, և ոչ սրտի միտք և ընտանութեամբ ընդ հարեալ էք ընդ գիրս մեր։ Այլ երթայք ընթացարուք դուք և տեսէք զոր ինչ արարն Քրիստոս, զի Աստուած յայտ առնեն զնա եկեալ ի փրկութիւն մարդկան։

Ասացէք դուք մեզ և զձերն. և զի՞նչ ինչ ասասջիք և վասն անասնոցն, բայց եթէ անասնութիւն և վայրենութիւն. ապա եթէ որպէս լսեմ կամեսջիք ասել՝ առասպելաբար ասացեալ է զայս առ ձեզ, և այլ ընդ այլոյ պատմել զյափշտակութիւն աղջկանն սանդարամետականին յերկիր և զՀեփեստեայ կաղութիւնն ի հուր և զՑերեայն յօդս և զԱպողոնեայն յարեգակն և զԱրտեմեայն ի լուսին և զՊոսիդոնեայն ի ծով, ոչ ինչ է վատթարութիւն նուազութեան զԱստուած պաշտել, այլ արարածոց պաշտօն տանիք փոխանակ Աստուծոյ որ զամենայն հաստատեաց։ Արդ վասն զի բարուք

1. Չիք ի յոյնն եթէ ոչ ստութեամբ և կեղծաւորութեամբ։

և գեղեցիկք են ստորածքս, այդպիսիս հաստա-կաղմեայ. այլ պարտ և պատշաճ էր ձեզ մինչև ի զարմանալն միայն հաւանել, և ոչ աստուածա-ցուցանել զարարածս, զի մի՛ զհաստողին պատիւ եղկլոցս մատուսջիք. վասն զի ժամ՝ է ձեզ և զա-րուեստապետին պատիւն որ ի նմանէ հաստեցաւ՝ ի տունն փոխել և կամ՝ զզօրավարին պատիւն զօ-րականին։ Արդ զի՞նչ ինչ ասասջիք առ այս, զի գիտասցուք եթէ արդարև նախատանաց ինչ ու-նիցի խաչն Քրիստոսի։

Եւ նոքա ափշեալ և տարակուսեալ լինէին և զերեսս այսր անդր տանէին բերէին։ Հեզաբար ծիծաղեալ Անտոն և դարձեալ ասէ ցնոսա թարգ-մանաւն՝ եթէ այս և ի դոյն իսկ յերեսաց ձերոց ունի զյանդիմանութիւն. վասն զի դուք յեցեալ յուսացեալ էք ի հաստատութիւն գիտութեան բա-նից, և զայս արուեստ ունելով կամիք և զմեզ ևս՝ զի մի՛ առանց բանից հաստատութեան զԱստուած պաշտեսցուք։ Արդ ասացէք նախ դուք ինձ զիրս և մանաւանդ վասն աստուածգիտութեան թէ ո՞ր-պէս ճշմարիտ՝ եթէ գործովք զօրութեան հաւա-տոց. և ո՞վ նախ երիցագոյն է, զօրութեան հա-ւատքն՝ եթէ բանից յայտնութեան գիտութիւն։ Նոքա ետուն պատասխանի և ասեն՝ եթէ նախ ա-ռաջին է ճշմարիտ հաւատոցն գիտութիւն։ Ասէ Անտոն. բարւոք ասացէք, քանզի հաւատք ի հաս-տատութենէ և ի սիրոյ ոգւոյն լինին. իսկ խօ-սողականն յարուեստէ շինողաց և ի հաստողաց բանից է։ Ապա թէ այդպէս է, յորս դոյ հաւա-տոց զօրութիւն, ոցա ոչ ինչ է պիտոյ հարկաւորն, այլ և աւելի ևս են բանիցն յայտնութեան գի-տութիւնք. և զոր ինչ մեք հաւատովք իմանամք, դուք զայս ի ձեռն բանից կամիք կազմել և շինել. և բազում՝ անգամ դէպ լինի զի և ոչ ի գիտու-թիւն բերել կարէք բանիւք զոր մեքն իմանամք։ Վասն այսորիկ լաւագոյն և հաստատագոյն զօրու-

թեան են հաւատքն քան զիմաստութեան ձերոյն խորհրդոց։

Քանզի մեք քրիստոնեայքս ոչ իմաստութեան բանիւք հեթանոսաց ասացեալ՝ ունիմք զխորհրդակցութիւն տեառն, այլ զօրութեամբ հաւատոցն որ շնորհեցաւ մեզ ի ձեռն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ։ Եւ զի ճշմարիտ է բանս, և ահա մեք առ այժմ ոչ եմք ուսեալ գիր՝ հաւատամք յԱստուած, և գիտեմք յարարածոց նորա զառ ի յամենայն ինչ կանխագիտութիւն զօրութեան և մատակարարութեան Աստուծոյ, և հաստատուն և հզօր են հաւատք մեր. և ահա այժմ յեցեալ և հաստատեալ եմք ի Քրիստոս հաւատովք նորա, և դուք ի բանամարտիկ իմաստնականութիւնդ։ Սակայն ձերդ ի նմանութիւն կերպարանացդ առ աչս տեսիլքն խափանին. իսկ որ առ մեզ հաւատքս՝ աճեցեալ զարգանան և ձգին ամենայն ուրեք։ Եւ դուք խորհելովդ և հնարելովդ և հակառակելով արուեստից իմաստութեան բանիւքդ՝ ոչ զոք ի քրիստոնէից կարէք հաւանեցուցանել ի հեթանոսութիւն. իսկ մեք զառ ի Քրիստոս հաւատն ուսուցանելով լերկեմք և նուազեցուցանեմք զձեր դիւցականութեան պաշտօնդ՝ գիտելով ամենեցուն զՔրիստոս թէ Աստուած է և որդի Աստուծոյ։ Եւ դուք ձերովդ դեղեցկաբանութեամբ ոչ կարէք ընդ ստս անկանել և խափանել զՔրիստոսի վարդապետութիւն. իսկ մեք անուանելով զխաչելեալն Քրիստոս՝ հալածեմք ամենեւին զդեւսն յորոց դուք երկնչիք իբրեւ յաստուածոց. և ուր նշան խաչին հասանէ՝ տկարացեալ լինին մոգութիւնք և ոչ զօրէ կախարդութիւն։

Ասացէք դուք ինձ, ո՞ւր են ձեր այժմ յառաջագիտութիւնք՝ հարցուածն մոլեգնութեան, և ո՞ւր են եգիպտացւոցն գիտունք, ո՞ւր են մոգացն առաջօքն տեսիլք. և երբ այս ամենայն լռեալ դադարեաց և տկարացաւ՝ թէ ոչ յորժամ Քրիս-

տոսի խաչն եղեւ։ Իսկ արդ արդեօք արժանի՞ իցէ սա նախատանաց և ծաղր առնելոյ, եթէ եւս առաւել խափանեալքն ի նմանէ և յանդիմանեալքն տկարութեամբ։ Քանզի և այս իսկ զարմանալի է, զի ձերն ոչ ուրեք երբէք յումեքէ հալածեցաւ, այլ ի մարդկանէ և յամենայն քաղաքս պատուեալ լինի. իսկ Քրիստոսին հալածեալ լինի, և առաւել եւս մերս քան զձերդ ծաղկէ և բազմանայ. և ձերն գովութեամբ և զգոյշ պահպանութեամբ ապականի և հնանայ, իսկ Քրիստոսի հաւատք և վարդապետութիւնն ծաղր լինելով ի ձէնջ և բազում՝ անգամ՝ հալածելով ի թագաւորաց ելից զաշխարհս ամենայն։ Քանզի ե՞րբ այսպէս աստուածգիտութիւն ծագեաց, և ե՞րբ այսպէս ողջամիտ պարկեշտութիւն և առաքինութիւն կուսութեան երեւեցաւ, և կամ՝ ե՞րբ այսպէս արհամարհեցաւ մահ, եթէ ոչ յորժամ՝ խաչն Քրիստոսի հաստատեցաւ։ Եւ զայս ոչ ոք է անգէտ՝ տեսանելով զմարտիրոսսն որք արհամարհեցին ըզմահ վասն Քրիստոսի, տեսանելով զեկեղեցւոյ սուրբ կոյսս որք վասն Քրիստոսի պահեն. ամբծութեամբ զմարմինս իւրեանց։ Եւ էր բաւական այս հաստատուն նշան յայտ առնել զառ ի Քրիստոսի հաւատսն՝ զի նա միայն է ճշմարիտ յաստուածպաշտութիւն։ Ապա թէ դուք և այլ եւս թերահաւատէք և խնդրէք զբանիցն բազմաստացութիւն խորհրդոց, իսկ մեք ոչ հեթանոսաբար հաւանութեամբ, որպէս ասաց վարդապետն մեր՝ զայս ունիցիմք, այլ հաւատոցն հաւանիմք, որ առաքինութեամբ յինքն կազմէ զբանիցն շինուածս։ Արդ ահաւասիկ են աստ ախտացեալք ի դիւաց, քանզի էին ոմանք եկեալք առ նա ախտացեալք ի դիւաց, և ի մէջ անցուցեալ առէ ցնոսա. դուք խորհրդո՛վք ձերովք և բազմաբանութեամբ որպիսի արուեստիւք և կամիք՝ զօր զուր և ընդունայն նմանութիւն կերպարանաց ձերոց կոչէք, սրբեցէք զդա.

տալս թէ ոչ կարէք, ի բաց ընկեցէք ընդ մեզ զկռիւդ և տեսջիր զզօրութիւն խաչին Քրիստոսի։ Եւ զայս ասելով՝ ի վերայ կարդաց զՔրիստոս և կնքեաց զախտաւորն Նշանաւ խաչին երկիր և երիր անգամ, և անդէն վաղվաղակի անցեալ կացին ալքն առողջք և ողջամիտ զգաստութեամբ։

Եւ այնուհետեւ ողջանային զտեառնէ. և որք անուանեալ փիլիսոփայքն էին, զարմացան և ճշմարիտ հիացեալ լինէին ընդ իմաստութիւն առնն և ընդ եղեալ Նշանն։ Իսկ Անտոն ասէ. զի՞ զարմացեալ էք ի վերայ այսորիկ. ոչ եմք մեք որ առնեմք, այլ Քրիստոս է որ առնէ ի ձեռն այնոցիկ որ հաւատան ի Նա։ Արդ հաւատացէք և դուք իբրեւ զմեզ և տեսէք զի ոչ գոյ ի մեզ արուեստ բանից, այլ հաւատք սիրով ի Քրիստոս զօրացեալ. զոր և դուք եթէ ստացեալ լինիք, ոչ եւս այնուհետև զբանիցն յայտնութիւնս խնդրեսջիք, այլ բաւական զառ ի Քրիստոս հաւատոն համարեսջիք։ Այս էին Անտոնեայ բանքն։ Իսկ Նոքա յայսմ եւս զարմացեալք ի բաց գնացին, և համբուրէին զՆա և խոստովանէին բազում ինչ օգտեալ ի Նմանէ։

Եւ եհաս մինչ ի թագաւորս համբաւն Անտոնի. քանզի զայս իբրեւ լուաւ Կոստանդիանոս թագաւոր և որդիք Նորա Կոստանդին և Կոստաս և Կոստանդինոս՝ որք թագաւորազունքն էին, գրէին ի Նա իբրև ի հայր, և աղօթից խնդրէին ի Նմանէ ընդունել փոխանակ այնր գիր։ Այլ Նա ոչ վասն գրոյն ինչ փոյթ առնէր և ոչ ի վերայ թըղթոյն խնդայր ինչ, այլ նոյն ինքն էր Նա որպէս և յառաջն էր մինչ չեւ գրեալ էր առ Նա թագաւորացն։ Եւ յորժամ բերեալ լինէին Նմա թուղթքն, կոչէր զմիայնակեացսն և ասէր՝ թէ մի՛ զարմանայք զի գրեալ է առ մեզ թագաւորացն, զի մարդիկ են. այլ զարմացարուք զի Աստուած զօրէնս իւր ետ մեզ իբրու զի մարդիկ եմք, և որդւովն իւրով խօսեցաւ ընդ մեզ։ Եւ ոչ կամէր

ընդունել զթուղթան ասելով այսպէս՝ եթէ ոչ կի-տեմք փոխանակ այսր անդէն գրել։ Ապա բռնա-դատեալ եղեւ ողքանօք յամենայն միայնակեցացն՝ եթէ քրիստոնեայք են թագաւորքն, և զի մի՛ իբ-րեւ տարակուսեալք գայթակղեսցին։ Ապա հրա-մայէր ընթեռնուլ և փոխանակ գրէր անդէն, և ընդունէր զնոսա զի Քրիստոսի երկրպագողք էին. և խրատ տայր նոցա ի փրկութիւն և մի՛ մեծ ինչ համարել զմտաւորս և զձեռամբ եկեալս, այլ յիշել առաւել զպատրաստեալ դատաստանն և գի-տել զի Քրիստոս միայն է ճշմարիտ թագաւոր յաւիտենական։ Եւ աղաչէր զնոսա մարդասէրս լինել, և հոգ տանել արդարութեան և աղքատաց։ Եւ նոքա իբրև ընկալան, յոյժ ուրախ լինէին։ Եւ այսպէս ամենեցուն սիրելի լինէր Անտոն, և ամենեքեան աղաչէին ընդունել զնա իբրեւ զհայր։

Եւ այսպիսեաւս իբրեւ գիտուն եղեւ և այսպէս պատասխանի առնելով որք գային առ նա, դար-ձեալ դառնայր ի ներքսագոյն անապատն և զսո-վորութեան կրօնս իւր ի գործ արկանէր։ Եւ բազում անգամ՝ դէպ լինէր զի յորժամ նստէր ընդ այնոսիկ որ մտանէին առ նա, միտքն համ-բարձեալ լինէին որպէս և գրեալ է ի Դանիէլն. զի թէպէտ և նա յետ ժամուց խօսէր զկարգ բանիցն ընդ եղբարսն որ էին ընդ նմա, սակայն նոքա զգային թէ տեսիլ իմն տեսանէ նա. քանզի և որ յԵգիպտոս ինչ լինէր, բազում անգամ մինչ դեռ ի լերինն նստէր, տեսանէր և պատմէր Սրա-պիոնի եպիսկոպոսի որ ի ներքսն էր և տեսանէր նա զԱնտոնիոս զբռեալ տեսլեամբքն։ Եւ երբեմն մինչդեռ նստէր և գործէր, իբրեւ մեկնեալ իմն եղեւ ի հիացումն, և ի բազում տեսլեանն հեծե-ծէր և մռնչէր, և ապա յետ ժամու միոյ դար-ձեալ առ այնս որ անդ էին՝ հառաչեաց և լի եղեւ ահագին դողութեամբ. յարուցեալ կայր յաղօթս, և ծունր եդեալ կաց բազում ժամս, և կանգնեալ

անուր լայր ծերունին։ Եւ իբրեւ լի եղեն ամենեքեան դողութեամբ և երկեան ոլք ընդ նմայն էին և աղաչէին նորա ուսանել ի նմանէ և յոյժ նեղէին զնա, մինչեւ բռնադատեալ ասէր այսպէս մեծապէս հեծեծելով. ով որդեակք իմ, բարւոք էր մեռանել յառաջ մինչ չեւ եղեալն իցէ այս տեսիլ։ Եւ նորա դարձեալ աղաչէին զնա։ Իսկ նա արտասուելով ասէր՝ ևթէ ի վերայ եկեղեցւոյ բարկութիւն իմն հասանելոց է, և ևթէ մատնելոց է ի ձեռս մարդկան որք նման են անասնոց չնչաւորաց։ Տեսի ես զսեղանն տէրունական և շուրջ զնովաւ ջորիք զի կային յամենայն կողմանց և աքացէին զայնս որ ի ներքսն էին՝ այնպէս որպէս սաստկաքն յամեհի անասնոց որք անառակս կայտռեցեն փնտակար անգուսիւք։ Եւ ապա հեծեծելով և յոգւոց հանելով ասէր. ապաքէն զգացէք զիարդ յոգւոց հանէի, քանզի լուայ ձայն որ ասէր՝ ևթէ սեղանն իմ ի պղծութիւն մատնեսցի։ Զայս տեսս ծերունին, և յետ երկուց ամաց եղեւ այժմու արիանոսացս ի վերայ յարձակումն և յափշտակութիւն եկեղեցեացս, յորժամ և զապաւն բռնաբար յափշտակեալ հեթանոսաց տային բառնալ, յորժամ և հեթանոսացն հարկ առնէին թողուլ զգործ և գալ ժողովել ընդ նոսա, և առաջի նոցա առնէին ի վերայ սեղանոյն զինչ և կամէին։ Ցայնժամ մեք ամենեքեան գիտացաք զի կայտռեկատակ ջորւոյն զայս յայտ արարին[1] Անտոնեայ, զոր այժմ արիանոսքն առնեն անանաբար իբրեւ չնչաւորք։ Որպէս զտեսիլն տեսս, այնպէս և եղեւ, որպէս լուան որք անդն էին։ Աղաչէր և մխիթարէր ասելով՝ թէ մի՛ վհատեալ տրտմիք, որդեակք. քանզի որպէս բարկացաւ տէր, սոյնպէս և դարձեալ բժշկէ, և դարձեալ

1. Եր. գիտացաք զի այն էին կայտռեալն տրտահոկ ջորւոյն. և զայս յառաջնորդոյն յայտ արարին։

վաղվաղակի անդրէն յինքն ընկալցի եկեղեցի զկարգ իւր, և ըստ սովորութեան վերստին որպէս զլոյս պայծառ ծագեսցէ, և տեսջիք զհալածեալսն անդրէն հաստատեալս, և զամբարիշտսն տեսջիք անդրէն ի յորջսն ի բաց երթեալ գնացեալ, և զբարեպաշտ հաւատոյն ամբարձեալ ամենայն ազատութեամբ ամենայն ուրեք։ Դուք միայն պինդ կացէք այժմ և մի՛ պղծէք զձեզ ընդ արիանոսսն. քանզի ոչ է այս առաքելոցն վարդապետութիւն, այլ դիւաց և հօր իւրեանց սատանայի, և առաւել անպտուղ է անծին ուղիղ խորհրդոց, որպէս և ջորւոյն չնչաւորաց։ Այսպիսի էր Անտոնին։

Եւ ոչ է արժան մեզ թերահաւատել թէ այսչափ սքանչելիք եղեն ի ձեռն մարդոյ, քանզի փրկչին է խոստումն որ ասէ. թէ ունիցիք հաւատս իբրև զհատն մանանխոյ և ասասջիք լերինս այսմիկ թէ փոփոխեաց աստի՛ փոխեսցի և ոչ ինչ եղիցի ձեզ տկարութիւն. և դարձեալ, ամէն ամէն ասեմ ձեզ զի զոր ինչ խնդրիցէք ի հօրէ իմմէ յանուն իմ՛ տացէ ձեզ. խնդրեցէք և տացի ձեզ։ Եւ նա է որ ասաց աշակերտացն և ամենեցուն որ հաւատան ի նա. զհիւանդս բժշկեցէք, զդևս հանէք, ձրի առէք և ձրի տուք։ Քանզի ոչ եթէ հրաման տալով բժշկէր Անտոն, այլ յաղօթս կալով և զՔրիստոս անուանելով, մինչև ամենեցուն յայտնի լինել զի ոչ նա էր որ առնէր, այլ տէր էր որ ի ձեռն Անտոնի զիւր մարդասիրութիւն ցուցանէր, որ բժշկէրն զախտաժէտս. Անտոնի՛ միայն աղօթքն էին և գեղեցիկ կրօնաւորութիւնն։ վասն որոյ և ի լերինն նստէր. և թէպէտ և ուրախ էր վասն աստուածական տեսլեանցն, սակայն տրտմէր զի ի բազմաց նեղեալ լինէր։

Ի լեառն արտաքին ելանէր, քանզի և դատաւորք աղաչէին զնա ի լեռնէն իջանել, վասն զի ինքեանք ոչ կարէին երթալ անդ վասն դատախազացն որ զկնի նոցա շրջէին, և աղաչէին զի միայն եկեսցէ

անտի լայր ծերունին։ Եւ իբրեւ լի եղեն ամենեքեան դողութեամբ և երկեան ոյք ընդ նմայն էին և աղաչէին նոցա ուսանել ի նմանէ և յոյժ նեղէին զնա, մինչեւ բռնադատեալ ասէր այսպէս մեծապէս հեծեծելով. ով որդեակք իմ, բարւոք էր մեռանել յառաջ մինչ չեւ եղեալն իցէ այս տեսիլ։ Եւ նոքա դարձեալ աղաչէին զնա։ Իսկ նա արտասուելով ասէր՝ նեղէ ի վերայ եկեղեցւոյ բարկութիւն իմն հասանելոց է, և նեղէ մատնելոց է ի ձեռս մարդկան որք նման են անասնոց չնչաւորաց։ Տեսի ես զսեղանն տէրունական և շուրջ զնովաւ ջորիք զի կային յամենայն կողմանց և աքացէին զայնս որ ի ներքսն էին՝ այնպէս որպէս ստահակքն յամեհի անասնոց որք անառակս կայտռիցեն փոխանակ անդուսիւք։ Եւ ապա հեծեծելով և յոգւոց հանելով ասէր. ապաքէն զգացէք զիարդ յոգւոց հանէի, քանզի լուայ ձայն որ ասէր՝ նեղէ սեղանն իմ՝ ի պղծութիւն մատնեսցի։ Զայս ետես ծերունին, և յետ երկուց ամաց եղեւ այժմու արիանոսացս ի վերայ յարձակումն և յափշտակութիւն եկեղեցեացս, յորժամ և զսպասն բռնաբար յափշտակեալ հեթանոսաց տային բառնալ, յորժամ և հեթանոսացն հարկ առնէին թողուլ զգործ և գալ ժողովել ընդ նոսա, և առաջի նոցա առնէին ի վերայ սեղանոյն զինչ և կամէին։ Յայնժամ մեք ամենեքեան գիտացաք զի կայտռիկստակ ջորւոցն զայս յայտ արարին[1] Անտոնեայ, զոր այժմ արիանոսքն առնեն անասնաբար իբրեւ չնչաւորք։ Որպէս զտեսիլն ետես, այնպէս և եղեւ, որպէս լուան ոյք անդն էին։ Աղաչէր և մխիթարէր ասելով՝ թէ մի վհատեալ տրտմիք, որդեակք. քանզի որպէս բարկացաւ տէր, այնպէս և դարձեալ բժշկէ, և դարձեալ

1. Եր. գիտացաք զի այն էին կայտռիկստակ ջորւոցն. և զայս յառաջագոյն յայտ արարին։

վաղվաղակի անդրէն յինքն ընկալցի եկեղեցի զկարգ իւր, և ըստ սովորութեան վերստին որպէս զլոյս պայծառ ծագեսցէ, և տեսջիք զհալածեալսն անդրէն հաստատեալս, և զամբարիշտսն տեսջիք անդրէն ի յորջսն ի բաց երթեալ գնացեալ, և զբարեպաշտ հաւատոն ամբարձեալ ամենայն ազատութեամբ ամենայն ուրեք։ Դուք միայն պինդ կացէք այժմ և մի՛ պղծէք զձեզ ընդ արիանոսսն. քանզի ոչ է այս առաքելոցն վարդապետութիւն, այլ դիւաց և հօր իւրեանց սատանայի, և առաւել անասուն է անծին ուղիղ խորհրդոց, որպէս և ջորւոյն չնչաւորաց։ Այսպիսի էր Անտոնին։

Եւ ոչ է արժան մեզ թերահաւատել թէ այսչափ սքանչելիք եղեն ի ձեռն մարդոյ, քանզի փրկչին է խոստումն որ ասէ. թէ ունիջիք հաւատս իբրև զհատն մանանխոյ և ասասջիք լերինս այսմիկ թէ փոփոխեաց աստի՝ փոխեսցի և ոչ ինչ եղիցի ձեզ տկարութիւն. և դարձեալ, ամէն ամէն ասեմ ձեզ զի զոր ինչ խնդրիցէք ի հօրէ իմմէ յանուն իմ՝ տացէ ձեզ. խնդրեցէք և տացի ձեզ։ Եւ նա է որ ասաց աշակերտացն և ամենեցուն որ հաւատան ի նա. զհիւանդս բժշկեցէք, զդևս հանէք, ձրի առէք և ձրի տուք։ Քանզի ոչ եթէ հրաման տալով բժշկէր Անտոն, այլ յաղօթս կալով և զՔրիստոս անուանելով, մինչև ամենեցուն յայտնի լինել զի ոչ նա էր որ առնէր, այլ տէր էր որ ի ձեռն Անտոնի զիւր մարդասիրութիւն ցուցանէր, որ բժշկէրն զախտաժէտս. Անտոնի՝ միայն աղօթքն էին և գեղեցիկ կրօնաւորութիւնն։ Վասն որոյ և ի լերինն նստէր. և թէպէտ և ուրախ էր վասն աստուածական տեսլեանցն, սակայն տրտմէր զի ի բազմաց նեղեալ լինէր։

Ի լեառն արտաքին ելանէր, քանզի և դատաւորք աղաչէին զնա ի լեռնէն իջանել, վասն զի ինքեանք ոչ կարէին երթալ անդ վասն դատախազացն որ զկնի նոցա շրջէին, և աղաչէին զի միայն եկեսցէ

և տեսցեն զնա։ Իսկ նա ի բաց դառնայր և հրաժարէր և ոչ կամէր երթալ զառ ի նոսայն ճանապարհն։ Իսկ նոքա կային միայն և վիճէին. և մանաւանդ զդատապարտն պահպանութեամբ զինուորացն մօտ անդր առաքէին, զի գտնեայ ի նոցա պատճառս իջցէ։ Եւ ի հարկէ բռնադատեալ լինէր՝ իբրեւ տեսանէր զնոսա զի լային և ողբային, և դայր ի լեառն արտաքին։ Եւ դարձեալ ոչ եթէ անօգուտ ինչ լինէր աշխատութիւն նորա, քանզի բազմաց չահ օգտի լինէր և բարեգործութիւն էր մերձաւորութիւն նորա։ Եւ դատաւորացն օգուտ լինէր խրատն տալով, և առաւել քան զամենայն պատուել զարդարութիւն և երկընչել յԱստուծոյ, և գիտել թէ որով դատաստանաւ դատին՝ դատելոց են։ Բայց սակայն ի լերինն բնակել առաւել քան զամենայն ինչ սիրէր։ Ցայնժամ իբրեւ բռնադատեալ եղեւ յայնցանէ որոյ պէտքն պահանջէին, և ի զօրավարէն՝ վասն զի առաքեաց առ նա բազում և աղաչեաց իջանել ի լեռնէն, և ապա իջանէր և խօսէր սակաւ մի որ մերձեցուցանէր ի փրկութիւն, և առաւել վասն կարօտելոցն փութայր։ Եւ որում՝ գուքին առէին, աղաչէր զնա սակաւ մի յամել առ նոսա։ Եւ նա ասէ ցնա՝ եթէ ոչ կարեմ՝ յամել առ ձեզ. և զուարթալից և ուրախարար առակաւ հաւանեցուցանէր զնա և ասէր՝ թէ զոր օրինակ ձկունք յերկարեալ ի ցամաքի յերաշտ չորութենէն սատակին, նոյնպէս և միայնակեացք որ յերկարեն առ ձեզ շրջին՝ լքեալ լուծանին. արդ պարտ և արժան է որպէս ձուկն ի ծով՝ նոյնպէս և մեզ ի լեառն փութով հասանել, զի մի՛ երբէք յամեալք մոռացուք զվանականն կրօնսն։ Իբրև լուաւ զայս զօրավարն և այլ եւս բազում ի նմանէ, զարմացաւ և ասէ. Ճշմարտիւ այր Աստուծոյ է սա. քանզի ուստի՞ գտանի այսչափ իմաստութիւն, մանաւանդ որ առանց դպրութեան է, թէ ոչ էր սիրելի Աստուծոյ։

Զօրավար մի որում անուն էր Բողակլոս, դառնութեամբ հալածէր զմեզ զքրիստոնեայս վասն փոյթ յանձին ունելոյ օգտութիւն տանելոյ գաժանուաց մրիանոսացն. և այնչափ անհնարին էր խակ և լկտի և սաստիկ, մինչև զկուսանս անդամ գան հարկանել, և զմիայնակեացն մերկացուցանել և տանջել։ Ապա առաքեաց առ նա Անտոն և գրեաց այսպիսի պատճառս ի թղթին՝ եթէ տեսանեմ զի գայ բարկութիւն ի վերայ քո, հանդարտեա ի հալածելոյ զքրիստոնեայսդ, զի մի՛ հասցէ ի վերայ քո բարկութիւնն, քանզի ահա պատրաստեալ է գալ։ Եւ Բողակլոս ծիծաղելով և թքանելով ի նա ընկէց յերկիր զթուղթն, և որք բերինն թշնամանեաց և զայս պատուիրեաց պատմել Անտոնի. քանզի հոգաս, ասէ, վասն աբեղայիցդ, արդ ահա և ի վերայ քո եկից։ Եւ ոչ անցին աւուրք հինգ, և եհաս ի վերայ նորա բարկութիւն. քանզի յառաջ էր վանս մի ի քաղաքին աղեքսանդրացւոց որ կոչի Քերէուսաւ, չոգաւ ինքն Բողակլոս և ոպարապետն եղիպտացւոց, և երկոքեան հեծեալ էին ի ձիս. և էին ձիք Բողակայ քաջամուղք և հանդարտք քան զամենեսեան որ բուծեալն էին առ նմա։ Մինչ չեւ հասեալ էին նոքա ի տեղին, սկսան ձիքն ըստ սովորութեան խաղալ ընդ միմեանս. և յանկարծակի ի հանդարտագոյն վայրի յորոյ վերայ նստէր Նեստորիոս, և նա ատամնացի զԲողակ յերկիր ընկենոյր և հարկանէր ի վերայ նորա, և այնպէս ատամամբքն հերձեաց զբարձս նորա մինչև անդէն վաղվաղակի ի քաղաքն առնուլ տանել զնա և յերիր աւուր մեռանել նմա, և ամենեցուն զարմանալ. զի զոր յառաջագոյն ասաց Անտոն, վաղվաղակի եղեւ։

Այսպէս դառանցն բարի լոբատ տայր, և զայլսն որ գային առ նա՝ այնպիսի միտս դնէր նոցա, մինչև անդէն իսկ վաղվաղակի մոռանալ նոցա զամ-

բարտաւանութիւն և երանել զայնոսիկ որ ի բացն մեկնեցան և գնացին ի կենաց աշխարհիս այսորիկ։ Եւ զի այսպէս վերակացու էր զրկելոց, մինչեւ կարծել եթէ ոչ այլ ոք, այլ ինքն է զրկեալ։ Եւ այսպէս դարձեալ ամենեցուն բաւական էր յօգտութիւն, մինչեւ զբազումս իսկ զինուորեալս և որք բազում ինչս ստացեալ ունէին՝ ի բաց հարկանել, թողուլ զծանրութիւն աշխարհիս և այնուհետև լինել միայնակեաց։ Եւ այսպէս ամենայն եգիպտացւոցն էր իբրեւ զբժիշկ տուեալ յԱստուծոյ. քանզի ո՞վ ոք երթայր առ նա, և ոչ գնայր լի ուրախութեամբ ի նմանէ. ո՞վ ոք երթայր առ նա սգոյ մեռեալ ոք էր նմա, և ոչ անդէն վաղվաղակի ի բաց եդեալ լինէր սուգն. ո՞ ոք գնայր առ նա բարկացեալ, և ոչ ի սէր փոփոխեալ լինէր. ո՞ ոք աղքատ հասեալ առ նա վաստակեալ և ձանձրացեալ կենօք աշխարհիս, և ոչ իբրեւ լուաւ ի նմանէ և ետես զնա՝ արհամարհեաց զմեծութիւն և մխիթարեցաւ յաղքատութիւնն. ո՞ ոք միայնակեաց վաստակեալ և լքեալ ի վարուցն՝ միայն եհաս առ նա, և ոչ առաւել հզօրագոյն եղեւ. ո՞վ ոք մանուկ եկն ի լեառնն և միայն ետես զԱնտոն, և ոչ անդէն վաղվաղակի ցամաքեցաւ ի ցանկութեանցն և սիրեաց պարկեշտութեամբ ողջմիտ կալ. ո՞վ ոք գայր առ նա վշտացեալ ի դիւաց, և ոչ լինէր հանգուցեալ. ո՞վ ոք գայր առ նա նեղեալ խորհրդովք, և ոչ խաղաղանայր և ցածնոյր մտօք։ Քանզի այս էր գեղեցիկ կրօնաւորութիւն Անտոնի, որպէս յառաջն ասացի, շնորհս ունէր մեկնութեան հոգւոց և ճանաչէր զնոսա ի շօշափմունս և ի շարժմունս, և եթէ առ որ ինչ ոք ունի զյարձակումն և զփոյթ վաստակար խարդախութեանն. ոչ եթէ նա միայն ոչ խաբէր ի նոցանէ, այլ և յայլոցն որք նեղեալ էին խորհրդովք ի նոցանէ՝ ուսուցանէր թէ որպէս կամ զիարդ կարասցեն զխորհուրդս նոցա յինքեանց ի բաց հալածել,

վասն զի պատմէր նա զգործ խորամանկութեանն և զնկարութիւնս նոցա։ Քանզի ամենայն ոք իբրև զեղջերու իջանէր. ի նմանէ, քաջալերեալ և համարձակեալ ի վերայ իմաստից խորամանկութեանց բանսարկուին և դիւաց նորա։ Եւ քանի՛ կուսանք որ ի խօսման կային, միայն իբրև տեսանէին զԱնտոն յայնմ կողմանէ միայն ի Քրիստոս հաստատեալ կային մնային կուսանք։ Եւ դային յարտաքին կողմանցն առ նա, և նոքա ընդ ամենեսին զօգուտն ընկալեալ դառնային անդրէն իբրև ի հօրէ յուղարկեալք։ Քանզի իբրև ննջեաց նա, ամենեքին իբրև որբք ի հօրէ մնացին և լոկ միայն նորա յիշատակօքն մխիթարէին զանձինս, և միանգամայն յինքեանս ունելով զխրատն և զմխիթարութիւն վարդապետութեան նորա. զորոյ վախճան կենաց նորա և ինձ արժան է յիշել և ձեզ լսել փափագելով։

Քանզի և այս նորա նախանձելի էր, որ ըստ սովորութեան այց առնէր միայնակեցացն որ յարտաքնումն լերինն էին. և յառաջագոյն ուսեալ ի յառաջագէտ մարգարէութենէ խնամոցն տեառն վասն իւրոյ վախճանին, խօսէր ընդ եղբարսն և ասէր՝ եթէ զայս վերջին այցելութիւն առնեմ ձեզ, և զարմանամ՝ եթէ դարձեալ զմեզ աստ՝ այսինքն ասեմ՝ այսու կենօք տեսցուք. քանզի ժամանակ է ինձ այսուհետև դարձի իմոյ, քանզի մերձ եմ ամաց հարիւր և հնգից։ Եւ կէսքն իբրև լսէին, լային և գիրկս արկանէին և համբուրէին զծերունին։ Իսկ նա իբրև յօտար քաղաքէ յիւր տունն դառնալով գնալով՝ խօսէր և պատուիրէր նոցա մի՛ վհատել և մի՛ լքանել ի վաստակոցն և մի՛ ձանձրանալ ի վարս կրօնաւորութեան, այլ որպէս հանապազօր մեռանելով կեալ, որպէս յառաջն ասացի. փոյթ ունել և պահել զոգիսն յաղտեղի խորհրդոց և նախանձ ունել ընդ սուրբսն և մի՛ մերձենալ ի հերձուածողս մելե-

տիանոսս, քանզի գիտէք զնոցա չար և զպիղծ բարոյսն. և մի՛ ինչ բնաւ միաբանութիւն ունել ընդ ամբարիշտ արիանոսս, քանզի և նոցա ամբարշտութիւն ամենեցուն յայտնի է. և մի՛ եթէ տեսանիջիք զդատաւորս վերակացուս նոցա և օգնականս, քանզի դադարելոց է և առ սակաւ մի է նոցա առաչզք տեսիլն իբրև մահկանացուաց։ Արդ առաւել սուրբ պահեցէք զձեզ ի նոցանէ, և զգուշացարուք զհարցն աւանդութիւնս և զպատուիրանս զոր աւանդեցին ձեզ. և նախ առաջին քան զամենայն զառ ի տէր Յիսուս Քրիստոս զբարեպաշտութեան հաւատոն զոր ի գրոց ուսայք ամենեքին, զոր և ես բազում անգամ յիշեցուցանէի ձեզ։

Եւ եղբարքն բռնադատէին զնա լինել անդ մինչև կատարեսցի։ իսկ նա ոչ կալաւ յանձին վասն բազում ինչ իրաց, իբրև զի ինքն լուռ կայր և ցուցանէր յինքեան, և մանաւանդ վասն այսորիկ զի եգիպտացիք զմարմինս հանգուցելոց և զփոյթ վաստակաւորաց և մանաւանդ զսուրբ մարտիրոսաց սիրեն պատել պինդ կտաւովք և դնել. այլ ոչ եթէ ընդ հողով ծածկեն, այլ ի վերայ մահճաց դնել և պահել ի ներքս առ ինքեանս, քանզի կարծեն այսու պատուել զհրաժարեալս իւրեանց ի կենաց աշխարհիս։ իսկ Անտոնիոս բազում անգամ վասն այսորիկ և զեպիսկոպոսն աղաչէր պատուիրել ժողովրդոցն, և զաշխարհականսն յամօթ առնէր և կանանցն սաստէր և ասէր. ոչ օրինաւորական և ոչ բնաւ սրբութիւն է այս. քանզի յառաջ հարցն և նահապետացն և մարգարէիցն մինչև ցայժմ ողջ պահին շիրիմք նոցա, և նորին իսկ տեառն մարմինն ի շիրիմ եդաւ և քար ի վերայ կափուցեալ ծածկեաց զնա մինչև յարեաւ յետ երից աւուրց։ Եւ զայս ասելով յայտ առնէր անօրինել որոյ մարմինք յետ վախճանելոյն ոչ ծածկեցան, թէպէտ և սուրբ իցէ. քանզի զի՞նչ է մեծ և սրբագոյն քան զտէրունական մարմինն։

Եւ բազումք իբրեւ լսէին զայս, այնուհետեւ ծածկէին ընդ հողով և գոհանային զտեառնէ բարիոք ուսեալք։ Իսկ նա վասն զի զայս գիտէր, երկնչէր թէ մի՛ գուցէ զնորա մարմինն արասցեն այնպէս, և փութացուցանէր զինքն հրաժարել ի միայնակեցացն որ յարտաքնում լերինն էին։

Եւ իբրեւ եկն ի ներքին լեառնն յորում սովորն էր լինել, յետ սակաւ ամսոց հիւանդացաւ և կոչեաց զնոսա որք ընդ իւրն էին. և էին երկուք որք եղեն ընդ նմա ի ներքս ամս հնգետասան՝ վարուքն կրօնաւոր և սպաս տանել նմա վասն ծերութեան։ Ասէր ցնոսա. ես որպէս և գրեալն է՝ զճանապարհս հարցն երթամ, քանզի տեսանեմ զիս կոչեցեալ ի տեառնէ։ Եւ դուք արթուն կացէք այսուհետեւ և զբազմամեայ կրօնս ձեր մի՛ կորուսանէք, այլ իբրեւ թէ արդ սկիզբն արարեալ փութացարուք պահել զյօժարութիւնդ ձեր. քանզի գիտէք իսկ զխաբեբայ Վնասակար դեւսն, գիտէք զիարդ վայրենիք են և տկար զօրութեամբ. և արդ մի՛ երկնչիք ի նոցանէ, այլ ի Քրիստոսէ միշտ. և մի՛ հնանայք և հաւատայք այս տուրեւառիկ չնչոյս, այլ իբրեւ թէ հանապազ մեռանիմք՝ կացէք միտ դնելով անձանց և յիշելով զխրատն զոր լուայք յինէն։ Մի՛ ինչ լիցի միաբանութիւն ձեր առ հերձուածողսն և մի՛ բնաւ ամենեւին առ կամակոր ինքնակամ արիանոսսն, քանզի գիտէք զիարդ և ես փախչէի ի նոցանէ վասն քրիստոսամարտութեան նոցա և օտարափառ բարուցն։ Այլ փութացարուք և դուք առաւել միաբանել զձեզ նախ առաջին ընդ տեառն և ապա ընդ սուրբս նորա, զի յետ մահուանն ի յաւիտենական բնակութիւնսն իբրեւ զսիրելիս և զծանօթս ընկալցի զձեզ. և դուք զայս ընդ միտ ածէք և զայն խորհեցարուք։ Եւ զի եթէ փոյթ ինչ իցէ ձեզ վասն իմ և յիշեցէք զիս իբրեւ զհայր, մի՛ ումեք թոյլ տայք առնուլ զմարմին իմ յեգիպտոս, զի մի՛

գուցէ ի տունս տարցին դիցեն զիս, քանզի վասն այսորիկ եկի մտի ի լեառնս յայս. և գիտէք զհարգ յամօթ առնէի զայնս որ զայնպիսիսն առնէին և պատուիրէի դադարել յայնպիսի սովորութենէ։ Արդ, թաղեցէք զձերս դուք և մի՛ տայք եգիպտացւոցն, և ծածկեցէք ընդ հողով. և եղիցի բանս իմ պահեալ ի ձեզ, զի մի՛ ոք գիտասցէ զտեղին՝ բայց միայն ի ձէնջ. քանզի ես ի յարութեան մեռելոց ընկալայց զսա անապական ի Փրկչէն։ Եւ բաժանեցէք զիմ հանդերձս, և տուք զմի մաշկեակս և զոր ի ներքոյ արկանէի անկողին՝ Աթանասի եպիսկոպոսի, զոր անկողին նա նոր ետ ինձ և յինէն եղեւ հնացեալ. և Սերապիոնի եպիսկոպոսի տուք զմիւս եւս մաշկեակն, և դուք կալջիք առ ձեզ զայծեղէն զգեստն. և այսուհետեւ ողջ մնացէք, որդեակք, քանզի Անտոն փոխելոց է աստի և այլ ոչ եւս է ընդ ձեզ բնակելոց։

Զայս իբրեւ ասաց, և նոքա համբուրէին զնա, համբարձ զաչս իւր և ետես զսիրելիսն իւր որք եկին զնմանէ, և վասն այսորիկ լի ուրախութեամբ լինէր. քանզի երեւէր անկեալ դնելովն զի զուարթ երեսօք նուազեցան ոտքն և յաւելաւ առ հարս իւր։ Եւ նոքա այնուհետեւ որպէս ետ նոցա պատուէր՝ թաղեցին զնա, և պատեալ զմարմին նորա ծածկեցին ընդ հողով. և ոչ ոք գիտէ զտեղին ուր ծածկեցին զնա մինչեւ ցայժմ, բայց միայն ի նոցանէ յերկուցն։ Եւ որք առին իւրաքանչիւր ոք զերանելոյն Անտոնի զմաշկեակն և զմաշկ հանդերձն իբրեւ զմեծ ինչ պահէին. քանզի տեսանելով զայն՝ իբրեւ զԱնտոն տեսանէին, և արկանելովն զիւրեամբք՝ իբրեւ թէ զնորա խրատ մխիթարութեան բարձեալ էր յանձին՝ խնդութեամբ հանդերձ ունէին։

Այս է մարմնոյն կենաց վախճան երանելոյն Անտոնի, և այս կրօնիցն և վարուցն սկիզբն. և ե-

թէ փոքր է այս առ նորա առաքինութեամբն, այլ յայսմանէ համարեսջարուք և դուք եթէ որպիսի ինչ ոք էր այրն Աստուծոյ Անտոնիոս ի մանկութենէ մինչև յայս չափ հասակի՝ հարթ պահեալ զյօժարութիւն կրօնիցն։ Եւ ոչ վասն ծերութեան պարտեցաւ երբէք ի բազում կրօնիցն և ոչ վասն տկարութեան մարմնոյն փոխեաց զձև հանդերձին և ոչ ջրով զոտս լուացաւ, և սակայն յամենայնի կայր մնաց անվնաս. քանզի և աչքն էին առողջ և տեսանէր գեղեցիկ, և յատամանց անտի նորա և ոչ մի ոչ թափեցաւ, բայց միայն ընդ լնդօքն մաշեալ եղև վասն բազմակեցութեան հասակի ծերունւոյն. և ոտիւքն և ձեռօքն ամբողջ մնացեալ անցուցանէր զաւուրս իւր, և ամենայն իւիք քան զամենայն ոք որք ազգի ազգի կերակրօք և լուացիւք և պայծառ հանդերձիւք զարդարեալ էին՝ նա առաւել պայծառագոյն երևէր, և առ զօրութիւնն յօժարագոյն։ Եւ ամենայն ուրեք հռչակեալ լինէր և զարմանալի ամենեցունց և ցանկալի յայնցանէ որոց ոչ էր տեսեալ զառաքինութիւն և զաստուածասէր ոգւոյ նորա յայտնութիւնս։ Քանզի ոչ եթէ վասն գիտութեան դպրութեան և ոչ վասն արտաքին ինչ իմաստութեան և ոչ վասն արուեստի իրիք, այլ միայն վասն աստուածպաշտութեան եղև Անտոնիոս ամենեցուն ծանօթ և սիրելի։ Եւ այս յԱստուծոյ պարգևք եղեն նմա զոր ոչ ոք ուրասցի. քանզի ուստի՞ ի Սպանիա և ի Գաղղիա և զիա՞րդ ի Հռոմ և յԱփրիկէ՝ որ ի լերինն թաղուցեալ նստէր՝ լսելի եղև, եթէ ոչ Աստուած էր որ ամենայն ուրեք գիտակ առնէ զիւր մարդն, որ և Անտոնի ի սկզբանն զայս խոստացաւ։ Զի թէպէտ և նոքա ի ծածուկ գործեցին և ոչ արարին ազդ մարդկան, այլ տէր զնոսա իբրև ճրագ վառեալ ամենեցուն յայտնի առնէր. զի և զայս որք լսենն՝ գիտասցեն եթէ կարող են պատուիրանքն Տեառն յաջողել, և նա-

խանձ առաքինութեան ճանապարհին ընկալցին։

Արդ զայս և այլոց եղբարց ընթերցարուք, զի ուսցին եթէ տէրն մեր և փրկիչն Յիսուս Քրիստոս զփառաւորիչս իւր փառաւորէ, և որք ծառայեն Նմա մինչև ի վախճան՝ ոչ միայն յարքայութիւնն երկնից տանի, այլ և աստ որք թագուցեալ և փոյթ յանձին կալեալ են մեկնելով առանձնանալ՝ յայտնի հռչակեալ և հոյակապս վասն իւրեանց առաքինութեան և վասն այլոց օգտի առնէ ամենայն ուրեք։ Եւ թէ պէտք ինչ լինիցին, և հեթանոսաց առաջի ընթերցանիջիք, զի գոնեայ այսպէս գիտասցեն զտէր մեր Յիսուս Քրիստոս ոչ միայն Աստուած է և Որդի Աստուծոյ, այլ զի և որ Նմա միտադիւրութեամբ և ընտանութեամբ պաշտօն տանին և հաւատան ի Նա բարեպաշտութեամբ, զդևսն զոր նոքա հեթանոսքն կարծեն թէ աստուածք են՝ զսոսա քրիստոնեայք յանդիմանեն ոչ միայն զի չեն աստուածք, այլ և կոխեն եւս և հալածեն իբրև զմոլարս և զապականիչս, որպէս և երանելի հայրս մեր Անտոնիոս արար ի փառս Աստուծոյ և Քրիստոսի Նորա և սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից։



# ԼԱ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ ԴԱՒԹԻ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ

### ԱՐԱՐԵԱԼ

### ԱԹԱՆԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ ԱՂԷԿՍԱՆԴՐԱՑԻՈՅ

*Զամենայն երգոց Սաղմոսարանացն Դաւթի ըղներունական միտսն իւր գտեալ և յայտնի կացուցեալ. փոյթ յօժարութեան եդեալ ի մտի իմում, ամենայն գրոց սրբոց մեկնութեանց հասանել. նաև առաւել՝ և բազում աշխատութեամբ փութացայ վասն իմանալոյ զմիտս Սաղմոսարանացն, և որ ինչ ի նոսա օգտակար բժշկարանք իցեն ոգւոց մերոց:*

*Արդարև մեծ ցանկութեամբ ի գիրս Սաղմոսարանացն Դաւթի քան յամենայն գրեանսն, նաև առաւել աշխատութիւն կրեցի: Եւ պատահեալ հոգևոր միայնակեցի միում ծերոյ, և որպէս նա ինձ տեղեկայոյց զմիոյ միոյ զմիտս Սաղմոսին, որպէս և իւր քննեալ էր և հասեալ:*

*Կամիմ և ես աստուածսիրութեանդ ձերում պատմել զամենայն, զի եղիցի ձեզ ի չահ օգտութեան, կամ ինձ ի վարձ հատուցման: Քանզի բազում վայելչութիւնք և օգուտ կան ի պատմութիւնս օրհնելոյ ծերոյն. վասն զի ասէր այսպէս. Ամենայն գիրք աստուածայինք, ո՛ որդեակ՝ որ շնորհեցան մեզ ի Հոգւոյն սրբոյ, հին և նոր կըտակարանք, ի Միածին Բանէն Աստուծոյ տուացեալ են՝ ի չահ օգտի ուսանդութեան վարդապետութեան*

ոգւոց մերոց։ Քանզի միտք իւրաքանչիւր գրոց՝ պատմեն միայն զիւրաքանչիւր դիմացն, առաջի արկեալ զիւր ուղղութիւնն, որպէս հինգ գըլուխք Արարածոցն։ Մին գլուխն՝ զառնելն արարածոց ի զհայրապետացն զվարս և զգործս։ Երկու գլուխն՝ զելն յԵգիպտոսէ և զտասն զպատուիրանացն զտըւչութիւնն, և զխորանին, և զքահանայից զպատմուճանէ։ Երեքն՝ զՂեւտացւոց, և զպատարագացն։ Չորսն՝ զԹիւ որդւոցն Իսրայելի։ Հինգն՝ զամենայն զօրինացն զերկրորդումնն։ Երեք գլուխք Յեսուայն, մինն՝ զվիճակ ժառանգութեանն բաժանման երկրին։ Երկրորդն՝ զդատաւորացն զգործսն։ Երրորդն՝ զՀռութայ, վասն Դաւթեայ ազգահամարութեանն։ Եւ Գիրք Թագաւորութեանն ։ և Մնացորդք՝ զԹագաւորաց ըզգործս և զպատերազմունսն։ Եւ գիրքն Եզրայ թէ որպէս Կիւրոս թագաւորն պարսից յուղարկեաց զորդիսն Իսրայելի. և Ելք ժողովրդեանն ի Բաբելոնէ, և շինուած քաղաքին Երուսաղէմի. և տըւչութիւն հին կտակարանացն և լրումն ամենայն տօնից տարեկանաց Նոցա։ Եւ Գիրքն մարգարէականաց՝ զգալուստ փրկչին ամենայնի. և խրատութիւնն ողորմութեանց, և սպառնալիք՝ որք անցանեն զօրինօքն Աստուծոյ, և մարգարէութիւն՝ վասն հաւատոցն հեթանոսաց։ Իսկ Գիրք Սաղմոսարանայն՝ իբրև զդդրախտ ամենալից՝ տնկեալ պէսպէս և գեղեցիկ ծառօք, բերեալ մատուցանէ զքաղցրանուագս օրհնութեան իւրոյ. և ըստ իւր գրոյ՝ պար առեալ և երգեալ Նուագէ, և զդէմս ամենայն կտակարանացն՝ յինքեան բարձեալ բերէ։ Զարարչութիւն արարածոց երգեալ՝ Նուագէ ի ԺԸ Սաղմոսին իւրում՝ ասելովն թէ՝

Երկինք պատմեն զփառս Աստուծոյ, և հաստատութիւնն զարարածս ձեռաց Նորա։

Ամենայն աչաց ցուցանէ, և մտաց յայտնի պատմէ։ Եւ ի ԽԳ Սաղմոսին ասէ զարարածոց այսպէս.

· Տեառն է երկիր լրիւ իւրով. տիեզերք՝ և ամենայն որ բնակեալ են ի նմա։
Վասն զի ի վերայ ծովու հիմնեցոյց զաշխարհս։
Եւ զԵլլիցն, և զայլ ամենայն՝ զՂեւտացւոցն, և զԹուոցն, և զԵրկրորդ օրինացն, զքանչելագործ երգս առեալ՝ և ասէ ի ՁԷ Սաղմոսին.
Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ կարդա։
Եւ ի ՃԺԹ Սաղմոսին մեծաձայն գոչէ և ասէ.
Յելանելն իսրայէլի յեգիպտոսէ. և այլն, մի ըստ միոջէ.
Սաղմոսէ և ի ՃԴ Նուագին ասելով թէ՝
Առաքեաց զՄովսէս ծառայ իւր և զԱհարոն՝ զոր ընտրեաց իւրն։ Եդ ի նոսա զբանս նշանաց իւրոց, և զքանչելագործութիւնս իւր Քամայ։ Առաքեաց խաւար և խաւարեցոյց զնոսա. և դարձոյց զջուրս նոցա յարիւն. և այլ մի ըստ միոջէ՝ որ ած զհարուածսն յելանելն իսրայէլի յեգիպտոսէ և ամենեւին բովանդակ սաղմոսս այս։
Եւ ՃԵ, Խոստովան եղերուք Տեառն զի քաղցր է։ Ո՛ խօսեսցի։ ի սոսա, վասն այս իրաց գտանես գրեալ։
Եւ վասն քահանայից, և խորանին, և պատարագացն, ի ԻԸ Սաղմոսին՝ մեծաբարբառ գոչէ երգելով և ասէ.
Մատուցէ՛ք Տեառն՝ որդիք Աստուծոյ, մատուցէ՛ք Տեառն՝ զորդիս խոյոց. և այլն՝ մի ըստ միոջէ, մանր նուագելով զամենայն գործսն և զզօրութիւնսն, քաղցր ձայնիւ նուագէ։
Եւ վասն Յեսուայ Նաւեայ և Դատաւորացն, ի ՃԶ Սաղմոսին երգս առեալ նուագէ և ասէ.
Շինեցին քաղաքս բնակութեան իւրեանց. և սերմանեցին անդաստանս, և տնկեցին այգիս. զի յաւուրսն Յեսուայ տուաւ նոցա երկիրն պարգեւաց։
Եւ վասն Դատաւորացն ասէ այսպէս՝ ի սմին Սաղմոսի.
Աղաղակեցին առ Տէր ի նեղութեան իւրեանց, և ի վըշտաց նոցա փրկեաց զնոսա։

Յուցանէ և զայս ի գիրս Դատաւորացն, ասէ. «Յորժամ աղաչէին և աղաղակէին առ Տէր ժողովուրդն, յարուցանէր նոցա դատաւորս, և փրկէր զիսրայէլ ի ձեռաց նեղչաց նոցա»։

Եւ վասն գրոց Թագաւորութեանցն՝ մեծաձայն գոհանալով նուագէ և ասէ ի ԺԹ Սաղմոսին.

**Սոքա կառօք և սոքա երիվարօք. իսկ մեք յանուն Տեառն Աստուծոյ մերոյ մեծք եղիցուք։ Նոքա խափանեցան և անկան, մեք յարեաք և ուղիղք եղաք։ Տէր կեցո՛յ զթագաւորն և լուր մեզ, յաւուր յորում կարդասցուք առ քեզ։**

Եւ վասն գրոցն Եզրի՝ ի ՃԻԵ Սաղմոսին ասացեալ է, որ են օրհնութիւնք աստիճանաց. գեղեցկախառն մանր նուագէ և ասէ.

**Ի դարձուցանել Տեառն զգերութիւն ժողովրդեան իւրոյ, և եղաք մեք իբրեւ մխիթարեալք։**

Եւ դարձեալ ի ՃԻԱ Սաղմոսին ասէ այսպէս.

**Ուրախ եղէ ես ոյք ասէին ցիս՝ ի տուն Տեառն երթիցուք մեք. և որ զկնի։**

Իսկ վասն գրոց մարգարէիցն՝ յամենայն երգս իւր նշանակեալ նուագէ վասն փրկչին մերոյ և Տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեանն։ Եւ վասն զի Աստուած էր՝ որ յայտնապէս եկն՝ այսպիսի գոհութեամբք այսպէս փառաւորէ յերգելն իւրում և ասէ ի ԽԹ Սաղմոսին.

**Աստուած յայտնապէս եկեսցէ, Աստուած մեր, և մի ժամկեալ լռեսցէ։**

Եւ ի ՃԺԷ Սաղմոսին ցնծութեամբ երգելով ասէ՝ այսպէս.

**Օրհնեալ ես որ գալոց ես անուամբ Տեառն, օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն։**

Եւ վասն զի ասէր Միածինն ինքն Հօր Բանն, այսպէս նուագէ ի ՃԶ Սաղմոսին.

**Առաքեաց զբանն իւր, և փրկեաց զնոսա ի ձեռաց ապականչաց իւրեանց։**

Եւ քանզի որ գալոցն էր՝ ինքն Աստուած էր,

և Բանն Հօր առաքեալ, զայս բան՝ հոգեկիր մարգարէին մտաւոր աչօք տեսեալ, զէն զՈրդին Աստուծոյ, երգս առեալ, որպէս թէ ձայնիւ Հօր ասէր ի ԽԴ Սաղմոսին.

Բղխեսցէ սիրտ իմ զբան բարի։

Եւ դարձեալ ի ՃԹ Սաղմոսին ասէ.

Յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Եւ ո՞վ այլ ոք իցէ սա՛ ինձ, ծնունդ Աստուծոյ, եթէ ոչ Բանն Աստուծոյ և իմաստութիւնն և զօրութիւնն՝ Միածին Որդին Աստուծոյ։ Սա՛ է Բանն Հօր՝ յասելն՝ թէ Եղիցի լոյս և հաստատութիւն, և ամենայնքն։ Եւ այս գիրք երգոց են, որ ժողովեալ յինքեան Նուագէ ասելով, թէ՝

Բանիւ Տեառն երկինք հաստատեցան. և հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա։

Եւ զգալուստ Քրիստոսի՝ ո՛չ անիմաց եղեալ, այլ եւս քաջագոյն գիտութեամբ, Հոգւոյն շնորհօք գոչէ և ասէ ի ԽԴ Սաղմոսին.

Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան գաւազան արքայութեան քո։

Սիրեցեր զարդարութիւն և ատեցեր զանօրէնութիւն։ վասն այսորիկ՝ օծ զքեզ Աստուած, Աստուած քո. և այլն։

Եւ զի մի՛ առ աչօք համարիցին և լոկ երեւելով՝ ըստ Նմանութեան մարդոյ՝ որ գալոցն լիցէ, Նշանակէ և զայս, եթէ ճշմարիտ մարդ է ծնանելոց. և զայն, եթէ սա՛ է՝ որով ամենայն ինչ եղեւ. և զմարդկութիւն Նորա և զաստուածութիւնն ասելով ի ՁԶ Սաղմոսին.

Մայր սիովնի ասի մարդ է, և մարդ ծնաւ ի նմանէ։

Ասէ և զաստուածութեանն այսպէս,

Եւ ինքն հիմունս արկ ի նմա Բարձրեալն։

Այս ինչ է զոր ասէն, եթէ Աստուած է Բանն, և ամենայն ինչ Նովաւ եղեւ, և Բանն մարմին եղեւ. վասն այսորիկ՝ և յաստուածայինն կուսէ ծանուցեալ զծնունդն՝ ոչ լռեաց, այլ վաղվաղակի յայտնապէս գոչելով Նուագէ խրատութիւնս, և ասէ.

Լուր դուստր՝ և տե՛ս, և խոնարհեցո՛ զունկն քո, և մոռա՛ զժողովուրդ քո և զտուն Հօր քոյ, զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ. որ սա ինքն է Տէր։

Եւ այս Նմանն է՝ զոր ասէն Գաբրիէլ. «Ողջո՛յն ընդ քեզ Մարիամ՝ օրհնեա՛լդ ի կանայս, Տէր ընդ քեզ»։ Եւ ասելովն Դաւթի՝ թէ սա է Տէր քո, վաղվաղակի և զմարդկութեանն ծնունդն ի կուսէն յայտնէ ասելովն՝ Լուր դուստր։ Գաբրիէլ կոչէ զնա յանուանէ Մարիամ. վասն զի՝ օտարի Նմաններ ըստ բնութեան ծննդեանն։ իսկ Դաւիթ ըստ հայրապետութեանն, և վասն զի՝ յազգէ իւրմէ էր կոյսն, դուստր կոչէ զնա։ Եւ վասն զի բնութիւն մարդկութեանս էր՝ որ ծնանելոց էր, վասն այսորիկ՝ և չարչարեալ մարմնով զնա Նշանակէ, և զխորհուրդ խորամանկութեանն՝ զոր Հրէայքն և իշխանք նոցա խորհեցան, և մատնեցին և չարչարեցին, տեսեալ մարդարէական ակամբն՝ զառ յապա լինելոցն մեղադրելով սաղմոսէ, և ասէ յերկրորդ Սաղմոսին.

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք և ժողովուրդք խորհեցան ի սնոտիս։ Եւ միաբանեցան թագաւորք երկրի, և իշխանք ժողովեցան ի միասին վասն Տեառն և վասն օծելոյ նորա։

Եւ ի ԻԱ Սաղմոսին՝ թէ ո՛րպէս մեռանելոց է. որպէս և բանիւ փրկչին ասէ այսպէս. եթէ Եւ ի հող մահու իջուցին զիս. և այլն։

Իսկ ծակել զձեռս և զոտս՝ ոչ այլ ինչ նշանակէ, այլ զբեւեռել խաչելութեանն. և զայս ամենայն ուսեալ՝ վարդապետէ մեզ. եթէ ոչ վասն իւր ինչ, այլ վասն մերոյ փրկութեան կրեաց ըզչարչարանսն՝ Տէրն փառաց. և ասէր այսպէս, որպէս յերեսաց նորա ի ՁԷ Սաղմոսին.

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո։

Եւ ի ԿԸ Սաղմոսին ասէ.

Ինձ՝ զոր ո՛չ յափշտակեալ էր, յայնժամ տուժէի նոցա. քանզի՝ ո՛չ կայր ի վերայ նորա մնաս մահու՝ որով

պարտաւորեալ մեռանէր, այլ վասն մեր չարչարեցաւ, և զմեր զցաւումն պատուհասի պատուիրանազանցութեանն՝ յինքն եբարձ։ Այժմ վկայեալ և Եսայիաս, թէ «Նա զհիւանդութիւնս մեր եբարձ»։ Զոր առացեալ է ի ՃԼԷ Սաղմոսին՝ եթէ,

Տէր հատուցանէ ընդ իմ։

Ասացեալ է և Հոգւոյն սրբոյ ի ՀԱ Սաղմոսին, թէ՝

Կեցուսցէ զորդիս տնանկաց, և խոնարհեցուսցէ զամբաստանս։ Զի փրկեաց զաղքատն ի հզօրէ, զաղքատն և զտնանկն՝ որոյ ո՛չ է իւր օգնական։

Եւ զհետ այսր ամենայնի, ի յերկինս զմարմնեղէն վերանալն նորա յառաջաձայնէ՝ ասելովն ի ԻԳ Սաղմոսին, եթէ՝

Բացէք իշխանք զդրունս ձեր ի վեր. բացցին դրունք յաւիտենից, և մտցէ թագաւոր փառաց։

Եւ ի ԽԶ Սաղմոսին՝ մեծաձայն գոչէ հնչմամբ, և փառաբանեալ աղէներգործութիւնս հնչողական քաղցր ձայնիւ՝ մանր նուագեալ եղանակէ և ասէ.

Համբարձաւ Աստուած օրհնութեամբ, գոչմամբ Տէր ձայնիւ փողոյ։

Եւ զնստելն ընդ աջմէ Հօրն յաթոռն փառաց՝ պատմէ մեզ, և ասէ ի ՃԹ Սաղմոսին.

Ասաց Տէր ցտէր իմ, նի՛ստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ընդ ոտիւք քովք։

Եւ ի յինն Սաղմոսին՝ ցուցանէ զարդար դատաւորութիւնն, և զմիւսանգամ գալուստն միածնին Աստուծոյ, և զկորուստն սատանայի. ասելովն՝ եթէ,

Նստար յաթոռ դատաւոր արդարութեան։ Սաստեցեր ի հեթանոսս, և կորեաւ ամպարիշտն։

Եւ վասն զի՝ զդատաւորութիւնն էառ ի Հօրէ իւրմէ դատել զամենայն ազգս, և ո՛չ զայն թագուցանէ. այլ դատաւոր զնա ամենայնի յայտնապէս եկեալ՝ ի ՀԱ Սաղմոսին ասելով. Աստուած՝ զիրաւունս քո արքայի՛ տուր. և ի ԽԹ Սաղմոսին ասէ. Կոչեսցէ զերկինս ի վերուստ՝ և զերկիր դատել. և այլն։ Եւ ի ՁԱ Սաղմոսին ասէ.

Աստուած եկաց ի ժողովս աստուծոց, և այլն։
Դարձեալ՝ և զկոչումն հեթանոսաց ի բազում տեղիս նշանակեալ՝ ուսուցանէ մեզ, մանաւանդ ի ԽԶ Սաղմոսին ասելովն.

Ծափս հարէք ամենայն հեթանոսք.

Եւ ի ՀԱ Սաղմոսին ասէ.

Առաջի նորա նախ հնդիկք անկցին։

Եւ զայս ամենայն՝ վասն Քրիստոսի՝ միածնի Որդւոյն Աստուծոյ՝ ի գիրս Սաղմոսարանացն երգէ Դաւիթ։ Զորս և յիւրաքանչիւր գրոց՝ նման սմին ասացեալ է վասն փրկչին մերոյ։ Այլ և զայլ օրինակ զգրոցն՝ զոր երբեմն մարգարէանան և երբեմն պատմութիւնս առնեն. երբեմն մարգարէանալով ասեն «Լուացարուք սրբեցարուք», և դարձեալ՝ եթէ «Լուա՛ ի չարեաց քոց զսիրտ քո՛ Երուսաղէմ»։ Եւ երբեմն պատմութիւնս առնէ Դանիէլ՝ վասն Շուշանայ. և Եսայի՝ վասն Ռափսակայ և Սենեքերիմայ։ Ըստ նմին օրինակի, և գիրք Սաղմոսացն՝ ունին զպէսպէս միտս զամենայն գրոց յինքեանս. և զայս լայնաձայն քաղցրանուագս սաղմոսէ յերգելն իւրում. օրինադրեալ հրաման տայ ի ԼԶ Սաղմոսին և ասէ.

Լռեա՛ ի բարկութենէ և հանգիր ի սրտմտութենէ։

Եւ պատմութիւնս առնէ զելսն իսրայէլի յԵգիպտոսէ. և մարգարէանայ վասն փրկչին մերոյ՝ որպէս յառաջոգոյն ասացի, և զամենայն ինչ ակնարկէ հոգւոյն շնորհաց։ Եւ որպէս կամէր Հոգին սուրբ, յիւրաքանչիւր ի մարգարէսն ասաց, և յայտնեաց. այսպէս և գիրք Սաղմոսարանացն, զի իւրաքանչիւր ընդ գրեանն ունին զմիաբանութիւն։ Այլ և այլ և սքանչելիք, որ զիւրն միայն յինքեան առանձինն՝ ուրոյն զարմանազանութիւնս ունի։ Վասն զի զիւրաքանչիւր ոգւոցն շարժմունս՝ յինքեան նշանակէ և զխորհրդոցն յուզմունս և զուղղութիւնս գրեալ յինքեան ցուցանէ։ Եւ որպէս ի պատկերի՝ ի Սաղմոսարանս տեսեալ զինքն

իմանայ. և ոչ եթէ իբրև զայլոյ՝ այլ որպէս յինքենէ մարդն՝ զիւր խօսսն պատմէ և երգէ։ Իսկ յայլ գրեանն, իբրև զայլոյ զխօսս և զբանս անցանէ։ Իսկ ի Սաղմոսսն՝ որպէս զիւր բանս և զաղօթս և զխնդրուածս մատուցանէ, և որպէս ի հայելւոջ ի Սաղմոսարանսն, այնպէս տեսեալ զիւր միտսն՝ հանդերձ աղօթիւք սրբէ և ընտրէ. և ոչ որպէս ի յարարածս զայլոյ խօսս պատմէ. եթէ Աստուած խօսէր ըստ Մովսեսի, և Մովսէս տայր պատասխանի։ Եւ դարձեալ թէ՝ «Խօսեցաւ Տէր Աստուած ընդ Աբրահամու»։ Իսկ ի Սաղմոսարանսըն, որպէս թէ ինքն մարդն՝ զիւր բանն խօսի ընդ Աստուծոյ, և Աստուած ընդ մարդոյն. և այնպէս, որպէս իւրով բանիւ՝ երգս առեալ սաղմոսէ և ասէ ի Ժ Սաղմոսին.

Ի տէր յուսացայ. և դարձեալ՝ ի ԺԶ Սաղմոսին ասէ. Լո՛ւր Տէր արդարութեան, և նայեա՛ ի խնդրուած իմ։

Եւ ի յԾ Սաղմոսին, որպէս թէ՝ վասն իւր ինչ մեղաց և ապաշխարութեան, զամենայն սաղմոսս պատմէ և ասէ. Ողորմեա ինձ Աստուած ըստ մեծի։ Եւ յամենայն ի սաղմոսսն նոյնպէս՝ թէ ինքն այժմ զսաղմոսս վասն իւրոց իրացն մարդն երգեալ նուագէ։ Եւ որպէս յինքեան բանիւ մարդն զՍաղմոս յորժամ ասէ ի ԾԳ Սաղմոսն. Աստուած յանուան քում կեցո. և ի ԾԴ Սաղմոսն.

Ունկնդիր Աստուած աղօթից իմոց. և ի ԾԵ. Ողորմեա ինձ Աստուած՝ զի կոխեաց զիս.
և ի ԾԶ. Ողորմեա ինձ Աստուած՝ ողորմեա ինձ, զի ի քեզ յուսացաւ. և ի ՃԽԱ. Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի։ Սփռեցից առաջի։

Զայս ամենայն յորժամ սաղմոսիցէ ոք, ոչ եթէ այլ ոք հալածիցի և չարչարիցի, և կամ գոհանայցէ և աղաչիցէ և օրհնիցէ. այլ ինքն որպէս թէ իւրով բանիւ երգս առեալ նուագէ, և փառաբանէ զԱստուած որպէս զիւր բանս. և Հոգւոյն սրբոյ հոգէխառն եղեալ՝ ինքն կայ և մարգարէանայ։ Եւ

այսպէս բովանդակ յամենայն ի սաղմոսն՝ արժան է մեզ ուշ դնել և շարժել զոգիս մեր, և մտօք աչօք աղօթել միշտ. և այսպէս համարիմք եթէ մեք իցեմք որ խօսիցիմք ընդ Աստուծոյ, ի յիշատակարան մերոյ ուղղութեանց գործոց և գընացից: Այսպէս ասէր ծերն երանելի, եթէ առաք զաւանդութիւնս զայս ի հարցն, բանիւք և մըտաւորութեամբ որպէս և զմեր ասել: Եւ շնորհեցաւ եւս դարձեալ մեզ՝ ի Փրկչէն, զնա և զգործս նորա՝ որպէս զպատկեր առաջի աչաց ունել օրինակաւ, և գնալ ըստ նմանութեան նորա: Քանզի և մարդ իսկ վասն մեր եղեւ, և զմարմինն իւր ի փրկութիւն մեղաց մերոց՝ ի մահ մատնեաց, զի զամենեսեան զերծուսցէ ի մահուանէ. և զերկնայինն և զառաքինութեան զգնացս և զգործս եցոյց ի յինքեան. զի մի՛ եւս լիցի դիւրագոյն խաբել ի թշնամւոյն: վասն զի առաք մեք զաւանդութիւն առհաւատչեայ ի զգուշաւորութիւն. զամենայն ինչ զոր ինքն գործեաց վասն մեր ի պարտաւորութիւն և յաղթութիւն սատանայի: վասն այնորիկ՝ ոչ միայն վարդապետեաց, այլ և և ինքն արար՝ զոր ուսոյց մեզ. զի իւրաքանչիւր՝ լուիցուք զասելն նորա, և որպէս զպատկեր աչօք տեսցուք., և առցուք օրինակ անձանց մերոց՝ առնել ըստ գործոց նորա: Լուիցո՛ւք զոր ասեն, ասէ ինքն. «Ուսարո՛ւք յինէն՝ զի հեզ եմ և խոնարհ սրտիւ»: Կատարեալս արար զմեզ, և յառաքինութեան վարդապետութիւնս ած զմեզ. քանզի յամենայն ինչ գտանելի է զՏեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զգնացս բարութեան:

Եթէ կամիցիս տեսանել և ուսանել զմարդասիրութիւն, եթէ զաննախանձութիւն, եթէ զառատութիւն, եթէ զքաջութիւն, եթէ զողորմածութիւն, եթէ զարդարութիւն, զամենայն ինչ ոք գտանէ ի նմա կատարեալ. որպէս թէ՝ ոչ ինչ նուազիցէ յամենայն ի բարութեանց, զոր Տէրն

ի մարդկեղէն բնութեանն իւրում՝ կատարեաց։ Զայս տեսեալ Պաւղոսի ասէր. «Նմանողք ինձ եղերուք, որպէս և ես Քրիստոսի». քանզի և հեթանոսաց և յունաց օրէնսդրութիւնք՝ լոկ ի բանսն են շնորհքն, այլ արդիւնք ինչ ի նոսա ոչ երեւին։ իսկ Տէրն մեր Յիսուս Քրիստոս՝ քանզի արդարեւ իսկ Տէր է ճշմարիտ ամենայնիւ, և զամենայն ինչ սքանչելախառն արդեամբք և գործովք եցոյց. ոչ միայն բանիւք օրէնսդրէ, այլ և օրինակ՝ գործոց իւրովք առաջի ամենեցուն կատարեաց։ Զի որք կամիցին առնել և զօրութիւնս շնորհաց, նման նմա պարտին լինել գործովք բարեաց. վասն այնորիկ՝ և զգալուստն իւր, ի ձեռն Սաղմոսացն մեզ եցոյց, զի նոքօք զկատարելութիւն և զերկնային զառաքինութիւնսն՝ մարդըն յինքեան ցուցանէ։ Այսպէս է գտանել ի Սաղմոսարանսն՝ զխորհուրդս ուղղութեան և զընթացս մտաւորագոյն. և որ կամին ուշ դնել, դիւրեաւ գտանեն. գտանեն և ի նոսա իւրաքանչիւր Սաղմոսի՝ զդեղս հոգւոյն բժշկութեան. և համառօտիւքն զկշիռն և զարդարն ասասցուք։ Ամենայն Աստուածեղէն գիրք, ի վարդապետութիւն և յուսումն են առաքինութեան գործոց՝ և հաւատոցն և ճշմարտութեան։ իսկ Սաղմոսարանացն, ուսուցանեն իսկ՝ թէ որպէս արժան է ածել զորդիսն յուղղութիւն։ Որպէս ոք՝ կամիցի առ թագաւոր մտանել և երկիր պագանել նմա, և ոք ի տեղեկացն առաջնորդ գտանել նմա, ուսանիցի և զերկըրպագելն և զձեւն և զխօսսն, թէ որպէս արժան իցէ գիտութեամբ ամենայն ըստ կարգի իրացն օրինօք կատարել. և եթէ մի ինչ պակաս առնիցէ, և ոչ ըստ առաջնորդի վարդապետին գնասցէ, որպէս և անխրատ՝ անկեալ լինի ի բաց յերեսաց թագաւորին։ Այսպէս և գիրք Սաղմոսարանացն. որ ոք կամիցի ըստ առաքինութեան վարուցն գնալ, և նմանօղ լինել Փրկչին ըստ մարմ-

նեղէն գնացից նորա, արժան է համբերութեամբ մատչել ի կարդացումն, և յերգս Սաղմոսարանացն խորհրդով և մատչել և շարժել զօդոցն մտաւորութիւնն։ Կարէ և գտանել ի նոսա ըստ ամենայն դիմաց օրինակ ի պատահել Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. քանզի կայ և ի նոսա պատմութիւն, կայ ի նոսա և խրատտութիւնք առակաց, և մարգարէութիւնք և աղօթք և խոստովանութիւնք։

Եւ են պատմութիւնք զրուցատրութեանց.

ԺԸ. Երկինք պատմեն զփառս Աստուծոյ և զա''.
ԽԳ. Աստուած ականջօք մերովք լուաք զոր հարքն.
ԽԸ. Լուարո՛ւք զայս ամենայն ազգք, ունկնդիր.
ԽԹ. Աստուած աստուածոց Տէր խօսեցաւ.
ՀԲ. Իբրեւ զի բարի է Աստուած Իսրայէլի.
ՀԷ. Նայեցարո՛ւք ժողովուրդք յօրէնս.
ՂԸ. Զողորմութիւնս քո Տէր յաւիտեան.
ՃԹ. Ասաց Տէր ցտէր իմ, նի՛ստ.
ՃԺԶ. Օրհնեցէ՛ք զՏէր ամենայն ազինք.
ՃԼԶ. Առ գետս Բաբելացւոց,

Եւ են որք զաղօթսն ուսուցանեն.

ՃԼԱ. Յիշեա՛ Տէր զԴաւիթ.
ՃԽԱ. Ձայնիւ իմով ես առ տէր կարդացի, ձայնիւ իմով զտէր աղաչեցի,
ԾԶ. Ողորմեա՛ ինձ Աստուած՝ ողորմեա՛.
ԿԷ. Յարիցէ Աստուած՝ և ցրուեսցին.
ՂԹ. Տէր՝ ապաւէն եղեր մեզ.
ՃԱ. Տէր՝ լուր աղօթից իմոց աղաղակ իմ.

Եւ որպէս լծէ ի պատահել, և աղօթք և խնդրըւածք.

Ե. Բանից իմոց ունկն դիր Տէր.
Զ. Տէր մի՛ սրտմտութեամբ քով.
Է. Տէր Աստուած իմ ի քեզ յուսացայ.
ԺԱ. Ապրեցո՛ զիս Տէր, զի նուազեաց սուրբ.
ԺԲ. Մինչեւ յե՞րբ տէր մոռանաս.

ԺԷ. Սիրեցից զքեզ Տէր զօրութիւն իմ.
ԻԱ. Աստուած Աստուած իմ նայեա՛ առ իս։
ԻԷ. Առ քեզ տէր կարդացի.
ԼԱ. Երանի ում թողութիւն եղեւ.
ԼԷ. Տէր մի՛ սրտմտութեամբ յանդիմաներ.
ԽԲ. Դատ արա ինձ Աստուած և իրաւ արա.
ԾԳ. Աստուած՝ յանուան քում կեցո զիս և.
ԾԴ. Ունկնդիր Աստուած աղօթից իմոց և.
ԾԵ. Ողորմեա՛ ինձ Աստուած, զի կոխեաց զիս.
ԾԶ. Ողորմեա՛ ինձ Աստուած ողորմեա՛ ինձ զի ի.
ԾԸ. Փրկեա՛ զիս ի թշնամեաց իմոց.
ԾԹ. Աստուած մերժեցեր և աւերեցեր զմեզ.
Կ. Լո՛ւր Աստուած աղօթից իմոց՝ և նայեա՛.
ԿԳ. Լո՛ւր Աստուած աղօթից իմոց, յաղաչել ինձ.
ՁԲ. Աստուած ո՜ քեզ նմանիցէ, մի՛ լռեր և մի՛.
ՁԵ. Խոնարհեցո՛ Տէր զունկն քո.
ՁԷ. Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ.
ՃԼԹ. Ապրեցո՛ զիս տէր ի մարդոյ.
ՃԽ. Տէր կարդացի առ քեզ և.
ՃԽԱ. Ձայնիւ իմով ես առ տէր.
ՃԽԲ. Տէր՝ լո՛ւր աղօթից իմոց. ո՛ւնկնդիր խնդրուածոց իմոց.

*Եւ ի պատահել ինձ և զոհանալ.*

ՃԼԸ. Տէր՝ փորձեցեր զիս և.

*Իսկ լոկ ի պատահմանց.*

Գ. Տէր զի՞ բազում եղեն նեղիչք իմ.
ԻԵ. Դա՛տ արա ինձ Տէր, զի ես յանմեղութեան.
ԿԸ. Կեցո՛ զիս Աստուած զի հասին.
ԿԹ. Աստուած՝ յօգնել ինձ նայեաց.
Հ. Ի քեզ Տէր յուսացայ մի՛ ամաչեցից.
ՀԳ. Ընդէ՞ր մերժեցեր Աստուած իսպառ.
ՀԸ. Աստուած մտին հեթանոսք.
ՀԹ. Ո՛ հովուեսդ Իսրայէլի.
ՃԸ. Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր.
ՃԻԲ. Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ, որ բնա.
ՃԻԵ. Ի դարձուցանել Տէառն.
ՃԼ. Տէր ո՛չ բարձրացաւ սիրտ իմ։

Եւ ի խոստովանել մեղացն.

Ծ. Ողորմեա՛ ինձ Աստուած ըստ մեծ։

Իսկ յորժամ խառն ախտիւք և խոստովանութեամբ և պատմութեամբ իցէ.

Թ. Գոհացայց զքեն տէր.

ՀԴ. Խոստովան եղիցուք առ քեզ Աստուած, խոստ.

ՃԱ. Տէր, լո՛ւր աղօթից իմոց աղաղակ.

ՃԵ. Խոստովան եղերուք Տեառն՝ զի քաղցր է. —
Ասացեն փրկեալք.

ՃԺԷ. Խոստովան եղերուք տեառն, զի բարի է.
Ասացէ՛ տունն Իսրայէլի.

ՃԼԵ. Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է.
Խոստովան եղերուք Աստուծոյն Աստուածոց.
Խոստովան եղերուք Տեառն տերանց.

ՃԼԷ. Խոստովան եղէց քեզ Տէր՝ բոլորով սրտիւ իմով
առաջի հրեշտա։

Իսկ յորժամ ախտացեալ՝ հանդերձ խոստովանութեամբ սակաւ հանդիստ գտեալ.

ՃԺ. Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սրտիւ իմով ի
խորհուրդս ուղղոց։

Եւ խրատութիւն առակախօսութեան.

ԼԶ. Մի՛ նախանձիր ընդ չարս։

Իսկ մարգարէանալով զհանդերձեալսն,

Ի. Տէր ի զօրութեան քում ուրախ։

ԻԱ. Աստուած Աստուած իմ նայեա՛ց.

ԽԴ. Բղխեաց է սիրտ իմ.

ԽԶ. Ծա՛փս հարէք.

ՀԱ. Աստուած՝ զիրաւունս քո։

Եւ մարգարէութիւնք՝ հանդերձ պատմութեամբք.

ՃԹ. Ասաց Տէր ցՏէր իմ։

Եւ հրաման տալ, որպէս թէ՝ յիրս բարութեան դարձուցանել.

ԻԸ. Մատուցէք Տեառն որդիք Աստուծոյ.

ԼԲ. Ցնծացէք արդարք ի Տէր։

Ձ. Ցնծացէ՛ք առ Աստուած օգնականն է.

ՂԴ. Եկա՛յք ցնծասցուք ի Տէր.

ՂԵ. Օրհնեցէ՛ք զՏէր յօրհնութիւն նոր, օրհնեցէք զՏէր ամենայն երկիր։

ՂԶ. Տէր թագաւորեաց ցնծասցէ երկիր.

ՂԷ. Օրհնեցէ՛ք զՏէր յօրհնութիւն նոր զի սքանչելի.

ՃԳ. Օրհնեա անձն իմ զՏէր. Տէր Աստուած իմ մեծ.

ՃԸ. Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր.

ՃԺԴ. Սիրեցի զի լուիցէ Տէր.

Եւ խրատութեանց՝ հանդերձ օրհնութեամբ.

ՃԽԹ. Օրհնեցէ՛ք զՏէր յօրհնութիւն նոր, օրհնութիւնք նո-րա յեկ.

Եւ որպէս թէ՝ հանդերձ վերադրաւն, զառա-քինութեան վարս.

ՃԴ. Խոստովան եղերուք Տեառն և կարդացէ՛ք.

Օրհնեցէ՛ք և սաղմոս ասացէ՛ք.

ՃԺԱ. Երանեալ է այր՝ որ երկնչի.

ՃԺԸ. Երանեալ են անբիծք.

ՃԻԴ. Ո՛ յուսայ ի Տէր՝ որպէս ի լեառն.

ՃԼԲ. Զի՛ բարի կամ զի՞նչ վայելուչ.

Իսկ օրհնութիւն՝ խառն ընդ պատմութիւնս.

Ղ. Ո՛ բնակեալն է.

ՃԺԲ. Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր.

ՃԺԶ. Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք.

ՃԼԴ. Օրհնեցէ՛ք զանուն Տեառն. օրհնեցէ՛ք ծառայ Տեառն զՏէր, ո կայք ի տուն.

ՃԽԴ. Բարձր առնեմ զքեզ Աստուած իմ.

ՃԽԵ. Օրհնեա՛ անձն իմ զՏէր, օրհնեցից զՏէր ի կեանս.

ՃԽԶ. Օրհնեցէ՛ք զՏէր, զի բարի է, սաղմոս Աստուծոյ մերոյ.

ՃԽԷ. Գովեա՛ Երուսաղէմ զՏէր.

ՃԽԸ. Օրհնեցէք զՏէր յերկինս.

ՃԽԹ. Օրհնեցէ՛ք զՏէր յօրհնութիւն նոր, օրհնութիւնք.

ՃԾ. Օրհնեցէ՛ք զԱստուած ի սրբութեան նորա։

Եւ որ գոհանալոյն են.

Ը. Տէր, Տէր մեր, զի սքանչելի է.

ԺԶ. Լուր Տէր արդարութեան.

ԺԷ. Սիրեցից զքեզ Տէր զօր.

ԻԹ. Բարձր առնեմ զքեզ Տէր, զի.

ԼԴ. Դատեա՛ Տէր զայնոսիկ.

ԽԵ. Աստուած մեր ապաւէն և զօրութիւն.
ԿԲ. Աստուած Աստուած իմ ես առ քեզ.
ՁԴ. Հաճեցար Տէր ընդ երկիր.
ՃԺԴ. Սիրեցի զի լուիցէ.
ՃԺԵ. Հաւատացի զոր և.
ՃԻ. Համբարձի զաչս իմ ի լերինս.
ՃԻԱ. Ուրախ եղէ ես ոյք.
ՃԻԴ. Ո յուսայ ի Տէր որպէս ի լեառն սիոն.
ՃԻԵ. Ի դարձուցանել Տեառն զգե.
ՃԻԸ. Բազում անգամ մարտ.
ՃԽԴ. Բարձր առնեմ զքեզ Աստուած իմ.

Իսկ որ երանութեամբք ձայնաւորեալ են, այսոքիկ.
Ա. Երանեալ է այր՝ որ ո՛չ գնացի.
ԼԱ. Երանի՝ ում թող.
Խ. Երանի՝ որ խորհի զաղ.
ՃԺԸ. Երանեալ են անբիծք.
ՃԻԷ. Երանի ամենեցուն, որ երկնչին ի տեառնէ և գն.

Եւ այլ՝ իբրեւ ցուցանելոյ զցանկութիւն, հանդերձ օրհնութեամբք.
ՃԷ. Պատրաստ է սիրտ իմ:

Եւ այլ իբրեւ խրատտուով՝ յառաքինութեան քաջութիւն.
Ժ. Ի Տէր յուսացայ, ո՞րպէս ասից.

Իսկ չարախօսութիւն չարագործացն և ամբարշտացն:
Բ. Ընդէ՞ր խռովեցան հեթ.
ԺԳ. Ասաց անզգամն: Տէր յերկինս նայեցաւ.
ԼԵ. Ասէ անօրէնն մեղ.
ԾԱ. Զի պարծիցի ի չարութեան.
ԾԲ. Ասաց անզգամն: Աստուած յերկնից նայեցաւ.

Եւ է որ կարդալոյ առ Տէր, և լսելի լինելոյ.
Դ. Ի կարդալ իմում լուար:

Եւ է որ իբրեւ ղաղօթից պատմութիւն.
ԺԹ. Լուիցէ քեզ Տէր յաւուր անձկութեան.
ԿԴ. Քեզ վայել է օրհնութիւն:

Եւ է՝ որ ի Տէր պարծելով պատմէ զբանս իւր.
ԻԲ. Տէր Հովուեսցէ զիս.

ԻԶ․ Տէր լոյս իմ և կեանք․

ԼԸ․ Ասացի թէ պահեցից․

ԼԹ․ Համբերելով համբ․

ԽԱ․ Որպէս փափագէ եղջ․

ԿԱ․ Բայց միայն Աստուծոյ հնազ․

ՀԵ․ Յայտնի է ի հրէաստ․

ՁԳ․ Որպէս սիրելի են յարկք․

ՂԶ․ Տէր թագաւորեաց ցնծասցէ․

ՂԸ․ Տէր թագաւորեաց բարկաց․

ՃԾԱ․ փոքր էի ես յեղբարս իմ։

իսկ յորդորել ի լաւութիւնսն է.

ԾԵ․ Ողորմեա՛ ինձ Աստուած, զի կոխեաց․

ՁԱ․ Աստուած եկաց ի ժողովս։

Եւ ոմանք են ըստ օրհնութեանս բանս ասել.

ԽԷ․ Մեծ է Տէր՝ և օրհնեալ է․

ԿԴ․ Քեզ վայելէ օրհնութիւն։

իսկ այլ՝ վասն վախճանի և յարութեան.

ԿԵ․ Աղաղակեցէք առ Աստուած ամենայն երկիր։

Այսպիսի իմն կարգ՝ իբրեւ բնութիւն մտաւորութեան՝ ի սաղմոսն խաղան. և է օգնութիւն մեծ՝ որ ըստ հոգեւոր օրհնութեանն ասեն զնոսա. և գտանեն ի նոսա ըստ իւրաքանչիւր խորհըրդոյն շարժմանց զդեղս բժշկութեան ախտիցն, և զգոհութիւնս առ Աստուած՝ առողջ մտաւորութեանց. և սպառազինեալ յամենայն կողմանց զոգին՝ ընդդէմ թշնամւոյն ուսուցանէ զմարտ և զկռիւ և զյաղթութիւն. և Աստուծոյ օրհնութիւն և փառս հանցեն, և յամենայն կողմանց վարդապետեալ, ուսուցանեն գոհանալ զԱստուծոյ. զի ոչ միայն յամբարշտութիւնսն անկանելոյ պահեն, և ոչ միայն ի գործս բարիսն առաջնորդեն, այլ և ի բանից զգուշացեալ պահեն զդատարկսն և զընդվայրսն, և ի դատապարտութիւն ոչ տան խօսել. և հրամայեն՝ մի՛ զչարս գովել և երանել, և մի՛ ասել զլոյսն՝ խաւար, և զխաւարն՝ լոյս. և մի՛ ըզդառն՝ քաղցր, և զքաղցրն դառն. և մի՛ զչարն՝

բարի. նոյնպէս, և մի՛ զբարին՝ չար. զի որ ո՛չ զգուշանայ բանիցս այսոցիկ, հայհոյիչ է՛ Աստու-ծոյ. և իբրև զսուտն զայն՝ որ խաբողն եղև, դատապարտեալ պատուհասի՛ ի գեհենի։ Իսկ որ ասէ, և ընտրեալ զարդարն յանարժանոյն, բերան Տեառն կոչի ըստ գրոյն։

Արդ՝ եթէ զոք կամիցիս երանել, ունիս օրի-նակ և առաջնորդ քեզ զՍաղմոսարանն. և ուսու-ցանէ քեզ թէ ո՛րպէս և վասն որո՛յ, և զի՛նչ օ-րինակ է քեզ ասել։ Արդ՝ լուր սաղմոսերգին, և տայ քեզ առաջնորդ զառաջին սաղմոսն՝ որ ասէ.

Ա. Երանեալ է այր՝ որ ո՛չ գնաց.

ԼԱ. Երանի՝ ում թողութիւն.

Խ. Երանի՝ որ խորհի.

ՃԺԸ. Երանեալ են անբիծք.

ՃԻԷ. Երանի ամենեցուն՝ որ երկնչին ի Տեառնէ.

Եւ եթէ մեծամեծք և իշխանք, և կամ ծառայք և ընտանիք՝ խորհիցին ինչ չարութիւն ի վերայ քոյ՝ մահուամբ լուծանել, ունիս զօրինակ փրկչին՝ զձեռս տարածել առ Աստուած՝ մեղադրելով թըշ-նամւոյն, ասա՛ յերկրորդ նուագին.

Բ. Ընդէ՞ր խռովեցան հեթ. և այլ մի ըստ միոջէ։

Եւ եթէ հալածիցիս յընտանեաց և ի սիրե-լեաց և ի զուգակցէ. և բազումք են յարուցեալ ի վերայ քոյ ի նեղել զքեզ, ասա զԴ սաղմոսն,

Ի կարդալ իմում լուար ինձ.

Եւ համբարձեալ զձեռս առ Աստուած, նուագեա՛, և հառաչելով ասա՛.

Գ. Տէր՝ զի՞ բազում եղեն նեղիչք իմ. և որ ի կարգին է.

Եւ ի վշտանալն քում լուեալ Աստուծոյ. և դիւ-րացուցանել ի նեղութեանցն՝ կամիցիս գոհանալ, երգեա՛ ցընծալով զԴ նուագն. Ի կարդալ իմում լուար.

և զՃԺԴ, Սիրեցի՝ զի լուիցէ տէր։

Եւ եթէ թշնամի ոք քո ի դարան մտեալ կա-միցի պաշարել զքեզ նեղութեամբք, և քո լուեալ՝ կամիցիս առ Աստուած աղօթս մատուցանել, և է

բաց մերժել զնեղութիւն թշնամւոյն, կանխեաս ընդ-առաւօտն, և ասա զնուագ,

Ե. Բանից իմոց ունկն դիր Տէր, և այլն մի ըստ միոջէ։

Եւ դարձեալ՝ եթէ զապառնալիսն Տեառն ի վե-րայ քոյ իմասցիս, և վասն այդորիկ խռովեալ զխորհուրդսդ քո տեսցես, նուագեալ վասն քո Դաւիթ զԶ սաղմոսն, ուսուցանէ քեզ ասել.

Տէր՝ մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս. և զմիւս այլն.

ԼԷ. Տէր՝ մի՛ սրտմտութեամբ քով, յան. և այլն մի ըստ միոջէ։

Եւ եթէ իցէ՝ զի խորհիցի ոք խորխորատ փո-րել ի գլորել զքեզ, որպէս Աքիտոփէլն զԴաւիթ, և քո լուեալ և գիտացեալ զիրսն, մեծ և լայն ձայնիւ երգեա, և ասա զԷ նուագն.

Տէր Աստուած իմ ի քեզ յուսացայ։

Եւ դարձեալ՝ տեսեալ զշնորհս Փրկչին յամե-նայն կողմանց ձգտեալ. և կամի ապրեցուցանել զազգ մարդկան, լե՛ր ձայնակից Տեառն. և գոհա-նալով ասա զԸ նուագն.

Տէր, Տէր մեր, զի՛ սքանչելի է. և այլն։

Եւ դարձեալ՝ եթէ օրհնել կամիցիս խնդութեամբ ի վերայ հնձանաց, գոհանալով զՏեառնէ՝ որ ըն-ցոյց ի գինւոյ ուրախութեան զխորհուրդս քո և զսիրտ, և զմիտս քո արար գուբ և հնձան, երգեա և նուագեա զԸ և զՁԳ Սաղմոսն.

Տէր, Տէր մեր, զի՞ սքանչելի է.

և՝ Որպէս սիրելի են յարկք քո Տէր։

Եւ եթէ կամիցիս անիծանել զթշնամին՝ տե-սանելով զփրկութիւն քո ի բռնաւոր և ի չար օձէն, մի՛ անձինդ տայցես զպարծանսն. այլ գի-տասջի՛ր, թէ միածնի Որդւոյն Աստուծոյ է այս ամենայն օգնութիւնք, երգեա և նուագեա զԹ Սաղմոսն,

Գոհացայց զքեզ Տէր. և այլն։

Եւ եթէ ոք զքեզ ի վատասրտութիւն արկեալ

խռովեցուցանիցէ, ունիս քեզ օգնական և յոյս քաջամտութեան զՏէր, ասելով զԺ Սաղմոսն.

Ի Տէր յուսացայ՝ որպէս ասի.

Եւ յորժամ տեսցես բազում՝ զուրուք զհպարտութիւն, և ամենեւին առաւելեալ ի չարութիւն՝ և ոչ մի ինչ բարութիւն կայցէ ի մարդկան ումեք, փախի՛ր ի Տէր, և ասա՛ զԺԱ Սաղմոսն.

Ապրեցո՛յ զիս Տէր, զի նուազեաց:

Եւ եթէ տեսանիցես զթշնամին քո երկայն ժամանակեան՝ և ի վերայ քո զչար խորհելով. մի՛ կարճամտիր, որպէս թէ Տեառն անտես արարեալ իցէ զքեզ. այլ մխիթարելով զքեզ, ասա՛ այսպէս յԱստուած զԺԲ Սաղմոսն.

Մինչեւ յե՞րբ Տէր մոռանաս:

Եւ եթէ տեսանիցես զոք՝ հայհոյելով զԱստուծոյ բարերար խնամակալութիւնն, մի զուգեալ հաւասարիցիս ամպարշտութեան նորա. մատուցեալ առ Աստուած ասիցես զԺԳ Սաղմոսն.

Ասաց անզգամն ի սրտի իւր. Աստուած յերկնից նայէ:

Եւ եթէ կամիցիս գիտել՝ թէ որպէս արժան է լինել երկնային քաղաքացն քաղաքակից և բնակակից, երգս առեալ պարելով նուագեա՛ զԺԴ Սաղմոսն.

Տէր՝ ո՞վ կացցէ ի խորանի քում:

Եւ եթէ կամիցիս յաղթել կալ վասն հակառակորդին՝ և ընդդէմ հոգւոց մերոց թշնամւոյն, նուագեա՛ յուսոյն Աստուծոյ՝ զԺԵ Սաղմոսն.

Պահեա՛ զիս Աստուած իմ, զի ես

և զԺԶն, Լո՛ւր Տէր արդարութեան և նայեա՛.

և զՁԵն, Խոնարհեցո՛յ Տէր զունկն.

և զՁԷ, Տէր Աստուած փրկութեան իմոյ. և զՃԽ, Տէր կարդացի առ քեզ:

Եւ եթէ կամիցիս ուսանել թէ որպէս Մովսէս կայր յաղօթս, ասա՛ զՁԹ Սաղմոսն.

Տէր՝ ապաւէն եղեր մեր.

Եւ եթէ ապրեցար ի թշնամւոյ քումմէ, երգեա՛ ցնծալով զԺԷ Սաղմոսն.

Սիրեցից զքեզ Տէր:

Եւ եթէ զարմանայցես արդեւք ընդ երգս արարածոց, և ի Նոսա զխնամակալութեանն Աստուծոյ զշնորհն, երգեա զԺԸ Սաղմոսն.

Երկինք պատմեն զփառս Աստուծոյ. և զԻԳն, Տեառն է երկիր լրիւ։

Ի վշտաց կամիցիս դիւրինս լինել քեզ, ասա զԺԹ Սաղմոսն.

Լուիցէ քեզ Տէր յաւուր անձկութեան։

Տեսանիցես հովուեալ պահպանութեամբն Աստուծոյ, ասա զԻԲ Սաղմոսն.

Տէր հովուեսցէ զիս։

Յարուցեալ թշնամւոյն ի վերայ քոյ, երգեա ԻԴ Սաղմոսն.

Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Տեսեալ ի վերայ քո դարանակալ զթշնամիսն, ասա զԻԵ Սաղմոսն.

Դատ արա ինձ Տէր, զի ես յամբծ. և այլն. և զԼԴ, Դատեա Տէր զայնոսիկ որք դատին. և զԽԲ, Դատ արա ինձ Աստուած, և իրաւ արա։

Եւ եթէ խստագոյն և բազմութիւն բանակաց յարուցեալ տեսանիցես ի վերայ քո, Նուագեսջի՛ր. զԻԶ Սաղմոսն.

Տէր լոյս իմ և կեանք իմ։

Եւ եթէ դարձեալ անամօթեսցի թշնամին քո. ասա զԻԷ Սաղմոսն.

Առ քեզ Տէր կարդացի։

Եւ եթէ զոհանայցես և կամիցիս ուսանել՝ թէ որպէս արժան է պատարագ ընծայի մատուցանել Տեառն, ասա զԻԸ Սաղմոսն.

Մատուցէ՛ք Տեառն որդիք Աստուծոյ. մատուցէք։

Եւ եթէ կամիցիս Նաւակատիս առնել տան քո, այսինքն է զգալի մարմնոյդ լինել տաճար հոգւոյն սրբոյ, ասա զԻԹ Սաղմոսն.

Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս։

Եւ յորժամ տեսանիցես զքեզ վասն ճշմարտութեանն ատեցեալ և հալածեալ ի սիրելեաց և յազգէ, երգեա զերեսունն Սաղմոսն.

Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից։

իսկ զմկրտեալն՝ և լեալ շնորհզք Որդի Աստուծոյ, ասա՛ զԼԱ Սաղմոսն.

Երանի՛ ոյց թողութիւն եղեւ։

Եւ յորժամ կամիցիս ընդ բազումս ի պարու երգել, ասա՛ զԼԲ Սաղմոսն։ Ցնծացէ՛ք արդարք ի Տէր։

Եւ եթէ կամիցիս անդադար զՏէր օրհնել, ասա զԼԳ Սաղմոսն. Օրհնեցից զՏէր յամենայն ժամ։

Եւ եթէ դատիս մոլորդ ի խորամանկ թշնամւոյն, ասա՛ զԼԴ Սաղմոսն. Դատեա՛ Տէր զայնոսիկ։

Եւ եթէ տեսանիցես զապստամբեալսն ի Տեառնէ, ասա՛ զԼԵ Սաղմոսն. Ասէ անօրէնն։

Եւ եթէ տեսանիցես զոք բազում չարութեամբ գործս գործեալ, ասա՛ զԼԶ Սաղմոսն. Մի՛ նախանձիր ընդ չարս, և մի՛։

Յորժամ տեսանիցես զամբարիշտն հակառակեալ ընդ քեզ. ասա՛ զԼԸ Սաղմոսն. Ասացի թէ պահեցից։

Եթէ յոյժ՝ ցանկութիւն ունիս առ Աստուած՝ Հոգւոյն շնորհզք ասա՛, զԽԱ Սաղմոս. Որպէս փափագէ եղջերու։

Եթէ ստէպ կամիս յիշել զերախտիսն Աստուծոյ, ասա՛ զԽԶ Սաղմոսն. Աստուած ականջօք մերովք։

Ապաւինիլ յԱստուած՝ և ապրիլ ի նեղութեանց, ուսիր ի ԽԵ Սաղմոսէն. Աստուած մեր ապաւէն և զօրութիւն։

Այլ թէ մեղար՝ և կամիս ապաշխարել և ողորմութիւն գտանել Աստուծոյ, զԾ Սաղմոսն. Ողորմեա՛ ինձ Աստուած ըստ մեծի։

Արդեւք մատնեցար թագաւորի չարի, երգեա՛ զԾԱ Սաղմոսն. Զի՞ պարծիցի ի չարութիւն։

Եւ յորժամ հալածիցիս և մատնիս յումեքէ, երգեա՛ զԾԳ Սաղմոսն. Աստուած յանուան քում կեցո՛ զիս։

Եւ եթէ ժամանեալ հասանիցէ՝ որ հալածիցենն, ասասցե՛ս զԾԶ Սաղմոսն. Ողորմեա՛ ինձ Աստուած ո-

ողորմեա՛ ինձ. և զՃԽԱ, Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի, ձայնիւ իմով. Սփռեցից առաջի Տեառն։

Եւ եթէ զտունն հրամայեալ իցէ պահել թըշնամեացն, ասա՛ զԾԸ Սաղմոսն. Փրկեա՛ զիս ի թըշնամեաց. Փրկեա զիս յայնցանէ։

Յորժամ տեսանես վայրենազոյնս զոք՝ զայրացեալ առ քեզ, և կամիցին զքեզ ի կենաց հատանել, ասա՛ զԿԱ Սաղմոսն. Բայց միայն Աստուծոյ հնազանդ լեր։

Եւ եթէ հալածեալ զքեզ, և յանապատ դիմեսցես, ասա՛ զԿԲ Սաղմոսն. Աստուած Աստուած իմ՝ ես առ քեզ առաւօտ։

Եւ յորժամ կամիցիս աղօթել՝ և ի թշնամեացն զերծանել, ասա՛ զԿԳ Սաղմոսն. Լո՛ւր Աստուած աղօթից իմոց յաղաչել ինձ. և զԿԷ, Յարիցէ Աստուած և ցրուեսցին ամենայն. և զԿԶ, Աստուած յօգնել ինձ։

Եւ յորժամ գոհացեալ՝ օրհնել կամիցիս զԱստուած, ասա՛ զԿԴ Սաղմոսն. Քեզ վայել է։

Եւ եթէ գթութիւնս կամիցիս խնդրել յԱստուծոյ, երգեա՛ զԿԶ Սաղմոսն. Աստուած ողորմեա՛ մեզ և օրհնեա՛։

Եւ յորժամ տեսանես զանօրէնսն ի խաղաղութեան, ասա՛ զՀԲ Սաղմոսն. Իբրեւ զի բարի է Իսրայէլի Աստուած։

Եւ յորժամ բարկասցի Աստուած ի վերայ ժողովրդեանն, ասա՛ զՀԳ Սաղմոսն. Ընդէր մերժեցեր Աստուած։

Եւ յորժամ կամիցիս զմեղսն քո խոստովանել Աստուծոյ, նուագեա՛ զՀԴ Սաղմոսն։ Խոստովան եղիցուք առ քեզ Աստուած, խոստովան. և զՂԱ. Բարի է խոստովան լինել Տեառն. և զԾԴ. Ունկն դի՛ր Աստուած աղօթից իմոց և մի՛ անտես առներ. Նայեա՛ առիս և լո՛ւր ինձ, զի տրտմեցայ. և զՃԵ. Խոստովան եղերուք Տեառն. Ո՛ խօսեսցի. և զՃԶ. Սաղմոսն. Խոստովան եղերուք Տեառն զի քաղցր է. Ասասցեն փրկեալք։

Եւ թէ դժուարին միտք քո ընդ պատառումն

հերձուածողաց, ասա՛ զՀԵ Սաղմոսն. Յայտնի է ի Հրէաստանի Աստուած:

Եւ եթէ կամիցիս՝ զքեզ առաջնորդութեամբն Աստուծոյ զօրացուցանել, ասա՛ զՂ Սաղմոսն. Որ բնակեալն է յօգնութիւն:

Սաղմոսել կամիցիս յաւուր շաբաթու, երգեա՛ զՂԳ Սաղմոսն. Եկայք ցնծասցուք ի Տէր:

Գոհանալ կամիս զԱստուծոյ յաւուր կիրակէի, նուագեա՛ զԻԴ Սաղմոսն. Առ քեզ Տէր համբարձի զանձն:

Կամիցիս երկշաբաթօջն ասել, նուագեա՛ զԽԴ. Բղխեաց սիրտ իմ զպատգամ:

Եւ յաւուր ուրբաթու ասա՛, զՂԲ Սաղմոսն. Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ.

Քանզի յայնժամ տաճարն Աստուծոյ շինեցաւ. և յայնժամ ձեռնարկեալ թշնամեացն կամեցան արգելուլ:

Արդ՝ երգեսջի՛ր զԱստուծոյ օրհնութիւնն, ըզ-ՂԵ Սաղմոսն. Օրհնեցէ՛ք զՏէր յօրհնութիւն նոր. Օրհնեցէ՛ք զՏէր ամենայն երկիր:

Եւ ի չորեքշաբաթու ասա՛ զՂԳ Սաղմոսն. Աստուած վրէժխնդրիր:

Քանզի՝ յայնմ աւուր մատնեցաւ Տէրն. և յայնժամ սկիզբն առ խայտառակել համարձակութեամբ զմահ:

Յորժամ տեսցես զաւետարանն կարդալով՝ չորեքշաբաթօջն խորհուրդ արարեալ Հրէիցն մատնել զՏէրն, երգեա՛ զՂԳ Սաղմոսն. Աստուած վրէժխնդրիր, Տէր Աստուած:

Եւ եթէ տեսանիցես զխնամակալութիւնն Աստուծոյ, ասա՛ զՂԹ Սաղմոսն. Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր, ծառայեցէք:

Եւ եթէ կամիցիս գիտել զդատողական զօրութիւն նորա, ասա՛ զՃ Սաղմոսն. Ցողորմութիւն և յիրաւունս:

Եւ յորժամ տեսանիցես զբնութիւնդ տկարա-

ցեալ և ձանձրացեալ, ասա՛ զԾԱ Սաղմոսն. Տէր՝
լուր աղօթից իմոց. աղաղակ իմ.

Եւ քանզի վայելէ յամենայնի գոհանալ Աստուծոյ, երգեալ Նուագեա՛ զԾԲ Սաղմոսն. Օրհնեա անձն իմ զՏէր, և ամենայն ոսկերք. և զԾԳ, Օրհնեա անձն իմ զՏէր, Տէր Աստուած իմ մեծ։

Օրհնել կամիցիս զԱստուած վասն սիրոյ Նորա, ուսջիր և Նուագեա՛ զԾԺԲ Սաղմոսն. Օրհնեցէք մանկունք. և զԾԺԶ, Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք գովեա։

Եւ եթէ ունիս հաւատս առ Աստուած, և յաղօթս կաս հաւատով, ասա՛ զԾԺԵ Սաղմոսն. Հաւատացի զոր և խօսեցայ։

Զփորձութիւնս եկեալ՝ համբերութեամբ գոհանալով երգեալ Նուագեա՛ զԾԼԸ Սաղմոսն. Տէր՝ փորձեցեր զիս և ծանեար. և որ այլ մի ըստ միոջէ։

Արժան է և մեզ գիտել զայս, եթէ ընդէ՞ր երգօք և քաղցր Նուագօք ասին սաղմոսք։ Ոմանք ընդ վայր ասացին, եթէ վասն գեղեցկաձայնութեան լսելեացն, և մտացն դիւր թուի. որ ո՛չ է այս։ Քանզի՝ ո՛չ թէ գրոց ձայնից գեղեցկութեան խնդիր է. վասն զի կարգեալ է զայլ գըրեանն ընթեռնլով. անցուցանել. իսկ զսա, Նուագելով. վասն զի՝ է՛ յոգիս մեր ախտ շարժմանց երեք՝ խորհրդական, ցանկական, ցասմնական։

Արդ՝ Նուագելով ասել, ո՛չ եթէ վասն գեղեցկաձայնութեանն է, այլ վասն իմանալեացն յուզմանց խորհրդոց ոգւոց. զի ասասցես զսաղմոսն, և ի միտ առցես, առ ի զխորհուրդն կազմել և իմանալ։ Եւ դարձեալ՝ զընդվայր ոգւոցն ցանկութիւնն ի բաց հալածել և հարթել, և խաղաղել զխռովութիւն ոգւոցն։ Վասն այնորիկ՝ և Դաւիթ երգովք Նուագէր, քանզի զխեղդ խռովութեանց ոգւոցն՝ և զմոլորութիւն չար ախտի դիւին Սաւուղայ հալածէր, և առնէր հանդարտութիւն հանապազ ոգւոց Նորա։

*Այսպէս և քահանայքն երգս առեալ նուագէին, և ածէին ի խաղաղութեան զոգիս ժողովրդեանն, և ի միաբանութիւն երկնաւոր պարուցն, ի փառաբանութիւն միաբանէին ընդ հրեշտակս։ Եւ օրհնել զԱստուած ծնծղայիւք քաղցրաձայնիւ և քընարաւ, և տասնաղեաւ սաղմոսարանաւ. խորհուրդ և նշանակիչ է, զի ըստ կարգի օրինի՝ զանդամս մարմնոց մերոց, որպէս և զաղիս կարգեալ յօրինիցեմք. և զխորհուրդս ոգւոց մերոց, որպէս և քաղցրաձայն ծնծղայս ի գոհանալն կազմիցեմք, և բարբառովն հնչողութեան բերանոյ մերոյ՝ և լեզուաւ մերով, որպէս զկնդնտոց շարժել. Նուագէ և զյօրինել խորհրդոցն, և զշարժմունս մարմնոյ։ Եւ այսպէս՝ մերթ դաշնակելով, և մերթ հարթ ասելով, խաղաղացուցանէ զխորհուրդս հոգւոյն, և ածէ զնա յանհարթութենէ ի հարթ պողոտայ. և առնէ ցանկալի նմա՝ ի ձեռն երգոց օրհնութեան քաջաբար զհաճոյսն Աստուծոյ գործել և գնալ։ Քանզի ի բարբառոցն քաղցրաձայնութենէ, մոռանայ և ի բաց հալածէ զախտս և զյուզմունս խորհրդոցն. և հանդարտեալ՝ ուրախ լինի շնորհելով նմա զմիտսն Քրիստոսի, համակ ի հաճոյսն նորա խորհել և գնալ։*

*Եթէ ո՛րդեակ՝ որ ըստ այսմ ամենայնի զոր ասացիս, շնորհելով մարդոյն զմիտս հոգեւորս. և յորժամ պատահէ մարդն գրոց Սաղմոսարանացն, պարգեւեալ լինին նմա հոգեւոր և աստուածային խնդութիւնք և առնու այնուհետեւ՝ որպէս յամենայնից դրախտէ զամենայն պէտս բարութեան. և տեսանէ ի Սաղմոսարանին հոգեւոր աչաց մտօքն, և վայելէ ի նմա հանապազ։*

*Քանզի գտանեմ ո՛րդեակ՝ ի բանս գրոյս Սաղմոսարանաց՝ զամենայն պէտս մարդկան. զառողջութիւն, և զարդարութիւն, և զպսակ շնորհաց հոգւոյն. և զխորհրդոցն զշարժմանսն ժողովէ, և շուրջ եկեալ զնովաւ, վառէ ճշմարտութեամբ. և*

չէ ինչ՝ որ պիտոյ իցէ մարդոյն. այլ սա՛ զամենայն պէտս նորա՝ յօրինեալ կատարէ։ Եթէ պիտոյ են մարդոյն խոստովանութիւնք ապաշխարութեան. եթէ հասանիցեն նմա վիշտք և փորձութիւնք. եթէ հալածիցի յումեքէ և նեղիցի. եթէ խռովեալ իցէ և տրտում: և կամ՝ թէ տեսանիցէ զիւր յառաջադիմութիւնն և զթշնամւոյն խափանումն. եթէ օրհնել կամիցի և գոհանալ, և կամ փառս Աստուծոյ մատուցանել։ Զամենայն զիւրաքանչիւր զայս՝ հոգեխառն սուրբ Հոգւոյն գտանէ, յերգս Սաղմոսարանացն։

Որպէս մեր ծերքն և միայնակեաց հարքն՝ սիրելիք Աստուծոյ, այսու քաղցրաձայն սաղմոսիւք և քրիստոսախառն մտօք հաճոյ եղեն Աստուծոյ։ Որպէս և ասէ Պաւղոս. «Կացին ընդդէմ անօրէն թագաւորաց. գործեցին զարդարութիւն. հասին աւետեաց խցին զբերանս առիւծուց», և այլ՝ մի ըստ միոջէ։ Ասէ ծերն երանելի, և այժմ զնոյն ասեմ որդեակ, և քաջալերեմ զամենեսեան. վասն զի՝ երգովք Սաղմոսարանացն, Աստուած լսէ՝ որ կարդան առ Նա։

Եւ եթէ վշտանայցէ ոք և նուագիցէ զսաղմոսս, մեծ մխիթարութիւն գտանէ։ Եւ եթէ ի փորձութիւնս անկանիցի և ի հալածումն, և ասասցէ զսաղմոսն, մեծընտիր և փորձ գտանի. և լինի պահապան և ամրութիւն նմա ի Տեառնէ, և նոքօք զդեւսն ի բաց հալածէ. և սատանայ ամաչեցեալ, ի միջոյ ի բաց կորնչի. և ո՛չ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյն, և զմոլորեցուցիչն յանդիմանէ. և ո՛չ եթէ մարդ ոք լինի միջնորդ, այլ ինքն իսկ՝ աստուածեղէն գիրքն։ Քանզի՝ պատուիրեաց Աստուած Մովսէսի, գրել զօրհնութիւնն մեծ՝ և ուսուցանել զժողովուրդն՝ և ասել. յորժամ նստիցին քահանայապետքն և իշխանքն։ Հրամայէ և զերկրորդումն օրինացն գրել. և յամենայն ժամ ունել ի ձեռն՝ և ընթեռնուլ ի ժո-

զօրուրդս իւրեանց, և ի դունդս պատերազմաց իւրեանց. զի յընթեռնուլն՝ և ի լսելն, յիշեսցէ նոցա զառաքինութիւնն՝ և զքաջութիւնն. և ամենեցուն միախումբ լեալ ի պատերազմն, վառէ զնոսա որպէս և քաջակազմ զինու՝ բանիւք օրինացն. և նոցա զհետ երթեալ միջնորդութեամբ օրինացն, ամենայն պատերազմացն գեր ի վերոյ լինեին. և յամենայն տեղիս՝ աստուածային պատգամքն և երգովք նուագարանացն՝ զերեւելի ըզթշնամիսն հարկանէին և զաներեւոյթ զդեւսն ի բաց հալածէին: Քանզի հաւատոց և ծանօթագոյն երկիւղած մնաց՝ պէտքն էին, և զամենայն ինչ բանք գրոց՝ ի բարութեան լցեալ կատարէին:

Այսպէս՝ փողով և երգով, Յեսու զԵրիքով ընկենոյր: Ըստ նմին օրինակի՝ բան ողորմութեանն թափուցեալ յողորկ քարն Դաւթի, զմեծ հսկայն ընկենոյր և գլխատէր: Այսպէս՝ և երկոտասան Առաքեալքն, աւետարանական բանիւն մեծամեծ նշանս և զօրութիւնս առնէին. աւար առեալ զամուրսն սատանայի, և զզօրսն դիւաց՝ փախստականս առնէին: Ասէր ծերն. եւ լուայ որդեակ՝ յառնէ միոջէ իմաստնոյ, թէ յորժամ ընթեռնուին միայն զհին կտակարանսն, յայնժամ և յառնէր և սաղմոսողն ոք ի մէջ ժողովրդեանն իսրայելի. յորժամ լսէին զձայնն՝ նուագէին ժողովուրդքն, դիւացն յայտնեալ ի միջի նոցա՝ վաղվաղակ հարկանէին և ի բաց փախչէին, և ոմանք յարուցեալ ի ժողովրդենէն, մարգարէանալ սկսնոյին. և եթէ կային յումեք խորհուրդք նենգաւորք և անօրէնք, յայտ ածէին. և ոմանց խոստովանեալ թողութիւն առնէին, և զոմանս ի պատուհաս արկանէին: Այսպէս երկուցեալ ի սրբոց և ի բանից աստուածեղէն գրոց, և ո՛չ կարէին կալ առաջի ամենեցուն անօրէնութիւնք: Վասն այնորիկ՝ աղաղակէին դեւքըն ընդդէմ Տեառն և ասէին. աղաչեմք զքեզ Տէր, մի՛ տարաժամ տանջեր զմեզ. քանզի ո՛չ

կարէին տեսանել զնա և հանդարտել բանից նորա։ Այսպէս և Պաւղոս սրբէր զպիղծ հոգիսն. ըստ սմին օրինակի, և յաշակերտացն փախուցեալ լինէին ամենայն դեւքն։ Եւ ի ժամանակս Եղիսէի, յորժամ ի սաղմոսացն երգէր զսաղմոսսն, լնոյր հոգւովն սրբով, մարգարէանայր և ասէր թագաւորին զառ յապա լինելոցն։

Արդ՝ այսուհետև թէ ոք իցէ յուրախութեան, և կամ թէ ի վիշտս, յուրախութիւն և ի յարդարութիւն դարձուցանէ. և ի վշտաց, հանգիստ և օգնութիւնս գտանէ. և զնոյն իսկ զհաւատոն յայտնապէս ցուցանէ. որով տեսանէ ի ձեռն հաւատոց՝ մտաւոր աչօք՝ զԱստուած կատարեալ, և լցեալ առողջութեամբ զհոգիս և զմարմինս, օրհնութիւն և փառս Աստուծոյ մատուցանէ։

Զայս ասէր և սուրբ ծերն՝ եթէ «զարդարութիւն քո խօսեցայց, և ոչ մոռացայց զբանս»։ Եւ դարձեալ՝ աղօթելով ասէր. «եթէ ոչ օրէնք քո խօսք իմ՝ լեալ էին, վաղուց իսկ կորուսեալ էի ես ի տառապելութեան իմում»։ Այսպէս պատուիրէր և Պաւղոս աշակերտին իւրում՝ ասելով. եթէ «զայս խորհեսջիր և ի սոյն լինիջիր, զի քո յառաջադիմութիւնդ յայտնի լինիցի»։ Արդ՝ և դու ով աստուածասէրդ՝ որ ընթեռնուս, զայդ խորհեաց և ի դոյն լեր. և սաէպ ստէպ հոգեխառն սիրով՝ սաղմոս սաղմոսեա. զի ասասցես զսաղմոսն, և ի միտ առցես. պատմեալ քեզ ի Հոգւոյ սրբոյ, կարասցես իմանալ. և այսպէս՝ դու Նախանձ առեալ, կարասցես հասանել մտաց և վարուց, և գործոց և պսակաց. որոց հասին սուրբք և արդարք, Մարգարէք և Առաքեալք, և ծերք միայնակեացք՝ որ պատմեցին մեզ զայս ամենայն խոստացելոց բարութեանցն. զոր ակն ոչ ետես, և ունկն՝ ոչ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ. զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց. որում փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՑԱՆԿ

Աստեղանիշքն պակասին ի յոյնն. (Տպ. ի Պատուցիոն)

երես

Եջ

